ՆԻԿՈՂԱՅՈՍ ԱԴՈՆՑ

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

Ակունքները
X—VI դդ. մ. թ. ա.

ՀԱՅԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

ՀՈԴՎԱԾՆԵՐ

«Հայաստան» հրատարակչություն
Երևան 1972

Printed in the Soviet Union

9 (С 43) 1
Ա 20

Nicolas Adontz

**HISTOIRE D'ARMÉNIE**

Les origines, du X[e] siècle au VI[e] (a. J. C.)

Paris 1946

*Ֆրանսերենից թարգմանեց Վ. Պ. ՄԵՂՔՈՒՅԱՆԸ*

*Խմբագիր՝ Գ. Խ. ՍԱՐԳՍՅԱՆ*

1—6—3

НИКОГАЙОС АДОНЦ

**ИСТОРИЯ АРМЕНИИ**

Истоки. X—VI вв. до н. э.

Происхождение армян

**Статьи**

(На армянском языке)

Издательство «Айастан»

Ереван—1972

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## ՀԱՅԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ (ԱՆԱՎԱՐՏ)

## ՀՈԴՎԱԾՆԵՐ

# ԱՌԱՋԱԲԱՆ

## (Ռընե Գրուսեի)

Ինձ համար մեծ պատիվ և միևնույն ժամանակ ցավալի պարտականություն է՝ ներկայացնել պրոֆեսոր Ադոնցի գործի հետմահու հրատարակությունը և վերհիշել հանգուցյալի ազդեցիկ անձնավորությունը: Պատերազմից քիչ առաջ առիթ ունեցա նրան հանդիպելու Բրյուսելում, որտեղ նա անմիջապես գրավել էր առաջնակարգ տեղ: Մենք ուշադրությամբ լսում էինք նրան, երբ նա այնքան աշխուժորեն և երիտասարդական եռանդով խոսում ու վիճում էր մեկ ոգևորող պատմական և հնագիտական մեծ խնդիրների շուրջ: Այն ժամանակ իմ մտքից չէր կարող անցնել, որ մենք վերջին անգամն ենք իրար հանդիպում: Գիտության ծարավով և իր երկրի նկատմամբ տածած բուռն սիրով տոգորված՝ տաղանդավոր գիտնականը, 1896—1920 թվականներին, բազմաթիվ գիտական հրատարակություններով Ռուսաստանում փայլուն հեղինակություն ստեղծեց իր համար: Ապա նա իր աշխատանքային երկրորդ կյանքն սկսեց Փարիզում, Լոնդոնում և Բրյուսելում, ֆրանսերեն լեզվով հրատարակելով հիանալի գործեր, որոնք պատիվ են բերում մեր մասնագիտական այնպիսի հանդեսների, ինչպիսիք են «Revue de l'Orient chrétien», «Revue des Etudes Arméniennes», «Byzantion» և այլն: Այստեղ էլ Ն. Ադոնցը ամբողջ հասակով մեկ հանդես էր գալիս այնպես, ինչպես նախ՝ Էջմիածնում, ապա՝ Ս. Պետերբուրգի համալսարանում, որպես ի ծնե լեզվաբան, հմուտ գիտնական, որը տիրապետում էր սանսկրիտից ու պահլավերենից սկսած մինչև սեպագիրը, բյուզանդական հունարենից մինչև ժամանակակից պարսկերենը: Նա միաժամանակ հնագետ, պատմաբան և բանասեր էր, ուստի և նրա ամենափոքր ծանոթագրությունն իսկ գիտական նշանակություն ունի: Ափսո՜ս, սակայն, որ վստահելի մեթոդի վրա հիմնված գիտելիքների այդ բազմազանությունը նա չհասցրեց գործադրել իր ամբողջական գործը՝ հայոց քննական պատմությունը մեկ տալու համար: Ն. Ադոնցը, ավելի քան որևէ մեկը, ձեռնհաս էր այդ անելու: Թերևս ավելի ճիշտ կլիներ ասել, և մենք դրանում բոլորովին չենք կասկածում, որ նա արդեն շարադրել էր Հայաստանի՝ մեր ցանկացած քըն-

նական պատմությունը, անընդհատ մեկը մյուսի ետևից լույս տեսած իր գիտական ուսումնասիրություններում, որոնց մեջ նորանոր տվյալներով լուսաբանվում էին հայ ժողովրդի պատմության ամենամութ կետերը: Այդպիսով նա քայլ առ քայլ դնում էր Հայաստանի պատմության հիմքերը: Կյանքի վերջին տարիներին նյութերի մշակումը արդեն բավական էր շենքի կառուցումն սկսելու համար: Ահա այդ ժամանակ էր, որ նա ձեռնարկեց իրագործելու իր աշխատանքի ամենադժվարին մասը, որն այսօր ներկայացնում ենք ընթերցողին. դա է՝ Հայաստանի հին պատմությունը մինչև VI դարը մեր թվականությունից առաջ:

Այդպիսի մի գործ կարող էր գլուխ գալ միայն ուրարտագիտական, ասուրագիտական և իրանագիտական հետազոտությունների վերջին հայտնաբերումների օգնությամբ: Ադոնցը միանգամայն վաստակավոր ուրարտագետ, ասուրագետ և իրանագետ էր: Սույն աշխատության ընթերցումը ցույց կտա այն առաջընթացը, որ տեղի է ունեցել շնորհիվ հռչակավոր հայ գիտնականի կատարած՝ «Վանի թագավորության» վավերագրերի մեկնաբանության: Լեհման-Հաուպտից մինչև Ադոնց ձեռք բերված նվաճումները մեծ են: Բացի դրանից, լեզվաբան և հնագետ Ն. Ադոնցը այստեղ նախընտրել է պատմագիտությունը, իսկ այս վերջինին նա տիրապետում էր ամենաբարձր դիրքերից: Առաջին անգամ, վերջապես, մեր ձեռքի տակ ունենք Նաիրիի և Ուրարտուի քննական ու լրիվ մի պատմություն, որն սպառիչ կերպով ընդգրկում է բոլոր սկզբնաղբյուրները: Այդ տեսակետից Ադոնցի գիրքը կուգադիպում է միևնույն՝ 1944 թ. լույս տեսած նույն կարգի մի այլ աշխատության, որը պատկանում է մեկ ուրիշ արևելագետի՝ Լուի Դըլապորտի գրչին և վերաբերում է Էլամի, Սուզայի քաղաքակրթության պատմությանը: Սուզան, սակայն, ոչնչացել է, իսկ հին Ուրարտուն, որքան էլ պարմանալի թվա, միշտ ապրում է: Ադոնցը հմտորեն հաստատեց նախահայկական և հայկյան Հայաստանների շարունակական կապը: Հայաստանի կանգվածը բարձր բերդի նման կանգնած է միջագետյան դաշտից վերև, որպես բաստիոն Իրանի և Անատոլիայի սարահարթների միջև: Սա կոչված էր դառնալու մի մեծ ժողովրդի ամրոց և ինքնատիպ քաղաքակրթության օրրան, որը ջերմեռանդ կերպով պաշտպանվելու է իր քաջարի բնակիչների կողմից: Ադոնցը հետևում է այդ ժողովրդին նրա առաջին բաղկացուցիչ մասերի ծագումից և պատմությունից սկսած: Դա խուրրի ցեղն է՝ ասիական մի ցեղ, որի լեզուն, օտարամուտ արիական տարրերից մեկուսացնելուց հետո, միավորվում է կովկասյան լեզուների խմբի մեջ: Ադոնցը խեթական վավերագրերի հիման վրա տարապատում է խուրրիական տարրերը հայ-անատոլիական սահմանագլխի անվանացանկում, մեր թվարկությունից առաջ XV—XIV դարերում: Խոսքը վերաբերում է խուրրիներին հարակատ այն ժողովուրդ-

ների, որոնք ըստ ասուրական բնագրերի XIII—XI դարերում գրավում էին հին հայկական լեռնաշխարհը, Նաիրի ժողովուրդների անվան տակ: Հետագա ժամանակներում այստեղ ուժեղ էին ֆեոդալական հակումները, որոնք իշխանության մասնատմամբ և հայկական լեռնաշխարհի բնական հատվածայնության շնորհիվ շատ հաճախ խոչընդոտել են հայոց պատմությունը. այսպես, օրինակ, պատմական Հայաստանում՝ Մամիկոնյան և Բագրատունյան ժամանակաշրջաններում: Բայց ահա, դեռևս Քրիստոսի ծննդից առաջ IX դարում, Նաիրյան իշխանությունների մեջ ուժեղ ձգտում առաջացավ մի միություն կազմելու, և Արզաշկունի ու Բիայնայի՝ մեր Մելազկերտի ու Վանի շուրջը կազմվեց Ուրարտուն: Դեռ ավելին. Ուրարտուի առաջին թագավորը, որի անունը հասել է մեզ, հենց այն Արամեն է, որը դարերի անջրպետի և ցեղերի միջով կարողացել է դառնալ հայ ազգի հերոսական էպոնիմը:

Թեպետ խոսքն առայժմ ապագա հայերից կանապանվող մի ցեղի մասին է (դրանք հին Նաիրիի ժողովուրդներն էին, հետևաբար և խուրրիներին նմանվող մի, հավանաբար, կովկասյան ազգաբնակչություն), համենայն դեպս Ադոնցը համարձակորեն հաստատեց, որ Ուրարտուն իր ամբողջ պատմությամբ հանդիսանում է Հայաստանի նախատիպը: Ինչպես որ հայերը դարերով դիմադրեցին իսլամի ճնշմանը, նույնպես և Ուրարտուի թագավորները դիմադրեցին Աշուրի սեմական պետությունների հարձակմանը: Նրանք Աշուրի դեմ միավորեցին հայկական լեռնաշխարհի մնացած մասի, այսինքն՝ Կարսի, Անիի և Սևանա լճի շրջանների, համասեռ ժողովուրդներին: Այդ տեսակետից նրանք Հայաստանի պատմական գոյության առաջին ստեղծողներն են, կամ թերևս ավելի նախընտրելի է ասել, որ դրանք առաջին պատմական ժողովուրդներն են, որ ենթարկվել են Հայաստանի աշխարհագրության կողմից թելադրված միավորման սկզբունքին: Ուրարտուն, մասամբ միջագետյան օջախից վերցված տարրերով, մասամբ էլ ի բնե ունեցած ընդունակությունների շնորհիվ, ստեղծեց իր երկրին հարմարեցված քաղաքակրթություն: Ուրարտուի թողած արձանագրությունները, ոռոգման աշխատանքները, գյուղատնտեսությունը ցույց են տալիս նրա մեծությունն ու hզորությունը: Նրա թագավորները հիմնեցին քաղաքներ, որոնք հայարամյակների ընթացքում նույն անուններով անփոփոխ հարատևեցին, իսկ Ուրարտուի կործանումից հետո ժառանգություն մնացին ծնվող Հայաստանին:

Այստեղ մենք շոշափում ենք Ադոնցի աշխատության ամենահետաքրքրական մասերից մեկը, որտեղ նա, սեպաձև բնագրերը ձեռքին, մեզ ցույց է տալիս, որ հայկական դասական քաղաքակրթությունը գալիս է ուրարտականից և ամբողջապես սուզվում է այդ քաղաքակրթության մեջ ճիշտ այնպես, ինչպես որ այսօր մեզ ծանոթ հունական տեղանունների

և «հելլենական քաղաքակրթության» բառերի մի մասը հանդիսանում է հին էգեացիներից ժառանգած ավանդ: Էգեական քաղաքակրթությունը իրականում չի մահացել: Միկենեի միջնորդությամբ և դորիա-ախական միջնադարին հակառակ, դա է դասական հելլենականության ակիզբը: Ուրարտուն Հայաստանի համար խաղացել է ոչ նվազ դեր, քան մինոյական Կրետեն՝ Հունաստանի համար: Չնայած թրակա-փռյուգիական ներգաղթի հետևանքով տեղի ունեցած անխուսափելի բախմանը, Ուրարտուի և Հայաստանի միջև ընկած է հաջորդականության իրական կապը: Ադոնցը ի դեմս հին ուրարտացիների իրավամբ ողջունում է հայ ժողովրդի մի մասի նախահայրերին. այդպես, հելլենական կամ լատինական ցեղերը, չնայած իրենց լեզվաբանական ու պատմական հնդեվրոպական շրջանակներին, մասամբ արյունակից են էգեական և էտրուսկյան ցեղերին: Ահա թե ինչու համեմատությունն այստեղ չպետք է կանգ առնի, որովհետև գոյություն ունեն քիչ հնդեվրոպական ժողովուրդներ, նույնիսկ նրանցից ամենահայտնիները, որոնք իրենց հասունությամբ պարտական չինեն նախնական մշակութային տարրի առկայությանը: Օրինակ, գիտե՞նք արդյոք մենք, թե Գալլիայում կելտական խավը, որը մեկ մոտ համեմատաբար ուշ շրջանին է առնչվում, մեգալիթյան քաղաքակրթությանը ժամանակակից որքան հնագույն ցեղեր է կլանել: Գիտե՞նք, թե Իրանում մեդապարսիկները որքան են պարտական Սուզայի նախնական ցեղերին և քաղաքակրթությանը: Հնդկաստանում նույնպես հնդկական կոմպլեքսը պարտական է ոչ միայն Ինդոսի նախաարիական քաղաքակրթությանը, այլ նաև դրավիդյան հանճարին: Այս բոլոր դեպքերում հնդեվրոպական հանճարը հին քաղաքակրթության ժառանգությունը վերանորոգել է, նրա վրա ավելացնելով իր սեփականը, բայց ինքն էլ է փոփոխվել այդ քաղաքակրթության միջոցով:

Ադոնցի տեսությունը, այսպիսով, տալիս է հայ ժողովրդին իր հնդեվրոպական ակնվական տիտղոսների հետ մեկտեղ դեռ ավելի հին տիտղոսներ: Նա ցույց է տալիս, որ այս ժողովուրդը, եթե կարելի է այդպես ասել, ավելի հին է, քան ինքը: Հնդեվրոպական է, անշուշտ, իր ցեղային պատկանելությամբ և լեզվով, բայց առնչվում է նաև, իր բնօրրանում գտած մշակույթով, այն հազարամյա քաղաքակրթությանը, հին ժողովուրդներին, որոնց Առաջավոր Ասիան գուցե պարտական է իր ամենափայլուն կարգացմամբ, մի մշակույթ, որը նախամիտանական և նախախեթական շրջանների միջոցով հասնում է մ.թ.ա. XVII դարից դեռ ավելի վաղ ժամանակները:

Ադոնցը ցույց է տալիս, որ ուրարտական պետությունը, երբ այնքան փառավոր պատմությունից հետո անհետացավ քարտեզից, արդեն կատարել էր իր առաքելությունը՝ փրկելով հայկական միջնաբերդը Միջագետքից

խուժող սապատակություններից: Ո՛չ Աշուրը, ոչ էլ Բաբելոնը, որոնք առժամանակ կարթել էին հին աշխարհի մնացած մասը, չկարողացան գերության ենթարկել ապագա Հայաստանը: Ուրարտուն ջահը խկույն հանձնեց հնդեվրոպական երիտասարդ այն ազգին, որը նրանից ստացավ նույն առաքելության պարտականությունը:

Մի քանի հուզիչ էջերով, որոնց մեջ գիտնականը գրիչը պիչում է հայրենասերին, Ադոնցը ցույց է տալիս այդօրինակ ժառանգության ողբերգական մեծությունը: Հետևենք նրա ընթացքին: Հայկական ամրոցը, ինչպես ուրարտական բաստիոնն էր՝ կպաշարվի: Անկասկած, նա կհարմարվի աքեմենյան գերիշխանությանը, որը, նախ, ինչպես Անաբասիսն է վկայում, կհարգի նրա ինքնավարությունը: Նա նույնիսկ կխուսափի մակեդոնական հաղթանակի պոռ դառնալուց, և դրանից հետո հելլենիստական անիշխանության շնորհիվ է, որ հին Հայաստանը կհասնի իր ընդարձակման գագաթնակետին, և դա կլինի Տիգրան թագավորի օրոք: Սա մի չճանաչված մեծ իշխող է, որը շատ ավելի մեծ արժանիքներ ունի, քան նրա ժամանակակից Միհրդատը, որով հիացել է պատմությունը, մանավանդ, եթե նկատի ունենանք, որ Միհրդատը փայլուն կերպով «ինքնապանության մղեց իր պետությանը», մինչդեռ Տիգրանը իր ժողովրդի ապրելու իրավունքն ապահովեց հավիտենականության համար:

Տիգրան Մեծի առջև ծառացած էր մի էական խնդիր՝ ընտրություն կայացնել Արևելքի և Արևմուտքի՝ Հռոմի և Պարթևների միջև: Նա, համաձայնելով Պոմպեոսի հետ, ընտրեց Արևմուտքը: Սա մի վճռական ընտրություն էր, որովհետև դա էր լինելու ամբողջ հայ ազգի ուղին հետագա ժամանակներում: Բայց որքան տառապանքների գնով էր լինելու դա,— նկատում է Ադոնցը: Մեր բարեկամն այդ ժամանակաշրջանն ուսումնասիրած ամենափայլուն բյուզանդագետներից մեկն էր, ուստի և հենց նա կարողացավ ճշգրիտ ու անկողմնակալ հոդվածներով ցույց տալ, թե Բյուզանդիան ինչեր է պարտական Հայաստանին, սկսած «մակեդոնական» մեծ հարստությունից, որը ծերացած պետության առջև բացեց X դարի պարմանալի վերածննդի դռները: Ադոնցը մեզ ցույց է տալիս նաև, թե Բյուզանդիան որքան վատ վարձատրեց Հայաստանին՝ նրա մուծած ավանդի դիմաց: Որպես ապացույց, ես ուզում եմ հիշատակել Հուստինիանոսի ժամանակաշրջանի Հայաստանին վերաբերող փայլուն թեզը (դիսերտացիան), որով Ադոնցը ներկայացնում է Արևելքի կայսրության սիստեմատիկ ջանքերը՝ ապազգացնելու Հայաստանի այն մասը, որը նրան էր հանձնվել թեոդոսյան բաժանումից հետո: Բյուզանդիան էր, որ սելջուկյան ներխուժման դեմ Մեծ Հայքի պաշտպանությունը անձամբ իր ձեռքն առնելու պատրվակի տակ XI դարում վերջ տվեց Բագրատունյաց և Արծրունյաց ծաղկուն պետություններին, կարճ ասած, վերջ տվեց հայ-

կական անկախությանը, որպեսզի դրանից անմիջապես հետո թուրքերին լքի այս երկիրը: Կարելի՞ է ասել, որ Արևմուտքը՝ սկսած խաչակիրներից մինչև XX դար, ծանր պատասխանատվություն չի կրում մի ժողովրդի նկատմամբ, որին պարբերաբար մղել է արկածախնդրությունների, վտանգի պահին լքելու համար:

Այսպիսի ծրագրից հետո որքան ափսոսալի է, որ, անգութ ճակատագրի երեսից, Ադոնցի սկսած Հայաստանի մեծ պատմությունը կանգ է առնում առաջին իսկ գլուխներում: Ափսոսանքն ավելի ցավալի է դառնում, մանավանդ, այն պատճառով, որ այդ գլուխների հաջողությունը մեզ կատարյալ է թվում: Այնուամենայնիվ, մենք անչափ ուրախ ենք, որ այսպիսով մեր ձեռքի տակ ունենք ըստ ամենայնի մի կատարյալ գործ հայոց պատմության այն մասի վերաբերյալ, որը մինչև հիմա շատ քչերին էր մատչելի, եթե ոչ բոլորովին անծանոթ: Դա հռչակավոր գիտնականի կողմից մի փառավոր նվեր է իր հայրենակիցներին, քանի որ Ադոնցը նրանց վերադարձնում է մոտավորապես տասը դար: Սա Ադոնցի՝ մահվան ժամին ընծայած արքայական պարգևն է իր երկրին, որի պատմությունը նա կրկնապատկում է:

Գլուխ առաջին

# ՆԱԽԱՊԱՏՄԱԿԱՆ ԴԱՐԱՇՐՋԱՆ

*Նախապատմական շրջանն ընդգրկում է դպրությանը նախորդող ժամանակը և իր տվյալները հայթայթում է հնագիտական ու մարդաբանական նյութից։*

*Հայաստանի նախապատմական անցյալը դեռևս բավարար չափով լուսաբանված չէ։ Նրա հետազոտությունն սկսվել է, բայց հետևողական կանոնավորությամբ չի ընթացել։ Հողն իր ընդերքում դեռևս շատ անակընկալներ է թաքցնում։ Այդ բնագավառում կատարված սակավաթիվ աշխատանքները այնուհանդերձ թույլ են տալիս որոշ գաղափար կազմելու երկրի հեռավոր անցյալի մասին։*

*Առաջին պեղումները ձեռնարկվել են 1876 թվականին մի քանի ռուս հնագետների կողմից։ Սրանք Դիլիջանի մոտ, Ռեդկին-լագեր վայրում հայտնաբերեցին 75 դամբարաններից բաղկացած մի մեծ գերեզմանատուն*[1]*։*

*Ավելի սիստեմատիկ հետազոտությունների պատիվը պատկանում է Ժ. դը Մորգանին։ Ալավերդու և Ախթալայի շրջակայքում, Թիֆլիս-Ալեքսանդրապոլ երկաթուղագծի հատվածում նա պեղեց ավելի քան 576 դամբարան*[2]*։*

*Ապա գերմանացի ճարտարապետ Վ. Բելքը, Գետաբակի մոտ, Գանձակ—Էլիզավետպոլից ոչ հեռու պեղեց մոտավորապես 300 դամբարան*[3]*։*

---

[1] *Արդյունքները հրապարակվեցին Ֆրիդրիխ Բայերնի* Contribution à l'archéologie du Caucase, précédée d'une introduction biographique par E. Chantre (Lyon, *1882)* *խորագիրը կրող աշխատության մեջ։* **Friedrich Bayern,** Untersuchungen über die ältesten Cräber und Schatzfunde in Kaukasien, herausgegeben mit einem Vorwort, versehen von Rud. Virchow, «Zeitschrift für Ethnologie», *1885,* Berlin.

[2] **J. de Morgan,** Mission scientifique au Caucase. Etude archéologiques et historiques, tome premier. Les premiers âges dans l'Arménie russe.

[3] Verhandlungen der Berliner Gesellschaft für Anthropologie, Ethnographie und Urgeschichte, *1894.*

*Շատ չանցած, 1892 թվականին, Մոսկվայի Հնագիտական ընկերության կողմից գործուղված Ա. Իվանովսկին պեղեց բազմաթիվ գերեզմանոցներ և հայտնաբերեց 91 դամբարան Գետաբեկում, Կալաքենդում, Առաչաձորում, Վանքում և այլ վայրերում*[1]։

*Դը Մորգանից հետո, անշուշտ, ամենակարևոր պեղումները պատկանում են Հայկական ազգագրական ընկերության նախագահ Ե. Լալայանին, որը հայտնաբերեց 500-ից ավելի դամբարաններ*[2]։

*Թուրքահայաստանում ուսումնասիրված է ընդամենը մեկ գերեզմանաթումբ Վանա բերդի մոտ, Շամիրամալթիում*[3]։ *Այսպիսով, Հայաստանի մեծ մասը դեռևս չի հետազոտված։*

*Նախապատմական երկու առաջին դարաշրջաններից՝ պալեոլիթ և նեոլիթ, առաջինը գոյություն չի ունեցել Հայաստանում և ոչ էլ Իրանում, իսկ երկրորդը, եթե դա իսկապես գոյություն է ունեցել, երկար չի տևել։ Այդպես է կարծում Ժ. դը Մորգանը, որը նեոլիթի դարաշրջանից հայտնաբերել է գեթ մի քանի առանձին առարկաներ, իսկ պալեոլիթյան ժամանակաշրջանի արտադրանքի և ոչ մի հետք չի գտել։ Նրա կարծիքով, Հայաստանը սառցե դարում անմարդաբնակ է եղել։*

*Դրանից հետո, 1925 թվականին, Զանգու գետի ափին, գործարան կառուցելու հետ կապված հողային աշխատանքների ժամանակ, վեց մետր խորության վրա գտնվեց մարդու մի կմախք, դիմացը մի կայծքար։ Հնագետները, տեղում քննելով կմախքը, գտան, որ դա պալեոլիթյան տիպ է*[4]։ *Եթե այդ կարծիքը վերջնականապես հաստատվի, դը Մորգանի վարկածը կխախտվի*[5]։

*Գալով նեոլիթի շրջանին, Մորգանից հետո կատարված կարևոր հայտնաբերումները հաստատում են նրա անվիճելի գոյությունը Հայաստանում։ 1913 թվականին էջմիածնի մոտ գտնվող Շրեշ-բլրի հետազոտությունը և 1927 թվականին Երևանից 15 կիլոմետր հեռավորության վրա գտնվող Էլար գյուղի զանազան վայրերում կատարված պեղումները շատ արդյունավետ եղան։ Այստեղ պեղվեց հարուստ շարժական գույք ունեցող մոտա-*

---

[1] Материалы по археологии Кавказа, 1911.

[2] **Ե. Լալայան,** *Դամբարանների պեղումները խորհրդային Հայաստանում, Երևան, 1931։*

[3] **L. W. King,** The prehistoric cemetery at Shamiram-alti near Van in Armenia, «Proceedings of the Society of the Biblical Archaeology», XXXIV *(1912), էջ 198 և շար.։*

[4] *Նույն՝ 1925 թ. Պաղեստինում, Տիբերիադի լճի մոտ հայտնաբերվեց նեանդերթալյան մարդու դիմագծերով մի գանգ։* «Revue biblique», *1925, էջ 583 և շար.,* **Adolf Lods,** Israël, *էջ 46։*

[5] **Ա. Քալանթար,** *Քարե դարը Հայաստանում, «Նորք» հանդես, նո. 5 և 6։* **Խ. Սամուելյան,** *Քարե դարը։*

վորապես հարյուր դամբարան։ Այդ գերեզմանները արտաքինից նման են մեծ մասամբ բոլորաձև, 30—150 սանտիմետր բարձրություն ունեցող փոքր հողակույտերի, որոնք հողի շերտերի և քարերի տակ թաքցնում են առանձին շիրիմներ, հաճախ ծածկված սալաքարերով։ Այնտեղ, 150 սանտիմետր խորության վրա տարածվող մոխրաշերտերում գտնվել են նեոլիթյան շրջանին պատկանող քարե առարկաներ։

Հայտնաբերվել են նաև հուղարկավորության համար նախատեսված սափորներ, որոնք վկայում են դիակիզման կիրառության մասին։ Մարդկային ոսկորների կույտերի մեջ երբեմն պատահում են նաև անասունների ոսկորներ։

Էլարում պեղումների ժամանակ գտնվեց մոխրով լի մի ժայռափոր ստորերկրյա քարե սարկոֆագ, որը պարունակում էր բազալտե մի մուրճ, ձիու մեկ ատամ և խեցու կտորտանք։

Շիրիմներում գտնված շարժական գույքի մեջ կային զանազան սկուտեղներ և մեկ փոքրիկ գնդակ, որոնք թերևս մաս են կազմել վուշ մանող գործիքի — ապացույց այն բանի, որ մանածագործությունը և հագուստների արտադրությունը հայտնի են եղել երկրի նեոլիթյան բնակիչներին։

Մեգալիթյան կառուցումները, որոնք այնքան բնորոշ են նեոլիթի դարաշրջանին, Հայաստանում ամենուրեք առատ են՝ դոլմենների, մենհիրների, կրոմլեխների և կիկլոպյան պարիսպների ձևով։ Այս տեսակետից Արագած (թուրքերի կողմից աղավաղված՝ Ալագյոզ) լեռան շրջակայքը ներկայացնում է հնագիտական մի բնական թանգարան, այնքան հարուստ է նա նախապատմական կոթողներով։ Քասաղ գետի ափին տարածված հին Արագածոտն գավառը ամբողջապես ծածկված է մեգալիթյան հետքերով։ Քասաղ գետն սկիզբ է առնում Արագած լեռից և թափվում Արաքս գետը։ Օշական, Փարպի, Կոշ, Ամբերդ, Աղց գյուղերի շրջակայքում կան բազմաթիվ կիլոմետրեր տարածվող դաշտեր, որոնցով մեկ ցրված են հարյուրավոր դոլմեններ, կրոմլեխներ, մենհիրներ։ Օշականի մոտ գտնվող մի քարքարոտ վայրում կան բազմաթիվ դոլմեններ։ Փարպի գյուղի և Ամբերդի հյուսիսում գոյություն ունեն կրոմլեխների դաշտեր։ Շամիրամում պահպանված են մեծ քանակությամբ մենհիրներ։ Վերջերս գրանցվեցին մեգալիթյան ավելի քան քսան խմբեր։ Նմանօրինակ հուշարձաններով հարուստ են նաև երկրի մյուս մասերը։ Սիսիանի շրջանի Ղարաքիլիսա գյուղի մոտ, ինչպես նաև Շուշիից ոչ հեռու, Քաչալակ լեռան վրա, դրանք հաճախ են հանդիպում։

Մեգալիթյան դաշտերում, ավելի բարձր տեռասների վրա նկատվել են խոշոր վեմերից բաղկացած կառույցներ։ Դրանք կազմված են բարձունքից իջնող բազմաթիվ՝ մեկը մյուսին ընդգրկող շրջանաձև պարիսպներից։ Հայտնաբերվել է այս տիպի տասներկու կառույց, որոնցից ամե-

նալավ պահպանվածը գտնվում է Կոշի և Աղավնատան միջև։ Այդ կառույցների նպատակը հայտնի չէ։ Թվում է, թե նրանց մի մասը եղել են բերդեր, մանավանդ այնպիսինները, որոնք մի քանի շարքանի են, մյուսները, հավանաբար, շրջապատել են սրբավայրերը։

Վերոհիշյալ կառույցներին առեղծվածային բնույթ են տալիս այն պատերը, որոնք սկսվում են արտաքին պարիսպներից և իջնում մինչև դաշտավայր։ Սրանք կառուցված են միջին չափսերի հասարակ քարերից և ունեն մի քանի հարյուր մետր երկարություն։ Նման պատերը երբեմն խաչաձևվում են և շրջափակում առանձին հատվածներ, որոնք, հավանաբար, որպես բնակարաններ են ծառայել։ Հետագա ավելի մանրամասն հետազոտությունները կճշգրտեն դրանց նպատակը[1]։

Արաքս գետը թափվող Արփայի ակունքների վրա ընկած Դայլակլա գյուղի մոտ հայտնաբերված պարիսպը պատկանում է, ըստ երևույթին, նեոլիթյան տիպի հուշարձաններին։ Այդ պարսպի շրջակայքում կան բոլորաձև սենյակներ, որոնց պատերը կառուցված են մանր քարերով, իսկ տանիքը՝ մեծ սալերով։ Տանիքում թողնված անցքը լուսամուտի տեղ է ծառայել։ Ենթադրվում է, որ սենյակները հատկացված են եղել բնակության համար։ Այնտեղ գտնվել են՝ մեկ քարե մուրճ, օբսիդաքարե երկու սլաք և մեկ դանակ՝ նույնպես օբսիդաքարից։ Շրջակայքում կան շատ հողակույտեր, որոնցից մի քանիսը պեղված են, բայց երկու մետր խորության վրա գտնված է միայն մոխիր։

Քարե դարը ներկայացված է գրեթե բացառապես այն կոթողներով, որոնք պահպանվել են հողի մակերեսի վրա։ Հետագա պեղումները ի հայտ կբերեն այնպիսինները, որոնք թաքնված են հողի ընդերքում։

Կատարված պեղումները հայտնաբերել են բազմաթիվ այնպիսի դամբարաններ, որոնք համարյա բոլորը պատկանում են մետաղի դարին, որը հաջորդեց հղկված քարի, կամ նեոլիթի, դարին։ Նրանց թիվը հասնում է 1700-ի։ Հայտնաբերված է մեծ քանակությամբ շարժական գույք։ Դամբարանների հասակին վերաբերող ժամանակագրական հարցը քննելուց առաջ անհրաժեշտ է տալ նրանց պարունակության հակիրճ ամփոփումը։

---

[1] Երևանում 1923 թվականից սկսած գոյություն ունի Հայկական հնագիտական ընկերություն, որը բազմաթիվ գիտական արշավախմբեր է կազմակերպել վերոհիշյալ հին Արագածոտնի շրջանում։ Մեգալիթյան հայտնագործություններ արվեցին հենց այդ արշավների ժամանակ։ Արշավախմբի գործունեության արդյունքները ամփոփել է Երևանի պետական համալսարանի պրոֆեսոր Ա. Քալանթարը վերոհիշյալ աշխատությունում՝ Քարե դարը Հայաստանում, «Նորք», № 5 (1925)։

Հ. Բերբերյանը այդ մասին մի լավ և լիակատար հաշվետվություն է ներկայացրել՝ «Revue des Etudes Arméniennes», VII, պրակ 2, 1927։

Պեղված գերեզմաններն իրենց կառուցվածքով միևնույն ոճի են։ Ընդհանուր ձևը ներկայացնում է մի տեսակ արկղ, որին որպես կողմեր են ծառայում չորս մեծ սալաքարեր և որպես ծածկոց՝ մեկ կամ երկու լայն քար։ Տարբերությունը արկղերի չափսերի և մանավանդ այն վարպետության մեջ է, որով քարերն ընտրված և դասավորված են։ Փաստորեն դամբարանները վերարտադրում են դոլմենների ձևերը։ Այդ իսկ պատճառով գերեզմանները որքան ավելի են նմանվում ու մոտենում դոլմեններին, այնքան ավելի հին են։

Որմնաքարերով պարսպված և սալաքարերով ծածկված կամ պարզապես որմնաքարերով կամարակապված դամբարանները պետք է դիտել որպես ամենանոր դամբարաններ։

Դիակը գերեզման է դրվել կողքի վրա կամ, ավելի հաճախ, վերին մասով։ Կան շիրիմներ, որտեղ դիակները տեղավորված են կարասների մեջ, ինչպես դագաղներում։ Երբեմն գործածված են երկու միակցված կարասներ։ Մեռածի մարմինը տեղավորել են մեկում, իսկ ոտքերը՝ մյուսում[1]։ Դիակները դրված են նստած կամ պպզած վիճակում։

Դամբարաններում եղած իրերն են՝ զենքեր, գործիքներ, զարդեր և բրուտեղենի կտորտանք։ Զենքերի խումբը բաղկացած էր սրերից, նիզակներից, կացիններից, աղեղներից և նետասլաքներից։ Ավելի շատ են դաշույնները, քան սրերը։ Այսպես, գերեզմանոցների մի խմբում գտնվել է 76 դաշույն և միայն յոթ սուր։ Այս դաշույններից 69-ը պղնձից են, իսկ յոթը՝ երկաթից։ Առաջինները երկու տեսակի են՝ մեկի շեղբն ու կոթը մի կտոր են կազմում, մյուսը տարբեր կտորներից է։ Երկաթե զենքերը՝ դաշույնները թե սրերը, պատկանում են վերջին տեսակին։

Բրոնզե և երկաթե սլաքները միևնույն ձևի են. նրանց տերևանման շեղբի միջնագիծը ցցուն է և անցքի միջոցով ամրացվում էր փայտե կոթին։ Կացինները շատ հազվագյուտ են պատահում։ Նրանցից գտնվել է մեկ հատ բրոնզից, իսկ հինգը՝ երկաթից, որոնցից չորսն ունեն կոթառ և հատուն սայր, իսկ մեկը՝ կոթառ և սուր սայր։ Դժվար է ասել, այդ կացինները ծառայել են որպես զե՞նք, թե պարզապես գործիքներ են եղել։

Պեղված գերեզմանոցներում աղեղներ չկան։ Սակայն պատկերազարդ գոտիները, որոնց մասին խոսվելու է ավելի ուշ, բավական որոշակի գաղափար են տալիս անտարակույս գործածության մեջ եղած աղեղների ձևի մասին։ Սրանք բաղկացած են եղել երեք կեռ մասից, որը ուշագրավ է։

Նետասլաքները բավական բազմազան են։ Նրանք օբսիդաքարից, բր-

---

[1] Դամբարանի այս ինքնատիպ ձևը հայտնի է եղել Պաղեստինում։ Այնտեղ գտնվել են երեխաների կմախքներ, պարփակված մեկ կամ երկու հակադիր սափորներում, մուտքի դիմաց։ (A. Lods, Jsraël, p. 130.)

րոնզից և երկաթից են։ Մի մասն ունի փայտի մեջ ամրացվող պոչեր, մյուսները՝ կոնաձև անցքեր։ Նրանցից մի քանիսը եռանկյունաձև են, ատամնավոր և ոչ-ատամնավոր։ Մետաղե սլաքները քարե սլաքների ձևն ունեն։

Պետք է նշել նաև քարե կամ բրոնզե մի քանի գուրզերի գլխիկներ, ինչպես նաև ատամնավոր մի մատանի, որ կռփամարտի գործիք է եղել։

Կմախքների ոտքերի տակ գտնվել են 3—4 սանտիմետր տրամաչափի բրոնզե փոքր օղակներ, որոնց դերը մնում է անհայտ. ենթադրելի է, որ դրանք կազմել են լասոյի մեկ մասը[1]։

Գործիքների խումբը բաղկացած է բրոնզե և երկաթե ուղիղ կամ կոր դանակներից, որոնք ունեն ոսկորե, փայտե, մետաղե քառակուսի կամ կլոր կոթեր, բրոնզե կամ ոսկյա սանրերից՝ զարդարված բրոնզե օղակներով, և մեկ կամ երկու անցքով սրելու քարերից, որոնք երբեմն ունեն բրոնզե օղակ։ Կանանց դամբարաններում կան բրոնզե, երկաթե և ոսկորե կարճ ու երկար ասեղներ, ինչպես և մազեր պոկելու ունելիներ։ Գրանցված են նաև երկու բրոնզե մանգաղ և երեք եղան (մեկը հայտնաբերվել է Մորգանի կողմից, երկուսը՝ Լալայանի), որոնց դերն անհայտ է։

Զարդերի գույքամատյանում հիշատակվում են ականջօղեր, մազերի օղեր, մանյակներ, ապարանջաններ, մատանիներ, գոտիներ, ճարմանդներ, գնդասեղներ, մեդալիոններ, շղթայիկներ, կախոցներ և այլն։

Ականջօղերը կազմված են միմիայն բրոնզե օղակներից, հազվադեպ՝ արծաթյա, երբեմն՝ թելի վրա շարված մեկ կամ բազմաթիվ սարդիոնի կամ ապակու ուլունքներով։ Որոշ դամբարաններում հայտնաբերված փոքրիկ ուլունքները հավանաբար գործածվել են որպես գինդեր, որոնք թելով կապում էին ականջներից։ Կան գինդեր, որոնք ուլունքների փոխարեն երկու ծակած ոսկոր են կրում։ Կան նաև այնպիսի գինդեր, որոնք կազմված են օղակաձև ոլորված բրոնզե լարից, որի ծայրը վերջանում է պարուրաձև՝ օղակի մեջտեղում։

**Մանյակները** կազմված են սարդիոնի, ապակու և ճենապակու ուլունքներից։ Որոշ մանյակներ կվարցից, ագաթից և կարմիր սարդիոնից են։ Մի քանի մանյակների մեջ կարմիր սարդիոնից ուլունքները թելով մեջընդմեջ կապված են կապարե փոքրիկ ուլունքների հետ, իսկ կապարե կախոցները մեդալիոնների դեր են խաղում։ Մանյակներն ընդհանրապես կազմված են 40—80 ուլունքներից։ Պատահում են նաև մանյակներ՝ լայն օղակներով, որոնց ծայրերը կորացված են։ Ապակյա ու սարդիոնե խոշոր ուլունքները, ինչպես նաև նոճու ճյուղի կեղևները կարծես ծառայել են պարանոցից կախելու համար։

[1] Ե. Լալայան, նշվ. աշխատ., էջ 168։

Հայտնաբերվել են նաև մեծ քանակությամբ **ապարանջաններ**, որոնք պատրաստված են միևնույն նյութից, ինչ որ գինդերը, այսինքն՝ բրոնզից, երկաթից, արծաթից, կապարից և բազմազան ոսկորներից։ Տափակ կամ կլոր այս զարդերը մարդիկ կրում էին թևերի, բազուկների և ոտքերի վրա։ Մեծ մասն էլ պարզապես թեթև հղկված հարթ օղակներ են և գործածվել են որպես զարդ և որպես դրամ։ Որպես զարդ գործածվածներն ունեն նախշեր և զանազան ուռուցիկ զարդարանքներ։ Օղակների ծայրերը երբեմն վերջանում են օձի գլխի կերպարանքով։

**Մատանիները**, որ ավելի հազվադեպ են, քան ապարանջանները, նույնպես սովորական օղակներ են՝ վրան փաթաթված լարով կամ պատված բրոնզե շերտով, առանց որևէ քարի։ Դրանցից գտնվել են կանանց, տղամարդկանց և նույնիսկ երեխաների գերեզմաններում։

**Գոտիները** նման են բրոնզե շեղբերի, որոնց եզրերը ծածկված են երկրաչափական զարդերով, իսկ միջին մասը քանդակապատ է։ Շեղբը երբեմն այնքան լայն է, որ նրա վրա որսի տեսարաններ են պատկերված։ Հատուկ ուշադրության են արժանի գոտիներից երկուսը։ Մեկը ներկայացնում է անասունի գլխով մի մարդու, որը կանգնած է երկու ձիով լծված կառքի վրա, իսկ դիմացը պատկերված է այծյամների հոտը հետապնդող մի նետաձիգ։ Մյուսի վրա պատկերված է թռչունի գլխով մի աղեղնավոր, որը կանգնած է երկու ձիերի ետևում, իսկ ձիերի վերևում թռչում է մի բզեզ, դիմացը՝ նետ և երկրորդ աղեղնավորը։ Արդյո՞ք սա դիցաբանական մի տեսարան չէ։

**Ֆիբուլաները** բրոնզե լարից կազմված և սսեղով ամրացված աղեղի նման են։ Վերջինը որոշ նմուշներում աղեղի հետ միասին կազմում է մի կտոր։ Հետաքրքիր է նշել, որ գտնվել է մի մեծ ֆիբուլա, որը նման է Հայաստանում մինչև օրս էլ գործածվող այն ֆիբուլաներին, որոնցով անասուններին ախոռում կապում են մսուրին։

**Գնդասեղները** բազմաթիվ են և բազմազան։ Նրանց կոթերի վրա բացված են անցքեր։ Տարբերությունը գլխի ձևի մեջ է։ Կան այնպիսիները, որոնց գլուխները բավականաչափ ընդգծված չեն, մյուսներինը կոնաձև են կամ պրիզմայաձև։ Կան նաև բավական հաստ և ծանր գլխիկներով գնդասեղներ։ Մի քանիսի գլխիկները թռչունի կերպարանք ունեն։ Հաճախ գնդասեղներն ունեն կախոցներ և բրոնզե զանազան զարդարանքներ, օրինակ՝ բրոնզե փոքրիկ միաձույլ գլաններ կամ գնդասեղից շղթայիկներով կախված զանգակներ։

Կան նաև մեծ քանակությամբ **կոճակներ**, որոնք գործածվել են ոչ միայն հագուստները կոճկելու համար, այլ նաև ծառայել որպես հագուստների և գոտիների զարդարանք։ Որոշ դամբարաններում հայտնաբերվել են 200-ից ավելի կոճակներ։ Ձևով կոճակները կլոր են, կիսագնդաձև, շեղանկյուն, ծակ-ծիթապտղաձև և այլն։

Խեցեղենը կազմում է դամբարանային գույքի մի ստվար մասը. կան դամբարաններ, որոնցից հանվել է մինչև քսան անոթ։ Միայն Լալայանի պեղումների ժամանակ հայտնաբերվել է 672 կտոր բրուտեղեն, չհաշված փորելու և փոխադրության ընթացքում ջարդվածները։ Ըստ պատրաստման եղանակի բրուտեղենը բաժանվում է երկու տեսակի՝ ձեռքով և դուրգով պատրաստվածների։

Առաջին տեսակի նմուշները խմորի և ձևի առումով պարզունակ են։ Կժերն ունեն կանթեր, իսկ անոթները, որ բազմաթիվ են՝ տափակ հատակ։ Կաթսաները տարբեր ձևի են, նրանցից մի քանիսն ունեն ոտքեր։ Ձեռքով պատրաստված ոչ մի բրուտեղեն զարդարանք չունի։

Դուրգի օգնությամբ պատրաստված ամանեղենը շատ ավելի գեղեցիկ ձև ունի և նուրբ կավից է։ Ջրի կամ գինու համար գործածված կժերն ու անոթները տարբեր տրամաչափի են. ստորին մասում գնդաձև և թեթևակի կոնաձև են, վիզը՝ կարճ, հատակը՝ տափակ։

Ճաշ եփելու համար նախատեսված կաթսաները կամ անոթները բավական լայն են և գրեթե գնդաձև։ Սրանք ունեն երկու կանթ, բերանը սեղմված, վերին մասը ծածկված է հորիզոնական գծերով։ Ամենափոքրերն ունեն միայն մեկ կանթ։ Կան այնպիսիները, որ կանթ չունեն։ Դրանցից մեկը հետաքրքրական ձև ունի՝ այն իրենից ներկայացնում է թաթերի վրա նստած մի չորքոտանու։ Գավաթները զանազան ձևի են՝ ըստ կավագործի ճաշակի։ Մի քանիսը նման են բաժակների, իսկ մյուսները՝ երկար կանթով գլանաձև լայն սկահակի։ Կա եղջերուի գլխի տեսք ունեցող կանթի մի նմուշ։

Պնակները կոպիտ են, քամիչները նույնպես։ Ավելի խնամքով պատրաստված ամանների եզրերը զարդարված են փորագրություններով։ Փոքր ու խորունկ պնակները գործածվել են ճրագի փոխարեն, որպիսիք դեռևս մեր օրերում կիրառվում են հայկական գյուղերում։

Պեղումների ժամանակ հայտնաբերվել են հիշարժան ևս մի քանի առարկաներ՝ բրոնզե հայելիներ, սանձի առանձին կտորներ (ձիերի ոսկորների մեջ), մի սայլակ և բազմաթիվ կամեր[1]։ Կամը մի տախտակ է, որի վրա շարված են սրածայր քարեր կամ երկաթե ատամներ՝ հասկերը ճզմելու համար։ Սա էլ այժմ գործածության մեջ է Հայաստանում։

Դամբարաններից հանել են նաև բրդյա կտորեղենի մնացորդներ։ Երկաթյա զենքերի ժանգի վրա դրոշմված որոշ կտորների հետքեր թույլ են տալիս ենթադրելու կանեփի կամ վուշի հյուսվածքի գործածությունը այդ ժամանակներում։ Թելերի հաստության ու նրբության տեսակետից կտորները այլազան են։ Գտնվել են նաև պարանների, ժապավենների և կաշ-

[1] Կամ, τρίβολον — ցորեն ծեծելու, կալսելու գործիք։

վե փոկերի մնացորդներ։ Բրոնզե գոտիների վրայի պատկերները ցույց են տալիս, որ հագուստները կարվում էին ոչ թե մեկ, այլ բազմատեսակ կըտորներից։

Այս հակիրճ ակնարկը թույլ է տալիս որոշ չափով գաղափար կազմելու երկրի մշակույթի մասին։ Նախքան վերջինիս բնութագրումը, անդրադառնանք պեղման ենթարկված դամբարանների ժամանակագրության հարցին։

Ժ. դը Մորգանը փորձեց դրանք բաժանել չորս կարգի և ամենահինը վերագրեց երրորդ հազարամյակին (մ. թ. ա.)։ Նրա կարծիքով, պղինձն ու երկաթը հայտնաբերվել են Հայաստանում, և հենց այստեղ է ծնունդ առել երկաթի արդյունաբերությունը, մ. թ. ա. քսաներորդ դարից առաջ։ Ավելի վաղ ժամանակներում երկիրն ապրել է բրոնզե դարը։ Սակայն բրոնզի արդյունաբերություն Հայաստանում դեռևս չկար։ Բրոնզը հանդիսանալով պղնձի և անագի խառնուրդ, կարող էր հնարվել միայն անագ ունեցող երկրում։ Հայաստանում և ամբողջ Առաջավոր Ասիայում այս մետաղը գոյություն չունի։ Անագ հայթայթելու համար պետք էր մինչև Չինաստան գնալ։ Ժ. դը Մորգանը Չինաստանն ընդունում է որպես բրոնզի հայրենիք։ Այնտեղից է Հայաստան հասել բրոնզի հետ ծանոթությունը։ Բրոնզե դարը Հայաստանում երկար չի տևել և իր տեղը զիջել է երկաթե դարին։ Ֆրանսիացի գիտնականը այս մետաղի գյուտի պատիվը վերագրում է Հայաստանին։ Նա գտնում է, որ Միջագետքը հանքեր չուներ. ուստի և երկաթը ներմուծում էր Հայաստանից։ Ո՛չ Ասորեստանը, ո՛չ Եգիպտոսը չէին կարող երկաթ հայթայթել, քանի որ նրանք նույնպես չունեին այդ մետաղը։

Պեղումները հաստատել են երկաթի գոյությունը Քաղդեայում՝ աքկադյան դարաշրջանում, Սարգոն I-ի և Նարամսինի օրով։ Հետևաբար, Հայաստանն այդ դարաշրջանից առաջ արդեն երկաթ ուներ։ Այս հանգամանքը նրան թույլ է տալիս բրոնզե դարը, որ երկաթե դարից առաջ է, ետ մղել դեպի երրորդ հազարամյակը։

Ժ. դը Մորգանը մոռացել է, որ անագի հանքերը նախնիներին ծանոթ էին Չինաստանից ավելի մոտ շրջաններում, հատկապես Պարսկաստանի արևելյան նահանգ Դրանգիանում[1]։ Անագ կար նաև Ինդոսի կողմերում, և այդ հանքը նշանավոր էր իր բարձր որակով[2]։ Այդ հանքերը հաջողությամբ կարող էին իրենց արտադրանքը մատակարարել Քաղդեային և Էլամին՝ բրոնզ ստանալու համար։ Անագը նույն անունն ունի հայերենում՝ **անագ**, ասուրերենում՝ anaku, հնդկերենում՝ naga։ Նույնությունը բացա-

---

[1] **Strab.**, XV, *2, 10.* γίνεται δε παρ' αὐτοῖς κασσίτερος.

[2] *Աշխարհացույց Հայոց, հրատ. Սուքրիի, էջ 39։*

ցրվում է, անշուշտ, փոխառությամբ, բայց ո՞ր ուղղությամբ։ Դա մնում է անհայտ[1]։ Հայկական լեռնաշխարհը շատ քիչ է հետազոտված, հետևաբար դժվար է եզրակացնել, թե այդ երկրում անագի հանքեր չկան։ Մորգանը ինքը նշում է, թե մի օր կարող են հայտնաբերվել հազարավոր տարիներ ի վեր մոռացված հանքեր[2]։

Մի կողմ թողնելով մետաղագործության ծագման բարդ ու համարյա անլուծելի խնդիրը, մեր նպատակն է հաստատել, որ Միջագետքում և Էգեականում քաղաքակրթությունը զուգադիպել է բրոնզե դարին, այսինքն՝ այդ քաղաքակրթությունը հիմնվել է բրոնզի արդյունաբերության վրա։ Էգեական աշխարհում բրոնզե դարն սկսվել է երրորդ հազարամյակում մեր թվականությունից առաջ։ Քաղդեայում պղինձը երևան է գալիս առաջին պատմական դինաստիայի օրով, մոտ 2500 թ.[3]։ Բրոնզը նույնպես հայտնի է՝ սաղավարտները, կացինները, նիզակների ծայրերը և այլ զենքեր, բոլորը բրոնզից, սովորական էին։ Հայաստանը, իր աշխարհագրական դիրքի բերմամբ, չէր կարող մեկուսացած մնալ Միջագետքի մշակույթից։ Նարամսինը Պիր Հուսեյնում՝ Ամիդի մոտ գտնվող մի գյուղում, թողել է մի քարակոթող[4]։ Ասուրական արշավանքները դեպի Հայաստան արդյո՞ք նպատակ չունեին, ի միջի այլոց, ձեռք բերելու անհրաժեշտ մետաղը։

Ամենուրեք բրոնզե դարին հաջորդել է երկաթե դարը։ Երկաթի ճանաչումը և նրա գործածությունը հետզհետե տարածվեց մինչև այն պահը, երբ այն մարդկության առջև բացեց առաջադիմության մի նոր դարաշրջան։ Միջագետքին վաղուց էր հայտնի երկաթը։ Էգեացիները երկաթը գործածում էին սկսած հենց երկրորդ հազարամյակից մ. թ. ա.։ Սակայն երկաթի արդյունաբերությունը Միջագետքում և Էգեականում դուրս մղեց բրոնզի արդյունաբերությունը երկրորդ հազարամյակի կեսերին։

---

[1] Anaku սեպագիր արձանագրությունների մեջ նշանակում է կապար։ Արճիճ հայերեն բառը իրականում փոխառություն է, նշանակում է կապար. բայց արդի պարսկերենում նրա համազոր arziz-ը ունի անագի իմաստ։ Գրաբար հայերենով կապար է, որը հիշեցնում է շումերերեն Ku-Babbar, արծաթ։ Ասորերեն՝ awâra, կապար։ Եթե հաշվի առնվի շումերերենը, կարելի է եզրակացնել, որ այդ բառը բաղկացած է kub և abbar-ից, իսկ ասորերենը պահպանել է միայն վերջին տարրը։

[2] **J. de Morgan**, Mission, I, էջ 35, համտ. L'Humanité préhistorique, էջ 125.

[3] **King**, նշվ. աշխ., էջ 42։

[4] Նարամսինը ապրել է Կյուրոսի (555—532) ժամանակակից Նաբոնիդից 3200 տարի առաջ, ինչպես որ այդ հաշվել է Նաբոնիդի (Նաբունաիդ) դրագիրը։ Քինգը (History of Sumer and Akkad, 1910, էջ 61) այս թվականը գտնում է չափազանցված և առաջարկում 2600 թ.։ Ըստ Լեհման-Հաուպտի (Zwei Hauptprobleme der Babylonischen Geschichte, էջ 172 և շար.), Նաբոնիդի դրագիրը սխալվել է՝ գրելով 3200 փոխանակ 2200-ի։

Պետք է որ այդպես եղած լինի նաև Հայաստանում։ Պեղման ենթարկված գերեզմանոցների մեծ մասում հայտնաբերվել է բրոնզե և երկաթե գույք։ Դա ապացուցում է, որ նրանք պատկանում են բրոնզե դարի վերջին կամ երկաթե դարի սկզբին։ Որոշ շիրիմներում կան պպզած կմախքներ, բրոնզե առարկաներով օժտված և, միևնույն ժամանակ, այլ կմախքներ՝ պառկած, կողքին՝ երկաթե զենքեր։ Ակնհայտ է, որ վերջին կմախքները դամբարան են դրվել հետագա դարաշրջանում։ Այն բավական հազվագյուտ դամբարանները, որոնց գույքը բաղկացած է բացառապես բրոնզից, անշուշտ ավելի հին են։

Տրոյայի ավերակներում երկաթի հանքեր չեն գտնվել։ Թիգլաթպալասարը (1117—1080) իր ավարի մեջ երկաթ չի հիշատակում։ Նա մեծ ավար է ձեռք բերել Միջագետքի հյուսիսային մասում, Հայաստանի սահմանների մոտ կատարած արշավանքներում[1]։ Սակայն Աշուրնասիրպալը (884—859) հաստատում է, որ ինքը Զավան երկրից, Ամիդայի շրջանից բերել է, հարուստ ավարի հետ մեկտեղ, 300 բիլտու երկաթ՝ parzillu[2]։ Զանազան անոթներից բաղկացած ավարի առարկաները բոլորը պատրաստված էին siparru բրոնզից (կամ պղնձից)։ Թիգլաթպալասարը բրոնզե (կամ պղնձե) aqqulat ere կացիններ է գործածել՝ Կաշիարի (Մասիուս) լեռներում ճանապարհ բանալու համար, մինչդեռ Աշշուրնասիրպալը իր տրամադրության տակ ուներ ոչ միայն բրոնզե կացիններ, այլև երկաթե փոքր կացիններ, kalabate parzilli[3]։

Կարելի է ասել, որ երկաթե դարը մ. թ. ա. XII դարից հետո է եղել։ Երկաթե դարի դամբարանները Հայաստանում բաժանվում են երկու խմբի՝ ըստ գտնված իրերի երկրաչափական և կամ բնական ոճի։ Մարդկանց և անասունների պատկերներ կրող բրոնզե գոտիները համարվում են բնական ոճի առաջին փորձերը։ Որոշ նմանություն են գտել այդ գոտիների և Հալլշտատյան կոչված արվեստի միջև։ Դա սկիզբ է առել մ. թ. ա. IX դարում, մի հանգամանք, որն իրավունք է տալիս գոտիները վերագրելու ուրարտական դարաշրջանին, որն սկսվում է IX դարից։ Ուրարտուի թա-

---

1 **Budge** and **King,** Annals of Kings of Assyria, էջ 41 և 43։

2 Նույն տեղում, էջ 238 և 347 և այլն։ Ավարի ցուցակում կան 2 բիլտու kaspu, 2 բիլտու ḫuraṣu, 100 բիլտու anaku, 200 բիլտու siparru, 300 բիլտու parazillu, 1000 դիկար siparru, 200 կապի siparru և այլն։ Նշված մետաղներն են՝ kaspu արծաթ, ḫuraṣu ոսկի, anaku անագ կամ կապար, siparru պղինձ, parzillu երկաթ։ Eru մետաղը այս ցուցակում չկա. գուցե դա նշանակում է պղի՞նձ, իսկ siparru-ն՝ բրո՞նզ։ Անգլերեն թարգմանությունը երկուսի համար երբեմն պղինձ, երբեմն բրոնզ է ցույց տալիս։ Ժ. դը Մորգանը Ժ. Մընանի թարգմանության համաձայն siparru-ն (պղինձ) ընդունել է երկաթի տեղ, և սա ազդել է նրա եզրակացությունների վրա (Missions, I, էջ 201)։

3 Նույն տեղում, էջ 39, 230, 331։

գավորներ Ռուսա II-ի (680—645) և Ռուսա III-ի (605—585) բրոնզե վահանները բնական ոճի հրաշալի նմուշներ են։ Դրանցից գտնվել են նաև Օսեթիայում և Թալիշում, որն առիթ է հանդիսացել, թեպետև իզուր, ենթադրելու սեերի՝ VII դ. դեպի Հայաստան կատարած արշավանքի մասին[1]։ Ավելի հավանական կլիներ հիշատակել կիմմերների և սկյութների ներխուժումը միևնույն դարում։ Սկյութների մի մասը տեղաբաշխվեց Հայաստանում, Շակաշենի շրջանում[2]։ Հետաքրքիր է, որ գեղաքանդակ գոտիները հայտնաբերված են հենց Գանձակի (Ելիզավետպոլի) շրջակայքում, որը գրեթե համապատասխանում է նախկին Շակաշենին։

Երկաթե դարով արդեն սկսվում է պատմական դարաշրջանը։ Թիգլաթպալասարի դարաշրջանի բազմաթիվ փոքր պետություններ վերջ ի վերջո միացան և IX—VII դարերում կազմեցին Ուրարտուի պետությունը։ Մինչև այժմ չի հայտնաբերված ոչ մի դամբարան, որը պատկաներ հաջորդ դարաշրջանին՝ մինչև քրիստոնեության սկզբնավորման ժամանակները։ Գուցե թաղման սովորությունը վերացե՞լ էր իրանական մազդեիզմի ազդեցության հետևանքով։ Պեղված դամբարանների մեծ մասը վերաբերում է բրոնզե դարին։ Դրանք ներկայացնում են տվյալ ժամանակաշրջանի երկրի մշակույթը՝ իր բնորոշ գծերով։ Քանի որ դամբարանը համարվում էր անդրշիրիմյան կյանքի բնակարան, ուստի նրանով կարելի է գաղափար կազմել բնակելի տան մասին, որի պատճենն էր, անշուշտ, դամբարանը։ Վերջինը ցույց է տալիս, որ տները ժամանակին կառուցվում էին առանց շաղախի, իրար վրա շարված խոշոր քարերով։ Կային նաև ստորերկրյա տներ։ Ընտանեկան գույքը բաղկացած էր մանավանդ խեցեղեն անոթներից։ Պեղված բազմաթիվ սենյակներ ցուցադրում են բրուտեղենի հարստությունը և նրա ձևի ու գույնի զանազանությունը։ Դրանցից կան ամեն մեծության՝ գդալներից սկսած մինչև հսկա կարասները, և ամեն գույնի՝ սև, կարմիր, գորշ-կանաչավուն։

Հագուստները կարճ էին, պնդված դրոշմազարդ գոտիով, արձակ տաբատներ և սռնապաններ։

Թանկարժեք քարերն ու զարդարանքները հարգի էին և՛ կանանց, և՛ տղամարդկանց մոտ։ Մի դամբարանում մեռած կնոջ մարմինը ծանրաբեռնված էր ամեն տեսակ զարդերով՝ ականջի կլոր գինդեր, պարանոցին երկու մանյակ, բրոնզե գոտի՝ երկու կախոցներով, մեկը՝ զանգակի ձևով, մյուսը՝ կարապի տեսքով, ձախ ձեռքի վրա՝ ութ տափակ ու կլոր ապարանջան, մատներին՝ երեսուն մատանի, երկու ապարանջան էլ զարդարում էին ոտքերը։ Միևնույն դամբարանում հայտնաբերվել է մի դաշույն, որը

[1] Morgan, Missions, I, էջ 204։

[2] Strab., XI, 8, 4.

ցույց է տալիս մեռյալի արտոնյալ անձնավորություն՝ գուցե իշխանուհի լինելը։

Սիրված զարդեր էին զանազան նյութերի հատիկները և ուլունքները։ Բրոնզե հայելիները, գնդասեղները և զանազան կախազարդերը կազմում էին կնոջ արդուզարդի անհրաժեշտ մասը։ Վարսակալը (դիադեմ) բրոնզե լայն երիզով, որը գնալով նեղանում էր դեպի ծայրերը, հասարակ գլխարկ չէր, այլ ավելի շուտ վերապահված էր բարձր դիրքի տեր անձանց։

Զենքերի առատությունը բացատրվում է տվյալ դարաշրջանի երկրի բնակչության մարտական ու պատերազմական բնույթով։ Որսորդությունը, մանավանդ՝ բազեով, անտեսված չէր։

Տրիբուլաները մատնանշում են երկրագործության առկայությունը։ Ընտանի կենդանիների՝ ձիերի, եզների, կովերի, ոչխարների, խոզերի, այծերի, գոմեշների և թռչունների ոսկորները անասնաբուծության զարգացումը ցույց տվող փաստեր են։

Մետաղագործությունը հասել էր զարգացման որոշ աստիճանի։ Բրոնզը, պղինձը, կապարը, արծաթը և երկաթը հայտնի էին։ Ոսկին հազվագյուտ էր։ Գիտեին հալելու, կռանելու, ձգելու և դարբնելու արվեստը։

Քաղաքական ու սոցիալական կյանքին վերաբերող որևէ տվյալ իսպառ բացակայում է։ Հավանաբար, բնակչությունը բաժանված էր ցեղերի և տոհմերի։ Կարելի է ենթադրել ցեղերի դաշնակցություն կամ խմբավորում։ Այդ երկիրը Թիգլաթպալասարի դեմ հանեց մի կոալիցիա՝ բաղկացած 60 արքայիկներից, որոնք հայկական լեռնաշխարհի ամբողջ ուժը չէ որ ներկայացնում էին։

Անհատական դամբարանի տարածումը ցույց է տալիս, որ ցեղային կարգերը արդեն կազմալուծվել էին՝ տեղի տալով ընտանիքին։ Շարժական գույքի առկայությունը դամբարանում իր հերթին ապացույց է այն փաստի, որ ըստ գոյություն ունեցող հավատալիքների՝ հանգուցյալը շարունակում է ապրել իր դամբարանում։ Կարծում էին, որ թաղվածը ենթակա է քաղցի ու ծարավի։ Շիրիմը չէին փակում։ Բավարարվում էին միայն մուտքը դժվարամատույց դարձնելով՝ վայրի անասուններից ու գողերից պաշտպանելու համար. եթե պեղումների շրջանում հայտնաբերված քարե ձկնակերպ[1] մեծ հուշարձանները պատկանում են խնդրո առարկա դարաշրջանին, ապա դա կարող է որոշ հիշատակություն լինել այն պաշտամունքի մասին, որ ընդունված էր երկրում վաղ ժամանակներում։

---

[1] Նախընտրելի է այս հուշարձանները կոչել ձուկն, քան վիշապ։ Փղշտացիների daggon, dag և ձուկն բառերի մեջ հավանաբար կապ գոյություն ունի։

Ավելացնենք, որ վերջերս Գառնիի շրջանի ժայռերի ու Թալինի շրջակայքում գտնվող քարանձավի պատերի վրա, ինչպես և այլ վայրերում հայտնաբերվել են գրության կամ առեղծվածային նշանների մեկ կամ նույնիսկ երկու համակարգ։ Ենթադրվում է, որ այդ գրությունները պատկանում են ուրարտական պետությունից ավելի վաղ դարաշրջանի[1]։

Պեղումների ժամանակ գտնված ամենաթանկագին հայտնաբերումներից են մարդկային գանգերը, որոնց ուսումնասիրությունը կարող է որոշ լույս սփռել երկրի բնակիչների ցեղային պատկանելության վրա։

1887—1888 թթ. պեղումների ընթացքում գտնվեցին մեկ տասնյակ գանգեր։ 1893 թ. հայտնաբերվեց յոթ արական և երկու իգական գանգ, 1906 թ.՝ տասներեք գանգ, 1908 թ.՝ երեսունյոթ, որոնցից քսանչորսը տղամարդկանց և տասներեքը՝ կանանց։ Դժբախտաբար, ոսկորներն այն աստիճան էին փտել, որ չէր կարելի նրանց դիպչել առանց փոշի դարձնելու։ Ավազոտ հողում մնացածները ավելի լավ էին պահպանվել։

Մարդաբանությունը ձգտում է մարդկային ցեղերը բնորոշել և դասակարգել ըստ գլուխների ձևի։ Նրա գլխավոր չափանիշը գանգային հատկանիշն է։ Այսպես, նկատի է առնվում գլխի լայնության հարաբերությունը նրա երկարությանը, կամ երկու տրամաչափերի համեմատությունը։ Երկարությունը 100 ընդունելով, լայնությունը կարտահայտվի 100-ի կոտորակով։ Քանի գլուխը լայն է, այնքան գանգային հատկանիշն աճում է։ Եթե այդ հատկանիշն անցնում է 80-ից, ուրեմն կարճագլուխ է, եթե 75-ից ցածր է, ուրեմն երկարագլուխ է։ 75-ի և 80-ի միջև եղած հատկանիշը բնորոշում է միջակագլուխներին։

1908 թվականի պեղումների ժամանակ հայտնաբերված 37 գանգերը մասնագետներից մեկի մանրազնին ուսումնասիրության առարկա դարձան[2]։ Եզրակացությունը եղավ այն, որ այդ գանգերը շեշտված երկարագլուխ են։ Արական գանգերի գանգային հատկանիշը հավասար է 72,7-ի, իսկ կանանցիններինը՝ 76,3-ի։ Դիմային հատկանիշը 54,4 և 52,2 է, որը գանգերը կապում է լեպտոպրոսոպ խմբին։ Ըստ ռնգային հատկանիշի՝ 43,5 և 47 լեպտոռհինյան են, իսկ ակնախորշի 83,5-ը ավելի շուտ խոսում է միկրոսեմի օգտին։

Այս բոլորը բնորոշ են երկարագլխության համար և ապացուցում են, որ Հայաստանի բնակիչները տվյալ դարաշրջանում կազմում էին երկարաձև գանգ ունեցող ռասա։

---

[1] Հայտնագործումը հրատարակվել է «Խորհրդային Հայաստան» թերթում, 1926 թ. դեկտեմբերի 19-ին և 1927 թ. հունվարի 4-ին. տե՛ս հաշվետվությունը «Revue des Etudes Arméniennes» հանդեսում, հ. VII, պրակ 2 (=1927), էջ 291։

[2] **Бунак,** «Русский антропологический журнал», 1929 թ., պրակ 3—4. տե՛ս **Լալայան,** նշ. աշխ., էջ 219։

*Իտալացի մարդաբան Սերջին ապացուցել է, որ Միջերկրականի ավազանը նախապես գրավվել է երկարագլուխ ռասայի կողմից, որը կոչվում է* homo mediterraneus։ *Ընդհանրապես, Փոքր Ասիան բնակեցված է եղել, ըստ նույն գիտնականի, կարճագլուխ ռասայի կողմից*[1]։

*Անգլիացի Ռիպլին համաձայն չէ Սերջիի տեսության հետ։ Ըստ նրան՝ Փոքր Ասիայի ամենահին էթնիկական խավը նույնպես պատկանել է երկարագլուխ տիպին և ներկայացնում էր նույն միջերկրածովյան ռասայի ճյուղը։ Դա վերաբերում է ամբողջ Եվրոպային*[2]։

*Եթե այդ կարծիքը հաստատվի, կարելի է ընդունել, որ Հայաստանի երկարագլուխները նույն միջերկրածովյան ռասայի մասն են կազմել։ Երկարագլուխների տիրապետությունը համընկնում է բրոնզե դարին, մինչդեռ հետագա դարը, որ հայտնի է երկաթի արդյունաբերությամբ, դիտվում է որպես կարճագլուխ ռասայի քաղաքակրթության ժամանակ, որին են պատկանում նաև Նաիրիի և Ուրարտուի բնակիչները։*

---

[1] **Sergi,** Europa, l'origine dei populi europei, Turin, *1908.*

[2] **W. Ripley,** The races of Europe, *էջ 448*։

Գլուխ երկրորդ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ՀՆԱԳՈՒՅՆ ԴԱՐԱՇՐՋԱՆՈՒՄ

## 1. ԱՐԵՎԵԼՔԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԸՆԴՀԱՆՈՒՐ ՈՒՐՎԱԳԾԵՐԸ

Մեր գիտելիքների ներկա սահմաններում միջազգետյան քաղաքակրթության դարը հազիվ մտնում է մ. թ. ա. երրորդ հազարամյակի շեմքը։ Պատմության լույսը դեռ չի թափանցել 3000 թ. առաջ մարդկության վրա տիրող խավարը։

Ամենահին քաղաքակրթությունը, որը կոչվում է շումերա-ակկադական, ընդգրկում է երրորդ հազարամյակն ամբողջապես։ Այն նտեղծողները շումերներն ու ակկադական սեմիտներն էին, որոնք չէին լքելու հին աշխարհի քաղաքական ու մշակութային գերիշխանությունը հազար տարի շարունակ, 3000-ից մինչև 2000 թթ. մ.թ. ա., որքան էլ բախտի փոփոխությունները լուրջ լինեին։

Երկրորդ հազարամյակի սկզբում հանդես են գալիս էթնիկական նոր տարրեր, որոնք տեղաշարժում են քաղաքական տիրապետության կենտրոնը։

Ի՞նչ վիճակում էր Հայաստանը շումերա-ակկադական դարաշրջանում։ Արդյոք կազմո՞ւմ էր քաղաքակիրթ աշխարհի մի մասը և ինչպե՞ս էր կոչվում այս հեռավոր անցյալում։ Հիմնականում բացարձակապես ոչինչ հայտնի չէ։ Այդ ուղղությամբ տվյալներ չկան։ Ամիդի (Դիարբեքիր) մոտ, Պիր-Հուսեյն գյուղում հայտնաբերվել է ակկադացի Սարգոնի մերձավոր հաջորդներից մեկի՝ Նարամսինի քարակոթողը, բայց դա գտնվում է միայն հայկական լեռնաշխարհի փեշին[1]։ Որոշ վավերագրեր հիշատակում են Տուգրիշ կոչված մի երկիր, որ վերջերս ցանկացան նույնացնել Հայաստանի հետ։ Աշշուրցի Սարգոնը (1980—1948) որ տարբեր է ակկադացի Սար-

---

[1] Քարակոթողի գոյությունը դեռևս ապացույց չէ, թե Նարամսինը երկիրը նվաճել է մինչև Ամիդ։ Հնարավոր է, որ ակկադացի թագավորը քարակոթողը կանգնեցրել է մի արշավանքի ժամանակ, ինչպես Թիգլաթպալասար I-ը հայկական հողի վրա՝ Մելազկերտի (Մանազկերտ) մոտ, թողել է իր հաղթական արշավանքի հիշատակը Նաիրիի թագավորների դեմ, առանց կարենալու ամբողջ երկիրը գրավել։ Գուցե քարակոթողը որպես ավար բերվել է Բաբելոնից, որտեղ նախապես կանգնեցվել էր. Հմմտ. **Hall**, The ancient history of the Near East, էջ 186, ծան. 2։

գոնից (2633—2579), իր արձանագրություններից մեկում նշում է, թե ինքը նվաճել է այն երկրները, որոնք տարածվում են «Ստորին ծովից մինչև Արևամուտի ծովը», և ճանապարհների ցանցով ծածկել այդ երկրները։

Նշված երկրներն են՝ Աշշուր, Ակկադ, Ամուրրի, Անզան, Էլամտու, Մարխաշի, Լուլլուբի, Տուգրիշ, Շուբարտու։ Դրանք բոլորը ծանոթ են, բացի Տուգրիշից։ Այդ երկիրը Հայաստանում տեղավորելը չէր համապատասխանի բնագրի իմաստին, ըստ որի՝ թվարկված բոլոր ինը երկրները տեղավորված են Ստորին ծովի, այսինքն՝ Պարսկական ծոցի և Արևմտյան ծովի՝ Միջերկրականի միջև։ Սույն արձանագրությունը թույլ է տալիս Տուգրիշը փնտրել միայն կա՛մ Էլամի սահմանների լեռներում, կա՛մ պետության արևմուտքում՝ Ամանոսի շրջանում[1]։

Համմուրաբին (1955—1913) Տուգրիշը Գուտիումի և Շուբարտուի հետ միասին դասում է յոթ լեռնային երկրների թվում[2]։ Շամշի-Ադադ I-ը (1879—1847) ճանաչում է Տուգրիշի բազմաթիվ թագավորների։ Նա ասում է, որ «Տուգրիշի թագավորներից և Վերին երկրի թագավորներից հարկ է ընտացել իր Աշշուր քաղաքում[3]։ Ընդունված է կարծել, թե Վերին երկիր կոչվածն այն երկիրն է, որ խեթական տեքստերում նույն անունն ունի և գտնվում է Փոքր Հայքում. այստեղից էլ միտք է ծագել Տուգրիշը նույնացնել Մեծ Հայքի հետ։ Սակայն շատ կասկածելի է, որ Շամշի-Ադադ I-ը իր զորքն ու զենքը հասցրած լինի այնքան հեռու գտնվող Փոքր Հայքը։ Վերին երկիր այստեղ միայն կարող է նշանակել Տուգրիշի մերձակա շըրջանը՝ Էլամի կամ Ամանոսի հյուսիսում[4]։

---

[1] Այդ վավերագիրը պարունակող սալիկը պատկանում է աշշուրցի Շարրուկին-Սարգոնին։ Այն դեռևս հրապարակված չէ, բայց է. Ֆորերն օգտագործել է Ասորեստանի պատմության վերաբերյալ իր վավերագրական հոդվածում (Reallexikon der Assyriologie, I, էջ 239—243)։ Այդ սալիկն իրենից ներկայացնում է Սարգոնի պետության երկրների մի ցանկ, որտեղ ցույց է տրվում յուրաքանչյուր երկրի ճանապարհների երկարությունը՝ ribit-ներով. ribit հոգ. beru-ի «կրկնակի ժամ», մի չափ է, մոտավորապես 10 կլմ. 600 մ. (ավելի ճիշտ՝ 692 մ., ըստ Թյուրո-Դանժենի՝ «Revue d'Assyriologie», XVIII, էջ 133)։ Այսպիսով, 1) Աշշուր՝ 120 րիբիտ=1275 կմ., 2) Ակկադ՝ 180 ր.=1903 կմ., 3) Անզան՝ 90 ր.=952 կմ., 4) Էլամ՝ 90 ր.=952 կմ., 5) Մարխաշի՝ 40 ր.=425 կմ., 6) Լուլլուբի՝ 90 ր.=925 կմ., 7) Տուգրիշ՝ 60 ր.=638 կմ., 8) Շուբարտու՝ 120 ր.=1275 կմ.։ Սույն տվյալների իրական արժեքը չպետք է չափազանցել՝ երեք երկրներ ունեն 120 ր., երեք ուրիշներ՝ 90 ր., մեկը՝ 180 (2×90), Տուգրիշը՝ 60 ր. (120-ի կեսը), Մարխաշին՝ 40 ր. (գուցե 30 ր., այդ դեպքում ամենուրեք 30-ի բազմապատիկը կունենանք)։ Այս կարգի տվյալները չեն կարող օգտակար ծառայություն մատուցել։ E. Weidner, Die Inschriften der altassyrischen Königen, էջ 24, իրավունք ունի Տուգրիշը տեղավորելու Էլամի մոտակա լեռներում։

[2] E. Weindner, Die Inschriften der altassyrischen Königen, էջ 243։

[3] Նույն տեղում, էջ 245։

[4] Է. Ֆորերը նույնացնում է երկու Վերին երկրները, մինչդեռ Պ. Հաուպը՝ Akkadische und Sumerische Keilschrifttexte, էջ 41, կարծում է, թե ասորեստանցիների Վերին երկիրը նույնն է, ինչ որ Էլամը։

Աշշուրցի Սարգոնի նույն արձանագրության մեջ, ուր խոսվում է ինը երկրների մասին, թվարկվում են նաև Աշշուրի նահանգները, որոնք վեցն են՝ Ջուպրիյան Մարի, Ռապիգում, Տիգրիսի կամ Աշշուրի մարզը բառիս նեղ իմաստով, Առափխա մինչև Լուբդի, Լուլլուբի և «Սիմեսիյան» Արմանի։ Առափխան Քերկուկի մարզն է, Լուլլուբին՝ Սուլեյմանիեի, իսկ Սիմեսիյան Արմանի նահանգը գտնվում է Լուլլուբիի և Առափխայի հարավում, հետևաբար՝ Խանեկինի մարզում։

Արմանին ոչ մի կապ չունի Հայաստանի անվան հետ. պետք է խուսափել նման փորձերից։ Ուշադրություն դարձնենք Ջուպրիի վրա, որը հետագայում երևան կգա Սուպրի անվան տակ՝ Հայաստանին սահմանամերձ մի մարզ ցույց տալու համար։ Լուբդին Ասարխադդոնի օրով (681—669) նույնպես կդառնա Արզանենի մի շրջանի անունը։ Սիմեսին այն կիրճի անունն է, որով անցավ Սալմանասար III-ի տուրտանը, երբ Գիլզանից վերադառնում էր մայրաքաղաք՝ Պարսուայի և Նամրիի վրայով։ Սիմեսիի կիրճը գտնվում է Խանեկինի մարզից հյուսիս։ Էթնիկական կամ աշխարհագրական տերմինների այս շարժումը դեպի հյուսիս, ինչպես՝ Սուպրին, Լուբդին, Սիմեսին, արժանի է հատուկ ուշադրության։ Բայց նույնիսկ այս երևույթի լույսի ներքո Արմանին չի կարող համապատասխանել Հայաստանին, որովհետև Արմանին «Խալման»-ի մեկ ուրիշ ձևն է։

Արմանի անունով մի ուրիշ երկիր հայտնի է ակկադացի Սարգոնի պետության արևմտյան սահմանների մոտ։ Գոյություն ունի Նարամսինի դեմ տասնյոթ թագավորների դաշնակցության վերաբերյալ մի վավերագիր։ Նարամսինը ակկադացի Սարգոնի երրորդ հետնորդն էր, ապրել է մոտավորապես 2550 թվականին։ Դաշնակիցների ցուցակը պահպանված է, և մենք այն բերում ենք տողատակի ծանոթության մեջ[1]։

Այստեղից երևում է, որ հինգերորդ դաշնակիցը Խաթթի երկրի մի թագավոր է, իսկ տասնմեկերորդը՝ Արմանի երկրի թագավոր Մադակինան է։ Դժվար է ցույց տալ երկրի ճշգրիտ տեղը, պետք է այն փնտրել Սիրիայի (Ասորիքի) հյուսիսում։ Շատ հնարավոր է, որ այդ Արմանին լինի Խալվանի (Հալեպի) մեկ ուրիշ ձևը, այնպես, ինչպես Սիմեսիի Արմանին Խալմանի

---

[1] Կոալիցիայի կազմը՝ 1) Անմաիլա՝ Գուզուսուայի կամ Գուսուայի թագավոր, 2) Ռակկիի թագավոր Բուանա, 3) Լապանիլա՝ Ուլլիվիի թագավոր, 4)... Նապալա ...-ի թագավոր, 5) **Պամբա՝ խաթթիի թագավոր**, 6) Զիպանի՝ Կանեշի թագավոր, 7) Ռուր... (Պուրուշխանդայից), 8) Հուվարուվա՝ Ամուրրուի թագավոր, 9) Թիսսենկի՝ Պարասիի թագավոր, 10) ... ..., 11) **Մադակինա՝ Արմանիի թագավոր**, 12) Կիպպու՝ եղևնիների թագավոր, Ամանուս, 13) Թասսի՝ ...-ի թագավոր, 14) Ուր-խարակ՝ Լարակի թագավոր, 15) Ուր-բանդա՝ Նիկկիի թագավոր, 16) Իլլուշխումալի՝ Թուրկիի թագավոր, 17) Թիսբինկի՝ Կուրսաուրայի թագավոր։ **E. Forrer**, Die Boghazköi-Texte in Umschrift, II, էջ 2։ **Sayce**, JRAS, 1928, էջ 206։ **Hrorzny**, «Archiv Orientalni», I, № 1.

ձեն է։ Սակայն թվում է, թե ավելի իրավաչափ է այն նույնացնել Հերմոնի հետ, որը բիբլիական անուն է[1]։

Փաստորեն մենք կատարյալ մթության մեջ ենք Հայաստանի՝ շումերա-աքքադական դարաշրջանի անվան ու ճակատագրի կապակցությամբ[2]։

Հիշենք, որ հայերենը պահպանել է մի քանի այնպիսի բառեր, որոնց գոյությունը այդ դարաշրջանի վավերագրերում հաստատված է։ Փոքր Ասիայում, այդ միևնույն ժամանակաշրջանում, կար առևտրականներից (թամկար) բաղկացած սեմական մի գաղութ։ Դժգոհ լինելով Պուրուշխանդա քաղաքի բնիկ իշխան Նուր-Դագանից՝ նրանք պատվիրակների (sukallu) միջոցով խնդրում են աքքադացի Սարգոնին (2633—2579) միջամտել։ Խնդրանքն ընդունվում է. աքքադացի թագավորն արշավանքի է դուրս գալիս, հասնում Պուրուշխանդա քաղաքը, գրավում այն և խելքի բերում հարստահարիչ Նուր-Դագանին։ Սարգոնն առիթից օգտվում է և իր երկիրն է տեղափոխում մի քանի տեսակ բույսեր, պտղատու ծառեր և սովորական ծառեր, ներառյալ ḫasḫuru, tittu, saluru, sirdu[3]։ Դրանք հայերենում պահպանված բառեր են՝ խնձոր, թուզ, սալոր կամ շլոր, սիրդ στοιβή։ Սա շատ կարևոր մի իրողություն է, որը նույն բնույթի ուրիշ բառային նյութերի հետ միասին մի տեսակ ջահ կծառայի՝ Հայաստանի նախահայկական ժողովուրդների ցեղային պատկանելության վրա լույս սփռելու համար։

Երկրորդ հազարամյակը նշանավոր է դառնում էթնիկական նոր տարրերի գերիշխանությամբ։ Խեթերը ասպարեզ են դուրս գալիս Փոքր Ասիայում, իսկ խուրրիները՝ Հյուսիսային (Վերին) Միջագետքում կամ Շուբարտուում, ինչպես որ այն կոչում են ասուրա-բաբելացիները. վերջապես՝ կասսիտները ներխուժում են Հարավային (Ստորին) Միջագետք կամ Բաբելոն։ Առանձնապես անհրաժեշտ է նշել, որ այս ժողովուրդների հետ միասին պատմության աղջամուղջից դուրս է գալիս հնդեվրոպական մի ցեղ,

---

[1] **E. Dhorm,** «Revue Biblique», *1929, էջ 132, նաև նույն հեղինակի* L'Evolution religieuse d'Israël, I. La religion des Hébreux nomades, *էջ 170։ Հիշենք, որ Արման-Ակարսալի կոչված մի բնակավայր նշված է Ադադ-Նիրարի* I*-ի դաշնագրում (1336-1305), որ նա կնքեց Բաբելոնի թագավորի դեմ վարած հաղթական պատերազմից հետո։ Ըստ այս դաշնագրի՝ երկու երկրների սահմանն անցնում էր Պիլասկի-Արման-Ակարսալի-Լուլումե (Լուլլուբի) գծով։* **L. W. King,** The Annals of the Kings of Assyria, *էջ* XXXII.

[2] **E. Weidner,** Der Zug Sargons von Akkad nach Kleinasien, *1922,* Boghazköi-Studien*-ի մեջ տեքստը վերծանված և թարգմանված է։* **E. Dhorm,** «Revue Biblique», *33, 1924, էջ 5—22, ֆրանսերեն թարգմանություն, մեկնաբանությամբ Լ. Դըլապորտի՝* Les Hittites, *էջ 38 և շար.,* L'Evolution de l'humanité *գրքում։*

[3] **N. Adonz,** Emprunts de haute époque en arménien, «Revue des Etudes indo-européennes, *Հ.* I, *1938, պրկ. 2—4, էջ 457—467։*

որպեսզի աշխարհին ցույց տա իր կազմակերպչական հանճարի առաջին ապացույցը։ Իհարկե, սա չի նշանակում, թե խեթերը, խուրրիները և կասսիտները բոլորը հնդեվրոպական ցեղեր են։ Պետք է խոստովանել, որ մենք դեռևս ոչինչ չգիտենք այս ժողովուրդների ծագման մասին։ Հավաստիացնում են, որ վերոհիշյալ ժողովուրդների բարձր խավը՝ ղեկավարող դասակարգը, բաղկացած էր հնդեվրոպական տարրերից, որոնք որպես խմոր են ծառայել քաղաքական մեծ շարժում սկսելու համար։ Կարելի է պատկերացնել այն բուռն հետաքրքրությունը, որ ներկայացնում է այս իրողությունը ապագա Հայաստանի պատմության համար՝ մի հարևան երկիր, որ խոսում է հնդեվրոպական լեզվով։ Խեթական ու խուրրիական տիրապետությունը տևեց մինչև 1200 թվականը (մ. թ. ա.), ապա կործանվեց թրակական հնդեվրոպացիների ներխուժման հարվածների տակ, հանձինս փռյուգիացիների, որոնց մասն էին կազմում հայերը։

Ի՞նչ է հայտնի մեզ Հայաստանի մասին 2000—1200 թվականների ընթացքում։ Նախքան Հայաստանի ճակատագրին անդրադառնալը, անհրաժեշտ է պարզել նույն ժամանակաշրջանի դեպքերի շրջանակը՝ խեթերի և խուրրիների պատմության սահմաններում։

Նարամսինի դեմ խմբված դաշնակիցների շարքում վերը մենք նշեցինք ոմն Պամբայի՝ Խաթթիի թագավորին։ Սա ամենահին հիշատակումն է Խաթթիի՝ Փոքր Ասիայի փոքր պետություններից մեկի, որի հետ Կանեշի (Կեսարիայի մոտ) սեմական վաճառականներն առևտրական հարաբերություններ ունեին։ Ավելի ուշ, աշշուրցի Սարգոնի օրով (1980—1948), ուրեմն՝ երկրորդ հազարամյակի սկզբին, երևան են գալիս ասիական փոքր պետություններ, որոնք պայքար են մղում հնդեվրոպական ծագում ունեցող տարրերի դեմ։ Ո՞րտեղից և ե՞րբ են եկել սրանք, հայտնի չէ։ Թվում է, թե նրանք այդ տեղերում բնակվել են ոչ շատ ժամանակ առաջ։ Նրանք բազմաքանակ չեն եղել, բայց ունեին լավ զինված հեծելազոր (մինչ այդ ձին անծանոթ էր այս երկրում)։ Նոր եկողները զավթում են իշխանությունը և նույնիսկ իրենց լեզուն պարտադրում տեղական ժողովրդին։ Այսպիսով, խեթերը հնդեվրոպականանում են՝ դառնում նեո-խեթեր։ Ընդունված է դրանց կոչել խեթեր, և որպեսզի զանազանեն հին, կամ իսկական, խեթերից, վերջիններիս անվանում են պրոտո-խեթեր։

Փոքր Ասիայի քաղաքական զարգացումը ներկայացնում է գրեթե նույն պատկերը, ինչ որ տեղի է ունեցել Բաբելոնում։ Հնդեվրոպական տարրերը խեթական միջավայրում խաղալու էին նույն դերը, ինչ որ սեմիտները կատարեցին շումերների նկատմամբ։ Այնպես, ինչպես սեմիտները միավորեցին շումերների քաղաք-պետությունները՝ միապետական կարգեր ստեղծելու համար, նույնն էլ անելու էին հնդեվրոպացիները ասիական փոքր իշխանությունների նկատմամբ և հիմնելու էին մի հզոր միապետություն։

*Մեզ ծանոթ ամենահին խեթական թագավորը՝ Կուշշարի արքա* Pitḫana-*ն է*[1]*։ Նա էր, որ երկիրը քաղաքականապես միավորեց։ Նրա որդին ու հաջորդը՝ Անիտտան, աշշուրցի Սարգոնի ժամանակակիցը, պատմում է, որ իր հայրը պատերազմ է մղել Նեսայի թագավորի դեմ*[2] *և նրան որպես ռազմագերի բերել է իր նստավայրը։ Նույն Անիտտան կռվել է չորս թագավորների դեմ՝* Ḫattus-*ի թագավոր* Piuista-*ի,* Ḫuzziia-*ի թագավոր* Zalpuwa-*ի,* Purušḫanda-*ի թագավորի և* Salatiwara-*ի թագավորի դեմ։ Այս բոլոր երկրներն ու քաղաքները ծանոթ են ըստ Կանեշի ցուցակի, աքկադացի Սարգոնի դարաշրջանում։ Անիտտան նրանց հպատակեցնում և ընդունում է մեծ թագավորի տիտղոս*[3]*։*

*Անիտտային հաջորդեց Թուդխալիյա* I-*ը, իսկ սա գահը հանձնեց իր որդի Պուսարմային։ Վերջինիս որդին ու հաջորդը՝ Լաբարնան, աչքի է ընկնում որպես մեծ պատերազմող. նա գրավեց շատ քաղաքներ, ինչպես* Wilusa, Hupišna, Tuwanuwa, Nenašša, Landa, Zallara, Puršuḫanda, Lusna*։ Այս քաղաքների տեղերը հայտնի չեն, բացի Թուվանուվայից, որ դասական հեղինակները նույնացնում են Թիանայի հետ։ Երկրի միավորումը Լաբարնայի հովանու ներքո գրեթե ավարտվեց։ Դրա համար էլ ավանդությունը նրան է շնորհում խեթական պետության իսկական հիմնադրի պատիվը։*

*Լաբարնայի որդին՝ Խաթթուսիլն արդեն մտածում է իր երկիրն ընդարձակել՝ առաջանալով դեպի Սիրիայի (Ասորիքի) ծովափը։ Նա շարժվում է դեպի Խալպա (Հալեպ), բայց չի կարողանում այն գրավել և, ըստ երևույթին, այդ արշավանքում էլ սպանվում է։*

*Մուրսիլ* I-*ը լուծում է իր հոր վրեժը՝ գրավելով Խալպան, ժողովրդին տեղահանելով և իր երկրում բնակեցնելով։ Նա իրեն զգում էր բավական ուժեղ և համարձակ՝ արշավանք ձեռնարկելու Բաբելոնի դեմ. «Խաթթիի մարդը արշավեց Աքկադի դեմ», ասում է նրա մասին բաբելոնյան ժամանակագրությունը*[4]*։*

*Մուրսիլը ստիպված է լինում դուրս գալ նաև ընդդեմ խուրրիների, հավանաբար, Բաբելոնի դեմ կատարած արշավանքի ընթացքում։ Նշենք,*

---

[1] *Կանեշի սալիկների վրա հիշատակվող Կուսսարան հավանաբար նույն Կուշշարն է, մի անուն, որ պահպանված է Գարսաուրիտիս և Գուրսաուրա-Արխելաիս տեղանուններում՝ Թատտայից (Թուզգյոլ) դեպի հարավ-արևելք ընկած մի կետում։*

[2] *Նեսան Նյուսան է, Գր. Նյուսացու հայրենիքը։*

[3] *Անիտտայի տեքստը թարգմանված է Հրոզնու կողմից,* «Archiv Orientalni» I *(1929), էջ 273—299։*

[4] *Ընդհանրապես այդ արշավանքը վերագրում են 1806 թ., բայց* Goetze-*ը,* Hethiter, Churriter und Assyrer, *էջ 53, որը կարճ ժամանակագրության կողմնակից է, առաջարկում է 1758 թվականը։*

որ դա խուրրիների առաջին հիշատակությունն է։ Խեթական թագավորը սպանվում է իր Խարափսիլի քրոջ ամուսնու՝ Խաստիլիի կողմից, որը գահ է բարձրանում։ Նա շարունակում է պատերազմը Սիրիայում և բախվում խուրրիների հետ։ Հյուսիսում նա հարձակվում է Կասկա լեռնային ցեղերի (կամ գազգաների) վրա, որոնք այստեղ առաջին անգամն են երևան գալիս, բայց այնուհետև չեն դադարելու իրենց ավերիչ ասպատակություններով խռովել Խաթթուշի երկրի հանգիստը։ Խաստիլին կռվի է բռնվում նաև Շուգզա անունով մի թագուհու հետ։ Նրա մահից հետո իր որդին ու հաջորդը սպանվում է բռնակալ Զիդանտայի կողմից։ Սակայն վերջինս էլ իր հերթին սպանվում է իր որդու՝ Ամմունայի կողմից, որին հաջորդում է սրա որդին՝ Խուզզիյան։ Թելեպինուն՝ Խուզզիյայի Իշտապարիյա քրոջ ամուսինը, սպանում է Խուզզիյային և հափշտակում իշխանությունը[1]։

Թելեպինուն է հեղինակը այն տեքստի, որը մեզ իրազեկ է դարձնում նախորդ թագավորների գործունեության մասին[2]։ Նա իշխեց մինչև 1650 թվականը, որից հետո խեթական թագավորների մասին գրեթե երկու դար շարունակ այլևս ոչինչ չի լսվում։ Խեթական պետությունը վերանում է կամ վերածվում է գավառական իշխանության։ Սակայն 15-րդ դարի առաջին քառորդին երևան է գալիս Թուդխալիյա II-ը, որը 1475 թ. հիմնում է երկրորդ պետությունը, որը գոյատևում է մինչև 1200 թվականը (մ. թ. ա.)։ Խեթերի քաղաքական կյանքի երկու դարաշրջանները տարբերելու համար առաջինը կոչում են Հին թագավորություն՝ հիմնված Պիտխանայի կողմից, իսկ երկրորդը՝ Նոր թագավորություն։ Հին թագավորությունը տևեց մոտ 2000-ից մինչև 1650 թվականը, իսկ նորը՝ 1470-ից մինչև 1200 թվականը։

Խեթական պետության թուլացումը 1650—1475 թվականներին զուգադիպում է հիքսոսների մռայլ դարաշրջանի հետ և անշուշտ հետևանք է նրանց ավերիչ ասպատակությունների։ Այս խորհրդավոր ժողովուրդների ծագումը դեռ մնում է վարկածների ոլորտում։ Հարցի քննարկումը տանում է դեպի խուրրիները, որպես ասիական ազգի, որը, սակայն, ղեկավարվում է հնդեվրոպական առաջնորդների կողմից։ Գնալով ավելի հաստատվող այս կարծիքի համաձայն, խուրրիների կողմից Հյուսիսային Միջագետքի գրավումը, հիքսոսների արշավանքը Եգիպտոս և կասսիտների բնակվելը Բաբելոնում սերտ կերպով կապված են միմյանց հետ, որպես միևնույն երևույթի, այն է՝ արևելյան ճյուղի հնդեվրոպացիների Միջագետք ներխուժման, իսկ քիչ հետո արևմտյան ճյուղի հնդեվրոպացիների խեթերի մեջ ներթափանցման, արդյունքներ։

---

[1] King, Chronicles concerning early Babylonian Kings, հատ. II, 1907։

[2] Boghazköi-Studien, F. Hrozny, Hethitische Keilschrift-Texte aus Boghazköi, № IV, Eine Inschrift des Königs Telibinus, der älteste hethitische Texte, էջ 90—129։

Զավթիչները խուրրիներին կազմակերպում են այնպես, ինչպես իրենց արևմտյան եղբայրներն էին արել խեթերի նկատմամբ։ Նրանք կործանում են Աշշուրի թագավորությունը և տեր դառնում Միջագետքին՝ Ամանոսից սկսած մինչև Զագրոս լեռնաշղթան։ Նրանք ետ են մղում հյուսիսային Սիրիայի խեթերին և ստիպում նրանց ներփակվել Հալեպի ոլորտում։ Դարձյալ նրանք են, որ հրահրում են հիքսոսների շարժումը և մղում նրանց դեպի Եգիպտոս։ Երբ փարավոնները թոթափեցին հիքսոսների լուծը, նրանք իրենց զենքն ուղղեցին Սիրիայի դեմ և պատերազմ սկսեցին Միտաննիի թագավորների հետ։ Նրանց կարծիքով, հիքսոսների պատճառած աղետը գալիս էր այդ կողմից և պետք էր այն ոչնչացնել իր բնում, որպեսզի նման դեպքերն այլևս չկրկնվեն։ Եգիպտացիները խուրրիներին համարում էին Եգիպտոսի վրա բարբարոսական ասպատակության դրդիչներ, իսկ միտաննացիները հանդիսանում էին խուրրիական ժողովրդի մի ճյուղը։ Սա գալիս է հաստատելու այն տեսությունը, որի համաձայն խուրրիները մ. թ. ա. երկրորդ հազարամյակի առաջին կեսում պատմական կարևոր գործոն էին հանդիսանում Վերին (Հյուսիսային) Միջագետքում։

Համենայն դեպս, հիքսոսների խառն դարաշրջանն ավարտվելուց հետո խուրրիները համախմբում են իրենց ուժերը, ստեղծում մի հզոր պետություն Վերին Միջագետքի սրտում, կենտրոն ունենալով Խաբուր (Օսրոենե) մարզը։ Դա Միտաննի պետությունն է։

Եգիպտոսում իշխում է 18-րդ հարստությունը, իսկ Բաբելոնում՝ կասսիտների հարստությունը։ 1473 թվականին, Կարգամիշի դեմ Թութմես III-ի արշավանքի ժամանակ, Խաթթիի թագավորը նրան նվերներ է ուղարկում։ Խեթական նոր պետությունը, ասպարեզ գալով, պահանջում է հյուսիսային Սիրիայի իր վաղեմի տիրապետությունները։ Սա արդեն պատերազմի նշան էր ընդդեմ Միտաննիի։ Վերջինս, որ միևնույն ժամանակ դիմագրավում էր փարավոնների հարձակումներին, շուտով ըմբռնեց, որ Խաթթիի սպառնալիքն ավելի իրական և ավելի վտանգավոր է, քան Եգիպտոսինը։ Այդ ժամանակից սկսած Միտաննին անհրաժեշտ է համարում ապահովել փարավոնների բարեկամությունը, որպես նեցուկ խեթերի դեմ։

Միտաննիի թագավոր Արտաթամաճ (1430—1405) իր աղջկան կնության է տալիս Թութմես IV-ին (1420—1411)։ Խեթերը Միտաննիից խլում են Սիրիայում նրա ունեցած տիրապետությունները։ Արտաթամայի թոռը՝ Թուշրատտաճ, իր Թադուխեպա աղջկան ամուսնացնում է Ամենոֆիս III-ի (1412—1376) հետ։ Սակայն Եգիպտոսի հետ ունեցած դաշինքը չի փրկում Միտաննիին։ Վերջինիս բախտից՝ Ասորեստանն այդ ժամանակ դուրս է գալիս միտաննական գերիշխանությունից և ծառանում նրա դեմ։ Խեթերի և ասորեստանցիների միջև երկու կողմից սեղմված Միտաննին

հետզհետե հյուծվում է և 1300 թվականի մոտերը վերջնականապես անհետանում, իր ժառանգությունը թողնելով Ասորեստանին։

Այժմ արդեն առաջնության համար մենամարտ է սկսվում հինավուրց երկու մրցակիցների՝ Խաթթիի և Աշշուրի միջև։ Սակայն ավելի լուրջ իրադարձություններ գալիս են փոխելու պատմության ընթացքը և վերջ տալու Խաթթիի և Աշշուրի մրցակցությանը։ Թրակա-փռյուգիական ապատակությունը՝ հնդեվրոպական ցեղերի մի նոր հորձանք, կուլ է տալիս խեթական պետությանը մոտավորապես 1200 թվականին և որոշ ժամանակ կասեցնում Ասորեստանի վերելքը, մինչև որ սա իր տեղը կգրավեր նոր կազմված պետությունների շարքում, տասներորդ դարից սկսած։

Մեր նպատակից դուրս է նույնիսկ համառոտ հետևելու խեթերի, խուրրիների և ասորեստանցիների միջև տեղի ունեցած պայքարի իրադարձություններին, առավել ևս՝ ցույց տալու Բաբելոնի և Եգիպտոսի մասնակցությունը այդ պայքարում։ Մեզ հետաքրքրողը Հայաստանի դրությունն է այդ շրջանում, 2000-1200 թվականներին (մ. թ. ա.)։

Ո՛չ խեթական առաջին թագավորության ժամանակ (2000—1650), ոչ էլ խուրրիական առաջին դարաշրջանում (1800-1500) մենք ոչ մի տեղեկություն չունենք Հայաստանի մասին։ Սակայն խուրրիական դարաշրջանը, այսուհանդերձ, հատուկ հետաքրքրություն է ներկայացնում, քանի որ ըստ մի քանի հեղինակավոր անձանց կարծիքի՝ հայկական լեռնաշխարհը համարվում է խուրրիների օրրանը, կամ ավելի շուտ՝ բնակավայրը, նախքան նրանց այնտեղից Միջագետք իջնելը։ Կարծում են նաև, որ Ուրարտուի պետությունը իրենից ներկայացնում է խուրրիական ժողովրդի վերջին ճիգերը իր ազգային օջախը պահպանելու համար։

Գալով խեթական երկրորդ պետությանը և Միտաննիի ժամանակաշրջանին, սեպագիր արձանագրությունները շատ հետաքրքիր տեղեկություններ են հաղորդում Հայաստանի արևմտյան մասի՝ Արզանենեի, Սոփենեի (Ծոփք) և Եփրատ գետի վերին հոսանքի՝ Բարձր Հայքի մասին։ Այդ մարզերը, տեղավորված լինելով երկու մրցակից աշխարհների՝ խեթերի և խուրրիների միջև, որոշակի դեր են խաղացել իրենց անկախությունը հարևան պետությունների փառասիրական ձգտումներից պաշտպանելիս։ Այդ մարզերից մեկը կրում է Հայասա պարտադրող անունը, որի մեջ ցանկացել են տեսնել հայերի ազգային անունը՝ հայ։ Այս տեսակետից Հայասան վիթխարի հետաքրքրություն է ներկայացնում և ստիպում է մեզ հատուկ ուշադրություն ցուցաբերել նրա պատմությանը, նախքան Հայասայի և հայի միջև եղած հարաբերության հարցին անդրադառնալը։ Ընթերցողների կողմնորոշումը հեշտացնելու համար օգտակար կլիներ այստեղ բերել խեթական թագավորների երկրորդ պետության (1475—1200) և Միտաննիի արքայացանկերը.

**Խեթական թագավորներ**[1]

1. *Թուդխալիյա* II *(1475)*
2. *Խաթթուսիլ* II
3. *Թուդխալիյա* III *(1410—1390)*
4. *Սուպպիլուլիումա (1380—1346)*[2]
5. *Մուրսիլ* II *(1345—1320)*
6. *Մուվատալլի (1293)*
7. *Ուրխի-Թեշուպ (1293—1286)*
8. *Խաթթուշիլ* III, *6-րդի եղբայրը*
9. *Թուդխալիյա* IV
10. *Արնուվանդա*
11. *Թուդխալիյա* V *(1200)*

**Միտաննիի թագավորներ**

1. *Պարսաշատտա (1500)*
2. *Սաուշշատար (1455—1430)*
3. *Արտաթամա (1430—1405)*
4. *Սուտարնա (1387—1367)*
5. *Թուշրատտա*
6. *Մաթթիվազա*

**Ասորեստանի թագավորներ**

1. *Աշշուրուբալլիտ (1362—1337)*
2. *Ադադնիրարի (1336—1305)*
3. *Սալմանասար* I *(1304—1243)*
4. *Թուկուլթի-Նինուրտա* I

## 2. ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՎՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

### Հայասա, Իշուվա և Ալշի

*Հայասա երկիրը պատմաբեմ է հանդես գալիս* XIV *դարի սկզբում մեր թվականությունից առաջ, Թուդխալիյա* III*-ի թագավորության օրով (1410—1390) և պատերազմ վարում այդ թագավորի ու նրա հաջորդների դեմ՝ իր անկախության համար։ Այդ ընդհարումների պատմությունը արձանագրված է Սուպպիլուլիումայի* Տարեգրության *մեջ, շարադրված իր որդու և հաջորդի՝ Մուրսիլ* II*-ի կողմից, ինչպես նաև հենց իր՝ Մուրսիլ* II*-ի* Տարեգրության *մեջ։ Շատ կարևոր պատմական տեղեկություններ կան նաև Սուպպիլուլիումայի և միտաննական թագավոր Մաթթիվազայի միջև կնքված պայմանագրում և նույն թագավորի ու Հայասայի թագավոր Հուկկանայի միջև կնքված դաշնագրում։*

*Նույն վավերագրերը թույլ են տալիս ուրվագծելու Հայասայի և նրա հարևան Ալշիի պատմությունը*[3]*։*

---

[1] *Խեթական ինչպես և խուրրիական անունների տառադարձությունը պայմանական է։ Ոմանք նախընտրում են հնչեղ բաղաձայններով արտասանել՝ Դուդխալիյա, Դուշրատտա և այլն. ուրիշներ կարծում են, որ այդ մարդիկ չէին զանազանում հնչեղ և խուլ հնչյունները։ Թյուրո-Դանժենի կարծիքը («*Syria*», 1936 թ.) համոզիչ չէ. *pi*-ն կարող է նաև հանգել *wi*-ի (ինչպես, օրինակ, հայերենում է) և -*wi *գիրը չի պահանջում -*bi *արտասանություն։*

[2] *Կավենյակի համաձայն (*RHA*, 1936), Սուպպիլուլիուման թագավորել է 1280—1260 թթ., իսկ նրա հաջորդը՝ 1260—1220 թթ.։*

[3] *Սուպպիլուլիումայի արձանագրությունները հրապարակվել են Ֆորերի կողմից՝* **E. Forrer,** Die Boghazköi-Texte in Umschrift, «Wissenschaftliche Veröffentlichungen der Deutschen Orientgesellschaft», *էջ 42, 1926։ Տառադարձված տեքստը վերարտադրված է Կավենյակի կողմից՝ ֆրանսերեն թարգմանությամբ։* **E. Cavaignac,** Les Annales de Sub-

*Սուպպիլուլիումայի տարեգրությունը սկզբում պակասավոր է։ Բայց այնտեղ պարզորոշ կերպով կարդացվում է Հայասա անունը։ Ապա խոսվում է կասկա ժողովրդի մասին, որը նոր էր գրավել* Սամուխա *քաղաքը։ Այնուհետև արձանագրությունը շարունակում է. «Սամուխայից հայրս մեկնեց»։ Քանի որ խոսողը Մուրսիլն է, ապա ուրեմն, նրա հայրը Սուպպիլուլիուման է։ Քիչ անց ասվում է «Պապս ողջ և առողջ էր»․ դա արդեն Թուդխալիյան է։ Սրանից կարելի է եզրակացնել, որ Թուդխալիյան իր որդու՝ Սուպպիլուլիումայի հետ զինվորական արշավանք էր ձեռնարկել Հայասայի և կասկաների դեմ։ Դա առաջին մեզ հայտնի արշավանքն է։*

*Կասկաներին ետ մղելուց հետո Թուդխալիյան Վերին երկրից ցած է իջնում, որպեսզի արշավի ընդդեմ* Մասայի *մարդկանց, որոնք նեղում էին* Կամմալան։ *Տարեգրությունը շարունակում է. «Մինչդեռ պապս Կամմալայումն էր, իսկ հայրս գտնվում էր նրա հրամանատարության տակ, թըշնամի Կասկան զենք վերցրեց» և ավերակի վերածեց խաթթի երկիրը։ Ասպատակողները կասկաների հետևյալ երկու քաղաքներից էին՝* Գադհարիյայից *և* Գազզապասից։ *Թուդխալիյան Մասայից վերադարձավ, հարձակվեց զավթիչների վրա և նրանց փախուստի մատնեց։*

*«Պապս այնտեղից մեկնելուց հետո գնաց Հայասա, իսկ հայրս նրա հետ էր։ Երբ պապս հասավ Հայասա երկիրը, Կարաննիսի, Հայասայի թագավորի (դե՞մ)... Կումմախա ճակատամարտի համար»... շարունակությունը չկա։*

*Սա երկրորդ արշավանքն է, որ Թուդխալիյան կատարում է իր որդու՝ Սուպպիլուլիումայի հետ միասին ընդդեմ Հայասայի, որի թագավոր Կարաննիսը դիմադրություն է ցույց տալիս Կումմախա քաղաքում։*

---

biluliuma, Strasbourg, *1931։ Միայն թարգմանությունը տե՛ս* «Revue des Etudes Anciennes», *1930, էջ 229 և շար.։*

*Մուրսիլի արձանագրությունները հրատարակված են և թարգմանված գերմաներեն Ա. Գյոտցեի կողմից։* **A. Goetze,** Die Annalen des Muršiliš, Mitteilungen der Vorderasiatisch-Aegyptischen Gesellschaft, *38.* Band, *1933, տե՛ս նաև* **F. Hrozni,** Die ersten zehn Regierungsjahre des Königs Muršiliš II, Hethitische Keilschrift-Texte aus Boghazköi, *1919, էջ 156—223։*

*Սուպպիլուլիումայի պայմանագիրը Մաթթիվազա թագավորի հետ՝ աքքադերեն լեզվով, հրատարակված է գերմաներեն թարգմանությամբ հանդերձ։* **E. Weidner,** Politische Dokumente aus Kleinasien, Boghaz köi-Studien, herausgegeben von Otto Weber, *8* Heft, *1923։ Նույն թագավորի պայմանագիրը Հուկկանայի հետ խեթերեն՝ տառադարձված և թարգմանված, տե՛ս* **J. Friedrich,** Staatsverträge des Hethitischen Reiches, «Mitteilungen d. Vorderasiatisch-Aegyptischen Gesell.», *34.* Band, *1930.*

• *Ուսումնասիրություններ՝* **E. Forrer,** Hayasa-Azzi, Caucasica, *9, 1931*; **E. Cavaignac,** Le premier royaume d'Arménie, «Revue Hittite et Asianique», *17, 1934*; *նույնի* Subbiluliuma et son temps, Paris, *1932։*

Կարաննիս թագավորի անունը հիշեցնում է Կարանիտիսը (Թեոդոսիոպոլիս քաղաքի նահանգը), հայերեն՝ Կարին (Կարեն), իսկ Կումմախան ավելի ստույգ կերպով կարելի է նույնացնել Կամախ քաղաքի հետ՝ Եփրատի ափին, Դարանաղի գավառում։

Այս վերջին կետը որոշում է Հայասայի աշխարհագրական դիրքը Վերին Եփրատի հովտում։ Կամախի հյուսիսում Հայասան սահմանակից էր Կասկա երկրին, որը տարածվում էր մինչև Հալիսի գետաբերանը։ Դրա համար էլ խեթական տիրակալների պատերազմական գործողությունների ժամանակ Հայասան հիշատակվում է Կասկայի հետ միասին։

Հայասա անունը կարդացվում է նաև մեկ այլ հատվածում, հետևյալ բառերի հետ հարակցված՝ «Թուդխալիյան, պապս... Գանթուզզիլի»։ Խոսքըն այստեղ անշուշտ վերաբերում է Հայասայի դեմ ուղղված արշավանքին, որ ձեռնարկեց նույն Թուդխալիյան, Գանթուզզիլիի օգնությամբ, որը ոչ թե իր որդին է, այլ զորավարը։ Նա հիշատակված է Մուրսիլի ժամանակագրության մեջ որպես նրա զորավարներից մեկը, որը գործում է Նուխասսիի դեմ, Մուրսիլի թագավորության 7-րդ տարում։

Սուպպիլուլիումայի ժամանակագրությունն այլևս չի անդրադառնում Հայասային։ Սակայն Հուկկանայի հետ կնքած պայմանագրում Սուպպիլուլիուման հիշատակում է մի քանի շատ հետաքրքիր իրադարձություններ, որոնք նույնպես վերաբերում են իր հորը՝ Թուդխալիյա թագավորին։ Դաշնագիրը գրված է առաջին դեմքով, և դա Սուպպիլուլիուման է, որ խոսում է դիմելով Հուկկանային։ Նրան հիշեցնում է իր ցուցաբերած լավ ընդունելությունը, այն պատիվը, որ մատուցել է նրան, համարելով պարզ, բայց քաջ մարդ, և իր քրոջը կնության տալով նրան։ Ահա թե ինչու Հուկկանան Սուպպիլուլիումա Արև-արքայից, նրա ժառանգորդ որդուց կամ մյուս որդիներից և եղբայրներից բացի չպետք է ճանաչի ոչ ոքի, երբ նրանք իշխանության գլուխ կանգնեն։ Հուկկանան պետք է նրանց պաշտպանի բռնապետների դեմ։ Սուպպիլուլիուման դրա փոխարեն խոստանում է նույն ձևով վարվել Հուկկանայի, նրա որդու և ժառանգի հետ։ Նրանց որդիները միմյանց հետ կապված են միևնույն փոխադարձ պարտավորությամբ։ Սուպպիլուլիուման վկայակոչում է հազար աստվածներ, որոնք հսկում են դաշնագրի ճշգրիտ կատարմանը, որպեսզի պատժեն նրանց, ովքեր կխախտեն իրենց երդումը և կհրաժարվեն ստանձնած պարտավորություններից։ Աստվածները վկա են նաև զինվորական համաձայնությանը, ըստ որի երկու կողմերը հանձն են առնում ռազմական աջակցություն ցույց տալ միմյանց՝ թշնամիների դեմ. նրանք պարտավոր են նաև մեկը մյուսին նախազգուշացնել իրենց դեմ հայտնաբերված դավադրությունների դեպքում։

Ապա Սուպպիլուլիուման հետաքրքական հրահանգ է տալիս Հուկկանային, իր քրոջ հետ նրա ամուսնության կապակցությամբ։ Ասում է նրան հետևյալը. «Քույրս, որ քեզ կնության եմ տվել, նույնպես ունի քույրեր և կիսա-քույրեր, իսկ դրանք, քո ամուսնության հետևանքով, մերձեցել են քեզ։ Այսպես ուրեմն, Խաթթի երկրում օրենք գոյություն ունի, ըստ որի չի կարելի իր քույրերին ու զարմուհիներին դիպչել, դա անթույլատրելի է։ Խաթթիում նման արարք թույլ տվողը չի ապրի, նա կմեռնի։

«Քանի որ ձեր երկիրը քիչ զարգացած է, ապա դուք սովոր եք ապրել ձեր քույրերի և զարմուհիների հետ։ Խաթթիում դա արգելված է։ Երբ մի օր քո կնոջ քույրը, կիսա-քույրը կամ զարմուհին քո մոտ հյուր գա, նրանց առաջարկիր խմելիք և ուտելիք։ Խմեցե՛ք, կերե՛ք, լավ ժամանակ անցկացրե՛ք։ Սակայն նրանցից ոչ մեկին մի դիպչիր։ Անթույլատրելի է, դա մահացու մեղք է։ Ինքնաբերաբար չփորձես, իսկ եթե որևէ մեկը քեզ դրդի այդ բանը կատարելու, մի լսիր նրան, դրանից խուսափիր, թո՛ղ դա երդումով քեզ համար արգելված լինի։

«Զգուշացիր նաև պալատի կանանցից։ Պալատի ինչ կնոջ մասին էլ լինի՝ ազատ կամ ստրուկ, մի՛ մոտենար նրան, մի՛ խոսիր նրա հետ։ Լինի դա քո ծառան կամ սպասուհին, նրան մի՛ մոտենար, զգուշացի՛ր։ Երբ անցնում է պալատական մի կին, շեղվիր նրա ճանապարհից։ Պալատական կնոջ հետևյալ դեպքը թող դաս լինի քեզ համար։

«Ո՞վ էր Մարիյան և ինչո՞ւ նա մեռավ։ Արդյոք նա պալատական սպասուհու չէ՞ր հանդիպել, չէ՞ր նայել նրան։ Այսպես, հայրս՝ Արևը, պատուհանից նկատել էր և նրան բարկությամբ ասել՝ «Ինչո՞ւ նայեցիր այդ կնոջը»։ Եվ այդ սխալի համար Մարիյան մահվան ճարակ դարձավ։

«Մահվան պատճառ դարձած այս դեպքը արժանի է, որ դու զգուշանաս։

«Երբ Հայասա վերադառնաս, մի՛ դիպչիր քո եղբայրների կանանց և քո քույրերին։ Խաթթիում դա անթույլատրելի է։ Եթե պալատ վերադառնաս, արգելված բան մի՛ անիր։ Նաև նոր կին չառնես Ազզի երկրից, եթե արդեն մեկն ունես, թող նա լինի քո հարճը, բայց նրան մի դարձնիր քո կինը։

«Վերցրու քո աղջիկը, որ կնության էիր տվել Մարիյային, և տուր նրա եղբորը։ Խաթթից Հայասա տարագրված մարդկանց ետ ուղարկիր. վերականգնի՛ր նաև Խաթթիի սահմանները։ Իսկ այն մարդը, որ տարագիրներին թաքցնում է և ետ չի տալիս, բարկացած ասա նրան. «Ինչու՞ նրանց ետ չես տալիս»»։

Արձանագրության շարունակությունը փչացել է և ընթեռնելի է միայն կեսը։ Այստեղ խոսքն ուղղված է Հայասայի մարդկանց և մի ոմն Մարիյայի։ Նրանք պարտավոր են Սուպպիլուլիումայի առաջին իսկ կանչին օգնություն հասնել նրան իրենց հետևակ զորքերով ու մարտակառքերով։ Եթե մերժեն

և անցնեն հակառակորդի կողմը, ովքեր էլ որ լինեն, իրենց տված երդումը կկործանի նրանց բոլորին, իրենց կանանցով, երեխաներով, տներով ու մարդկանցով։

«Եթե դուք, Հայասայի մարդիկ, ապագայում ինձ բարեկամաբար պաշտպանեք, ես նույնպես ձեզ կպաշտպանեմ, ո՛վ Հայասայի մարդիկ, Մարիային և նրա մերձավորներին՝ Հայասայի մարդկանց միջև։ Ես կպաշտպանեմ նաև Հայասա երկիրը։ Եթե դուք լավ վարվեք ու պաշտպանեք Արևին և Խաթթիի մարդկանց, ես՝ Արևս, նույնպես ձեզ կպաշտպանեմ։ Բայց եթե ինձ վնաս պատճառեք, ես՝ Արևս, նույնպես կվնասեմ ձեզ և ես՝ Արևս, ազատ կլինեմ իմ երդումից աստվածների առջև։

«Ուրեմն, լսեցեք այս խոսքերը, որ թելադրում եմ ձեզ երդման ներքո. եթե դուք, Հայասայի մարդիկ և Մարիյա, չկատարեք իմ պատվերները, թո՛ղ այս երդումը ոչնչացնի ձեզ բոլորիդ՝ ձեր կանանց, ձեր զավակների, ձեր եղբայրների, ձեր քույրերի, ձեր ընտանիքների, ձեր տների, ձեր դաշտերի (ձեր քաղաքների), ձեր խաղողի այգիների, ձեր անասունների, ձեր խոշոր ու մանր անասունների, ձեր ամբողջ ունեցվածքի հետ միասին, իսկ դուք սև հողի երեսից ջնջվեք։ Ես ոչ մի վնաս չեմ պատճառելու Հայասայի մարդկանց, Մարիյային և Հայասա երկրին»[1]։

Արձանագրության բնագիրը այս վիճակում, դժբախտաբար, շատ կետերում մեզ տարակուսանքի մեջ է թողնում։ Կարաննիսի, Մարիյայի և Հուկկանայի՝ այս երեք անձերի միջև ի՞նչ հարաբերություններ գոյություն ունեն և ո՞վ է վերջին Մարիյան։ Մարիյան Թուդխալիյայի կողմից դատապարտվել է մահվան։ Արդյոք նա Կարաննիսի հաջո՞րդն էր։ Ի՞նչ առիթով էր նա գտնվում Խաթթիի պալատում։ Եթե նա զավակ չուներ, համենայն դեպս ուներ եղբայր, որը Սուպպիլուլիումայի հրամանով պետք է կնության առներ Հուկկանայի դստերը, Մարիյայի կնոջը։ Մարիյան զոհ դարձավ քաղաքականության հետ կապ չունեցող մի անխոհեմության, և սպասելի էր, որ գահ կբարձրանա նրա որդին կամ գոնե եղբայրը, մինչդեռ իշխանության ղեկը կանգնեց աները՝ Հուկկանան։

Ենթադրվում է, թե Մարիյայի դաժան մահը Հայասա երկրում առաջ էր բերել խռովություններ և դրա հետևանքով խեթական թագավորը միջամտել էր, որպեսզի հեռացվի օրինավոր ժառանգը հօգուտ Հուկկանայի, որը խռովությունների ժամանակ գուցե եղել է Խաթթիի կողմնակիցը։

Սակայն ինչպե՞ս բացատրել այն զարմանալի իրողությունը, որ Հուկկանայի հետ կնքած պայմանագրում խեթական թագավորը պայմանագրի վերջում դիմում է մի ոմն Մարիյայի։ Նրա անունից դատելով, պետք է որ նա պատկաներ այն Մարիյայի ընտանիքին, որը մահվան էր դատա-

---

[1] J. Friedrich, ն. աշխ., էջ 107—136։

*պարտվել խեթական պալատում։ Այդ դեպքում հնարավոր չէ հասկանալ այն նախապատվությունը, որ Սուպպիլուլիուման տալիս է Հուկկանային, ընդդեմ իշխող ընտանիքի մի անդամի, որպիսին է Մարիյան, և հանկարծ այն ատիճան լավ հարաբերության մեջ է լինում վերջինիս հետ, որ պայմանագիր է կնքում նրա հետ։*

*Սա բարդ խնդիր է։ Հարց է ծագում, թե արձանագրության վերջին մասը արդյո՞ք Հուկկանայի հետ կնքած պայմանագրի ամբողջությանն է վերաբերում, թե՞ հատվածն է Մարիյայի հետ կնքած մի ուրիշ դաշնագրի և այս Մարիյան էլ Թուդխալիյայի կողմից մահվան դատապարտված Մարիյան է։ Հուկկանայի դաշնագրի մեզ հասած տեքստը բնագիրը չէ, այլ բնագրից հետագայում կատարված շատ աղճատված մի ընդօրինակություն, ինչպես որ խոստովանում է ընդօրինակողը*[1]*։*

*Գալով փաստաթղթի իրավական բնույթին, որը մեզ համար շատ կարևոր է, դա պայմանագիր է դաշնակցի և ոչ թե ավատառուի, ինչպես որ ոմանք իզուր կարծում են։ Հակառակ Սուպպիլուլիումայի վերամբարձ տոնին և մի քիչ պաշտոնական շեշտին, իրականում նա Հուկկանայի հետ վարվում է ինչպես հավասարը հավասարի հետ։ Պայմանագրում չկա ոչինչ, որ խոսեր խեթական թագավորի գերադասության օգտին։ Ոչ մի կետ նրբան չի վերապահում որևէ նախապատվություն կամ առավելություն, ամեն ինչ փոխադարձ է՝ բարեկամություն, ռազմական աջակցություն, թշնամանքից հրաժարում, երդման հավատարմություն, պայմանագրին հավատարմություն. սրանք են պայմանագրի էական կետերը։ Հուկկանային՝ որպես ավատառուի, պարտադրված հարկի կամ այլ պարտավորությունների մասին ոչ մի խոսք չկա։ Չկա ոչինչ, որ ապացուցեր, թե Հայասան ճնշվել և Խաթթիի քմահաճույքին ենթակա է դարձել։ Ընդհակառակն, Սուպպիլուլիուման չի թաքցնում, որ Հայասան դեռ պահում է այն հողերը, որ գրավել էր Խաթթիից և որ Հուկկանայի երկրում կային նաև տարագիր խեթեր։ Դաշնագրի մի կետը Հուկկանային պարտավորեցնում է տարագիրներին վերադարձնել և դուրս գալ գրավված մարզերից։*

*Իրականում խեթական պետությանը չհաջողվեց զինաթափ անել ո՛չ Հայասան և ոչ էլ իր դրացի կասկաների երկիրը։ Սուպպիլուլիումայի որդին՝ Մուրսիլը, գահ բարձրանալով իր եղբոր՝ Արնուվանդայի կարճատև թագավորությունից հետո, ստիպված եղավ նորից կռվի բռնվել վերոհիշյալ երկու երկրների հետ։ Հայասայի և կասկաների դեմ ռազմական պատրաստությունների պատմությունը մեզ հաղորդում է նույն Մուրսիլը իր* **ժամանակագրության** *մեջ*[2]*։*

---

[1] **J. Friedrich,** *ն. աշխ., էջ 105.* **E. Forrer,** ZDMG, NF, I, *էջ 181։*

[2] *Մուրսիլի ժամանակագրությունը ծանոթ է երկու խմբագրությամբ։ Մեկն ընդգրկում է այս թագավորի վարած արշավանքները իր թագավորության առաջին տասը տարիներում,*

Մուրսիլի թագավորության առաջին վեց տարիները կլանված են եղել պատերազմներով Կասկա երկրի դեմ՝ Խաթթիի հյուսիսում և Արզավայի դեմ՝ հարավում։ Մեր թեմայից դուրս է մանրամասնությունների վրա կանգ առնելը։ Միայն նշենք ռազմարշավի գլխավոր կետերը։ Կասկաները զավթեցին Թուրմիտտայի սահմանակից երկիրը, Հալիլա և Դուդդուկա քաղաքները։ Մուրսիլի կողմից սանձահարվեցին խռովություն հարուցող խառնակիչները։

Թագավորը գնում է դեպի Իշխուպիտտա երկիրը։ Թիպիա մարզը՝ Կաթխաիդդուվա քաղաքի հետ միասին, Ասխարպաիա լեռնային երկիրը, Թարիկարիմա երկիրը, Կամամա և Զիխարիյա մարզերը հերթով ապստամբել էին, բայց խեթական թագավորը նրանց հարկադրեց հպատակվել։

Կասկաները գրավել էին Ասխարպաիան և կտրել էին Պալայի հետ հաղորդակցման ուղին։ Մուրսիլը հաղթում է նրանց և վերադառնում Զիլուլիա՝ հանգստանալու։ Թիպիայի դեպքը ավելի լուրջ է։ Ժամանակագրությունից երևում է, որ կասկաների քաղաքները մեկ մարդու իշխանության տակ չէին գտնվում։ Դա նշանակում է, որ չնայած նրանք դեռևս ընդհանուր քաղաքական կազմակերպություն չունեին, բայց առկա էին բավական շատ ցեղեր, որոնցից յուրաքանչյուրն ուներ իր առանձին առաջնորդը։ Մի ոմն Պիխխունիյայի հաջողվեց Թիպիա մարզում համախմբել տոհմերը և նրանց կազմակերպել «թագավորական ձևով», ինչպես ասում է մեր վավերագիրը։ Պիխխունիյան ավերածություններ գործեց մինչ Զազզիսա քաղաքը և նույնիսկ գրավեց Իշտիինայի երկիրը։ Մուրսիլը դուրս եկավ նրա դեմ, ջախջախեց նրան և ստիպեց հպատակվել։ Թիպիան կործանելուց հետո Մուրսիլն իր զենքերն ուղղեց Ազզիի թագավոր Աննիյայի դեմ։ Դա իր թագավորության յոթերորդ տարին էր։

Խեթերն իրենց առաջին պետության ժամանակից ճանաչում էին կասկաների ցեղերին։ Նրանք իրենց հաճախակի հարձակումներով անհանգստացնում էին Վերին երկիրը, այսինքն Խաթթիի հյուսիսային և հյուսիսարևմտյան մասերը։ Դրանից կարելի է եզրակացնել, որ կասկաների երկիրը զբաղեցնում էր Սև ծովի ափի երկարությամբ ձգվող լեռնային շրջանը, Փոքր Հայքում սկիզբ առնող Լիկոս և Հալիս գետերի ակունքների և

---

ինչպես որ նշված է ժամանակագրության վերջում։ Գիտնականներն այս խմբագրությունը կոչում են Տասնամյա ժամանակագրություն։ Մյուս՝ ավելի մանրամասն խմբագրությունն ընդգրկում է բոլոր այն արշավանքների պատմությունը, որ վարել են Մուրսիլը և իր զորապետները գրեթե ամբողջ թագավորության ընթացքում։ Այդ խմբագրությունը կոչվում է Լրիվ ժամանակագրություն։ Առաջին խմբագրության մեջ չկան 7-րդ տարվա մի մասը, ամբողջ 8-րդ և մասամբ իններորդ տարվա սալիկները։ Երկրորդ խմբագրությունը նույնպես լրիվ չէ սկզբում, և 12-րդ տարվան հետևող տարիների իրադարձությունները պատկանում են 19—27-րդ կամ, ինչպես ոմանք կարծում են, 16—24-րդ տարիներին։

վերջինիս գետաբերանի միջև։ Մեր հիշատակելիք վայրերը հնարավոր չէ տեղադրել։ Նրանցից մի քանիսը հայտնի են Կապադովկիայի ու ասուրական գաղութների ժամանակներից ի վեր։ Դրանք են՝ Թուրխումիտ, Թուխպիա, որոնք գտնվում էին Յոզգատի և Մերիֆոնի մարզի ասուրական քարավանների առևտրական մեծ ճանապարհների վրա։ Այդ քաղաքները նույնանում են խեթերի Թուրմիտտա և Թիպիա քաղաքների հետ։ Կապադովկիական սալիկներում հիշատակված է նաև Թավիննա քաղաքը, որի անունը հիշեցնում է բյուզանդացիների մի ամրոց, Τηβέννα, ուր Գրիգոր Տարոնացին 1103 թվականին բանտարկեց Տրապիզոնի հրաժարական տված դուքսին։ Մուրսիլը, Պալան հպատակեցնելուց հետո, վերադարձի ճանապարհին կանգ առավ Զիուլիլայում։ Դա հիշեցնում է Զելան, այսօրվա Զիլեն, ու նաև Պալալսե (գուցե Պալալե՞ա) կայանը Ամասիայի մոտ, ըստ Պեռ՞նգերյան fաrաեգի[1]։

Ինչ էլ որ լինի, կասկաների հարևանությունը Փոքր Հայքին կասկածից դուրս է։ Այնտեղ կասկաների երկիրը սահմանակից էր Հայասային։ Ահա թե ինչու Մուրսիլը, հենց որ վերջացրեց գործը կասկաների վտանգավոր առաջնորդ Պիխխունիյայի հետ, դարձավ Ազզիի կամ Հայասայի Աննիյա թագավորի դեմ։ Այս երկու տերմինները (Ազզի, Հայասա) հոմանիշ են և մեջընդմեջ գործածվում են Մուրսիլի ժամանակագրության մեջ՝ նույն տերիտորիայի իմաստով։ Սուպպիլուլիուման, ինչպես վերևում ասացինք, Հայասայի իշխան Հուկկանային զգուշացնում էր Ազզիից, այսինքն՝ Հայասայից, կին չառնել։

Մուրսիլը գրում է Աննիյային, որ իր հոր Միտաննի երկրում եղած ժամանակ նա հարձակվել էր Դանկուվա քաղաքի վրա և Հայասա էր տարել գերիներ, խոշոր ու մանր անասուններ և որ արդեն ժամանակն է բոլորը վերադարձնել։ Ազզիի թագավորը նրան պատասխանում է, որ ինքը բոլորովին տրամադիր չէ նրան հանձնելու տարագիրներին։

Մուրսիլը նորից է գրում Աննիյային. «Ես հասել և բանակել եմ քո երկրի մուտքի մոտ։ Ես չհարձակվեցի քո երկրի վրա, չտարա բնակիչներին և ոչ էլ խոշոր ու մանր անասուններին։ Սակայն դու կռվել ուզեցիր ինձ հետ, Արևիս հետ, և դու եկար հարձակվեցիր Դանկուվայի վրա և այն ամայացրիր»։

Քանի որ Աննիյան էլ իր կողմից սպառնում է նրան, Մուրսիլն սկսում է թշնամական գործողությունները։ Նա շարժվում և կանգ է առնում Ազզիի սահմանի մոտ՝ Ուրա բերդի դիմաց, որը գտնվում էր վերասլաց ժայ-

---

[1] Gavaignac, RHA, 1936, էջ 173, փնտրում է Պալան Խաթթուշա մայրաքաղաքի արևմուտքում, Պափլագոնիայի ուղղությամբ։

*ռի վրա։ Արձանագրության շարունակությունը գոյություն չունի, և Ուրայի բախտը մնում է անհայտ։*

*Իր թագավորության հաջորդ՝ ութերորդ տարում Մուրսիլը նորից արշավեց Աննիյայի դեմ։ Նրան նույն պատգամն ուղարկեց խեթական տարագիր բնակիչների վերաբերյալ։ Աննիյան խոստացավ կատարել նրա պահանջը։ Խեթական թագավորը, առանց կռվի բռնվելու, վերադարձավ Կումաննիի Խեպետ աստվածուհու տոնը տոնելու համար։*

*Աննիյան իր խոստումը չկատարեց, Մուրսիլն իններորդ տարում նրան երրորդ անգամ գրեց, բայց արդյունք չստացավ։ Աննիյան ուզում էր գերիների փոխանակում կատարել և հրաժարվում էր վերադարձնել խեթերին, քանի դեռ չէր ստացել իր սեփական հպատակ տարագիրներին։*

*Մուրսիլը մեկնեց Կիզզուվատնա, իր պետության հարավը, իսկ Աննիյան օգտվեց այդ առիթից՝ հարձակում սկսելու համար։ Նա մուտք գործեց Վերին երկիրը, ավերեց Իշտիտինա մարզը և պաշարեց Կանառւվարա քաղաքը։ Այդ ժամանակ Մուրսիլի զորքերն ու մարտակառքերը՝ մեծ տակառապետ Նուվանզայի հրամանատարության տակ, բանակել էին Վերին երկրում. Թագավորը գրեց Նուվանզային. «Ահա հայասայան թշնամին Վերին երկրի վրայով ներթափանցել է մինչև Իշտիտինա, կողոպտել է այն և պաշարել Կանառւվարա քաղաքը։ Օգնության տար զորքերին ու մարտակառքերը, գնա Կանառւվարա և այնտեղից վտարիր թշնամուն»։ Նուվանզան շտապ օգնության հասավ պաշարված քաղաքին, բայց այն պահին, երբ ուզում էր ճակատամարտն սկսել, իշխանները նրան հարցրին, թե արդյոք թռչունների թռիչքի և անասունների աղիքների նշանով գուշակությունները ապահովու՞մ են հաղթանակը։ Մեծ տակառապետն այդ մասին տեղեկացրեց Կիզզուվատնայում գտնվող թագավորին։ Մուրսիլը պատգամներ պահանջեց և Նանա-լու-իշ իշխանի միջոցով նպաստավոր պատասխան ուղարկեց զորապետին։ Թագավորը գտնվում էր Կարգամիշի ճանապարհին, երբ վերոհիշյալ իշխանը նրան բարի լուր բերեց այն մասին, թե Նուվանզան հարձակվել էր հայասայան թշնամու վրա և պարտության մատնել նրա բանակը, որը բաղկացած էր տասը հազար մարդուց և յոթ հարյուր մարտակառքերի վարորդներից։*

*Մեծ տակառապետն անշուշտ չափազանցել էր իր հաջողությունները։ Հաջորդ դեպքերն ապացուցեցին, որ Ազզիի ուժերը ջախջախված չէին։ Մուրսիլ թագավորը պատրաստվում է անձամբ գնալ պայքարը շարունակելու թշնամու դեմ։ Հենց որ նա կարգի բերեց Կարգամիշի գործերը, վերադարձավ Կիզզուվատնա։ Այնտեղից գնաց Թեգարամմա*[1]*։ Բանակի*

---

[1] Լրիվ ժամանակագրության *համաձայն, թագավորը Կարգամիշից պետք է եկած լիներ ուղղակի Թեգարամմա, սակայն* Տասնամյա ժամանակագրությունը *ցույց է տալիս, որ*

հրամանատար Նուվանզան իր զորքերով նույնպես եկավ Թեգարամմա։ Թագավորը ցանկանում էր արշավանքի դուրս գալ Հայասայի դեմ, բայց քանի որ տարին վերջանում էր, սպաները խորհուրդ չտվին։ Մուրսիլը մեկնեց Խարրանա, բանակը հետևեց նրան։ Իյախրիսսա քաղաքը և Պիգգաինարիեսսա մարզը ըմբոստացել էին և հրաժարվում էին զորք տրամադրել նրան։ Մուրսիլն իսկույն դեմ դուրս եկավ և գիշերով հարձակվեց Պիգգաինարիեսսայի վրա, քարուքանդ արեց այն, իսկ հաջորդ օրը հասավ Իյախրիսսա քաղաքը և նրան նույն բախտին արժանացրեց։

Մյուս օրը Մուրսիլը հարձակվեց Թապտինա քաղաքի վրա. ճանապարհին նա բոցերի ճարակ դարձրեց Տարկումա քաղաքը։ Թապտինա, Հուրշամա և Պիկուրզի քաղաքները շտապեցին հայտնել իրենց հպատակությունը, պարտավորություն ստանձնելով զորք տրամադրել։ Հաջորդ օրը թագավորը կողոպտեց Խախսեխլա և Կանտիսսախսա քաղաքները, ապա Խաթթուշայում գտնվող Հակպիսսա քաղաքի վրայով ճանապարհ ընկավ դեպի Անկուվա՝ այս քաղաքում ձմեռելու համար։

Տասնամյա ժամանակագրության մեջ չեն նշված այն քաղաքների անունները, որ Մուրսիլը հպատակեցրեց Պիգգաինարիեսսայից հետո։ Այնտեղ ասված է, որ Մուրսիլը գրավեց Իյախրիսսա քաղաքը, ապա Պիգգաինարիեսսա քաղաքը, հետո հարձակվեց կասկաների քաղաքների վրա, հաղթեց նրանց և, Պիգգաինարիեսսա քաղաքը հրդեհելուց հետո, ավարով բեռնված վերադարձավ Խաթթուշա։

Այսպիսով, կասկաների քաղաքներ ասելով, Լրիվ ժամանակագրության մեջ պետք է հասկանալ հետևյալ քաղաքները. Թապտինա, Հուրշամա, Պիկուրզի, Խախսեխլա և Կանտիսսախսա։ Դա մեզ թույլ է տալիս գծել Մուրսիլի անցած ճանապարհը և ըստ այնմ կողմնորոշվել պատերազմի դաշտի սահմանների վերաբերյալ։ Մուրսիլը մեկնել է Թեգարամմայից, որտեղից գնացել է Խարրանա։ Անհնարին է ենթադրել, որ դա Միջագետքի Խառանն է, ինչպես որ կարծում են ոմանք։ Իրականում Մուրսիլը Կարգամիշից ուղևորվելու էր Թեգարամմա։ Կարիք կա՞ր Կարգամիշի մարզը վերադառնալու համար այդքան երկար ճանապարհ անցնել և նույնիսկ գընալ ավելի հեռու՝ Խառան։ Մուրսիլը Թեգարամմա էր եկել Հայասայի դեմ արշավելու համար, իսկ այս երկիրը շատ հեռու էր միջագետյան Խառանից։ Բոլորը համաձայն են Թեգարամման Մելիտենեի արևմուտքում տեղադըրելու և Գաուրաինայի (արդի Գորունի) հետ նույնացնելու հարցում։ Մեր Խարրանան պետք է փնտրել Թեգարամմայի մոտերքում, Հայասայի ուղ-

---

նա Կիզզուվատնայից է ոչ թե Թեգարամմայից էր մտադրվել գնալ Հայասա կամ Ազզի երկրի դեմ։ Եթե առաջին վավերագրում Կիզզուվատնա անունը պարզապես մոռացված չէ, ապա պետք է ենթադրել, որ Թեգա. ամման Կիզզուվատնայի մի կետն է։

ղությամբ։ Եվ մեզ ոչինչ չի խանգարում այն գտնելու ի դեմս Պտղոմեոսի և բյուզանդացիների հիշատակած Արանեի՝ Մելիտենեն Սեբաստիային միացնող ճանապարհի վրա գտնվող կայաններից մեկի[1]։

Իր երթը շարունակելով, խեթական թագավորը մոտենում է Կասկայի սահմանին, այնտեղ մի քանի քաղաք ավերակի վերածում, ապա դառնում է արևմուտք, դեպի Խաթթիի մայրաքաղաքը։ Բնական կլիներ տըվյալ կասկայան քաղաքները որոնել Հալիսի ակունքի մոտերքը՝ Սեբաստիայից արևմուտք։ Այդ քաղաքներից մեկը՝ Խարշանան, կարելի է նույնացնել Խարսանայի հետ, բյուզանդական Χαρσίανον-ի հետ, որը գտնվում է Հալիսի ափին, Սեբաստիայի մոտ։

Մուրսիլը վերջապես հասնում է իր մայրաքաղաքը, հետևելով, անտարակույս, Սեբաստիայից Խաթթուշա-Պտերիա (Յոզգաթի մոտ) տանող ճանապարհին, վերադառնալու համար Անկուվա, որը գտնվում է արդի Ալիշահթի մոտ՝ Յոզգաթ—Կեսարիա ճանապարհի վրա։

Այսպիսով, Մուրսիլ թագավորը, չկտրվելով Թեգարամմայի և Սեբաստիայի մարզի միջև և Սեբաստիայի ու Պտերիա-Յոզգաթի միջև եղած հաղորդակցության մեծ ճանապարհներից, զինվորական շրջագայություն կատարեց իր տերության արևելյան մասերում։ Հաղորդակցման այդ ուղիները, անշուշտ, գոյություն ունեին հին դարերից ի վեր, և Մուրսիլը շըրջագայության ժամանակ բոլորովին էլ չի դիպչում Հայասայի հողին։ Անհրաժեշտ էր կարգ ու կանոն հաստատել իր սահմանամերձ քաղաքներում, որոնց բնակիչներն ըմբոստացել էին և գուցե դաշնակցել Ազզիի հետ նրա նորերս կատարած ներխուժման ժամանակ։

Իր թագավորության հաջորդ՝ տասներորդ տարին Մուրսիլը նորից դուրս եկավ Ազզի երկրի դեմ։ Առաջին արշավանքը տեղի էր ունեցել նրա թագավորության յոթերորդ տարում, որի ընթացքում նա գրավել էր Ուրա բերդը։ Մուրսիլն իր զորքերն ու մարտակառքերը միավորեց Ինգալավա քաղաքում։ Ազզիի բնակիչները, հիշելով նրա անցյալ հաղթանակը, ինչպես նաև մեծ տակառապետ Նուվանզայի հաղթանակը, չհամարձակվեցին օրը-ցերեկով չափվել նրա հետ և որոշեցին նրան հանկարծակիի բերել գիշերով։ Մուրսիլն իմանալով նրանց նպատակը՝ ձեռք առավ անհրաժեշտ միջոցները և ուղևորվեց դեպի Արիպշա քաղաքը՝ «քաղաք ծովի մեջտեղում»։ Նրա բնակիչները քաշվել էին լեռները, և քաղաքը պահպանում էր միայն կայազորը։ Մուրսիլը խորտակեց նրանց դիմադրությունը, գըրավեց վայրը և «լրիվ զրկեց նրան իր զինվորներից»։

Մյուս օրը թագավորը մեկնեց՝ Դուկկամմա քաղաքի դեմ կռվելու։ Այդ

---

[1] **Ptol.**, V, 6, *18*, *էջ 882*. **Theoph. Cont.**, *էջ 374*. **Н. Адонц**, Армение в эпоху Юстиниана, *էջ 74 և 82*։

քաղաքի բնակիչները, Արիպշայի ճակատագրից սարսափահար, հանձնեցին քաղաքը և պարտավորվեցին զորքեր տրամադրել։ Մուրսիլը խնայեց քաղաքը և միայն երեք հազար մարդ տարավ իր մայրաքաղաքը՝ իր բանակում ծառայելու համար։

Խեթական հաջողությունների լուրն առնելով, Ազզիի ժողովուրդը, որ ապաստանած էր ամրացված տեղերին և վերասլաց ժայռերին, վհատվեց։ Երկրի ավատական իշխաններն եկան հաղթողի մոտ և գութ հայցեցին նրանից, հանձն առնելով կանոնավոր կերպով զորք տրամադրել նրան։ Խոստացան նաև վերադարձնել իրենց մոտ գտնվող տարագիրներին։ Մուրսիլը դրանով բավարարվեց, պահանջեց երդումով հաստատել իրենց խոստումը, ապա վերադարձավ իր մայրաքաղաքը, «առանց, սակայն, կարգ ու կանոն ստեղծելու Ազզիի երկրում»։ Այս պիտի պարտավորեցներ նրան մեկ անգամ ևս արշավելու Ազզիի դեմ։

Իր թագավորության հետևյալ՝ տասնմեկերորդ տարում Մուրսիլը կրկին գնաց այնտեղ։ Բնակիչները, նրա գալու լուրն առնելուն պես, որպես պատվիրակ ուղարկեցին Մութթի(ս) անունով մեկին, որը ծագումով Խալիմանա քաղաքից էր[1]. սա դիմավորեց թագավորին և ասաց. «Մեր տե՛ր, դու մեզ արդեն բնաջնջել ես, այլևս մեզ մոտ մի գա, մեզ քո հպատակներ համարիր, տե՛ր։ Մենք պատրաստ ենք կանոնավոր կերպով քեզ տրամադրել զորք և մարտակառքերի մարտիկներ։ Մեզ մոտ եկած տարագիրները նույնպես կվերադարձնենք»։ Մուրսիլը համաձայնվեց, ընդունեց տարագիրներին և վերադարձավ իր երկիրը՝ Անկուվայում ձմեռելու նպատակով։

Մուրսիլի անհաջողությունն ակներև է, նրան չի հաջողվում «կարգի բերել» Ազզի երկիրը, որն իր օձիքն ազատում է սովորական դատարկ խոստումներով։ Խեթական թագավորի ջանքերի միակ իրական արդյունքըն եղավ գերիների ազատումը։ Դրան նա ցանկացավ ավելացնել հետևյալ երեք քաղաքների հպատակությունը՝ Ինգալավա, Արիպշա և Դուկկամմա։ Ի՞նչ կարևորություն ունեին այս քաղաքները։

Ենթադրվում է, որ Ինգալավան՝ դա Ինգիլան է, հայկական Անգեղտունը, արդի Իգիլը, իսկ Դուկկամման՝ Դատվանը, Վանա լճի ափին[2]։ Սակայն Ազզի երկիրը չէր տարածվում մինչև Ինգիլա մարզը, ևս առավել՝ մինչև Դատվան։

---

[1] Այս անունը հիշեցնում է 'Ιαλιμβάνων տեղամասը Սոփենեում (Ծոփք) և Բասիլիոսի հայրենիքը։ Վերջինս հեղինակն է այն աշխարհագրական աշխատության, որը Գելցերը հրատարակեց Գեորգիոս Կիպրացու անունով՝ **Georgii Cypri**, Descriptio Orbis Romani, էջ 49։

[2] Այս նույնացման հեղինակը է. Ֆորերն է՝ Reallexikon der Assyriologie, 1, 88, հոդված Alzi։ **E. Cavaignac**, Le premier royaume d'Arménie, RHA, 1934, պրակ 17։

Խեթական արձանագրությունները պարզորոշ կերպով տարբերում են Ազզի երկիրը Իշուվա և Ալշի երկրներից։ Վերջինները տեղավորված էին Արսանիասի (Արածանիի) ձախ ափին՝ Խարբերդի մարզում։

Ինգիլա հասնելու համար պետք էր անցնել Իշուվայի վրայով։ Մուրսիլը նույնիսկ չի ասում, թե անցել է Եփրատ գետը, ինչպես որ այդ ասում էր նրա հայրը՝ Իշուվայի վրայով դեպի Միտաննի կատարած իր հաղթական արշավանքի ժամանակ։ Դուկկամման Դատվանի, ինչպես նաև Ինգալավան Ինգիլի հետ նույնացնելը հավանաբար բխում է երրորդ Արիպշա կետի դիրքից («ծովի մեջտեղը»)[1]։ Դա թույլ է տալիս մտածել Վանա լճի մասին։ Սակայն Սուպպիլուլիուման, իր հզորության գագաթնակետին հասնելով հանդերձ, առաջացավ միայն մինչև Տիգրիսի ակունքը։ Քիչ հավանական է, որ նրա որդին, որ շատ ավելի նվազ նպաստավոր պայմաններում էր գտնվում, հասած լինի մինչև Վանա լիճը։

Մուրսիլի պատմածն այն տպավորությունն է թողնում, թե թշնամու առաջապահ ջոկատների դեմ նրա վարած պատերազմական գործողությունները ավելի շուտ ցուցադրական բնույթ ունեին։ Նրա ձեռք բերած աննշան հաջողությունները նույնպես ապացուցում են, որ լուրջ արշավանքների մասին խոսք լինել չի կարող։ Այն քաղաքները, որ խեթական թագավորը ձգտում էր նվաճել, գտնվում էին Եփրատի արևմտյան ափին։ Ազզի երկիրը կռթնած է Դերսիմ լեռան, Կումմախա-Կամախ քաղաքի հարավում, որը խեթական արշավանքների դեմ բնական բաստիոն էր համարվում, այնպես, ինչպես այն հետագայում նույն ծառայությունն էր մատուցելու պավլիկյաններին՝ Բյուզանդիայի դեմ մղված պայքարում։ Հետևաբար, բնական է Ինգալավան, Արիպշան և Դուկկամման փնտրել դեպի Կումմախա տանող ուղիների վրա։ Անկուվայից մեկնելով, Մուրսիլը պետք է հետևեր կա՛մ Սեբաստիա—Կամախ կամ Կազանա-Արանայից Կամախ ուղղությանը։

Այդ շրջանում, որ Փոքր Հայքն է, Պտղոմեոսը թվարկում է բազմաթիվ կայանների անունները, որոնց թվում նաև Դագոնա, որը կարելի է մոտեցնել Դուկկամմային[2]։

---

[1] Goetze, ն. աշխ., էջ 132. A-ri-ip-ša-aš S[AGA]B.BA.

[2] Դուկկամման չի կարելի նույնացնել Դատվանի հետ։ Նախ՝ Դատվան նշանակում է Դատի քաղաք, Դատ-ավան։ Դատը հատուկ անուն է, որը կրում էր IV դարում Աշտիանեններին (Հաշտեանք) հարևան գավառի մի իշխան։ Այդ անունը գտնում ենք Դատաբեն անվան մեջ, որը կրում էր Բզնունի մի իշխան, Դատվանի շրջանում (Փավստոս, III, 9)։ Դագնեվանան կամ Դոգնավանան հռոմեական ճանապարհացույցի կայաններից մեկն է, որ միացնում է Տիգրանակերտը Խումբրոյին՝ Տիգրանակերտ 30, Զանզերիո 20, Կիմիզա 22, Դյուզանաս 27, Պատանսանա 26, Վաստաունա 32, Մելիթա 26, Դագնեվանա 15, Ցլեգեանա 15, Խումբր։ Conrad Müller, Itineraria Romana, 1916.

«Ծովի մեջտեղը գտնվող քաղաքը», հավանաբար, Եփրատի ջրերից գոյացած ճահիճների մեջ գտնվող մի բերդ էր: Դեռ այսօր Եփրատի և Արաբկիրի միացման կետում գոյություն ունի թուրքական կայան, այնպես որ մեզ հետաքրքրող մարզը Դենիզլու հուշող անունն է կրում[1]:

Հաջորդ դարում խեթական վավերագրերը լուռ են մնում Ազզիի և Հայասայի վերաբերյալ: Դա հավանաբար հետևանք է այն հանգամանքի, որ խեթական տիրակալների ուշադրությունը կենտրոնացած էր Միջագետքի և Ասորիքի վրա, ուր մեկ կողմից՝ Ասորեստանը և մյուս կողմից՝ Եգիպտոսը մաքառում էին համաշխարհային քաղաքականության մեջ խեթերի նախկին դերը ստանձնելու համար:

Խեթական պետության կործանման նախօրյակին Ազզի երկիրը նորից հրապարակ է գալիս Թուդխալիա IV-ի օրով (1260—1230): Նա նշվում է կասկաների և Լուկկայի հետ, որպես թշնամի երկիր, և խեթական թագավորը զգուշական միջոցներ է ձեռք առնում նրանց հարձակման դեմ[2]:

Հայասա-Ազզիի պատմությունը ամփոփվում է այսպես. դա մի թագավորություն էր, որը տեղավորված էր Եփրատի վերին հոսանքի ափին, Դերսիմի զանգվածի շուրջը: Նա անկախ էր, բայց գտնվում էր Խաթթիի քաղաքական ազդեցության տակ, սակայն սրա հնազանդ վասալը չէր: Այդ պետությունը երևան է գալիս և անհետանում համարյա խեթական պետության հետ միաժամանակ: Նրա թագավորներից միայն չորսն են հայտնի՝ Կարաննի, Մարիյա, Հուկկանա և Աննիյա: Նա ուներ իր սեփական պանթեոնը: Պահպանվել է մի աղճատված ցուցակ, որը մաս էր կազմում, գուցե, Սուպպիլուլիումայի հետ կնքված դաշնագրի և որը մեզ պատկերացում է տալիս պանթեոնի մասին: Այստեղ կարելի է կարդալ խեթական աստվածների հետ մեկտեղ Հայասա-Ազզիի աստվածների անունները.

1) $^{d}$Ugur Հայասա երկրից
2) $^{d}$Ištar Pa-a-ad-te-u քաղաքից Padteu
3) $^{d}$...a-nu-uš La-ḫi-ir-ḫi-la քաղաքից Laḫirḫila
4) $^{d}$Zag-ga... քաղաքից (անունը փչացած է)
5) $^{d}$U(=Tešup) Ar-ni-ia քաղաքից Arniia
6) $^{d}$Ta-a-ru-mu-uš Kam(uḫa) քաղաքից Kamuḫa
7) $^{d}$U(=Tešup) Pa-ah-ḫu-u-te-ia քաղաքից Paḫḫuteia
8) $^{d}$Te-ri-id-ti-tu-u-ni-i(š) Ta-ma-ad-ta քաղաքից Tamadta
9) $^{d}$U-na-ga-aš-ta-aš Ga-zu-u քաղաքից Gazû
10) $^{d}$U(Gagša-an-na-aš) Ar-ḫi-ta քաղաքից Arḫita
11) $^{d}$Ba-al-ta-ik Du-uk-ka-am-ma-na քաղաքից Dukkammana
12) $^{d}$U-na-ag-ga-aš-tu-àš Bar-ra-ia քաղաքից Barraia

---

1 Դենիզ—«ծով», դենիզ-լու—«ճահիճ»:

2 **Forrer**, Hayasa-Azzi, էջ 22:

*13)* ᵈ...ḫu-ḫu-uš Ga-aš-mi-ia-ḫa *քաղաքից* Gašmiaḫa
*14)* ᵈSi-il-li... *քաղաքից (անունը փչացած է)*

*Նշված քաղաքներն անծանոթ են՝ բացի Կամուխայից, որը նույնանում է Կամախի հետ։ Ամենք, անունների ընթերցումը՝ թե՛ աստվածների, թե՛ քաղաքների, հուսալի չի թվում։ Պետք է սպասել ավելի լրիվ և լավ պահպանված օրինակի հայտնաբերմանը։ Նշենք, որ կա նաև մի քաղաքի անուն, որը կոչվում է Թել-Հայասա։*

*Ինչպես նշեցինք, Հայասա անունը հարուցում է հատուկ նշանակություն ունեցող էթնիկական հարցեր։ Բայց նախքան դրանց անդրադառնալը, անհրաժեշտ է հետևել հարևան այն փոքր պետությունների պատմությանը, որոնք, կարծես, Հայասայի հետ համերաշխ և գուցե նույնիսկ համատարր էին։*

## Իշուվա և Ալշի

*Իշուվա թագավորությունը գտնվում էր Հայասայի հարավում, ստորին Արսանիասի հովտում և զբաղեցնում Եփրատի ու Խարպուտի միջև ընկած երկրամասը։*

*Երկու մեծ հարևանների՝ Խաթթիի և Միտաննիի միջև ընկած այս փոքրիկ պետության դրությունը չափազանց նուրբ էր։ Իր երկու փառասեր հարևանների զավթողական ձգտումներից փրկվելու համար անհրաժեշտ էր վարել ճարպիկ քաղաքականություն, բայց և այնպես իրեն չհաջողվեց խուսափել նրանց հետ զինված բախում ունենալուց։*

*Խաթթիի հետ առաջին բախումը տեղի ունեցավ Թուդխալիյա* III-*ի օրով (1410—1380), թերևս Միտաննիի թագավոր Թուշրատտայի դրդմամբ։ Համենայն դեպս այդպես է կարծում Թուդխալիյայի որդին ու հաջորդը՝ Սուպպիլուլիուման։ Թուշրատտայի որդի Մաթթիվազայի հետ կնքած պայմանագրի առաջաբանում Սուպպիլուլիուման երկու պետությունների միջև ծագած թշնամության հիմքն է համարում Թուշրատտայի մեքենայությունները, որ նա սարքել էր Իշուվա երկրում՝ գրգռելով սրան Խաթթիի դեմ։ Ահա թե ինչ է պատմում նա. «Հորս թագավորության ժամանակ Իշուվա երկիրն ապստամբեց։ Խաթթի երկրի մարդիկ անցան Իշուվա երկիրը։ Դրանք էին՝ Գուրտալիսսայի մարդիկ, Արավաննայի մարդիկ, Զազզիսա երկիրը, Կալամասմա երկիրը, Թիմնա երկիրը, Խալիվա լեռնային երկիրը, Կարնա երկիրը, Թուրմիտտայի մարդիկ, Ալխա երկիրը, Խուրմա երկիրը, Խարրանա լեռնային երկիրը, Թեգարամմա երկրի կեսը, Թեպուրզիայի մարդիկ, Խազգայի մարդիկ, Արմատանա երկրի մարդիկ, այս բոլոր երկրներն ապստամբեցին իմ հոր թագավորության ժամանակ»*[1]։

[1] **E. M. Weidner,** Politische Dokumente aus Kleinasien, «Boghazköi-Studien», *8.*

Դա նշանակում է, որ Իշուվա երկրում ծագած ըմբոստությունը տարածվել էր Եփրատի շրջաններից մյուս կողմը, այսինքն՝ արևմտյան ափը։ Թվարկված երկրները գտնվում էին Եփրատի և Գորունի (Թեգարամմա) միջև։ Թուդխալիան փորձել էր ճնշել ապստամբությունը, բայց խռովարարները լքել էին իրենց բնակավայրերը, անցել Եփրատն ու ապաստան գտել Իշուվա երկրում։

Միտաննիի թագավորը ոչ միայն Իշուվայում էր գործում խաթթիի դեմ, այլև խռովություններ հարուցում Սիրիայի հյուսիսում, հատկապես՝ Նուխաշշի կոչված թագավորության մեջ, Հալեպից հարավ։

Սուպպիլուլիուման որոշեց վերջ դնել Միտաննիի մեքենայություններին։ Լսենք, թե ինչ է պատմում նա այս առթիվ. «Ես, Արև Սուպպիլուլիումաս, մեծ թագավորը, խաթթի երկրի թագավորը, հերոսը, Թեշուպի սիրելին, ճանապարհ ընկա և անցա Եփրատը, որպեսզի վերջ դնեմ Թուշրատտայի փառասիրական ձգտումներին. ես հասա Իշուվա երկիրը։

«Ես նորից նվաճեցի Իշուվա երկիրը։ Փախստականներին վերադարձրի իրենց տները։ Այն մարդիկ և այն երկրները, որ իմ հոր ժամանակ անցել էին Իշուվա երկրին, այսինքն՝ Գուտալիսսայի մարդիկ, Արվանայի մարդիկ, Զազզիսա երկիրը, Թեգարամմա[1] երկիրը, Թիմմինա երկիրը, Խալիվա լեռնային երկիրը, Կարնա լեռնային երկիրը, Թուրմիտտայի մարդիկ, Ալխա երկիրը, Խուրմա երկիրը, Խարրանա լեռնային երկիրը, Թեգարամմա երկրի կեսը, Թեպուրզիայի մարդիկ, Խազգայի մարդիկ, Արմատանայի մարդիկ, այդ մարդկանց, այդ երկրները հպատակեցրի և նրանց նորից ուղարկեցի խաթթի երկիրը։ Նվաճածս երկրներին ազատություն տվի, և նրանց բնակիչները մնացին իրենց տեղերում։ Այն մարդիկ, որոնց ազատություն տվի, վերադարձան իրենց հայրենակիցների մոտ։ Խաթթի երկիրը գրավեց իր տեղերը»[2]։

Ինչպես երևում է, «մարդիկ և երկրներ» արտահայտությունը վերաբերում է այն նույն բնակչությանը, որը հարել էր Իշուվայի հեղափոխական շարժմանը՝ խաթթիի տիրապետության դեմ։ Սուպպիլուլիուման հպատակեցնում է Իշուվային, բայց չի պատժում տեղահանությամբ՝ «նրա բնակիչները մնացին իրենց տեղերում»։ Նա բավարարվում է թվար-

---

[1] Վերոհիշյալ թվարկության մեջ Թեգարամման հիշատակված է Կալամամայի փոխարեն։ «Կալամամա» ընթերցումը նախընտրելի է, քանի որ Թեգարամման նշված է շարունակության մեջ։

[2] Ոմանք այս նախադասությունը հասկանում են որպես թե՝ խաթթին գրավեց նրանց տեղը, այսինքն թե՝ խեթական բնակիչները գնացին Իշուվա՝ այնտեղից մեկնած մարդկանց տեղը զբաղեցնելու համար։ Դա ճիշտ չէ։ Եթե ցանկություն լիներ խեթերին տեղափոխել նվաճած երկիրը, այդ դեպքում խաթթիի հպատակ փախստականները չէին վերադարձվի իրենց երկրները։

կած երկրների փախստականներին իրենց հայրենիքը վերադարձնելով։ «Ես ազատագրեցի» փախստականներին արտահայտությունը արդյոք չի՞ հուշում, որ այսպես կոչված փախստականները, գոնե մասամբ, Իշուվայի կողմից տարագրված բնակիչներն էին։

Խեթական թագավորը կարգ ու կանոն հաստատեց և ճանապարհը շարունակեց դեպի Նուխաշշի երկիրը։ Նա հասավ Ալշի երկիրը, գրավեց Կուտմար բերդը և նվիրեց Ալշիի թագավոր Անթարատլիին։

Ալշին նույն այն ժողովուրդն է, որը կոչվում է Ալզի և որի երկիրն է Անզիտուն, Անզիտենեն, որը գտնվում էր Իշուվայի մոտ, Խարպուտից արևելք, մինչև Զիբենեհ-սուի ակունքները։ Կուտմար բերդը պետք է որ նրա սահմանների մոտ լիներ[1]։

Սուպպիլուլիուման, Ալշիի բարեկամությունը ապահովելուց հետո, շարունակեց իր ճանապարհը և Սուտա բերդի վրայով հասավ Վաշշուգանի՝ Թուշրատտայի մայրաքաղաքը։ Ապա անցավ Եփրատը, տիրեց Խալպա (Հալեպ) երկրին և մտավ Նուխաշշի երկիրը։

Նուխաշշիի թագավոր Սարրուպշան Սուպպիլուլիումայի պաշտպանությունն էր հայցել Միտաննիի թագավոր Թուշրատտայի դեմ։ Վերջինս ըրհամարձակվեց Սուպպիլուլիումայի դեմ դուրս գալ։ Առանց կռվի Նուխաշշին խլվեց Միտաննիի գերիշխանությունից հօգուտ Խաթթիի։ Այս հարցում մեզ հետաքրքրում է Սուպպիլուլիումայի կնքած պայմանագիրը Սարրուպշայի հաջորդ Թետտի թագավորի հետ, ուր նա ակնարկում է Իշուվայի իրադարձությունները։ Այդ պայմանագրում Սուպպիլուլիուման ասում է. «Իշուվա երկիրն ապստամբել էր Խաթթիի դեմ. ես գնացի Իշուվա երկիրը... (պակասում է) և նրան հպատակեցրի։ Ապա գնացի Միտաննի՝ Սարրուպշային օգնության։ Երբ հասա Կաշիարի լեռնային շրջանը... (պակասում է), Ալշի երկրի թագավոր Անթարատլին...»[2]։

Տեքստը պակասավոր է, չի կարելի հաստատապես պնդել, թե նրանից հետևում է, որ Ալշիի թագավորին հանձնված բերդը գտնվում էր Կաշիարի լեռներում։ Եթե իսկապես տեքստի իմաստը դա է, ուրեմն պետք է ընդունել, որ Ալշի թագավորությունն այդ ժամանակ տարածված էր մինչև Կաշիարի շրջանը։

Վերադառնանք Իշուվային։ Այն հիշատակված է Սուպպիլուլիումայի թոռան՝ Մուվատալլիի և Կիզվատնա երկրի թագավոր Սունասսուրայի միջև կնքված պայմանագրում։

---

[1] E. Forrer, Reallexikon der Assyriologie, էջ 89, Կուտմարը նույնացնում է Կուհմար գյուղի հետ՝ Հանիից 18 կմ հեռավորության վրա։ Provinzeinteilung-ում, էջ 20, նա նկում է ջանում նույնացնել այն Քուտեմրան կամ Քղիմար, Χλωμάρων-ի հետ։

[2] E. Weidner, Politische Dokumente, էջ 59։

Մուվատալլիի ժամանակ (1320—1305) Իշուվան նորից ոտքի ելավ Խաթթիի դեմ։ Թագավորն Իշուվա մտավ և ապստամբությունը ճնշեց։ «Իշուվայի մարդիկ», այսինքն՝ խռովարարները, փախան Խուրրի երկիրը։ Մուվատալլին պահանջեց փախստականներին հանձնել, բայց մերժում ստացավ։ Ըստ երևույթին, Կիզվատնան նույնպես անջատվել էր Խաթթիից և հարել Խուրրի երկրին։ Մուվատալլին ասում է, թե ապստամբ քաղաքների բնակիչները իր պապի՝ Սուպպիլուլիումայի ժամանակ փախել էին Խուրրի երկիրը և հաստատվել այնտեղ, բայց հետագայում նրանք վերադարձան Խաթթի երկիրը։ Նրանց անասուններ էին տվել։ Չնայած այդ հոգատարությանը, նրանք նորից ապստամբեցին իր թագավորության ժամանակ։

Դա մի ակնարկություն է, որ Մուվատալլին անում է վերևում հիշված իրադարձությունների մասին։ Կիզվատնա անվան ներքո նա ցույց է տալիս այն երկրների և քաղաքների ամբողջությունը, որ Սուպպիլուլիուման թվարկում է Մաթթիվազայի հետ կնքած պայմանագրում։

Այսպիսով, Կիզվատնայի տեղի այնքան վիճելի հարցը իր լուծումը կարող է ստանալ Կիլիկյան Թիանայի (և ոչ թե Պոնտական Թիանայի) օգտին։ Կիզվատնան ընդգրկում էր Թաքալը (Կաթաոնիա), Թեգարամման և Մելիտենեի նահանգը։

Կիզվատնայի դավաճանությունը վարակեց նաև Իշուվային, իսկ Իշուվայում ծագած շարժումները համապատասխանաբար հաղորդվում էին Եփրատից այն կողմ գտնվող շրջանին՝ Կիզվատնային։ Հնարավոր չէ որոշել, թե այս քաղաքական միասնությունն արդյոք ներշնչված էր ցեղակցությա՞մբ, թե Խաթթիի դեմ ոխակալությամբ։ Համենայն դեպս, ապստամբների որոշ քաղաքների անունները՝ Զազզիսա և Ալխա, հանդիպում են Ուրարտուում՝ Շաշղիսսա և Ալխու ձևերով։

Իշուվան և Ալշին միջանկյալ պետություններ էին Խաթթիի և Միտաննիի միջև։ Սակայն նրանք նախ ճնշում էին Միտաննին և նրան էին համակրում։ Խաթթիի և Միտաննիի մրցակցությունը այս երկու փոքրիկ պետություններում՝ քաղաքական ազդեցության առումով, մեղմանում է այն պահին, երբ վերածնվող Ասորեստանն ասպարեզ է դուրս գալիս ի վնաս Միտաննիի։ Միտաննիի անկումն սկսվեց Թուշրատտայի մահից հետո։ Նա սպանվեց իր որդի Մաթթիվազայի ձեռքով, բայց գահը հափշտակեց նրա հորեղբայրը՝ Արտաթաման։ Մաթթիվազան ստիպված դիմում է Խաթթիի պաշտպանությանը, մինչդեռ հափշտակողին և նրա որդի Շութթարնային նեցուկ էր դարձել Ասորեստանը։

Նման պարագայում Ալշին խոհեմություն համարեց հայացքը դարձնել դեպի Ասորեստան, և այդ քաղաքականությամբ նրան հաջողվեց իր սահմաններն ընդարձակել ի հաշիվ Միտաննիի։

Իշուվայի բախտը նույնպես բերեց։ Խաթթիի և Ասորեստանի միջև Միտաննիի հողերում բռնկված պայքարն ստեղծեց նպաստավոր պայմաններ Իշուվայի համար։ Խաթթին միջամտեց Մաթթիվազայի հարցում և նրան վերականգնեց հայրական գահի վրա։ Նա նպաստեց Իշուվային և ի հակակշիռ Ալշիի ու Ասորեստանի դաշնակցության, ընդարձակեց նրա տերիտորիան և այն դրեց Արիշարմա թագավորի իշխանության տակ։ Իշուվան այդ բարյացակամությամբ պարտական էր խեթական թագավոր Մուվատալլիի եղբոր՝ Խաթթուսիլին։ Խաթթուսիլի որդին՝ Թուդխալիյա IV-ը (1260—1230), «միացրեց Ուգաշտայի մեծ երկիրը և Իշուվա երկիրը և դարձրեց մի տուն»[1]։

Այսպիսով, Իշուվա և Ալշի թագավորությունները Հայասա թագավորության հետ միասին ներկայանում են որպես Հայաստանում հայտնի առաջին քաղաքական կազմավորումներ։ Մոտ 1400 թվականին երևան եկած այդ երեք թագավորությունները երկու հարյուրամյակ քաղաքական կյանք ունեցան և անհետացան մոտ 1200 թվականին, Խաթթի մեծ պետության հետ միասին՝ փռյուգիացիների ներխուժման փոթորկի բովում։

Պետք է նշել նաև երկու ժողովուրդներ՝ Շուբարի և Մուզրի, որոնք հայտնի են դառնում հիշյալ ժողովուրդների հետ նույն դարաշրջանում։ Ասորեստանի թագավոր Ադադնիրարին (1336—1305) հաստատում է, որ իր հայր Աշշուրուբալիտը առաջինը եղավ, որ «Մուզրի երկիրը հպատակ դարձրեց և Շուբարի ընդարձակ երկրի ուժերը խորտակեց»[2]։ Նույն թագավորը գրավել է Շուբարին, հատկապես Շուրի, Նաբուլա, Ուշշական քաղաքները ու Կաշիարիի մարզը[3]։ Շուրին՝ դա բյուզանդական հեղինակների Իզաուրան է, այսօրվա Շորը, որը գտնվում է Տուր-Աբդինի շրջակայքում։ Աշշուկանին կամ Վաշշուգաննին՝ Միտաննիի մայրաքաղաքը, կարծես բյուզանդական Բիբա(ս)ն է (Բեթվաշե-ի՞ց), այսօրվա Թել-Բեշը, Թել-Արմենի մոտ։

Նաբուլան իր անունը պահպանել է մինչև մեր օրերը՝ այժմ կոչվում է Նիբլե։ Այս տեղեկություններով որոշվում է Շուբարիի տեղը։

Ադադնիրարիի որդին ու հաջորդը՝ Սալմանասար I-ը, պետք է որ շատ արշավանքներ կազմակերպած լինի Շուբարիի դեմ և հպատակեցրած լինի Մուզրի երկիրը Աշշուրին[4]։

---

[1] E. Forrer, Reallexikon der Assyriologie, I, էջ 267։

[2] E. Ebeling, B. Meissner, E. Weidner, Die Inschriften der Altassyrischen Könige, XX, 1, տող 31—32, էջ 63—65։

[3] Նույն տեղում, էջ 59—61։

[4] Նույն տեղում, էջ 117—119։

Նրա հաջորդ Թուկուլթի-Նինուրտան (1243—1221) վերսկսեց թշնամանքն այդ երկու երկրների դեմ և տեղահանեց Մուզրիի բնակչությանը[1]։ Նա ձգտում էր գրավել (կամ արդեն գրավել էր) հետևյալ երկրները. Բաբխի, Կուտմուխի, Բուշշե, Մումմե, Ալզի, Մադանի, Նիխանի, Ալայա, Թեդիմգի, Պուրուլումզի։ Նշենք, որ Ալզին նույն Ալշին է[2]։

Շուբարին չի կարող Շուպրիից տարբեր լինել։ Շուբարի տերմինը սկզբում վերաբերում էր ամբողջ Միջագետքին։ Ադադնիրարին այն կցում է Կաշիարիի շրջանին։ Ավելի ուշ Շուբարին, Շուպրիա ձևով, նշանակում է միայն Արզանենեի շրջանը։

Մուզրին անունն էր Ասորեստանի հյուսիսային մի շրջանի, որտեղ Մասուրի քրդական տոհմը պահպանել է նրա հիշատակը։ Այս տերմինը աղերսվում է Մուզուրի կամ Մ(ու) նձուրի հետ, որը մի գավառ է Դերսիմի լեռների ստորոտին և որտեղ գտնվում է Արսանիասի (Արածանիի) վտակ Մուզուր գետի ակունքը։

## 3. ՆԱԻՐԻ ՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ (ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ)

Մի աղետ տակնուվրա արեց քաղաքակիրթ աշխարհը և փոխեց պատմության ընթացքը։ Մեծ Խաթթին սոսկալի հարված ստացավ և մոտավորապես 1200 թվականին կործանվեց։ Հայասա թագավորությունը և մի քանի ուրիշներ, որոնք սերտորեն կապված էին խեթական աշխարհի հետ՝ նույնպես անհետացան։ Հաջորդ դարաշրջանում Հայաստանը երևան է գալիս Նաիրի նոր անվան տակ։

Հեղաշրջումը տեղի ունեցավ փռյուգիացիների ներխուժման հետևանքով։ Բախտի բերումով, խեթական պետությունը, որը ծնունդ էր առել երկրորդ հազարամյակի սկզբում, հնդեվրոպական առաջին ներխուժման փոթորիկում, նույն հազարամյակի վերջում անհետացավ հնդեվրոպական երկրորդ ներխուժման ժամանակ։ Ներխուժողները փռյուգիացիներն էին։

Նրանք եկան Թրակիայից, նեղուցների մյուս կողմից և այնտեղից դուրս էին մղվել, թերևս, դորիացիների Հելլադա ներգաղթի հետևանքով։ Բալկանները և էգեյան աշխարհը մոտավորապես 1400—1200 թվականներին ալեկոծվում էին հյուսիսից եկած երկու ժողովուրդների՝ աքեացիների և դորիացիների ներխուժման հետևանքով։ Եգիպտական վավերագրերը սոսկումով են խոսում այդ ժողովուրդների կատարած ավերածությունների մասին։ Դրանց կոչում են «ծովի ժողովուրդներ»։ 1294 թվա-

[1] Reallexikon der Assyriologie, *1, էջ 89։*

[2] *Նույն տեղում, էջ 89։*

կանին, Խաթթիի և Եգիպտոսի միջև բռնկված Կադեշի ճակատամարտում, խեթական բանակի շարքերում էին գտնվում նաև հետևյալ ժողովուրդների ռազմիկները. Պադասա, Մասա, Դարդանուի, Իլիունա, Կիրկիշա, Լուկկի, Դանաունա, այսինքն՝ պեոասացիներ, միսիացիներ, դարդանացիներ, Իլիոնի մարդիկ, գերգիսացիներ, լիկիացիներ և դանայացիներ։

Մեկ դար հետո, 1195 թվականին, Եգիպտոսի վրա են հարձակվում լիբիացիները և նրանց նոր դաշնակիցները՝ Պուլեշտի, Թիակարի, Շակալշա, Դանաունա, Վաշաշա, այսինքն՝ փղշտացիք, թեկրացիները, սագալասցիները (Պիսիդիա), դանայացիները, ուասսիացիները (քաղաք Կարիայում)։

Էթնիկական այս շարժման ընթացքում է, որ հրապարակ են իջնում փոյուգիացիները և մտնում պատմության մեջ։ Հավանական է, որ նրանք Թրակիայում հաստատվել էին աքեական դարաշրջանում։ Այնտեղից նրանք անցնում են Փոքր Ասիա դորիական ներխուժման ժամանակ։

Փոյուգիացիները հարձակվում են խեթական պետության վրա և հիմնահատակ կործանում։ Խաթթուշ մայրաքաղաքը գրավվում ու քարուքանդ է արվում, իսկ նրա արխիվները 1200 թվականից առհավետ լռության են մատնվում։

Մեծ պետության հանկարծակի անկումը բացատրվում է մասամբ այն իրողությամբ, որ նա զգալիորեն թուլացել էր Եփրատի հովտում իր ունեցած հարուստ տիրապետությունները Ասորեստանին զիջելու հետևանքով։

Փոյուգիական ալիքները մոլեգնում են Ասորեստանի սահմանների վրա։ Զանազան ժողովուրդներ, նրանց թվում նաև մի քանիսը Խաթթիի նախկին հպատակներից, դուրս են մղվում իրենց բնակավայրերից, նույնպես նետվում են դեպի Ասորեստան՝ նոր հայրենիք փնտրելու համար։

Ասորեստանի ապահովությունը վտանգի տակ էր։ Բարբարոս ցեղերը տարածվում են պետության հյուսիսային մասերում, լեռնային մի ընդարձակ ժապավենի վրա, որը ձգվում է Եփրատից մինչև Զաբ։ Տեղական բնակչությունը գրգռվում, զայրանում, հուզվում է։ Մեկը մյուսի ետևից բռնկվում են խռովություններ, անշուշտ՝ նորեկների ազդեցության ներքո։

Ասորեստանը կարող էր դրության տերը դառնալ, եթե թիկունքում չունենար մի ահավոր թշնամի։ Արամեական բեդվինները, որոնք թափառում էին սիրիա-արաբական անապատներում, նույնպես հորդում են դեպի ասուրական պետությունը։ Նրանք ներխուժեցին Դամասկոսից մինչև Ամիդ և Ամանոսից մինչև Խաբուր ընկած շրջանները։

Այդ արգավանդ հողերի կորուստով Ասորեստանը զրկվում է իր բարգավաճման աղբյուրից։ Երկու ճակատներում մղած պայքարը կլանում է նրա ուժերը։ Նրա փայլը հետզհետե աղոտանում է։ Նա շարունակում է իր

անփոփոխ գոյությունը մինչև այն պահը, երբ նորից վերականգնվում է նպաստավոր պայմաններում՝ IX դարի շեմին։

Այդպիսով, էթնիկական տեղաշարժերի հետևանքով քաղաքական աշխարհը կորցրեց իր հավասարակշռությունը և այնուհետև պետք եղավ երեք դար, որպեսզի նոր կարգ ստեղծվի։

Այդ խռովահույզ փոխանցման շրջանում մի պահ հատկապես ուշադրություն է գրավում Թիգլաթպալասարի թագավորությունը (1117—1080)։

Նրա բերանով է, որ մենք տեղեկանում ենք այդ դարաշրջանի խառն իրադրությունը։ Նրա թողած ժամանակագրությունները մեզ ծանոթացնում են փռյուգիացիների ներխուժման հետևանքով Ասորեստանի սահմանների վրա ստեղծված վիճակին։ Մի շարք ժողովուրդներ եկան ու շարվեցին լեռներում, Ասորեստանի վերևում, պատրաստ հանդուգն գործողությունների։ Փոքր պետությունների մի ցանց ծածկում է Հայկական լեռնաշխարհը։ Թիգլաթպալասարը գովելի խնամքով պահպանել է այդ բոլոր ժողովուրդների և պետությունների անունները։ Նա մեզ հաշիվ է տալիս զինվորական իր այն միջոցառումների մասին, որոնց նա դիմել է ներխուժողների ճանապարհը փակելու և նրանց շարժումներով անհանգստացած լեռնային ժողովուրդը խաղաղեցնելու համար։ Նա իր զենքն ուղղեց նաև Հայկական լեռնաշխարհի դեմ։

Պայքարը, որ Թիգլաթպալասարը ձեռնարկում է Ասորեստանի և Հայաստանի լեռնային գոտու ամբողջ տարածությամբ, ծանր հեռանկարներով մի գործ էր։ Այդ պայքարը Ասորեստանին ներգրավելու էր մաքառման մեջ մեկ ուրիշ պետության հետ, որ պիտի կազմակերպվեր Հայաստանում և որոշելու էր նրանց քաղաքական հարաբերությունները իրենց ամբողջ պատմության ընթացքում։

Հետաքրքիր է ուսումնասիրել Թիգլաթպալասարի՝ լեռնցիների դեմ վարած պայքարի իրադարձությունները այն ձևով, ինչպես որ ինքն է պատմում։ Այդ պատմությունն ընդգրկում է նրա թագավորության առաջին հինգ տարիները՝ 1117—1112 թ.[1]։

Հենց Թիգլաթպալասարի գահակալության տարին քսան հազար մուշկեր, հինգ թագավորների առաջնորդությամբ, իջնում են լեռներից և գրավում Կումուխի երկիրը։ Նրանք արդեն հիսուն տարուց ի վեր ներխու-

---

[1] Այդ հինգ տարիների պատմությունն ընդգրկող Պրիզման գտնվում է Բրիտանական թանգարանում։ Այն հրատարակել է **H. Winckler-ը**, Keilinschriftliche Bibliothek, I, ed. E. Schrader, էջ 16—47, 1889թ.։ Նոր հրատ. **A. E. W. Budge** and **L. W. King**, Annals of the Kings of Assyria, 1902, էջ 27—108; **D. Luckenbill**, Historical records of Assyria, I, 1926.

ժել էին Ալզի և Պուրուլումզի երկրները, որոնք Ասորեստանին հարկատու էին։

Ասորեստանի թագավորն անցնում է Կաշիարի լեռները, հարձակվում մուշկերի վրա Կուտմուխի երկրում և վեց հազար հոգի գերի է վերցնում։

Եթե հաշվելու լինենք Թիգլաթպալասարի գահակալությունն սկսած 1117 թվականից և հիսուն տարի ետ գնանք, մուշկերի գալու թվականը կլինի մոտավորապես 1170 թ.։ Մուշկի անվան տակ հասկացվում են փռյուգիացիները։ Հետևաբար, մուշկերը փռյուգիացիների առաջապահներն են, որոնք մոտավորապես 1200 թ. կործանեցին խեթական Երկիրը և նետվեցին դեպի Ասորեստան։ Ալզին Անզիի մի այլ ձևն է, էթնիկական մի տերմին, որտեղից և Անզիտու, Անզիտենե աշխարհագրական տերմինը։ Պուրուլումզին անշուշտ պատկանում է նույն ժողովրդին։ Կուտմուխի վայրը ճշգրտվում է Շերիշա քաղաքով, որը հին հեղինակների Սարեյսան է և Արևմտյան Տիգրիսի ու Կաշիարի լեռան միջև գտնվող այսօրվա Շերիշը, ժամանակակից Տուր-Աբդինը։ Մուշկերը, Խաթթի երկրից գալով, Մելիտենեի կողմից ներխուժեցին Անզիտենե և առաջացան մինչև Կաշիարի լեռների փեշերը։

Մի բուռ մուշկերի քաջարի դիմադրությունը Ասորեստանի հզոր թագավորին՝ քաջալերեց նրա լծի տակ գտնվող հարևան ցեղերին ու ժողովուրդներին։ Առաջինը գլուխ բարձրացրեց Կուտմուխին, նա, որին ներխուժողների դեմ պաշտպանել էր Թիգլաթպալասարը, ըստ երևույթին, առանց երախտագիտության որևէ զգացում ներշնչելու։ Նրան օգնության է հասնում իր դրացի Բաբխին։

Ասորեստանի թագավորը մեկը մյուսի հետևից հաղթում է բոլորին, գերի է վերցնում Կուտմուխիի թագավոր Կալի-Թեշուբի որդի Կիլի-Թեշուբին, որին կոչում էին նաև Շարրուպի։ Բաբխիի թագավոր Շատտուխիի որդի Շադի-Թեշուբը նույնպես ընկնում է նրա ձեռքը։ Վերջինս ապրում էր Ուրրախինա քաղաքում[1]։

---

[1] Պրիզմա, I, *62*, II, *84*։

*Կուտմուխին չպետք է շփոթել Կումմուխի հետ։* **Forrer**, Die Provinzeinteilung, *էջ 17, նկատել է, որ Աշշուրնասիրապալի արձանագրություններում Կուդ-մուխի կամ Կուտ-մուխի երկիրը տարբեր է (*Տարեգր. I, *74 և* II, *87*= **Budge** and **King**, *էջ 279 և 326) Կումուխի-ից (*III, *96, էջ 375 և այլն)։ Վերջինս Կոմմագենեն է, որը հիշատակված է մուշկերի հետ և գտնվում է Կաշիարիի և Տիգրիսի միջև։* **A. Ungnad**, Babylonisch-assyrisches Keilschriftlesebuch, *№ 64, խնդրո առարկա առաջին նշանը արտահայտված է* Kad-*ով (ուրեմն՝ Կադ-մուխի), մինչդեռ Ֆորրերը կարդում է Կուդ-մու-խի։ Մենք նախընտրում ենք Կուտ-մուխի։ Իրականում Կուդմուխի և Կումմուխի միևնույն անվան երկու ձևերն են, որոնք, դուցե, ծառայել են միևնույն ժողովրդի երկու հատվածները զանազանելու համար։*

Այս պատմության մեջ պետք է նկատի ունենալ երկու հանգամանք. եթե Ալզին նույն Հայաստանի ժողովուրդ Ազզին չէ, այնուհանդերձ նա Պուրուլումզիի հետ միասին պատկանում է նույն ցեղին, ինչ որ Ազզին։ Կուտմուխին Կումմուխի ձևով հիշեցնում է Հայաստանի մայրաքաղաք Կումախան կամ Կամուխան և ընդհանուր ծագում է ենթադրել տալիս։ Համենայն դեպս, -hi վերջածանցով կազմված անունները, ինչպես՝ Կուտմու-խի, Բաբ-խի, Շատտու-խի, Ուրրա-խինա, բարձրանում են դեպի Հայկական լեռնաշխարհը, ուր այս վերջածանցը հաստատուն հիմք ունի Ուրարտուի լեզվում։ Դա կարող է նշանակել, որ Ալզիի, Պուրուլումզիի, Կուտմուխիի և Բաբխիի մարդիկ, որոնք ապրում էին Անզիտենում և Մեծ Ծոփքում (վերջինս դեռ հայ Արշակունիների օրոք տարածվում էր Տիգրիսի մյուս կողմը, մինչև Բնաբեղ), իջել էին Հայկական լեռնաշխարհից կամ գեթ ազգակցական կապեր ունեին նրա ժողովուրդների հետ։

Մուշկերի կամ փռյուգիացիների հիշատակումը մի այլ նշանակալից փաստ է՝ հայերի փռյուգիական ծագման մասին հայտնի ավանդության կապակցությամբ։ Հայկական տարրի մասնակի թափանցումը ապագա Հայաստանի սահմանները սկսվում է, ուրեմն, 1170 թվականից։

Հաջորդ տարին, 1116 թ., Թիգլաթպալասարը գործ ունեցավ Շուբարի երկրի հետ։ Այնտեղ ապստամբություն էր բռնկվել։ Խռովությունն սկսվել էր Ալզի և Պուրուլումզի երկրներից, որոնք հրաժարվում էին հարկ վճարել։ Չորս հազար «կասկի և ուրումի՝ Խաթթի երկրի զինվորներ» եկել տեղավորվել էին Շուբարիում։ Ըստ երևույթին, նոր եկողներն էին հրահրել խռովությունը, այնպես, ինչպես Մուշկին դրդել էր Կուտմուխիին, որը դեռևս չէր խաղաղվել։ Ասորեստանի թագավորը մտավ այդ երկրները և վերականգնեց կարգ ու կանոն։

Շուբարին այն երկիրն է, որ հետագայում երևան եկավ Շուպրիա անունով, որն ընդգրկում էր Բումե կամ Օպպումու և Կուլլիմերի քաղաքների շրջանը։ Դա Արզանենեն է՝ հին Հայաստանի նահանգներից մեկը, Սոփենեի (Ծոփքի) արևելքում։

Ասպատակող կասկերը և ուրումիները կամ, ըստ զուգահեռ մի տեքստի՝ ուրումիներն ու աբեշլիները, որոնք որակված են որպես Խաթթիի ռազմիկներ, Խաթթի երկրից եկած ցեղերից էին։ Կասկերը մեզ շատ հայտնի պոնտական ժողովուրդ են, որը հաճախ ավերում էր Խաթթիի տերիտորիան։ Կասկերը, ուրումիները և աբեշլիները, անշուշտ, փռյուգիական ասպատակության զոհերն էին։ Իրենց բնակավայրից դուրս մղված լինելու հետևանքով նրանք ստիպված են եղել նոր հայրենիք փնտրել և առաջ են շարժվել մինչև Շուբարի։ Այդ խռովությունները ճնշվեցին։

Ովքե՞ր են փախստականները։ Նրանց ծագման մասին անստուգության մեջ գտնվելով հանդերձ, շատ հանդուգն չէր լինի նրանց համարել դասա-

կան հեղինակների Colchi, Apsili և Am(p)reutae իբերական կամ վրացական ընտանիքին պատկանող ժողովուրդների նախնիներ։ Այդ խնդրին մենք նորից կանդրադառնանք ուրիշ հարակից հարցերի կապակցությամբ։

1115 թվականին Թիգլաթպալասարը մեկնում է Խարիայի (ավելի շուտ՝ Խուրրիա) լեռներում գտնվող Բաբխի ժողովրդի դեմ կռվելու, «որտեղ (ասուրական) ոչ մի թագավոր երբեք ոտք չէր դրել»։ Նա անցնում է Իդնի և Աիա լեռների միջև գտնվող ճանապարհով, Ազու լեռան վրա հարձակվում է Բաբխիի մարդկանց վրա և խուճապի է մատնում նրանց։ Ավերում է լեռների ստորոտին փռված Խարիա երկրի 25 գյուղեր, որոնցից են՝ Աիա, Շուիրա, Իդնի, Շեզու, Շելգու, Արզանիբիու, Ուրուսա և Անիտկու։

Խարիան կարծես Բաբխի ժողովրդի երկիրն է կամ երկրի մեկ մասը[1]։ Այդ դեպքում պետք է այն տեղադրել Թել-Ֆաֆանի մոտ, Բոհտանում։ Այդ երկիրը չէր ապստամբել և ոչ էլ գտնվում էր Ասորեստանի տիրապետության տակ։ Այնուհանդերձ, նա չխուսափեց հարվածից այն ռազմատենչ թագավորի, որը համակված էր աշխարհակալական տենչով և հաղթանակներ էր որոնում։ Նրա համար իրական կամ հնարովի անկարգությունները միայն պատրվակներ էին իր փառասիրությանը հագուրդ տալու համար։

Նա օգտվեց Իշուվա և Դարիա երկրների միջև ծագած ներքին երկպառակությունից ու նրանց հարկատու դարձրեց։ Իշուան՝ դա Իշուվան է, Եփրատի ոլորանում, Ալզիի արևելքում։ Դարիան հայտնի չէ, պետք է որ լինի Իշուայի մոտ։

Նույն տարին Թիգլաթպալասարը գնում է Սուգի երկրի վրա, «որը գտնվում էր Խաբխի երկրում» և որը չէր ճանաչում Ասորեստանի իշխանությունը։ Նա մաքառում է Խիմմեի, Լուխեի, Արիրգիի, Ալամունի և Բաբխիի ամբողջ զանգվածի դեմ։ Խիրիխի լեռան վրա տեղի ունեցած ճակատամարտում Թիգլաթպալասարը ջախջախում է բոլորին և գերի վերցնում այդ երկրների 25 աստվածներին։

Թվարկված շրջանները գտնվում էին Սուգի երկրում, իսկ վերջինս Խաբխի երկրի մի մասն էր կազմում[2]։ Բաբխիի հիշատակումն ապացուցում է,

---

[1] Բաբխին ճիշտ ընթերցումն է այն անվան, որ առաջ կարդացվում էր Կուրխի։ Ֆորրեր (Reallexikon, I, էջ 328) տվել է այդ ընթերցումը և ճանաչել այդ անունը Թել-Ֆաֆանի մեջ, որը գտնվում է երկու Տիգրիսների միախառնման վայրում (Hartmann, Bohtan, էջ 66)։

[2] Եթե Խարիան որևէ առնչություն ունի Խար-րա-նիա քաղաքի հետ, որ նշված է Սալմանասար III-ի կողմից՝ Գիլզանի և Մանայի հետ միասին (Տարեգր., 181), ինչպես նաև Ասարխադդոնի աղոթքում (№ 35), Անխիտուս քաղաքի հետ՝ Խուբուշկիայի մոտ (Knudtzon, Assyrische Gebete, էջ 130), ապա պետք է կարծել, որ Խարիան գտնվում էր Բաբխիի և Խուբուշկիայի միջև։ Այդ դեպքում, եթե ճիշտ ընթերցումն է Խուրրիա, ինչպես առաջարկում է Ֆորրերը, ապա կարելի է կարդալ նաև Խարրանիա, Խուրրանիա։

որ Խաբխին հեռու չէր։ Ալամունը նաև Զաբի տեղական անունն էր։ Այստեղից պետք է եզրակացնել, որ Խաբխին իր ստորաբաժանումներով գտնվում էր Բոհտանի և Զաբի միջև, Բաբխիի մոտերքում։

Թիգլաթպալասարը նույնպես ռազմական գործողություններ է ծավալում Փոքր Զաբի մարզում։ Երկու անգամ անցնում է գետը և հպատակեցնում է Միլդիշ, Ադաուշ, Շարաուշ, Ամաուշ, -Մուրատաշ և Սարանդաուշ երկրները՝ Արումա լեռան վրա տարած հաղթանակից հետո։ Այդ երկրները տեղավորված էին Սուլեյմանիեի մարզում, իսկ նրանց ժողովուրդները կազմում էին առանձին խմբավորում և, անուններից դատելով, տարբերվում էին ասորեստանցիներից, ինչպես նաև ուրիշ լեռնականներից։

Այսպիսով, Ասորեստանի թագավորը նախ իր բանակը վարժեցնում է լեռնային ընդարձակ գոտում, որը տարածվում է Եփրատի ոլորանից մինչև Փոքր Զաբ, ապա որոշում է արկածներ որոնել Հայկական լեռնաշխարհում։

1114 թվականին Թիգլաթպալասարը մագլցեց հայկական Տավրոսը և սանվեց մեծամեծ լեռների միջով, անանց ճանապարհների դժվարությունները հաղթահարելուց հետո, անցավ Եփրատ գետը[1], այսինքն՝ Արսանիասը, հայկական Արածանին։ Նա ստիպված է լինում լեռներում կտրել տալ ուրումի կոչված ծառերը և կամուրջներ պատրաստել իր զորքերի առաջխաղացման համար։

Նա մտնում է Նաիրի։ Այս անունը առաջին անգամն է երևան գալիս Հայաստանը ցույց տալու համար։ Նաիրիի 23 թագավորներ հավաքում են իրենց զորքերն ու մարտակառքերը և գալիս դիմադրելու Ասորեստանի թագավորին։ Այս 23 թագավորների երկրները թվարկված են այսպես.

| | | |
|---|---|---|
| 1. Թումմե | 9. Ատուրգինի | 17. Ադաենի |
| 2. Թունուբե | 10. Կուլիբարզինի | 18. Կիրինի |
| 3. Թուալի | 11. Շինիբիրնի | 19. Ալբայա |
| 4. Կինդարի | 12. Խիմուա | 20. Ուգինա |
| 5. Ուզուլա | 13. Պախտերի | 21. Նազաբիա |
| 6. Ուզամունի | 14. Ուիրամ | 22. Աբարսիունի |
| 7. Անդիաբե | 15. Ծուրուրիա | 23. Դայաենի |
| 8. Պիլակիննի | 16. Աբաենի | |

[1] Այդ լեռները հիշատակված են իրենց անուններով. Էլամա, Ամադանա, Էլխիշ, Շերաբելի, Թարխունա, Թորկախուլի, Կիսրա, Թարթանաբե, Էլուլա, Խաշտարաե, Շախիշարա, Ուբերա, Միլիադրունի, Շուլիանզի, Նուբենաշե, Շեշե։ Դժբախտաբար, այս լեռներից ոչ մեկը հնարավոր չէ որոշել։

Շարժվում են ճակատամարտ սկսելու համար։ Թիգլաթպալասարը հարձակվում է Նաիրիի թագավորների վրա «իր սոսկալի զենքերի կատաղությամբ», ջախջախում է նրանց «լայնատարած» ուժերը։ «Նրանց սպանված ռազմիկների մարմինները որպես հարդ ցրում է լեռների բարձունքների վրա, իրենց քաղաքներից հեռու»։

Հաղթական թագավորը ավար է վերցնում 120 մարտակառք և հետապնդում Նաիրիի 60 թագավորներին ու նրանց օգնության եկողներին մինչև Վերին ծովը։ Գրավում է նրանց քաղաքները, տանում նրանց ունեցվածքը, քանդում ու կրակի ճարակ է դարձնում երկիրը։ «Ձիերի մեծ երամները,— ասում է նա,— մեծ թվով արագաշարժ ջորիներ, անասուններ բերի նրանց արոտատեղերից. իմ ձեռքն ընկան Նաիրի երկրի բոլոր թագավորները, ես նրանց ներեցի և կյանքը շնորհեցի։ Կալանավորված և կապված էին, ես նրանց ազատ արձակեցի իմ տեր Շամաշի դիմաց և երդվել տվի, որ մեծարեն ինձ այսուհետև և ընդմիշտ։ Նրանց թագաժառանգներին պահեցի որպես պատանդներ։ Հարկ պարտադրեցի՝ 120 ձի, 2000 գլուխ անասուն, ապա ուղարկեցի նրանց իրենց տները։ Բերեցի Դայաենի երկրի թագավոր Սիենիին, իր հպատակությունը հայտարարած չլինելու պատճառով, կապած բերի Աշշուր քաղաքը։ Ներեցի նրան, որպեսզի ապրի և ինձ մեծարի, ապա ուղարկեցի իր երկիրը։ Նաիրի ընդարձակ երկրները, — եզրափակում է Ասորեստանի թագավորը,— գրավեցի լայնությամբ ու երկարությամբ և նրանց ստիպեցի իմ ոտքերն ընկնելու»։

Այս արշավանքի ընթացքում, հավանական է վերադարձի ճանապարհին, գրավել է «Խանիգալբատում գտնվող Միլիդիա» (Մելիտենե) քաղաքը և պարտադրել վճարելու տարեկան հարկ մեկ իմմեր abaru-ի չափով։

Ասորեստանի թագավորի արշավանքը Հայաստան այժմյան հեղինակների կողմից մեկնաբանվել է այնպես, թե նա հասել է մինչև Սև ծովը և նույնիսկ՝ Կասպից ծովը։ Տեքստը, սակայն, այդպիսի չափազանցության տեղիք չի տալիս։ Իրականությունը շատ ավելի համեստ է։

Ասորական բանակի ուղղությունը՝ Եփրատ-Արսանիասը անցնելուց հետո, ճշգրտվում է Թիգլաթպալասարի մի արձանագրությամբ, որ հայտնաբերվել է Յոնջալուում, Մելազկերտից 30 կիլոմետր հեռավորության վրա։ Այստեղ գրված է. «Թիգլաթպալասար, աշխարհի թագավոր, Աշշուրի թագավոր, չորս երկրամասերի թագավոր, Նաիրի երկրների նվաճող՝ Թումմեից մինչև Դայաենի, Խաբխիից մինչև մեծ ծով ընկած երկրների նվաճող»[1]։

---

[1] **Lehmann-Haupt,** Sitzungsberichte d. Preus. Akad. d. Wissenschaft., *1900*, *էջ 626*. *նույնպես* Armenien einst und jetzt, I, *էջ 433*, II, *1*, *էջ 115*։

*Այս արձանագրության տվյալներով վերականգնվում է Թումմե անվան ճիշտ ընթերցումը. Նախապես կարդում էին Նիմմե։*

Վճռական ճակատամարտը, հավանաբար, տեղի է ունեցել արձանագրության շրջակա վայրերում։ Հետևաբար, Արսանիասն անցնելուց հետո Թիգլաթպալասարը դառնում է դեպի արևելք և ներկայումս Պալուից Մելազկերտ տանող ճանապարհով հասնում Յոնջալուի դաշտը։

Որ Նաիրիի 23 երկրները տեղավորված էին ցույց տրված ճանապարհի հյուսիսում, դա ակներև է, բայց ի՞նչ հեռավորության վրա, դա արդեն վիճելի է։ Բարեբախտաբար, հնարավորություն կա 23 երկրներից մի քանիսն ստույգ կերպով տեղադրելու։ Թունուբե՝ մեր ցուցակի երկրորդ երկիրը, նշված է Սալմանասար III-ի կողմից, որը հետևել է Թիգլաթպալասար I-ի անցած ճանապարհին, ինչպես կըտեսնենք հետագայում։ Նա ասում է, որ «մտել է Թունիբու-նի երկրի լեռնանցքը», որպեսզի գնա ավերի Ուրարտուն։ Այդ լեռնանցքը Ինգիտիի, Անգիտենեի լեռնանցքն է, Բիրկալենի մոտ գտնվող հայկական Տավրոսի պարանոցներից մեկը։ Այսօր նա կոչվում է Գյոկ-դերե, «Կապույտ հովիտ (կամ լեռնանցք)». սա Պալուից արևմուտք գտնվող մի փոքրիկ գավառ է, որ բաղկացած է 40 գյուղերից։ Դա հենց Սալմանասարի Թունիբունին և Թիգլաթպալասարի Թունուբեն է՝ Արսանիասի վրա մի փոքրիկ երկիր, ուղիղ լեռնանցքի ելքի դիմաց։ Թունուբեն, կամ ավելի շուտ՝ Թունիբին, վերաբերում է Թունիբունիին, ինչպես Արզաշկուն՝ Արզաշկունին կամ Թուշխան՝ Թուշխանին. -նի-ն այստեղ ուրարտական բնորոշ վերջածանց է։

Ուզուլա, որ մեր ցուցակում հինգերորդ անունն է, դեռ այսօր էլ գործածվում է։ Սա Պալուի և Պաղինի միջև գտնվող քրդական Իսոլ գյուղն է։ Այս անունն է կրում նաև քրդական այն տոհմը, որ ապրում է նրա շրջակայքում[1]։ Ուզուլան, ուրեմն, Թունուբեի հարևանն էր։ Matu «երկիր» որոշիչը, որով Ասորեստանի թագավորները պատիվ են անում Թունուբեին և Ուզուլային, չի կարող խոչընդոտ հանդիսանալ առաջարկված նույնացումներին։ Ասորեստանցիները միտումնավոր կերպով իրերը խոշորացնում էին, որպեսզի իրենք էլ խոշորանան։ Այն, ինչ alu «քաղաք» են կոչում, հաճախ գյուղ է, իսկ matu «երկիր»-ը վերաբերում է մեկ քաղաքի տերիտորիային։

Հռոմեական հին ճանապարհացույցներին ի միջի այլոց հայտնի էր մի ուղի, որին վերագրված են հետևյալ կայանները. Իսումբո 17, Նասաբի 24, Անտեբա 24, Սորուս 27, Կալիսպի 39, Ռաուգոնիա[2]։ Առաջին կայանը՝ Իսումբոն, կամ ավելի շուտ՝ Սումբոն, ձայնավոր սկզբնատառը միայն հայերենի նախդիրը լինելով, այլ բան չէ, քան Ապահունի գավառի Սումբ

---

[1] Նաթանյան տեղեկագիր (Topographie de Palou, Xarberd, Ćarsanjak, Ćapatjur et Erzinka), հայերեն, 1787, էջ 97 և 98։

[2] Itineraria Romana, ed. Konrad Müller, 1916, էջ 63։

(Խսումբ) գյուղը, Մելազկերտի (Մանազկերտ) շրջանում։ Ծումբումն էր, որ 998 թ. տեղի ունեցավ քրիստոնյա իշխանների և մուսուլմանների միջև մղված ճակատամարտը[1]։

Վերջին կայանը, որի Ռաուգոնիա անունը Բագաուոնիայի աղավաղումըն է, նույն հայկական Բագավանն է, Բագրևանդ[2] գավառի կենտրոնը։ Բագավանն այժմ կոչվում է Սուրբ-Օհան, ըստ այն սրբավայրի, որ հիմնել է Գրիգոր Լուսավորիչը Հովհաննես Նախակարապետի անունով։ Թուրքերը սրբավայրը կոչում են Ուչ-քիլիսե։

Այս միջանկյալ կայանները գտնվում են Մելազկերտի և Ուչ-քիլիսեի միջև։ Նրանցից երեքը՝ Նասաբին, Անտեբան, Սորուան, գտնվում են Նաիրիի 23 երկրների ցուցակում։ Դրանք են՝ Նաչաբիա, Անդիաբե, Շարուրիա։ Վերջինը գուցե Շորեր գյուղն է, Ալադաղի զառիվայրի վրա, Ջիլան գետի ակունքի մոտ։ Նույնիսկ չորրորդ կայանը՝ Կատիապին (կարդալ Օրտիապի), կհամապատասխաներ հայերեն Օրդսպոյ-ին, Ուչ-քիլիսեից ոչ հեռու[3]։

Տասնմեկերորդ անունը՝ Շինիբիրնի, հիշեցնում է Շինիբրան, որը գտնվում է Բալուի (Պալուի՞) հյուսիսում։ Ցուցակի նախավերջին երկիրը՝ Աբարսիունին, թերևս չի կարելի զանազանել Աբասինիից, որը ուրարտական մի բնակավայր է, դարձյալ Մելազկերտի մոտ։ Այն հիշատակված է Խոտանլուի (Յոնջալուի մոտ) արձանագրության մեջ (տորև՝ № 50) որպես այն կետերից մեկը, որոնց համար ջրմուղ էր կառուցվել[4]։

Այսպիսով, ցուցակի 23 երկրներից վեցը տեղադրվում են Մելազկերտի և Ուչ-քիլիսեի միջև ընկած տարածության վրա։ Ավելացնենք նաև Թումեն՝ ճակատամարտի թատերաբեմը, Յոնջալուի դաշտում, եթե մասնագետները չհամաձայնվեն այն նույնացնել Խսումբ=Ծումբի հետ։

Այս նույնացումները մեզ պատկերացում են տալիս նմանապես, թե ինչ էր ներկայացնում Նաիրյան մի պետություն։ Դա մի մանր պետություն էր, որի տերիտորիան ավելի պակաս էր, քան հայ մեծ ֆեոդալների տիրույթները։ Համարյա ստույգ է, որ 23 պետությունները շարված էին այն ճանապարհի երկու կողմերում, որտեղից անցել էր ասորեստանյան բանակը, Եփրատի անցումից սկսած, Պալուի մոտով, որի վերևում տարած-

---

[1] Ասողիկ, Պատմություն, III, գլ. 41։

[2] **Markwart**, Die Entstellung und Widerherstellung der armenischen Nation, էջ 23։

[3] **Սեբեոս**, Պատմություն, էջ 108, ասում է, որ արաբները Տարոնից գնալով անցան Բերկրի, Օրդսպոյ և Կոգովիտ (Բայազետի հովիտ)՝ Այրարատ մտնելու համար։ Սրբագրումն է՛լ ավելի թեթև կլինէր Կարտիպպի կարդալու դեպքում՝ Արճեշի հյուսիս-արևմուտքում գտնվող մի գյուղ (**Маевский**, նշվ. աշխ. Приложение, էջ 24)։

[4] **Anonyme de Ravenne**, II, էջ 75՝ Սիմբրա, Ֆլերա, Մոգուսսա, Բոլբա, Արսամոսատա։ **Markwart**, Südarmenien, էջ 263, իրավամբ կարդում է Սիներրա, Բոլուա (=Բալու)։ **Ptol.**, V, 6, 19, էջ 883։

վում էր Դայաենի երկիրը, մինչև Թումմե, որը արշավանքի ծայրագույն կետն էր հանդիսանում։ Նշանակում է, որ նրանք գրավում էին Արսանիասի ավազանը, Վանա լճի և Բագրևանդ գավառի միջև եղած տարածությունը, խմբված լինելով, մանավանդ, Բինգյոլ-դաղի և Ալա-դաղի լեռնաստանի շուրջն ընկած տարածության վրա[1]։

Թիգլաթպալասարը թողել է մի արձանագրություն Բիրկալեյն գետնուղիում (թունել), որտեղ ասում է, որ գրավել է ամեն ինչ, սկսած Ամուրրու երկրի մեծ ծովից մինչև Նաիրիի ծովը և երեք անգամ եկել է Նաիրի երկրները[2]։ Դրանից եզրակացրել են, թե Ասորեստանի թագավորը երեք արշավանք է կատարել Նաիրի երկրների դեմ։ Սակայն տեքստն այդ եզրակացության հանգելու հնարավորություն չի տալիս։ Թիգլաթպալասարը միայն ասում է, որ երեք անգամ հասել է Տիգրիսի ակունքը, այսինքն՝ արձանագրության վայրը, ուրիշ ոչինչ։ Նա այդ երկրամասը վերագրում է Նաիրիին այնպես, ինչպես ավելի ուշ հայերն են անում, ասելով, թե Տիգրիսի ակունքները գտնվում են Հաշտեանք՝ Աստիանենե գավառում։ Ասորեստանի թագավորը Եփրատ-Արսանիասն անցել է միայն մեկ անգամ, և դա եղել է 1114 թվականին։

Հաջորդ տարին, 1113 թվականին, ասորեստանական բանակը պատերազմ է մղում արամեական ախլամու ցեղերի դեմ։ Դրա վրա կանգ առնելը մեր նյութին չի վերաբերում։ 1112 թվականին Թիգլաթպալասարը պատերազմական գործողություններ է կատարում Մուզրի և Կումանի երկրներ–

---

[1] Մենք չենք կարող ընդունել այն ծավալը, որ Ֆորերը, Reallexikon, I, էջ 281, տալիս է Նաիրիի արշավանքին։ Նա ասորեստանցիներին գրավել է տալիս ամբողջ Հայաստանը և ամբողջ Ադրբեջանը, Սև ծովի և Կասպից ծովի միջև ընկած ամբողջ տարածությունը։ Այդ դրույթը հաստատելու համար նա կատարում է տարօրինակ նույնացումներ։ Անդիաբեն, 23 երկրներից մեկը, դառնում է Անզաֆ, Պախտերին, Նաիրյան մի այլ երկիր, դառնում է Փայտակարան, Թումմեն՝ Թոմ, որը Վանից 68 կիլոմետր հեռավորության վրա, Կորուրի ակունքին, Սատվանիսի մոտ գտնվող մի գյուղ է։

Սակայն Անզաֆը հայերեն անձավ բառն է, իսկ Փայտակարանը՝ իրանական Պարայտականը։ Գալով Կուլիբարզինիին, եթե նույնիսկ այն նմանեցվի Կոլարզենեին, վերջին տերմինը ուրարտական Կատարզանին է, և չի կարելի ասել, որ այդ անունը կրող ցեղը արդեն Թիգլաթպալասարի ժամանակ ապրում էր Կոլարզենե գավառում՝ հայկական Կղարջքում։

Թոմ կամ ավելի շուտ՝ Թյուն գյուղը, ինչպես ներկայումս արտասանվում է (**В. Т. Маевский,** Военно-статистическое описание Ванского и Витлисского вилаетов, *1904,* Отдел приложений, էջ 49), չի կարելի նմանեցնել Թումմեին հենց այն բանի համար, որ Ասորեստանի թագավորը Վանա լիճը չի շրջանցել, այլ վերադարձել է նույն ճանապարհով, որով եկել էր Թումմե և իր վերադարձին հպատակեցրել Մելիտենե քաղաքը։ Չկա մի նշան, որից երևար, թե նա շրջանցել է լիճը՝ իր մայրաքաղաքը գնալու համար։

[2] **Schrader,** Keilinschriftliche Bibliothek, I, էջ 49։ **Budge** and **King,** The Annals, էջ 127, ծան. 1։

ների դեմ։ Նա անցնում է Էլամունի, Թալա և Խարուսա լեռներով, հաղթում է Մուզրիին և երկիրը կրակի ու արյան ճարակ դարձնում։

Կումանին օգնության է հասնում իր հարևան Մուզրիին, բայց պարտություն է կրում։ Քսան հազարի չափ նոր ուժեր օգնության են գալիս։ Ասորեստանցին հարձակվում է նրանց վրա և փախուստի մատնում։ Նրանց հետապնդում է մինչև Խանուսա լեռը՝ Մուզրիի սահմանագլուխը։ Խանուսայի բերդը, ինչպես նաև թագավորական քաղաք Կիբսունան գրավվում են։ Կումանիի թագավորը սարսափահար եղած՝ հաղթական թագավորից գութ է հայցում և «ընկնում նրա ոտքերը»։

Կումանին և Մուզրին (կամ Մուծրին) երկու թագավորություններ են։ Կիբսունան Կումանիի մայրաքաղաքն է։ Ջախոյից տասը կիլոմետր հեռավորության վրա գտնվող ներկա Գիֆշե գյուղը, Արևելյան Խաբուրի ափին, պահպանել է Կիբսունա անունը, որը ծանոթ է նաև Կիբսու հորջորջմամբ։ Դա ճշտում է Կումանիի տեղը Խաբուրի հովտում, Ջեբել-Աբիադ լեռան փեշերին։

Մուզրին գտնվում էր Կումանիի հարավում, Դեհոկի շրջանում, ուր Մուսիրի կոչված քրդական ցեղը պահպանել է նրա անունը։

Կումանեցիներն այն միևնույն ժողովուրդն են, որ երևան է գալիս Ասարխադդոնի օրով Կումա անվան տակ, ուրեմն առանց -նի վերջավորության, ինչպես Կիբշու՝ Կիբշունիի փոխարեն, կամ Թուշխա՝ Թուշխանիի փոխարեն։

Մուզրի ժողովրդին չի կարելի բաժանել այն ժողովրդից, որն իր հիշատակը թողել է Մ(ու)զուր հայկական գավառի անվան մեջ, որը գտնվում է Դերսիմի շրջակայքում։ Ավելի նվազ վստահությամբ կարելի է նմանություն ենթադրել Կումանիի և պոնտական նշանավոր Կոմանայի միջև։

Համենայն դեպս, երկու ժողովուրդները՝ Կումանին և Մուզրին, սեմական աշխարհին չեն պատկանում, ավելի շուտ, ինչպես մյուս լեռնցիները, կապված են Հայաստանի բնակչության հետ։

Այդպիսին էին Թիգլաթպալասարի ռազմական գործողությունները։ Հարց է ծագում, թե որո՞նք էին ստացված իրական արդյունքները։

Իր արձանագրության ներածականում, որտեղ նա իրեն վերագրում է մեծադղորդ տիտղոսներ, նա հայտարարում է, որ մեծ աստվածներն են հրամայել ընդարձակել իր երկիրը, և ինքը գրավել է «երկրներ, լեռներ, քաղաքներ, գերել է իշխանների՝ Աշշուրի թշնամիների», որ 60 թագավորների դեմ է կռվել և նրանց երկրները միացրել է իր երկրին։

Մի այլ տեղում նա հաստատում է, որ միայն Նաիրիում հպատակեցրել է 60 թագավորների։ Ավելի զարմանալի է, որ արձանագրության վերջում, իր սխրագործություններն ամփոփելիս, գրաված երկրների թիվը վերածում է 42-ի։

Թիգլաթպալասարի ասելով, Նաիրյան թագավորներն ապրում էին «Վերին ծովի» ափերին, և հաղթանակից հետո նրանց հետապնդում է մինչև «Վերին ծովը»։ 42 երկրները տարածվում էին լեռնային մարզում՝ ընկըած Փոքր-Զաբի այն կողմից մինչև Եփրատի այն կողմը, մինչև Խաթթի երկիրը և «Արևմուտքի վերին ծովը»։

Այստեղ ակնարկվում է, կարծես թե, Սև ծովը։ Եթե իսկապես դա է իմաստը, ապա չափազանցություն է և հերքվում է Խոտանլուի արձանագրությամբ, որն ասորեստանցիներին հայտնի չլինելով, ավելի արժանահավատ է։ Այստեղ նվաճումների տարածությունը սահմանված է երկու զուգահեռ գծերով՝ «Թումմեից Դայաենի», այսինքն՝ Մելազկերտից Պալու և «Խաբխիից» մինչև մեծ «ծով», այսինքն՝ Զաբի մարզից դեպի Միջերկրական ծովը։

Միևնույն թագավորի մի ուրիշ արձանագրության պահպանված կըտորում[1] Նաիրիի թագավորներն այլևս 60 չեն, այլ միայն 30, որոնց քթերին նա օղակ անցկացրեց «ինչպես ցուլերի» և տարավ Աշշուր։ Դրանք հավանաբար Նաիրիի 23, Մուշկիի 5, Կումուխիի և Ուրրախինայի 2 թագավորներն են։

Ասորեստանի թագավորն իր աշխարհակալության վերաբերյալ ասածների մեջ շատ է չափազանցում։ Չափազանցելու նրա ճաշակն արտահայտվում է նաև այլուր։ Այսպես, նա ուզում է հավատացնել, թե երբ Խառանում, իր սխրագործություններից հետո, անձնատուր է լինում որսորդության հաճույքին, իբր թե մեկը մյուսի հետևից սպանել է չորս վայրի ցուլ, տասը հզոր արու փիղ և կենդանի բռնել է չորսին, ոտնատակ է արել 120 առյուծ, իսկ մարտակառքով՝ 800 առյուծ։ Բացի դրանից, նա կոտորել է դաշտերի բոլոր անասուններին և երկնքի բոլոր թռչուններին[2]։

Անապարծ առաջնորդը չարաշահում է թագավորական խոսքին ցուցաբերվող վստահությունը։ Եթե նրա աշխարհակալության պատմությունը գնահատելու լինենք իր որսի պատմության չափանիշով, հիասթափությունը մեծ կլինի։ Համենայն դեպս, նրա հաջողությունները վաղանցուկ էին՝ օրվա հաղթանակ առանց վաղվա շարունակության։

28 արշավանք կատարել, ինչպես Թիգլաթպալասարն է կատարել արամեացիների դեմ, նշանակում է հանդիպել համառ թշնամու, որի հար-

[1] Դա իր թագավորության առաջին տասը տարիների պատմությունն է, որից միայն մի քանի հատվածներ են հայտնի, հրատարակված Բյուդջի և Քինգի կողմից, ն. աշխ., էջ 109—126։ Մեկում կարդում են Մուշկի, Ուրումի, Աբեշլի և Ալզի անունները, մյուսում 4000 ուրումիի և աբեշլիի մասին է խոսվում։ Դա ոչ թե Նաիրիի դեմ երկրորդ արշավանքի հաշվետվությունն է, այլ հակիրճ պատմությունը 1114 թ. արշավանքի, հակառակ մի քանի գիտնականների կարծիքին։

[2] Պրիզմա, VI, 61—84։

ձակումներն ստիպված է եղել ետ մղել։ Ապստամբությունները հյուսի-սում, որոնք անցնում էին մի մարզից մյուսը, նույնպես ապացուցում են, որ հարձակմանը դիմագրավելու խնդիր է եղել։

Թիգլաթպալասարն իրականում գտնվում էր լեռնային ցեղերի և անապատի բեդվինների կրկնակի ճնշման դեմ պաշտպանվողի վիճակում։ Նա հաջողությամբ դիմադրում էր, «թույլ չի տվել թշնամուն,— ինչպես ինքըն է ասում,— ոտք դնել Ասորեստանի հողի վրա»[1]։ Նա նույնիսկ հարձակման է անցել և ավերել ու կողոպտել է թշնամական տերիտորիան, Հայկական լեռնաշխարհից թագավորներ է գերեվարել՝ մայրաքաղաքի փողոցներում իր ուժը ցուցադրելու համար, բայց այդ բոլորը երկար չէր տեվում։ Հենց որ արշավանքից վերադառնում էր, ապստամբները նորից էին գրավում իրենց դիրքերը։ Նրա հաջողությունները երկարատև չէին։ Իր թագավորության առաջին հինգ կամ տասը տարիներին իրեն վերագրած փառավոր հաղթանակների մասին այլևս չի խոսելու թագավորության մնացած ժամանակում, համարյա քսանհինգ տարի, որովհետև տերիտորիալ ամեն տեսակի եկամուտները արդեն իսպառ վերացել էին։ Ադադնիրարին (911—890) արամեացիներից խլում է Նիսիբինի մարզը, որը գտնվում էր Կաշիարիի փեշերին, և ի միջի այլոց նա նկատել է տալիս, որ այդ մարզը Թիգլաթպալասարից ի վեր կորած է եղել։ Եթե Թիգլաթպալասարը չի կարողացել պահել, մանավանդ, Ասորեստանին այնքան մոտ մարզը, ինչպե՞ս կարող էր իր ձեռքում պահել այնքան հեռավոր երկրներ։ Բացահայտ է, որ Ասորեստանը բոլորը կորցրել էր։ Արամեացիները ներխուժել էին Միջագետքից սկսած մինչև Ամիդ և Նիսիբին ընկած տարածությունները, ներառյալ Խաբուրի դաշտը, որտեղ Թիգլաթպալասարը զըվարճանում էր որսորդությամբ։ Ասորեստանի և Հայաստանի միջև ընկած լեռնային գոտին ազատվում է ասուրական ազդեցությունից և զբաղեցված է մնում հետևյալ ժողովուրդների կողմից. Իշուա, Դարիա, Ալզի, Պուրուլումզի, Շուպրիա, Կասկի, Մուշկի, Ուրումի, Աբեշլի, Խարիա, Բաբխի, Խաբխի, Կումանի, Մուզրի։ Ասորեստանի առաջին փորձը՝ երկիրը ընդարձակելու ուղղությամբ, ձախողության մատնվեց։ Նա ստիպված է լինում ետ քաշվել և փակվել շատ սեղմ սահմաններում։ Դրան հետևում է անկայունության ու տագնապի շրջանը։ Մեկ տասնյակ թագավորներ նստում են Թիգլաթպալասարի գահին, բայց չեն կարողանում նույնիսկ մի քանի հիշատակելի էջ ավելացնել Ասորեստանի պատմության վրա։ Վավերագրերի աղքատությունը այդ շրջանում դրա լավագույն ապացույցն է, որովհետև հաջող պատերազմների արձագանքներով է, որ առատանում են ասուրական արձանագրությունները։ Իր նախկին ուժից զրկված, Ասորեստանը

[1] Պրիզմա, VI, 53—54։

լռակյաց կյանք է վարում մինչև X դարի վերջը, որպեսզի նորից հանդես գա և բաց անի իր պատմության ամենափայլուն էջը։

Այդ ամբողջ մթին փուլի ժամանակ ոչինչ չի լսվում լեռնային ժողովուրդների մասին. Ասորեստանն ի վիճակի չէ նրանց ազատությունը փորձության ենթարկելու։ Այլևս Հայաստան չեն վերադառնում ասորեստանցիները։ Սակայն այդ շրջանում է, որ առաջին անգամ արտասանվում է Ուրուատրի անունը, նույն ինքն Ուրարտուն։ Իսկ սա ազդարարում է եզակիորեն փայլուն մի դարաշրջանի սկիզբը Հայկական լեռնաշխարհի համար։

Գլուխ Երրորդ

# ՈՒՐԱՐՏՈՒ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ

## (Ըստ ասուրական աղբյուրների)

*Հենց այն ժամանակ, երբ Ասորեստանը ոտքի է կանգնում և կրկին ընկըրում է բարձրանալ դեպի մեծ պետության մակարդակը, մեկ ուրիշ պետություն ասպարեզ է իջնում Հայկական լեռնաշխարհում։ Դա Ուրարտու պետությունն է։*

*Թիգլաթպալասարի ժամանակից հետո տեղի ունեցած զարգացումը փոխակերպել էր Նաիրի երկրների սոցիալական ու քաղաքական դեմքը։ Այդ զարգացման ընթացքը մեզ հայտնի չէ տվյալների բացարձակ պակասության պատճառով։ Երևում է միայն տեղի ունեցած իրողության արդյունքը։ Նաիրիի բազմաթիվ պետություններ անհետացել կամ ավելի շուտ՝ միաձուլվել են, կազմելով մեկ քաղաքական մարմին։ Նոր պետության կենտրոնը այն նույն դաշտն է, որտեղ Նաիրիի 23 թագավորները հաղթվեցին Թիգլաթպալասարի կողմից 1114 թվականին։ Արդյոք այս աղետը չէ՞, որ առաջին անգամ նրանց դրդեց կենտրոնացնելու երկրի ցրված ուժերը։*

*Ուրարտուի հիշատակումը սկսվում է Ասորեստանի Աշուրբելկալա (1077—1060) թագավորի ժամանակից «Ուրուատրի» ձևով։ Որոշ վարանումներից հետո հանձին Ուրուատրիի ճանաչեցին «Ուրարտու»-ի ավելի հին ձևը։ Աշուրբելկալան Ուրուատրին զետեղում է Արևելյան Տիգրիսի շրջանում։ Նա ասում է, որ իր թագավորության առաջին տարին գրավել է Ուրուատրին և Մաշգունը, իսկ երրորդ տարին՝ Ուրուատրին, Մաշգունը և Խիրուան։*

*Սալմանասար* II*-ը (1028—1017) նույնպես պատերազմ է մղում Ուրուատրիի դեմ և հպատակեցնում է նրա հետևյալ ութ շրջանները՝ Խիմմե, Ուատկուն, Մաշգուն, Սալուա, Խալիլա, Լուխա, Նիհիլպախրի և Զինգուն։ Նա հրկիզում է 51 գյուղ, «երեք օրում նվաճում է ամբողջ Ուրուատրի երկիրը»։ Ապա հարձակվում է Բաբխիի վրա և արյուն հոսեցնում բազմաթիվ քաղաքներում՝ «Ուրուատրի երկրից սկսած մինչև Կուտմուխի»[1]։*

[1] **Forrer**, Reallexikon, I, *էջ 207, 208*. **E. Ebeling, B. Meissner, L. Weidner**, *նշ. աշխ., էջ 113։*

Այդ վայրերից Խիմեն ու Լուխան մեզ հայտնի են Թիգլաթպալասարի արձանագրությունից, որտեղ նրանք տեղադրվում են Խաբխիում, մինչդեռ այստեղ կապվում են Ուրուատրիի հետ։ Վերջինը պետք է որ սահմանակից եղած լինի մեկ կողմից՝ Խաբխիի, մյուս կողմից՝ Բաբխիի հետ։ Նրշանակում է, որ նա գտնվում էր Բոհտանում, համարյա Արևելյան Խաբուրի ակունքների վրա։

Սալմանասար III-ի (859—824) ժամանակից սկսած Ուրարտուն երևան է գալիս որպես Հայաստանի անուն։ Սակայն դրանից չի հետևում, թե այդ անունը գալիս է նույն ժամանակաշրջանից։ Բոհտանից չէ նույնպես, որ նա անցել է դեպի Հայկական լեռնաշխարհը։ Շատ դժվար է բացատրել, թե ինչպես կարող էր քաղաքական անցյալ չունեցող մի շրջան իր անունը տալ մի մեծ երկրի։ Շատ ավելի հավանական է, որ Բոհտանը Ուրուատրի-Ուրարտու անվան համար պարտական է Հայաստանին, լինելով հայկական Ուրարտուի նահանգ։ Անշուշտ այդ միևնույն պատճառով է, որ Բավիանի հյուսիսում գտնվող շրջանը նույնպես կոչվում էր Ուրարտու Սեննաքերիբի օրով (705—681)։ Որ Ուրարտուի հավակնությունները շատ հեռու էին գնում, դա բոլորովին գաղտնիք չէ, ինչպես կտեսնենք հետագայում։

Նույն բախտն էր վիճակված նաև Նաիրի անվանը։ Հայկական լեռնաշխարհում իր անունը զիջելով Ուրարտուին, նա այս լեռնաշխարհի երկու կողմերում իրեն է պահում երկու շրջաններ՝ Ամիդի շրջանը մինչև Անզիտենե և Խուբուշկիա երկիրը Զաբի հովտում և նույնիսկ Պաղղիրայի շրջանը Մուսասիրի հարավում։ Այդ շրջանները Նաիրի անունը վերագրում են իրենց այն պատճառով, որ երբեմն կազմել են Նաիրիի մասը, երբ վերջինն ընդգրկում էր ամբողջ Հայկական լեռնաշխարհը։ Համանման ստրիճանական անկում է ապրում հետագայում «Ուրարտուն», պետության փլուզումից հետո նա կառչում է Արաքսի հովտում Հայաստանի Այրարատ նահանգին։

Պետք է նկատի ունենալ, և մենք դրան կանդրադառնանք հետագայում, որ Նաիրի, Ուրուատրի անուններն ազգակցական կապ ունեն Խուր-րի, Նամ-րի, Կիրրու-րի և -րի ածանց ունեցող ուրիշ շատ անունների հետ և պատկանում են մի լեզվի, որը ոչ մի առնչություն չունի սեմական լեզուների հետ։

Ուրարտուն Հայաստանի բարձունքներում բացում է նոր դարագլուխ։ Իր սահմանները տարածելու համար թափած ջանքերում նա դեմ-դիմաց է կանգնում ասորեստանյան իմպերիալիզմին։ Սկսվում է մի համառ պայքար, որը չի դադարում մինչև երկու մրցակիցների վերջին օրը և ընթանում է Եփրատից մինչև Փոքր Զաբ տարածվող միջանկյալ երկար պատնեշի վրա և հանուն դրա հաղթահարման։ Երկու հակառակորդների մրցակցու-

*թյունը կազմում է երեքդարյա պատմության մի թել, որի վրա շարվում են նրանց ռազմական բախտի փոփոխականությունները։*

*Նախընտրելի է ուրվագծել երկու պետությունների պայքարի իրադարձությունները նախ՝ ըստ ասորեստանյան աղբյուրների և ապա՝ վերադառնալ ուրարտական վավերագրերին, որոնք հակակշիռ կծառայեն պայքարի իսկական արդյունքները գնահատելու համար։*

*Երկդարյա լեթարգիական թմրությունից հետո Ասորեստանը Ադադնիրարիի թագավորության ժամանակ (911—890) նորից հզորանում է։ Առաջին անգամ նա իր զենքն ուղղում է Կումանի երկրի և նրա հարևանների դեմ։ Ասորեստանի թագավորը գրոհում և գերի է վերցնում այդ երկրի թագավոր Իլուլային և նրա ատվածներին։ Մենք տեսանք, որ Կումանին զբաղեցնում էր Կիպշու կամ Կիպշունա քաղաքի շրջանը, այսօրվա Գիֆշեն, Արևելյան Խաբուրի աջ ափին, Զախոյի մոտ գտնվող մի գյուղ։*

*Ապա թագավորը հարձակվում է Խաբխիի և Մեխրիի յոթ քաղաքների վրա, որոնք գտնվում են Շուպուրու գետի ափին։ Մեխրիի տեղը ճշգրտվում է Մեհրի-Նար լեռով՝ Խաբուրի ակունքի վրա և կարծես պահպանել է հին անունը[1]։*

*Բազմաթիվ անգամներ նա արշավում է Խաբխիի և Ուրուատրիի դեմ, պաշտպանում է Կումմեն, որը սարգոնյան դարաշրջանում կոչվում էր Կումայա, բայց նրա միակ նվաճումը եղավ Կումանին։*

*Ադադնիրարին անցնում է Տիգրիսը, գրավում է Կուտմուխին և կցում Ասորեստանին։ Բայց Կաշիարիի լեռնցիները կատաղի դիմադրություն են ցույց տալիս նրան։*

*Կաշիարին հին հեղինակների Մասիուսն է, այսօրվա Տուր-Աբդինը, այն երկար լեռնաշղթան, որ ձգվում է Տիգրիսից դեպի Եդեսիայի մարզը և թեքվում դեպի հյուսիս, կազմելով Ամիդի դիմաց գտնվող Ախսումայի զանգվածը՝ այսօրվա Կարակա-դաղը։ Միջին մասը, որտեղ գտնվում է Մարդին քաղաքը, կոչվում էր նաև Իզալա։ Մարդինի մոտ է գտնվում Բնաբեղը՝* κάστρον Βαναβήλων, *հայկական Արշակունիների դղյակ-ամրոցը, և Տիգրանի նշանավոր մայրաքաղաք Տիգրանակերտը, Թել-Արմենի տեղամասում[2]։ Մեծ Ծոփքը և Արզանենեն տարածվում էին մինչև Կաշիարի շղթան։ Կաշիարի անունը իր բնորոշ վերջավորությամբ պատկանում է Նաիրի, Ուրուատ-րի, Խուր-րի և այլն խմբին ու հիմնականում կազմում էր լեռնային գոտու այն մասը, որը բաժանում էր Ասորեստանը Ուրարտուից և նրանց տենչանքի առարկան էր։*

---

[1] *Մեհլի-Նարն ունի ժողովրդական ստուգաբանություն (արու ուղտ), որ գալիս է հաճախակի գործածվող Դևելու բառից։*

[2] *Տիգրանի մայրաքաղաքի նույնացումը Մայաֆարկինի հետ առայժմ վիճաբանության առարկա է հանդիսանում, հակառակ Լեհման-Հաուպտի կարծիքի։*

Կաշիարիի փեշերին կար Թեմաննա անունով մի իշխանություն, որի կենտրոնը Նիսիբինն էր։ Ադադնիրարին վեց արշավանք է ձեռնարկում նրա դեմ և վերջ ի վերջո ջախջախում նրա դիմադրությունը[1]։

Թուկուլթի-Նինուրտա II-ը (890—884) ռազմական գործողություններ է ձեռնարկում Կաշիարիի կողերին ընկած փոքր պետությունների դեմ, մանավանդ Նաիրիի դեմ՝ Թուշխա կամ Թուշխան շրջանի Կուրխ տեղամասում, Տիգրիսի ափին, Ամիդից քիչ հեռավորության վրա, ինչպես նաև արամեական մի ցեղի առաջնորդ Ամմաբաալի՝ Զամանիի որդու դեմ, որն իշխում էր Ամիդում։ Այդ ժամանակից սկսած Ամիդի մարզը կոչվում է Բիթ-Զամանի[2]։

Ադադնիրարիի և նրա հաջորդի հարձակման ենթարկված երկրների շարքում նշվում են նաև Մուշկիի լեռները, Շուպրին և նույնիսկ Ալզին։ Այստեղ խոսքը վերաբերում է լուրջ հետևանքներ չունեցած ասպատակությունների։ Ապահովված է եղել կարծես միայն Կումանիի, Կուտմուխիի և Թեմաննայի նվաճումը։

Աշուրնասիրպալ II-ը (883—859) շարունակում է նվաճման քաղաքականությունը[3]։ Հայտնի են նրա չորս արշավանքները՝ 883, 882, 879 և 866 թթ.։ Նա սկսում է Զաբի մարզից և գրավում Կիրրուրին, հավանաբար՝ ներկա Հերիրը, Զաբի ոլորանում կամ եռանկյունիում, Ռովանդուզի գծի վրա։ Նրան հարկատու է դարձնում և այնտեղ նշանակում է zabil-kuduri[4]. դա մի պաշտոնյա է, որին հանձնարարվում է հսկել հարկի կանոնավոր վճարմանը։ Ասորեստանի թագավորների արշավանքների ընթացքում հաճախ որոշ երկրներ, իրենց զգալով վտանգի ենթակա, հանձն էին առնում հարկ վճարել, առանց տրամադիր լինելու հարգել իրենց խոստումը։ Նրանց վճարել ստիպելու համար դիմում էին բռնության, զենքի։ Բայց այն դեպքում, երբ թագավորը zabil-kuduri էր թողնում այդ երկրներում, դա նշանակում էր, որ այդ երկիրը համարյա հպատակվել է, նա պահպանում էր իր ինքնուրույնությունը, բայց տարեկան հարկ վճարելու պարտավորությունը նրան վասալական կախման մեջ էր դնում։ Հետևյալ քայլը լինելու էր նրա միակցումը՝ անեքսիան, իսկ այդ դեպքում տեղական իշխա-

---

[1] **A. T. Olmstead**, History of Assyria, էջ 755 և շար.։

[2] Թուկուլթի-Նինուրտայի Տարեգրությունները (հ. 2), հրատարակված Շեյլի կողմից, Bibliothèque de l'Ecole des Hautes Etudes, 1911, շատ վնասված են։ Բիթ-Զամանին նըշանակված է Notitia Dignitatum-ի մեջ Thila Zamana և Յոշուա Սյունակյացի մոտ՝ Tel Zema։ Հմմտ. **E. Honigmann**, Die Ostgrenze des Byzantinischen Reiches.

[3] Ավելի լավ տեղեկություններ կան Աշուրնասիրպալ II-ի արշավանքների մասին, շընորհիվ նրա տարեգրությունների. հրապարակված է **F. E. Peiser**-ի կողմից, **E. Schrader**, Keilinschriftliche Bibliothek-ի մեջ, I, էջ 51—128, 1889 և **E. Budge** and **King**-ի կողմից՝ The Annals of the Kings of Assyria, I, էջ 254—387, 1902։

[4] Տարեգրություն, այսն. I, 56։

նության և zabil-kuduri-ի փոխարեն նշանակվում էր կուսակալ՝ bel pahati, šaknu և կամ՝ կուսակալի տեղակալ՝ urasu։

Թագավորը Կիրրուրիից անցնում է Խաբխի, գրավում նրա ուժ քաղաքները, ներառյալ Նաշտունը, երկրի ղեկավարին գերի է վերցնում և դատապարտում դաժան մահվան։ Խաբխին նույնպես ստանում է zabil-kuduri[1]։ Ուժ տեղամասերից և ոչ մեկը չի որոշվել, դժվար է ասել, թե արդյոք խոսքը նույն այն երկրի՞ մասին է, որը գտնվում էր Կումանիի մոտերքում, թե այն երկրի, որ հետագայում երևան է գալիս Մուսասիր անունով։

Կիրրուրիում եղած ժամանակ թագավորը հարկ է գանձում Խուբուշկիայից և Գիլզանից, որոնք, անշուշտ, այդ միջոցով ուզում էին խուսափել կոտորածի վտանգից։ Հետևյալ ամիսներին Աշուրնասիրպալը երևան է գալիս Նիպուրի և Պասատայի լեռներում ու գրավում հետևյալ քաղաքները. Ատկուն, Ուշխու, Պիլազի և 20 գյուղ։ Նիպուրը՝ դա Ջուդին է, իսկ Պասատան հիշեցնում է հայկական Պաշատը Արևելյան Տիգրիսի ակունքում[2], Ուշխուն ժամանակակից Շախն է և Ջուդիի ստորոտում, Ջեզիրեթ-իբն-Օմար քաղաքից փոքր հեռավորության վրա։ Ուրեմն, դա Կումանիի հյուսիսում գտնվող մարզն է, որին Ասորեստանի թագավորը ստիպում է հարկ վճարել և որտեղ նշանակում է kuduru կամ zabil-kuduri[3]։

Թագավորն անցնում է Տիգրիսը և մտնում Կումուխի։ Մուշկին և Կումուխին հարկ են տալիս՝ բրոնզ, անասուն, գինի։ Արշավանքն ընդհատվում է Բիթ-Հադիպեյում բռնկված ապստամբության հետևանքով։

882 թվականի արշավանքի նպատակն էր Կաշիարիի մարզի նվաճումը։ Վաղուց ի վեր Կաշիարիի հյուսիսում հաստատված ասորական մի գաղութ այժմ ապստամբել էր։ Աշուրնասիրպալը գնում է ապստամբությունը ճնշելու։ Տիգրիսն անցնելուց հետո նա հասնում է Սուպնատի ափը։ Այս գետի մասին երկար ժամանակ սխալ կարծիք է եղել, նրան իզուր շփոթում էին Ջիբենե-սուի հետ։ Վերջապես պարզվեց, որ խոսքը վերաբերում էր Սուֆան գետին, որը թափվում է Տիգրիս՝ Արևելյան Խաբուրի գետաբերանի դիմաց[4]։

---

[1] Տարեգրություն, այսն. I, 57։

[2] Պաշատը հիշատակված է սուրբ Հռիփսիմեի պատմության մեջ, Մովսես Խորենացու Լրիվ գործերում, 1865 թ., էջ 301։ Պետք է կարդալ Պաշատ և ոչ Պաղատ։ Դա այն լեռն է, որ այժմ դեռևս կոչվում է Բեշել-դաղ, հայկական Հոգվոց վանքի մոտ։

[3] Տարեգրություն, I, 73։

[4] W. Belck, Beiträge zur altere Geographie und Geschichte, II, էջ 66 (1901). Նույնպես Verhandlung d. Berl. Anthropologischen Gesellschaft, 1900, էջ 449։ Հավանաբար, այստեղ պետք է տեղադրել Σαφάν բնակավայրը, ուր Տիգրանի կին Կլեոպատրան տեղավորեց, ըստ Պլուտարքոսի (Lucullus, 22), հռետոր Ամփիկրատեսին։ Markwart, Südarmenien und die Tigrisquellen, էջ 448։

Իսալա երկիրը, նույն ինքն Իդալան, զգուշություն ցուցաբերեց՝ թագավորին հարկ ուղարկելով։ Աշուրնասիրպալն անցավ Կաշիարին, բռնեց ապստամբ առաջնորդին իր քաղաքում և նրան մորթել տվեց։ Նա անցավ Նիրբու երկրով և կանգ առավ Թուշխանում։ Այստեղ նա կառուցում է պալատ և քարակոթողի վրա փորագրել տալիս Նաիրիում կատարած իր գործերը։ Այդպես է անվանում նա Թուշխանի մարզը։

Հարևան երկրների թագավորները՝ Զամանիի որդի Ամմաբա՚ալը, Անխիտի Շուպրեցին, Թուբուսիի որդի Լապտուրին՝ Նիրդուն և Ուրումե ša bitani երկրներից, ինչպես և Նաիրիի թագավորները Թուշխանում հարկ են բերում տիրակալին։ Թագավորը Նաիրի երկրում նշանակում է zabil-kuduri[1]։ Թագավորների անունների ներքո հիշատակված բոլոր այս երկրները չէ, որ պիտի վերագրվեն Նաիրիին, այլ միայն Թուշխանի մարզը, որտեղ իշխում էին ցեղերի բազմաթիվ առաջնորդներ։ Սա նրա միակ նվաճած վայրն էր, ուր նշանակվեց zabil-kuduri։ Զամանին, Նիրդունը, Շուպրին, Ուրումին և Նիրբուն մնացին անվնաս[2]։

Աշուրնասիրպալը 879 թվականին նորից գալիս է Նաիրի, Թուշխանի ճանապարհին նա նվաճում է Մատիատի քաղաքը, այսօրվա Մադիատը, և այնտեղ urasu՝ փոխ-կուսակալ է նշանակում[3]։ Սուրա քաղաքը, բյուզանդական Τζαύρας, ժամանակակից Սորը, Մադիատի արևմուտքում, հարկ է ուղարկում նրան։ Ապա նա հարձակվում է Մադարա քաղաքի վրա, որը պատկանում էր Նիրդուն երկրի առաջնորդ Լապտուրիին, նրան հարկ է պարտադրում և urasu նշանակում[4]։ Ուրեմն, Կիբակիից (ներկայիս Կուվախը՝ Տիգրիսի ափին) Թուշխան ճանապարհին ասորեստանյան նվաճողը իր տիրապետությանն է կցում երկու մարզեր։ Սուրան և Խաբխի երկիրը նրա բարկությունից խուսափում են։

Թուշխանից նա անցնում է Տիգրիսը, ամբողջ գիշերը շարժվում և հասնում է Պիտուրա՝ Դիր(ր)ա երկրի բերդը, ավերակի է վերածում այն, Մատնի լեռան նեղ անցքում գրավում է Կուկունու քաղաքը, գրավում է նաև Դիրայի 50 քաղաքներ։ Ապա մեկնում է Արբակի՝ Խաբխի ša bitani-ի քաղաքը[5]։ Սարսափահար բնակիչները փախչում են Մատնի լեռը։

---

[1] Տարեգրություն, II, 15։

[2] Վերադարձի ճանապարհին թագավորը հարձակվում է Նիրբու երկրի վրա Կաշիարի լեռներում, գրավում է նրա Իշպիլիբրիա քաղաքը, ապա Բուլիանիի կիրճով հասնում է Խաբխի երկիրը և ուղղվում դեպի Արդուպու քաղաքը։ Խաբխի երկրի բնակավայրից մեկը՝ Իշպիլիբրիան, կարող է համապատասխանել բյուզանդական ամրոց Ἰσφρίος-ին, իսկ Արդուպուն հավանաբար Ἀρζάμων-ն է (Արդումպու-ից), Թելլը, արդի Խարզեմը։

[3] Տարեգրություն, II, 90։

[4] Տարեգրություն, II, 100։

[5] Ša bitani — Ուրումե ša bitani, Աշուրնասիրպալ, Տարեգրություն II, 13, Խաբխի ša bitani, նույնը II, 112, Նիրբի ša bitani, նույնը III, 122, նաև Զամուա ša bitani, Բալա-

Դիրա երկիրը գտնվում է Տիգրիսի ափին, Թուշխանի դիմաց։ Պիտուրան և Մատնին գտնվում են Սիլվանի մարզում։ Արբակին, անշուշտ, բյուզանդական ’Αριβάχων ամրոցն է, որի տեղը հայտնի չէ, բայց նա հեռու չէ ’Αφύμων-ից, արդի Ֆումից[1]։ Նվաճողին չի հաջողվում այդ երկրները հպատակեցնել։ Նա վերադառնում է Զամանի, որի թագավորն սպանվել էր իր ազնվականների կողմից, և նրա տեղը դնում է զոհվածի եղբորը։ Գուցե, որպես փոխհատուցում նոր թագավորից վերցնում է բերդաքաղաքներ՝ Սինաբուն և Թիդուն, որտեղ Սալմանասարը ժամանակին Նաիրի երկրի դեմ պահակազոր էր կարգել, սակայն հետագայում արամեական ցեղերը, այսինքն՝ Զամանիի ցեղերը, տիրացել էին դրանց։

866 թվականին Աշուրնասիրպալը վերջին անգամ նորից է երևում Նաիրիում։ Տիգրիսն անցնելուց հետո նա կանգ է առնում Կիպանի երկրում, որ Արևմտյան Տիգրիսի վրա գտնվող Հիսն-Քեյֆա մարզն է, Խուզիրինա քաղաքում։ Սալլա երկրի Իտտի իշխանը, Աշշա երկրի Գիրադադին և Կումմուխի երկրի Կատազիլուն շտապում են հարկ ուղարկելով շահել Ասորեստանի թագավորի բարյացակամությունը։

Արշավանքի նպատակը Եփրատի մարզն էր։ Այնտեղից նա անցնում է Կուբբու երկրով և հասնում Աշշա և Խաբխի, «Խաթթի երկրի դիմաց»։ Կումմուխին Կոմմագենեն է, որի թագավորն իր երկիրը վտանգից ազատեց ինքնակամ հարկի մատուցմամբ։ Իրականում ասուրական արքան հասնում է մինչև Եփրատ, մեկ կողմ է թողնում Կումմուխին և ուղղվում դեպի հյուսիս։ Կուբբուն Գիբբոսն է, Կլաուդիայի սահմանակից երկիրը, որի անունը ճանաչելի է Կոպ-դաղ անվան տակ (թուրքացված՝ Կոպլի-դաղ)[2]։

Աշշան հիշեցնում է Իշուան կամ Իշուվան և, համենայն դեպս, գտնվում էր Եփրատի ոլորանում, Մելիտենեի դիմաց «Խաթթի երկրում»։ Խաբխի

---

վարի արձանագրություն, սյուն II, 2։ Իրական իմաստը պարզ չէ, տառացիորեն՝ «տներ»․ կարծում են, որ աշխարհագրական տերմիններում սա նշանակում է «մեր տուն» երկիր, այսինքն՝ թագավորապատկան տեղ։ Դա Ենսենի և Շտրեկի կարծիքն է, ըստ Klauber-ի, Assyrisches Beamtentum, էջ 33։ Սա չի հարմարվում։

[1] Արբակին բոլորովին չի կարող լինել Բոհտանի Մոկսի մարզի Ործախը, ինչպես ենթադրում է Ֆորերը, Provinzeinteilung, էջ 27։ Դա շատ հեռու է, մինչդեռ տեքստի համաձայն Արբակին Մատնի լեռան մոտ է, որը գտնվում է Բիտուրայի մոտ։ Թագավորը Արբակից վերադառնում է Ամիդի մարզի Զամանիի դեմ, մի փաստ, որը ցույց է տալիս, որ Արբակին Ամիդից հեռու չէր։

[2] Միքայել Ասորին (հրատ․ Chabot-ի, III, էջ 163) ճանաչում է Գուբբոս և Կլաուդիա, որի մեկ մասը պատկանում էր հայ իշխան Ֆիլարետին։ Նա նշում է նաև Կլաուդիայի լեռներում Հազուրին գյուղը, որի անունը մեր տեքստի նույն Խուզիրինան է և հավանաբար նշանակում է «խնձորուտ»։

*անունն է կրում ևս մի երկիր, գուցե, Կուբբուի և Աշշայի միջև։ Այդ երկրները տրամադիր չէին խոնարհվելու նվաճողի առջև, որը կործանեց նրանց 150 քաղաքները և մտավ Դիրրիա կամ Դիրա երկիրը, անցնելով Ամադանի լեռան նեղ անցքով։ Նա կրակի և արյան է մատնում Ամադանի և Արկանիա լեռների միջև գտնվող քաղաքները, ինչպես նաև Մալլանու երկիրը Արկանիա լեռներում։ Զամբա երկիրն արժանացավ նույն ճակատագրին։ Թագավորն անցավ Ծուա գետը և հասավ Տիգրիսի ափերը[1]։*

*Արկանիան, անշուշտ, Արգանան է։ Մալլանուն իր հիշատակը թողել է Բիլան լեռան անվան մեջ, Տիգրիսի ափին, Արգանայի դիմաց։ Ամադանին նույն Մադանին է, որ Թուկուլթի-Նինուրտա I-ը (1243—1221) հիշատակում է Ալզիի, Թեդիմզիի, Պուրուլումզիի հետ միասին, Դիրրիան մեզ ծանոթ է նախորդ արշավանքի ժամանակից. սա հիշատակված է որպես Տիգրիսի աջ ափին գտնվող մի երկիր, թեպետ հավանական է, որ նա տարածված լինի Տիգրիսի երկու ափերին։ Բոլոր այս երկրները՝ Ադանի, Մալլանու, Զամբա, Դիրրիա, որ տեքստը կոչում է «ամբողջ Խաբխի», այդ ժամանակից սկսած կազմում են Ասորեստանի մի նահանգը, նվաճողի կողմից նշանակված* šaknu-*ի (կուսակալ) կառավարման ներքո[2]։*

*Ամադանիի կիրճից թագավորը, անցնելով Ծուան, գալիս է Բերզանիշտուն[3] և Դամդամուսա, «Զամանիի որդի Իլլանու իշխանի բերդը»։ Դամդամուսան, որ «թագավորական քաղաք» էր, այսինքն՝ պատկանում էր պետությանը, ժամանակին խլվել էր արքայի հովանավորյալ Զամանի իշխանի կողմից։ Քաղաքը գրոհով գրավվում է. բայց Ամեդա (Ամիդ) մայրաքաղաքը դիմադրում է ասորեստանցիների հարձակմանը։ Գազազած թագավորը կանգնեցնում է կտրած գլուխներից բաղկացած բուրգ, որի շուրջը շարում է ցից հանած կենդանի մարդկանց։*

*Թագավորը հեռանում է դեպի Կաշիարի և գրավում է Թուբուսիի որդի Լապտուրիին պատկանող Ուդա քաղաքը։ Ուդան բյուզանդական* Χούδδων-*ն է։ Այս իշխանի երկիրը կոչվում է Նիրդուն, գտնվում էր Մադարայի մարզում, հավանական է՝ բյուզանդական* Ματζάρων-*ն է[4]։*

*Ամփոփելով իր նվաճումները, Աշուրնասիրպալն ասում է, որ կործանել է հետևյալ երկրները. Նաիրի, Խաբխի, Շուբարի, Նիրբե, և իր երկրին*

---

[1] *Ծուան գտնվում է Ամադանի-Մալլանուի, Բարզանիշտունի և Դամդամուսայի միջև, ուրեմն և չի կարելի նույնացնել Տիգրիսի ակունքի հետ, ինչպես որ կարծում է Ֆորերը։*

[2] **Տարեգրություն**, III, *104։*

[3] *Բարսա-Նիշտուն. համմտ. Նիշտուն, Խաբխիի քաղաք Տիգրիսի և Զաբի միջև։*

[4] **Georgii Cyprii**, Descriptio Orbis Romani, *էջ 47.* **Theophylactus Simocatta**, II, *էջ 105* (éd. Bonn) *նշում է Բեիբուդաեսը* Ματζάρων *բերդի մոտ։ Հավանական է, որ Բեիբուդաեսը (Բեթհ-Խուդա) իր մեջ թաքցնում է* Χούδδων *անունը և որ* Ματζάρων-*ը նույն Մադարան է, այժմյան Մազարտան, Մարդինից արևելք, Բնաբեղի մոտ։*

է կցել «Սուպնատի ակունքից մինչև Նիրիբ ša bitani և Կիրրուրիի լեռնանցքից մինչև Գիլզան երկրները»[1]։

Նույն ամփոփումը գտնում ենք նրա չորս արձանագրությունների մեջ, այն տարբերությամբ, որ Նիրիբ ša bitani-ի փոխարեն այնտեղ Ուրա-արտին է դրված[2]։ Ուրեմն, նրա սահմանը Կիրրուրիից տարածվում էր մինչև Գիլզան, այսինքն՝ Հերիրից մինչև Զաբի ակունքները, իսկ արևմուտքից՝ Սուպնատից մինչև Նիրիբ, այսինքն՝ Կաշիարի լեռնաշղթայից մինչև Տիգրիսի ակունքը։ Խաինի քաղաքի վերևում, Զիբենե-սուի երկայնքով տարածված լեռը դեռևս մեր օրերում կոչվում է Նիրիբ-դաղլար։ Այստեղ ասուրական նվաճումը վերաբերում էր Ուրուատրիին կամ Ուրարտուին։

Ամփոփումը ճիշտ է, եթե որպես նվաճված երկրներ նկատի առնվեն նաև այն երկրները, որ Ասորեստանի թագավորին հարկ մուծեցին այդ արշավանքների ընթացքում, ինչպես՝ Գիլզանը, Ուրումեն և ուրիշներ։ Արշավանքների պատմության համաձայն, թագավորը երեք zabil-kuduri է նշանակել Կիրրուրիում, Խաբխիում (Արևելյան) և Ուխուում. երկու urasu՝ Կաշիարի լեռների վրա ընկած Մատիատիում ու Նիրդունում և երկու šaknu՝ Արևմտյան կամ Եփրատյան Խաբխիում, որը Տիգրիսի և Եփրատի միջև Ամիդից հյուսիս գտնվող մի երկիր էր, և Նաիրիում, որի տակ այստեղ պետք է հասկանալ Թուշխանի մարզը, բայց լայն առումով գործածվում է նաև «երկրներ» կամ «թագավորներ» իմաստով. այստեղ նույնպես նշանակվեց մեկ šaknu և մեկ urasu։

Šaknu-ի և urasu-ի նշանակումն ունի պարզորոշ անեքսիայի իմաստ։ Իսկ zabil-kuduri պաշտոնի իմաստը պարզ չէ։ Ընդունված է կարծել, թե նրա նպատակն է եղել հսկել kuduru կոչված հարկերի կանոնավոր հանձնումը։ Բայց թե ինչումն են կայացել այդ հարկերը, պարզ չէ[3]։ Թագավորը հայտարարում է, որ ինքը նվաճած երկրներին հարկադրել է՝ šaknu-

---

[1] **Տարեգրություն**, III, 120—133. նաև Կալախի պարսպի վրայի արձանագրությունը՝ **Budge** and **King**, նշ. աշխ., էջ 179—180։

[2] **Ցլակոթող**, II, 9—15. և «Standard inscription», 6—9։ Նույն սահմանները ցույց են տրված 879 թ. արշավանքի վերջում, առանց թվարկելու չորս երկրները, բայց հայտարարությամբ, որ «Նաիրի ընդարձակ երկիրը գրավել է ամբողջ լայնությամբ և երկարությամբ»։ Նույն այս ամփոփումը կա նաև Իշթարի տաճարի հիմնադրման արձանագրությունների մեջ։ **Budge** and **King**, էջ 163, Նախիրի տաճարում, նույնը, էջ 169, և Կալախի պալատում, նույնը, էջ 174—175։

**Կուրխի մոնոլիթը**, որ պատմում է 879 թ. արշավանքի մասին, համառոտակի թվարկում է ավերած երկրները՝ Նիրդուն, Լուլութա, Դիրրա, Ազգունու, Ուլլիբա, Արբակի ու Նիրբե և ավելացնում է, որ šaknu է նշանակվել Նաիրիում, 49—51, **Budge** and **King**, էջ 240—241։

[3] **Forrer**, Die Provinzeinteilung, էջ 6, **E. Klauber**-ը, Assyrisches Beamtentum, այս հարցը չի շոշափել։

e, ur duti, upušu, kuduru[1]։ *Չի կարելի ասել, որ դրանք սովորական արտահայտություններ են, կամ որ այստեղ գործածված են պարտավորությունների հատուկ տերմիններ, որոնցով զանազանվում են դրանցով համապատասխանաբար հարկադրված տարբեր երկրները*[2]։ *Համենայն դեպըս, Աշուրնասիրպալին հաջողվեց իր իշխանությունը հաստատել ամբողջ լեռնային գոտում՝* huršani kališunu-*ում*[3], *որի տակ պետք է հասկանալ Կաշիարի—Նիպուր և հայկական Տավրոս գծի վրա եղած երկրները։ Սակայն այստեղ խոսքը վերջնական նվաճման մասին չէ։ Սա ավելի շուտ ուժերի անօգուտ մի ցուցադրում էր, ինչպես Թիգլաթպալասար* I-*ի ժամանակ։ Հաղթող թագավորը դեռ նախքան մեռնելը ինքը տեսնելու էր ապստամբությունն այն երկրների, որոնց նա կարծում էր, թե հարկադրել է «ընկնել Աշշուրի ոտքերը»։*

*Նրա հաջորդը՝ Սալմանասար* III-*ը (859—824), դիմում է զենքի՝ կորցրած հողերը նորից նվաճելու համար։*

## 1. ՍԱԼՄԱՆԱՍԱՐ ԵՎ ԱՐԱՄԵ

*Սալմանասարը հենց որ ստանձնեց իշխանությունը, արշավեց Ուրարտուի դեմ։ Դա նախօրոք հայտնի Ուրուատրին է, որն Ուրարտու դառնալով՝ այսուհետև ասորեստանցիների համար նշանակելու է Հայաստան։*

*Սալմանասարի հարձակումը շատ անակնկալ էր, որովհետև նրա հայր Աշուրնասիրպալը Ուրարտուի հետ ոչ մի ընդհարում չէր ունեցել և նրան հարգել էր նույնիսկ այն դեպքում, երբ ռազմական գործողությունների ժամանակ այդ երկրի սահմաններում գործելու համար առիթ էր ներկայացել։*

*Գուցե այդ ժամանակ Ուրարտուի սպասողական քաղաքականության հետևանքո՞վ էր, որ Ասորեստանը հանգիստ էր թողնում Ուրարտուին, մանավանդ որ վերջինն զգուշանում էր խառնվել Ասորեստանի գործերին՝ նրա արշավանքների ընթացքում։ Սալմանասարի ագրեսիան արդյոք չի՞ ապացուցում, որ այդ ուղղությամբ փոփոխություն էր տեղի ունեցել։*

*Ուրարտուն չէր կարող երկար ժամանակ մնալ անտարբեր հանդիսատեսի դերում, երբ ասուրական զենքը ավերում էր իր և Ասորեստանի միջև ընկած փոքր պետությունները, որոնք համակրում էին Ուրարտուին և՛ ցեղակցության, և՛ քաղաքական շահերի պատճառով։ Արդեն Աշուրնասիր-*

---

1 Տարեգրություն, III, *125. նաև* Մոնոլիթ (rev.), *51։*

2 *Օրինակ՝* šaknute *«կուսակալներ» միացված երկրների համար.* ardutu *«ստրկություն, վասալություն» հարկատու երկրների համար.* kuduru *պարտավորություններ* zabil-kuduri-*ին հպատակված երկրների համար։*

3 Տարեգրություն, III, *117։*

պալի վերջին տարիներում, կարծես, Ուրարտուն ժագնապի նշաններ էր ցույց տալիս Ասորեստանի գործունեության առթիվ։ Ասուրական վավերագրերն այդ թագավորի վերջին յոթ տարիների մասին լռություն են պահպանում։ Ըստ երևույթին, բախտը նրան դավաճանել էր։ Այն ժողովուրդները, որոնց նա, իր կարծիքով, զսպել էր, ոտքի էին ելել զենքով պաշտպանելու իրենց անկախությունը։ Ուրարտուի սահմանակից պետությունները նույնպես վերջինները չէին, որ ապստամբելու էին Ասորեստանի դեմ։ Ուրարտուն պատրաստ էր նրանց քաջալերելու և նույնիսկ օգնելու։ Սալմանասարը պետք է որ շատ դժգոհ եղած լիներ Ուրարտուից, եթե առաջինը թշնամություններ սկսեց նրա դեմ։

Համենայն դեպս, Ասորեստանի նկատմամբ Ուրարտուի բռնած դիրքը կտրուկ ու պարզ էր։ Դա դիրքավորումն էր մի հակառակորդի, որը մաքառում էր իր երկու կողմերում գտնվող պետությունների վրա իր քաղաքական ազդեցությունը տարածելու համար. պետություններ, որոնք գտնվում էին Եփրատի և երկու Զաբերի վերին հոսանքի, ինչպես նաև նրանց միջև գտնվող ընդարձակ տերիտորիայի վրա։

Սալմանասարի գահակալության ժամանակ ստեղծված դրությունը նպաստավոր չէր Ասորեստանի համար։ Եփրատի երկայնքով մեկ ընկած երկրները՝ Մելիտենեից սկսած մինչև Դամասկոս, ապստամբել էին։ Մելիդի (Մելիտենե) թագավոր Լալլին, Կումմուխի (Կոմմագենե) թագավորներ Կատազիլուն և նրա հաջորդ Կունդաշպին, Կարկեմիշ-Գարգամիշի (կամ Ջերաբլուս) Սանգարը, Թիլ-Բարսիպի (Սաջուրի գետաբերանում) թագավոր Ադինիի որդի Ախունին, Սամ՚ալի (Զինջիրլու) Խանին, Գուրգումի (Մարաշ) Մուտալլուն և նրա հաջորդ Կալպարուդան, Ագուսիի որդի Արամուն՝ Արպադի (Թել-Ռֆադ) թագավոր, Գաբբարի որդի Խայանին՝ Ամանոսի փեշերից, Խաթթինայի (Հալեպից արևմուտք) Սապալուլմին և նրա հաջորդ Կալպարուդուն, Ամատի (Խամաթ) Իրխուլին, Դամասկոսի Ադադ-էզերը իր տասը դաշնակիցներով, շրջակա թագավորները, վերջապես, ավելի քան 20 պետությունների առաջնորդներ. սրանց հնազանդեցնելու համար պահանջվում էին հսկայական ջանքեր։

Ինչպես երևում է, Աշուրնասիրպալ թագավորը, չնայած իր ձեռնարկած 28 ճակատամարտերին, չէր կարողացել ապահովել ասուրական տիրապետությունը։

Եփրատից այն կողմ Թաբալի 24 թագավորները և Կիլիկիայի թագավորները նույնպես ասուրական լուծը չէին տանում։ Սալմանասարն արևելքում, իրանական սարահարթում պետք է դիմագրավեր 27 թագավորների առաջխաղացմանը։ Նա մի քանի ընդհարումներ է ունենում Բաբելոնի հետ։ Վերջապես, հյուսիսում անհնազանդ լեռնցիները միշտ պատրաստ էին Ասորեստանին հանկարծակիի բերելու։

Սալմանասարը դժվարությունների առջև չընկրկեց։ Նա իր ամբողջ ուժերը գործադրեց Ասորեստանի նորածնունդ իմպերիալիզմին հաղթանակ պարգևելու համար։ Երեսուն տարի շարունակ նա զենքը ցած չդրեց և կռվեց մեկ այս, մեկ այն ճակատում։ Եփրատյան արդյունաբերական և առևտրական պետություններն իրենց հարստությամբ ավելի հետաքրքրություն էին ներկայացնում, քան մյուսները։ Դրա համար էլ Ասորեստանի թագավորն ավելի շատ ուշադրություն էր դարձնում նրանց վրա։ Քանից ավելի անգամ նա անցավ Եփրատը։ Սակայն քաղաքական տեսակետով, պետության ապահովության շահերից ելնելով, Սալմանասարը պակաս կարևորություն չէր տալիս նաև հյուսիսային ճակատին, որը և մեզ հետաքրքրողն է։

Բրոնզե խորաքանդակներում, որոնցով Սալմանասարը զարդարել էր իր պալատի դռները և որոնք ներկայացնում էին նրա արշավանքների դրվագները, մեծ տեղ են զբաղեցնում ուրարտական ճակատում կատարած նրա սխրագործությունները։ Առաջնակարգ սկզբնաղբյուրներ հանդիսացող այդ խորաքանդակների մասին կխոսենք հետագայում։

Առաջին հերթին մենք այստեղ տեսնում ենք արշավանքների պատմությունն այնպես, ինչպես որ դա ներկայացվում է պաշտոնական վավերագրերում[1]։

Իր գահակալության առաջին տարին Սալմանասարը գործողություններ ձեռնարկեց Ուրարտուի Սուգունի(ա) բերդաքաղաքի դեմ։ Նա գտնվում էր Դիալայի մարզում և գործում Արիդու քաղաքի դեմ, երբ որոշեց անցնել այն լեռների միջով, «որոնց գագաթները ցցվել էին դեպի երկինք ինչպես երկաթյա սրի ծայր»։ Այս ճանապարհով նա ուզում էր հասնել Խուբուշկիա քաղաքը։

«Ես հրդեհեցի Խուբուշկիա քաղաքը շրջակա հարյուր քաղաքների հետ միասին,— պատմում է թագավորը,— Նաիրիի թագավոր Կակիան և նրա զորքերի մնացորդը իմ զենքերի դիմաց սարսափահար եղան և փախան բարձր լեռները։ Ես նրանց հետապնդեցի լեռներում։ Լեռների միջև ծանր մարտեր մղեցի և նրանց պարտության մատնեցի։ Մարտակառքեր, զորքեր, ձիեր, լծվացքներ՝ այս բոլորը ցած իջեցրի լեռներից։ Աշշուրի մեծու-

[1] Սալմանասարի արձանագրությունները կրող հուշարձաններն են. Կուրխի (Թուշխանի) մոնոլիթը, վերծանված և թարգմանված Պայզերի կողմից։ Սև մարմարյա կոթողը՝ Հ. Վինկլերի կողմից, երկուսն էլ Keilinschriftliche Bibliothek-ում, 1889։ Ցլակոթողներ, I և II, թարգմանված Ֆ. Դելիչի կողմից. Die Palasttore Salmanasar III. von Balawat, **A. Billerbeck** und **F. Delitzsch**, էջ 144—151, առանձին տիրաժով՝ Beiträge zur Assyriologie und semitischen Sprachwissenschaft, **F. Delitzsch** und **P. Haupt**, VII, 1։ Երկու բրոնզե դռներ՝ բարձրաքանդակով և արձանագրություններով, **Billerbeck** und **Delitzsch**, նշ. աշխ., **A. Amiaux** et **V. Scheil**, Les inscriptions de Salmanasar (II) III, roi d'Assyrie, 1890։

թյան երկյուղը նրանց վհատեցրեց. նրանք իջան լեռներից և ընկան իմ ոտքերը։ Ես նրանց հարկադրեցի biltu u madattu, հարկ բնամթերքով և դրամով։

«Խուբուշկիայից մեկնեցի և հասա ուրարտացի Արամեի բերդաքաղաք Սուգունիա։ Գրոհեցի և գրավեցի քաղաքը։ Շատ ռազմիկներ սպանեցի և ավար վերցրի։ Քաղաքի դիմաց կտրած գլուխներից մի սյուն կանգնեցրի։ Շրջակա տասնչորս քաղաքներ կրակի ճարակ դարձրի։

«Սուգունիայից մեկնեցի և իջա Նաիրի երկրի ծովը։ Զենքերս լվացի ծովի մեջ, աստվածներին զոհեր մատուցեցի։ Իմ անձի պատկերը պատրաստեցի և արձանագրեցի Աշշուրի՝ մեծ տիրակալի, իմ տիրակալի և իմ իշխանության հզորության փառքը։ Ես այն կանգնեցրի ծովին մոտ։

«Ծովից վերադառնալիս հարկ ստացա Գիլզան երկրի Ասուից՝ ձիեր, ոչխարներ, գինի, երկսապատավոր երկու ուղտ. դրանք բերեցի իմ քաղաք Աշշուր»[1]։

Խուբուշկիան այն երկրի կենտրոնն է, որը կոչվում է Նաիրի։ Այդ երկիրը, ուրեմն, պահպանել է Ուրարտուի հին անունը անշուշտ այն պատճառով, որ նրա մասն էր կազմում, այսինքն՝ Հայկական լեռնաշխարհի բազմաթիվ երկրներից էր և հետագայում կոչվելու էր իր մայրաքաղաքի անունով՝ Խուբուշկիա կամ Խուբուշկու։

Այս երկիրն ընկած էր Մեծ Զաբի վրա, այսօրվա Ջուլամերկի շրջանում։ Հայերն այդ մարզը կոչում են Փոքր Աղբակ, ի հակադրություն Մեծ Աղբակի, որը գտնվում է Բաշկալայի հարևան մարզում։ Շատ հնարավոր է, որ Խուբուշկիան նախկին Ջուլամերկի անունը լինի, հայ հին հեղինակների Ջ(ու)ղմարը[2]։

Մինչև 1914 թվականի պատերազմը այդ մարզի լեռնային մասում պատսպարվում էին հինգ նեստորական ցեղեր, որոնք օգտվում էին մի տեսակ ինքնավարությունից։ Դրանք են՝ Ջելուն, Բազ, Թում, Տիար, Դեզ։ Սալմանասարը կարո՞ղ էր երևակայել, որ կգար մի օր, երբ նրա վերջին զավակները ապաստան պիտի գտնեին այն փոքրիկ երկրում, որ ինքն անողոք կերպով ավերում էր։

828 թվականին Սալմանասարը երկու անգամ վերադառնում է Խուբուշկիա՝ հարկ ստանալու համար։ Այդ ժամանակ երկրի թագավորը կոչվում էր Դատա կամ Դատանա։

Սուգունիա բնակավայրի տեղը հայտնի չէ։ Անշուշտ, դա Ուրարտուի սահմանների վրա գտնված պահակակետերից մեկն է, հավանաբար՝ Մեծ Աղբակի մուտքի մոտ։ Երկու Աղբակները միմյանցից բաժանված են մի

---

[1] Մոռոլիք, I, *14—29*։ Քարակոթող, *22—26*։

[2] Թովմա Արծրունի, *Պատմություն*, I, *գլ. 8*. III, *2, 13 և 14*։

*լեռնաշղթայով, որ բարձրանում է Զուլամերկի վերևում, Կարա-սու գետի երկայնքով, որը թափվում է Զաբի մեջ՝ աջ կողմից։ Այդ լեռնաշղթայում կա մի անցք, որի երկու կողմերում՝ մուտքի և ելքի մոտերքում, գտնվում են երկու գյուղ. մեկը կոչվում է Սիկիանիս, մյուսը՝ Սուկան[1]։ Այնտեղ Սուգունիայի հիշատակը տեսնելը գայթակղեցուցիչ է։ Զաբի հովտի մուտքը փակելու համար դրությունը նպաստավոր է։ Այնտեղից մինչև Վանա լիճը հազիվ հարյուր կիլոմետր է։ Ասորեստանի թագավորը հասել է լճին խոշաբի գետաբերանի մոտ։ Սալմանասարի քարակոթողը կանգնեցվել է, հավանաբար, այն բլրի վրա, որն այժմ ողողված է լճի ջրերով։*

*Երկրորդ արշավանքն Ուրարտուի դեմ տեղի ունեցավ երկու տարի անց, 857 թվականին[2]։ Դուզու ամսի 13-ին, հուլիսի սկզբին, Սալմանասարը հարձակվեց Եփրատի ափին գտնվող Թիլ-Բարսիպի թագավորի վրա։ Նա գրավեց այդ քաղաքը և անունը դարձրեց Կար-Շուլմանու-Աշարիդ (իր անունով)։*

---

[1] **Маевский В. Т.** Военно-статистическое описание Ванского и Витлиского вилаетов; Отдел приложенний, стр. 56; *տե՛ս նույնպես* War Office-*ի կողմից հրատարակված քարտեզը, 1916* (Royal Geographical Society under the Direction of the Geographical Section General Staff, *1916)*։

[2] *Սալմանասարի թագավորության ժամանակագրությունը բավական շփոթ է, և պահանջվում է որոշ ճշգրտում։*

**Մանոլիբը** *«թագավորության սկզբում, առաջին տարին» խոսում է Սալմանասարի երկու արշավանքի մասին, մեկը՝ Արիդիի, Խուբուշկիայի և Սուգունիայի դեմ, մյուսը՝ եփրատյան պետությունների դեմ, և այդ վերջին արշավանքի ժամանակը նշված է աիրուի 13-ին։*

*Հաջորդ տարին, որ թագավորի էպոնիմատի տարին է, մի երկրորդ արշավանք տեղի ունեցավ եփրատյան պետությունների դեմ աիրուի 13-ին։*

**Քառակերողը** *տարբերում է «թագավորության սկիզբը», այսինքն՝ գահակալության տարին, «թագավորության առաջին տարվանից» և առաջին արշավանքը զետեղում է «թագավորության սկզբում», իսկ երկրորդը՝ «թագավորության առաջին տարում»։ Թագավորի էպոնիմատի համար այն հաստատում է թագավորության երկրորդ տարին, որը ճիշտ չէ, որովհետև թագավորները էպոնիմատը միշտ վերապահում էին առաջին տարվան, գահակալության տարվանից հետո։*

**Քառակերողը**, *ուրեմն, սխալ է գործում թագավորության սկիզբը «առաջին տարվանից» բաժանելով, իսկ դա արված է աիրուի 13-ի պատճառով։ Իսկապես, եթե առաջին տարվա երկու արշավանքներից երկրորդը տեղի է ունեցել աիրուի 13-ին, որ տարվա երկրորդ ամիսն է, ապա ուրեմն, առաջին արշավանքը պետք է վերագրել գոնե տարվա առաջին ամսին՝ նիսանին։ Այդ ժամանակ թագավորության սկիզբը կերկարաձգվեր մինչև նախորդ տարին, եթե չընդունենք միայն, որ Սալմանասարի հայրը մեռել է նիսան ամսում, երբ Սալմանասարը կատարեց իր առաջին արշավանքը, մի բան, որ քիչ հավանական է։* **Քառակորողը**, *ուրեմն, մոլորության մեջ է աիրուի 13-ի թվականի պատճառով, որն, անշուշտ, գրչի սխալի հետևանք է։ Գրիչն էլ իր հերթին ազդվել է երկրորդ արշավանքի թվականից, որը կատարվեց եփրատյան նույն երկրների դեմ։*

*Ասենք,* **Քառակորողի** *այդ շփոթը լուրջ չէ, դրանով ժամանակագրությունը չի փոխվում։*

Այդ հաղթանակից հետո է, որ նա ճանապարհ ընկավ դեպի Ուրարտու։ Գուցե կասկածում էր, որ այդ երկիրը Թիլ-Բարսիպի հետ դաշնակից էր։ Ասորեստանի թագավորը հասավ Բիթ-Զամանի՝ Դիարբեքիրի մարզը։ Այնտեղից ճանապարհ բացեց այն անմատչելի լեռների միջով, «որոնց գագաթները բարձրանում էին դեպի երկինք ինչպես երկաթյա սրի ծայր», անցկացնել տվեց մարտակառքերն ու զորքերը, իջավ Ինգիտի երկիրը՝ Իշուա երկրում։ «Ինգիտին, իր ամբողջ տարածությամբ, իմ ձեռքն ընկավ, ես թալանեցի նրա քաղաքները, քանդեցի ամեն ինչ և բոցերի ճարակ

---

Սալմանասարի գահակալությունը մտնում է Շարուրնիչիի էպոնիմատը՝ 859 թվականը։ Հաջորդ տարին, 858 թ., Սալմանասարի էպոնիմատն է։

**Քառակորողի** միակ սխալը կայանում է նրանում, որ Արիդիի, Խուբուշկիայի և Սուգունիայի դեմ կատարված արշավանքը տեղափոխել է 860 թվականը։

**Քառակորողը** հետևել է այդ կարգին ու թագավորի իշխանությունը հաշվել 859 թվականից։ **Բալավաթի** արձանագրությունը բաբելոնյան առաջին արշավանքը տեղավորում է Շամաշբելուսուրի, իսկ երկրորդը՝ Բելբանիայի էպոնիմատների տարիներին։

**Քառակորողի** համաձայն, այդ արշավանքները տեղի են ունեցել Սալմանասարի ութերորդ և իններորդ տարիներին։ Շամաշբելուսուրը յոթերորդ, իսկ Բելբանիան Սալմանասարից հաշվելով ութերորդ տարվա էպոնիմն է, առաջին էպոնիմատը 858 թվականին լինելով։ Այստեղից հետևում է, որ ութերորդ և իններորդ տարիները հաշվվում են 859 թվականից և ոչ թե 858 թվականից։

**Քառակորողը** գործել է մեկ այլ, շատ ավելի լուրջ սխալ, նա զանց է առել 21-րդ և 23-րդ տարիների արշավանքները և նրանց տեղը դրել է հաջորդ տարիների արշավանքները, որը երկու տարով առաջ է տանում թագավորության վերջին ինը տարիների իրադարձությունները։

Ավելի պարզություն մտցնելու համար համեմատենք խնդրո առարկա տարիները և արշավանքները ըստ երկու ցուցակների.

| Էպոնիմների ցուցակ | Քառակորող | |
|---|---|---|
| 21-րդ, Թիլլիի դեմ | 21-րդ, Դամասկոսի դեմ | 22-ի համար |
| 22-րդ, Դամասկոսի դեմ | 22-րդ, Թաբալի դեմ | 24-ի համար |
| 23-րդ, Դանաբիի դեմ | 23-րդ, Մելիդի դեմ | 25-ի համար |
| 24-րդ, Թաբալի դեմ | 24-րդ, Նամրիի դեմ | 26-ի համար |
| 25-րդ, Միլիդի դեմ | 25-րդ, Կուեի դեմ | 27-ի համար |
| 26-րդ, Նամրիի դեմ | 26-րդ, Կուեի դեմ | 28-ի համար |
| 27-րդ, Կուեի դեմ | 27-րդ, Ուրարտուի դեմ | 29-ի համար |
| 28-րդ, Կուեի դեմ | 28-րդ, Խաթթինայի դեմ | 30-ի համար |
| 29-րդ, Ուրարտուի դեմ | 29-րդ, Խաբխիի (Կիլխիի) դեմ | 31-ի համար |
| 30-րդ, Ունկիի դեմ | 30-րդ Խուբուշկիայի և Մանայի դեմ | 32-ի համար |
| 31-րդ, Ուլլուբայի դեմ | 31-րդ Խուբուշկիայի և Մուսասիրի դեմ | |
| 32-րդ, Մանայի դեմ | | |

Քարգորոշ կերպով երևում է երկու արշավանքների զանցառման հետևանքով առաջ եկած ժամանակագրական աղճատումը, մեկը՝ Թիլլիի դեմ, մյուսը՝ Դանաբիի դեմ։ Առաջինի տեղը դրված է Դամասկոսի դեմ կատարված արշավանքը, որն սկսվում է հաջորդ տարվանից, 22-րդը առանց արշավանքի է մնում, ինչպես նաև 23-րդ տարին՝ Դանաբիի

դարձրի։ Նրանցից վերցրի ավար, հարստություն, անթիվ բարիքներ։ Ես պատվիրեցի իմ թագավորական անձի մի շատ մեծ պատկեր և այնտեղ արձանագրեցի Աշշուրի՝ մեծ տիրակալի, իմ տիրակալի, և իմ իշխանության հզորության փառքը։ Ես այն կանգնեցրի Սալուրիում՝ Կիրեկիի փեշին։

«Ինզիտի երկրից մեկնեցի, անցա Արսանիաս գետը և մոտեցա Սուխմի

---

դեմ կատարված արշավանքը զանց առած լինելու պատճառով։ Այս երկու պակասը լրացնելու համար առաջ են ձգել հաջորդ տարիների արշավանքները։ Թաբալի արշավանքը 24-րդ տարուց տեղափոխել են 22-րդ տարին, Միլիդի արշավանքը՝ 25-րդ տարուց 23-րդ տարին և այսպես շարունակ, Մանայի արշավանքը՝ վերջինը՝ 32-ից 30-ը։

Այստեղից հետևում է, որ վերջին 31-րդ և 32-րդ տարիները դատարկ են մնացել Քարակոթողում, այդ տարիների արշավանքները վերագրած լինելով 29-րդ և 30-րդ տարիներին։ Այդ դատարկությունը լրացնելու համար Քարակոթողը 31-րդ տարվան վերագրել է մեկ արշավանք՝ Խուբուշկիայի, Մուսասիրի և նույնիսկ Ուրարտուի դեմ, արշավանք, որն էպոնիմների ցուցակում գոյություն չունի և որը, հավանական է, տեղի է ունեցել Մանայի դեմ կատարված արշավանքի տարում, այսինքն՝ 30-րդ տարում։ Քարակոթողը 32-րդ տարվա համար տեղ չի ճարել և այն զանց է առել, հետևաբար, կատարել է վերջին սխալը։ Սալմանասարի երկրորդ էպոնիմատը թագավորության 32-րդ տարուց տեղափոխվել է 31-րդ տարին։

Այդ տարվա համար Սալմանասարը Քարակոթողում ասում է. «Իմ թագավորության 31-րդ տարում ես ինձ երկրորդ անգամ Աշշուրի և Ադադի հովանավորության տակ դրի»։ Ուզում է ասել, որ երկրորդ անգամ նա դարձել է էպոնիմ։

Ըստ էպոնիմների ցուցակի՝ թագավորին երկրորդ էպոնիմատը ընկնում է 31-րդ տարում՝ 858 թ. իր առաջին էպոնիմատից հետո և, հետևաբար, իր թագավորության 32-րդ տարում և ոչ թե 31-րդ։ Քարակոթողը սխալ է ոչ այնքան թագավորության և էպոնիմատի տարիների շփոթից, որքան այն պատճառով, որ 31-րդ տարին դրել է 32-րդի տեղը՝ վերևում հիշված ժամանակագրական խախտման հետևանքով։

Նշենք, որ Ունկիի տեղադրումը (Ամք գյուղը, որը գտնվում է Անտիոքի մոտ, պահպանել է նրա անունը) խաթթինայում է, Անտիոքի մարզում։

Ուլլուբան, այժմյան Խուլպը, համապատասխանում է Խաբխիին։ Դա Խաբխի ša bitani-ն է, զուգե, 'Αχβας, Aqba-ն, պահակակետ սասանյան Պարսկաստանի սահմանի մոտ՝ Բատմանի վրա (տե՛ս Армения в эпоху Юстиниана, էջ 8)։ Սա ապացուցում է, որ Խաբխին գտնվում էր Խուլպի մոտ, Բատմանի մարզում, իսկ նրա Արբակի քաղաքը 'Αριβάχων-ն է և ոչ թե Արվախը, արևելյան Տիգրիսի հովտում։

**Jakob Krall**, Grundriss der altorientalischen Geschichte, էջ 131, 135, ցույց է տվել Սալմանասարի արշավանքները ըստ էպոնիմատների և ըստ թագավորության տարիների, բայց չի նկատել մեր կողմից նշված երկու տարվա խոտորումը՝ սկսած 21-րդ տարվանից։ Ֆորերը նկատել է և իր Zur Chronologie der neuassyrischen Zeit, Mitteilungen der Vorderasiatischen Gesellschaft, 1915, 3 հոդվածում քննության է առել այդ հարցը։ Նրա բավական բարդ և մերինից տարբեր բացատրություններին ծանոթանալուց հետո մենք նախընտրում ենք մեր տեսակետը։

Ֆորերը թագավորի երկու էպոնիմատները տեղադրում է 857 և 827 թթ. և այն կրկնում է Die Provinzeinteilung des assyrischen Reiches, 7-ի մեջ՝ «857 und 827 war Salmanasar III Eponym», որը իրողության հետ հակասության մեջ է, քանի որ նա մեզ պես թագավորությունը հաշվում է 859 թվականից։

երկրին։ Գրավեցի Սուխմիի բերդաքաղաքը՝ Ուաշթալը։ Սուխմին, իր ամբողջ տարածությամբ, կործանեցի, ավերակի վերածեցի և բոցերի ճարակ դարձրի։ Նրանց կառավարչին՝ Սուային, բռնեցի իմ սեփական ձեռքով։

«Դայա-ինիից մեկնեցի և մոտեցա Արզաշկուին՝ Ուրարտացի Արրամուի թագավորական քաղաքին։ Ուրարտացի Արրամուն սարսռաց իմ հզոր զենքերի սարսափից և իմ մարտաթափի ուժից, լքեց իր քաղաքը և բարձրացավ Ադդուրի լեռը։ Նրա հետևից ես մագլցեցի լեռը։ Լեռան վրա ահավոր ճակատամարտ տվի։ Իմ զենքերով տապալեցի նրա մարտիկներից 3400 հոգի։ Նրանց վրա մրրիկ բարձրացրի, ինչպես Ադադը, նրանց արյունով ներկեցի լեռը ինչպես բուրդ։ Գրավեցի նրա ճամբարը՝ նրա մարտակառքերը, նրա ձիավորներին, նրա ձիերը, նրա ջորիները, նրա հորթերը, նրա ունեցվածքը։ Լեռից հարուստ ավար բերի։

«Արրամուն իր կյանքը փրկելու համար բարձրացել էր անմատչելի մի լեռան վրա։ Իմ առնական ամբողջ եռանդով վայրի ցուլի պես ոտնահարեցի նրա երկիրը և նրա քաղաքները ավերակ դարձրի։

«Արզաշկուն իր շրջակա քաղաքների հետ հիասին թալանեցի, քանդեցի և բոցերի մատնեցի։ Նրա դռան առջև գլուխներից կազմված բուրգեր կանգնեցրի, նրա մարդկանցից ոմանց կենդանի-կենդանի բուրգերի մեջ փակեցի, իսկ մյուսներին բուրգերի շուրջը ցցերի վրա շարեցի։

«Արզաշկուից մեկնեցի և մագլցեցի Իրիտիա լեռը։ Իմ թագավորական անձի համար մի մեծ պատկեր պատվիրեցի, այնտեղ արձանագրեցի Աշշուրի, իմ տիրակալի, փառքը և իմ վեհապետության հզորությունը, որ ես գործադրել էի Ուրարտուում, և այն կանգնեցրի Իրիտիա լեռան վրա։

«Իրիտիայից մեկնեցի և մոտեցա Արամալիին, թալանեցի նրա քաղաքները, քարուքանդ արի և բոցերի ճարակ դարձրի։

«Արամալիից մեկնեցի և մոտեցա Զանզիունային... սարսափից նա սարսռաց և ընկավ ոտքերս։ Նրանից ստացա ձիեր, ձիասարքեր, եզներ, ոչխարներ և նրան գթացի...։ Վերադարձիս[1] իջա Նաիրի ծովը, Աշշուրի հզոր զենքերը լվացի ծովում և զոհեր մատուցեցի։ Իմ թագավորական անձի մի մեծ պատկեր պատվիրեցի և այնտեղ արձանագրեցի Աշշուրի, մեծ տիրակալի, իմ տիրակալի, փառքը, և իմ քաջության սխրագործություններն ու իմ բարձր գործերը (և կանգնեցրի ծովի մոտ)։

«Ծովից մեկնեցի և մոտեցա Գիլզան[2] երկրին։ Գիլզանի թագավորը՝ Ասաուն, իր եղբայրների, որդիների հետ դիմավորեց ինձ և իմ թագավորա-

---

[1] Պայզերը կարդում է՝ [ina mitiq girr]ia «Im Fortgang meines Zuges»։ Շեյլը լրացնում է՝ [ina tayarti]ia... «իմ վերադարձին»։

[2] Կարդալ Գիլզան և ոչ թե Գուզան, որն ուրիշ երկիր է՝ Աստվածաշնչի Գոզանը, և գտնվում է Խաբուրի մարզում։

կան անձի ոտքերն ընկավ։ Նրանից ստացա ձիեր, ձիասարքեր, եզներ, ոչխարներ, գինի, յոթ երկսապատանի ուղտ։ Պատվիրեցի իմ թագավորական անձի մի շատ մեծ պատկեր։ Այնտեղ արձանագրեցի Աշշուրի, մեծ տիրակալի, իմ տիրակալի, փառքը, և իմ վեհապետության հզորությունը, որ ես գործադրել էի Նաիրիում, և այն կանգնեցրի նրա քաղաքի մեջտեղը, տաճարի մեջ։

«Ես մեկնեցի Գիլզանից և մոտեցա Շիլաիային՝ Խուբուշկիայի Կակի թագավորի բերդաքաղաքին։ Հարձակվեցի քաղաքի վրա և այն գրավեցի. Նրանից վերցրի 3000 գերի, եզներ, ոչխարներ, ձիեր, մտրուկներ, հորթեր անթիվ անհամար և բերեցի իմ քաղաք Աշշուր։

«Ես մտել էի Անզիտի երկրի լեռնանցքով, իսկ դուրս եկա Կիրրուրի (երկրի) լեռնանցքով, Արբելե քաղաքի վերևում»[1]։

Այս պատմությունը մյուս վավերագրում ամփոփված է հետևյալ ձևով. «Ես մտա Ալզի երկրի լեռնանցքը։ Ալզի, Սուխմի, Դայանի, Թումմե երկրները, Արզաշկունը՝ Ուրարտացի Արամեի թագավորական քաղաքը, Գիլզան, Խուբուշկիա երկրները ես նվաճեցի»[2]։

Այստեղ երևան է գալիս Թումմեն, որը մեզ ծանոթ է Թիգլաթպալասար I-ի արշավանքից, բայց որը բաց է թողնված մանրամասն նկարագրության մեջ։

Սալմանասարը հիմնականում հետևել է Թիգլաթպալասար I-ի ճանապարհացույցին։ Նա մեկնել է Ինզիտիից, որը երկրորդ վավերագիրը Ալզի է կոչում, մի հանգամանք, որն ապացուցում է նրանց նույնությունը։ Դա հայկական Անձիտն է, դասական հեղինակների Անզիտենեն։ Այն տարածվում էր Խարբերդից (Խարպուտ) մինչև Հանին։

Թելլ-Էնզիտ գյուղը՝ Խարբերդի մոտ և Հանիի մոտ գտնվող Դաշտի-Հանզին սույն նույնացման լավագույն ապացույցն են[3], Խանզի(տ)ի այդ դաշտում կա Նիրիբ անունով մի գյուղ, որն ակներևաբար կիրճ, անցք նշանակությունն ունեցող ասուրական բառն է։ Ներկայումս Նիրիբից երկու կիրճ տանում են դեպի Արսանիան, Բիրկալենը և Գյոկ-դերեն։ Դրանք Ինզիտիի կիրճերն են։ Քանի որ պատմությունը չի հիշատակում Բիրկալենի նշանավոր գետնուղին, հավանական է, որ Սալմանասարն անցել է Գյոկ-դերեով[4]։

---

[1] Մոռոլիք, II, *41—66*։

[2] Քարակոթող, *42—44*։

[3] *Դաշտի-ի-Հանզին հիշատակված է զազաների (քրդեր) մի հեքիաթում.* **P. Lerch**, Forschungen über die Kurden und die iranischen Nordchaldäer, I, p. *72, ըստ* **Markwart**-*ի*՝ Südarmenien und die Tigrisquellen, *էջ 70 և շար.*։

[4] *Երկու լեռնանցքները՝ Բիրկալենը կամ Բիլկալենը և Գյոկ-դերեն (կապույտ կիրճ), հիմնականում համապատասխանում են Պրոկոպիոսի* Ἰλλυρίσις-*ին և* Σαφχαί-*ին* (Aed. III,

*Սուխմին առաջին երկիրն է, ուր Թագավորը մտավ Արսանիայի անցքից հետո, որը համապատասխանում է հայկական Բալահովտին՝ «Բալի ձոր», բյուզանդական Բալավիտեններին՝ Պալուի մարզ։ Վերջինը, գուցե, Վաշտալ բերդաքաղաքն է։ Սուխմիի առաջնորդը կոչվում է* bel mahazi, *այսինքն՝ քաղաքագլուխ և ոչ թե թագավոր. հետևաբար, դա անկախ երկիր չէր, այլ Դայա-ինիի մեկ մասն էր։ Այս տերիտորիաները համապատասխանում են հայկական Հաշտեանք գավառին, բյուզանդական հեղինակների Աստիանեներին՝ Գյունեկ ջրերի վրա։ Դա հայրենիքն է Դայա ժողովրդի, որը հետագայում քշվեց դեպի հյուսիս և ապաստան գտավ Օլթիի սարահարթում, որին և իր անունը տվեց հայկական ձևով՝ Տայք, Տաոխի։*

*Թումմեն Յոնջալուի դաշտն է, որտեղ գտնվել է Թիգլաթպալասարի արձանագրությունը, իսկ թուրքերեն այն կոչում են Բուլանիք։*

*Արզաշկուն կամ Արզաշկունը, որը ուրարտական Արզաշկունիի վերարտադրությունն է, չի կարող այլ բան նշանակել, քան Մելազկերտ։ Հայաստանի մեծ քաղաքներն ընդհանրապես ծագումով նախահայկական են։ Մելազկերտը, որի իսկական ձևը Մանազկերտ է, հին քաղաք է, որը բարենպաստ դիրք ունի Արսանիայի ափին, Սիփան, Ալադաղ, Բինգյոլ լեռների միջև մեծ հովտի կենտրոնում, և Վանից, Մուշից, Էրզրումից, Երևանից եկող բոլոր ճանապարհների համար կարևոր կետն է։ Այս հանգամանքը շատ մեծ նշանակություն պիտի ունենար մի մայրաքաղաքի համար, և այդ տեսակետից տվյալ շրջանում ոչ մի այլ վայր չի կարող հավասարվել նրան։*

*Եթե մայրաքաղաքի շրջանը նույնպես կրել է Արզաշկուն անունը, այդ դեպքում կարելի է Արամալին*[1] *տեղադրել մայրաքաղաքի շրջանի արևելքում, հայկական Ապահունիք նահանգի՝ Ապահունի իշխանների կալվածքների արևելյան մասում։ Ջանզիունն այդ ժամանակ կհամապատասխանի Աղիովտին կամ Աղիտովտին՝ Արճեշի շրջանում։*

---

*էջ 250,* Bonn)*։ Առաջինը հայկական դասական հեղինակների Օլոռն է, ասորական հեղինակների Հալուրաս և, գուցե, մեր արձանագրության* Սիլուրին*։ Գյոկ-դերեն կարող է* Σαφχαί*-ի թարգմանությունը լինել, եթե վերջինս բաղկացած է* syau *կամ* sev *(սև, կապույտ) (հմմտ.* šin—sin—*կապույտ՝ սլավերեն և* šin՝ *քրդերեն) և* fhay՝ pahak-*ից (դուռ, անցք).* sa-up-hay= σα-ϕ-χαι:

[1] Ցլակոբող, I, *35-ի մեջ Արզաշկուն անվանված է* matu *(երկիր) և ոչ թե* alu *(քաղաք), ինչպես ուրիշ վավերագրերում։ Արամալին Սարգոնի միևնույն Արմարիլին կամ Արմարիալին է.* **Thureau-Dangin**, Une relation de la huitième campagne, I, *269 և 280։*

*Բալավաթի արձանագրությունը չի հիշատակում ո՛չ Արամալին, ո՛չ Ջանզիունը։ Հաղթանակից հետո թագավորը «Աղաղի նման տակնուվրա արեց* Quti-e *երկիրը և այնտեղից գնաց Գիլզան»։*

*Եթե այստեղ Կուտի տերմինը հասկացվի Ուրարտու, կարիք կզգացվի լրացուցիչ հավաստման։*

Աղզուրի լեռը, որտեղ տեղի ունեցավ մայրաքաղաքի համար մղվող ճակատամարտը, չէր կարող հեռու գտնվել։ Պետք է այն տեղադրել Պատնոցի շրջակայքում, Ալադաղի լեռնաշղթայում։

Իրիտիա կամ Իրտիա լեռը, ինչպես Սարգոնն է կոչում, գտնվում էր Աղզուրիից արևելք, հավանական է Ալադաղում, Եփրատի ակունքի մոտ[1]։

Թիգլաթպալասարը Թումեից վերադարձավ նույն այն ճանապարհով, որով եկել էր։ Սալմանասարը շարունակեց իր արշավը և հասավ Գիլզան երկիրն ու Խուբուշկիա։ Թվում է, թե Գիլզանը Սարգոնի Զարանդա կոչած տերիտորիան է, Սալմասի շրջանը, հայ հեղինակների Զարևանդը։ Հաղթական թագավորը Վանա լճից մինչև իր սահմանները, մինչև Ուրմիա լիճն ընկած երկար երթուղուց իր սխրագործությունների մասին ասելիք չունի, բացի Խուբուշկիային սահմանակից Շիլայա կայանի ավերումից։ Ինչու՞ է նա ընտրել այդ անփառունակ ճանապարհը և առաջացել մինչև Գիլզան, երբ այդ երկիրն հպատակվել էր առաջին արշավանքի ժամանակ։ Գուցե, նրան նեղել է Արամե՞ն, որը քաշվել էր լեռները, բայց անձնատուր չէր եղել։ Նման դեպքը զարմանալի չէր լինի, եթե հիշենք այն զբոսանքը, որ Սալմանասարը կատարեց Տիգրիսի ակունքում երկու անգամ, չհամարձակվելով անցնել Արսանիան։ 853 թվականին նա հասնում է «Տիգրիսի ակունքը, հենց այն վայրը, որտեղից ջրերը բխում էին։ Այնտեղ զոհեր է մատուցում, հպատակեցնում այն քաղաքները, որ դեռ Աշշուրին չէին ենթարկվել, և ստանում Նաիրի երկրի հարկը»[2]։

Մի վավերագիր ավելացնում է, որ թագավորը այնտեղ «ուրախ խրնջույք կազմակերպեց, իր պատկերը կանգնեցրեց և այնտեղ արձանագրեց Աշշուրի փառքը և այն սխրագործությունները, որ ինքն էր կատարել»[3]։

845 թվականին Ասորեստանի թագավորը նորից է վերադառնում «Նաիրի երկիրը»։ Տիգրիսի ակունքում նա իր պատկերը քանդակել է տալիս ժայռի վրա, հենց ջրերի բխման վայրում, և այնտեղ արձանագրել է տալիս իր հզորությունն ու իր քաջագործությունները։ Մի լրացուցիչ ծանոթություն ասում է, «որ նա մտավ Թունիբունի երկիրը, ապականեց, քանդեց և հրդեհեց Ուրարտացի Արամեի քաղաքները մինչև Եփրատի ակունքը։ Նա գնաց Եփրատի ակունքը և զոհեր մատուցեց իր աստվածներին»[4]։ Այս

---

[1] Իրիտիան չի կարող Սիփանը լինել, ինչպես կարծում է Շտրեկը, «Zeit. . Assyr.» XIV, էջ 112։ Սարգոնը, արևելքից գալով, Արդաբիա լեռից հասնում է Իրիտիա լեռը, անցնում Արմարիլիի վրայով և հասնում լճի ափը։ Քանի որ Սարգոնը գալիս էր արևելքից արևմուտք, ուրեմն, Իրտիան կամ Իրիտիան պետք է գտնվեր լճի հյուսիսային կետում, Ալադաղի լեռնաշղթայում։

[2] Ցլակոթող, I, 76—78։

[3] Քարակոթող, 69—72։

[4] Ցլակոթող, I, 102—105։

տեքստի մի պատճենն ավելացնում է, «որ նա իր զենքերը մաքրագործեց և որ Դայանիի թագավոր Ասիան նրա ոտքերն ընկավ և որպես հարկ ձիեր հանձնեց։ Թագավորն իր պատկերը քանդակել տվեց՝ Ասիայի քաղաքում կանգնեցնելու համար»[1]։ Այս հավելյալ ծանոթությունները կարող են հավաստման, քանի որ նրանց նպատակն է ցուցադրել թագավորի կատարած այնպիսի սխրագործություններ, որոնք հնարավորություն պիտի տային նրան 845 թվականին իր պատկերի վրա արձանագրություն անել։

Տեքստի համաձայն, պատկերը կանգնեցվել է նախօրոք, դեպի Եփրատի ակունքը կատարած արշավանքից առաջ, որն ապացուցում է ծանոթության հավելյալ լինելը։ Ասենք, այն արձանագրությունները, որ Սալմանասարը թողել է Տիգրիսի ակունքի վրա՝ Բիրկալեն գետնուղում, դեռևս գոյություն ունեն in situ և թույլ են տալիս ստուգել նշված տեղեկությունները։

Երկու արձանագրություններից մեկում Սալմանասարը, իր բազմաթիվ գործերը թվարկելուց հետո, հայտարարում է. «Ես նվաճեցի Նաիրի երկրից մինչև արևմուտքի մեծ ծովն ընկած երկրները»։

«Խաթթի երկիրն իր ամբողջ տարածությամբ, Միլիդը, Դայանին, Սուխմեն, Արզաշկուն քաղաքը՝ Ուրարտացի Արամեի թագավորական քաղաքը, Գիլզանը, Խուբուշկիան, Տիգրիսի ակունքից մինչև Եփրատի ակունքն ընկած շրջանը, նույնպես Զամուա ša bitani երկրի ծովից մինչև Քաղդեայի ծովը, բոլորին ոտքերիս տակ բերի»։

«Ես մեկնեցի Բաբելոն, զոհեր մատուցեցի. իջա Քաղդեայի երկիրը։ Նվաճեցի նրա քաղաքները և հարկ վերցրի»։

«Դամասկոսի Ադա-Իդրին, Համատի Իրխուլինին 15 ծովեզրյա քաղաքներով եկան իմ դեմ կռվելու։ Ես կռվեցի նրանց հետ և նրանց փախուստի մատնեցի։ Ես ոչնչացրի նրանց մարտակառքերը, թամբած երիվարները և նրանցից խլեցի պատերազմի մեքենաները։ Նրանք ետ քաշվեցին՝ իրենց կյանքը փրկելու համար»[2]։

Երկրորդ արձանագրությունն ավելի հակիրճ է՝ «Ես իմ նվաճումները հասցրի Նաիրի երկրի ծովից սկսած մինչև արևմուտքի մեծ ծովը՝ գրավեցի Խաթթի երկիրն իր ամբողջ տարածությամբ։ Մտա Ինզիտի երկրի լեռնանցքը, նվաճեցի Սուխմեն, Դայանին, Ուրարտուն իր ամբողջ տարածու-

---

[1] Ցլակորող, II, Դելիչի մոտ, Ցլակորողի վերջում, I, էջ 150. **Scheil**, էջ 58, ծան. 1. Քառակորող, 92-93, չի հիշատակում Թունիբունի կիրճով կատարած արշավանքը. նա ասում է, որ «թագավորը հասավ Եփրատի ու Տիգրիսի ակունքները և այնտեղ թողեց իր պատկերը գետնուղու ժայռի վրա»։

[2] **Lehmann-Haupt,** Armenien einst und jetzt, I, էջ 441։

թյամբ։ Գնացի Գիլզան և այնտեղից հարկ վերցրի։ Երրորդ անգամ վերադարձա Նաիրի երկիրը և անունս գրեցի Տիգրիսի ակունքի մոտ»[1]։

Երեք այցելությունները Նաիրի երկիր, այսինքն՝ Ինգիտի մարզը, կատարվել են 857, 853 և 845 թվականներին։ Եթե վերջին արձանագրությունը կազմվել է երրորդ այցելության ժամանակ, ուրեմն, այդ թվագրվում է 845 թվականով։

Սակայն այստեղ Ուրարտու երկրորդ ներխուժման մասին բոլորովին հարց չի ծագում, միմիայն 857 թվականի արշավանքի մասին է խոսքը։ Սա արդեն քիչ հավաստի է դարձնում 845 թվականին ուրարտական արշավանքի մասին եղած ծանոթությունը։

Գետնուղու մյուս արձանագրությունը հիշատակում է «Եփրատի ակունքից», որտեղ կարելի է ակնարկում նկատել վերոհիշյալ արշավանքի մասին։ Այդ դեպքում արձանագրությունը նույնպես 845 թվականին կլիներ[2]։ Մեզ թվում է, սակայն, որ այն վերաբերում է 844 թվականից ավելի ուշ շրջանին, քանի որ այն տեղյակ է «մինչև Քաղդեայի ծովը» արված նվաճումներին։ Այդ Նամրիի առումից հետո էր, 844 թվականին, որ նվաճման սահմանները երկարաձգվեցին «մինչև Քաղդեայի ծովը»[3]։

Այս պայմաններում, Թունիբունիի և Եփրատի ակունքի հիշատակումը պետք է առնչել 857 թ. արշավանքի հետ։ Իրականում Թունիբունին միևնույն Ինգիտի լեռնանցքի ուրիշ անունն է։ Այսպես է կոչվել նա, ինչպես

---

[1] Նույն տեղում, էջ 437։

[2] **Lehmann-Haupt**-ը, նշ. աշխ., էջ 453, ասում է, որ այդ արձանագրությունը նույնպես ունի ծանոթություն այն մասին, թե թագավորը «եկել է երրորդ անգամ»։ Բայց արձանագրության տեքստը, էջ 441, այդպիսի ծանոթություն չունի։

[3] Վավերագրերի համաձայն (Քարակորող և Ցլակորողներ), Սալմանասարը, բաբելոնյան երկրորդ արշավանքի ժամանակ, առաջացել է մինչև Քաղդեայի ծովը։ Սակայն Բալավաթի արձանագրությունը, որ այս արշավանքն ավելի մանրամասնորեն է պատմում, միայն ասում է, որ թագավորը Քաղդեա է մեկնել, և չի հիշատակում մինչև ծով առաջանալը։ Ցլակորող I-ը իր առաջաբանում որոշում է թագավորի նվաճումները և նրանց միջև՝ «Նամրի երկիրը մինչև Քաղդեայի ծովը»։ Սալմանասարը մտավ Նամրի, ըստ Քարակորողի, 16-րդ տարում, 844 թ., վտարեց երկրի թագավորին և նրա տեղը նշանակեց Յանզուին։ Երկրորդ անգամ նա եկավ Նամրի, իր պաշտպանյալ Յանզուի դեմ, 26-րդ տարում, 834 թ.։ «Նամրիի նվաճումը մինչև Քաղդեայի ծովը» 844 թվականից ավելի ուշ է տեղի ունեցել։ Մեզ թվում է, որ «Զամուայից մինչև Քաղդեայի ծովը» արտահայտությունը չի կարող 844 թվականից առաջ գործածված լինել։

Հիշենք, որ 839 թ. Սալմանասարը Թիլլիի դեմ մեկնեց, 837 թ.՝ Դանաբիի դեմ, 836 թ.՝ Թաբալի դեմ, 835 թ.՝ Միլիդի դեմ։ Դանաբի երկիրը ծանոթ չէ։ Կարելի է մտածել Թունիբունիի կամ Թունուբիի մասին (էմֆատիկ t=d)։ Ասորեստանի թագավորը այդ տիրույթի վրա հարձակված կլինի նախքան Միլիդի և Թաբալի դեմ գնալը, որոնք, հավանաբար, Ուրարտուի հետ համաձայնության էին եկել։

ատացինք վերևում, ըստ ուրարտական մարզ Թունուբեի, որը գտնվում է լեռնանցքի դիմաց, Արսանիայի վրա։

Եփրատի ակունքին կանգնեցրած պատկերն այն է, որ Սալմանասարը թողել էր Իրիտիա լեռան վրա 857 թվականին։ Իրիտիան կազմում է Ալադաղի մի մասը, որտեղից սկիզբ է առնում Եփրատի բազմաթիվ ակունքներից մեկը։ Վերջապես, Ասիան՝ Դայանիի թագավորը, որը հիշատակված է երկրորդ ծանոթության մեջ, որն, անշուշտ, ուրիշ ծագում ունի, քան առաջին ծանոթությունը, ավելի շուտ դինաստիական անուն է։ Թիգլաթպալասար I-ի ժամանակ Դայանիի թագավորը կոչվում էր Սիե-նի, իսկ այս անունը Ասիայի ուրարտական ձևն է[1]։ Թագավորի անունը չի հիշատակված 857 թվականի արշավանքի պատմության մեջ, գուցե՝ մոռացության հետևանքով, եթե միայն Դայանիի թագավորը իրեն ստորադաս Սուայի հետ շփոթված չէ։ Համենայն դեպս, այն իրողությունը, թե Սալմանասարը 853 թվականին գետնուղում մի արձանագրություն է թողել, և որ նա 845 թվականին մտել է Ուրարտու, չի հաստատված։

Միայն 831 թվականին, 857 թվականի արշավանքից ավելի քան քառորդ դար հետո է, որ ասորեստանյան բանակը երկրորդ անգամ անցավ Ուրարտուի սահմանը։ «Ես հավաքեցի իմ մարտակառքերն ու բանակները,— ասում է Սալմանասարը,— զինվորների առաջնորդ նշանակեցի և Ուրարտուի երկիրն ուղարկեցի Դայան-Աշուրին՝ թուրթանին, իմ բազմաթիվ բանակների զորավարին։ Նա իջավ Զամանիի երկիրը, մտավ Ամմաշի քաղաքի լեռնանցքը և անցավ Արսանիա գետը։ Ուրարտացի Սեդուրին իմացավ. իր զորքերի մեծ թվին ապավինելով, իմ դեմ ելավ կռիվ ու ճակատամարտ տալու։ Ես նրա հետ կռվեցի և հաղթեցի նրան, ընդարձակ դաշտը լցրի նրա ռազմիկների դիակներով»[2]։

Դայան-Աշուրն ասուրական բանակի գլխավոր հրամանատարն էր համարյա Սալմանասարի ամբողջ թագավորության ժամանակ։ Ամմաշը պետք է որ լինի Ինգիտիի լեռնանցքի մուտքի մոտ գտնվող մի բնակավայր։ Ասորեստանցի գրիչը պերճախոս չէ, անշուշտ, որովհետև թուրթանի հաղթանակի արձանագրելու ոչինչ չուներ, ինչպես, օրինակ՝ կողոպուտ, հրդեհ, գլուխներից բուրգ։ Դա պարզապես և հստակորեն նշանակում է, որ թուրթանը ձախողություն էր կրել։ Սեդուրին, անտարակույս, Արամեի հաջորդն է։

Սալմանասարը հարձակվեց նաև Ասորեստանի և Ուրարտուի միջև գտնվող չեզոք գոտու մի քանի երկրների վրա։ 855 թվականին նույնպես

---

[1] Sie-ni, դա Sie-ի կամ Ասիեի ուրարտական ձևն է (ինչպես Գուսի և Ազուսի, Սառւ և Ասառւ)։

[2] Քարակոթող, 141—146։

նա մտել էր Կաշխարի մարզը, գրավել տասնմեկ քաղաք և այնտեղից թափանցել էր Շուպրիա և Անխիտի թագավորին փակել էր իր Ուպումե քաղաքում[1]։ Անխիտին մեզ ծանոթ է որպես Աշուրնասիրպալի ժամանակակից։ Ուպումեն կամ Պումեն այսօրվա Ֆումն է (ավելի շուտ՝ Օպում)։ Սալմանասարին չէր հաջողվել քաղաքը գրավել։ Այնուհանդերձ, ինչպես կտեսնենք, այդ արշավանքը Բալավաթի բրոնզե թիթեղների վրա փորագրված է իր սխրագործությունների շարքում։

829 թվականին նա հարձակվեց Ուլլուբայի վրա, որը գտնվում էր Խուլպի մարզում, Շուպրիայի մոտ։ Դա նույն մարզն է, որը կոչվում է նաև Խաբխի։ Ասորեստանի թագավորն ասում է, որ ինքն այդ երկիրն ավերել է, հրդեհել և ամպրոպի նման ավլել։ Նրա վրա տարածել է իր գերիշխանության սարսափը[2]։ Սալմանասարը յուրացնում է նաև իր զորավար Դայան-Աշուրի կատարածը։

Հաջորդ տարին՝ 828 թվականին, «երկրորդ անգամ ինքն իրեն դնում է Աշշուրի և Ադադի պաշտպանության տակ», այսինքն՝ վերցնում է էպոնիմատը։ Դայան-Աշուրն անցնում է Զաբը, մտնում Խուբուշկիա և Դատանա թագավորից հարկ է ստանում։

Նա առաջանում է դեպի Մալխիսի, Մակդուբի իշխանի քաղաքը և հարկ ստանում։ Ապա մտնում է Մանա երկիրը, որի «Ուալլի թագավորը սարսափահար հեռանում է Զիրտա մայրաքաղաքից և բարձրանում լեռները։ Թուրթանն ավերում է երկիրը և այնտեղից բերում անթիվ եզներ ու ոչխարներ»։

Խուբուշկիան Ջուլամերկի մարզն է։ Մանան Ուրմիայի հարավում՝ Զագրոսի շղթայի և Ջաղաթու գետի միջև ընկած շրջանն է։ Մուսասիրը գտնվում է այդ երկու երկրների միջև։ Խուբուշկիայից Մանա գնալու համար պետք է անցնել Մուսասիրի վրայով։ Թուրթանը այդպես չարեց, այլ անցավ Մալխիսի վրայով. սա անծանոթ բնակավայր է, հավանաբար՝ Մուսասիրի հարավային սահմանի վրա։ Նույն տարին Թուրթանը երկրորդ անգամ մեկնեց Խուբուշկիայի դեմ, հարկ ստացավ Դատայից, որը նույն Դատանան է, երկրի թագավորը։ Այս անգամ Թուրթանը մտավ Մուսասիր և գրավեց Ծապարիա քաղաքն ու 46 այլ կետեր։ Նա գնաց մինչև Ուրարտուի բերդերը և քանդեց ու հրկիզեց նրա 50 քաղաքները։ Նա իջավ Գիլզան երկիրը, որի թագավոր Ուպուն նրան որպես հարկ հանձնեց եզներ, ոչխարներ և ձիեր։ Նույն կերպով վարվեցին Մանան, Պուրխսան, Խարրանան, Անդիան։ Ասորեստանյան բանակը խորացավ Պարսուայի երկիրը, նվաճեց

---

[1] Քարակոթող, 52—54։

[2] Քարակոթող, 156—159։ Այստեղ գործածվում է Խաբխի (Կիրխի) անունը, բայց էպոնիմների ցուցակում արշավանքն ուղղված է Ուլլուբա երկրի դեմ։ Խոսքը նույն երկրի մասին է։

*բազմաթիվ բերդաքաղաքներ, ներառյալ Բուշտուն, որ ուրարտական վավերագրերում հաճախ է հիշատակվում։ Թուրթանը իջնում է Նամրի երկիրը և Սիմեսի լեռնանցքով, խալմանի սահմանի վրայով, վերադառնում մայրաքաղաք։*

*Պետք է վարժվել ասուրական արձանագրությունների պաշտոնական լեզվին, որ արձանագրական է դարձել, որպեսզի հնարավոր լինի բոլոր չափազանցությունները վերածել իրենց իսկական չափին։ Ասպատակությունները կատարվում էին ոչ թե նվաճումների, այլ կողոպտելու, հարձակման ենթարկված երկրների հարստությունը կորզելու համար։*

*Թվարկված բազմաթիվ երկրներից ոչ մեկը չի նվաճվել։ Ուլլուբան, Խուբուշկիան, Մուսասիրը, Մանան միշտ պահպանել են իրենց անկախությունը։ Նույն դրությունն է մյուս սահմաններում։ Սալմանասարը՝ փողի ծարավի և այս հարցում ավելի անողոք, քան որպես պատերազմիկ, իր ամբողջ երկար թագավորությունն անցկացրեց անընդհատ ընդհարումների մեջ։ Սակայն արդյունքները միշտ եղել են չնչին, բացի հարուստ ավարից։ Հակառակ բազում անգամ կրկնած իր պնդումներին այն մասին, թե ինքը նվաճել է այսքան երկրներ, իրողությունն այն է, որ նրան չի հաջողվել պետության սահմանները տարածել ո՛չ Եփրատից, ոչ էլ Զագրոսից այն կողմ։ Նրա որդին ու հաջորդը չի թաքցնում ճշմարտությունը, երբ հայտարարում է, թե պետության սահմանները տարածվում էին Պադիրիից մինչև Կարգամիշ։ Հետևաբար, ճիշտ չեն որոշ պատմաբաններ, որոնք նրան Դամասկոսի երկրից մինչև Արաքս և Բաբելոնից մինչև Կիլիկիա ընկած երկրները նվաճողի պատիվն են ընծայում։ Ավերումները նվաճումներ չեն։*

*Մեծ ապստամբությունը, որ բռնկվեց Սալմանասարի թագավորության վերջում և ընդգրկեց 27 քաղաքներ, ներառյալ Աշշուրը, ապացուցում է, որ, համենայն դեպս, երկիրը գոհ չէր նրա կործանիչ արշավանքներից։*

*Սալմանասարը մտադրվեց իր պալատը զարդարել առաջին արշավանքների տեսարաններով և նրանց շարքում նաև այն արշավանքներով, որ հետաքրքրում են մեզ։ Դրանք Բալավաթի գոների բրոնզյա նշանավոր թիթեղներն են, որոնց մասին կխոսենք ավելի ուշ։*

*Հարկավոր է հիշել, որ Սալմանասարի օրով Ուրարտուում իշխում էին Արամեն և նրա հաջորդը՝ Սեդուրին կամ Սարդուրին։*

## 2. ԹԻԳԼԱԹՊԱԼԱՍԱՐ III ԵՎ ՍԱՐԳՈՒՐԻ II

*Սալմանասար III-ի թագավորությունից մինչև Թիգլաթպալասար III-ի թագավորությունը՝ համարյա մեկ դար ժամանակաշրջանի համար գոյություն ունեն միայն աղքատ փաստեր։ Ռազմական վավերագրեր չեն պահ-*

պանվել, և դա սոսկ բախտի բերումով չէ, այլ զինվորական գործողությունների պակասության հետևանքով։ Այդ միևնույն շրջանում ուրարտական վավերագրերը, ընդհակառակն, բավական առատ են, ինչպես կտեսնենք հետագայում։ Դա արդեն ստույգ նշան է, որ երկու պետությունների ուժերի հարաբերությունը փոխվել էր ի նպաստ Ուրարտուի։ Իսկապես, Սալմանասար III-ի օրով Ասորեստանի հզորությունը զգալիորեն նվազում է, մինչդեռ Ուրարտուինը՝ աճում։ Դա մեզ թույլ է տալիս զգույշ վերաբերվել Սալմանասար III-ի կողմից Ուրարտուի կարծեցյալ ջախջախմանը։

Բարեբախտաբար, պահպանվել են էպոնիմների ցուցակները, որոնք մեզ տեղյակ են պահում գլխավոր իրադարձություններին և Ուրարտուի հետ զինված ընդհարումներին։ Սալմանասար III-ը մեռնում է 824 թվականին, խռովությունների թեժ պահին, որոնք մոլեգնում էին սկսած 827 թվականից։ Նրան է հաջորդում իր որդին՝ Շամշի-Ադադը (824—811)։ Հաջորդ տարին նա էպոնիմ է[1]։

Ապստամբությունը ճնշվում է միայն 822 թվականին։ Առաջին արշավանքը Նաիրի երկրի դեմ նշված է 821 թվականին։ Նաիրի ասելով՝ այստեղ հասկացվում են պետության արևելքում գտնվող երկրները՝ Խուբուշկիայից մինչև Իրանական սարահարթը։

Երկրորդ արշավանքը, 820 թվականին, ղեկավարվում է զորագլուխ Մութարրիս-Աշուրի կողմից, նույնպես Նաիրիի դեմ։ Նա առաջ է խաղում մինչև «Արևմուտքի ծովը», հպատակեցնում Միկտիարայի որդի Խիրսինայի 300 քաղաքները, Ուշպինայի 11 բերդերը և 200 քաղաքները։ Մեծ ավար է ձեռք բերում և գերության է վարում «նրանց որդիներին, աղջիկներին, աստվածներին», իսկ վերադարձի ճանապարհին Սունբի երկրից[2] հարկ է գանձում։

Խուբուշկիան մեզ ծանոթ է։ Դա Զուլամերկի մարզն է։ Խիրսինան, թվում է, առնչվում է վերոհիշյալ Մադախիրի Մագդուբիին։

«Արևմուտքի ծովը» Ուրմիա լիճն է։ Դա այդպես է կոչվում Կասպից ծովի համեմատությամբ, որը հիշատակված է Ադադնիրարիի արշավանքի ժամանակ որպես «Արևելքի մեծ ծով»։

Սունբին առնչվում է Փոքր Զաբին, այն մարզին, որտեղ թագավորը կտրեց Զագրոսի լեռնաշղթան, ինչպես կտեսնենք Սարգոնի ութերորդ արշավանքի կապակցությամբ։ Այս պատմության մեջ մեզ հետաքրքրում

---

[1] Նոր հետազոտություններում թագավորների իշխանությունը հաշվում են նրանց էպոնիմատից սկսած, որը ճիշտ չէ։ Պետք է հաշվել նաև նրանց գահակալության տարին, որ միևնույն ժամանակ նախորդ իշխանության վերջին տարին է. Սալմանասար՝ 859—824, Շամշի-Ադադ՝ 824—811, և այսպես շարունակ։

[2] Շամշի-Ադադի արձանագրությունը հրատարակված է Լյուդվիգ Աբելի կողմից. տե՛ս Keilinschriftliche Bibliothek, I, էջ 175—187։

է Ուշպինայի հիշատակումը։ Երկրի հիշատակման բացակայությունն արգելք չի հանդիսանում նրանում Ուրարտուի թագավոր Իշպուինիին ճանաչելու համար[1]։ Ուրեմն, դա Սեդուրիի կամ Սարդուրիի հաջորդն է և 820 թվականից արդեն գահի վրա է։ Սա կարևոր կետ է ուրարտական թագավորների ժամանակագրության համար։

Խուբուշկիայի դեմ պատերազմը շարունակվում էր Սալմանասարի թագավորության վերջերից սկսած։ 819 թվականին, Շամշի-Ադադը նորից արշավում է Խուբուշկիայի դեմ և հարկ գանձում Դադի թագավորից. սա նույն Դատան կամ Դատանան է։ Հարկ է գանձում նաև Խիրսինայից, Սունբի, Մանա, Պարսուա, Միսի երկրներից և Գիզիլբունդիից, որի թագավորն էր Պիրիշաթին և քաղաքը՝ Սիբարան։

Այս վերջին անունը նույնանում է Մուսասիրի քաղաք Սիպարայի հետ։ Ասորեստանի թագավորը թափանցում է Մադա երկիրը, այսինքն՝ Մեդիա, և հնազանդեցնում 27 թագավորների, որոնց անունները թվարկված են։ Դրանք իրանական ցեղերի առաջնորդներն են։ Սա շատ մեծ հետաքրքրություն ներկայացնող իրողություն է, բայց մեր նյութին չի վերաբերում։ Նշենք միայն, որ Խունդուր աշխարհագրական անունը ծանոթ է նաև Ուրարտուում Խունդուր և Խունդուրնա ձևով[2]։ Շամշի-Ադադը խուսափում է Մուսասիրի անունը տալ։ Թվում է, թե այդ երկիրը նվաճված է եղել Ուրարտուի կողմից, և Ուշպինայի 11 բերդերն ու 200 գյուղերը իրականում գտնվում են Մուսասիրի և ոչ թե Ուրարտուի տերիտորիայում։ Ուշպինայի հարևանությունը, եթե ոչ օգնությունը, կարող էր Խուբուշկիային քաջալերել դիմադրելու Ասորեստանին, որը չդադարեց հարձակվել նրա վրա նաև Շամշի-Ադադի հաջորդի օրով։

Շամշի-Ադադն ամուսնացել էր Շամմուրամաթ անունով մի բաբելոնյան իշխանուհու հետ։ Դա հռչակավոր Շամիրամը կամ Սեմիրամիսն է, որ հնադարում անգերազանցելի հռչակ էր վայելում։ Այս լեգենդար հերոսուհու իսկական պատմական ուրվագիծը նրան մեզ ներկայացնում է նույնքան համեստ, որքան նրա թագավոր ամուսնուն։ Թագաժառանգ Ադադնիրարին (811—782) դեռևս անչափահաս էր, երբ 811 թվականին մեռավ նրա հայրը, և Շամմուրամաթ թագուհին դարձավ նրա խնամակալը։ Ավանդությունը ուզում է, որ Սեմիրամիսը լինի մեծ աշխարհակալ, որ նա պատերազմ մղած լինի Բակտրիանեում։ Այստեղ կարելի է տեսնել այն երկար պատերազմի արտացոլումը, որ նրա որդին իսկապես մղեց Մեդական

[1] **W. Belck**, Verhandlung. d. Anthropologischer Gesellschaft, *1894, էջ 485։*

[2] *Համաձայն էպոնիմների ցանկի, հաջորդ տարին, 818 թվականին, թագավորը մեկնում է Ակկադի դեմ և 817 թվականին՝ Թիլիի դեմ։ Սրանից հետևում է, որ 820 թվականի նըվաճումը Ուշպինայի դեմ կատարած արշավանքի կապակցությամբ ճիշտ է։*

ցեղերի դեմ։ Ադադնիրարին հաստատում է, որ մարտնչել է հետևյալ երկրների դեմ՝ Իլլիպի, Խարխար, Արազիաշ, Միսու, Մադա, Գիզիլբունդա, Մունա, Պարսուա, Ալլաբրիա, Աբդադանա՝ Նաիրին իր ամբողջ տարածությամբ մինչև Անդիու և Արևելքի մեծ ծովը, այսինքն՝ Կասպից ծովը։

Այդ բոլոր երկրները գտնվում էին Իրանական սարահարթում և ներկայացնում էին Նաիրի երկիրը։ Այս տերմինի օգտագործումը Իրանական սարահարթի վերաբերյալ՝ արժանի է ուշադրության։ Էպոնիմների ցուցակը Ադադնիրարիին վերագրում է Մադայի կամ Մեդիայի դեմ մղած ութ արշավանք։

Շամիրամին վերագրվող մեծ սիրահարի համբավն անշուշտ առաջ է գալիս Շամմուրամաթի այրիության հետևանքով։ Բացահայտ է, որ Շամիրամն իր հոյակապ փառքի համար պարտական է ոչ թե Շամմուրամաթի դժգույն ուրվականին, այլ հատկապես այնքան ժողովրդական աստվածուհի Իշթարին։ Շումմաթը (աղավնի), որն Իշթարի թռչունն է, շփոթել են Շամմուրամաթի հետ։ Ուրիշ դիցաբանական տարրեր ևս եկան քողարկելու և մթագնելու ասորեստանյան թագուհու իրական պատկերը։ Շամիրամի առասպելը ուրվագծվել է վաղ շրջանում, նախքան ասուրական պետության անկումը։ Հերոդոտը, Կտեսիասը նրան արդեն ճանաչում էին առասպելական պատկերմամբ։ Ըստ Հերոդոտի՝ Սեմիրամիսը կառուցել է այն նշանավոր ամբարտակները, որոնք Եփրատը պահում էին հունի մեջ և չէին թողնում, որ նա հեղեղի գյուղերը[1]։ Հետաքրքիր է, որ ուրարտական Մենուա թագավորի ջրանցքի հայտնի ամբարտակները Հայաստանում հետագայում նույնպես վերագրվել են Շամիրամին։ Շամիրամի հիշատակը, նրա առասպելները դեռևս ապրում են Վանի և Մուշի ժողովրդի մեջ։ Մովսես Խորենացու կողմից գրի առնված հայկական առասպելը Արա Գեղեցիկի մասին աղերսվում է պապիրուսի վրա գրված այն վեպի հետ, որի հերոսը իր զարմուհի Դարկեյայի աղջկան սիրահարված Նինոսն է։ Դա Սեմիրամիսի մի այլ տարբերակն է[2]։

Պատմական Շամմուրամաթը թողել է միայն մի քարակոթող, որի վրա ինքն իրեն ներկայացնում է որպես Շամշի-Ադադի թագավորական կինը, Ադադնիրարիի մայրը և Սալմանասարի հարսը[3]։

Թագուհին Ասորեստան էր ներմուծել բաբելոնյան աստված Նաբուի

---

[1] **Herod.**, I, *184*։

[2] **Wilcken,** Ein neuer griechischer Roman, «Hermes», *28, էջ 161—193*։ **N. Adonz,** Les vestiges d'un ancien culte en Arménie, «Annuaire de l'Institut de philologie et d'histoire orientales et slaves», t. IV, *1936 (*Mélanges Franz Cumont*)*։

[3] **Lehmann-Haupt,** «Mitteilungen d. Deutschen Orientgesellschaft», *№ 40, 1909, մայիս, էջ 24. № 42, 1909, դեկտեմբեր, էջ 34 և 39։ Սեմիրամիսի մասին՝* Die historische Semiramis, *նույն հեղինակի, 1910 թ.*։

պաշտամունքը, որին նվիրված է մի քարակոթող, որ Կալխու քաղաքի նահանգապետ Բելտարսի-Իլուման կանգնեցրել էր «Ասորեստանի թագավոր Ադադնիրարիի կյանքի և թագավորական տիկնոջ՝ Շամմուրամաթի համար»[1]։

Կալխուի կուսակալն էպոնիմների ցուցակում նշված է որպես 798 թ. անվանակիր։ Հավանական է, որ քարակոթողը կանգնեցված է հենց այդ թվականին, մինչդեռ Շամմուրամաթինը՝ իր խնամակալության ժամանակ։

Շամմուրամաթը չի նշված որպես էպոնիմ, բայց նրա անչափահաս որդին 810 թվականին նշված է։ Պատերազմը տեղի էր ունեցել Շամմուրամաթի և իր որդու օրով, թուրթան Ներգալ-Մալիկի գլխավորությամբ։ Այդ իշխանության ժամանակ կատարված արշավանքներից թվենք Մանայի դեմ 808 և 807 թվականներին, Խուբուշկիայի դեմ 802, 792, 785 և 784 թվականներին կատարվածները։ Այդ երկրների դեմ հաճախակի հարձակումների նպատակն էր ետ մղել Ուրարտուն։ Իրականում պայքարը ծավալվում էր Ասորեստանի և Ուրարտուի միջև, թեպետ վերջինը չի հիշատակված։

Մենամարտը բորբոքվում է Սալմանասար IV-ի (782—772) ժամանակ։ Յոթ տարում տեղի է ունենում յոթ արշավանք Ուրարտուի դեմ, որոնք նշված են էպոնիմների ցուցակում։ Հիշենք նրանց թվականները, որոնց կարիքը կզգանք ուրարտական ժամանակագրության կապակցությամբ՝ 781—780—779—778—776 և 774 թվականները։

Մենք կտեսնենք, որ այդ նույն տարիներին Ուրարտուի թագավոր Արգիշտին նույնքան արշավանքներ ձեռնարկեց ընդդեմ Մանայի՝ այն երկրի, ուր երևան եկավ ասուրա-ուրարտական մրցակցությունը։ Այստեղ Մանան Ասորեստանի փոխարեն է, իսկ Սալմանասարի մոտ՝ Ուրարտուն Մանայի փոխարեն։ Սալմանասարին հաջորդեցին նրա երկու եղբայրները՝ Աշուրդանը (772—754) և Աշուրնիրարին (754—745), որոնց ժամանակ Ուրարտուի մասին ոչինչ չի լսվում։ Այդ լռությունը միայն Ասորեստանի պարտության հետևանքն է։ Ուրարտուն հաղթանակել էր, այսուհետև Մանան կախում ուներ Ուրարտուից։ Այդ տեսակետը անվիճելիորեն հաստատվեց անսպասելի մի հայտնագործությամբ։ Ասորեստանի մայրաքաղաքի հյուսիսում գտնվող Դեհուկ գյուղում հայտնաբերվել է արձանագրության մի բեկոր, որի վրա հիշատակված են Արգիշտիի, Շամաշիլուի և Մուշալլիմ-Նինուրտայի անունները[2]։ Խոսքը, անշուշտ, Ուրարտուի և

---

[1] Keilinschriftliche Bibliothek, I, էջ 193։

[2] **C. F. Lehmann-Haupt**-ը, Armenien einst und jetzt, II, 1, էջ 374, պատմում է այդ հայտնաբերման պատմությունը և գնահատում նրա կարևորությունը՝ Das Urartisch-Chaldische Herrscherhaus, «Zeitschrift f. Assyriologie», XXXIII, 1920։ Նաև Materialen zur älterten Geschichte Armeniens und Mesopotamiens, «Abhandl. d. Gesellschaft d. Wiss., Göttingen», IX, 3, 1907, էջ 45 և 177։

*Ասորեստանի միջև զինված բախման մասին է։ Շամաշիլուն թուրթան էր, ասորեստանյան «գլխավոր հրամանատարը» և որպես այդպիսին՝ 780, 770 և 752 թվականներին էպոնիմ։ Նա, այսպիսով, կռվում է Ուրարտուի թագավորի դեմ ոչ թե Հայաստանի լեռներում, այլ Ասորեստանի մայրաքաղաքից 100 կիլոմետրի վրա գտնվող Դեհուկում։ Պետությունը լուրջ սպառնալիքի տակ էր։ Ուրարտուն հասել էր իր ծաղկման գագաթնակետին։ Նա նույնիսկ առաջնորդում էր եփրատյան պետություններին, որոնց միավորելով, ուրարտական թագավորը ուժեղ կոալիցիա էր կազմել Ասորեստանի դեմ։*

*Թիգլաթպալասար* III*-ը (744—724), որը մի եռանդուն իշխող էր, ամեն ջանք թափեց Ուրարտուի առաջխաղացումը կասեցնելու և նրան դեպի իր սահմանները ետ մղելու համար*[1]*։*

*Ըստ էպոնիմների ցանկի մի ծանոթության՝ 743 թվականին Թիգլաթպալասարը արշավեց Արպադի դեմ և ջախջախեց Ուրարտուի ուժերը։ Դա նշանակում է, որ Արպադ երկիրը հարել էր ուրարտական կոալիցիային։ Եթե Արպադը, այսօրվա Ռֆադը՝ Հալեպից հյուսիս, անցներ թշնամուն, Ասորեստանը Սիրիայից կտրված կլիներ։ Դրա համար էլ Ասորեստանի թագավորի առաջին հարվածն ուղղվեց Արպադի դեմ։ Ուրարտուի թագավոր Սարդուրին, իր դաշնակիցների հետ միասին, փութաց օգնել Արպադին։ Թիգլաթպալասարն ասում է, որ Ուրարտուի թագավորը, Մելիտենեի թագավոր Սուլումալը, Կումմուխիի թագավոր Կուշտաշպին, Գուրգումի (Մարաշ) թագավոր Թարխուլարը, Ագուսիի թագավոր Մատիլուն իջան Արպադ «ավերելու և կողոպտելու համար»։ Ասորեստանի թագավորը հանդիպեց նրանց Կիշտանի և Խալպիի մոտ, որոնք այսօր դեռևս հայտնի են (Կիշտամ և Հալֆատ՝ Եփրատի ափին, Ռում-կալեի մոտ), որտեղ և տեղի ունեցավ վճռական ճակատամարտը։ Թիգլաթպալասարի ասելով, ինքը շահեց ճակատամարտը և այնպիսի մի ջարդ տվեց, որ «ձորերն ու լեռները ծածկվեցին Սարդուրի թագավորի մարտիկների դիակներով», իսկ վերջինըն իր կյանքը փրկելու համար ստիպված եղավ «մատակ ձի հեծած» փախչել Սաքակ լեռը։*

*Արպադն այնուհանդերձ շարունակեց քաջությամբ դիմադրել երեք տարի անընդհատ, անշուշտ, ոչ առանց իր դաշնակիցների օգնության։*

*Իրականում Թիգլաթպալասարի ջանքերը պսակվեցին հաջողությամբ միայն 740 թվականին, եթե նա հպատակեցրեց Արպադը, Կումմուխին, Գուրգումը, հարկատու դարձրեց և անեքսիայի ենթարկեց Ունկին կամ Խաթ-*

---

[1] **Paul Rost,** Die Keilschrifttexte Tiglat-Pilesers III, *1893։ Այս թագավորի արձանագրությունները շատ աղճատված են և քիչ օգտակար կլինեին առանց նրա թագավորության շրջանի էպոնիմների ցուցակի արժեքավոր ծանոթությունների։* **A. S. Anspacher,** Tiglat-Palasar III. Contribution to Oriental History and Philology, № V, New-York, *1912.*

Թինան՝ Անտիոքի շրջանում։ Կոալիցիան քայքայվեց, և Սարդուրին մեկուսացվեց։ Նպաստավոր պայմաններ էին ստեղծվել Ուրարտուի դեմ պատերազմը շարունակելու համար։ Թիգլաթպալասարը 739 թվականին հարձակվեց Ուլլուբա և Խաբխի երկրների վրա, որոնք պատկանում էին Ուրարտուին։ Ուլլուբան այսօրվա Խուլպը (կամ Կուլպն) է, որ անվանվում է Խաբխի, իսկ Խաբխի ša bitani-ն, ի տարբերություն Արևելյան Տիգրիսի ափին գտնվող Խաբխիի, հավանական է Ակբան է, բյուզանդական ’Ακβας-ը։

Մենք, ուրեմն, Բատմանի ավազանումն ենք։ Այդ առթիվ թվարկվում են մեկ տասնյակ բնակավայրեր, որոնցից մի քանիսը հնարավոր է նույնացնել, և այդպիսով երևում է, որ Ուլլուբան ու Խաբխին ընդգրկում են ապագա Արզանենեի համարյա ամբողջ տերիտորիան։ Թիգլաթպալասարը Սարդուրիից խլեց այդ ամբողջը, նահանգ դարձրեց և մի bel pihati-ի հրամանատարության տակ դրեց՝ նահանգի մայրաքաղաք դարձնելով Աշուրիկիշա քաղաքը, որը, հավանաբար, Կիշ քաղաքն է[1]։

Բատմանի արևմտյան տերիտորիան, նրա գետաբերանից սկսած մինչև Ինգի, ուրեմն՝ Մեծ Ծոփքի սահմաններում, միացվեց Նաիրի նահանգին, այսինքն՝ Ամիդին։

Ամիդի արևմտյան շրջանը մինչև Եփրատ պատկանում էր Ուրարտուին, Թիգլաթպալասարը խլեց և միացրեց Խառանի նահանգին։

Բոհտանի ավազանում, Ջուդիից և Սերնախից հյուսիս՝ Տիգրիսի և Բոհտանի միջև կազմված անկյունը նույնպես պատկանում էր Ուրարտուին։ Այդ տերիտորիան միացվեց Թուշխան, այսօրվա Կուրխ, նահանգին[2]։

Ասորեստանը կորցրած էր ամեն տեսակ տիրապետություն կամ ազ-

---

[1] Արզանենեի քաղաքներից մեկն է, ըստ Մովսես Խորենացու Աշխարհացույցի, էջ 37 (հայերեն)։

[2] Օգտակար ենք համարում հիշատակել խնդրո առարկա երկրների բազմաթիվ անունները.

Ուլլուբա և Խաբխի. Բիտուրու, Պարխու, Թաշուխա, Մանտուպա, Սաուրդաուրրի, Դիուլլա, Բաբուլտա, Լուսիա, Բիսխա, Սիկկիպսա, Աշուրդաբի։

Նաիրիին կցված. Կիլխաա, Իզզիդա, Դիուաբլի, Աբբիսա, Խարբիսսիննա, Թասս, Ինգի, Անգանու, Բենզու, Կալլատա գետը։

Թուշխանին կցված. Ինու, Սասսու, Լուբբա, Լուկիա, Շիմիրրա, Ուշուրնու, Ուզուրրա, Աուիբի, Գիդբուլա և Բիրդաշու լեռը։

Խառանին կցված. Կուտա, Ուբրա, Արանա, Թաբա, Ուալլիա, Արրանիա։

F. Forrer-ը, Die Provinzeinteilung, էջ 85, քննել է այս տերիտորիաները և որոշ նույնացումներ կատարել, որոնցից հետևյալները արժանի են ուշադրության. Դիուաբլին նույնացված է Հանիի մոտ գտնվող Դիբլի գյուղի մոտ. Աբբիսան՝ Ֆիս գյուղի հետ (Հանիից 16 կմ հեռավորության վրա). Անգանան՝ Էնգինենի (Արգանայից 10 կմ հեռավորության վրա). Արանիան՝ բյուզանդական Աբարնեի (այսօրվա Ջերմուկը՝ Եփրատի ափին). Ուշուրնան՝ Ծերնախ-դաղի (Ջուդիի հյուսիսային մասը). Սաուրդաուրրին՝ Պետինգերյան քարտեզի Սարդեբարի և Պտղոմեոսի Սարդեբայի հետ։

Մենք ավելի վստահությամբ կարող ենք ավելացնել, որ Կելլիսան հայկական Քլիսի

դեցությունը Եփրատի ընդարձակ տերիտորիայի և Զուփի մարզի շրջանի վրա, գուցե 827—824 թվականների ապստամբության ժամանակ։ Ասորական վավերագրերը այդ կորստի մասին և ոչ մի բառ չեն հիշատակում։

Երեք տարի հետո, 736 թվականին, Ասորեստանի թագավորը վերադարձավ Ուլլուբա երկիրը կամ, ինչպես ասում է վավերագիրը, երևաց «Նալ լեռան ստորոտում»։ Դա Ուլլուբայի լեռն է, ուրեմն՝ հայկական Տավրոսը կամ Սասնա լեռները։ Այդ շրջագայության նպատակը հայտնի չէ։ Արդյոք այն կատարվեց Ուրարտուի կողմից Ուլլուբան վերադրավելու նպատակով ձեռնարկված փորձը ետ մղելո՞ւ, թե ավելի շուտ՝ Ուրարտուի դեմ նոր արշավանք կազմակերպելու մտադրությամբ համապատասխան հող նախապատրաստելու համար։

Ինչևիցե, հաջորդ տարին, 735 թվականին, նա մտավ Ուրարտու, առաջ խաղաց մինչև նրա մայրաքաղաք Տուրուշպա, կամ Տուշպա, և այն պաշարեց։ Քաղաքը հաջողությամբ ինքն իրեն պաշտպանեց և ասպատակողին ստիպեց պաշարումը վերացնել։ Թիգլաթպալասարը «ջարդ կատարեց և վնասներ պատճառեց, քաղաքի դիմաց իր արձանը թողեց և ետ քաշվեց, անցնելով երկրով մեկ՝ վերից վար, 60 բերու տարածություն, առանց որևէ դիմադրության հանդիպելու»։

Հնարավոր չէ ասել, թե Ասորեստանի թագավորը որ կողմից մուտք գործեց Ուրարտու։ Հավանական է, որ նա հետևել է Սալմանասարի և Թիգլաթպալասար I-ի ճանապարհին։ 60 բերու հեռավորությունը 300—350 կիլոմետր է՝ «Ուրարտուի միջով մեկ ծայրից մյուսը անցումը»-ը[1]։ Դա կկազմեր մի ճանապարհ Տիգրիսի ակունքի մոտ գտնվող Արսանիայի անցքից մինչև Վանա լճի ծայրը և այնտեղից, մայրաքաղաքի վրայով, մինչև ուրարտու-խուբուշկիական սահմանը՝ Զուլամերկի շրջանում։

Այդպիսով, Թիգլաթպալասարը Սարդուրիին դուրս քշեց Եփրատի հովտից և Տիգրիսի ակունքների շրջանից, բայց Ուրարտուի ազդեցությունն անճղարտ մնաց Զաբի ավազանում, Խուբուշկիայում, Մուսասիրում և Մանայում։ Այդ ազդեցությունը վերացնելու ջանքը բաժին է ընկնում Սարգոնին։

---

գյուղն է, Իզզիզա, Ազզին, երկուսն էլ Սիլվանի (=Միաֆարկին) կազայում են։ Маевский, Ն. աշխ., էջ 148—149։ Բիսիան՝ դա Բիշին է, Սղերդի կամ Սիիրտի մասերից մեկը, իսկ Բաբուտլան կարող է Բեթլը լինել՝ նույնպես Սիիրտում։ Սաուրդաուրրին կարող է լինել Սարդարեն, որը Սիլվանում մի գյուղ է. Маевский, Ն. աշխ., էջ 148։

[1] Beru-ն մի չափ է, որ առաջներում կարդացվում էր kasbu և որը համապատասխանում է սումերական danna-ին՝ «կրկնակի ժամ» հեռավորություն։ Թյուրո-Դանժենը, Journal Asiatique, 1909, էջ 98—99, տարբերում է թագավորական բերուն՝ 12.028 մետր, սովորական բերուից՝ 10.692 մետր և Սարգոնյան դարաշրջանի բերուից՝ 5—6 կիլոմետր։ Beru-ն պարսկական հրասախի նախատիպարն է՝ 5 1/2 կիլոմետր կամ 30 ստադիոն (ասպարեզ)։ Թիգլաթպալասար III-ի մոտ բերուն, անշուշտ, վերջին արժեքն ունի։

## 3. ՍԱՐԳՈՆ II ԵՎ ՌՈՒՍԱ I

Թիգլաթպալասարից հետո թագավորում է Սալմանասար V-ը (724—720)։ Ոչ մի ընդհարում Ուրարտուի հետ։ Նրա թագավորության միակ ռազմական իրադարձությունը Սամարիայի երեք տարվա պաշարումն է, որի հիշողությունը պահպանել է Հին Կտակարանը[1]։ Նրա հաջորդ Սարգոնը (720—705) շատ գործունյա եղավ բոլոր ճակատներում[2]։ Նա նվաճեց Բաբելոնը և ինքն իրեն նրա թագավոր հայտարարեց։ Այդպես խոնարհեցնել մի երկիր, որին էր պարտական Ասորեստանը ամբողջ իր մշակույթը՝ դա քաղաքական սխալ էր։ Բաբելոնը նրան այդ բանը չի ների, և երբ Ասորեստանի համար ճակատագրական ժամը հնչի, ոխակալ Բաբելոնն առաջինը կլինի նրան վերջին հարվածը հասցնելու[3]։

Սարգոնը ծառացավ նաև Սիրիայի պետությունների դեմ։ Համաթը, Արպադը, Դամասկոսը, Սամարիան դաշինք կազմեցին ասուրական լուծը թոթափելու համար, բայց Կարկարի ճակատամարտում հաղթվեցին և տանուլ տվեցին խաղը։

---

[1] 4-րդ թագավորաց, ԺԷ, 6, ԺԸ, 11։

[2] Տարեգրությունը, Հիշատակարանները և Սարգոնի այլ արձանագրությունները կարդացված և թարգմանված են Հուգո Վինկլերի կողմից՝ H. Winckler, Die Keilschrifttexte Sargon's, 1889։ Նիմրուդի արձանագրությունները, Գլանը և Ցանկերը՝ E. E. Peiser, Keilinschriftliche Bibliothek, E. Schrader, II, էջ 35—81։

[3] Ժամանակագրական դիտողություն.—Վինկլերը Սարգոնի թագադրության տարին համարում է 721 թվականը, 719 թ. նրա էպոնիմատից երկու տարի առաջ։ Այդ թվականը, որ ընդհանրապես ընդունված է, մեր կարծիքով ճիշտ չէ։ Այն հանգամանքը, որ Սարգոնը 719 թվականին էպոնիմ էր, ենթադրել է տալիս, որ նրա թագադրությունը տեղի է ունեցել նախորդ՝ 720 թվականին։ Նրա նախորդ Սալմանասար V-ը Թիգլաթպալասարին հաջորդել էր թեբեթի 25-ին, և որովհետև նա էպոնիմ էր 723 թ., թեբեթի 25-ը ընկնում է 724-ին։ Բաբելոնյան ժամանակագրության համաձայն, նա մեռավ իր թագավորության հինգերորդ տարում, նույն թեբեթ ամսում, այսինքն՝ թագավորեց 724-ից մինչև 720 թվականը։ Նույն տարում և նույն ամսի 22-ին նրան հաջորդեց Սարգոնը և, ըստ այնմ, հաջորդ 719 թ. նա հանձն առավ էպոնիմատը։

Աշդադի դեմ կատարված արշավանքի պատմությունը Սարգոնի թագավորությունը հաշվում է էպոնիմատից սկսած և այդ արշավանքը տեղավորում նրա թագավորության իններորդ տարում, այսինքն՝ 711 թվականին, մինչդեռ Տարեգրությունը, որ գահակալության սկիզբը համարում է 720 թվականը, նույն արշավանքը դնում է տասնմեկերորդ տարում, որը համընկնում է 710 թվականի հետ։

Բաբելոնական ժամանակագրությունը Սարգոնի թագավորությունը հաշվում է նրա գահակալության օրից, այսինքն՝ 720 թվականից։ Սարգոնը մեռավ 705 թվականին, որը իր էպոնիմատի 15-րդ տարին է՝ 719-ից հաշված, մինչդեռ Ժամանակագրությունը նրա մահը տեղավորում է 16-րդ տարում, որտեղից կարելի է եզրակացնել, որ նա հաշվում է 720 թըվականից։

Ժամանակագրության համաձայն, Սարգոնը գահ բարձրացավ թեբեթ՝ 10-րդ ամսին,

Սարգոնի առաջխաղացումը դեպի Սիրիա և Պաղեստին մինչև Գազա, անհանգստացնում էր Եգիպտոսին։ Նա Գազային օգնեց, բայց անհաջող։ Միջազգային քաղաքականության ասպարեզում Եգիպտոսի երևան գալը ուշադրության արժանի երևույթ է։

Սարգոնը առանձնապես զայրացած էր Ուրարտուի դեմ, որին համարում էր եփրատյան և անդրեփրատյան պետություններում Ասորեստանի դեմ ուղղված հեղափոխական շարժման պատասխանատու, իսկ այդ պետությունները էին՝ Կումմուխին, Գուրգումը (Մարկաշին), Խիլակկուն, Թաբալը, Մելիդը, մեկ կողմից, և հակառակ կողմի երկրները՝ Խուբուշկիան, Մուսասիրը, Մանան և մյուս կողմի հարևան փոքր պետությունները։ Այս ճակատում մղված պատերազմը շատ ջանքեր սպառեց։

---

իսկ Բաբելոնի թագավոր Մարդուկ-ապլու-իդդինը, Կտակարանի Մերոդախ-Բալադանը՝ հաջորդ նիսան ամսին (տարվա առաջին ամիսը), որտեղից հետևում է, որ Մերոդախ-Բալադանի առաջին տարին համապատասխանում է Սարգոնի երկրորդ տարվան։ Բաբելոնյան ժամանակագրության համաձայն, Մերոդախ-Բալադանը իր թագավորության 12-րդ տարում պարտվեց Սարգոնի կողմից, իսկ Սարգոնի թագավորության 13-րդ տարում՝ վերջինը Բելի ձեռքը բռնեց։ Տարեգրությունը Մերոդախի պատմությունը տալիս է Սարգոնի 12-րդ տարում, բայց վերջում ավելացնում է, որ նա Բելի ձեռքը բռնեց նիսան ամսում, ուրեմն՝ հաջորդ տարում, իր թագավորության 13-րդ տարում, համաձայն ժամանակագրության, այսինքն՝ 708 թվականին։ Ժամանակագրությունը, ուրեմն, նույն մեկնակետն է նկատի առնում և համաձայն է Տարեգրության հետ, այսինքն՝ 720 թ.։ Կա միայն մի անհամաձայնություն կամ շփոթ, այն է՝ ժամանակագրությունը Մերոդախի պարտությունը դնում է նրա թագավորության 12-րդ տարում, մինչդեռ Տարեգրությունը այն պատմում է Սարգոնի թագավորության 12-րդ տարում։

14-րդ տարում, ուրեմն՝ 707 թ., ըստ ժամանակագրության, Սարգոնը մնաց երկրում. 15-րդ տարում՝ 706 թ., նա տեղափոխեց աստվածներին, իսկ 16-րդ տարում՝ 705 թ., նա արշավեց Թաբալի դեմ, որտեղ և սպանվեց։ Աբու ամսի 12-րդ օրը նրան հաջորդում է Սեննաքերիբը։ Արձանագրության մի բեկոր Կումմուխի դեմ կատարված արշավանքը տեղադրում է Աշուրդուպպուի էպոնիմատի տարում՝ 707 թ. (և ոչ թե 708, ինչպես ցույց է տալիս Վինկլերը՝ Einleitung, XLIII). Տարեգրությունն այն տեղադրում է 14-րդ տարում։ Հետևաբար, եթե 14-րդ տարին համաձայնում է 707 թ. հետ, առաջին տարին կլինի 720 թ.։ Ահա մեր տեսակետի մի դրական ապացույց։ Արշավանքը, անշուշտ, ղեկավարվել է թուրթանի կողմից, որովհետև այդ տարին Սարգոնը «մնաց երկրում»։

Տարեգրությունը թագավորության սկզբին՝ reš šarruti, որ նա հաշվում է առաջին palu՝ «թագավորության առաջին տարին», հաղորդում է երկու իրադարձությունների մասին՝ Սամարիայի առման և Մարդուկ-ապլու-իդդինի (Մերոդախ-Բալադանի) դեմ տարած հաղթանակի։ Հիշատակարաններն առաջին հերթին նշում են Սարգոնի տարած հաղթանակը էլամի թագավոր Խումբանիգաշի դեմ, Դուրիլուի մոտ, և Սամարիայի առումը։

Սակայն, ըստ Բաբելոնական ժամանակագրության, Մերոդախ-Բալադանի երկրորդ տարում էլամի թագավոր Ումմանիգաշը (նույն Խումբանիգաշը) ճակատամարտ տվեց Սարգոնին և Դուրիլուի շրջանում նրան պարտության մատնեց, իսկ Մերոդախ-Բալադանը, որ օգնության էր կանչված չկարողացավ ժամանակին հասնել։ Հետևաբար, ասուրական վա-

*Ուրարտուի թագավորը, որը դիմադրում էր Սարգոնին, Ուրսան կամ Ռուսան էր։ Այն հաճախակի կրկնված կարծիքը, որ, իբր թե, Թիգլաթպալասարը ջախջախել էր Ուրարտուի հզորությունը, հերքվում է Սարդուրիի հաջորդ Ռուսայի եռանդուն գործունեությամբ։ Սարգոնն իրավունք ուներ ասելու, որ Ռուսան էր ըմբոստություն ներշնչում ու կազմակերպում Ասորեստանի դեմ՝ նրա տիրապետության և կամ քաղաքական ազդեցության տակ գտնվող երկրներում։*

*Մանայի գործերը բավականին դժվարություններ պատճառեցին Սարգոնին։ Այդ դարաշրջանում Մանայի թագավորը Իրանզուն էր, որը Ասորեստանի հետ լավ հարաբերության մեջ էր։ Նրա հարևանները՝ Ուիշդիշ երկրի առաջնորդ Բագդատտին, Զիկիրտուի թագավոր Մետատտին և Անդիայի թագավոր Թիլուսինան, ընդհակառակն, հակված էին դեպի Ուրարտուն։ Երկու կողմերի բախումն անխուսափելի էր։*

*Զիկիրտուի Մետատտին դրդում էր Շուանդախուլ և Դուրդուկկա կամ Զուրզուկկա քաղաքներին՝ մեջտեղից վերացնել Իրանզուին։ 728 թվականին Սարգոնը գալիս հարձակվում է այս ապստամբած քաղաքների վրա և բնակիչներին տեղահանում։ Նույնը կատարում է նա հետևյալ քաղաքների նկատմամբ. Սուկկա, Բալա, Աբիտիկնա, Պապա և Լալուկնի՝ Ռուսայի կողմն անցնելու համար[1]։*

*Սակայն Սարգոնը չի համարձակվում խսկական մեղավորների՝ Ռուսայի և Մետատտիի վրա հարձակվելու։*

*Իրանզուից հետո իր որդին ու հաջորդը՝ Ազան, Ասորեստանի նկատմամբ վարում է բարյացակամ քաղաքականություն։ Ուիշդիշի Բագդատ-*

---

*վերագրերն խրողությունն աղավաղել են՝ Սարգոնի կրած պարտությունը որպես հաղթանակ են ներկայացրել, մեկում՝ Մերոդախ-Բալադանի դեմ, մյուսում՝ Էլամի թագավորի դեմ։ Կարևոր է հատկապես ճակատամարտի թվականը, Մերոդախ-Բալադանի երկրորդ տարին, որը համապատասխանում է 718 թվականին, որովհետև նա Բաբելոնի գահը բարձրացավ Սարգոնի էպոնիմատի տարվա Նիսան ամսում, 719 թ., ինչպես ասված է վերևում։ Դա պարզորոշ կերպով հերքում է* Տարեգրության *ասածը, որը ճակատամարտը տեղավորում է Սարգոնի թագավորության սկզբում։ Նրա գահակալության սկիզբը կամ սկզբնատարին տևել է Թեբետի 22-ից մինչ ադարի վերջը (10-րդ ամսի 22-ից մինչև 12-րդ ամսի վերջը), ընդամենը երկու ամիս։ Դա բավական ժամանակ չէ երկու հեռավոր արշավանքների համար Սամարիայի և Բաբելոնի դեմ։ Միայն գահակալության տարին՝ 720 թ., գրավվեց Սամարիան, որի պաշարումը սկսվել էր Սալմանասարի ժամանակ։ Բաբելոնի արշավանքը պետք է տարվի 718 թ.։*

[1] Տարեգրություն, I, *1, 40 և 50,* Գլան, I, *28, ասում են, որ այդ քաղաքները միատեղ էին գործում Կակմիի հետ, որի տակ հասկանում են Զիկիրտուն և Անդիան։* 8-րդ ուղերձի *մեջ,* I, *56, Սարգոնը հայտարարում է, որ ինքը ուզում էր «Կակմեների, այդ չար թշնամիների առջև փակել Մանայի մուտքը», ավելի ուշ,* I, *154—155, նա կրկնում է նույն սպառնալիքը Զիկիրտուի և Անդիայի մարդկանց նկատմամբ, որոնց առջև, «այդ չար թշնամիների առջև Մանայի երկրի մուտքը» փակեց։*

տին և Զիկիրտուի Մետատտին չեն վարանում սպանել Ազային և գահ բարձրացնել նրա Ուլլուսունու եղբորը։ Ոճիրը կատարելու դրդողը Ռուսան էր, բայց Ուլլուսունուն նույնպես խառնվել էր իր եղբոր սպանության դավադրությանը։ Որպես իր զբաղեցրած գահի հատուցում՝ նա 22 քաղաք զիջեց Ռուսային և, հասկանալի է, Ուրարտուի կողմնակից դարձավ[1]։ Նա բանակցություններ սկսեց երկու երկրների՝ Կարալլուի և Ալլաբրայի հետ, որոնք գտնվում էին Մանայի հյուսիսում, Ասորեստանի սահմանագլխում, և նրանց առաջնորդներին՝ համապատասխանաբար Աշշուրլեին և Իտտիին, դարձրեց Ռուսայի կողմնակից։ Իսկապես, Սարգոնին կամ նրա թագաժառանգին ուղղված մի նամակում գրում են, «որ Աշշուրլեին լավ է զգում իրեն, որ նա գնացել է Ուլլուսունուի մոտ և որպես նվեր ստացել հինգ ձի»[2]։

715 թվականին, իր թագավորության վեցերորդ տարում, Սարգոնը գնում է իր հավատարիմ Ազայի սպանության վրեժը լուծելու։ Նա մորթել է տալիս Բագդատտիին, բայց ներում է Ուլլուսունուին և նրան հաստատում իր գահին։ Աշշուրլեին, որպես դավաճան, նույնպես մորթվում է, իսկ Իտտին աքսորվում է Համատ[3]։

Ուլլուսունուն երկդիմի քաղաքականություն էր վարում։ Հիմնականում նա ծառայում էր Ռուսային, նրա շահերն էր պաշտպանում, բայց գիտեր թոզ փչել Սարգոնի աչքերին և նրան վստահեցնել իր հավատարմության մասին, որպեսզի իր երկիրը փրկի կործանումից։

Հենց որ Սարգոնը մեկնեց, Ուլլուսունուն սկսեց մեքենայությունները, այս անգամ իշխան Դայուկկուի հետ, որի անունով իր երկիրը կոչվում էր Բիթ-Դայուկկի և գտնվում էր Կարալլուի մոտ։ Դայուկկուն նույնպես Ուրարտուի կողմն անցավ։ 714 թվականին, թագավորության յոթերորդ տարում, Սարգոնը մի անգամ ևս վերադառնում է Մանա, բռնում անհավատարիմ իշխանին և իր ամբողջ ընտանիքով աքսորում Համատ, ուր աքսորվել էր Ալլաբրայի Իտտին։ Նա Ռուսայից խլում է Ուլլուսունուից ստացած 22 քաղաքները։ Նա նույնիսկ հայտնում է, թե հասել է Թիլուսինայի երկիրը՝ Անդիան, որից, իբր, խլել է Թուայադիի շրջանը՝ ութ բերդաքաղաքով։

---

[1] Տարեգրություն, I, *75՝ «Ռուսան Ուլլուսունուից խլեց 22 բերդ». բայց ըստ* Ցանկերի, I, *39՝ «Ուլլուսունուն Ռուսայի վրա մեծ վստահություն ուներ և նրան որպես նվեր տվեց 22 բերդ»։*

[2] **R. U. Pfeiffer,** State letters of Assyria, *№ 209* —**R. J. Harper**, Assyrian and Babylonian letters, *№ 1058։ Նամակի վերջը, ուր խոսվում է Աշշուր-լի անունով մի սպայի մասին* (Pfeiffer-*ը կարդում է* Ašur-uda*) և մի տերիտորիայի, որը նահանգ է դառնալու, հրատակ չէ։*

[3] *Այս կետը* Տարեգրությունում *աղճատված է (*I, *64—65). լրացվում է* Ցանկերով, I, *55—56։*

Այդ արշավանքի ընթացքում Սարգոնը հարկ է գանձում Խուբուշկիայի թագավոր Յանզուից։ Ուլլուսունուի մայրաքաղաք Իզիրտուում կանգնեցնում է իր արձանը։ Այնուհանդերձ, խռովության դրդող Զիկիրտուի Մետատտին խույս տվեց Սարգոնի դատաստանից։ Իրականում Ասորեստանի թագավորն իր նպատակին չհասավ։ Երեք արշավանքում ոչնչացրեց միայն երկու հակառակորդի՝ մեդական ցեղերի առաջնորդներ Բագդատտիին և Դայուկկուին։ Հիշատակված հաղթանակները երևակայական են։ Նույնիսկ Կարալլու երկիրը, որ Սարգոնը հավատացնում է, թե ասուրական նահանգ է դարձրել, չմնաց որպես լուրջ նվաճում։ Թագավորի մեկնելուց հետո վտարեցին ասորեստանյան կառավարչին և իշխանության գլուխ կանգնեցրին մորթված Աշշուրլի իշխանի եղբայր Ամիտաշշիին[1]։ Կարալլուն և Ալլաբրիան գտնվում էին բարձր սարահարթի շրջանում, որը բաժանում է Փոքր Զաբ, Ջաղաթու, Դիալա և Կիզիլ-ուզուն գետերի ջրերը։

Ուրարտուի թագավորը, բացի Մանայից, իր քաղաքական ազդեցությունը տարածել էր մինչև վերոհիշյալ երկրները։ Դա անարգանք էր Սարգոնի համար, որին չէր հաջողվել երեք արշավանքներում Ռուսայի ազդեցությունից դուրս կորզել ոչ միայն Մանան, այլ նույնիսկ Ասորեստանի սահմաններին կից գտնվող այն երկու քաղաքները։

Ռուսան կարողացել էր իր ազդեցության ոլորտն առնել Զիկիրտու երկիրը և Անդիա երկիրը, որոնք գտնվում էին Մանայից արևելք, լեռներում, Ջաղաթու գետի և Կիզիլ-ուզունի վտակների մյուս կողմում։ Զիկիրտուն Հերոդոտի Σαγάρτιοι, Բիսուտունի (Բագիստանի) արձանագրության Ասագարտան է, իրականում մի հզոր ցեղ[2]։ Անդիան այն երկրներից մեկն է, որին Աղադնիրարին ձգտում էր տիրել և որը տարածվում էր մինչև Կասպից ծովը։ Մանայում հաստատուն տեղ ունենալու համար Սարգոնը պետք է ջախջախեր Ռուսայի երկու դաշնակիցներ՝ Զիկիրտուի Մետատտիի և Անդիայի Թիլուսինայի ուժերը։ Այդ նպատակով նա ձեռնարկեց չորրորդ արշավանքը։ Անտարակույս այն նույնպես կարժանանար նախորդ արշավանքների վախճանին, եթե ասուրական բանակների բախտը չբերեր՝ այդ դժվարին պահին Ռուսան կռվի էր բռնվել կիմմերական հրոսակների հետ, որոնք հարձակվել էին Ուրարտուի վրա. Սարգոնը օգտվեց Ռուսայի շփոթությունից Ուրարտու ներխուժելու համար։

Այդ արշավանքի պատմությունը գրական առումով շարադրված է շատ խնամքով, Աշշուր աստծուն ուղղված նամակի ձևով։ Դա հատուկ կարևո-

[1] Տարեգրություն, I, *140—141*։

[2] **Herod.**, I, *125*, III, *95*. **Ptol.**, VI, 2, *Սագարտացիներին տեղավորում է Զագրոսից արևելք* „Τά μεν ἀνατολικώτερα τοῦ Ζαγροῦ ὄρους Σαγάρτιοι (κατέχουσιν)». *Ըստ* Գլանի, *1, 12, Սարգոնը գրավում է Կարալլուն և Պադդիրին։ Վերջինս ասուրական սահմանային կայան էր, որ հաճախ գտնվում էր Մանայի տիրապետության ներքո։*

րություն է ներկայացնում Ուրարտուի աշխարհագրական և տնտեսական վիճակի համար[1]։

713 թվականին, ութերորդ տարում, դուզի կամ թամմուզ ամսում, Սարգոնը թողնում է իր մայրաքաղաք Կալխուն, անցնում Վերին ու Ստորին (Մեծ ու Փոքր) Զաբ գետերը, Կուլլար լեռան վրայով իջնում Սումբի դաշտը։

Կուլլարը պահպանել է իր անունը. մինչև հիմա Փոքր Զաբի կազմած ոլորանում գտնվող լեռը, որ Զագրոս լեռնաշղթային է պատկանում, կոչվում է Կոլլարա-դաղ։ Սումբի դաշտը Ալտաի շրջանումն էր, Զագրոսի ստորոտում։ Կուլլարը ճշգրտում է Լուլումու կամ Զամուա երկրի տեղը։

Այնտեղից Սարգոնն առաջ է շարժվում դեպի Սուրիկաշ՝ Մանային սահմանամերձ և Կարալլուին ու Ալլաբրիային հարող գավառը։ Մանայի թագավոր Ուլլուսունուն Իզիրտու մայրաքաղաքից գալիս է մինչև Սինիխինի՝ իր երկրի սահմանային բերդը, որպեսզի ներկայանա Ասորեստանի թագավորին։ Ալլաբրիայի թագավոր Բել-ապալ-իդդինան նույնպես դիմավորում է թագավորին։ Սարգոնը ընդունում է նրանց հարկը և իջնում դեպի Պարսուաշ։

Սուրիկաշը գտնվում է Բանեի (Բերոզե) շրջանում, Սինիխինին գուցե Սիմախն է, Բանեից դեպի հյուսիս փոքր հեռավորության վրա։ Ալլաբրիան և Կարալլուն գտնվում են այն լեռներում, որոնք բաժանում են Զաղաթուի և Փոքր Զաբի վտակներից մեկի ջրերը[2]։

Պարսուաշում Սարգոնը Նամրիի, Սանգիբուտուի, Բիթ-Աբդադանիի և մեղացիների առաջնորդներից հարկ ստացավ։ Մենք Պարսուաշը տեղա-

---

[1] **F. Thureau-Dangin,** Une relation de la huitième campagne de Sargon, *1912։ Մեկ ուրիշ պակասավոր պատճեն հրապարակված է Վ. Շրադերի կողմից.* **V. Schrader,** Keilschrifttexte aus Assur *(37,* «Wissenschaftliche Veröffentlichungen der Deutschen Orient-Gesellschaft», *1922,* Heft. *2, № 141, էջ 91)։ Թյուրո-Դանժենի կողմից՝ իր ճոյակապ հատորում ներկայացված արշավանքի ճանապարհացույցը շատ կետերում ճշգրիտ չէ։ Գոնե մենք այլ կարծիք ունենք։*

[2] *Թյուրո-Դանժենի կողմից վկայակոչված մի բեկորի համաձայն, նշ. աշխ., էջ 4, ծան. 1, Ուլլուսունուն «իր մայրաքաղաք Իզիրտուից վեց* bēru *հեռավորության վրա շտապ դուրս է գալիս և ներկայանում Սարգոնի առջև Ալլաբրիայի Լարուետեում»։ Վեց* bēru *հեռավորություն ունեցող այդ վայրն անշուշտ Սինիխինին է, ուր Ուլլուսունուն սպասում էր Ասորեստանի թագավորին, և ոչ թե Լարուետեն, ինչպես կարծում է Թյուրո-Դանժենը։ Սինիխինիից Ուլլուսունու թագավորը գնաց Լարուետե՝ Ասորեստանի թագավորին ներկայանալու։ Վեց* bēru *հեռավորությունը համարյա 30—35 կիլոմետր է։ Եթե Սինիխինին Սիմախն է, Մանայի մայրաքաղաք Իզիրտուն կգտնենք Բերդիզորը։ Ցորերն Իզիրտուն նույնացնում է Սակիզի հետ։*

*Ալլաբրիան Թատարայի վերին հովտում չէ, այլ ավելի հարավ՝ Փոքր Զաբի արևելյան վտակ Շիրվան գետի վրա։*

դրում ենք Շիրվանի շրջանում, Զաղաթուի վտակ Խորխուրայի ակունքների վրա և Արդելանի արդի նահանգի հյուսիսում թվարկված երկրներում։

Սարգոնը Պարսուաշից գնում է Մանայի նահանգ Միսի և մտնում Սիրդակկա կամ Զիրդիակկա բերդը, որտեղ նրան էր սպասում Ուլլուսունուն։ Նշենք, որ Ասորեստանի թագավորը նախ առաջ է խաղում դեպի արևելք՝ մեդական հզոր ցեղերի վրա, վստահ լինելու համար, և ապա վերադառնում դեպի Մանա, Զիրդիակկա։ Նա աշխատում է այստեղ ևս իր զիրքը հաստատուն դարձնել, նախքան ուղղվելը դեպի Զիկկիրտու, որը արշավանքի նըպատակն էր։ Ուլլուսունուն, Սարգոնին հաճելի լինելու նպատակով, Զիրդիակկայում արդեն պատրաստել էր ասսուրական բանակի համար ուտեստ՝ ալյուրի պաշարներ և գինի։ Նրա անդրանիկ որդին Ասորեստանի թագավորին դիմավորեց հարուստ նվերներով։ Նա խնդրեց թագավորից՝ «փակել չար թշնամի կակմեների առջև իր երկրի մուտքը, Ուրսային պարտության մատնել»[1]։

Սարգոնը խոստացավ կործանել Ուրարտու երկիրը և «խաղաղություն տալ Մանայի դժբախտ ժողովրդին»։ Սարգոնը խնջույք սարքեց ի պատիվ Ուլլուսունուի՝ նա հրաշալի սեղան բացեց և Ուլլուսունուին ու նրա մեծամեծներին նստեցրեց ասորեստանցիների հետ։ Մանա երկրի և Մեդիա երկրի միջև ցցված լեռների Գիզիլբունդի երկրի առաջնորդները նույնպես եկան Զիրդիակկա և իրենց հարկը մատուցեցին՝ իրենց կյանքը փրկելու և երկիրը կործանումից ազատելու համար։

Սարգոնը նրանց վրա կուսակալ նշանակեց, Պարսուաշի իր կառավարչի հրամանատարության տակ։ Սահմանային նահանգ Միսին հավանաբար զբաղեցնում էր Զաղաթուի հովիտը, Ջունիան-Սահաբի մոտ, Սակիզի ճանապարհի վրա։ Եթե Զիրդիակկան Սակիզ բնակավայրի վրա չէր, համենայն դեպս գտնվում էր Սահաբի շրջակայքում։

Այս միջոցներով իր թիկունքն ապահովելուց հետո Սարգոնը կատարում է 30 բէրու երկար ճանապարհ և հասնում Մանայի մեծ բերդ Պանզիշ, որը հսկող կայանի դեր էր կատարում Զիկկիրտուի և Անդիայի երկրների նկատմամբ։ Սարգոնը, ուրեմն, այս երկու երկրների մուտքի մոտ էր գտնըվում։ Նախքան այնտեղ մտնելը, նա ամրացնում է Պանզիշի պատվարները, այնտեղ կուտակում հացահատիկի, գինու, ձեթի պաշար և տեղավորում ռազմական մեքենաներ՝ անտարակույս, գործողության բազա ստեղծելու համար։ Թվում է, թե Զաղաթուի հոսանքը Մանայի արևելյան սահմանն էր կազմում։

---

[1] Կակմեները Զիկկիրտուի և Անդիայի բնակիչներն են։ Սարգոնը այստեղ ևս շռշափում է Ռուսային, թեպետև արշավանքի նպատակը սահմանափակվում էր այս երկու երկրներով։ Բախտի բերումով էր, որ Սարգոնը իր զենքերը դարձրեց Ռուսայի դեմ։ Ինչ որ նա ասում է Ռուսայի մասին՝ հետագա նկատառումներ են։

Զիրդիակկան նրա ակունքների մոտ էր, իսկ Պանզիշը՝ նրա գետաբերանի մոտ, համարյա արդի Միանդաբի շրջանում[1]։

Վերջապես, Սարգոնը անցնում է Իշտարաուրա գետը, որ կարող էր միայն Ջաղաթուն լինել, և մտնում է Զիկկիրտուի նահանգ Աուկաննեն։ Երկրի թագավոր Մետատտին, Սարգոնի մոտենալը լսելով, ամբողջ ժողովրդին տեղափոխում է լեռները, ապահով տեղ, իսկ ինքն իր Պարդա նստավայրը թողնելով՝ իր զորքերը տանում է Ռուսային օգնության։ Ասորեստանի թագավորը ավերում է երկիրը, թալանում և այրում 12 բերդաքաղաք՝ շրջակա 84 գյուղերով։

Աուկաննեն, հետևաբար, Զիկկիրտուի սահմանամերձ նահանգն է, Միանդաբի դիմաց, Ջաղաթուի աջ ափին։ Այն լեռները, ուր պատսպարվել էր բնակչությունը, կարող են Ջաղաթուի և Կարանկուի ջրերը միմյանցից բաժանող լեռները լինեն։ Պարդա մայրաքաղաքը պետք է փնտրել Մարաղայի մարզում, գուցե Կլաչիքում։ Մետատտին համարվում էր Ուլլուսունուի վասալը, և նրա երկիրը այդ իսկ պատճառով չէր կարող Մանայից շատ հեռու լինել[2]։

Աուկանեից Սարգոնը մեկնեց Մանայի Ուիշդիշ նահանգը, որը գրավված էր Ուրսայի կողմից։ Ասորեստանի թագավորը բուռն լուտանքներ է տեղում Ուրարտուի թագավորի հասցեին։ Նրան կոչում է «ոճրագործների ցեղին պատկանող լեռնցի, որը կարգ ու կանոն չի ճանաչում, որի շրթներն աստվածների արանքից թշնամական և անարդար բառեր են բարբաջում, որ Շամաշին տված պատվո խոսքը չի պահում, որ ամեն տարի, առանց հոգնելու, խախտում է իր սահմանները»։ Այդ ոճրագործը մեծ բանակ էր ոտքի

---

[1] Զիրդիակկայից մինչև Պանզիշ հեռավորությունը ենթադրվում է 30 բեռու, մոտ 165 կիլոմետր, որը չի արդարացնում մեր նույնացումը՝ Սակիզից մինչև Միանդաբ հազիվ հարյուր կիլոմետր է, ոչ ավելի։ Թյուրո-Դանժենը շատ իրավամբ նկատում է, որ կասկածելի է, թե Մանայի երկու քաղաքներ իրարից այդքան հեռու լինեին։ Սարգոնն արդեն երկար շրջանց արած պիտի լիներ Պանզիշ հասնելու համար, այն դեպքում, եթե թիվը համապատասխաներ իրականությանը (Ներածություն, էջ 6, ծան. 7)։ Սարգոնն ասում է, I, 128, «որ ինքն անցել էր անհամար բարձր լեռներ, որոնց վրա բարձրանալ և իջնելը շատ դժվար էր»։ Հաշվի առնելով այդ մագլցումների ու վայրէջքների քանակությունը, կարելի է ենթադրել, որ անցած ճանապարհը 30 բեռուի է հասնում։

[2] Պետք է ասել, որ այն նույնացումները, որ մենք մեզ թույլ ենք տալիս կատարել, բոլորը վերապահությամբ են արված, բացառությամբ այն դեպքերի, երբ հին անունները պահպանված են մինչև մեր օրերը։ Եթե մենք դրանք առաջարկում ենք, ապա միայն պարզաբանելու համար մեր միտքը Սարգոնի արշավանքների ուղղության և ծավալի մասին, որ հաճախ խիստ չափազանցված է բազմաթիվ գիտնականների կողմից։ Օրինակ, Պարդան Մարաղայի շրջակայքում տեղավորելով՝ մենք ուզում ենք ասել, որ Զիկկիրտուն ամենևին այնպիսի մի երկիր չէր, որը տարածված լիներ մինչև Կասպից ծովը, և նույնիսկ մինչև Կիզիլ-ուզունը։

հանել և Ուատուշ բարձր լեռան կիրճերից մեկում դիրք էր գրավել, շուրջն ունենալով իր օգնականներին, անշուշտ ներառյալ Զիկիրտուի և Անդիայի զորքերն ու «լեռների բոլոր թագավորներին»։ Նա տենչում էր ասուրական բանակին հանդիպել և անխնա պարտության մատնել։

Սարգոնը Ռուսայի հակապատկերն է։ Նա «այն իսկական թագավորն է, որ բարությամբ է խոսում, ատում է սուտը, նրա բերանից չար կամ վըճնասակար գործեր երբեք դուրս չեն գա, նա աշխարհի իշխանների մեջ ամենախիմաստունն է»։ Նա ուրարտացի Ուրսայի սահմանները չէր անցել, և ոչ էլ իր երկրի սահմանները, ճակատամարտի դաշտում իր ռազմիկների արյունը չէր թափել։

Մեկ խոսքով, նա ունի բոլոր առաքինությունները, բացի, մենք կարող ենք ավելացնել, համեստությունից։ Նա իր ձեռքը բարձրացնում է դեպի Աշշուրը և նրանից խնդրում Ռուսային պարտության մատնել կռվի դաշտում։ Աշշուրն ընդունում է նրա խնդրանքը։ Ասուրական զորքերը լեռների միջով կատարած երկար անցման հետևանքով հոգնել ու հյուծվել էին։ Սարգոնը նրանց ճակատամարտի չի մղում։ Քանի որ նա չէր վախենում Ռուսայի զորքերի բազմությունից, արհամարհում էր նրա ձիերը, բանի տեղ չէր դնում նրա սպառազինված ռազմիկներին, Սարգոնը նստում է իր անձնական մարտակառքը, գլուխն է անցնում միայն իր հեծելազորի, որը թշնամի երկրում երբեք իրենից չէր հեռանում, և նիզակի սրընթացությամբ նետվում է Ռուսայի վրա, պարտության մատնում նրան, ահավոր ջարդ կատարում, լեռների գոգերը լցնում է դիակներով, արյունը գետի պես հոսեցնում դեպի անդունդները։ Նա գառների նման մորթում է Ռուսայի այն մարտիկներին, որոնք նետ ու աղեղ էին կրում, կտրում է նրանց գըլուխները։ Թագավորական ընտանիքի 260 անդամների գերի է վերցնում, ինչպես նաև կուսակալների, պաշտոնյաների, հեծելազորայիններին։

Սարգոնը Ռուսային սեղմում է իր ճամբարին և նետերով ու նիզակներով կոտորում նրա լծկան ձիերին։ Ռուսան լքում է իր մարտակառքը, հեծնում մատակ ձին և փախչում է իր զորքերի առջևից։ Ասորեստանի թագավորը ջարդուփշուր է անում Զիկիրտուի թագավոր Մետատաիի և հարևան թագավորների զորքերը։ Ուրարտուի պարտության մատնված զորքերին հետապնդում է Ուատուշից մինչև Զիմուր՝ հասպիսի լեռը, 6 բեռու հեռավորության վրա։

Ռուսան փախչում է «ինչպես գիշերային թռչունը արծվի դիմաց», նա սրտատրոփ լքում է իր թագավորական նստավայրը՝ Տուրուշպան և հասնում լեռների լանջերին, «ինչպես անասունը, որ փախչում է որսորդի հետապնդումից»։ Որպես երկնող մի կին, նա նետվում է անկողնու մեջ, հըրաժարվում սնունդ և ըմպելիք տանել բերանը, անբուժելի հիվանդություն է սրսկում ինքն իրեն։ Սարգոնը պնդում է, «որ ինքը Աշշուրի հաղ-

*թանակն ընդմիշտ հաստատեց Ուրարտուի վրա»։ Նա ճզմում է Զիկիրտուի և Անդիայի մարդկանց ու նրանց առջև փակում Մանա երկրի մուտքը։ Նա բավարարում է նրանց տիրոջ՝ Ուլլուսունուի սիրտը՝ «նա լույս սփռեց դըժբախտ ժողովուրդների վրա»։ Սարգոնն իր պատմությունը վերջացնում է ասելով, որ ինքը ընդհատում է իր արշավանքը դեպի Անդիա ու Զիկիրտու, որպեսզի իր երեսը դարձնի դեպի Ուրարտու։*

*Այս պատմությունը մի լավ նմուշ է ասուրական զինվորական նկարագրությունների, որտեղ միշտ ավելի շատ գրականություն կա, քան թե ճշգրիտ փաստեր, որոնք կարող են պատմության համար օգտակար լինել։*

*Սարգոնի զայրույթը Ուրարտուի թագավորի դեմ ցույց է տալիս, որ վերջինը Ասորեստանին շատ անհանգստություններ էր պատճառել իր հաճախակի հարձակումներով, որոնք այստեղ միայն ի միջի այլոց են հիշատակվում։ Ասորեստանի թագավորը պարծենում է, որ ինքը սիրում է ճշմարտությունը, բայց այնուհանդերձ հեռանում է դրանից ասելով, որ իր դեմքը դարձրեց դեպի Ուրարտու Ուաուշի ճակատամարտից հետո, այնինչ բացահայտ է, որ նա այդ արել էր հիշյալ ճակատամարտից առաջ։ Հիրավի, թագավորն ինքը խոստովանում է, որ Ուիշդիշում գտնվող Ուաուշ է հասել «արևելքից արևմուտք» գնալով։ Մինչ այդ նա գտնվում էր Սուկաննեում՝ Մանայի մոտ, և ավելի խորը չէր թափանցել, նույնիսկ չէր հասել երկրի մայրաքաղաքը։ Հետևաբար, Սուկաննեից դեպի արևմուտք գնալ Ուաուշ հասնելու համար՝ նշանակում էր քաշվել, այսինքն՝ նահանջել դեպի Մանա։ Ուիշդիշը, ուր հասնում է նա, Ուրարտուի մի նահանգն էր, որ գրավվել էր Մանայից։ Մենք կտեսնենք, որ Ուրարտուի թագավոր Մենուան գրավել էր Մեյշտա քաղաքը(Տաշ-թեփեի վայրում՝ Զաղաթուի գետաբերանում), իսկ նրա հաջորդ Արգիշտին՝ Ուշնիի քաղաքը, որը, անշուշտ, այսօրվա Ուշնուն է։ Ուիշդիշը կարող է լինել միայն Ուրմիա լճի առափնյա գոտին, Տաշ-թեփեից համարյա մինչև Ուշնու։*

*Ուաուշի անցքը, որտեղ Ռուսան ճամբար էր դրել, մեր կարծիքով Դերբենդի լեռնանցքն է, Ուշնուից տասնհինգ կիլոմետր հեռավորության վրա, 2000 մետր բարձրություն ունեցող մի լեռան կողին։ Դա, երևի, Ուաուշ լեռն է։ Վեց բերու տարածությունը Ուաուշից մինչև Զիմուր, որը 30—35 կիլոմետր է անում, ճիշտ և ճիշտ Դերբենդի ու Զագրոսի լեռնաշղթայի Կելիշին լեռնանցքի միջև եղած հեռավորությունն է։ Այս լեռնանցքով է, որ Ռուսան իր պարտությունից հետո փախած կլինի, որպեսզի մտնի Մուսասիր, որը Ուրարտուին բարեկամ և վասալ երկիր էր։*

*Շատ հավանական է, որ Ռուսան իր ուժերը կենտրոնացրել էր Մուսասիրի մոտերքում, Բաշկալայի մոտ՝ Ուրարտուի սահմանամերձ կայան Ուեսիում։ Նա երկու զորամաս էր ուղարկել Մուսասիր, ինչպես մենք կըտեսնենք ներքևում։ Եթե նա չի ընտրել Զագրոսի և Ուրմիա լճի միջև եղած*

ճանապարհը՝ Դերբենդ իջնելու համար, ուրեմն Կելիշինի[1] վրայով է մտել Մուսասիր։

Ուիշդիշը տարածվում էր դեպի հյուսիս բավական հեռու, եթե հաշվի առնվի այն, որ «Նրա քաղաքները երկնքի աստղերի նման անհամար էին»։ Ասորեստանի թագավորը հողին է հավասարեցնում նրա քաղաքների հաստատուն պարիսպները, փշրելով «ինչպես հողամաններ», գրավում հացահատիկի պաշեստները բանակի համար։

Սարգոնը Ուիշդիշից մեկնում է Ուշկայա՝ Ուրարտուի սահմանամերձ կայանը, «Զարանդա նահանգի մուտքի մոտ և Սուբի նահանգի վերևում, որ Ուրարտուի բնակիչները կոչում են Մանա երկիր»։

Հետևաբար, կարելի է ասել, որ Սուբին նախապես պատկանում էր Մանային, որից խլվել էր, ինչպես և Ուիշդիշը, Ուրարտուի կողմից։

Սարգոնը Ուշնուից ուղղվում է դեպի Վանա լճի հյուսիս-արևելյան ծայրամասը, ուրեմն, այդ գծի վրա էին գտնվում նրա անցած նահանգները։ Գալով նրանց սահմաններին, օգտակար կլիներ դիմել այդ նույն գծի երկայնքին գտնվող այն բաժանումներին, որոնք հայտնի էին հին Հայաստանին։

Ուշկայա քաղաքը կործանվեց, և շրջակա 115 գյուղեր հրո ճարակ դարձան, այնպես որ «ծուխը ամպրոպի նման ծածկեց երկնքի երեսը»։ Սուբի նահանգի՝ Սանգիբուտու երկրի սահմանի վրա գտնվող Անիաշտանիա քաղաքը իր 17 գյուղերով արժանացավ միևնույն բախտին։ Ուրեմն, Սուբին արևելքից մոտ էր Զարանդային, իսկ հյուսիսից՝ Սանգիբուտուին։ Ուշկայա քաղաքը Զարանդայի մուտքի մոտ էր, իսկ Անիաշտանիան՝ Սանգիբուտուի սահմանի վրա։

Մանայի երկու հին նահանգները, որ հանձնվել էին Ուրարտուին, գտնվում էին Ուրմիա լճի և Զագրոսի լեռնաշղթայի միջև։ Առաջինը ընդգրկում էր, լճի հարավային ափից բացի, նաև Մարի գավառի շրջանը, երկրորդը՝ Թրաբի գավառը և հին Հայաստանի Էյլի կամ Կուրիճան շրջանը, որը համապատասխանում է Մեր գավառին, Տեր գավառին և այսօրվա Բարադոստին[2]։ Ուշկայան գտնվում էր Զոլա գետի ակունքին, որը ողողում է

[1] Թյուրո-Դանժենը Սարգոնի արշավանքի իր գեղեցիկ հրատարակության ներածականում առաջարկում է բոլորովին տարբեր երթուղի, որի համաձայն Սարգոնը անցել էր Պանդիշից դեպի Սոհենդ, շրջանցել էր Ուրմիա լիճը և Թեբրիզի, խոյի վրայով առաջ խաղացել դեպի Վանա լիճը։ Այս երթուղին հնարավոր չէ հիմնավորել։ Դժվար է ապացուցել, որ Մանան և Ուրարտուն Ուրմիա լճի արևելքում տիրույթներ ունեին։

[2] Կեղծ-Մովսես, Աշխարհացույց, էջ 32, Մարի, Թրաբի, Այլի կամ Կուրիճան գավառները թվարկում է Պարսկահայք նահանգի մեջ։

Թրաբին (Tur-abi) Թուր գետի շրջանն է. Կուրիճանը հիշեցնում է Կիլզանը կամ Գիլզանը։

Զարանդան, հին Հայաստանի Զարեանդը, և որը Զարանդայի մուտքը պատնեշող բնույթ ուներ։

Անխաշտանխա քաղաքը, Ուշկայայի հյուսիսում, նույն գետի վերին հովտի ելքի մոտ, Սուբին բաժանում էր Սանգիբուտու երկրից։ Սանգիբուտուն կոչվում էր նաև Բարի[1]։ Պետք է նշել, որ Սարգոնը չի մտել Զարանդա, այլապես նա կնշեր, որ Զարանդան նույնպես կործանել է. նրա մասին չի խոսում։ Զարանդան մնաց արևելք, նրա երթուղուց դուրս։

Թագավորն ասում է, որ Ուշկայայից (ավելի ճիշտ՝ Անխաշտանխայից) հասել է Բարի կամ Սանգիբուտու երկիրը։ Սակայն, նախքան այս երկիրը հասնելը, նա մտնում է Դալա երկիրը և քանդում նրա երկու բերդաքաղաքը՝ Թարուին և Թարմակիսան, շրջակա 30 գյուղերով։

Թարմակիսայից գնում է Կիշպալ լեռան ստորոտում գտնվող Ուլխու բերդաքաղաքը Սանգիբուտու նահանգում, և 57 շրջակա գյուղերի հետ միասին հողին է հավասարեցնում։

Ուլխուից Սարգոնը անցնում է մեկ ուրիշ քաղաք, որի անունը ջնջվել է և որը «բերդաքաղաքների գլխավորն՛ էր Սանգիբուտուի նահանգում»։ Հետևաբար, սա շրջանն է միևնույն նահանգի, որը 21 բերդաքաղաք ուներ, որոնք «շատ վաղ ժամանակից գրավված էին ուրարտական թագավորների կողմից»։ 21 քաղաքները «շողշողում էին Արզաբիա լեռների գագաթներին, ինչպես լեռների վրա բուսած խաղողի որթեր»։

Սանգիբուտուի մարդիկ, «նահանգում ապրողները, այդ քաղաքների բոլոր բնակիչները», հենց որ լեռների գագաթներին կառուցած իրենց դիտակայաններից տեսան թշնամիներին, մեռյալի գույն ստացան, լքեցին իրենց ամրությունները և փախան լեռները։ Սարգոնը նահանգը ծածկում է ինչպես «մորեխների չու, ինչպես երեկոյան մռայլ ամպ»։

Ասորեստանի թագավորը 12 բերու ճանապարհ է անցնում Արզաբիայից Իրտիա բարձր լեռը հասնելու համար և ճամբար է դնում այնտեղ։

Իրտիա կամ Իրիտիա լեռը մեզ ծանոթ է Սալմանասար III-ի արշա-

---

[1] Սանգիբուտուն և Սուբին նույն անուններն են, ինչ որ Սումբին։ Վերոհիշյալ Սանգիբուտուն, ինչպես նաև Բարին, ուրիշ անուններ չեն, եթե ոչ Բիթ-Բարու, որը Սեննաքերիբի Պրիզմայում, II, 21, նշված է որպես էլամի սահմանի վրա գտնվող երկիր։ Եթե Սուբին նույն Սումբի անունն է, կարելի է դրա տակ ենթադրել Συμβάκη շրջանը, որը հռոմեական եռապետ, հռչակավոր զորավար Մարկոս Անտոնիոսը 33 թվականին գրեց Ատրպատականի թագավորին (Strab., XI, II, էջ 523)։ Անդրեասն առաջարկել է այդ անունը սրբագրել 'Αλουάκη, որպեսզի այնտեղ ճանաչվի Աղբակ անունը։ Ըստ Ստրաբոնի, հայերը Սիմբակեն խլել էին մեդացիներից, իսկ Անտոնիոսը այն վերադարձրեց նրանց։

Եթե հարցը մեդական մի շրջանի մասին է, ավելի հավանական է այն փնտրել Զագրոսի լեռնաշղթայից արևելք, որը Հայաստանի և Մեդիայի (Ատրպատականի) միջև բնական սահման էր, և այն նույնացնել Սումբիի հետ։

Սոմալը, Բարադոստի հարևան շրջանը, գուցե կապ ունի Սումբիի հետ։

վանքից։ Այն մենք նույնացրել ենք Ալադաղի բազմաթիվ ճյուղավորումների հետ։

Դալան և Բարին՝ կամ Սանգիբուտուն իր երկու մասերով, կոթնած էին Զագրոս լեռնաշղթային, ինչպես Ուիշդիշը և Սուբին. վերջինները տարածվում էին արևելյան զառիթափի վրա, մյուսները՝ արևմտյան։ Դալան կարող է լինել հին հայկական Կոտոր և Նկան ամրոցների շրջանը, ներկա Կոտուրի և Նագանի շրջանը, որը Թորնավան գավառն էր, Վասպուրականի նահանգում։ Այն ժամանակ Բարին կամ Սանգիբուտուն կհամապատասխաներ Սարայի շրջանում Մարդաստան հայկական մեծ գավառին։

Այստեղ Սարգոնը ընդհատում է իր առաջխաղացումը դեպի հյուսիս, դառնում է հյուսիս-արևմուտք, դեպի Ալադաղ և կանգ առնում Իրտիայի մոտ։ Արզաբիայից մինչև Իրտիա հեռավորությունը 12 բերու կամ 65—70 կիլոմետր է և համապատասխանում է Սարայի շրջանից մինչև Ալադաղի մատերքի հեռավորությանը։ Իր ճանապարհին Ասորեստանի թագավորը խարույկի նման այրում է 146 գյուղ, դրանք կողոպտելուց և «Աշշուրի երկիրը վերադառնալու համար անհագին պաշար» պատրաստելուց հետո։

«Սանգիբուտուի բերդաքաղաքներից Սարգոնը գալիս է Արմարիլի նահանգը»։ Դրանից բխում է, որ Արմարիլին Իրտիայի շրջանում էր գտնվում։ Արմարիլին Սալմանասար III-ի Արամալին է։ Նա Իրտիայից Արամալիի և Զանզիունայի վրայով իջավ լճի ափը, մինչդեռ Սարգոնը Արմարիլից առաջ է խաղում դեպի Այադի, որը նույնպես լճի ափին էր տեղավորված։ Արմարիլիում, Ուբիանդա լեռների ստորոտում, կար 7 բերդաքաղաք և 30 գյուղ։ Սրանք անցնելիս թագավորն այցելում է Ուրսայի Ռիար ծննդավայրը և Արբուն՝ Սարդուրիի քաղաքը. նրա եղբայրները բնակվում էին 7 ուժեղ ամրացված քաղաքներում։ Այդ քաղաքները քարուքանդ արվեցին, և Խալդիայի տաճարը հրդեհվեց։

Սարգոնը Արմարիլից գնում է Այադի, որը երեսուն բերդաքաղաք ուներ «ալեծածան ծովի ափին, մեծ լեռների լանջին», քաղաքներ, որոնք քանդվեցին և շրջակա 87 գյուղերի հետ միասին հրկիզվեցին։

Այադիից նա անցնում է Ալլուրիա, Կալլանիա, Իննաա գետերը և հասնում է Ուայաիս նահանգը, «Ուրարտուի սահմանի ստորոտում», Նաիրի երկրին սահմանամերձ։ Նրա բերդաքաղաք Ուայաիսն ավելի ամուր էր, քան Ռուսայի մնացած բոլոր բերդերը։ Նրա կայազորը բաղկացած էր քաջարի ռազմիկներից, այնտեղ էին նաև ռազմական առաջնորդները՝ իրենց զորքերով։ Այնտեղ կային և նոր լուրեր հաղորդող լրտեսներ։ Նրա 5 բերդաքաղաքները հրո ճարակ դարձան 40 գյուղերով հանդերձ։

Ուայաիսից Սարգոնը մտնում է Նաիրի երկիրը։ Յանզու թագավորն ընդառաջ է գալիս 4 բերու հեռավորության վրա գտնվող իր մայրաքաղաք Խուբուշկիայից և հարկ մատուցում։

Սարգոնը մտնում է Մուսասիր՝ այս երկրի թագավոր Ուրզանային պատժելու համար։ Ասորեստանի թագավորը զայրացած էր Ուրզանայի վարմունքից, որը խուսափել էր դիմավորել և հարգանքներ մատուցել իրեն, ինչպես արել էր նրա դրացի Յանզուն։ Ուրզանան, որպես Ռուսայի դաշնակից, այլ կերպ չէր կարող վարվել։ Սարգոնը, խիստ բարկացած, իր բանակի մի ստվար մասն ուղարկում է Ասորեստան և «իր միակ անձնական մարտակառքով ու մեկ հազար հեծելազորով» նետվում է Մուսասիրի բարձր լեռները։ Ուրզանային հաջողվեց փրկվել, բայց Սարգոնի ձեռքն է ընկնում նրա ընտանիքը։ Նրա կինը, որդիները, աղջիկները և նրա ժողովուրդը, նրա ընտանիքի անդամները գերի տարվեցին։ Տարվեց նաև 6110 մարդ, 12 ջորի, 380 էշ, 525 եզ, 1235 ոչխար[1]։ Սարգոնը կողոպտում է Ուրզանայի պալատը և Խալդիայի տաճարը և ահագին ավար վերցնում։ Պալատից վերցնում է՝ 34 տաղանդ 18 մինա ոսկի, 167 տաղանդ 2 և կես մինա արծաթ։ Տաճարից 4 տաղանդ 3 մինա ոսկի, 162 տաղանդ 20 մինա արծաթ, 3600 տաղանդ մաքուր պղինձ։ Բացի դրանից, հավաքվում են նաև մեծ քանակությամբ գործիքներ, տարբեր մետաղներից արվեստի առարկաներ, որոնք հաճախ պատված են թանկագին քարերով։ Առատ ավարով բեռնավորված, հաղթական թագավորը վերադառնում է իր մայրաքաղաքը։

Սարգոնը լճի ափին գտնվող Այադի հասնելուց հետո հանկարծ ետ է դառնում և փոխանակ դեպի արևմուտք գնալու, շրջվում է դեպի հարավ՝ Խուբուշկիա և Մուսասիր հասնելու համար։ Սա Մեծ Զաբի ավազանն է, որը տեղացիները կոչում են Էլամունի, ինչպես Սարգոնն է վկայում[2]։ Այադին նույնացվում է հայկական գավառ Առբերանիի հետ՝ լճի ծայրի երկու կողմերում։ 30 քաղաքները կիսաբոլոր շարված էին Արճեշից մինչև Զանիկ՝ Էսրակ և Արտավազ լեռների լանջերին, որոնք կարող են մեր

[1] Ուղեղձ, I, 349, կրկնված I, 424-ում, որտեղ ոչխարների թիվը 1285 է, բայց Տարեգրություններում, I, 128—129, այս թվերին ավելացված են՝ 6170 բնակիչ, 692 ջորի և էշ, 920 եզ, 100 225 ոչխար։

[2] Մեկ այլ անհամաձայնություն Թյուրո-Դանժենի և մեր միջև։ Այս գիտնականը կարծում է, որ Սարգոնը ճանապարհը շարունակում է լճի երկարությամբ և առաջ ընթանալով Աբլատի, Բիթլիսի վրայով հասնում է Սաիրդ (Սղերդ)։ Ըստ նրա՝ Ուայաիսը զուգադիպում է Բիթլիսի հետ, իսկ Խուբուշկիան՝ Սաիրդի հետ։ Այդտեղից Սարգոնը Բոհտանի վրայով պիտի առաջ խաղացած լիներ մինչև Մուսասիր։ Այս ճանապարհացույցի հեղինակին, ըստ երևույթին, թյուրիմացության մեջ է գցել Նաիրիի հիշատակումը, որը նա շփոթել է Ամեդիի շրջանի Նաիրիի հետ։ Ուայաիսը կամ Ուեսին չէր կարող հեռու լինել ռազմադաշտից, որը Մանան էր, և ոչ էլ Մուսասիրից, որտեղից Ուրզանա թագավորը հետևում էր Ուեսիում կատարվող իրադարձություններին։ Անշուշտ, նա չէր կարող հետևել, եթե Ուեսին այնքան հեռավոր շրջանում լիներ և Մուսասիրից բաժանված լիներ աուրական երկրներով։ Զիկիրտուից և Անդիայից հասնել Բիթլիս՝ օգնություն փնտրելու համար, գործնական բան չէր կարող լինել։

տեքստի Արսիդուն և Մախուննիան լինել։ Այս քաղաքներից Արգիշտիունան և Կալլանիան ամուր էին կառուցված։ Եթե Արգիշտիունան Արճեշն է, Կալլանիան պետք է որ Բերկրին լինի։ Այդպես էլ Կալլանիա գետը կարող է լինել Բերկրի գետը, որը Թուրքերը կոչում են Բենդիմահի։ Ալլուրիա գետը զուգադիպում է Մարմետին, և հարց է ծագում, թե Ալյուր գյուղը արդյո՞ք չի պահպանել գետի հին անունը[1]։

Երրորդ գետը՝ Իննաան, պետք է լինի Արճակ գետը, Թուրքերի Մեհմեդիյեհը։ Ուայաիս նահանգը, որը սահմանամերձ է Խուբուշկիա-Զուլամերկին, նույնանում է Մեծ Աղբակի հետ։ Խուբուշկիան կամ Նաիրին, ինչպես Սարգոնն է կոչում այն, Խուբուշկիա անունը վերապահելով նրա մայրաքաղաքին, Փոքր Աղբակն է։ Ուայաիս բերդը կարող է լինել միայն Բաշ-կալան, որը լավ դիրք ուներ Ճուղ կիրճը պաշտպանելու համար։ Այդպիսով ճշգրտվում է Սարգոնի ճանապարհացույցը. նա Այադիից անցնում է Վանի տերիտորիան և հասնում Բաշկալա ու Զուլամերկ, որտեղից Դիզայի, Ներիի վրայով անցնում է Միդիկա, որը Մուսասիրի քաղաք է։

Սխրագործությունների ամփոփելով, Սարգոնն իր ավերած քաղաքների թիվը Ուրարտուի 7 նահանգներում հասցնում է 430-ի։ Մեկ ուրիշ վավերագրում այդ թիվը վերածվում է 55 քաղաքի, 11 բերդի՝ 8 նահանգում[2]։ 7 նահանգները հետևյալներն են. Սուբի, Զարանդա, Դալա, Բարի կամ Սանգիբուտու, Արմարիլի, Այադի և Ուայաիս։ Ութերորդը Ուիշդիշն է, որը խլվել է Մանայից։ Նախքան Սարգոնի արշավանքի քննարկմանն անցնելը և լուսաբանելն այն ամենը, ինչ որ Սարգոնը պատմում է Ուրարտուի վերաբերյալ (նրա պաշտպանողական աշխատանքների, նրա տնտեսական աղբյուրների մասին), անհրաժեշտ է ծանոթանալ այն տեղեկությունների հետ, որ գոյություն ունեն ասուրական նամակագրական գրականության մեջ և նոր լույս են սփռում Ասորեստանի՝ Ուրարտուի նկատմամբ ունեցած դիրքի վրա։

Ասորեստանին քաջ հայտնի էր այսպես կոչված service d'information-ը (տեղեկատու ծառայությունը), կազմակերպություն, որին հանձնարարված էր բոլոր հնարավոր միջոցներով (դիտարկումներ, լրտեսություն, բանակցություններ, կաշառք) ձեռք բերել տեղեկություններ թշնամի երկրների վերաբերյալ։

Սարգոնի ժամանակ այդ գործակալները հատկապես ակտիվ էին ուրարտական ճակատում։ Նրանք ամեն ճիգ էին թափում իմանալու համար այն բոլորը, ինչ տեղի էր ունենում Ուրարտուում։ Նրանք տեղյակ էին Ուրար-

[1] Ալյուր հին անունը գուցե պահպանվել է ալյուր հայերեն բառի հետ նմանության շնորհիվ։

[2] Հիշատակարան, I, 42—43։ Գումարը չի համապատասխանում պատմության տվյալներին։ Այդ հարցին մենք կանդրադառնանք։

*տուի թագավորի ամեն մի քայլին, նրա զորքերի ամեն մի տեղաշարժին։ Այդ գործակալների գաղտնի տեղեկությունները, որ թագավորին էին ուղարկվում նամակների ձևով, շատ ուսանելի են։ Նրանք գրված են պարզ ոճով, ազատ պայմանական ճարտասանությունից, որը հատուկ է պաշտոնական վավերագրերի լեզվին, և կարևոր էջեր են ներկայացնում ճշմարտացի պատմության համար։*

*Ուրարտական ճակատի վերաբերյալ նամակները մեզ հասել են շնորհիվ Աշուրբանիպալ թագավորի, որը բազմաթիվ նամակներ է հավաքել Նինվեի իր գրադարանի համար։ Նրանք հրատարակված են Հարպերի մեծ ժողովածուում և մասամբ անգլերեն են թարգմանված Պֆայֆերի կողմից*[1]*։*

*Այստեղ մենք վերարտադրում ենք մի քանի նամակներ, որտեղ խոսվում է կիմմերների մասին։ Դժբախտաբար, այդ նամակները թարգմանված չեն։ Այստեղ խոսքն Ուրարտուի մի թագավորի մասին է, որը նոր է հաղթվել կիմմերական հրոսակների կողմից։ Մեր նպատակն է պարզաբանել այն բավական վիճելի հարցը, թե ո՞վ է Ուրարտուի այդ թագավորը։ Մենք կապացուցենք, որ դա Ռուսան էր, և կիմմերական պատերազմում նրա պարտությունն էր, որ հեշտացրեց Սարգոնի թափանցումն Ուրարտու։ Աշուր-ռիսուան, որ այդ նամակներն ուղղում է ժառանգորդ իշխանին կամ թագավորին, մոտավորապես Մծբինի և Տիգրիսի միջև ընկած Թիլլե նահանգի կառավարիչն է։ Ինքն էլ դրանք ստացել է ծառայության գործակալներից։*

*Պֆայֆեր 8=Հարպեր 444։*

*«Իմ տեր թագավորին, քո ծառա Աշուր-ռիսուա։ Ողջո՜ւյն իմ տեր թագավորին։*

*Ուրարտուի հինգ կուսակալներ մտան Ուեսի։*
*Սեթինու՝ կուսակալ [.......]տեննի,*
*Կակկադանու, որ Ուկկայի դիմացն է մնում,*
*Սակուատա՝ «կուսակալ» Կանիումի,*
*Սիպլիա՝ «կուսակալ» Ալզիի,*
*Տուտու՝ «կուսակալ» Արմիրալիուի։*

*Սրանք են նրանց անունները։ Ուղտերի քարավանի երեք հրամանատարների հետ միասին նրանք մտան Ուեսի։ Այժմ երբ նրանք իրենց զոր-*

---

[1] **R. F. Harper**, Assyrian and Babylonian Letters, I—XI vol., *1892—1911*. **R. Pfeiffer**, State Letters of Assyria. A Transliteration and Translation of *3550* Official Assyrian Letters dating from the Sargonid Period, *1935*. *Քսան նամակ՝ ներառյալ մի քանիսը Ուրարտուի վերաբերյալ, թարգմանված* Cornelis van Gelderen-*ի կողմից*, Ausgewählte babylonysch-assyrische Briefe. Beiträge zur Assyriologie und semitischen Sprachwissenschaft, herausg. v. F. Delitzsch und P. Haupt, *1902, էջ 501—545։*

քերը բերել են, նրանց բանակն ուժեղացել է։ Թագավորը Տուրուշպայից գնաց Կանիուն։

Գալով իմ տեր թագավորի «լրտեսների ուղարկում» հրահանգին, ես նրանց ուղարկեցի երկու անգամ. ոմանք վերադարձել և տեղեկություններ են բերել, մյուսները դեռևս չեն վերադարձել»։

Պֆայֆեր 9=Հարպեր 492։

«Իմ տեր թագավորին, քո ծառա Աշուր-ռիսուա։ Ողջո՛ւյն իմ տեր թագավորին։ Նիսան ամսի մեկին ուրարտացին գնում է Տուրուշպայից Էլիսադու։ Կակկադանու թուրթանը գնացել է Ուեսի, նա տարել է Ուրարտուի բոլոր զորքերը։ Թագավորը գնացել է Էլիսսադու...» (պակասում է)։

Պֆայֆեր 10=Հարպեր 380։

«Իմ տեր թագավորին, քո ծառա Աշուր-ռիսուա։ Ողջո՛ւյն իմ տեր թագավորին։ Երեք հազար հետևակազոր, կառավարիչներ, պաներ, որոնք պատկանում են իմ նահանգի դիմաց գտնվող նահանգի կուսակալ Սեթինիին, իմ աչքի առջև գնացին Մուսասիր։ Նրանք անցան Սալմու (Սև) գետը։ Նրանց լծկան անասունները, Սեթինիի երամակը գնում են առջևից։ Գալով Սունաիին, այն նահանգի կուսակալին, որը գտնվում է Ուկկաի դիմաց, նրա զինվորները ճանապարհ ընկան դեպի Մուսասիր։ Ես լսել եմ, որ թագավորը Ուեսի է գնալու։ Նա դեռ չի մեկնել»։

Պֆայֆեր 11=Հարպեր 197։

«Իմ տեր թագավորին, քո ծառա Սեննաքերիբ։ Ողջո՛ւյն իմ տեր թագավորին։

Ամեն ինչ լավ է Ասորեստանի համար, ամեն ինչ լավ է տաճարների համար, ամեն ինչ լավ է թագավորի բերդերի համար։ Թող թագավորը լավ տրամադրություն ունենա։

Ուկկա երկրից ինձ հաղորդել են հետևյալը. «Երբ Ուրարտուի թագավորը գնաց Կիմմերների երկիրը՝ նրա բանակը լրիվ ջարդվեց։ Իսկ թագավորին և նրա կուսակալներին մենք բերինք իրենց մնացյալ ուժերի մոտ...»։

Այսպիսին է Ուկկայի տեղեկագիրը։

Աշուր-ռիսուան ուղարկել է հետևյալը. այն տեղեկությունը, որ ես նախապես ստացել էի՝ ճշգրիտ է։ Ահավոր ջարդ է կատարվել նրանց միջև։ Ներկայումս երկիրը խաղաղ է։ Նրա մեծամեծներն իրենց տներն են վերադարձել։ Նրա թուրթան Կակկադանուն կալանավորված է։ Ուրարտուի թագավորն Ուազաունի մարզումն է։ Այսպիսին է Աշուր-ռիսուայի տեղեկագիրը։ Խալսուի կուսակալ Նաբուլիուն ինձ գրում է հետևյալը. «Երբ սահմանների երկայնքով մեկ գտնվող բերդերի պահակազորքերին

ես նամակ գրեցի Ուրարտուի թագավորի մասին տեղեկություններ խընդրելու համար, նրանք ինձ պատասխանեցին հետևյալը. երբ նա հասավ Կիմմերների երկիրը, նրա բանակը լրիվ ջարդվեց։ Նրա մեծամեծներից երեքն սպանվեցին, բայց ինքը փրկվեց և վերադարձավ իր երկիրը. այնուհանդերձ նա իր ճամբարը դեռ չի հասել։ Այդպիսին է Նաբուլիուի տեղեկագիրը։

Մուսասիրի թագավոր Ուրզանան, նրա եղբայրն ու որդին գնացին ողջունելու Ուրարտուի թագավորին։ Խուբուշկիա երկրի բանբերը նույնպես գնաց ողջունելու թագավորին։

Սահմանների երկայնքով մեկ գտնվող բոլոր բերդերի պահակազորքերը նույնն են հաղորդում։

Ես ուղարկում եմ տեր թագավորին տիկին Ախատաբիշայի սեղանապետ Նաբուլիուի նամակը, որ բերել են Թաբալից»։

Գործակալները Ուրարտուի թագավորի անունը չեն նշում։ Ո՞վ է նա, որ պայքարել է կիմմերների դեմ, և ե՞րբ են տեղի ունեցել նամակում հիշատակված իրադարձությունները։

Ամենաարժանահավատ հեղինակությունները, որոնք քննարկել են ասուրական նամակագրական գրականությունը, գտնում են, որ խոսքը Ռուսայի որդու և հաջորդի՝ Արգիշտիի մասին է, և կիմմերական ճակատամարտը վերաբերում է 707 թվականին, իսկ ասուրական ճակատում զինվորական տեղաշարժերը՝ 708 թվականին[1]։ Սակայն Ախատաբիշայի սեղանապետի նամակը, որի մասին Սարգոնին ուղղած իր տեղեկագրում նշում է Սեննաքերիբը, բավական է այդ ժամանակագրությունը խախտելու համար։

Ախատաբիշան Սարգոնի աղջիկն է, որին նա կնության էր տվել Թաբալի թագավոր Ամբարիդիին՝ 717 թվականին, և որի տիրապետությունները նա միևնույն ժամանակ ավելացրել էր։ Հակառակ այս շնորհներին, Ամբարիդին անցել էր Սարգոնի թշնամիների՝ Ուրարտուի Ռուսայի և Մուշկիի Միտայի կողմը։ Դրա համար նա պատժեց ապերախտ փեսային՝ հարձակվելով նրա վրա և գերի վերցնելով նրան ու կնոջը 712 թվականին, ուրեմն, Ռուսայի վրա տարած հաղթանակից հետո։ Թաբալը նա դարձրեց պարզապես ասորական մի նահանգ։ Դրանից հետևում է, որ Թաբալից ստացված սեղանապետի նամակն անպայման ավելի առաջ է եղել, քան 712 թվականը, որ Թաբալի կործանման և Սեննաքերիբի հիշատակած իրադարձությունների տարին է, այսինքն՝ Ուրարտուի թագավորի պա-

---

[1] **A. T. Olmstead,** History of Assyria, *1923, գլ. 22,* **Letters** from the Armenian Front, *էջ 258—267։* **Pfeiffer**, *նշ. աշխ., ուր նա ամենուրեք և իզուր մտցրել է Արգիշտիի անունը։* **C. H. W. Johns**, Laws, *էջ 338։*

*տերազմը կիմմերների դեմ պետք է ավելի առաջ եղած լինի, քան 712 թվականը*[1]*։*

*Իր հորն ուղղած մեկ ուրիշ նամակում Սեննաքերիբը ասում է, թե՝ պալատի պետի տեղակալը եկել է ինձ մոտ և ասել ինձ. «Ուրզանան գրել է հետևյալը՝ երբ Ուրարտուի թագավորը Կիմմերների երկիրը գնաց, նրա զորքերը ջարդվեցին, նա պարտվեց, և Ուասիի կուսակալը սպանվեց»*[2]*։*

*Ուրզանան իր երկրից վտարվել էր Սարգոնի կողմից 713 թվականին, Ուրարտուից նահանջելու ժամանակ։ Նրա նամակը գրվել է այս թվականի թամմուզ ամսից, երբ Սարգոնը արշավանքի դուրս եկավ, ավելի առաջ։*

*Վերևում մեջբերված նամակի համաձայն, Ուրզանան իր որդու և եղբոր հետ գնացել էր ողջունելու Ուրարտուի թագավորին։ Որդու հիշատակումը այս այցելությունը տանում է ավելի առաջ, քան Սարգոնի կողմից Մուսասիրի կողոպուտը 713 թվականին, որովհետև հենց այդ պահից նա Ասորեստանի թագավորի գերին էր և նրա հետագա ճակատագրի մասին ոչինչ հայտնի չէ։*

*Ուրզանան, ուրեմն, Ռուսային այցելել էր կիմմերական ճակատում նրա պարտությունից հետո։ Թուրթան Կակկադանուն, որը գերի է ընկնում ճակատամարտում, նիսան ամսի մեկին գտնվում էր Ուեսիում։ Եթե կիմմերական պատերազմը տեղի է ունեցել 713 թվականին, որը համարյա ստույգ է, ուրեմն, այն ծավալվել է նիսանի մեկից հետո և թամմուզ ամսից առաջ, երբ սկսվեց Սարգոնի արշավանքը, կամ ավելի շուտ՝ Սարգոնի Մանա գալուց առաջ։*

*Իրադարձությունները իրար են հաջորդել հետևյալ կարգով։ Սարգոնը պատրաստություններ է տեսնում Զիկիրտուի և Անդիայի երկրների դեմ արշավելու համար։ Այդ երկրների թագավորները սարսափահար դիմում են Ռուսային և նրանից օգնություն հայցում։ Սարգոնի գործակալը նամակով նախազգուշացնում է նրան՝ «Բանբերները եկան Ուեսի։ Նրանք նրան (ուրարտական թագավորին) ասացին՝ «Աշշուրի թագավորը մեզ վրա է հարձակվելու»։ Երբ Ուրարտուի թագավորը տեսավ բանբերներին, մեկնեց...»*[3]*։ Ուրարտուի թագավորն օգնություն է խոստանում վտանգի ենթարկված երկրներին։ Նրա հրամանով իր կուսակալներից հինգը իրենց*

---

[1] Thureau-Dangin, *Ն. աշխ.,* Ներածական, XIV—XV, *հենվել է այս փաստի վրա, որպեսզի եզրակացնի, թե կիմմերների հաղթանակը հավանաբար նախորդել է 714 թ., այսինքն՝ 713 թ. արշավանքին։*

[2] Harper, *1079։ Նշված է Թյուրո-Դանժենի կողմից (Ն. աշխ., 15) ըստ* Thompson-*ի՝* «American Journal of Semitic Language», XVII, *էջ 165։*

[3] Harper, *515։ Այս նամակը չի մտել Պֆայֆերի ժողովածուի մեջ։ Այն նշված է Թյուրո-Դանժենի կողմից, Ն. աշխ., էջ 6, ըստ* Zeitlin-*ի՝* Le style administratif, *էջ 26։*

զորքերով մեկնում են Ուեսի, Ուրարտուի սահմանամերձ կայանը (Բաշկալայում կամ նրա մոտ)։ Սեթինի նահանգապետը և Ուկկայի նահանգապետն ուղևորվում են դեպի Մուսասիր՝ Ուրարտուի վասալ այդ երկրում զոհ մատուցելու համար։

Ասուրական արքունիքը մտահոգված միջամտում է և Ուրզանայից ստանում է պատշաճ պատասխան, որը մենք բերում ենք այստեղ.

«Ուրզանայի նամակը պալատի արքունապետին. ողջո՛ւյն քեզ։

Այն մասին, որ դու ինձ գրել ես, «Ուրարտուի թագավորը և իր զորքերն եկե՞լ են քո կողմերը։ Գալի՞ս է նա։ Ո՞ւր է նա», (ահա իմ պատասխանը)՝ «Ուասիի և Ուկկայի (այսինքն՝ Ուկկայի դիմացի նահանգի) նահանգապետները հասել են, նրանք իրենց աղոթքները կատարեցին տաճարում և ասացին՝ թագավորը գալիս է, նա Ուասիումն է։ Մյուս նահանգապետները Մուսասիր կգան ավելի ուշ՝ իրենց աղոթքը կատարելու»։ Գալով քո գրածին՝ «Առանց (Ասորեստանի) թագավորի հրամանի ոչ ոքի թույլ մի տուր մասնակցելու պաշտամունքին», (պատասխանում եմ)՝ «Երբ Աշշուրի թագավորը գալիս էր, ես դրի ինձ նրա տրամադրության տակ. ես պարտական եմ անել այն ամենը, ինչ որ միշտ արել եմ, և դա նրա (Ուրարտուի թագավորի) նկատմամբ պատշաճ պարտականություն է»[1]։

Մուսասիր եկող Ուասիի և Ուկկայի նահանգապետները համապատասխանաբար Սեթինին ու Սունաին են, որոնց Մուսասիր մեկնելը մեզ հայտնի է վերոհիշյալ նամակից։ Ուկկայի նահանգապետ ասելով՝ հասկացվում է Ուկկայի դիմացի նահանգի նահանգապետ, որն էր Սունաին։ Ուկկան քիչ թե շատ անկախ իշխանություն էր։ Սեթինիի նահանգի անունը տեքստից դուրս է ընկել, բայց հավանական է, որ վերջինը գտնվում էր Բոհտանում, Ջուդիի մոտ։

Ուրարտական զորքերի ներկայությունը Մուսասիրում մտահոգիչ էր Ասորեստանի համար, մանավանդ այն պահին, երբ նա պատրաստվում էր արշավելու Զիկիրտուի և Անդիայի դեմ։ Սարգոնի պալատի արքունապետը չի թաքցնում իր մտահոգությունը, այն աստիճան, որ հավակնում է կարծել, թե առանց ասուրական իշխանությունների թույլտվության ոչ ոք չպետք է համարձակվի, նույնիսկ բարի նպատակով, Մուսասիր գալ։ Սարգոնի հավակնությունն անհեթեթ է, իսկ Ուրզանայի պատասխանը, որով նա պաշտպանում է պաշտամունքի ազատությունը, պետք է գնահատել ըստ արժանվույն։ Ուրարտական ուժերի ներկայությունը Մուսա-

---

[1] **Harper**, *409*, **Pfeiffer**, *3*։ Ուրզանայի պատասխանը ավելի կոռեկտ է, քան երևում է Շեյլի թարգմանության մեջ՝ Recueil de Travaux, XIX, *63*, կատարված վատ կարդացված տեքստից և վերարտադրված Թյուրո-Դանժենի կողմից, ն. աշխ., էջ XII։

սիրում՝ Սարգոնին արգելակում է Ռովանդուզի կարճ ճանապարհով գնալու դեպի Մանա և Զիկիրտու ու նրան ստիպում շրջանցում կատարել Փոքր Զաբի ավազանով։ Նիսանի մեկին Ուրարտուի բանակի գլխավոր հրամանատար Կակկադանուն իր ուժերն արդեն կենտրոնացրել էր Ուեսիում, սպասելով իրադարձություններին։

Կիմմերական հրոսակների անակնկալ ասպատականությունն ամեն ինչ փոխեց։ Ուրարտական բանակն շտապում է ասպատակողների դեմ։ Պարտությունը կատարյալ է. ինը գլխավոր առաջնորդներ մնում են ճակատամարտի դաշտում[1], գլխավոր հրամանատարը գերի է ընկնում։ Թագավորը փախչում և վերադառնում է Ուազաուն, որը, գուցե, նույն Ուեսին է։

Ուրզանա թագավորը, որպես հավատարիմ վասալ, գալիս իր հարգանքներն է մատուցում և մխիթարում է նրան։ Խուբուշկիայի թագավորը նույնն է անում իր պատվիրակի միջոցով։

Այդ ընթացքում Սարգոնն արշավանքի է դուրս գալիս։ Հասնելով Զիկիրտուի սահմանին, այսինքն՝ իր նպատակին, հանկարծ նա ետ է դառնում դեպի Ուրարտու։ Կարելի է շատ իրավամբ կարծել, որ Ռուսայի պարտության լուրը նրան հաղորդել էր այդ պահին իր որդին՝ Սեննաքերիբը, որն իր հերթին լուրն ստացել էր բազմաթիվ գործակալներից և նույնիսկ Ուրզանայից։

Սարգոնն Ուաուշի ճակատամարտում հաղթանակ է տանում Ուրարտուի թագավորի և նրա դաշնակից Զիկիրտուի և Անդիայի իշխանների դեմ։ Ռուսան իր երկիրն է փախչում։ Սարգոնը մտնում է Ուրարտու, ավերիչ ասպատակություն է կատարում առաջ խաղալով մինչև Վանա լիճը։ Սակայն հանկարծ նահանջում է, որպեսզի շտապ կերպով գնա պատժի Ուրզանա թագավորին, «այդ չար լեռնցուն, որն ապստամբել էր,— ասում է նա,— և որն ընդհատել է իմ առաջխաղացումը»[2]։ Այս պատճառաբանությունը համոզիչ չէ։ Այնքան հզոր մի թագավոր միշտ բավական ժամանակ կունենար պատժելու Ուրզանայի նման հակառակորդին։ Որպեսզի այդ հաղթական առաջխաղացումից հրաժարվեր՝ ավելի լուրջ պատճառներ էին պետք։ Թվում է, թե Սարգոնը շարունակում էր երկյուղ կրել Ռուսայից։ Նա Ուրզանային մեղադրում էր «Ռուսային նենգավոր տեղեկություններ հաղորդելու մեջ»[3]։ Ռուսան և Ուրզանան արդյո՞ք չէին մտածում մի գործողության՝ միացյալ հարձակում կատարելու մասին։ Այս հարցը բոլորովին ավելորդ չէ, եթե հիշենք, ինչպես հետագայում

---

[1] Harper, 646, նույնպես E. Klaber, Assyrisches Beamtentum, էջ 70։

[2] Ուղերձ, VIII, 310—311 տողեր։

[3] Տարեգրություն, 123—124 տողեր։

կտեսնենք, Ռուսայի որդու՝ Արգիշտիի սպառնալից դիրքը Սարգոնի նկատմամբ, իր հոր մեռնելուց քիչ հետո։

Սարգոնը անցավ Մուսասիր և կողոպտեց թագավորական պալատի ու Խալդի աստծու սրբավայրի ամբողջ հարստությունը։ Ռուսան, որ Ուասուշի պարտությունից հետո «երկնող կնոջ նման անկողին էր նետվել, հրաժարվել էր սնունդ ու խմելիք ընդունել, անբուժելի հիվանդություն էր սրսկել ինքն իրեն», հենց որ լսեց Մուսասիրի կործանումը, «փռվեց հողի վրա, պատառոտեց իր հագուստները, երկու բռունցքով սեղմեց իր սիրտը և փորի վրա գետին տապալվեց։ Նրա սիրտը լի էր զայրույթով, աղիքները գալարվում էին բարկությունից, նրա բերանից ցավատանջ ձայներ էին լսվում»[1]։

Ասուրական դպիրի շատախոսության ներքո պետք է հասկանալ, որ Ռուսան հիվանդացել է. հետագա վավերագրերը խոսում են Ռուսայի ինքնասպանության մասին. «Աշշուրի փառքը կործանեց Ռուսային, իր սեփական երկաթյա սրով խոզի նման ծակեց սիրտը և վերջ տվեց իր կյանքին»[2]։

Սարգոնի ութերորդ արշավանքն ավելի արդյունավետ չեղավ, քան իր նախորդներ Սալմանասար III-ի կամ Թիգլաթպալասար I-ի արշավանքները։ Մի քանի գիտնականներ սովորություն ունեն Սարգոնի հաջողությունները չափազանցել, մինչև իսկ նրան վերագրել ամբողջ Ուրարտուի գրավումը։ Իրականությունը, սակայն, շատ ավելի դժգույն է, և արշավանքի քաղաքական նշանակությունը՝ համարյա ոչինչ։

Մենք կարող ենք կրկնել ժամանակակից պատմաբաններից մեկի լուրջ կարծիքը Սարգոնի մասին՝ «Այնքան խնամքով պատմված ութերորդ արշավանքը միայն սովորական ասպատակություն էր, ցուցադրական ու կործանիչ, բայց տևական հետևանքներից զուրկ։ Արշավանքի պատմությունը արժանի է ուշադրության իր գրական ոճի, Սարգոնի բնավորության լուսաբանման և այն զարմանալի հայտնագործության համար, թե ինչպիսի բարձր քաղաքակրթության էին հասել ուրարտական երկրները»[3]։

Հետևյալ տարիներին Սարգոնը զինվում է Եփրատից այն կողմ գտնըվող փոքր պետությունների դեմ՝ Ուրարտուի հանդեպ նրանց ունեցած քաղաքական ակներև հակման պատճառով, հակառակ վերջինի 713 թվականի պարտությանը։ Այդ պետությունների թագավորները հետզհետե

[1] **Ուղերձ**, *150—151 և 411—413 տողեր։*

[2] **Տարեգրություն**, *137—139 տողեր՝ Հ. Վինկլերի հրատարակությամբ։ Այս տեղը Թյուրո-Դանժենի կողմից վերանայված է,* **Ութերորդ արշավանքի ուղերձ**, *էջ 75, նույնպես* **Ցանկեր**, I, *77։*

[3] **Olmstead,** History of Assyria, *էջ 242։*

կորցրին իրենց թագերը, և երկրները դարձան ասորեստանյան նահանգներ. Թաբալի թագավոր և Սարգոնի փեսա Ամբարիդին՝ 712 թվականին, 711 թվականին՝ Մելիտենեի թագավոր Թարխունազին, 710 թվականին՝ Գուրգումի (Մարաշի) թագավոր Մուտալլուն. սրանք մինչև իրենց կյանքի վերջը մնացին գերության մեջ։ Ուրարտուի դեմ իր տիրապետությունները ապահովելու համար Սարգոնը կառուցեց հինգ բերդ ուրարտական սահմանի մոտ՝ Լուխսու, Բուրդիր, Անմուրու, Կի(ակա) և Անդուարսալիա։ Այս բերդերի տեղը հայտնի չէ, բացի Կիակայից և, գուցե, Անմուրուից[1]։ Սարգոնը խնայեց միայն Կումմուխիի (Կոմմագենե) թագավոր Մուտալլուին և նույնիսկ սիրալիր վերաբերմունք ցուցաբերեց՝ շնորհեց նրան Մելիդ (Մելիտենե) քաղաքը։ Սակայն դա երկար չտևեց։ 707 թվականին Մուտալլուի հերթն էլ եկավ։ Սարգոնի թուրթանը հարձակվեց Կումմուխիի վրա, կործանեց նրա 62 բնակավայրերը և տեղահանեց ժողովրդին ու թագավորական ընտանիքը։ Մուտալլուն չարաչար պատժվեց տարեկան հարկը վճարած չլինելու համար։ Նա միացել էր Ուրարտուի թագավորին, և դա էր հենց նրա դժբախտության իսկական պատճառը։ Մուտալլուն «անմիտ և նենգավոր մարդ էր,— ասում է տեքստը,— այլևս չվախենալով աստվածների անուններից՝ չարություններ էր դավում, մտադրվում էր վրեժ լուծել, հույս ունենալով Ուրարտուի թագավոր Արգիշտիի վրա՝ մի նեցուկ, որը չէր կարող նրան փրկել»։

Արգիշտին Ռուսայի հաջորդն է։ Հետևաբար, Ուրարտուն Եփրատի ավազանում, գոնե իր դաշնակիցների նկատմամբ, դեռևս պահպանում էր իր հեղինակությունն ու ազդեցությունը։ Արգիշտին ավանդական պայքարը շարունակեց Ասորեստանի դեմ Սարգոնի թագավորության վերջին տարիներին և նրա հաջորդ Սեննաքերիբի ժամանակ։

## 4. ԱՐԳԻՇՏԻ II ԵՎ ՍԵՆՆԱՔԵՐԻԲ

713 թվականի աղետը, հակառակ մի քանի գիտնականների կարծիքի, Ուրարտուի ուժը չէր ջախջախել։ Արգիշտին ավելի ուժգնությամբ վերսկսում է պայքարը և նոր գլուխ է բացում ասուրա-ուրարտական հարաբերությունների պատմության մեջ։

Պաշտոնական գրությունները այս գլխի վերաբերյալ կատարյալ լռություն են պահպանում։ Բայց գործակալների գաղտնի զեկույցները

[1] Forrer-ը, Die Provinzeinteilung, էջ 75, կարծում է, որ Անմուրուն Կեբան-Մադյոյի դիմաց գտնվող Նեմերլի գյուղն է. Բուրդիրը կամ Պուրտիրը նա Զիմարայի մոտ գտնվող Պուրտեյր-լուի մեջ է տեսնում, որը, սակայն, Մելիտենեից շատ հեռու է, ուրեմն և չի կարելի այդ կարծիքն ընդունել։ Անմուրուն, գուցե, բյուզանդական Ամարան է։

մի անգամ ևս անգնահատելի ծառայություն են մատուցում երկու հակառակորդների դիրքը թաքցնող քողը բարձրացնելով։ Պայքարում Ուրարտուն նախաձեռնությունն իր ձեռքն է վերցնում։ Ասորեստանը, ընդհակառակն, ստիպված է պաշտպանողական դիրք գրավել։ Ահա թե ինչ են ասում այս առթիվ Ամիդ նահանգի կուսակալ Ուպախիր-Բելի նամակները։

Պֆայֆեր 6=Հարպեր 424։

«Իմ տեր թագավորին, քո ծառա Ուպախիր-Բել։ Ողջո՛ւյն իմ տեր թագավորին։

Երկրի համար ամեն ինչ լավ է։ Բերդերի համար ամեն ինչ լավ է։ Թո՛ղ իմ տեր թագավորի սիրտն ուրա՜խ լինի։

Ես երկու լրտես ուղարկեցի՝ Ուրարտուից նոր տեղեկություններ ստանալու համար, նրանք լրտեսել և ներկայացրել են հետևյալ զեկույցը. «Մեր դիմացի նահանգապետը ուրարտական Խարդայումն է, իր փոխնահանգապետի հետ։ Նա պահպանում է sukallu-ի դիմացի շրջանը։ Մեկ քաղաքից մյուսը՝ մինչև Տուրուշպա, կայազորները կարգով շարված են»։

Արգիշտին սուրհանդակ է ուղարկել նահանգապետին՝ հետևյալ հրամանով. «Այն գործի մասին, որ ես քեզ հրամայել էի, դու չես կատարի, կերակրի քո ձին, մինչև որ քեզ նոր սուրհանդակ ուղարկեմ»։ Գալով գերաններին, նրանք պահվել են Էզիատ քաղաքում։ Ես ուղարկեցի խոուայցիներին քաղաքագլխի հետ միասին։ Ես նրանց փութացրի մարտի դաշտով։ Նրանց քաղաքապետների փոխանորդը և ինը զինվորներ աղեղով վիրավորվել են, նրանցից երկուսը մահացել են։ Նրանց զինվորներից երեքը վիրավորվել են։ Սրանք են նրանց տված նոր տեղեկությունները։ Պալատի խոուայցիները Եփրատից վերադարձել են ինձ մոտ։ Նրանք մեկնեցին իմ sukallu-ի (ներկայացուցիչ) հետ։ Ես արագացրի նրանց մեկնումը։ Նրանք քաղաքից հեռացան մեկ կամ երկու ընտանիքով։

Թո՛ղ իմ տեր թագավորը գրել տա ցեղապետների մասին։ Նրանց հետ կարելի է ուղարկել թագավորական զորքերը։ Թո՛ղ նրանք ինձ հետ միասին Շուբրուքայի պաշտպանության պարտականությունը կատարեն. մենք պետք է (երկիրը) վերցնենք հունձքից առաջ»։

Պֆայֆեր 5=Հարպեր 548։

«Իմ տեր թագավորին, քո ծառա Ուպախիր-Բել։ Ողջո՛ւյն իմ տեր թագավորին։ Ողջո՛ւյն թագաժառանգին։ Ամեն ինչ լավ է բերդերի համար։ Թո՛ղ իմ տեր թագավորի սիրտը ուրա՜խ լինի։

*Իմ սուրհանդակը գնաց Ուրարտուի մասին նոր տեղեկություններ բերելու։ Նահանգապետը...... իմ հրամանով, ես նրան ուղարկեցի, նա եկել է։ Թագավորի հրահանգների համաձայն, նա նրան (Արգիշտիին) կասի.* «Էլ ի՞նչ բարեկամներ ենք մենք, երբ դուք գրավում եք մեր բերդերը: Իսկ ես ի՞նչ պետք է անեմ: Եթե որևէ վնաս եմ պատճառել ձեր սահմաններին և ձեր բերդերին՝ սուրը ձեռքումս է»:

*Նրա ուժերը հավաքվել են իր հրամանի տակ. նա Խարդայի պաշտպանությունն է կատարում։ Այդ է նրանից ստացված նոր տեղեկությունը»։*

*Պետք է նշել, որ առաջին նամակում Ուրարտուի թագավորը հիշատակված է իր անունով։ Դա միակ դեպքն է։ Այդ նամակների հեղինակը՝ Ուպախիրը (կամ Նաշխուրը, ինչպես ասում է Ցորերը), կուսակալն էր Ամիդ (Դիարբեքիր) նահանգի, որն այլ կերպ կոչվում էր Նաիրի նահանգ։ Այդ նահանգը սահմանակից էր Ուրարտուի այն նահանգին, որի կենտրոնատեղին Խարդան էր։ Մենք այն նույնացնում ենք հայկական Հարտբերդի (Խարբերդ), այսօրվա Հար-բերդի կամ Խարպուտի հետ[1]։ Նաիրին, ուրեմն, տարածվում էր մինչև Ալզի ուրարտական նահանգը (հետագայի Անզիտենեն)։ Այն ցեղապետները, որոնցից Ուպախիրն օգնություն էր հայցում, Ուլլուբայի և Շուպրիայի (հետագայի Արզանենեն) իշխաններն էին։ Նրանք ազատվել էին երկու մեծ հարևանների ազդեցությունից և բուֆերային պետությունների դեր էին կատարում երկու մրցակիցների միջև։ Քանի որ նրանք Ամիդ նահանգի հարևաններն էին, պետք է ենթադրել, որ այդ նահանգը Մեծ Ծոփքի որոշ մասն էր կազմում։*

*Նվաստ խոսքերը, որ Սարգոնի հրամանով ասորեստանցի պատվիրակը պետք է արտասաներ Արգիշտիի դիմաց, անսպասելի են երևում և չեն համապատասխանում նույն թագավորի տարեգրության և հիշատակարանների վերամբարձ ոճին։*

*Նա, որ պարծենում էր, թե Ուրարտուի հարյուրավոր բերդեր է քարուքանդ արել, այժմ հնարավոր է համարում խոսել բարեկամության մասին և հաստատել, որ ինքը ոչ մի վնաս չի պատճառել Ուրարտուի բերդերին։*

*Այնուհանդերձ, Ռուսայի հաջորդը բոլորովին տրամադրված չէր զենքերը ցած դնելու, «նա կերակրում էր իր ձիուն», որպեսզի հաշիվները մաքրի մոռացկոտ, եթե ոչ սնապարծ, մի ագրեսորի հետ, որը չափազանցել էր իր կատարած ավերումներն Ուրարտուում։ Արգիշտին ճնշում էր Ասորեստանին նույնպես արևելյան Տիգրիսի ավազանում։ Սեննաքերիբն իր հորը զեկուցում է, որ նամակ է ստացել, որտեղ «Արիաեն կըրկ-*

---

[1] *Մայաֆարկինի հյուսիսում մի գյուղ կա, որ Հալդա է կոչվում՝ Զախարիա Հռետորի Բեթ-Հալտեն, էջ 172։*

նում է Ուրարտուի թագավորի հրամանն իր կուսակալներին՝ «Ձեր ունեցած զորքերով բռնեցեք Ասորեստանի թագավորի նահանգապետներին Կումայայում և քարշ տվեք նրանց ինձ մոտ»։ Սեննաքերիբն ավելացնում է, որ նրանք դեռևս չեն գործադրել հրամանը, բայց Արիաեն շատ մտահոգված է և աղերսում է, որ անհապաղ զորքեր ուղարկվեն։

Երկու այլ սուրհանդակներ մասնակից են այս իրադարձությանը։ Ըստ մեկի՝ Ուկկաիի բնակիչները մի սուրհանդակ են ուղարկել Ուրարտու և գրավել են Կումայա և Էլիսկի քաղաքները. ըստ մյուսի՝ Ուկկաին հարձակվել է Արզաշկայի վրա, և նրա բնակիչները Սեննաքերիբից պահանջում են ետ մղել ուկկաեցիներին[1]։

Տվյալ երեք երկրները՝ Կումայան, Ուկկաին (կամ Ուկկան) և Արզապիան փոքր իշխանություններ էին ուրարտա-ասուրական սահմանների վրա, Արևելյան Տիգրիսի ջրերում կամ ավելի հարավ, նույն դերում, ինչ որ Ուլլուբան ու Շուպրիան՝ Արևելյան Տիգրիսի ավազանում։ Ուկկաին նույնիսկ ներկայացնում էր իրեն որպես թագավորություն, և նրա թագավորը կոչվում էր Մանիաի։ Արիաեն, որը Սեննաքերիբից օգնություն էր խնդրում, Արիզաեի հետ կառավարում էր Կումայայի երկիրը որպես անկախ կառավարիչ և ոչ թե Ասորեստանի պաշտոնյա։ Արիաեն ներկայացնում է իրեն որպես Ասորեստանի կառավարիչ, անշուշտ, իր առաքելությունը ավելի հաջողությամբ պսակելու համար։ Ուկկաեցիները հարձակվել էին Կումայայի վրա, անտարակույս, քաջալերվելով Արգիշտիի կողմից, որին սուրհանդակ էին ուղարկել։ Նրանք իրենց պատրաստակամությունն էին հայտնել՝ կատարել Արգիշտիի հրամանը, այն է՝ «բռնել Կումայայի կառավարիչներին, այսինքն՝ Արիաեին և Արիզաեին»։ Հիշենք, որ ուկկաեցիները վերոհիշյալ նամակում Ռուսայի պարտության մասին հայտնելով՝ ավելացնում էին, թե «թագավորին վերադարձրինք իր ճամբարը»։ Նրանք, ուրեմն, չէին թաքցնում իրենց համակրանքն Ուրարտուի նկատմամբ և, ակներևաբար, կիմմերների ապստամբության ժամանակ Ռուսային օգնական զորքեր էին ուղարկել։ Այս դրվագն ապացուցում է, որ Արգիշտի թագավորը իրեն համարում էր դրության տեր և որ նրա պետության սահմանները տարածվում էին մինչև Արևելյան Խաբուրի ակունքները, ուր գտնվում էին Ուկկաին, Կումայան ու Արզապիան։ Վերջին երկիրը նույնպես դժգոհում էր Ուկկաիի ասպատակությունից։

Հետևաբար, ճիշտ չէ պնդել, ինչպես անում են շատ գիտնականներ, թե Սարգոնը հպատակեցրել էր Ուրարտուի արևելյան մասը և այն ավերել։

Սարգոնը տեղի չտվեց Արգիշտիի գրգռումներին։ 705 թվականին

---

[1] Olmstead, էջ 263—4։

նա դուրս եկավ Թաբալի դեմ, որ կարծես թոթափել էր ասուրական լուծը[1], և անհայտ պայմաններում մահացավ։

Նրան հաջորդեց Սեննաքերիբը (705—681 թ.)։ Նա որոշեց պատժել Ուկկաին և արշավանքի դուրս եկավ նախ՝ Նիպուրի լեռնցիների դեմ, որոնք չէին հպատակվել Ասորեստանի իշխանությանը։ Նիպուրը Ջեզիրեթ իբն Ումարի դիմաց գտնվող Ջուդի լեռն է։ Սեննաքերիբը՝ արքայական պատգարակի վրա նստած, իրեն տանել տվեց լեռան գագաթը, ուր «լեռների սառն աղբյուրներից ջուր խմեց» և վերադարձավ իր ճամբարը, որ թողել էր լեռան ստորոտում։

Նա գրավեց յոթ քաղաք, որոնցից Տումուրրին, Կիբշուն, Քանան ավերեց և հրկիզեց[2]։

Տումուրրին հայ պատմագիրների Տմորիքն է։ Կիբշուն այժմյան Գեֆշե գյուղն է՝ Զախոյից փոքր հեռավորության վրա, Արևելյան Խաբուրի ափին։

Ապա Սեննաքերիբը «ետ դարձավ և մեկնեց Դայե երկրի Ուկկի քաղաքի անհնազանդ թագավոր Մանիաիի դեմ»։ Անանց ճանապարհով, սեպաձև լեռների միջով, «որոնցով իր նախնիներից ոչ մեկը չէր թափանցել», թագավորն անցավ Անարա և Ուպպա լեռների ստորոտը։ Նա այնտեղ թողեց իր ճամբարը, իսկ ինքը, պատգարակի վրա բազմած, իր պահակախմբի ընկերակցությամբ առաջ խաղաց դեպի մեծ լեռների անցքը։ Այդ տեսնելուն պես Մանիաին լքեց իր գահանիստ ապարանքը և անհետացավ։ Սեննաքերիբը հարձակվեց Ուկկուի վրա, կողոպտեց պալատը, թալանեց Մանիաիի ամբողջ հարստությունը, ավերեց նրա 33 բնակավայրերը, գերեվարեց մարդկանց, քշեց-տարավ մանր ու խոշոր անասուններին և մնացածը բոցերի ճարակ դարձրեց[3]։

Ուկկին կամ Ուկկուն Մանիաիի մայրաքաղաքն է, նրա երկիրը կոչվում էր Դայե։ Ջուդի լեռան ստորոտից Ասորեստանի թագավորը մեկնում է դեպի արևելք, հասնելու համար վերոհիշյալ երկու լեռներին՝ հավանաբար Խաբուրի ակունքների շրջանում։ Կումայան, Արզապիան, Ուկկուն կամ Դայեն գտնվում էին մոտավորապես Խազիլի և Խաբուրի հովիտներում։

Այն լեռնաշղթայում, որը Ջուդիից ուղիղ գծով տարածվում է դեպի Զաբ, Սարգոնի նոր մայրաքաղաքից մոտ հարյուր կիլոմետր հեռավորության վրա, ապրում էին ազատ ցեղեր՝ Տումմուրին, Կումայան, Ար-

---

[1] Բաբելոնյան ժամանակագրություն, Bezold, KB, II, էջ 279։

[2] **Carl Bezold**, Inschriften Sargon's, Prisme, col. III, 66—82, E. Schrader-ի KB, II-ում։ **Luckenbill**, The Annals of Sennacherib, 1924. **Forrer**-ը, Provinzeinteilung, էջ 87, նույնացրել է Kibšu-ն Gifše-ի հետ։

[3] Պրիզմա, IV, 1—19։

զապիան, Դայեն, որոնք կազմում էին փոքր իշխանություններ և սահմանազատում էին երկու մեծ պետությունները՝ Ուրարտուն և Ասորեստանը։

Ավելի հեռու, արևելքում, երկու մեծ պետություններին իրարից բաժանում էին Խուբուշկիան ու Մուսասիրը, իսկ արևմուտքում՝ Շուպրիան և Ուլլուբան։ Չպետք է չափազանցել այն, ինչ որ Սեննաքերիբն ասում է Տումուրրիի և Ուկկուի դեմ վարած իր արշավանքների մասին։ Այստեղ խոսքն ավելի շուտ սաստման, քան թե զավթման մասին է։ Թիգլաթպալասարն արդեն զավթել էր Կիբշուն, որը Կիբշունան է, բայց հետագայում այդ քաղաքը Ասորեստանի համար այլևս կորել էր։ Դա միակն է յոթ քաղաքներից, որի վերագրավումը Սեննաքերիբի կողմից ստույգ է թվում։

Տվյալ արշավանքը տեղի ունեցավ 699 կամ 697 թվականին։ Նույն ժամանակաշրջանում Կուրբան նահանգի կուսակալը Սեննաքերիբին հաղորդում է, որ Ուրարտուի թագավոր Արգիշտիի սահմանապահ կուսակալը հարձակվել է Կուրբանի վրա և ինքը օգնություն է խնդրել մյուս երեք կուսակալներից՝ Խալսուի կուսակալ Նաբուլիուից, Աշուր-բել-իդդինայից և Աշուր-ռիսուայից[1]։ Վերջինը Թիլլեի կուսակալ՝ rab-šake-ն է։ Հայտնի չէ, թե Աշուր-բել-իդդինայի իշխանությունը որ երկրի վրա էր տարածվում։

Կուրբանը Արգիշտիի կողմից հարձակման ենթարկվելու համար պետք է որ գտնվեր Ուրարտուի սահմանի վրա և սահմանամերձ լիներ Խալսուին, որից օգնություն էր խնդրում։ Այս հանգամանքը մեզ թելադրում է Կուրբանն ու Խալսուն որոնել Խաբուրի ակունքների սահմանային գծի վրա, ուր գտնվում էր Ուկկուն, դեպի Կար-սիպարրին, ներկա Ջիբարը։ Հավանաբար, Կուրբանը գտնվում էր Ամադիայի հյուսիսում, իսկ Խալսուն՝ հարավում, կամ ավելի շուտ՝ նույն քաղաքի արևմուտքում։ Խալսուի կողքին էր տեղավորված Աշուր-բելու-դանի նահանգը։ Սա արդեն մտածել է տալիս Կիբշուի մասին, որը, Սեննաքերիբի կողմից գրավված լինելով, դարձել էր նահանգի կենտրոն։ Իրոք, այս նույն Աշուր-բել-իդդինան մի նամակում[2] ասում է, որ ինքը արդեն հպատակեցրել է Ուշխուն ու Կրուղան, երկու քաղաքներ, որոնք երկար ժամանակից ի վեր (հավանական է Սալմանասար III-ի որդու ըմբոստացումից ի վեր) չէին ճանաչում Ասորեստանի թագավորի իշխանությունը։

Ուշխուն Ջուդի լեռան ստորոտին գտնվող այսօրվա Շախն է, որը կարող էր Կիբշու նահանգին կցվել։ Վերջինի հարևանն էր Տիգրիսի աջ ափին գտնվող Թիլլե նահանգը, որի առաջնորդն էր Աշուր-ռիսուան։ Կիբշուն,

---

[1] Harper, *123, Ֆորերի նշման համաձայն,* Prov., *էջ 36. նաև* Olmstead, *էջ 381։*

[2] Harper, *246, ըստ Ֆորերի,* Prov., *էջ 36։*

Խալսուն, Կուրբանը, հանդիսանում են լեռնային իշխանությունների ամենամոտիկ, միաժամանակ և Ուրարտուին սահմանամերձ ասորեստանյան նահանգներ։

Դա չի կարող մեզ հանկարծակիի բերել։ Սեննաքերիբը ջրանցք է փորում Կիսրի քաղաքից մինչև Նինվե։ Այդ առթիվ նա ասում է. «Ես արդեն նախապես ջրերի հոսանքն ուղղել էի Ուրարտուի սահմանի վրա գտնվող Թաս հսկա լեռան մոտից դեպի իմ երկիրը»։ Արդ, Թաս լեռը Բավիանի հյուսիսումն էր։ Թագավորը այսպիսով խոստովանում է, որ Ուրարտուի տերիտորիան տարածվում էր մինչև Թաս[1]։

Արևելքում Ասորեստանի ծայրագույն նահանգը Կար-սիպարրին էր, որը գտնվում էր Մուսասիրի անմիջական հարևան Զաբի հովտում։ Սարգոնի ժամանակից Մուսասիրը դարձել էր Ասորեստանի նահանգ։ Սարգոնը ուրարտական ազդեցության ոլորտից դուրս էր բերել նաև Մանա երկիրը։ Սակայն թվում է, թե առափնյա շրջանը, Ուրմիա լճի ափին գտնվող Մեիշտա քաղաքի հետ միասին, որն Ուրարտուին էր պատկանում Իշպուինիի ժամանակից ի վեր, մնացել էր Ուրարտուի իշխանության տակ։ Աշուրռիսուան թագավորին ուղղված մի նամակում հաղորդում է, որ «(Ուրմիա) լճի ափին գտնվող շրջանում Ուրարտուի քաղաքների մանեացիներն ընդվզել են, կատարել են կողոպուտներ և փախել են։ Մուսասիրի կուսակալ Աբալուկունը և Կար-սիպարրիի կուսակալ Թուննաուն գնացել են Մանայի սահմանները՝ հսկողություն կատարելու համար։ Ուրարտուի թագավորը Տուրուշպայումն է իր կուսակալների հետ միասին»[2]։

Այս իրադարձությունը 713 թվականից ավելի ուշ է եղել, քանի որ Մուսասիրում նշված է ասորեստանյան կուսակալի առկայությունը[3]։ Մենք տեսանք, որ Մուսասիրն իր անկախությունը կորցրեց 713 թվականին, Սարգոնի ութերորդ արշավանքի ժամանակ։ Ուրարտուի թագավորը, ուրեմըն, Արգիշտին է։ Նրա անվան նշումը Մանայում կատարված խառնակությունների առթիվ, խառնակություններ, որ, գուցե, հետևանք էին ասորեստանցի գործակալների գրգռման, ասուրական զորքերի գալը, ընդնըշմարել է տալիս, որ Ուրարտուի թագավորը պատրաստվում է Մանայի վրա հարձակվելու՝ իր գերիշխանության իրավունքներն այնտեղ վերահաստատելու համար։ Սակայն այս հողի վրա տեղի ունեցած դարավոր մրցակցությունը, եթե անգամ վերսկսվեր էլ, միևնույն է այլևս չէր երկարելու։ Մի երրորդ ուժ՝ սկյութները, շուտով վերջ էր տալու վեճին։

---

[1] C. Bezold, Բավիանի արձանագրություն, էջ 117, I, 11—13։

[2] Harper, 381=Pfeiffer, 7։

[3] Թյուրո-Դանժենը, Ութերձ, էջ 16, ծան. 1, օգտագործելով Կոռնելիս վան Գելդերենի թարգմանությունը, իզուր է կարծում, որ խոսքը Մուսասիրի ուրարտական կուսակալի մասին է, և ուզում է այն ուղղել Մուսասիրի դիմացի կուսակալով։

*Նշենք Սեննաքերիբի գործողությունները Կիլիկիայում, գործողություններ, որոնք մեզ համար հետաքրքիր են, քանի որ խոսքը վերաբերում է մի ոմն Կիրուայի՝ Իլլուբրիի կառավարչի, ապստամբության՝ Թարզու և Ինգիրա քաղաքների մասնակցությամբ։ Իլլուբրին՝ դա Լամբրոնն է, այսօրվա Նեմրունը, Ռուբինյանների ժամանակաշրջանի Օշին հայկական ընտանիքի հռչակավոր ամրոցը։ Ապստամբությունը ճնշվեց, և Կիրուա թագավորը գլխատվեց*[1]*։*

*Ավելի հետաքրքրություն է ներկայացնում այն իրողությունը, որ ասուրական բանակը 695 թվականին երևում է Թիլ-Գարիմմուում, ուր Գուրդին նոր պետություն էր կազմել։ Թիլ-Գարիմմուն խեթական ժամանակաշրջանի Թեգերամմա անվան ասուրական ձևն է, այսօրվա Գորունը։ Պըտղոմեոսի Գաուարենան պահպանում է նրա հիշատակը։ Գուրդին փռյուգիական Գորդիոս անունն է, այսպես էր կոչվում Միդասի հայրը։ Մեր Գուրդին, գուցե, Գորդիոսի թոռը՝ Միդասի որդին էր։ Որոշ տվյալների հիման վրա կարելի է ընդունել, որ Սարգոնի արշավանքը Թաբալի դեմ 705 թվականին՝ նպատակ ուներ կանգնեցնել Գուրդիի առաջընթացը, իսկ Գուրդին Խիլակկուի միջով շարժվում էր դեպի Թիլ-Գարիմմու։ Սեննաքերիբի բանակը մեծ հաջողություն չունեցավ։ Գուրդին ճակատամարտից խուսափեց։ Ասորեստանցիները կողոպտեցին նրա երկիրը և ետ քաշվեցին։ Մի լուրջ կարծիքի համաձայն, Գուրդին այն առաջնորդն է, որ հայեր-փռյուգիացիներին առաջնորդեց դեպի իրենց նոր հայրենիքը՝ Փոքր Հայք*[2]*։*

*Սեննաքերիբի ողբերգական մահը հայտնի է Աստվածաշնչի միջոցով։ Դա աղերսվում է հայկական մի ավանդության հետ, որը մեզ շահագրգռում է դրա վրա կանգ առնել։ Կտակարանի համաձայն, Ասորեստանի թագավորն սպանվեց իր երկու որդիների՝ Ադրամելեքի և Սարասարի կողմից, երբ տաճարում աղոթում էր։ Հայրասպանները փախան Ուրարտու, իսկ նրանց եղբայրը՝ Ասարխադդոնը, ժառանգեց գահը*[3]*։*

---

[1] **E. Forrer,** Provinzeinteilung, *էջ 79, ըստ Բրիտանական թանգարանում պահպանվող՝ Սեննաքերիբի* Գլանի, *103000,* IV, *61, 90։* **Tallquist,** Das Datum des Feldzuges Sancherib's gegen Hilaku, «Orientalische Litteraturzeitung», *1911, էջ 344։*

[2] **E. Forrer,** *նշ. աշխ. էջ 80—81, ըստ նույն* Գլանի, V, *1—22.* **Olmstead-ը,** History of Assyria, *էջ 31, Թիլ-Գարիմմուի առաջնորդին կոչում է Խիդի, մինչդեռ Ֆորերը վերականգնել է իսկական անունը՝ Գուր-դի, որը, նրա կարծիքով, հայեր-փռյուգիացիների առաջնորդն է եղել։* Նաբի-Յունուսի *արձանագրության մեջ՝* **C. Bezold,** KB, II, *էջ 119, Սեննաքերիբը հիշատակում է Խիլակկուում, ինչպես նաև «Թաբալի շրջան Թիլ-Գարիմմուում» կատարած արշավանքը և պնդում, թե Թիլ-Գարիմմուն գրավել ու մշակույթի օջախ է դարձրել։*

[3] *4-րդ Թագավորաց, ԱԹ, 37,* καὶ ’Αδραμέλεχ καὶ Σαρασάρ οἱ υἱοὶ αὐτοῦ ἐπάταξαν αὐτὸν ἐν μαχαίρᾳ καὶ αὐτοὶ εσώθησαν εἰς γῆν ’Αραράθ.

**2 Chron.** *ԼԲ, 21 և* Եսայի, *ԼԷ, 38։*

Բազմավեպը (Պոլիհիստոր) առաջ է քաշում Սեննաքերիբի մի այլ որդի, որը կոչվում է Արդումուզան(ոս), մինչդեռ Աբիդենոսը Սեննաքերիբին հաջորդել է տալիս նրա Ներգիլ(ոս) որդուն։

Վերջինը տապալվեց Ադրամել(ոս)ի ձեռքով, որն սպանվեց Ակ՝սերդիսի (Ասարխադդոն) կողմից[1]։

Սեպագիր արձանագրությունների տեղեկությունները լույս են սփռում այս աղոտ պատմության վրա։

Սեննաքերիբը հինգ կամ վեց որդի ուներ։ Գահի ժառանգորդ անդրանիկ որդին՝ Աշուրնադինշումը, Բաբելոնի փոխարքա էր նշանակվել, որը վեց տարի կառավարեց և տապալվեց 694 թվականին։

Երկրորդ որդին կոչվում էր Արդի կամ Արադ-Նինլիլ, երրորդը՝ Ասարխադդոնն էր, չորրորդը՝ Աշուր-շում-ուշաբշին, հինգերորդը՝ Աշուր-իլու-մուբալլիսուն[2]։ Ենթադրում են նաև վեցերորդի՝ Արադ-Մելիքի գոյությունը, բայց դա վիճելի է։

Ասարխադդոնը այլ մորից էր, քան նրա եղբայրները։ Այդ կնոջ անունն էր Նակիա-Զակուտու։ Թուցե շնորհիվ իր մոր ազդեցության Ասարխադդոնը Սեննաքերիբի կողմից հռչակվեց թագաժառանգ և ուղարկվեց Բաբելոն որպես փոխարքա։

Սակայն արքունիքում կար Ասարխադդոնի նկատմամբ թշնամական տրամադրությամբ տոգորված մի կուսակցություն, որն աշխատում էր Արադ-Նինլիլի օգտին։ Այդ կուսակցությունն ամեն ինչ արել էր Ասարխադդոնի նշանակումն արգելելու համար, մինչև իսկ թագավորին ասել էին, որ այդ իշխանը թագավորի՝ իր հոր նկատմամբ չար նպատակներ ունի։ Արադ-Նինլիլը, այդ մեքենայություններով հաջողության չհասնելով, դիմում է ըռնության՝ իր փառասիրությունն իրականացնելու համար և մըրցակցի բացակայությունից օգտվելով՝ սպանում հորն ու տիրանում գահին։

Ասարխադդոնը գալիս է Բաբելոնի դաշտ, իր կողմնակիցների օգնությամբ մտնում է մայրաքաղաք և վտարում ըռնատիրոջին, որը փախչում է Խանիգալբատ, այսինքն՝ Միտաննի։ Ասարխադդոնը հետապնդում է ու Կարկեմիշի մոտ պարտության մատնում նրան։ Արադ-Նինլիլը փախչում է Ուրարտու։ Ասարխադդոնը շատ երկար է խոսում այդ գործի մասին,

---

[1] Համաձայն Եվսեբիոսի նշումների, որոնք հայտնի են հայերեն թարգմանությամբ։ **Karst**, Die Chronik des Eusebius. Այս բոլոր տեղեկությունները Բերոսից են գալիս։

[2] Անդրանիկ որդին որպես այդպիսին է նշված Սեննաքերիբի կողմից, Պրիզմա, col. III, 63. **C. Bezold**, KB, II, էջ 99։ Արադ-Նինլիլը ծանոթ է **C. H. W. Johns**, Assyrian Deeds and Documents, №20-ից։ Աշուր-շում-ուշաբշին հիշատակված է Շեյլի հրապարակած սալիկի վրա՝ «Zeit. f. Assyr.», II, 425 և շար., Աշուր-իլու-մուբալլիսուն՝ Շեյլի հրապարակած մի այլ սալիկի վրա՝ «Receuil de travaux relatifs à la Philologie et à l'Archéologie égyptiennes et assyriennes», 26, 27։

ամբաստանում է եղբայրներին, բայց խուսափում է սպանողների անունը տալ։ «Իմ եղբայրները մի ամբարիշտ միտք հղացան,— ասում է նա,— նրանք մոռացան աստվածներին, դավադրություն սարքեցին և իմ մեջքի ետև այնպիսի գործ նյութեցին, որը աստվածների սրտովը չէր։ Հակառակ աստվածների կամքին նրանք ուզեցին հորս համակրանքը իմ՝ նրա խոնարհ ծառայի նկատմամբ փոխել, բայց նրա սիրտն ինձ գուրգուրում էր, և նրա աչքերը հառած էին իմ իրավունքի վրա։ Նրանք ապստամբեցին և թագավորությանը տիրանալու համար սպանեցին Սեննաքերիբին»[1]։

Բայց ո՞վ էր ոճրագործը։ Ամեն ինչ ցույց է տալիս, որ դա եղել է միայն Արադ-Նինլիլը։ Աստվածաշնչի Ադրամելեքը և Աբիդենոսի Ադրամելոսը (փոխանակ Ադրամել(ք)ոս) ներկայացնում են Արադ-Նինլիլին, որի անվան առաջին մասն է պահպանվել՝ Արադը ձևափոխվելով Ադրայի։ Ադրամելեք անունով վեցերորդ եղբոր գոյությունն ընդունելու համար բավարար հիմքեր չկան։ Սարասար, Սար՚եսարը Ներու-սար՚եսերի կրճատ ձևն է, դա մի անձնավորության՝ Նաբուշարուսուրի անունն է, որը ոճրագործության տարին էպոնիմ էր և Մարկաշի (Մարաշի) կուսակալ[2]։

Ակներևաբար, այդ մարդը ոճրագործ Արադ-Նինլիլի եռանդուն կողմնակիցն էր, ահա թե ինչու սա աշխատում էր ազատվել՝ նրա մոտ ապաստան գտնելով, երբ իր հակառակորդը նրան հասավ Կարկեմիշում։ Տեղի ունեցած ճակատամարտին հավանական է, որ մասնակցեց նաև Նաբուշարուսուրը։ Պարտությունից հետո երկուսն էլ փախան Ուրարտու։

Այսպիսով, բիբլիական ավանդությունը ոճրագործի կողմնակցին դարձնում է նրա եղբայր։ Նույն կարգի շփոթ գոյություն ունի Աբիդենոսի ասածի մեջ, ըստ որի՝ Ներգիլ(ոս)ը Բաբելոնի թագավոր Ներգալ-ուշեզիբն էր[3]։

Էլամի թագավոր Խուլլուշուն բանտարկեց Սեննաքերիբի որդի, Բաբելոնի փոխարքա Աշուրնադինշումին և 694 թվականին նրա տեղը նշանակեց Ներգալ-ուշեզիբին։ Հաջորդ տարին ասորեստանցիներն իրենց հերթին բռնեցին Ներգալ-ուշեզիբին, իսկ Ասարխադոնն ստանձնեց Բաբելոնի փոխարքայի պաշտոնը։ Աբիդենոսը Ներգալ-ուշեզիբին դարձրել է Սեննաքերիբի որդի, նրա մյուս երկու որդիների օրինակով Բաբելոնում նույն պաշտոնը ստանձնած լինելու պատճառով, ինչպես և Սեննաքերիբի ժառանգ՝ Ասորեստանն

---

[1] R. C. Tompson, The Prismes of Essarḫaddon and of Aššurbanipal, 1931. Scheil, Le Prisme d'Assaraddon, 1914. Olmstead, History of Assyria, էջ 338։

[2] Նույնացումը կատարել է Ռոստը, էջ 84, է. Շրադերի Die Keilinschrift und das alte Testament. 3. Aufl. von Winckler und Zimmern, 1913-ում։ Այդ դեպքում պետք է, որ այն Նաբուշարուսուրը, որն ապրում էր Աշուրբանիպալի ժամանակ, ուրիշ անձնավորություն լինի։

[3] Վինկլերի կռահումը՝ «Zeit. f. Assyr.», II, էջ 392։

*ու Բաբելոնն լրար եւ շփոթելու հետևանքով։ Վերջին այս շփոթմունքի պատճառով է նույնպես, որ Ասարխադդոնը, որը Բաբելոնում հաջորդել էր Ներգալ-ուշեզիբին, երևան է գալիս որպես նրա հաջորդ՝ Ասորեստանի գահի վրա և որպես նրան սպանող։*

*Միայն Արդումուզանի անունն է մնում առանց հավանական բացատրության։ Անվան առաջին մասը կարծես պահպանել է Արադ-Նինլիլի հիշատակը*[1]*։*

*Մովսես Խորենացին, հայկական ավանդության վրա հիմնվելով, ենթադրում է, որ Հայաստանում ապաստանած ոճրագործ եղբայրները Արծրունի և Գնունի իշխանական տների հիմնադիրներն են։ Սա, հավանաբար, խնդրո առարկա հարցին վերաբերող՝ Աստվածաշնչի համապատասխան հատվածի գիտական մեկնաբանության արդասիքն է*[2]*։*

## 5. ԱՍԱՐԽԱԴԴՈՆ ԵՎ ՌՈՒՍԱ II

*Ասարխադդոնն իշխանության գլուխ է անցնում (680—669)*[3]*։ Պաշտոնական վավերագրերն Ուրարտուի մասին ոչինչ չեն ասում։ Սակայն գաղտնի մի նամակում Ուրարտուի թագավոր Ուրսայի կապակցությամբ ասվում է, որ նա կիմմերների հետ դաշինք է կնքել Ասորեստանի դեմ։ Ուրսան (Ռուսայի ասուրական ձևն է), ուրեմն, Արգիշտիի հաջորդն է։ Ասարխադդոնի թագավորության վրա մի հայացք նետելով, գուցե մենք հասկանայինք Ուրարտուի տարօրինակ համաձայնությունը երեկվա թշնամի բարբարոսների հետ։*

*Իհարկե, մեզ հետաքրքրում են այն իրադարձությունները միայն, որոնք այսպես թե այնպես կապված են ասուրա-ուրարտական հարաբե-*

---

[1] **Niebuhr**-*ը*, Geschichte Assurs und Babels, *1857 էջ 37—38, կարծում էր, որ Արդումուզանը միացնում է երկու անունները՝ Ադրամելեքը և Սարասարը։ Սեննաքերիբի սպանության հարցը քննվել է շատ արևելագետների կողմից՝ Նիբուր, Է. Շրադեր, Թիլե, Հոմմել, Վինկլեր և Մաքս Շտրեկ, որը Աշուրբանիպալին նվիրված իր մենագրության մեջ տվել է հարցի համարյա լրիվ մատենագրությունը։ Ավելացնենք, որ վերջերս Հ. Հերշենբերգը,* Studien zur Geschichte Essarhaddon, *1932, վիճելի է դարձնում նույնիսկ Ասարխադդոնին։* **B. Meissner**-*ը,* Neue Nachricht über die Ermordung Sanherib, «Sitzungsberichte d. Preus. Akademie»*-ում, 1932, 250—262, Հերշենբերգի կասկածները չի բաժանում։*

[2] *Հետաքրքրական է, որ բյուզանդացի հեղինակ Գեորգ վանականը Լեոն* V *կայսրին սերված է համարում* ἐκ τῶν Σεναχηρεὶμ παίδων, *էջ 769, որտեղից՝* Const. Theoph., *էջ 6,* γένος δέ τὸ μεν ἐξ 'Ασσυρῶν τό δέ καὶ αὐτῶν 'Αρμενίων. *Տե՛ս այս կապակցությամբ իմ հոդվածը* «Armeniaca»*-ում, պրակ* II, Sur l'origine de Léon V, *որը, նախ, պետք է փոփոխվի շատ կետերում։*

[3] *Սեննաքերիբը սպանվեց 681 թ. թեբեթի 20-ին (հունվար)։ Խռովությունները տևեցին մինչև ադար։ Ասարխադդոնը գահ բարձրացավ ադարի (մարտ) 18-ին և ոչ՝ սիմանի։*

*րությունների հետ։ Այս նյութի շուրջ եղած պաշտոնական հաղորդումները շատ հակիրճ են։ Իր թագավորության չորրորդ տարում՝ 677 թվականին, Ասարխադդոնը Խուբուշնայի հողի վրա պայքարեց ընդդեմ կիմմերացի Թիուշպայի, Մանդա հրոսակներից*[1]*։*

*Հաջորդ տարին Կունդուի և Սիսուի թագավորը ենթարկվեց հարձակման, գլխատվեց և գլուխն ուղարկվեց Ասորեստան։ Նրա անունն էր Սանդուարրի*[2]*։*

*Մոտավորապես միևնույն ժամանակաշրջանում Ասորեստանի թագավորը կործանեց Խիլակկու և Դու՛ուա երկրների 21 քաղաքները, բայց նրան չհաջողվեց իր լծին ենթարկել նրանց, թեպետև նա պնդում է այդ, քանի որ նրա հաջորդ Աշուրբանիպալը խոստովանում է, որ Խիլակկուի թագավոր Սանդուասարմեն իր հորը չէր հպատակվել*[3]*։*

*Թագավորության 8-րդ տարում՝ 673 թվականին, թեբետ ամսում, ասորեստանցիները նվաճեցին Շուպրիա երկիրը։ Գրավված ավարը հասավ Ուրակ, որտեղ գտնվում էր թագավորը, կիսլիմու ամսում*[4]*։*

*Խուբուշնան Սիսի հյուսիսում Կոմանայի մոտ գտնվող Կաբիսսոսն է։ Սիսուն կամ Սիզուն ներկայիս Սիսն է։ Կունդուն Ստրաբոնի Կյուինդան է, Պոտանդա կամ Կիլիկյան Դուա մարզը։ Կյուդնոս գետը պահպանել է նրա անունը։ Դու՛ուան չի կարելի անջատել Քսենոֆոնի Դանայից (Թյուանայի մի այլ ձև, նույնական Թուխանայի հետ)*[5]*։ Խիլակկուն Կեսարիայի մարզն է։ Սիսից մինչև Թյուանա և Կոմանայից մինչև Կեսարիա, այդ ամբողջ տերիտորիան ճանաչեց Ասորեստանի գերիշխանությունը, ինչպես նաև Շուպրիան՝ Տիգրիսի ավազանում։ Գալով դեպի արևելք առաջխաղացմանը, Ասարխադդոնը մի հաղթանակ է հիշատակում Մանայի մարդկանց և նրանց դաշնակից Աշգուզայի թագավոր Իշպակայի վարձկան զորքերի*

---

[1] *Ասարխադդոնի* Տարեգրությունը, Պրիզմաներ A *և* C, B *չեն հետևում ժամանակագրական կարգին։ Իրադարձությունների թվականները տպված են* Բաբելոնյան ժամանակագրության *մեջ,* Keilinschriftliche Bibliothek, II-*ի վերջում։* Ժամանակագրությունը *չի հիշատակում Խուբուշնան, բայց ասում է, որ կիմմերները հարձակվեցին Ասորեստանի վրա և Ասորեստանում ջախջախվեցին։*

[2] Բաբելոնյան ժամանակագրություն, IV, *6—8,* Պրիզմաներ A *և* C, I, *36—54։* B, *11—30-ում պակասում է։ Սակայն* Բաբելոնյան ժամանակագրությունը *չի հիշատակում այդ արշավանքը, որի ճշգրիտ թվականը մնում է անորոշ։*

[3] Պրիզմաներ A *և* C, II, *20—21.* B, III, *3—12։*

[4] Բաբելոնյան ժամանակագրություն, IV, *19—21։* Պրիզմաները, *գրված լինելով 673 թվականին, չեն հիշատակում Շուպրիայի գրավման մասին։*

[5] E. Forrer-*ը,* Die Provinzeinteilung, *էջ 81, հակված է Դու՛ուան տարբերելու Թյուանայից։*

*Դու՛ուա=Թուխա-նա, Դանա (Դուանայի փոխարեն)=Թյուանա՝ դրանք նույն անվան երկու ձևեր են, առանց* -նա *վերջածանցի կամ նրանով, ինչպես՝ Թուշխա և Թուշխա-նա։*

*դեմ[1]։ Նա պնդում է նաև, որ հպատակեցրել է Պատուշարրա շրջանի մի քանի մեդական ցեղերի առաջնորդների, ինչպես բերդաքաղաքների առաջնորդներ Միտիրպարնային և Իպարնային, Պարտակկայի առաջնորդ Ուպպիսին, Պարտուկկայի առաջնորդ Սանասանային, Ուրակազաբարնայի առաջնորդ Ռամատիային[2]։ Սակայն գաղտնի աղբյուրներն այլ պատկեր են ցույց տալիս, որը Ասարհադոնի համար շատ ավելի աննպաստ է։*

*Շամաշին ուղղված իր աղոթքների ժամանակ Ասարհադոնի թագավորը մի շարք հարցեր է առաջադրում, որոնք ցույց են տալիս այն դժվարությունները, որ ինքը կանխատեսում է հարձակվող թշնամիների կապակցությամբ։ Նա խնդրում է հայտնել, թե այար ամսի 3-ից մինչև աբ ամսի 11-ը, ուրեմն՝ 100 օրվա ընթացքում, արդյոք Կարկաշշիի առաջնորդ Կաշտարիտին իր ռազմիկներով, կամ Գիմիրրիի ռազմիկներով, կամ Մադայի ռազմիկներով, կամ Մաննայի ռազմիկներով, կամ մի քանի այլ թշնամիներով հաջողություն կունենա՞ իր դիտավորությունների մեջ։*

*Արդյոք Կաշտարիտին կգրավի՞ Կիշասսու քաղաքը որևէ միջոցով՝ հարձակմամբ, ուժով, կռվով, պաշարումով, սովահարությամբ, խորամանկությամբ և ուրիշ հնարքներով։*

*Կաշտարիտին մեդացիների առաջնորդ Մամիտարշուին ուղարկել էր հետևյալ պատգամը. «Միասին գնանք Ասարհադոնի դեմ»։ Արդյոք նրան կհաջողվի՞ իր կողմը գրավել Մամիտարշուին՝ Ասարհադոնի թագավորի դեմ գործելու համար։*

*Այարի 2-ից մինչև այարի 11-ը, յոթ օրվա ընթացքում, Կաշտարիտին Գիմիրրիի, Մադայի, Մաննայի ռազմիկներով գրավելո՞ւ է արդյոք Ուշիշի քաղաքը։ Մի նոր թշնամի՝ Սապարդայի Դուսաննին, միանում է Կաշտարիտի, Գիմիրրիի, Մադայի և Մաննայի հետ։ Եթե Ասարխադդոնը սուրհանդակ ուղարկի Կաշտարիտիին, նա կսպանվի՞, թե ոչ։ Այդ ընթացքում Սապարդայի Դուսաննին Կաշտարիտի և իր դաշնակիցների հետ գրավել էր Սանդու և Կիլման քաղաքները։ Դաշնակիցները գրավում են նաև Սուբա, Շարրուիկբի, Ամուլ քաղաքները։ Ասարխադդոնն ուղարկում է* rab šake *Շա-Նաբու-Շումմային Ամուլ քաղաքի դեմ. նրան կհաջողվի՞ թշնամիներից ազատել այն։ Մանացիները գրավել են Դուր-Բել քաղաքը.* rab šake-*ն կվերագրավի՞ այդ քաղաքը[3]։*

*Այս հարցերից հետևում է, որ Ասարհադոնի դեմ կազմված կոալիցիան տիրացել էր հետևյալ քաղաքներին. Կիշասսու, Ուշիշի, Սանդու, Կիլման, Սուբա, Շարրուիկբի, Ամուլ և Դուր-Բել։*

---

[1] Պրիզմաներ A և C, II, *27—31*. B, III, *16—18*։

[2] Պրիզմաներ A և C, IV, *8—22*. B, IV, *3—9*։

[3] J. A. Knudtzon, Assyrische Gebete an den Sonnengott, Band II, *№№ 1—22, էջ 73—112*։

Դա դեռ բոլորը չէ։ Թատերաբեմում շուտով հանդես է գալիս մի նոր թշնամի, որն ուժեղացնելու է Գիմիրրիի, Մադայի, Մաննայի և Սապարդայի կոալիցիան, դա Իշկուզա ժողովուրդն է, այսինքն՝ սկյութները[1]։

Մի անսպասելի առաջարկ մտահոգում է Ասարխադդոնին. Իշկուզայի թագավոր Բարտատուան նրա աղջկան կնության է ուզում։ Ասորեստանի թագավորը հարցում է անում Շամաշ աստծուն. «Եթե Բարտատուան իմ աղջկան կնության առնի, զոնե հավատարիմ կմնա՞ ինձ և կպաշտպանի՞ իմ շահերն ու իրավունքները։ Եթե Բիտկարիի և (Սապարդայի) առաջնորդները հարձակվեն Մադայի մի շրջանի վրա, Իշկուզայի թագավորը կամ նրա որդին կամ նրա զորապետը կգնա՞ն ապստամբողների դեմ»։ Թվում է թե Ասարխադդոնը ստորացուցիչ առաջարկ էր ստացել բարբարոսից[2]։ Իշկուզայի ռազմիկները, որոնք տեղավորվել էին Մաննայի շրջանում, նետվեցին դեպի Մաննայի, այսինքն՝ ասուրական Մաննայի, սահմանները։ «Սիմանու ամսի 22-ից մինչև դուզի ամսի 21-ը, ուրեմն՝ 30 օրվա ընթացքում, նրանք կանցնե՞ն արդյոք Խուբուշկիայի անցքը, կգրավե՞ն Խարրանա և Անիսուս քաղաքները և կավերե՞ն Ասորեստանի տերիտորիան»[3]։

Դա Իշկուզայի մի այլ հատվածն է, Բարտատուայի հատվածից տարբեր։ Նրա առաջնորդն էր Իշպական, որին, ինչպես տեսանք վերևում, Ասարխադդոնը հավակնում է հաղթած լինել։

Ասարխադդոնն իր զորքերին հանձնարարել էր գնալ գրավել Սիրիշ քաղաքը։ Նա հարցում է անում Շամաշին՝ իմանալու համար, թե սիմանուի 10-ից մինչև սիմանուի 29-ը, ուրեմն՝ 20 օրվա ընթացքում, Մաննայի, Թի(մայի) և Սիրիշի մարդիկ արդյոք դիմադրելո՞ւ են իր զորքերին և ձախողելո՞ւ են նրանց առաջադրանքը[4]։

Դժբախտաբար, այստեղ հիշատակված քաղաքների տեղերը ծանոթ չեն։ Ուշիշին Ուրարտուի սահմանային կայան Ուեսին կամ Ուայախը չէ, այլ Ուսի-իշն է, այն քաղաքը, որը Սարգոնը հիշատակում է Սապարդայի հետ միասին՝ իրանական սարահարթի բնակավայրերի շարքում[5]։ Կիշասսուն կարելի է նույնացնել Կիսեշիմի հետ, որը Ֆորերը տեղավորում է Խորասաբադի շրջանում, Կիզիլ-ուզունի ակունքների վրա։

Մադա (մեդացիներ), Գիմիրրի (կիմմերներ), Սապարդա կոչվող բազմաթիվ ցեղեր իրենց տրամադրության տակ ունեին Մաննայի և Էլամի միջև ընկած ընդարձակ տարածությունները, ներկա Արդելանի, Համադանի և Քիրմանշահի նահանգները։ Այստեղ մենք ամբողջապես Մեդիա-

---

1 Նույնը, № 24—25։

2 Նույնը, № 29—30։

3 Նույնը, № 35։

4 Նույնը, № 43։

5 **Thureau-Dangin,** Une relation de la 8e campagne, I, *48*.

յուՄն ենք։ Կաշտարիտին (Խշաթրիտան), Մամիտարշուն, Դուսաննին ցեղերի կամ bel ali կոչվող մարզերի առաջնորդներն են, որ իրաներեն թարգմանվում է dahyu-ka, որի հետագա ձևը եղել է dehkan («մարզի առաջնորդ»)։ Վաղուց ի վեր մեդական առաջնորդները սպառնում էին Ասորեստանին։ Նրանք ավելի վտանգավոր դարձան՝ դաշնակցելով իրենց համատոհմ կիմմերա-սկյութական հրոսակների հետ և եզրափակիչ հարվածը կհասցնեն, երբ հարմար առիթը ներկայանա, ասուրական պետությանն ընդմիշտ վերջ դնելու համար։

Մանա երկիրը դարավոր ոխ ուներ Ասորեստանի դեմ։ Ախշերի թագավորը, վերոհիշյալ բարբարոսների օժանդակությամբ, հարձակման է անցնում և Ասորեստանից գրավում բազմաթիվ քաղաքներ, ներառյալ Սիրիշը։ Ասարխադդոնը իր զորապետին հանձնարարում է գնալ վերագրավել այդ քաղաքը, բայց երկյուղ է կրում, որ Մանան ու Ռիման դիմադրեն իր զորքերին։ Ռիման Ուրմիան է, իսկ Սիրիշը այն Սուրիշիլի քաղաքն է, որի մասին Մենուան № 19 արձանագրության մեջ ասում է, թե ինքը գրավել է այդ քաղաքը։

Ախշերին (Ախշիրին) Դիմիրրիի հետ միասին հիշատակված է Շամաշին ուղղված աղոթքում[1]։ Տեքստն աղճատված է, բայց ստույգ է, որ խոսքը Ասորեստանի դեմ դաշնակցության մասին է։

Մի ուրիշ վավերագիր Դիմիրրիին ներկայացնում է Մանայի դեմ ուղղված գործողության մեջ։ Սասնավորապես, Ասարխադդոնին ուղղված մի ոմն Բել-ուշեզիբի նամակում ասվում է. «Երբ թագավորն իր զորքերին հրաման տվեց՝ «Մտեք Մանայի հողերը», բոլոր զորքերն այնտեղ չմտան։ Հեծելազորի մի զորաբաժին և մարտակառքերը պետք է հարձակվեին կիմմերների վրա, որոնք ասում էին՝ «Մանայի երկիրը ձեզ է պատկանում և մենք ձեռնպահ մնացինք այնտեղ մտնելուց»։ «Անշուշտ, դա սուտ է։ Դրանք թափառաշրջիկների և երդում ու պայմանագիր չճանաչող մարդկանց վիժվածքներ են։ Նրանք մարտակառքեր և կառքեր շարեցին անցքի երկու կողմերը։ Հեծելազորքով և մարտակառքերով ապստամբություն կատարեցին՝ Մանայի հունձքը հափշտակելու համար»[2]։

Այս նամակը, անշուշտ, վերաբերում է Ասարխադդոնի թագավորության սկզբին, երբ կիմմերներն աշխատում էին տեղավորվել Մանա երկրում։ Հետապնդված իրենց թշնամիների՝ Իշկուզա-սկյութների կողմից, զուցե, նույն Ախշերիի հրավերով, կիմմերները հեռացան երկրից։ Մի մասը գնաց միանալու Կաշտարիտիին, մյուս մասն ուղղվեց դեպի արևմուտք՝ Ուրարտու և ավելի հեռու։

---

[1] Knudtzon, նշ. աշխ., № 24։

[2] Harper, 1237=Pfeiffer, 329.

Եվ խսկապես, կիմմերները Շուպրիայի սահմանում հանդես են գալիս Ռուսա թագավորի հետ դաշնակցած։ Ասարխադդոնը Աշշուր աստծուց խնդրում է. «Նիսան ամսի...-ից մինչև դուզու ամսի 1-ը Ուրարտուի թագավոր Ուրսան... կոչված է.... իր նպատակին հասնելու՞ է։ Իր կամքով թե իր պաշտոնյայի խորհրդով, անձամբ իր զորքերի թե Գիմիրրիի կամ իր դաշնակիցներից որևէ մեկի հետ, իրենց ապրած տեղից մեկնելո՞ւ են պատերազմ սկսելու, ճակատամարտ տալու, սպանելու, կողոպտելու, գողանալու, Շուպրիայի երկիրը մտնելու և հարձակվելու, լինի՛ Բումու և Կուլլիմերի քաղաքների վրա, լինի՛ Շուպրիա երկրի բերդերի վրա և սպանելու՝ ինչ որ կարելի է սպանել, կողոպտելու՝ ինչ որ կարելի է կողոպտել, գողանալու՝ ինչ որ կարելի է գողանալ, խլելու և տանելու՝ ինչ որ կա Շուպրիա երկրի բերդերում, լինի փոքր թե մեծ բան։ Քո մեծ աստվածությունն այս ամենը գիտե։ Արդյոք դա կարգադրվա՞ծ է, վճռվա՞ծ է քո հրամանով, քո մեծ աստվածության բերանով, օ՜ մեծ տիրակալ Շամաշ։ Արդյոք այդ բոլորը տեսնվելո՞ւ, լսվելո՞ւ է»[1]։

Սրանից հետևում է, որ Ռուսան կիմմերների օգնությամբ Ասորեստանի գերիշխանությունից խլում է Շուպրիա երկիրը։ Ռուսայի գիմիրրիները Թեուշպայի խմբից էին, որն իր հրոսակներին Շուպրիայից առաջնորդել էր դեպի Եփրատից այն կողմի երկրները։ 677 թվականին նա Խուբուշնայում (Կաբիստոս) է, 675 թվականին՝ Փռյուգիայում, ուր ավերեց Միդասի պետությունը։ 677 թվականին կիմմերների դեմ տարած հաղթանակից հետո Ասարխադդոնը 676 թվականին խստություն է ցուցաբերում այն փոքր պետությունների նկատմամբ, որոնք կիմմերների ներկայությունից օգտվել էին Ասորեստանի լուծը թոթափելու համար։

Իր տարեգրության մեջ նա հիշատակում է այն վրիժառությունը, որ նա գործադրել է Դու՚ուի, Սիսուի և Խիլակկուի դեմ, բայց լռություն է պահում Թաբալի և Միլիդի վերաբերյալ։ Նրանց մասին խոսում է Շամաշին ուղղված հարցումներում։ Թեգարամայի թագավոր Մուգալլուն խլել էր Միլիդ (Մելիտենե) քաղաքը, իսկ Իշկալլուն վերականգնել էր Թաբալի թագավորությունը։ Ապա նրանք դաշնակցել էին՝ Իշտիարու քաղաքին տիրանալու համար։ Ասարխադդոնը իր զորապետ Շանաբուշուին ուղարկում է քաղաքին օգնելու և Շամաշին հարցնում է, թե հաղթանակ տանելու՞ է, թե ոչ[2]։

Դա նրան չի հաջողվում։ Սակայն նա կարողանում է Շուպրիայի իրեն պատճառած անարգանքը հատուցել։ Այդ ընթացքում Շուպրիան կարողացել էր Ռուսայի խնամակալությունից ազատվել։

---

[1] Knudtzon, նշ. աշխ., № 48։

[1] Նույնը, № 54—56։

*Կարելի էր, հետևաբար, նրա վրա հարձակվել առանց վախենալու Ուրարտուի հետ բարդություններ ունենալուց։ 673 թվականի վերջերին Ասարխադդոնը մտնում է Շուպրիա այն պատրվակով, թե Շուպրիայի թագավորը մերժել էր վերադարձնել ասորեստանցի այն պաշտոնյաներին, որոնք իրենց գործը լքել և Շուպրիա էին ապաստանել։ Այդ երկրի թագավորը նույնիսկ համարձակվել էր արշավել Ասորեստանի սահմանային քաղաքների վրա, կրկնելով, «թե ինքը չի վախենում Ասորեստանի թագավոր Ասարխադդոնից»։*

*Ասուրական բանակը պաշարում է այդ երկրի գլխավոր քաղաք Ուպպումը, «որը տեղավորված էր, ամպի նման, բարձր լեռան վրա»։ Շուպրիայի թագավորը սոսկումից սարսռաց. նա հասկացավ իր կատարած անխոհեմությունը, զղջաց և Ասարխադդոնին գրեց. «Շուպրիան, այն երկիրը, որ մեղանչեց քո դեմ, պետք է քեզ ծայրից ծայր հնազանդի, նշանակիր քո կառավարիչներին, և ես նրանց կհնազանդեմ, հարկ նշանակիր երկրին՝ տարեկան տուրք և այլ միջոցներ։ Ես մի ավազակ եմ և պատրաստ եմ ամեն մի մեղքիս համար վճարելու 50 անգամ ավելի. մեկ կորած ասորեստանցի փախստականի համար կվճարեմ հարյուրապատիկը։ Շնորհիր ինձ կյանքս, ես կփառաբանեմ Աշշուրի անունը, քո հզորությունը»[1]։*

*Ասորեստանի թագավորը մնում է անողոք։ Քաղաքը դառնում է հրո ճարակ։ Շուպրիայի թագավորը վերջին փորձն է անում անողորմ թագավորի գութը շարժելու։ Նա պատրաստել է տալիս իր խրտվիլակը, նրան հագցնում է աղերսարկուի շորեր, որոնց փաթաթում է երկաթյա շղթա և իր երկու որդիների՝ Շերիսի ու Կենգի-Թեշուպի հետ, ոսկյա և արծաթյա հարուստ նվերներով, ինչպես նաև տեղական քարակերտվածքներով, ուղարկում է Ասարխադդոնին։*

*Ասարխադդոնը նույնիսկ այսպիսի ստորացման գնով հրաժարվում է ներել նրան։ Քաղաքը գրավվում է, թագավորական պալատը կողոպտվում և ամբողջ արքունիքը գերի է տարվում։ Փախստականները սարսափելի պատիժ են կրում, խեղում են նրանց քիթը, աչքերը և ականջները։*

*Շուպրիան կորցրեց իր անկախությունը։ 672 թվականին այդ երկիրը վերածվեց ասուրական երկու նահանգի՝ Ուպպումե և Կուլլիմերի*[2]*։*

---

[1] **Olmstead**, *նշ. աշխ., էջ 364 և շար.*, **Winckler**, Forschungen II, *27։*

[2] **J. Marquart**-*ը*, Eranšahr, *էջ 159, այս երկու քաղաքներում ճանաչում է բյուզանդական շրջանի* 'Αφουμῶν *և* Χλωμάριον *բերդերը։ Բալավաթի՝ բրոնզի վրա եղած մի արձանագրություն ասում է՝* $^{al}$U-bu ša'An-ḫi-ti $^{mat}$Šub-ri-a-a ak-šu-ud—*«Ուբուն, Անխիտի շուպրիացու քաղաքը, գրավեցի»։ Հնարավոր է, որ Ուբու-մեի կամ Ուպու-մեի մասին է խոսքը։ Ֆում գյուղը պահպանել է Շուպրիայի հին մայրաքաղաքի անունը, այն տեղավորված է Իլիջայի մոտ, նույն անունը կրող կազայի կենտրոնում։ Թվում է, թե դա նույն գյուղն է, որը կոչվում է* Օպում *կամ* Օպ'ում, *հայկական մի գյուղ, Իլիջայից հետո ամենա-*

Պետք է նշել, որ փախստականների մեջ կային նաև ուրարտացիներ, որոնք ապաստանել էին Շուպրիա։ Ասարխադդոնը նրանց ուղարկում է Ուրարտուի թագավորին, որպեսզի նա իր հպատակներին պատժի՝ ինչպես որ կամենա։ Ասորեստանի թագավորի այս քայլը ցույց է տալիս, որ այդ ժամանակ նա լավ հարաբերության մեջ էր իր մեծ հարևանի հետ, մինչդեռ Շամաշին ուղղած իր աղոթքում Ուրարտուի թագավոր Ռուսան ներկայանում է որպես թշնամի։ Այդ երկու տարբեր պահերը չպետք է շփոթել, ինչպես հաճախ անում են. մեկը վերաբերում է 673—672 թվականներին, մյուսը՝ 679 կամ 678 թվականին։ Վերջին թվականը մեզ հայտնի է դառնում հետևյալ փաստերով. կիմմերների խմբավորումը, Թիուշպա թագավորի հրամանատարության տակ, 675 թվականին՝ Միդասի ինքնասպանության տարին, գտնվում էր Փռյուգիայում, իսկ 677 թվականին նա դեռևս Խուբուշնայումն էր և եկել էր այստեղ Մանայից։ Մանայից նա հեռացել էր Ասարխադդոնի օրով, ուրեմն՝ 680 թվականին, և սա թույլ է տալիս նրա Ուրարտուում լինելը և Ռուսայի հետ գործակցությունը որոշելու 679—678 թվականներին։ Շամաշին ուղղված այն խնդրանքում, որ հաջորդում է Ռուսայի վերաբերյալ հարցմանը, խոսքը Միտայի մասին է, այսինքն՝ Միդասի[1]։ Դա, ուրեմն, Փռյուգիայի թագավորն է, որը կիմմերներից հաղթվելով, անձնասպան եղավ 675 թվականին։ Այսպիսով հաստատվում է Ռուսայի վերաբերյալ հարցման այն թվականը, որ մենք որոշեցինք[2]։

Ինչո՞ւմ էր կայանում Միտայի թշնամությունը, որն անհանգստացնում էր Ասարխադդոնին։ Այդ հնարավոր չէ ասել, որովհետև դրան վերաբերող՝ Շամաշին ուղղված խնդրանքի տեքստը շատ է վնասված։

Հնարավոր է, որ Փռյուգիայի և Ուրարտուի միջև գոյություն է ունե-

---

մեծը Կապայում։ **Б. Маевский**, Военно-статистическое описание Ванского и Битлиского вилаетов. Приложение, էջ 150։ Օպումը, գուցե, հայկական ձևն է, իսկ Ֆումը՝ թուրքական։

[1] **Knudtzon**, նշ. աշխ., № 51։

[2] Միտա անունը շփոթեցրել է Կնուդցոնին (նշ. աշխ., էջ 151) և նրան մտածել է տվել Սարգոնի ժամանակակից Միտայի մասին, մինչդեռ հարցումը կատարվել է Ասարխադդոնի թագավորության ժամանակ։ Սակայն նա մոռացել է, որ Ասարխադդոնի օրով ևս կար մի Միտա, որն անձնասպան եղավ 675 թվականին, համաձայն Հուլիոս Աֆրիկանոսի և Եվսեբիոսի, որոնք Միդասի մահը դնում են Աբրահամի էրայի 1341 թ., այսինքն՝ (2016—1341=) 675 թ.։ (**Gelzer**, Sextus Julius Africanus, I, էջ 179)։ Եվսեբիոսի հայկական թարգմանության մեջ նշված՝ Աբրահամի 1321 (2016—1321=) 695 թ. գրչական սխալ է. ընդօրինակող գրիչն Ի տառը (=20) շփոթել է Խ(=40) տառի հետ։ Գալով այդ Միտայի և Սարգոնի ժամանակակից Միտայի աղերսին, դա այլ հարց է։ Նրանց նույնացման համար ոչ մի խոչընդոտ չկա, թեպետև բացառված չէ երկրորդ Միտայի գոյությունն ընդունելու հնարավորությունը որպես Սարգոնի ժամանակակից Միդաս I-ի թոռան, ինչպես նրա ժամանակակից ուրարտացի Ռուսան թոռն էր Ռուսա I-ի, Միդաս I-ի ժամանակակցի ու դաշնակցի։

ցել համաձայնություն Ասորեստանի դեմ, ինչպես Սարգոնի թագավորության ժամանակ, և նրանք ունեին պատասխանատվության իրենց բաժինը Թաբալի, Խիլակկուի և այլ երկրների ջլատման գործում՝ ի վնաս Ասորեստանի։

Ասարխադդոնը մահացավ՝ չհասցնելով ճնշել այդ ըմբոստացած երկրներին և առանց կարողանալու վերջ տալ Մանայում առեղծված տագնապալի դրությանը։ Ուրարտուի թագավոր Ռուսան նրանից հետո ապրեց և վերահաստատեց դիվանագիտական կապերը նրա հաջորդի հետ։ Ասարխադդոնը մեռավ իր թագավորության 12-րդ տարում, մարշևանի 10-ին = 669 թվականի նոյեմբերին։

## 6. ԱՇՈՒՐԲԱՆԻՊԱԼ ԵՎ ՍԱՐԴՈՒՐԻ III

Աշուրբանիպալը (669—626) իր թագավորության առաջին տասը տարիների ընթացքում կլանված լինելով Եգիպտոսի և Էլամի դեմ պատերազմներով, կարողացավ վերադառնալ և զբաղվել մեզ հետաքրքրող հարցերով միայն մոտավորապես 660 թվականին։ Բացի դրանից, իրադարձություններն ընթանում էին հօգուտ Ասորեստանի, նույնիսկ առանց նրա միջամտության։

Լուդդի հեռավոր երկրի թագավոր Գուգգուի մի դեսպանություն գալիս է Աշուրբանիպալի պալատը՝ նրա բարեկամությունը հայցելու։ Սա Լիդիայի թագավոր Գիգեսն էր, որն այդ գործողությանը դիմեց կիմմերական վտանգի սպառնալիքի ներքո։ Առանց իրական օգնության, Ասորեստանի անունը միայն բավական էր, որպեսզի Գիգեսը քաջությամբ գոտեպնդվեր և կիմմերներին պարտության մատներ։

Միլիդի Մուգալլուն, Խիլակկուի Սանդաշարմեն ու հավանական է նաև Թաբալի Իշկալլուն, տեսնելով, որ կիմմերների պարտության հետևանքով իրենց հենարանը բեկվեց, շտապեցին խաղաղություն կնքել Ասորեստանի հետ և ճանաչել նրա գերիշխանությունը[1]։

Աշուրբանիպալը որոշեց հաշվեհարդար տեսնել Մանայի թագավոր Ախշերիի հետ։ Վերջինս, սկյութական հորդաների օժանդակությամբ, խլել էր Ասորեստանից բազմաթիվ քաղաքներ։ Աշուրբանիպալը մտավ Մանա երկիրը և գրավեց Իզիրտու մայրաքաղաքը։ Հաղթված Ախշերին ապաստանեց Իշտատտի քաղաքում և շուտով կործանվեց՝ զոհ դառնալով ժո-

[1] Աշուրբանիպալի Տարեգրություն, II, 68 և 59, հրատ. **Streck,** Ašurbanipal und die letzten assyrischen Könige, 1916։ Մուգալլուն այստեղ կոչված է Թաբալի թագավոր, անշուշտ, ըստ այս աշխարհագրական տերմինի լայն իմաստի։ Թաբալի (Կաթառնիա) իշխանը այդ շրջանում Իշկալլուն էր։ Հավանական չէ, որ Մուգգալլուն Իշկալլուի իշխանությունն իր երկրին միացրած լինի։

ղովրդական ապստամբության։ Հաջորդեց նրա որդի Ուալլին, որը հպատակվեց հաղթողին։ Իր որդի Էրիսիննիին տվեց նրան որպես պատանդ, իսկ աղջկան՝ թագավորական հարեմին։ Մանան կորցրեց Ասորեստանից գրաված քաղաքները[1]։

Շուպրիայում տեղի ունեցած մի միջադեպ քիչ մնաց խանգարեր Ասորեստանի և Ուրարտուի միջև գոյություն ունեցող խաղաղությունը։ Ոմն Անդարիա՝ Լուբդի մարզի կուսակալ և ուրարտական զորապետ[2], փորձեց հարձակվել Շուպրիայի վրա, բայց ձախողության մատնվեց։

Ասորեստանին հավատարիմ Կուլլիմերիի բնակիչները բռնեցին նրան, գլուխը կտրեցին և ուղարկեցին Աշուրբանիպալին։

Այսպիսով, երեք այն իշխանությունները որոնցում իրար էին հանդիպում և հակադրվում Ուրարտուի և Ասորեստանի շահերը՝ Շուպրիան, Մանան և անդրեփրատյան պետությունները, վերջնականապես անցան Ասորեստանին։

Այլևս տարաձայնության առիթ չկար։ Այսուհետև երկու երկրները կապրեն որպես լավ հարևաններ։ Իրոք, հակառակ իր ռազմատենչ եռանդին, Աշուրբանիպալը ոչ մի ընդհարում չունեցավ Ուրարտուի հետ։ Ուրարտուի գահի վրա նրա ժամանակակիցներն էին՝ Ռուսան, այն, որ իշխում էր Ասարխադդոնի ժամանակից ի վեր, և Սարդուրին։ Երկուսն էլ ասորեստանցիներին ծանոթ են Աշուրբանիպալի պալատ ուղարկած իրենց դեսպանություններով։ Այդ դեսպանությունների թվականները և նպատակը ենթակա են քննության։

Առաջին դեսպանությունը Արբելայում ներկա եղավ այն հանդեսին, որով Ասորեստանի թագավորը տոնում էր Էլամի թագավոր Թեումմանի դեմ տարած հաղթանակը։ Թեմմուանը էլամական Թեպ-Խումբանի ասուրական ձևն է։ Սա Էլամի թագավորի նետաձիգների պետ Ուրտակն էր (675—655), որ սպանեց թագավորին և հափշտակեց նրա գահը։ Իր իշխանությունն ապահովելու համար նա աքսորեց թագավորական ամբողջ ընտանի-

[1] Տարեգրություն, II, 126 և շար., և Գլան B, III, 16—86։ Վերջինը, որ Տարեգրության մի այլ տարբերակ է, թվարկում է Աշուրբանիպալի կողմից գրավված Մանայի քաղաքները՝ Աիուսիաշ, Խալսու. Պաշա-սու, Բուսուտու, Աշիդիաշ, Ուրկիամուն, Ուպպիշ, Սիխուա, Նագինիրի։ Ասորեստանի թագավորի կողմից պաշարված քաղաքներն են՝ Իզիրտու, Ուրմետե և Ուզբիա (հմմտ. Արմաիդը և Զիբիան, 716 թ. հիշատակված Սարգոնի կողմից)։ Աշուրբանիպալը խոստովանում է նաև, որ մանացիները ասորեստանցիներից խլել էին Պադդուրի, Շարրուիկբի, Գասունե, [...] բուտե քաղաքները։ Պադդիրին սահմանային կայան էր Շամշի-Ադադի ժամանակ (823—810), որը ասում էր, թե Ասորեստանը տարածվում էր Պադդիրիից մինչև Կար-Սալմանասար (Կարկեմիշի դիմաց)։ Col. II, 7, Keilinschriftliche Bibliothek, I, էջ 179։

[2] Անդարիան Լուբդիի ḫazanu-ն է՝ ըստ Տարեգրության, IV, 6, մինչդեռ Ասարխադդոնի Պրիզման, հրատ. Վ. Շեյլի, էջ 46, նրան ուրարտական կուսակալ է անվանում։

*քը, Ներայալ Թագաժառանգ Խումբանիգաշին։ Աքսորյալներն ապաստանեցին Ասորեստանի Թագավորի մոտ։ Հափշտակիչն անխոհեմություն ունեցավ նրանց ետ պահանջելու։ Այս լուրջ պարտականությունը հանձնարարվեց պատվիրակներ Նաբուդամիկին և Խումբադարային, որոնք ներկայացան Աշուրբանիպալի պալատը։ Բնականաբար, պահանջը մերժվեց։ Աշուրբանիպալը պատվիրակներին պահեց և զորք ուղարկեց Թեումմանի դեմ։*

*Խորաքանդակներից մեկը, որոնցով Աշուրբանիպալը զարդարեց Նինվեի իր պալատի դահլիճների պատերը և որը հայտնաբերվեց 1858 թվականին, հետաքրքրական տեսարան է ներկայացնում։*

*Ասորեստանի Թագավորը շքեղորեն զարդարված մի մարտակառքում կանգնած է մի ներքինու բռնած հովանոցի տակ։ Կառքի դիմաց երկու ասուրական զինվորներ պահում են երկու էլամական պատվիրակներին, իսկ նրանց դիմաց տեղ են գրավել Ուրարտուի պատվիրակները։ Էլամական պատվիրակներից մեկը հաղթանդամ է, աչքի ընկնող դիմագծերով, մյուսը ձեռքում բռնած ունի մի մոմատախտակ՝ պատգամը։ Երկուսն էլ հագած են երկար պատմուճան, իսկ գոտիներին կրում են խարազաններ՝ որպես իրենց արժանապատվության նշան։ Բացատրական արձանագրությունն ասում է.*

*«Ես, Ասորեստանի Թագավոր Աշուրբանիպալս, իմ տիրակալներ Աշուրի և Իշտարի օգնությամբ հաղթեցի թշնամիներին, ի կատարյալ հագուրդ իմ սրտի ցանկության։ Ուրարտուի Թագավոր Ռուսան լսեց Աշուրի հզորության մասին խոսքը, և սարսափը նրան զգետնեց։*

*«Նա իր մեծամեծներին ուղարկեց Արբելա՝ իր հարգանքներն ինձ մատուցելու։ Ես նրանց դիմաց կանգնեցրի Էլամի մեծամեծներ Նաբուդամիկին և Խումբադարային՝ լպիրշ պատգամի մոմատախտակը ձեռքներին»*[1]*։*

*Այդ տեսարանը տեղի է ունենում 655 թվականին, Թեումմանի ողբերգական վախճանից առաջ։ Աբ ամսին (15 հուլիս—15 օգոստոս) Աշուրբանիպալը գտնվում էր Արբելայում, որտեղ Իշտարից օգնություն էր խնդրում դուրս գալու արշավանքի Թեումմանի դեմ։ Հետևյալ՝ ուլուլ ամսին (15 օգոստոս—15 սեպտեմբեր), նա մեկնեց*[2]*։*

*Այս Թագավորի* Տարեգրության *մեջ կա շատ վնասված մի տեղ, ուր*

---

[1] Layard, Niniveh and Babylon, *էջ 344—6.* Streck, II, *էջ 317 և 421.* Maspero, Histoire ancienne de l'Orient, III, *էջ 404։*

[2] Տարեգրություն, Գլան B, V, *16—21, հիշատակում են աբ ամիսը,* V, *77՝ ուլուլ ամիսը։ Խոսելով Թեումմանի ուղարկած պատվիրակների ժամանելու մասին,* IV, *95, գործածում են* arbi-šam *բառը, որ Շտրեկը թարգմանում է «ամսական», «ամենամսյա»։ Թվում է, թե ուզում են ասել, որ ուղարկվածները հասել էին նախորդ, այսինքն՝ դուզու ամսին (=15 հունիս—15 հուլիս) 655 թվականի։*

մնացել են միայն հետևյալ բառերը՝ «Ուրարտուի թագավորը» և «Արբելա»[1]։ Եթե դա Ռուսա թագավորի ուղարկած դեսպանության մասին է, պետք է ընդունել, որ նա Ասորեստան էր հասել ճիշտ այն պահին, երբ թագավորն Արբելայումն էր, աբ ամսում, ուր և իր ցույցը կատարեց՝ դեսպանների վրա տպավորիչ ազդեցություն թողնելու համար[2]։ Այսպիսով, ճշգրիտ մի թըվական գալիս է ապացուցելու, որ Ռուսան 655 թվականին դեռ գահի վրա էր։ Եթե ճիշտ է, որ Թեումմանի պարտությունն ու գլխատումը տեղի է ունեցել այդ տարին, ուրեմն, դեսպանությունը ժամանել է նախքան այն հաղթահանդեսը, որը եղավ թագավորի՝ Թեումմանի դեմ տարած հաղթությունից հետո։ Հետևաբար, դեսպանության նպատակը պետք է լիներ Ռուսայի շնորհավորանքները հաղորդել Աշուրբանիպալին՝ էլամական պատերազմի հաջող ավարտի կապակցությամբ։

Տարեգրության վերջում մի ծանոթություն հաստատում է մի երկրորդ դեսպանության գալը, ուղարկված այս անգամ Սարդուրի թագավորի կողմից։ Տեքստն ասում է. «Ուրարտուի թագավոր Սարդուրին, որի թագավորհայրերն ուղարկել են իմ հայրերին «եղբայրություն» (այսինքն՝ եղբայրական ողջույն), այդ ժամանակ լսելով այն հուժկու գործերի մասին, որ մեծ աստվածները սահմանել էին ինձ համար, ուղարկեց ինձ հանձնելու, ինչպես որդին իր հորը, տիրակալին պատշաճ ողջույն, և այդ առթիվ նա ինձ հղեց հետևյալ պատգամը՝ «Ողջո՛ւյն իմ տեր թագավորին» և հարգանքով ու խոնարհաբար իմ դիմաց բերել տվեց իր ծանրաքաշ նվերը»[3]։

«Եղբայրական ողջույն»-ը հակադրվում է «տիրակալին պատշաճ ողջույն»-ին այն իմաստով, որ Ուրարտուի հին թագավորները Ասորեստանի թագավորների հետ վարվում էին որպես եղբայրներ, այսինքն՝ հավասարը հավասարի հետ, մինչդեռ Սարդուրին նրա նկատմամբ հանդես է գալիս որպես որդի իր հոր նկատմամբ, ուրեմն, որոշակիորեն Ասորեստանի թագավորից իրեն ցած է համարում։ Սակայն արդյո՞ք դա վասալական կախման մասին է վկայում, ինչպես ընդունում են ոմանք։ Տեքստն ամենևին այդպիսի եզրակացության հիմք չի տալիս։ Հոր և որդու միջև եղած հարաբերությունը վասալական հարաբերություն չէ։ Վասալը վճարում էր որոշ հարկ, մինչդեռ Սարդուրին միայն նվերներ էր ուղարկել։ «Ողջո՛ւյն իմ տեր թագավորին» բառերը վասալական նշանակություն չունեն։ Դա շատ սովորական նամակագրական ձև է, որ գործածվում է թագավորին ուղղըված բոլոր նամակներում՝ նահանգների կուսակալների, զանազան գոր-

---

[1] Գլան B=Streck, II, էջ 137։

[2] Streck-ը, I, էջ CDLXVI, եթե կարծում է, որ Թեումմանի վախճանը եղել է 655 թվականին, ապա իզուր է Ասորեստան ժամանելու թվականը համարում 654 թ.։

[3] Տարեգրություն, Գլան A, X, 40—50=Streck, II, էջ 85։

ծակալների և պաշտոնյաների կողմից, և նույնիսկ գահաժառանգների կողմից։ Նույն ինքն Աշուրբանիպալը դիմում էր իր հորը նույն բառերով[1]։

Նույնիսկ եթե Աշուրբանիպալը կամենար ասել, թե Սարդուրին ինքն իրեն նկատում էր որպես վասալ, պատմական տեսակետով դա անարդարացի հավակնություն կլիներ։ Ասորեստանը՝ Բաբելոնի, Էլամի և Արաբիայի դեմ պատերազմների մեջ մխրճված, ոչ մի վտանգ չէր ներկայացնում Ուրարտուի համար, նույնիսկ իր հաղթանակներով հանդերձ։ Ի՞նչը կմղեր Սարդուրիին ինքնակամ խոնարհվելու Ասորեստանի թագավորի առջև[2]։

Սարդուրին, շատ ավելի երիտասարդ լինելով Աշուրբանիպալից, որը նրա հոր տարիքին էր, կարող էր Ասորեստանի թագավորին «իմ տեր» կոչել, ինչպես թագավորների որդիներն էին ասում առանց իրենց հոր վասալները լինելու[3]։

Դեսպանության ճշգրիտ թվականը հայտնի չէ։ Նա առաջ է եղել, քան 636 թվականի այն վավերագիրը, որը հիշատակում է վերոհիշյալ դեսպանությունը։ Առաջին՝ Ռուսայի հղած դեսպանությունը 648 թվականին գրված վավերագրում հիշատակված վերջին եղելությունն է։ Երկրորդ դեսպանությունը պետք է որ այդ թվականից ավելի ուշ լինի։ Այսպես ուրեմն, այդ դեսպանությունը 648—636 թվականների միջև է ընկնում։

Ինչպիսի՞ հանձնարարություն ուներ այդ դեսպանությունը։ Դա անհայտ է մնում։ Լեհման-Հաուպտի այն կարծիքը, թե դեսպանությանը հանձնարարված էր Սարդուրիի թագադրությունն ազդարարել ասուրական պալատին, անշուշտ ավելի համոզիչ կլիներ, եթե կարելի լիներ այն համաձայնեցնել տեքստի հետ, որն ասում է, թե Սարդուրիի ուղարկած պատվիրակները եկել էին Աշուրբանիպալին շնորհավորելու իր կատարած փայլուն սխրագործությունների համար։ Ասորեստանի թագավորը նոր էր խեղդել Բաբելոնի թագավոր՝ իր եղբայր Շամաշշումուկինի ապստամբությունը և ճզմել նրա դաշնակիցներին՝ Էլամի թագավոր Ումմանալդաշին ու Արաբիայի թագավորներին։ Խոսքը հենց այդ սխրագործությունների մասին է, որոնք տեղի էին ունեցել 648—636 թվականներին։ Շամմաշշումուկինի վրա տարած հաղթանակը 648 թվականին էր։ Երկու արշավանքները՝ Էլամի դեմ և մյուս երկուսը՝ Արաբիայի դեմ տեղի են ունեցել 648 թվականից ավելի ուշ և 636 թվականից ավելի վաղ։ Վերջին թվականը

---

[1] Օրինակ՝ Հարպերի նամակում՝ 1026=Պֆեյֆեր, 93՝ «Իմ տեր թագավորին, քո ծառա Աշուրբանիպալ»։

[2] Մանավանդ, Վինկլերն է, որ հղացել է վասալության գաղափարը՝ Altorient. Forschungen, I, էջ 394։ Streck-ը, նշ. աշխ., էջ 85, կարծես այդ մտքին համամիտ է, բայց I, CCLXXXVI-ում այն մերժում է և իրավացիորեն։

[3] Մեր օրերում դեռես Պարսկաստանում երեխաները իրենց հորը «աղա», տեր, ասումցիչ են կոչում։

վերոհիշյալ իրադարձությունները հիշատակող վավերագրի թվականն է։ Ոմանք կարծում են, թե այդ արշավանքները կատարվել են 648 թվականին մոտ ժամանակներում, ուրիշներ ենթադրում են՝ մոտավորապես 642—639 թվականներին։ Դրանք զուտ ենթադրություններ են։ Աշուրբանիպալը, որը անգութ և վրեժխնդիր բնավորություն ուներ, համենայն դեպս տարիներ չէր սպասի պատժելու համար Էլամին, որն օգնել էր իր ապստամբ եղբորը։ Հավանական է, որ էլամական արշավանքները հաջորդել էին Շամաշշումուկինի դեմ տարած հաղթանակին, և Էլամի թագավորության կործանումը 646 թվականի վերջերին արդեն կատարված իրողություն էր։

Էլամի հազարամյա մայրաքաղաք Սուսի (Շոշ) գրավումն ու կողոպտումը Աշուրբանիպալի սխրագործություններից ամենատպավորիչն էր։ Եթե Սարդուրիի դեսպանությունը իսկապես որևէ կապ ուներ ասուրական զենքի հաջողության հետ, առաջին հերթին հարկավոր էր մտածել Էլամի անկման մասին, որը կարող էր Ուրարտուի թագավորին դրդել «իր ողջույնն» ուղարկել հաղթողին և այդ գործողությունը հենց 645 թվականի ընթացքում իրականացնել[1]։

Ասուրական վավերագրերը Ուրարտուի մասին այլևս չեն խոսելու։ Աշուրբանիպալի «սխրագործությունները» Ասորեստանի համար աղետաբեր եղան։ Ասորեստանի թագավորի կողմից քաղաքական սխալ էր Էլամի կործանումը։ Այդ երկիրը պատնեշ էր կազմում մեդական ցեղերի առաջխաղացման դեմ և չափավորում Բաբելոնի փառասիրությունը։ Նրա կործանումը բացեց Ասորեստանի այդ թշնամիների ախորժակը։ Աշուրբանիպալի հաջորդները՝ Աշուրետիլիլանին (626—621), Սինշարիշկունը (620—612)

---

[1] **G. Smith**-ը, The Assyrian Eponym Canon, էջ 162, Սուսի կործանումը 646 թ. է համարում, Շեյլը և Դորմը՝ 640 թ, Լեհման-Հաուպտը՝ 645 թ., Շտրեկը՝ 642—639 թթ. միջև։ Այս վերջին գիտնականը «unwahrscheinlich» (անհավանական) է գտնում, որ միայն մեկ տարվա անցրպետ գոյություն ունենա Էլամցի Ումանալդաշի դեմ ձեռնարկած առաջին և երկրորդ պատերազմների միջև, դրա համար էլ դեմ է արտահայտվում Սմիտի առաջարկած թվականին (**Streck**, նշ. աշխ., CCCXXXVI, ծան. 2)։

Սակայն ավելի անհավանական է, որ Աշուրբանիպալը իր ապստամբ եղբոր տապալումից հետո տասը տարի հետաձգած լինի Էլամից լուծելիք վրեժը՝ ժամանակին ապստամբին օգնած լինելու համար։ Սուսում հսկայական ավար գրավելու հեռանկարը նույնպես շարժառիթ էր արշավանքն շտապեցնելու։ Շամաշշումուկինն սպանվեց 648 թ., ԳլաճA (կամ Ոասամի)-ն, որը գրված է 648 թ. աբ ամսին, դեռևս չգիտե նրա մահը, որտեղից հետևում է, որ այդ մահը տեղի է ունեցել նույն տարվա երկրորդ կեսին։ Առաջին արշավանքն Էլամի դեմ սկսվել է սիմանու ամսի սկզբին (Գլաճ, IV, 110)՝ մայիսի 15-ին. երկրորդը վերջացավ կիսլիմու ամսում (նոյեմբերի 15—դեկտ. 15) (նույնը, VI, 122)։ Հավանական է, որ դա 647 թ. սիմանն էր, իսկ կիսլիմը՝ նույն տարվանը կամ 646 թվականինը։ Սարդուրիի դեսպանությունը եկած կլիներ հաջորդ տարին՝ 645 թ.։

և Աշուրուբալլիտ II-ը (611—609) անկարող եղան կասեցնել իրենց երկրին սպառնացող ճակատագրական հարվածը։

Աշուրբանիպալի մահից անմիջապես հետո Բաբելոնը թոթափեց ասուրական լուծը, և Նաբոպալասարը, որը եռանդուն տիրակալ էր, նոր պետության հիմքը դրեց ու մեդացիների առաջնորդ Կիաքսարի հետ դաշինք կնքեց։

612 թվականի հունիս ամսին Կիաքսարի և Նաբոպալասարի դաշնակից ուժերը պաշարեցին Նինվե քաղաքը։ Օգոստոսին արդեն այն գրավված և բոցերի էր մատնված։ Աշուրուբալլիտն իր ուժերը կենտրոնացրեց Խառանում և դիմադրեց մինչև 609 թվականը, այն տարին, երբ Նաբոպալասարը վերջին հարվածը հասցրեց այդ մեծ պետությանը և ընդմիշտ կործանեց այն։

Ասորեստանի պատմության մեջ ներկա էքսկուրսի արդյունքները մի քանի խոսքով ամփոփելու համար նախ նշենք Ուրարտուի թագավորներին, որոնցից Արամեն, Սարդուրի I-ը, Իշպուինան իշխեցին IX դարում, Արգիշտի I-ը, Սարդուրի II-ը, Ռուսա I-ը՝ VIII դարում, Արգիշտի II-ը Ռուսա II-ը և Սարդուրի III-ը՝ VII դարում։

Ապա հիշենք Ասորեստանի և Ուրարտուի միջև գոյություն ունեցած բացառապես ռազմական հարաբերությունները, նկատի առնելով միաժամանակ, որ եղած աղբյուրները միայն ռազմական հաղորդումներ են։ Վերջապես, հիշենք նաև մի չեզոք գոտի, մի տեսակ terra nullius, այդ երկու պետությունների միջև։ Դա լեռնային տերիտորիաների գոտին է, որը տարածվում է Եփրատից մինչև Զագրոսի լեռնաշղթայից այն կողմ և ընդգրկում է երկու Տիգրիսների և երկու Զաբերի վերին հոսանքները։

Այդ միջանկյալ գոտում և հանուն նրա երեք դար տևած մի համառ մրցակցություն ծավալվեց՝ երկու կողմերի փոփոխական հաջողությամբ։ Եթե Ասորեստանին հաջողվեց երեք անգամ թափանցել Ուրարտու, վերջինս էլ իր հերթին խորացավ մինչև Մուսասիր՝ Ռովանդուզի հյուսիսում և չդադարեց իր քաղաքական ազդեցությունը զգացնել Եփրատի ավազանում՝ Մելիտենեից մինչև Արպադ։

Սխալ կլիներ Ասորեստանին միշտ տեսնել հաղթողի դերում, վստահելով ասուրական ռազմական հաղորդումներին։ Ասորեստանը նույնպես դժվարին ժամեր է ապրել Ուրարտուի ճնշման ներքո։ Ռազմական հաղորդումների՝ դարից դար կրկնվող, պարզապես պատճենավորվող, ծեծված ու միանգամայն պայմանական պատմելաձև, միատեսակ արտահայտություններ, միատեսակ ձևակերպումներ, միատեսակ նախադասություններ՝ ռազմական հաջողությունը նկարագրելու համար, ներբողական միտայնություն, որը հասցնում է մինչև ծիծաղելի չափազանցությունների,

այս բոլորը հեռու է ծառայելուց այն ճշմարտության բացահայտմանը, որին հետամուտ է պատմագիտությունը[1]։

Արշավանքների երթուղիների քննությունը, քաղաքների, նվաճված հայտարարվող երկրների տեղադրումը, որոնցով մեր շարադրանքը թերևս շատ է ծանրաբեռնված, թույլ են տալիս որոշ չափով ստուգելու այդ հաղորդումները։ Երբ ասուրական զենքերին այնքան գովասանքներ շռայլելուց հետո հայտնի է դառնում, օրինակ, որ ուրարտական զորքերը բանակել են Ասորեստանի մայրաքաղաքից հարյուր կիլոմետր հեռավորության վրա, Կար-Սիպպարի դիմաց, ապա այս միակ փաստն իսկ անժխտելիորեն ավելի մեծ արժեք է ստանում իրերի ճշմարիտ դրությունը մեզ ներկայացնելու համար, քան թագավորական գրագիրների ճոռոմ լեզուն։

Այժմ անցնենք ուրարտական վավերագրերի քննությանը։

---

[1] Սարգոնը հավաստիացնում է, որ ութերորդ արշավանքի ժամանակ Ուրարտուում (որտեղ նա այնքան բերդեր կործանեց՝ «լի քաջարի մարտիկներով») ինքը կորցրել է միայն 6 մարդ՝ մեկ կառքի վարորդ, 2 հեծյալ և 3 սակրավոր։

Ասարխադդոնը Շուպրիայի դեմ կատարած արշավանքի ժամանակ իր կորուստը գնահատում է ճիշտ նույն ձևով՝ «մեկ կառքի վարորդ, 2 հեծյալ, 3 սակրավոր»։

ԳԼՈՒԽ ՉՈՐՐՈՐԴ

# ՈՒՐԱՐՏՈՒ ՊԵՏՈՒԹՅՈՒՆԸ (ԸՍՏ ԻՐ ՎԱՎԵՐԱԳՐԵՐԻ)

## 1. ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ԱՐՁԱՆԱԳՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՄԱՌՈՏ ՏԵՍՈՒԹՅՈՒՆ

*Ուրարտուի առաջնորդները, վաղ ժամանակներից սկսած, ասորեստանցիներից փոխ էին առել սեպաձև գրության սիստեմը, որպեսզի իրենց լեզվով շարադրեին այն, ինչ որ նրանք արժանի էին համարում հիշատակության։ Նրանց արձանագրությունների մի մասը հասել է մեզ, և այն լրիվ հաստատում է ուրարտական թագավորների ցանկը, որը մեզ ներկայացրել են ասորեստանյան վավերագրերը։ Այդ արձանագրությունները, անշուշտ, նոր լույս են սփռում ասուրա-ուրարտական հարաբերությունների վրա։ Նախքան դրանց քննությանն անցնելը, անհրաժեշտ է մի հայացք նետել Ուրարտուի գրական ժառանգության վրա, համառոտակի ներկայացնելով ձեռքի տակ գտնվող և օգտագործման ենթակա նյութերի ամբողջությունը։*

*Ուրարտական հնությունների առաջին «որոնող» Ֆ. Է. Շուլցից հետո նորանոր հայտնաբերումները բազմացրին երկրի վիմագրական տեքստերի թիվը։ Դեռևս գոյություն չունի բոլոր հայտնի արձանագրությունների լրիվ ժողովածու։ Ա. Հ. Սեյսը 1882 թվականին* JRAS*-ի հատորներից մեկում հավաքեց, վերծանեց և անգլերեն թարգմանեց հիշյալ թվականից առաջ հրապարակված արձանագրությունները։ Հետագայում ևս նա շարունակեց նոր արձանագրությունների հրապարակման գործը նույն հանդեսի հատորներում։*

*Լեհման-Հաուպտը և Վ. Բելքը, 1893—1899 թվականներին ճամփորդելով Հայաստանում, տեղում ստուգեցին վավերագրերը, լուսանկարեցին, պատճենավորեցին, ապա և նոր արձանագրություններ հայտնաբերեցին։ 1900 թվականին նրանց աշխատանքի արդյունքների մասին մի նախնական զեկուցագիր հրապարակ եկավ հետևյալ վերնագրով.* Bericht über die Ergebnisse der von W. Belck und Lehmann, *1898—1899* ausgefuerten Forschungsreise nach Armenien.

*Ավելի ուշ Լեհման-Հաուպտը հրապարակեց 1928 թ.՝ առաջին, իսկ 1935 թ.՝ երկրորդ պրակը ուրարտական արձանագրությունների ժողովածուի, հետևյալ խորագրով՝* Corpus inscriptionum Chaldicarum։ *Այստեղ զետեղված են սեպագիր արձանագրությունների լուսանկարչական վեր-*

*արտագրությունները և նրանց վերծանությունը։ Դժբախտաբար, հեղինակի մահն արգելք հանդիսացավ արժեքավոր այդ հրատարակության ավարտին։ Արձանագրությունների ցուցակը պետք է ընդգրկեր 193 կտոր։ Հրապարակված երկու պրակները պարունակում են 1—100 կտորները։*

*Արձանագրությունների մասին ստորև բերվող հակիրճ շարադրանքում մենք կհետևենք* Corpus-*ի նախապատրաստական մասում ընդունված կարգին։ Այդպես կվարվենք և՛ արդեն ավարտված, և՛ ծրագրային վիճակում մնացած մասերի նկատմամբ։ Մենք կնշենք ամեն մի արձանագրության համապատասխան լուսանկարչական տախտակի համարը, ինչպես նաև հետևյալ ժողովածուներում տրված համարը՝* B=Bericht über die Ergebnisse, Sayce=The Cuneiform Inscriptions of Van, Planche (pl.)= Tafelband des Corpus։ *Այդ ժողովածուներից հետո հրապարակված արձանագրությունները ցույց կտրվեն ըստ իրենց հրատարակությունների։*

*Այս արձանագրությունները թողել են Ուրարտուի թագավորները, ուստի և նրանք կգրանցվեն ըստ այդ թագավորների անունների հաջորդականության։ Ուրարտագիտության ներկա դրությամբ, որին կանդրադառնանք հետագայում, անհնար է տալ տեքստերի լրիվ թարգմանությունը։ Եթե անգամ հնարավոր լիներ, դարձյալ մեր նպատակը դա չէ։ Մենք ուզում ենք ամենից առաջ հստակ գաղափար կազմել ուրարտական վիմագրական գրականության բովանդակության մասին։ Այդ իսկ պատճառով մենք բավարարվում ենք ընդգրկելով միայն էականն ու ստույգը տեքստերում։*

*Երբ խոսքը ռազմական գործողությունների մասին է, մենք կհիշատակենք այն երկրները, քաղաքները, թագավորներին, որոնց դեմ էին ուղղված արշավանքները։ Երբ հարցը կառուցումների մասին է, մենք կպահպանենք բնագրային տերմինները, որոնք ցույց են տալիս կառուցումների զանազան տեսակները։*

*Մենք որոշիչները նշել ենք հետևյալ կերպ՝* ILU=d(ieu), *«աստված»,* ALU=v(ille), *«քաղաք»,* MATU=p(ays), *«երկիր»,* I=*հատուկ անուն։ Հոլովային վերջավորությունները բաժանված են գծիկով։ Մենք նախընտրեցինք անունները վերարտադրել այնպես, ինչպես գտնվում են տեքստերում, այսպես՝* Meišta-ni, *որտեղ* Meišta-*ն քաղաքի անուն է, իսկ* ni-*ն հոլովային վերջավորությունը։*

## *ՍԱՐԴՈՒՐԻ ԼՈՒՏԻՊՐԻԻ ՈՐԴԻ*

**1—3.** *Վան, Նավահանգստի դարպասին (Իսքելե-կապուսի)։ Ամենահին արձանագրությունը՝ գրված ասուրերեն լեզվով, ավերակ դարձած հին պարսպի վրա.*

Tuppu ša $^{Id}$Sar-duri apil $^{I}$Lu-ti-ip-ri šarri šarru dan-nu šar kiš-ša-ti šar $^{P}$Na-i-ri šarru ša-nin-šu lâ išû $^{an}$rê'û tab-ra-te la-di-ru tu-qu-un-te šarru mu-šak-niš lâ kan-šu-te-šu.

$^{Id}$Sar-duri apil $^{I}$Lu-ti-ip-ri šar šarrâni$^{pl}$ ša kâli-šu-nu šarrani ma-da-tu am-hur $^{Id}$Sar-duri apil $^{I}$Lu-ti-ip-ri izakkar ma-a ana-ku pu-la-ni an-nu-te ištu libbi $^{v}$Al-ni-u-nu, na-ṣa-ka ana-ku dûru an-ni-u ar-ti-ṣi-ip.

*«Լուտիպրիի որդի Սարդուրիի արձանագրությունը՝ մեծն թագավորը, հզոր թագավորը, բոլորի թագավորը, Նաիրիի թագավորը, թագավոր, որ իր հավասարը չունի։ Այն հիանալի հովիվը, որ չի վախենում ոչ մի դիմադրությունից, թագավոր, որ ըմբոստներին հնազանդեցնում է։ Լուտիպրիի որդի Սարդուրին, թագավորների թագավորը, որ բոլոր թագավորներից հարկ է ստանում։ Լուտիպրիի որդի Սարդուրին ասում է՝ այս քարերը բերեցի* $^{v}$Alniun-*ից, բարձրացրի այս պարիսպը»*[1]։

Pl. XL, XLI, B. 2—3, Sayce III.

## IŠPUINI SARDURIḪINI

## *ԻՇՊՈՒԻՆԻ ՍԱՐԴՈՒՐԻԻ ՈՐԴԻ*

4. *Զովաստան*[2], *Վանի մոտ։ Սյուների բեկորների վրա՝* Išpuiniše Sarduriḫiniše ini BITU zaduni, *«կառուցեց այս տունը»*.

Pl. XLII; B. 4—9.

5—6. *Զովաստան։ Քարի վրա ընթեռնելի է* $^{d}$Quera, *«Քուերա աստված»*. BITU-ašei Išpu(uini).

Pl. XL, XLI; B. 10; Sayce VI.

6ա. *Ոսկեբակ, Վանի մոտ։ Փորված մի քարի վրա, որը, հավանաբար, սյունի հիմք է, երեք անգամ կրկնված է.*

Išpuiniše Sarduriḫiniše ini BITU-e zaduni՝

Pl. I; Belck, Zeit. f. Ethnologie, XXIV, 1892.

7—9. *Պատնոց, Մելազկերտից հյուսիս-արևելք։ Սյունի բեկոր, որտեղ կարդացվում է Իշպուինիի անունը*[3]։

---

[1] *Լեհման-Հաուպտը* dûru-*ն թարգմանում է* Mauer, Kastell: *Շտրեկը,* Assurbanilpal III, *էջ 458, վիճարկում է* dûru-*ի* Festung *իմաստը։ Սակայն Դուրշարուկինը նա նշում է որպես Սարգոնի հիմնադրում։ Անկախ Շտրեկի դիտողությունից, մենք նախընտրում ենք "պարիսպ" թարգմանությունը։ Հայ պատմիչ Փավստոսն այն կոչում է «աշտարակ»։ Այդ աշտարակից պարսիկները կախեցին Համազասպուհի հայ իշխանուհուն, Պարսկաստանի թագավորի դեմ ապստամբած մի իշխանի կնոջը։* Փավստոս, IV, *59 և* V, *37։*

[2] *Զովաստան «զով-աստան—թարմ օդի վայր»։ Արտասանում են նաև Սևեստան։*

[3] *Ներկայումս Բրիտանական թանգարանումն է, անշուշտ, Ոսկեբակից բերված, ուր 1917 թ. մենք տեսանք նման մի քար, որը* «stown vessel» *չէ, ինչպես կարծում է Սեյսը, այլ սյունի հիմք։*

B. 13; Sayce LIX, LXX.

10. *Լեզք, Վանի մոտ։ Մի քարի վրա, գուցե սյուն է՝*
Išpuiniše Sarduriḫiniše burganani šidištuni... BITU-ini šidištuni inuki badusini sui giei šidaguri.

Pl. XLII; B. 12; Sayce III.

## *ԻՇՊՈՒԻՆԻ ԵՎ ՄԵՆՈՒԱ*

11. *Վան։ Թավրիզի դարպասի մոտ, ժայռի վրա՝*
Išpuiniše Sarduriḫiniše Menuaše Išpuiniḫiše
Inušpuaše Menuaḫiniše ᵈḪaldiei susie šidištuše*(?)*[1].
ᵈḪaldinili BABU-li... susie šidištuše*(?)*
*20* paḫani*(եզ)*, šuše*(ոչխար)* ᵈḪaldini biedini[2].

Pl. II; B. 18.

12. *Կելիշին՝ «կանաչ քարակոթող», Ռովանդուզի հյուսիսում։ Երկլեզվյան արձանագրություն՝ ուրարտերեն և ասուրերեն։ Իշպուինի՝ թագավոր* ᵖSur-aue-*ի (*=Šurili*), թագավոր* ᵖBiain-aue*(*=Biainili*), իշխան* ᵛTušpa-*ի, և նրա որդի Մենուան, հանձնելով Արդինի քաղաքը (ասուրերեն՝* Muṣaṣir*)՝* iarani šidištu-u... teru-u TUPPU. *Իշպուինին պարգևներ ավեց՝ պղնձյա և արծաթյա ամաններ, 1112 եզ, 9120 ձի և ոչխար, 12 480 խոշոր ուլ։*

Pl. III; B. 17; Sayce LVI; Götze, Zeit. f. Assyriologie XXIX, 1929; Tseretheli, Revue d'Assyriologie, XXX, 1933.

13. *Վան, քարակոթող Սուրբ Պողոս եկեղեցու խորանի պատի մեջ։ Տեքստը խիստ աղճատված է։ Կարելի է վերականգնել երկու այլ արձանագրությունների օգնությամբ, որոնք խոսում են նույն նյութի մասին։ Խոսքը վերաբերում է մի զինվորական արշավանքի, ընդդեմ* ᵖEtiuḫini *երկրի թագավորներ* ˡLuša, ˡKatarza, ˡU*(*i*)*ṭeruḫi-*ի։ Ավարը՝ 1720 կին, 660 տղամարդ, 26 ձի, 13 540 եզ, 20 785 ոչխար։*

PL. IV-V; B. 14; Sayce XXXI.

13ա. *Վան, Սուրբ Պետրոս եկեղեցի, № 13-ի պատճենը՝ հայտնաբերված 1917 թվականին Ն. Ադոնցի և Ա. Քալանթարի կողմից։*
Мещанинов, Доклады Академии наук, 1930.

14. *Քիունենց (թուրքերենացված՝ Քազիմ-օղլի), Արճակ (Արճիշակ) լճի արևմուտքում։*

*Իշպուինին և Մենուան՝* ini pulusie kuitu-u *«տաշեցին այս քարակոթողը»,* ᵈHaldi-*ն մեկնեց, նրա բանակը (?) հաղթեց* ˡUiṭeruḫi, ˡLuša,

[1] *Ավելի շուտ պետք է կարդալ* šidištu-u*։*
[2] *Ոչ թե* bili edini, *ինչպես կարդում է Լեհման-Հաուպտը։*

[1]Katarza։ Իշպուինին և Մենուան հեռևեցին $^{d}$Haldi-ին և նույն անձանց հպատակեցրին։ Իշպուինիի և Մենուայի ուժերն էին՝ 66 մարտակառք, 1430 հեծելազոր, 15 760 հետևակազոր[1]։

Լուսանկար՝ Textband, p. 35; B. 15; J. Friedrich, Einfürung ins Urartäische, p. 52.

15. Խարակոնիս (Թուրք.՝ Կարագյունդյուզ)։ Իշպուինին և Մենուան ini pulusi kuitu-u «կանգնեցրին այս քարակոթողը»։ $^{d}$Haldi-ն մեկնեց, նրա բանակը հաղթեց $^{v}$Meišta-ni[2]-ն և $^{p}$Baršuai-ի ebani-ն «երկիրը»։ Իշպուինին և Մենուան գնացին $^{v}$Meišta-edi, նրանց բանակը, huradin-a, կազմված էր 106 մարտակառքից, 9174 հեծելազորից, 2704 նետաձիգից։ Նրանք հպատակեցրին Baršua-i-ի երկրներ $^{v}$Meišta-ni, $^{v}$Quua-ni, $^{v}$Saritu-ni, $^{v}$Nigibi-ni MATU-ni և ավար վերցրին ձիեր ու անասուններ։ (Այս միևնույն տեքստը կրկնված է քարակոթողի հակառակ կողմում)։

B. 16 (տե՛ս ստորև № 20)։

16. Աշրուտ-դարգա[3], Պագանի մոտ, Կոտուրի ակունքում։ Արձանագրությունը փորագրված է դռան ձև ունեցող մի որմնախորշում.

Իշպուինին և Մենուան susi šidištu-ni, «կառուցեցին մեկ susi», teruni ardiše «կանոնադրություն սահմանեցին» աստվածներին զոհաբերություն անելու վերաբերյալ՝ մեկ ուլ $^{d}$Ḫaldi nipsiduli-ni-ին, մեկ եզ $^{d}$Ḫaldi urpuli-ni-ին, մեկ ցուլ $^{d}$Uarubani-e-ին, մեկ ոչխար $^{d}$Ḫaldi-naue BABI «խալդական դռներին», մեկ ոչխար $^{d}$Ḫaldi-naue BELI «խալդական զենքին»։ Տեքստը կրկնված է.

Pl. VI; B. 19; Wünch-Müller, Denkschriften d. Kais. Akademie d. Vissenschaft, Phil.-hist. Kl., Wien, 1888.

17. Մոխրաբերդ, Վանա լճի հարավային ափին։ Քարը տեղափոխված է Ախթամարի վանքը. գրված է՝ Իշպուինին և Մենուան ini-li BABU šidištu-li «կառուցեցին այս դուռը»։

B. 20; W. Belck, Zeit. f. Ethnologie, 1892. Марр, Записки Вост. Отд. Русского Археологического Общества, XXIV, 1917.

---

[1] Քիուսնենցի եկեղեցում մենք տեսանք մի սյան կես, մեկ կողմի վրա քսան տող արձանագրություն, մյուս կողմի վրա՝ տասնվեց։ Լուսանկարչական վերարտադրությունը գտնվում է Ա. Քալանթարի մոտ՝ Երևանում։

[2] Վերջավորությունը այստեղ՝ ավելի հեռու, բաժանված գծիկով, հոլովային վերջավորություն է։

[3] Լեհման-Հաուպտի կարծիքով, սա Աշոտակերտն է։ Հնարավոր է։ Սակայն այդպիսի անուն հայտնի չէ հին հեղինակներին։ Նրանք հիշատակում են մի ամրոց, որը կոչվում է Աշինոտ, Կոտորի (այսօրվա Կոտուրը) շրջանում, Ašrutdarga-h նշանակում է Աշրուտի (Աշոտ կամ Աշինոտ) արքունիք (պալատ)։

18. Վան։ Մհերի դուռն (Թուրքերեն թարգմանված է Մհեր կապուսի)։ Այսպես է կոչվում այն դարպասանման խորշը, որը եռակի շրջանակով փորված է Զիմզիմ ժայռի վրա։ Նա ծածկված է երկու պատճեն ունեցող մի արձանագրությամբ, որը աստվածներին զոհաբերություն կատարելու մի կանոնադրություն է, աստվածները թվարկվում են իրենց անուններով։ Իշպուինին և Մենուան ini-li BABU zaduali teirtu ardiše, «տաշեցին այս դուռը և կանոնադրություն սահմանեցին» զոհեր մատուցելու $^{d}$Ḫaldi-ին[1], $^{d}$Tešeba-ին, $^{d}$Ardini-ին և ուրիշ լեզուների աստվածներին.

| | | | | |
|---|---|---|---|---|
| $^{d}$Ḫaldi-e nipsidua-li | 6 | ուլ | | |
| $^{d}$Ḫaldi-e urpu-e | 17 | եզ, | 34 | ոչխար |
| $^{d}$Tešeba-a | 6 | եզ, | 12 | ոչխար |
| $^{d}$Ardini-e | 4 | եզ, | 8 | ոչխար |
| $^{d}$Ḫutuini-e | 2 | եզ, | 4 | ոչխար |
| $^{d}$Turani-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$U-a (Tešeba-a?) | 2 | եզ, | 4 | ոչխար |
| $^{d}$Nalaini-e | 2 | եզ, | 4 | ոչխար |
| $^{d}$Šebitu-e | 2 | եզ, | 4 | ոչխար |
| $^{d}$Arsimela-a | 2 | եզ, | 4 | ոչխար |
| $^{d}$Anapša-a | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Diduaini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Šielardi-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Ḫaldi-naue BELI | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Atbini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Quera-a | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Elipri-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Taraini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Adaruta-a | 1 | եզ | 2 | ոչխար |
| $^{d}$Irmušini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$abuše urulili-ue šiua-li-ի[2] աստծուն | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Alaptušini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Erina-a | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Šiniri-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Unina-a | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Airaini-e | 1 | եզ, | 2 | ոչխար |
| $^{d}$Zuzumaru-e | 1 | եզ, | 2 | ոչխար |

1 Գրված է Ḫaldiei, բայց պատճենում՝ Ḫaldie։

2 Գուցե Uešiuali։

| | |
|---|---|
| $^{d}$Ḫara-a | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Araza-e | 1 եզ, 4 ոչխար |
| $^{d}$Ziuquni-e | 2 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ura-a | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Arṣi-bedini-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Arni-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini iniriaši-e | 1 եզ. 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini alsuiši-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini diruši-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldina-ue $^{am}$ASI$^{pl}$ | 2 եզ, 4 ոչխար |
| $^{d}$Tešeba $^{am}$ASI$^{pl}$ | 2 եզ, 4 ոչխար |
| $^{d}$Arṭu'arasau-e[1] | 2 եզ, 34(?)ոչխար |
| $^{v}$Ardininaue-*ի աստված* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{v}$Qumenunaue-*ի աստված* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{v}$Tušpaninaue-*ի աստված*[2] | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldinini-*ի քաղաքների աստվածներին* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Arṣuniuni-ni-*ի աստվածներին*[3] | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini daši-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Šuba-a | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldinaue BABI | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Tešeba BAB $^{v}$Eridiani[4] | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ardini BAB $^{v}$Uišini-ni[5] | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Elia'a-a | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini arni-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldini ušmaši-e | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Ḫaldinini susini-*ի աստվածներին* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Talapur-a | 1 եզ, 2 ոչխար |
| $^{d}$Qilibani-e | 1 եզ, 2 ոչխար |
| *երկրների աստծուն* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{p}$Alganinaue-*ի աստծուն* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{v}$Suininaue-*ի աստծուն* | 1 եզ, 2 ոչխար |
| $^{v}$Atqaninaue-*ի աստվածներին* | 2 եզ, 14 ոչխար |
| $^{d}$(Di)raue | 2 եզ, 14 ոչխար |

[1] *Ըստ պատճենի՝* Atu'arsaue։
[2] *Ըստ պատճենի՝* Tušpanaue։
[3] *Ըստ պատճենի՝* Arsuni(ni)։
[4] *Ըստ պատճենի՝* $^{v}$Irdie։
[5] *Ըստ պատճենի՝* Uišini։

| | |
|---|---|
| *ուրիշ լեզուների աստվածներին* | *4 եզ, 18 ոչխար* |
| $^{d}$Ḫaldini niribi-e | — *4 ոչխար* |
| $^{d}$Uainaue BAB $^{v}$Nisi...ni | — *2 ոչխար* |
| $^{p}$Babanaue-*ի (աստծուն)* | — *10 ոչխար* |
| $^{d}$Arubani-e | *1 ցուլ, 1 կով, 1 ոչխար* |
| $^{d}$Baba-a | *1 ցուլ, 1 կով, 1 ոչխար* |
| $^{d}$Tušpuea | *1 ցուլ, 1 կով, 1 ոչխար* |
| $^{d}$Auie | *1 ցուլ* |
| $^{d}$Aia | *1 ցուլ* |
| $^{d}$Sardi-e | *1 ցուլ* |
| $^{d}$Sinuiardi-e | *2 ոչխար* |
| $^{d}$Ipḫari | *2 ոչխար* |
| $^{d}$Barsia | *1 ոչխար* |
| $^{d}$Silia | *1 ոչխար* |
| $^{d}$Ar'a-a | *1 ոչխար* |
| $^{d}$Adiia | *1 ոչխար* |
| $^{d}$Uia | *1 ոչխար* |
| $^{d}$Ainau-e | *4 ոչխար* |
| $^{d}$Ardi-e | *2 ոչխար* |
| $^{d}$Inuanau-e | *17 ոչխար* |

*Խալդիին և ուրիշ լեզուների աստվածներին*

*Իշպուինիի և Մենուայի կյանքի համար՝ 3 եզ, 30 ոչխար*

*Իշպուինին և Մենուան տնկեցին* uldi *խաղողի (այգի),* zari *(պարտեզ). նրանք կառուցեցին* burgana-ni *(դղյակ) և սահմանեցին* ardiše *(կանոն)՝ երեք անգամ երեքական ոչխար մատուցել Խալդիին և նույնքան՝ մյուս աստվածներին։*

## MENUA IŠPUINIḪINI

## *ՄԵՆՈՒԱ ԻՇՊՈՒԻՆԻԻ ՈՐԴԻ*

*19. Վան։ Սուրբ Պողոս եկեղեցի։ Ռազմական հարաբերությունների մասին մի քարակոթող, որը մանրամասնությունների մեջ պակասավոր է և անհասկանալի։ Խոսքը* $^{p}$Ni... *և* $^{p}$Babana-a-*ի դեմ մղված մի արշավանքի մասին է։ Այս միևնույն տարին Մենուան գրավեց* $^{v}$Qalibila-ni, $^{v}$Arpuia-ni, $^{p}$Ususuani-ni, $^{v}$Ḫulmeru-ni, $^{l}$Tušurieḫi *մինչև* $^{p}$Marmani-*ի սահմանը(?), բոցերի մատնեց* $^{p}$Dirgu-ni, Išala-ni, *գրավեց երկրները և հրո ճարակ դարձրեց. ընթացավ մինչև* $^{p}$Ašuri-ni-*ի մոտ* $^{v}$Qumenu-ni-*ի սահմանը (?),* [2] *155 մարտիկներից ոմանք սպանվեցին, մյուսները կենդանի բռնվեցին։*

*Մեկ ուրիշ արշավանք ընդդեմ* ᵖMana-*ի, որը Մենուան քանդեց և հրկիզեց։ Նույն տարին զորքերը մեկնեցին և ավերեցին* ᵛSurišili-ni, ᵛTarḫigama-ni, ᴵSadalieḫini..., ᴵḪattina, ᵖAlzini-ni *երկրները. 2113 մարտիկներից ոմանք սպանվեցին, մյուսները կենդանի բռնվեցին։*

Pl. XI; B. 22; Sayce XXXII.

*20. Տաշթեփե, Ուրմիա լճի հարավ-արևելյան ծայրում։ Մենուան գրավեց Մանա երկիրը, այնտեղ կառուցեց* EKALLU *«բերդ» (այդպես ավելի ճիշտ է, քան «պալատ»)* ᵛMeišta-*ում, այնտեղ թողեց զինվորներ, նետաձիգներ։ Անեծք նրանց, ովքեր կքանդեն* pulusi-*ն (քարակոթողը)։*

Pl. XII; B. 23.

*21. Յոլակերտ, Կարակոյունլուի և Տաշբուռունի միջև եղած ավերակներ։ Ժայռի վրա փորագրված արձանագրությունը նկարագրում է* Erikuaḫi *երկրի դեմ կատարված արշավանքը։ Ինչպես ռազմական բոլոր նկարագրությունների մեջ, այնպես էլ այստեղ նախ՝* ᵈḪaldi-*ն մեկնում է համապատասխան երկրի դեմ կռվելու, այն նվիրում է թագավորին, ապա վերջինս գնում է գրավելու։*

*Մենուան հասավ* Erikuaḫi *թագավորի երկիրը, նրա* Luḫiuni-ni *թագավորական քաղաքը, գրավեց* Erikuaḫi-*ի ամբողջ տիրապետությունները և երկրին պարտադրեց հարկատվություն։ Հետևում է անեծք այն անձանց հասցեին, որոնք կքանդեն կամ կյուրացնեն* ṬUPPU-*ն (արձանագրությունը)։*

Pl. XIII; B. 24; Sayce XXXIV. *Հայտնաբերված և հրապարակված է էջմիածնի միաբան Մեսրոպ (Սմբատյանի) կողմից, «Արարատ», 1870։* Nik. I.

*22. Յոլակերտ։ Մենուան* ᴵErikua-*(*ḫi*)-ի* ᵛLuḫiuni-ni-*ում կառուցեց* ᵈḪaldini-li BABU *(խալդյան դռներ) և* EKALLU *(պալատ կամ բերդ)* badusie *(?)։*

Pl. XIV; B. 25; Sayce LXVI; Nik II.

*23. Գյուզակ, Վանա լճի հարավ-արևելյան ծայրում*[1]*։ Արձանագրությունը շատ է աղճատված։ Մենուան* ᵛLuḫiuni-i-*ում կառուցեց* ini-li BABANI *(այս դռները) և այնտեղ տեղադրեց (?)* anelu erie-li*։*

Pl. XXII; B. 25.

*24. Գյուզակ։ Ընթեռնելի՝* ᵐḫuradi ᵛLuḫiuni; anelu erie-li.

Pl. XXII; B. 26.

*25. Բերկրի։ Շատ վնասված՝ կարդացվում են* Menua, ᵛ*(*Lu*)*hiuni-ni, ᴵIrekua *անունները։ Կարծես Մենուան ուզում է ասել, որ Տուշպա քաղաքըն է բերել 173 գերի,* eri, agubi*։*

---

[1] *Գուցե «ընկուզակ» (ընկույզ)։*

26. *Զորովանք, Բերկրիի մոտ։ Մենուան գրավեց* edi *(տերիտորիա)* $^{I}$Irekuaḫi-*ի* *(ոչ՝* Irekuaše*)*. *ոմանք սպանված, ուրիշներ «գերի վերցված»*. uedianie-i*։ Զորս արձանագրությունները վերաբերում են* Erikuaḫi *կամ* Irekuaḫi *իշխանի երկրի գրավմանը,* $^{am}$ḫuradi *«բանակը»* $^{am}$uedinani *«կանայք», բայց* eri *և* $^{am}$erie-li-*ն համապատասխանո՞ւմ են արդյոք* ḫuradi-*ին*։

*Լուսանկար՝* Textband I, p. 50; B. 29.

27. *Յաղի-տաշ, Դահարի և Դելիբաբայի մոտ։ Ժայռի վրա փորված մի որմնախորշ կամ գաղտնի մուտք, ծածկված արձանագրությամբ* $^{I}$Diaueḫini *հզոր պետության դեմ կատարած արշավանքի մասին։ Մենուան գրավեց* $^{I}$Diaueḫi *երկիրը և թագավորական քաղաք* $^{v}$Šašilu-ni-*ն, կըռվով գրավեց երկիրը և բոցերի ճարակ դարձրեց* EKALLU$^{pl}$-ši-li *(պալատները կամ բերդերը)։ Նա ուղղվեց դեպի* Šešetina-a, $^{v}$Zuaina-a, $^{v}$Utuḫa-a[1]*։* Utupuršini-ni-*ն* $^{I}$Diaueḫi-*ի թագավորը եկավ թագավորին հանդիման, խոնարհվեց, Մենուան հարկ պարտադրեց նրան։ Նա ոսկի և արծաթ հանձնեց որպես հարկ։ Մենուան երկու թագավոր տարագրեց և հողին հավասարեցրեց* $^{I}$Baltu-ulḫi-e *երկիրը,* $^{v}$Haldiri ulhi-e-*ի սահմանները, երկրի* EKALLU$^{pl}$-a-ši-li *բերդերը։ Անեծք նրան, ով կըքանդի այս* TUPPU-*ն (արձանագրությունը)*։

B. 30; Schulz, XLII; Sayce XXX.

28. *Թոփրակ-կալա (Ալաշկերտ)։ Կոտրած քարի վրա չորս տող* $^{v}$Anašie-i *դեմ Մենուայի արշավանքի մասին։* Anaši-*ն կարծես Ալաշկերտի հին ձևն է*։

*Լուսանկար՝* Textband I, p. 54. B. 31. Марр, Известия Акад. материальной культуры. I. 1921.

29. *Բերկրի։ Մի վիմագիր քարակոթողի ստորին մասում։ Մենուան դրեց* $^{d}$Ḫaldinie badusie[2] TUPPU *«արձանագրություն». նաև* $^{v}$Arsuniuini*։ Անեծք որևէ քանդողին*։

Pl. XVI; B. 32; Sayce LXXXIX.

30. *Թար, Բերկրիի մոտ։ Ընկած քար, շատ վնասված արձանագրություն։ Խոսքը* $^{p}$Etiu-ni-*ի դեմ Մենուայի արշավանքի մասին է, որտեղից նա բերեց ավար՝ ձիեր և 7616* paḫi *(եզ)*։

Pl. XXIII; B. 33.

---

[1] Kuṭubi pa-a-ri-e $^{p}$Šeşetina-a $^{v}$Zuaina-a $^{v}$Utuḫa-a-i asuni, *№ 31*, I, *10—14*. Kuṭu-ni pa-a-ri-e $^{p}$Ḫatina-a... $^{v}$Šebeteri-a asuni.

[2] *Այս տեղը, ուր* badusie *կիրառված է* ṬUPPU-*ի նկատմամբ, չի արդարացնում «բընակավայր» իմաստը, որ Ծերեթելին տալիս է այս բառին։ Ասենք, «ավերակ» իմաստը, որ տալիս են ուրիշները, նույնպես չի հաստատվում*։

31. *Պալու։ Ժայռի վրա։ Արձանագրությունը խոսում է արշավանքի մասին.* ᵈḪaldi-*ն մեկնեց և կռվեց* ᵛŠebeteria-ni, ᵛḪuzanɛni *և* ᵖȘupa-ni *երկրների հետ*[1]*։ Ապա Մենուան գնաց և գրավեց նույն երկրները։ Նա վերցրեց* parie *«ավար» (?)* ᵖḪattina-*ում։ Նա տաշել տվեց* pulusi *«քարակոթող»* ᵈḪaldi-*ի համար* ᵛŠeteria-*ում,* ᵈḪaldi-*ի համար կառուցեց* iara-ni *«սրբավայր»* ᵛŠeteria asuni*(?)-ում։*

*Մենուան հարկ պարտադրեց* ˡSulie-*ին,* ᵛMeliṭeiaalḫe-*ի թագավորին։ Հետևում է անեծքի սովորական բանաձևը։*

Pl. XLV—XLVI; B. 34; Sayce XXXIII.

32. *Թրմերդ, գյուղ Մուշից արևելք։ Կոտրների վերածված քարակոթող՝ արձանագրությամբ։ Մի բեկորի վրա կարդացվում է. Մենուան ավերեց 400 քաղաք և բոցերի մատնեց* EKALLUᵖˡ-*ները «բերդերը»* ᵛQulme... ᵛEqaršu ku-*(*ṭubi*) կողոպտեց (?) բոցերի մատնեց* EKALLU-ni-*ն, երկրին (հարկ) պարտադրեց։*

*Մենուան «մեկնեց»* ᵖAlau-*(*ni*)(?),* ᵖUrmeniuḫi-di*։ Նա ավերեց* ᵖAlau-*(*ni*)-ն, ջարդեց* ᵛUrsai-ni-*ի (բնակիչներին), գրավեց երկիրը,* ᵖUrmeniuḫini-ni[2]-*ն հողին հավասարեցրեց։ Մյուս կողմում՝ սովորական անեծքը։*

Pl. LI. *և* XXIV; B. 35; Sayce XXXV A.

33. *Պաղին։ Երկու քարակոթող՝ մեկը եկեղեցու պատի մեջ, մյուսը ավերակների վերածված ուրարտական բերդի պատի մեջ։ Այս վերջինի վրա գրված է. Մենուան տաշեց այս* pulusi *(քարակոթողը)* ᵈḪaldi-*ի համար։ Առաջինը մի կողմի վրա նույնպես կրում է միևնույն արձանագրությունը, մյուս կողմի վրա սրան ավելացված է, որ Մենուան այնտեղ նշանակեց* ᵐEN *(իշխան)* ˡTitia-ni-*ին*[3]*։*

*Լուսանկար՝* Textband I. pp. 65—66.

34—46. *Շամիրամի ջրանցքի թմբի վրա կամ նրա մոտերքում՝ ժայռերի վրա փորագրված տասնչորս արձանագրություններ, որոնք խոսում են Մենուայի կողմից այս ջրանցքի կառուցման մասին։*

34. *Կատեպանց (Կատեպանների բերդը), Արտամետի մոտ ավերակների վերածված հին բերդ։*

---

[1] Šebeteria-ni, Ḫuza-ni *բառերի մեջ* -ni *ածանցը այլ է, քան* Supani-*ի մեջ։ Վերջինը հայցական է, մինչդեռ առաջին երկուսում* -ni-*ն ածականի ածանց է՝* -ini, *որը ցույց է տալիս, թե* Šebeteria-ini *երկիրը պատկանում է* Šebeteria-*ին,* Ḫuza-ini-*ն՝* Ḫuza-*ին։*

[2] Urmeniuḫini-ni edi, *բայց ոչ՝* Urmeniuḫininiedi*։*

[3] *Ա տեքստը չի համապատասխանում լուսանկարված քարի արձանագրությանը, հակառակ Լեհման-Հաուպտի նկարագրությանը։ Այնտեղ կարդացվում են Ա տեքստի առաջին տասը տողերը։*

dḪaldi-*ի հզորությամբ՝ Մենուան* ini pili aguni *կառուցեց այս ջրանցքը, որի անունն է Մենուայի ջրանցք։ Հաջորդում են Մենուայի տիտղոսները, և արձանագրությունը վերջանում է սովորական անեծքով։*

Pl. XVII; B. 37; Sayce XXII.

*35. Արտամետ, մասնավոր մարդու պարտեզում։ № 34-ի կրկնությունն է։*

B. 37; Belck, Zeit. f. Ethnolog., 1892.

*36. Մժնկերտ, ջրանցքից քիչ հեռավորության վրա գտնվող գյուղ։ Նույնն է՝ ինչ որ նախորդները։*

B. 39; Belck, Zeit. f. Ethnolog., 1892.

*37. Իշխանի-գոմ[1]։ Նախորդ տեքստի առաջին չորս տողերը, վերջին տողը ջնջված է։*

B. 40.

*38. Արտամետ[2]։ Երկար տեքստ, առանց թագավորների տիտղոսների, 9 տող։*

Pl. XVIII; B. 41; Sayce LXXIV.

*39. Արտամետ, մասնավոր մարդու պարտեզում։ Կարճ տարբերակ, ինչպես № 37։*

B. 42; Sayce LXXII.

*40. Իշխանի-գոմ։ Չորստողանոց կարճ տարբերակ։*

Pl. LII; B. 43.

*41. Իշխանի-գոմ։ Կարճ տարբերակ։*

Pl. LII; B. 44.

*42. Կատեպանց։ Կարճ տարբերակ։*

Pl. LII; B. 45.

*43. Արտամետ։ Կարճ տարբերակ, սեղմված երեք տողի մեջ։*

Pl. LIV; B. 46; Sayce LXXI.

*44. Կատեպանց։ Նախորդի նման տարբերակ, երեք տողով։*

Pl. LII; B. 47.

*45. Կատեպանց։ Երեքտողանոց նույն տարբերակը=46 Ա։*

Pl. LV.

*46. Մաշտակ (Մաշկակտակ)։ Նույն տարբերակը։*

Zeit. f. Ethnolog., 1904.

*47. Բերկրի։ Բերկրի գետի ջրանցքը՝ Բերկրիի դաշտի ոռոգման համար։ Դա նույնպես Մենուայի գործն է, որի մասին է վկայում քաղաքի գերեզմանոցում գտնված արձանագրությունը, որը խմբագրված է 34—36 երկար տարբերակների ձևով։*

---

[1] Գողաձոր կոչված ձորակում, Իշխանի-գոմի մոտ։

[2] Թագմագու կոչված քարանձավի մոտ, ավելի մոտիկ Կատեպանցին, քան Արտամետին։

48. *Արծվաբերդ (արծվի դղյակ)։ Մենուան տաշում է* pulusi *(քարակոթող),* $^{d}$Ḫaldi-*ի հզորության համար, կառուցում* pili *(ջրանցք),* $^{v}$Alia-*ի տերիտորիայի համար*[1], $^{d}$Quera-ina-*ի* taramana-*ի (տաճարի) (?) համար։*

Pl. XXV; B. 50; Belck, Zeit. f. Ethnologie, 1892.

49. *Աղա, Կոպի և Մելազկերտի միջև։ Մենուան փորեց իր անվամբ* pili *(ջրանցք) դեպի Մենուայի (*Menuaini*) «քաղաքը»։,* $^{v}$Ulišui-ni *(երրորդ քաղաքի անունը ջնջված է)։*

Pl. LIV; B. 51; Belck, Zeit. f. Ethn., 1899.

50. *Խոտանլու, գյուղ՝ Աղայի մոտ։ Մենուան ջրանցք բացեց* $^{v}$Uqu'ani, $^{v}$Zuguḫe-e, $^{v}$Irnuni-ni, $^{v}$Abasi-ni *քաղաքների համար։*

*Լուսանկար՝* Textband II, p. 77; B. 51.

51. *Մարմոս։ Մելազկերտի և Պատնոցի միջև։ Արձանագրություն կրող քարակոթողի մի կտոր։ Սկիզբը բացակայում է, մյուս կողմի վրա գրված է անեծքի բանաձևը, որտեղից հայտնի է դառնում, որ խոսքը* pili-*ի (ջըրանցքի) մասին է։*

Pl. LIV; B. 53; Belck, Zeit. f. Ethnologie, 1900.

52. *Ախթամար։ Կլոր քար, որը հավանաբար բերված է Մոխրաբերդից։ Մի կողմի վրա՝ Մենուան տաշեց* ini pulusi, *մյուսի վրա կարդացվում են հետևյալ բնակավայրերի անունները՝* $^{v}$Aḫiuni-ka-ni... $^{p}$Erinui-di... $^{p}$Menuaḫinaa-di, $^{p}$Aiduni MATU-ni (=ebani) šuini esini pilie aguni, ṣuišini šuini esini[2] pili aguni.

Pl. LVI; B. 54; Марр, Зап. Вост. отд. Арх. Общ., XXIV.

*53—82։ Մենուայի զանազան կառուցումների մասին արձանագրություններ։*

53. *Վան, Միջնաբերդի հյուսիսային կողմի վրա։ Մենուան* zaduni šiiršini-e *(կառուցեց շիրշինի) (?)։ Կարծես տեքստը նախազգուշացնում է, թե ով որ այնտեղ կմտցնի* paḫani *(անասուն) (կամ կբերի, կամ կվերցնի)* niribi *(զոհ), կանիծվի աստվածների կողմից (սովորական անեծքի ձևի համաձայն)։*

Pl. XLVII; B. 55; Sayce XXI.

54. *Վան։ Միջնաբերդի ներքին պատի վրա գրված են նախորդ տեքստի առաջին հինգ տողերը։*

Pl. LI; B. 56.

---

[1] *Արճեշի շրջանը հին ժամանակ կոչվում էր Աղի-ովիտ։ Հարց է ծագում, Աղին չի՞ բըխում արդյոք ուրարտական* Ali-a-*ից։*

[2] Eruini Menua-*ական (?)՝ ինչպես* Menuai-nie № *49-ում։*

*Մանկերտ հրվանդանը գուցե պահել է Մենուախինիի հիշատակը, եթե դա նրա հիմնադրածն է։* Aḫiuni-kani-*ն հիշեցնում է Նախավանց գյուղի Նախ և վանք անունը՝ Հրվանդանի շրջանում։*

55. Աղգայ, գյուղ՝ Վանի մոտ։ Ավերակ դարձած եկեղեցու պատի մեջ մի քար, որը կրում է inukani esini-ni SISU arşibini tini $^{I}$Menua pi-i-ai-šti-bi 22 kapi[1]։ Մյուս կողմի վրա՝ անեծք նրան, ով կհամարձակվի քանդել ini pulusi-ն։

Pl. LVII; Sayce XXVIII (վերջին մասը)։

56. Գյուղակ։ Մենուան տաշեց pulusi (քարակոթող), կառուցեց $^{d}$Ḫaldi-ni-li BABU (Խալդիի դռներ), կառուցեց EKALLU (պալատ), հիմնադրեց Ḫaldi-i paṭari (Խալդիի քաղաք), տնկեց uldi (այգի)՝ Մենուայի անունով և zari (պարտեզ)։ Մենուան հրամայում է. երբ այգին պտղաբերի, Խալդիին մատուցել մեկ եզ և երեք ոչխար, կա՛մ Խալդիի դռների առջև, կա՛մ քարակոթողի դիմաց, իսկ երբ գինին (tešuli) կարտադրվի, պետք է մատուցել դրանցից šuḫie (մի չափ) $^{d}$Huli-e-ին, qarmeḫi (չափ) $^{d}$Ḫaldi-e-ին, ašḫuli-ni (չափ) Խալդիի դռներին, qarmeḫi $^{d}$Arubani-ին, qarmeḫi $^{d}$Ḫaldi-e-ին pulusi-ի առջև։ Քերականական կառուցվածքի համաձայն, šuḫi, qarmeḫi, ašḫuli(-ni) տարբեր չափեր են։

Pl. XIX; B. 58.

57. Կատեպանց։ Մի դարատափի դիմաց քարի վրա արձանագրված է։ Այս uldi-ն (այգի) Tariria-ինն է, որը Մենուայի (sila) աղջիկն (կամ կինն) է, և կոչվում է Taririaḫinili[2]։

Pl. XXII; B. 59; Sayce XXIII.

58. Գորձոտ։ Բերկրիի մոտ։ Մենուան ini EKALLU šidištuni badusie; ապա՝ Մենուայի տիտղոսները։

Pl. LVI; B. 60.

59. Դելիբաբա՝ Ալաշկերտում։ Նախորդ տեքստի կրկնությունը։

Pl. LVIII; B. 61.

60—61. Հասան-կալա։ Նախորդ տեքստի կրկնությունը։

Pl. XXIII; B. 62; Sayce XXXV.

---

[1] CICH-ի մեջ այս տեքստն իր տեղում չէ, կառուցման հետ կապ չունի։ Բավական անեղծվածային է։ Լեհման-Հաուպտը սա թարգմանում է՝ «Den Baulichkeiten für die arsibini genannten Pferde des Menuas habe ich 22 Flecheneinheiten zugewiessen»։ Յ. Ֆրիդրիխն այլ կերպ է հասկանում՝ «Von dieser Stelle an ist das Pferd Namens Arşibini unter Menua 22 Masseinheiten weit galoppiert»։ Ըստ Ծերեթելու՝ «Սկսած այս տեղից, որի անունը arşibini է, ձի Մենուայի անձի համար, չափվեցին 22 (չափեր)»։ Մեշչանինովի համար խոսքը Մենուայի ձիու գերեզմանի մասին է։ Պետք է ասել, որ այս թարգմանություններից և ոչ մեկը գոհացուցիչ չէ։

[2] Ֆրիդրիխի կասկածը sila-ի և միտանական šala-ի նույնության վերաբերյալ չափազանցված է։ Պետք է նշել, որ $^{d}$Sielardi-ն, SIN-ի հնչյունական ընթերցումը №18-ում, կարող է նշանակել siela (քույր կամ աղջիկ) ardi (արև)՝ արևի քույր. լուսինը, ըստ արևելյան մտայնության, արևի քույրն է։

*62. Բաշ-բուլաղ՝ հին Փառախոտի տեղում։ Մենուան Խաղիի համար կառուցեց* ini BITU badusie, *կառուցեց* EKALLU badusie *և այն կոչեց* Menuaḫini(li)։

B. 63; Sayce LXXXI; Nik. III.

*63. Անձավ՝ Վանի մոտ։ Խաղիի համար Մենուան կառուցեց* ini susie šidištuni EKALLU sidištuni badusie *(երկու անգամ)*։

Pl. XLVIII.

*64—65. Մելազկերտ։ Արձանագրված քարակոթող։ Նախորդ տեքստի վրա ավելացված են տողեր՝ «թագավոր* taraie *(հզոր)* al(a)suinie *(մեծ)* $^{p}$Šuraue-*ի թագավոր,* $^{p}$Biainaue-*ի թագավոր, թագավոր* erilaue *(թագավորաց)* alusi *(տերը)* $^{v}$Ṭušpaa paṭari-*ի»*։

Pl. LIX; B. 67.

*66. Կոխպանց։ Մենուան կառուցեց՝* ini susi, $^{d}$Ḫaldini-li BABU-li, ini EKALLU badusie *(երկրորդ անգամ կրկնված)*։

Pl. LX; B. 65; Sayce XVII.

*67. Կոխպանց։ Մենուան կառուցեց* $^{d}$Ḫaldini-li BABU-(li) šidištu-a(li) badusi։

B. 66; Sayce XVIII.

*68. Նոր-գյուղ, Ախթամար կղզու դիմաց։ Նախկին տեքստի կրկնությունը։*

Belck, Zeit. f. Ethnologie, 1892.

*68ա. Նոր-գյուղ։ Նույն տեքստի վրա ավելացված է* $^{v}$Mušuni։

Pl. LXI; Марр, Записки Вост. Отд. Русск. арх. о-ва, 1917.

*69. Շուշանց, Վանի մոտ։ Մենուան* BITU tuburi-(ni) EKALLU badusie šidišituni. ALU šidišituni ui giei ištini šidau(ri)։ *Մենուան կառուցեց և՛* EKALLU, *և՛* ALU[1]։

B. 70; Sayce XIII.

*70. Գյուզակ։ Տեր* $^{d}$Ḫaldi-*ին* ini BITU šidištuni badusie e'a EKALLU šidištuni (e'a ALU), teruni $^{d}$Ḫaldi-i ALU ti(ni)[2].

Pl. LXII; B. 68.

*71. Բոստան-կայա, Մելազկերտի հյուսիսում։ Մենուան* ini gie zaduni *900* aquarqi, ištini EKALLU šidištuni badusie.

Pl. LXI; B. 69.

*72. Վան։ Մենուան՝* ini BITU (za-du)-u-ni։

Pl. LV; B. 72.

---

[1] *Քերականականորեն ավելի ճիշտ կլիներ թարգմանել՝ Մենուան* BITU-*ից արեց մի* EKALLU *(և ոչ թե՝ նա արեց* BITU *և* EKALLU*) և կառուցեց մի քաղաք։ Դրա պատճառով տեքստը կրկնված է՝ նա կառուցեց* EKALLU *և* ALU։

[2] ti-ni *և ոչ թե* I(LU), *ինչպես Լեհման-Հաուպտն է կարծում։ Մեզ թվում է, թե դպիրը զանց է առել* «e'a ALU»-*ն*։

73. *Վան։ (Այժմ՝ Բրիտանական թանգարանում)։ Մենուան՝* ini BITU zaduni։

Pl. LXI; Sayce XXIV.

74. *Ոսկեբակ։* Meinua-še... ini BITU zaduni *(երեք անգամ կրկնված)։*

Pl. LXII.

75. *Վարագ, վանք՝ Վանի մոտ։ Մենուան* ini BITU ašiḫusie zaduni *(երեք անգամ կրկնված)։*

Pl. LXIII; Sayce XIV.

76. *Վան։ Մասնավոր մարդու մոտ՝* ini BITU ašiḫusie, *ինչպես № 75-ում (երեք անգամ կրկնված)։*

Pl. LXIII; B. 73; Sayce XV.

77. *Վան, նույն մասնավոր մարդու մոտ՝* ini BITU zaduni *(երեք անգամ կրկնված)։*

Pl. LIX.

78. *Խորգոմ։ Մենուա՝* ini BITU ašiḫusie zaduni *(ինչպես 75, 76-ում) (երկու անգամ)։*

Pl. LXI; B. 78.

79. *Անձավ։ (Այժմ՝ Բեռլինում)։ Մենուա՝* BITU barzudibiduni...

Pl. LVIII; B. 74.

80. *Կոխպանց։ Մենուան՝* ini BITU barzudibidu-ni zadu-ni—*կրում է Մենուայի անունը.* ardiše-*ի մասին գրված տողերը անընթեռնելի են, ապա՝ անեծք։*

Pl. XX; B. 75.

81. *Վարագ։ Միննույն կառուցվածքը՝* ini BITU barzudibidu-ni—*Մենուայի անունով (առանց* ardiše-*ի և անեծքի)։*

B. 76; Sayce XXV.

82. *Վարագ։ Մենուա՝* ini ALU šidištu-ni, ini pulusi kugu-ni։

Sayce LXXV.

83. *Վան։ Կուրշուն մզկիթի մոտ քարակոթող։ Տեր* Ḫaldi-*ին* ini pulusi kuguni manini $^{d}$Ḫaldini biedini *կյանքի, բարգավաճման և մեծության համար՝* ulguše, piṣuše alsuiše, *Մենուայի և Ինուշպուայի։*

Pl. LX; B. 82; Sayce LXXX.

84. *Վան, նույն մզկիթի դիմաց։* $^{d}$Ḫuṭuini-e-*ին Մենուան տաշեց* pulusi *Մենուայի և Ինուշպուայի համար (ինչպես № 82-ում)*[1]*։*

---

[1] *Այս կոթողը կրում է հայերեն մակագրություն՝ «յղ թուականութեան», հայոց «390 թուականին», որը համապատասխանում է քրիստ. թվականության 941 թվականին։ Լեհման-Հաուպտը շփոթվել է սխալ ընթերցման հետևանքով։*

*№ 13 կոթողի մակագրությունը նույնպես ճիշտ չի կարդացվել։ Ասված է՝ «նթ թ զտէր Գրիգոր յիշեսչիք»՝ «409 թ. (այսինքն՝ 960 թ.) հիշեցեք Գրիգորին»։*

B. 83. *Լուսանկար՝* Textband II, p. 110.

*85. Կարախան, Բերկրիի գետաբերանում (Բենդի-մահի-չայ)։* dŠiunie pulusi, *ինչպես նախորդ տեքստը։*

Pl. LXIV; B. 84.

*86. Կարմիր(ա)վոր վանք։* dḪaldi-e urpuasi zadu-še *(շատ աղճատված)։*

Pl. LXVIII: B. 85; Sayce VII.

*87. Վան, միջնաբերդի կողին, Սարդուրիի որմնախորշի արևելքում։ Մենուան՝* ini-li tarmani-li atḫunali šidištu-ali։ *Հաջորդում են տիտղոսները և անեծքը (նույն տեքստը երեք տեղում)։*

Pl. L; B. 86; Sayce XX.

*88. Էրերին, Ամուկի մոտ։ Մենուան՝* TUPPU... terubi...

Pl. LVIII; B. 87.

*89. Վան, Սուրբ Վարդան եկեղեցին։ Մենուան՝* dḪaldi-*ին* pulusi *տաշեց (երկու անգամ)։*

Pl. LXV; B. 88.

*90. Վարագ, վանք։ Մենուան՝ խալդիին տաշեց* pulusi։

Pl. XL; B. 89; Sayce XXVI. Записки Вост. отд., 1917.

*91. Վարագ, 90 համարի նույն տեքստը։*

Pl. LIX; B. 90.

*92. Արծվաբերդ, Արճեշի ափին։* dElipuri-e-*ին* ini pulusi *(երկու անգամ)։*

Pl. XXVI; B. II.

*93. Կիզիլ-կայա, Պատնոցի մոտ։* dḪaldi-*ին* ini pulusi *(երկու անգամ)։*

Pl. XXI; B. 92.

*94. Մեծոփա վանք։* dḪaldi-*ին* ini pulusi *(երկու անգամ)։*

Pl. LXV; Belck, Zeit. f. Ethn., 1892.

*95. Կարախան։* dḪaldi-*ին* ini pulusi *(ինչպես № 91-ում, 2 անգամ)։*

Sayce XXVII; Belck, Verh. der Berl. Anthr. Ges., 1901.

*96. Վան։ Տեքստը աղճատված է, նման է նախորդին (երկու անգամ)։*

Schulz XXXVII.

*97. Վարագ՝ խալդի Մենուա (?) (բեկոր)։*

Sayce LXXVI.

*98—110. Արձանագրությունների բեկորներ, որոնք միայն Մենուայի անունըն են կրում, բացի 101—102 համարներից, ուր* vArṣuniuini *քաղաքի* Ḫaldina BABU-*ն է հիշատակված։*

Pl. LVII.

*108. Կարախան։ Մի բեկոր, որի վրա կարդացվում է* Titiani *անունը։ Սա, հավանաբար, այն նույն անձն է, որին Մենուան հիշատակում է Պադինում, №. 33-ում։*

Pl. LXIV; B. 36.

## ARGIŠTI MENUAḪINI

## ԱՐԳԻՇՏԻ ՄԵՆՈՒԱՅԻ ՈՐԴԻ

111. Վան, միջնաբերդ։ Արգիշտիի ժամանակագրությունը փորագրված է ապառաժյա սենյակների ճակատին, որոնք փորվել են ժայռի մեջ՝ թագավորի հրամանով։ Ժամանակագրությունն ընդգրկում է 13—14 տարիների ընթացքում տեղի ունեցած պատերազմական գործողությունների պատմությունը՝ ըստ տարիների։ Շարադրությունը միօրինակ է, այնպես որ մի արշավանքի պատմությունը նման է մյուսին, շատ քիչ տարբերությամբ։ Ամեն ինչ պարփակված է միևնույն բանաձևերի սահմանում, որը ներկայանում է հետևյալ տեսքով. Խալդին մեկնում է, նրա մարտիկը ուժեղ է։ Նա կռվում է այսինչ երկրի (կամ մի շարք երկրների) հետ և մատուցում այն թագավորին։ Դրանից հետո է, որ մեկնում է թագավորը։ Այսինչ թագավորը մեկնեց Խալդիի զորությամբ։ Խալդին գնում էր առջևից։ Թագավորն ասում է՝ ես գրավեցի այսինչ երկրները (միևնույն երկրները, որ Խալդին հպատակեցրել էր)։ Թագավորն ասում է. ես դիմեցի Խալդիին, Թեյշեբային, Արդինիին, և նրանք օգնության եկան։ Խալդիի զորությամբ ես մեկնեցի և գրավեցի այսինչ երկրները։ Ես ընթացա դեպի մեկ ուրիշ քաղաք կամ երկիր։ Ես գրավեցի բոլորը, ավերեցի կամ հրկիզեցի և այլն։ Ապա հաջորդում է ավարի թվարկումը եզրափակիչ խոսքով՝ սրանք են այն գործերը, որ նա կատարեց մեկ տարվա ընթացքում։

Ներկա ամփոփագրի մեջ մենք զանց ենք առնում զուտ գրական նշանակություն ունեցող արտահայտությունները, որոնք պատմական արժեք չունեն։ Համառոտակի կնշենք՝ Խալդին հպատակեցրեց այսինչ երկիրը։ Դա անհրաժեշտ է հաղթանակներն ստուգելու համար։ Տեղանունները և անձնանունները կվերարտադրվեն այնպես, ինչպես տեքստերում է, բայց մենք կշարունակենք հոլովային վերջավորությունները բաժանել գծիկով։

Եղել են այնպիսի տարիներ, երբ Արգիշտին կատարել է մեկ արշավանքից ավելի։

### 1-ին տարի:

Այսպես, իր թագավորության առաջին տարում նա երկու արշավանք կատարեց, բայց առաջին արշավանքի պատմությունը ջնջվել է, նրանից միայն մի քանի բառեր են մնացել, որոնց իմաստը պարզ չէ։

Երկրորդ արշավանքի պատմությունն սկսում է երեք աստվածներից՝ Խալդի, Թեյշեբա և Արդինի, օգնություն խնդրելուց։ Աստվածները նրան օգնության են գալիս։

Նա հավաքեց իր զորքերը և մեկնեց $^{\mathrm{I}}$Diaueḫiniedi «երկիրը», բռնեց

Diauehi-*ի թագավորին, գրավեց* ^vŠeriazi-*ն, հրկիզեց քաղաքները, կործանեց բերդերը։*

*Նա ընթացավ դեպի* ^vPutie, ^pBia-ni-*ն և* ^pḪuša-ni-*ն միացրեց* ^pTariu-ni-*ին*[1]*։*

*Նա գնաց* ^pZabaḫae-uedia, *գրավեց* ^pZabaḫa-e-*ի բնակավայրերը, ընթացավ դեպի* ^vUzinabitarna-a, ^pŠerimutara, *նվաճեց* ^vMaqalt'u-ni-*ն և* ^pIgana-ni-*ն* ^pBaba-ni-*ն։*

*Նա իջավ* ^lEriaḫini-nie *երկիրը, գնաց* ^pAbuni-edi, *գրավեց* ^vUrieiu-ni-*ն,* ^lUiṭeruḫini-*ի թագավորական քաղաքը։*

*19 255 երիտասարդներ, 10 140 առույգ մարտիկներ, 2328 կանայք, 52 675 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները կենդանի բռնված։ Նա քշեց տարավ 1104 ձի, 35 016 եզ, 11 829 ոչխար։*

*Սրանք են այն սխրագործությունները, որ նա կատարեց մեկ տարում Խալդիի օգնությամբ։*

**2-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* ^lAbilianieḫi-*ի երկիրը* ^lQuturzani-ni-*ի* ^pAništirue *(?) երկիրը,* ^lUltuza-ini-*ի երկիրը և սրանք մատուցեց Արգիշտիին։*

*Արգիշտին մեկնեց, գրավեց* ^pEtiuni-ni *երկիրը, ընթացավ դեպի..., դեպի* ^lUduri-*ի* ^pEtiuḫini *և գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց։*

*Նույն տարին նա գնաց* ^pUmeki... *գրավեց* ^pUria-ni-*ն,* ^pTairṣu-ni-*ն, հպատակեցրեց* IMuruba-*ին (կամ* Muruza*), կռվում տապալեց նրան և գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց։*

*Նա գրավեց* ^vUbarugildu-ni-*ն, թագավորական քաղաքը... ընթացավ դեպի* ^pLurupira *(կամ* Kurupira*), դեպի* ^pTarra... *գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց։*

*Նա գրավեց* ^pIrki....-*ն, ընթացավ դեպի..., գնաց* ^pArtarmu..., *կռվում տապալեց... (հրկիզեց) քաղաքները... ընթացավ դեպի... 3(...) երիտասարդներ, 10 000 կանայք, 40 279 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանվեցին, մյուսները կենդանի տարվեցին. Նա քշեց տարավ 1280 ձի, ...եզ, 126(00) ոչխար։*

*Սրանք են այն գործերը և այլն...*

Sayce XXXVII; Schulz II.

**3-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* ^pḪaate-*ն,* ^lḪilaruada-ni-*ի երկիրը և մատուցեց Արգիշտիին։ Արգիշտին մեկնեց* ^pḪatina-idi, *գրավեց* ^pNiriba-ni-*ն,* P...ur-

---

[1] Salmatḫi ^pBiani ^pHušani aaldubi andani ^pTariuni *նախադասությունը, որը հաճախ է կրկնվում, պարզ չէ։*

mani-ն (?), կռվում նրանց հաղթեց, գրավեց թագավորական քաղաքը։ Արգիշտին գնաց ᵖḪatina-sie երկիրը, ᵖTuateḫini-ի երկիրը միացրեց ᵛMelita-ni-ի շրջանին։ Նա ընթացավ դեպի ᵛPila-i (?)... պարտադրեց հարկ վճարել... Mela-ini գետ, ᵖMarmua-ni, գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց, ավերեց պալատները, հրկիզեց քաղաքները։

2559 երիտասարդ, 8298 կենդանի բռնված մարդ, 10 846 կին, 28 548 մարդ տարվա (արշավանքներում), մասամբ սպանված, մասամբ կենդանի բռնված, (...) ձի, 17 942 եզ, (...) ոչխար տարվեցին։ Սրանք են սխրագործությունները և այլն...

**4-րդ տարի:**

Խալդին նվաճեց ᵖEtiuni-ni (ˡUduri-ի?) երկիրը և մատուցեց Արգիշտիին։ Արգիշտին մեկնեց (ջնջված է)։

Նույն տարին Արգիշտին գնաց ᵖUburda-u-edia, գրավեց ᵖUburda-alḫi-ի ˡIš(pi)-lubura-ni երկիրը, նա գրավեց ᵛIrdua-ni թագավորական քաղաքը, ավերակ դարձրեց ᵖUišuši-ni երկիրը, գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց։

Նա գնաց Ḫaḫia-u-edia, տակնուվրա արեց պալատները, հրկիզեց քաղաքները...

700 երիտասարդ, 2555 առույգ մարդ, 8497 կին 1(?) 9790 մարդ տարվա ընթացքում, մասամբ սպանված, մասամբ կենդանի բռնված, 232 ձի, 803 եզ, 1(?) 1626 ոչխար տարվեցին։

Սրանք են և այլն...

**5-րդ տարի:**

Խալդին նվաճեց ˡArsita-ni-ի երկիրը, հաղթեց Ասորեստանի զորքերին և մատուցեց Արգիշտիին։

Արգիշտին Aššur-ի քաղաքները միացրեց իր երկրին, նա կրկին հավաքեց զորքերը, կործանեց ˡDadika-i-ի arie-ni (բերդերը), ᵖKulaši-ni-ն, ᵖBaba-ni-ն, գաղթեցրեց 31 439 երիտասարդ իր երկիրը։

Նույն տարին նա գնաց ᵛMenabšunie-edi, ᵛDuqamai-(di), գրավեց ... թագավորական քաղաքը... ᵖBuštue-e երկրի ᵛŠatirara-u քաղաքը։ Նա գնաց ᵖBaršuai-di, ավերեց երկիրը, հրկիզեց քաղաքները. 540 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները կենդանի։ (...) ձի, 977 եզ, 5... ոչխար տարվեցին։

Սրանք են այն սխրագործությունները և այլն...

**6-րդ տարի:**

Խալդին նվաճեց ᵖAššur-ը, ᵖBuštu-ni-ն, ᵖTariu-ni-ն և մատուցեց[1] Արգիշտիին։

[1] Laqua-li փոխանակ tequni՝ հոգնակիի կազմավորման համաձայն։ Կարծում ենք, որ դա բխում է նույն tleku բառից, որը տալիս է lequ կամ laqu և tequ։

*Արգիշտին շինեց* sidu-u-u-li *պալատները, ծաղկեցրեց(?)* išpuiu-bi, pŠurišili-ni *և բերեց Աշշուրի բանակը իր երկիրը։*

*Արգիշտին ուղարկեց* «ikidanubi» auerašili, *բանակը (?), նվաճեց Ասորեստանը և գերի վերցրեց* [1]Dada-ni-*ին։*

*Նույն տարին նա մեկնեց* p..., p..., pArḫaue-di, *գրավեց նրա թագավորական քաղաքը և 60 քաղաքներից տարավ տղամարդկանց ու կանանց։*

*Նա գնաց* pBuštue-di *երկիրը, գրավեց* vŠatirara(-ni)-*ն*, vAburza-ni-ni-*ն*, v...-*ն*..., vQaduqaniu-ni-*ն*, v...-*ն։*

*Արգիշտին ընթացավ դեպի* pMana-a p..., pBaba-a*։*

*18 827 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները ողջ բռնված, 606 ձի, 184 ուղտ, 6257 եզ, 33 203 ոչխար տարվեցին։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

**7-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* pIiani-ni-*ն*, pMana-ni-*ն*, pBuštu-ni-*ն և մատուցեց Արգիշտիին։*

*Արգիշտին հավաքեց զորքերը և մեկնեց ու գրավեց* pIianini-*ն, քարուքանդ արեց պալատները, հրկիզեց քաղաքները. Նա գրավեց* vEraḫiliu-ni-*ն*, vEraḫilieu-li-*ն (*vEraṭadau-ni, Eraṭadaeuda*) և տարավ տղամարդկանց ու կանանց։*

*Նույն տարին նա գնաց* pManai-di, *(գրավեց)* pBuštuni-*ն*, Tura *գետը... կռվով գրավեց, գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց... (6 տող)։*

*18 243 մարդ տարվա ընթացքում սպանված և ողջ բռնված, 790 ձի, 100 ուղտ, 22 529 եզ, 36 830 ոչխար տարվեցին։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

Sayce XXXIX; Schulz IV.

**8-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* pManai-ni-*ն*, pIrkuini-ni-*ն և մատուցեց Արգիշտիին։ Արգիշտին մեկնեց* pManai-di, *գրավեց* pIrkiuni-ni-*ն։ Նա ընթացավ դեպի* pAlqani, *սաուրական երկիրը։*

*6471 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները ողջ բռնված, 286 ձի, 2215 եզ, 8205 ոչխար տարվեցին։*

**9-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* pMana-ni-*ն*, pBuštu-ni-*ն և մատուցեց Արգիշտիին։*

*Արգիշտին մեկնեց* pBuštu-e-di, *գրավեց* pAšqaia-i-*ն*, pŠatirarau-ni-*ն*, pUgišti-ni-*ն, միացրեց* pUši-ni-*ին*[1]*։*

---

[1] Andani pUgištini aaldubi salmatḫi Uši-ni. *Տե՛ս առաջին արշավանքի կապակցությամբ տրված ծանոթությունը։*

*Նա ընթացավ դեպի* $^{p}$Alata-i, $^{p}$Baba-ni, *հրկիզեց երկիրը, ավերեց քաղաքները, տարավ տղամարդկանց ու կանանց։*

*1(.)873 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները ողջ բռնված, 80 ձի, (...) ուղտ, (...) եզ, (...) ոչխար տարվեցին։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

**10-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* $^{p}$Mana-ni-*ն,* $^{p}$...-*ն և մատուցեց Արգիշտիին։ Արգիշտին հիմնեց* $^{v}$Argištiḫini-li-*ն. Նա գրավեց* $^{p}$Mana-ni-*ն,* $^{l}$Aza-*ի թշնամի երկիրը։ Նա պատրաստեց (?) զորքերը և հասավ* $^{p}$Mana*։ Նա կործանեց* badini-ni*(?), գրավեց պալատներ, (հրկիզեց) քաղաքներ։*

*3270 մարդիկ սպանված կամ ողջ բռնված, տարավ 170 ձի, 62 ուղտ, 2411 եզ, 6140 ոչխար։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

Sayce XL; Schulz V[1].

**11-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* $^{p}$Tuaraṣi-ni-*ն,* ḫu-tu-siri*(?),* $^{p}$Gurqu-e-*ն, հնազանդեցրեց Մանայի զորքերին և մատուցեց Արգիշտիին։*

*Հետևյալ նախադասությունը պարզ չէ։ Կարծես ուզում է ասել, որ Խալդին (կամ Խալդիի մարդը) ուժեղ է որքան իշխելու* ḫuṭutuḫi*, նույնքան և կռվելու մեջ։ Արգիշտին երկու անգամ անցավ* Dainalatini-ni *գետը և կողոպտեց* $^{p}$Šur-aue-*ն։*

*Արգիշտին գնաց* $^{p}$Mana-idi*, ավերեց երկիրը*[2]*, հրկիզեց քաղաքները և ընթացավ դեպի* $^{p}$Buštu-e-*ի* $^{v}$Uiḫika-a *քաղաքը, տարավ տղամարդկանց ու կանանց։*

*13 979 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանվեցին, մյուսները ողջ տարվեցին, 308 ձի, 8000 եզ, 32 538 ոչխար քշվեցին։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

**12-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* $^{p}$Mana-ni, $^{p}$Etiuni *երկրները և մատուցեց Արգիշտիին։*

*Արգիշտին գնաց* $^{p}$Mana-idi*, կողոպտեց երկիրը, հրկիզեց քաղաքները, կռվով գրավեց* $^{v}$Šiširiḫadiri-ni *թագավորական բերդաքաղաքը։ Արգիշտին ավերակ դարձրեց* $^{p}$Etiuni-ni *երկիրը և* $^{v}$Ardi-ni-e-i *քաղաքի* aš-tiu-zirbila-ni*(?)-ն։ Նույն տարում Արգիշտին հավաքեց բանակը և գնաց* $^{p}$Etiunie-di *և գրավեց* $^{l}$Eriaḫi *և* $^{l}$Katarza-e *երկրները։*

---

[1] *Հաջորդում է սյուն.* VI Schulz (=Sayce XLIII) *և ոչ թե* VII (=Sayce XLI)*։*

[2] *Կարդալ ամենուրեք* ebani atubi *և ոչ թե* ebania tubi*, ինչպես* Sayce-*ի մոտ է։*

*Նա ընթացավ դեպի* ᴾIšqigulu-e *և տղամարդկանց ու կանանց գաղթեցրեց* ᴾBiain-a։

*Խալդին առջևից էր գնում*[1]։ *Արգիշտին գնաց* ¹Uiṭeruḫieni-e *երկիրը, ավերեց երկիրը, հրկիզեց քաղաքները*։

*Նա գրավեց* ᵛAmegu-*ն*... ᴵUiṭeru-*ն*... *Նա թողեց արձանագրություն*... *(բազմաթիվ տողեր ջնջված)*։ *(—) ոմանք սպանված, մյուսները տարվեցին ողջ. 1200 ձի, 29 504 եզ, 60 000 ոչխար քշվեցին*։

*Սրանք են այն սխրագործությունները և այլն*...

**13-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* ᴾTariu-ni-*ն*, ᴾBaba-nie-*ն և մատուցեց Արգիշտիին*։ *Արգիշտին գնաց* ᴾTariu-idi, *կռվով վերցրեց 11 ամրացված տուն-շենք*։ *Խալդին ուժեղ է* huṭutu-ḫi *որքան իշխելու, նույնքան կռվելու մեջ*։

*Նա հրկիզեց բերդերը, տակնուվրա արեց քաղաքները, տարավ տղամարդկանց ու կանանց*։ «*Խալդին գնում էր առջևից*... ᴾUrme-di...*երկիրը*...»։

*Արգիշտին գնաց* ᴾUrme-edi, *գրավեց* ᴾUrme-ini-*ն*, *կողոպտեց երկիրը, ընթացավ դեպի* ᴾ..., *հրկիզեց քաղաքները, տղամարդկանց ու կանանց տարավ* ᴾBiaina։

*14 813 մարդ տարվա ընթացքում, ոմանք սպանված, մյուսները ողջ բռնված, 25 ձի, (...), 1744 եզ, 48 825 ոչխար քշվեցին*։

*Սրանք են այն սխրագործությունները և այլն*...

Sayce XLIII; Schulz VI.

**14-րդ տարի:**

*Երբ Խալդին թագավորություն տվեց Արգիշտիին*... *7066 եզ, 50 868 ոչխար*... *նա ավելացրեց ամեն տարի (?)*։

*Նա գնաց ընդդեմ* ᵛBiḫura-ni *քաղաքի,* ᴾBamni *երկրի, տակնուվրա արեց* ᴾBamni-*ն և գրավեց* Biḫurani-*ն*։

*Անեծք նրան, ով կհամարձակվի քանդել այս արձանագրությունը*։

**Schulz** VII et VIII; Sayce XLI et XLIV.

*112. Վան*։ A. *Քարակոթող Սուրբ Սահակ եկեղեցում*։ *Խալդին նվաճեց* ¹Uṭupurši-*ի*, ᴵDiaueḫi-*ի երկիրը, նվաճեց* ᴵPanulua-*ի երկիրը*։

A¹ *Արգիշտին ասաց, որ* ᴵDiaueḫi Šišuḫani durbabi, *ապստամբեց*։

*Արգիշտին բանակ հավաքեց և հնազանդեցրեց* Diaueḫini-*ին*։ *Նա դիմեց աստվածներին՝ անշուշտ* Panulua-*ի դեմ գնալու համար (պակաս)*։

Pl. XXVI; B. 100; Sayce XLVI.

A² *Խալդին նվաճեց* ᴾEtiuni-ni-*ն և* Qiḫu-ni-*ն*։ *Արգիշտին գնաց գրավեց* ᵛQiḫu-ni-*ն և* ᴾSilu-ni *երկիրը*։

---

[1] *Այս երկիրը չի հիշատակված սկզբում Խալդիի հաղթանակների մեջ, դրա համար էլ այստեղ Խալդին գնում է առջևից*։

*Մի ուրիշ արշավանք* ᵖḪate-di *և* ᵖṢupa-ni *երկրների դեմ։*

Pl. XXVII.

A[3] *Արգիշտին կանգնեցրեց* pulusi*։ Անեծք։*

Pl. XXIX.

A[4] *Պակասավոր տեքստ։ Հիշել՝* ᵈIniriaše uštuni... ᵖŠurieli zašua-li*։*

Pl. XXVII.

*112.* B. *Քարակոթող, որն սկսվում է* kuṭai-di *(ես ընթացա)-ով, ուրեմն մի նկարագրության շարունակությունն է, որի սկիզբը պակասում է, կամ, գուցե, 112* A-*ն է։*

*Արգիշտին ընթացավ դեպի* ᵖBia *երկիրը, գրավեց* ᵛ(Ḫu)šani-ni *քաղաքը։ Նա գնաց* ᵖDidini (ebani-di), ᵛZua-idi *քաղաքը։ Նա բոցերի ճարակ դարձրեց* ˡDiaueḫini-*ի* ᵛZua-ni *քաղաքը,* ᵛZu-a-*ում արձանագրություն թողեց։*

*Նա մեկնեց* ᵖAšqalašie-di, *քանդեց 105 պալատ (բերդ), հրկիզեց 453 քաղաք, կործանեց երեք երկիր, իսկ մարդկանց ու անասուններին տարավ իր երկիրը. դրանք էին՝* ᵖQala-i, ᵖAšqalaši-e *երկրները և* ᵛŠaši-lu-i *քաղաքը. 15 181 երիտասարդ, 2734 տղամարդ, 10 604 կին, 4426 ձի, 10 478 եզ, 73 500 ոչխար։*

*Նա երկրից վտարեց 2 (կամ 3) թագավորներ՝* ˡŠaškie ˡArdarakiḫi, ˡBaltulhi ˡQabiluḫi, *նրանց տեղ կառավարիչ նշանակեց* (bel-paḫati)[1]*։*

*Նա ենթարկեց* ˡDiaueḫi-*ի թագավորին և հարկ պարտադրեց նրան։ Նա Արգիշտիին հանձնեց որպես հարկ 41 մինա մաքուր ոսկի, 37 մինա արծաթ, (...)10 հազար մինա բրոնզ, 1000 հեծնելու ձի, 300 եզ, (...) 10 000 ոչխար։*

*Արգիշտին* ˡDiaueḫi-*ի երկրին պարտադրեց տարեկան հարկ՝ (...) մինա ոսկի, 10 000 մինա բրոնզ, (...) եզ, 100 կով, 500 ոչխար, 300 հեծնելու ձի։*

*Նա ոչնչացրեց նրա հեծելազորը։*

*Խալդին նվաճեց* ᵖEtiuni-ni-*ն և մատուցեց Արգիշտիին։*

*Արգիշտին (քանդեց)* Diaueḫi-*ի թագավորական ամրացված տեղերը,* arniu-li*։ Նա գրավեց* ᵖLuša-e, ᵖKatarza-e, ˡEriaḫi, ᵖGulutaḫiḫa, ˡUiṭaeruḫini-ei *երկրները։ Նա ընթացավ դեպի* ᵖAbuni-e, *վտարեց* ᵖLu-ša-e *երկրի թագավորին, գերի վերցրեց* ᵖIga-e *երկրի (թագավորին), նա վտարեց..., նա Արգիշտիին հարկ վճարեց...*

Pl. XXVI; Sayce XLV.

---

[1] *Նրանց փոխարեն նշանակվում են կառավարիչներ* Šaške Ardarakiḫi, Baltulḫi Qabiluḫi:

B[2] *խալդին նվաճեց* ᴾMana-*ն*, Irkiuni-ni-*ն և այլն (ժամանակագրության 8-րդ արշավանքի պատճենն է)։*

*խալդին նվաճեց* ᴾMana-*ն*, ᴾBuštu-*ն և այլն (ժամանակագրության 9-րդ արշավանքի պատճենն է)։*

Pl. XXVIII.

*113. Վան։ Քարաբեկոր Թերզիբաշյանի մոտ։*

B. 101.

*114. Վան։ Ընկույզներ թաղամաս, արձանագրություն կրող քար՝* Argištiše... ini ari šuni *10 000* kapi išti-ni; *Համտ. № 137 և № 156։*

Pl. XLII; B. 102.

*115. Էլար. Երևանի մոտ։ Խալդին նվաճեց* ᴾEtiuni-ni-*ն։ Արգիշտին գրավեց* ᴾUluanie-i-*ի տերիտորիան*, ⱽDazani-nie *քաղաքի տերիտորիան։*

Sayce XXXVI; Nik. VI.

*116. Պորտակ (Օրդակլու), Սևանա լճի ափին։ Արգիշտին ասում է, որ գրավել է* ⱽQieḫuni *քաղաքի տերիտորիան և ընթացել մինչև լճի ափին գտնվող* ⱽIštikuniu *քաղաքի տերիտորիան*[1] *(Համտ. № 112*A[2]*)։*

Sayce LX (JRAS, 1888); Nik. VIII.

*117. Ղուլիջան (Անիի շրջան)։ Խալդին*[2] *նվաճեց* ᴵQulia-ni-*ի երկիրը։ Արգիշտին գրավեց* ⱽQuliaini-ni-*ի* ⱽAlrubani-ni *քաղաքը։*

Pl. LX; Sayce LXI; Nik. VII.

*118. Մարմաշեն (=Ղանլիջա)։ Արգիշտին գրավեց* Eriaḫi-ni-*ի քաղաքը, գրավեց* ⱽIrdaniu-ni-*ն* ᴾIšqigulu *երկրի* pari *(մոտ) (Համտ. ժամանակագրության 12-րդ արշավանքը)։*

Sayce XLVII; Nik. V.

*119. Սարիղամիշ։ Արգիշտին գրավեց* ⱽAḫuria-ni *քաղաքը,* ⱽAštuaḫini-*ի երկիրը*[3]*, նվաճեց* ᴵEtiuni-ni *երկիրը, նա հնազանդեցրեց* ᴵEtiuni-*ի թագավոր* Uduri-*ին և ավերեց* ⱽQalraḫi-*ն և* ᴾEtiuni-*ն։*

B. 113; Sayce LXXXIV (JRAS 1894); Nik. XXI.

*120. Արմավիր։ Երկու շատ աղճատված բեկորներ, մեկում խոսքը վերաբերում է* Šeluini, Urbika-ni, Purunurdadi *և* ᴵIḫaiduše-*ի ցեղերի նը-*

---

[1] Ša-na ap-ti-ni ṣu-u-ni-e.

[2] *Կարդում են՝* masini šurie *(*giš-šurie-*ի փոխարեն), հավանաբար* g=i *արտասանության հետևանքով* iiš-suri=šuri*։*

[3] *Հաշորդում է՝* BITU ʼari šu-u-i-ni. *Համտ. №114, 137, 128, 156։*

*վաճմանը, իսկ մյուսում կարդացվում է՝* Argištiḫina [1]Aza-ni[1] MATU-ni amUrbika-še, vŠeluinieu-ni, 1Nunuli.

Sayce LIV; Nik. X—XI.

*121. Արմավիր։ Շատ վնասված։ Խոսվում է խաղիին մի զոհաբերություն անելու մասին։ Կարդացվում է՝* ini BITU siriḫani *(կարծես նախորդ № 120 արձանագրությանն է վերաբերում)։*

Sayce LIX; Nik. XVII.

*122. Ղազանչի (Իգդիրի մոտ)։ Արգիշտին՝* BITU zaduni։

Sayce LXVII; Nik. IV.

*123. Շահրիար։* VBAG *1900, 572։*

*124. Գուկանիս (Գյուկանց)։ Սյունակի մի բեկոր, բովանդակում է երեք տող։*

*125. Կարակալա՝* ini pili agu-nu-ni qirani ṣiraba-e manu ui aini ištini aiuri. Argištiše aguni.

Nik. XXIV.

*126. Սարդարաբադ։ Արգիշտին կառուցեց* EKALLU *(բերդ)* badusie *և այն կոչեց* Argištiḫinili; gi-i šidauri; Munaa-ni *գետից 4* KUR-E (=pili) agu-bi; uldi, zari teru-bi; zadu-bi arnišini-li istini.

Sayce LXXVII; Nik. IX.

*127. Արմավիր=126 (?)։*

Nik. XXIII.

*128. Դանլի-Թեփե։ Արգիշտին՝* ini a-ri šuu-ni[2] *10 000* kapi išti-ni šidištu-bi terubi Argištiḫinili.

Nik. XXII.

## SARDURI ARGIŠTIḪINI
## *ՍԱՐԴՈՒՐԻ ԱՐԳԻՇՏԻԻ ՈՐԴԻ*

*129. Վան։ Սուրբ Պողոս եկեղեցի։ Քարակոթողը, համանաբար, ծագում է Սարդուրիի արևելյան որմնախորշից, որը ներկայումս դատարկ է։ Ջարդվել վերածվել է մի քանի կտորների։ Շատ է տուժել հատկապես արձանագրությունը։*

*ա) Քարակոթողի երեսի վրա գրված է Սարդուրիի հաղորդումն այն մասին, որ նա կերտել է «այս կոթողը»։ Հաջորդում է անեծքի լրիվ բանաձևը, ուղղված նրանց, ովքեր կհամարձակվեն քանդել կոթողը։*

---

[1] *Հմմտ.* Argištiḫinili Aza-*ի երկրում։ Արգիշտիի ժամանակագրություն № 111, տասներորդ տարի։*

Iḫaiduše *և* Uiduše *անունը № 130—131։*

[2] Šuu-ni *համեմատած* šiu-ini-*ի հետ № 199-ում, կարծես ավելի շուտ ածական է, քան բայ։*

*բ) Քարակոթողի աջ կողմի վրա գրված արձանագրությունը արշավանքների մասին է։ Խալդին հաղթեց* $^{p}$Uelikuḫi *երկրի թագավոր* $^{I}$Murinu-ni-*ին, նա հպատակեցրեց* $^{v}$Tuliu *երկրի թագավոր* $^{I}$Ṣinalibi-ni $^{I}$Lueḫu-ḫie-*ին։ Նա հպատակեցրեց* $^{I}$Aššur-Nirari-ni $^{I}$Adad-Nirari-eḫi-*ին՝* $^{p}$Aššur-nie-*ի թագավորին։ Նվաճեց* $^{p}$Arme-e *երկիրը,* $^{v}$Niḫiria-ni *քաղաքը և այդ երկրի թագավորներին մատուցեց Արգիշտիի որդի Սարդուրիին։*

*Սարդուրին գնաց* $^{p}$Uelikuḫini-nie *երկիրը, մեկ օրվա ընթացքում նվաճեց բազմաթիվ երկրներ, ջարդ կատարեց, կործանեց պալատները (ավելի շուտ բերդաքաղաքները), հրկիզեց քաղաքները...*

*գ) Սարդուրին մեկնեց... գրավեց* $^{p}$Riḫiša-a *երկրի տերիտորիան,* $^{v}$Ḫura-a-*ն,* $^{v}$Nušini-ni-*ն, գրավեց նաև* $^{v}$Bie-i *քաղաքի տերիտորիան.* $^{I}$Bašane-ni-*ի (ոչ՝* Bašata-ni*) մարդկանց գաղթեցրեց՝ 12 600 երիտասարդ, 1800 մարտիկ, 7700 կին, ընդամենը 22 100, մասամբ սպանված, մասամբ ողջ. 352 ձի, 4547 եզ, 13 060 ոչխար։ Նա գրավեց* $^{v}$Irsini *(կամ* Sasini*),* $^{v}$Melita *(ավելի շուտ* Meline*) քաղաքները, որոնց թագավորն եկավ իր հարգանքը մատուցելու։*

Pl. XXX—XXXI.

*130—131. Կարատաշ, Արճեշի մոտ, ժայռի վրա, երեք սյունակներով, որոնցից մեկը ջնջվել է։ Տեքստը պարզ չէ։ Խոսքը վերաբերում է մի տնկարանի՝* ini Giš-du-u teru-ni, *ինչպես նաև մի* Giš-uduli-e-*ի, որը կրում է Սարդուրիի անունը և երկու այլ անձանց անուններ՝* $^{I}$Seḫauli-e-*ի որդու և* $^{I}$Uidu-še-*ի։ Հաջորդում է անեծքը։*

*Մյուս սյան վրա Սարդուրին հայտարարում է, որ Խալդին իրեն թագավորություն տվեց, և հենց որ նա հայրենական թագավորությունն ստացավ... (ջնջված է)։*

*132, 132*A*, 132*B=A *(ըստ Մառի)։ Վան։ Սարդուրիի մեծ ժամանակագրությունը մի որմնախորշում, որ հայերը «գանձատուն» են կոչում, իսկ թուրքերը՝ խազնա կապուսի (գանձարանի դուռ)։*

*132. Որմնախորշի արևելյան կողին՝* $^{d}$Ḫaldi-*ն նվաճեց* $^{p}$Manani-*ն և մատուցեց երկիրը Սարդուրիին։*

*Սարդուրին գնաց բաբելոնյան* ebani *(տերիտորիան), գրավեց Բաբելոնի* ebani-*ն (տերիտորիան)։ Նա ընթացավ դեպի* $^{p}$Baruta-ini-a, *գրավեց այն։ Գրավեց (մարտով) երեք ամրացված պալատ (բերդ), մեկ օրվա մեջ 23 քաղաք ավերակ դարձրեց, քարուքանդ արեց պալատները (բերդերը), հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը, գաղթեցրեց բնակիչներին (տը-*

ղամարդկանց ու կանանց)՝ 8135 երիտասարդ, 25 000 կին, 6000 մարտիկ։ Նա տարավ 2500 ձի, 12 300 եզ, 32 100 ոչխար[1]։

Նույն տարին նա երկրորդ անգամ գնաց (այսինքն՝ երկրորդ արշավանքը կատարեց) ᴾEtiunie-di, ᴾLikiue-edi և կռվով գրավեց ᴾEdia-ni-ն[2], ᴵAbiana-ini-ի թագավորական քաղաքը, կռվով գրավեց ᴵIrkua-ini-ի ᵛIruia-ni թագավորական քաղաքը, կռվով գրավեց ᵛIrma-ni-ն, ᴵUeirda-ini-ի թագավորական քաղաքը, հնազանդեցրեց ᴵPuini-alḫi ցեղի թագավորին և նրան պարտադրեց հարկ վճարելու։ Նա գրավեց չորս բերդ, գաղթեցրեց բնակչությունը՝ տղամարդկանց և կանանց՝ 3500 երիտասարդ, 1500 կին, 4000 մարտիկ, քշեց 8525 եզ և 18 000 ոչխար։

Նույն տարին, երրորդ արշավանքում, նա գնաց ᴾUrmeue-edi, գրավեց 11 բերդ, քանդեց և բնակչությունը տարավ՝ 1100 երիտասարդ, 6500 կին, 2000 մարտիկ, 2538 եզ, 8000 ոչխար։ Երեք երկրից տարածի ընդհանուր գումարը մեկ տարում կազմում է՝ 12 735 երիտասարդ, 6600 կին, 12 000 մարտիկ, 2500 ձի, 23 365 եզ, 58 100 ոչխար։

Սրանք են այն սխրագործությունները, որ Սարդուրին մեկ տարում կատարեց։

Pl. XXXII.

132 A։ Որմնախորշում գտնվող քարակոթողը ամեն կողմից ծածկված է արձանագրություններով. գոյություն ունի, ուրեմն, տեքստերի չորս սյունակ։ Հիմքի արտաքին մասում նույնպես արձանագրություն կա, հետևաբար, եղավ հինգ սյունակ։

Իրար հաջորդող տեքստերի կարգը հետևյալն է. I—քարակոթողի արտաքին երեսը=C՝ ըստ Մառի։ II— աջ կողմը (նայելով դեպի կոթողը) =D՝ ըստ Մառի։ III — ներքին երեսը=E՝ ըստ Մառի։ IV — ձախ կողմը=B։ V — հիմքը=F։

Քարակոթողի ծայրն անկանոն կոտրվել է, որի հետևանքով չորս սյունակների սկիզբն էլ պակասում է։ Առաջինի վրա չկա նախաբանը, որ գրեթե ծիսական բնույթ ունի և յուրաքանչյուր արշավանքի նկարագրության ներածությունն է կազմում՝ ᵈḪaldi uštabi masinie giššurie karuni ᴾQuulḫa-ni ebanie karuni ᴾAbilianiḫini ebani tequali ᴵSardurikai ᴵArgišti-ḫinie. Sarduri alie uštadi ᴾQuulḫa-idi» և այլն...

Սարդուրին գնաց ᴾQuulḫa-idi երկիրը, ճզմեց ᴾHuša-alḫi ժողովրդի ᴵHuḫa-ni թագավորին և նրան բերեց իր երկիրը։

[1] Հաջորդում է մի մութ նախադասություն՝ inani SARRU nunabi mei ali ᵃᵐASIᵖˡ-še partu «šeri» partu iu ebani ašulabi — թագավորը հասավ, ինչ որ զորքերը տարան, բաժանեցին, երբ երկիրը գրավվեց։ Իմաստը պարզ չէ։

[2] Թվում է, որ Ediani-ն Abiani-ի թագավորական քաղաքն է. «երկիր» որոշիչը գուցե սխալմամբ դրվել է «քաղաք»-ի տեղ։

*Նույն տարին նա մեկնեց* ᵖAbilianihini-edi *երկիրը, մեկ օրվա մեջ նըվաճեց երկիրը, քարուքանդ արեց բերդերը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը, գաղթեցրեց բնակչությունը՝ 1890 երիտասարդ, 3496 մարտիկ, 3304 անձ սպանված կամ ողջ բռնված, նաև 65 ձի, 6090 եզ, 10 897 ոչխար։*

*Սրանք են մեկ տարում կատարված սխրագործությունները։*

**2-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* ˡEriaḫi *երկրի թագավորի երկիրը, նվաճեց* ˡAbilianiḫi *երկիրը և դրանք մատուցեց Սարդուրիին։ Սարդուրին գնաց* ᵖEriaḫini-di-*ի դեմ, գրավեց ամբողջ երկիրը մեկ օրվա մեջ։ Նա ջարդեց (բոլորին) և հողին հավասարեցրեց հայրերի ու պապերի* muri-li, *տները, բռնեց թագավորներին։ 150 տուն որպես* muri *(հա՞րկ) վերցրեց և վտարեց... նա հրկիզեց քաղաքները և տարավ տղամարդկանց ու կանանց* Biana-di*։ Վերադարձի ճանապարհին Սարդուրին արշավեց* ᵖAbilianiḫini-edi, *հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը։* ᵖAbilianiḫi *երկրի* ˡMurini-ini-*ն դիմավորեց, ընկավ Սարդուրիի ոտքերը, խոնարհվեց։ Սարդուրին նրան հարկ պարտադրեց։*

*Նրա ավարն էր՝ 7150 մարդ, մասամբ սպանված և մասամբ ողջ բռնված, 500 ձի, 8560 եզ, 25 170 ոչխար։*

*Սրանք են այն սխրագործությունները, որ նա մեկ տարվա ընթացքում կատարեց։*

**3-րդ տարի:**

*Խալդին հպատակեցրեց* ᵖRuišiani-e *երկրի թագավոր* ˡRašu-ni-*ին. նա հպատակեցրեց* ˡDiuṣini-*ն*, ˡIganie-ḫi-*ն (*ᵖ...uḫi, *երկրի, թագավորին) և նրանց մատուցեց Սարդուրիին։*

D=*քարակոթողի աջ կողմը. «և նա գրավեց* Rašu *և* Diuṣini *երկու թագավորների երկրները։ Նույն տարում երկրորդ անգամ, այսինքն՝ երկրորդ արշավանքում*[1]*...»։*

*Սարդուրին գնաց* Qulḫaḫalie-*ի (այսինքն՝* Qulḫalḫie*) երկիրը և այն գրավեց։ Նա մտավ* ᵛIldamuša *քաղաքը և այնտեղ արձանագրություն փորագրել տվեց։ Նա հրկիզեց բերդերը, կողոպտեց երկիրը և տարավ բնակչությունը։*

*Նույն տարին, երրորդ անգամ,* ši-iš-ti-ni, *Սարդուրին գնաց* ᵖUiṭer-uḫi-edi, *այն ավերակի վերածեց, հարյուրավոր մարդկանց կոտորեց, կողոպտեց երկիրը, գաղթեցրեց բնակչությունը։* ᵛUraia-ni *քաղաքը բերդի (պալատի) վերածեց։*

---

[1] *Հաջորդում է նույն մթին նախադասությունը՝* inani ŠARRU nunabi *և այլն... Տե՛ս վերևում առաջին արշավանքի ծանոթությունը։*

*Նա վտարեց վեց կառավարիչների,* bel-paḫati, *և երեք առաջնորդներ նշանակեց. նա վեց ցեղ տեղահան արեց։*

*Նա գաղթեցրեց 8200 երիտասարդ, 9000 կին, ուրեմն, 17 200 սպանված կամ ողջ բռնված. նա տարավ 1500 ձի, 17 300 եզ, 31 600 ոչխար։*

*Սրանք են այն սխրանքները, որ Սարդուրին կատարեց մեկ տարվա ընթացքում։*

**4-րդ տարի:**

*Խալդին հպատակեցրեց երկրի չորս թագավորների՝* [p]Ueduri Etiuni *(*ebaniaşie*),* [I]Arguqiu-ni-*ի թագավորին,* [I]Kamani *թագավորին,* [I]Lueruni *թագավորին։*

E = *քարակոթողի ներքին երեսը։ Սարդուրին մեկնեց և նվաճեց չորս թագավորների...*

*Երկրորդ արշավանքը* [p]Puluadi-edi *երկրի դեմ է։*

*Սարդուրին հաղթեց նրա ռազմիկներին, ընթացավ դեպի* [V]Lupliunie*։ Նա գրավեց* [V]Lupliuni-ni *թագավորական քաղաքը և այնտեղ արձանագրություն փորագրել տվեց։ Նա հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը, տարավ բնակչությունը։ Նա կառուցեց բերդեր և երկիրը միացրեց իր երկրին։*

*Նույն տարին, երրորդ անգամ, նա գնաց* [p]Eriaḫini-edi*, գրավեց երկիրը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը և բնակչությունը տարավ* Biaina-idi*։ Այնտեղ բերդեր կառուցեց և միացրեց երկիրը իր երկրին։*

*Գաղթեցվածների ընդհանուր գումարը կազմում է 6436 երիտասարդ, 15 553 կին, ուրեմն, ընդամենը 21 989 անձ՝ սպանված և ողջ բռնված. Նա տարավ նաև 1613 ձի, 115 ուղտ, 16 529 եզ ու 37 685 ոչխար։*

*Սրանք են այն սխրագործությունները և այլն...*

**5-րդ տարի:**

*Խալդին նվաճեց* [p]Qumaḫaḫali-i-*ն և այն մատուցեց Սարդուրիին։* [p]Qumaḫalḫi-e *երկրի թագավոր* Kuštašpili-*ն դավաճանել էր՝ իր համակրանքն ուրիշ թագավորի տալով։ Սարդուրին գնաց* Qumaḫaḫalinie *երկիրը և կռվով գրավեց թագավորական քաղաք* [V]Uitani-*ն. նա գրավեց թագավորական քաղաք* [V]Ḫalpa-ni-*ն. նա գրավեց թագավորական քաղաք* [V]Parala-ni-*ն։ Վերջինիս թագավորը դիմավորեց Սարդուրիին և խոնարհվեց նրա առջև։ Սարդուրին նրան պարտադրեց հանձնել որպես հարկ 40 մինա ոսկի, 800 մինա արծաթ, 3000 զգեստ, 2000 պղնձե առարկաներ, 1535 պղնձե գավաթ։*

B = *քարակոթողի ձախ կողմը։ «Խալդին նվաճեց* [p]Mana-*ն, նվաճեց* [p]Eriaḫi-*ն...» և դրանք մատուցեց Սարդուրիին։*

*Սարդուրին մեկնեց $^{p}$*Mana-idi, *գրավեց երկիրը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը և բնակչությունը տարավ $^{p}$*Biaina-idi։ *Նա գրավեց $^{v}$*Daarba-ni *բերդը և երկիրը միացրեց իր երկրին։*

*Նույն տարին, երրորդ անգամ, Սարդուրին գնաց $^{p}$*Eraḫinie-di, *գրավեց երկիրը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը, բնակչությունը գաղթեցրեց $^{p}$*Biainia-di։

*Գաղթեցվածների ընդհանուր գումարը՝ 3225 երիտասարդ, 4928 կին, ընդամենը՝ 8153 անձ՝ սպանված կամ ողջ բռնված. 412 ձի, 6665 եզ, 25 735 ոչխար։*

*Սրանք են մեկ տարում կատարված սխրագործությունները։*

F = *Քարակոթողի հիմքը։*

**6-րդ տարի:**

*Սարդուրին հավաքեց իր զորքերը, աղոթեց $^{d}$*Ḫaldi-*ին*, $^{d}$Tešeba-*ին*, $^{d}$Ardini-*ին և Բիաինայի աստվածներին, ու սրանք առաջնորդեցին նրան դեպի $^{p}$*Luluinaşi։ *Սարդուրին գնաց $^{p}$*Etiuni-edi[1]։

*Այնտեղից նա գնաց $^{p}$*Iganie-di։ *Խալդին հպատակեցրեց $^{p}$*Igani-i *երկրի թագավոր $^{l}$*Qapuri-ni-*ին։ Սարդուրին ավերեց 35 բերդ և 120 քաղաք մեկ օրվա ընթացքում։ Նա քարուքանդ արեց բերդերը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը և կանանց ու տղամարդկանց տարավ $^{p}$*Biaina-di։

*Նույն տարին Սարդուրին գնաց $^{p}$*Puzunia-inie *երկիրը $^{v}$*Alkania-idi *և* Šudala-di *քաղաքները, կործանեց բերդերը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը։*

*Վերադարձի ճանապարհին(?) նա գնաց $^{p}$*Išteluani-gidi, $^{p}$Apuni-nie *երկիրը, $^{p}$*Qadiani-edi։ *Նա ջախջախեց բանակը և այդ երկրների կառավարիչներին։ Նա գնաց $^{p}$*Uelikuni-gidi, *գրավեց $^{p}$*Uelikuni-ni *երկիրը, կռվով գրավեց 22 բերդ, քարուքանդ արեց բերդերը, հրկիզեց քաղաքները, կողոպտեց երկիրը, տղամարդկանց ու կանանց տարավ $^{p}$*Biaina-idi։ $^{p}$Uelikuḫi-*ի թագավոր $^{l}$*Niduni-*ն ներկայացավ Սարդուրիին և խոնարհվեց նրա առջև։ Սարդուրին ստրկացրեց նրա ժողովրդին ու նրան ենթարկեց հարկատվության։*

*Նույն տարին Սարդուրին երրորդ անգամ գնաց $^{l}$*Arguqi-ni-e *երկիրը, գրավեց $^{l}$*Arguqi-ini *երկիրը, $^{l}$*Adaḫuni *երկիրը, $^{l}$*Luipruni *երկիրը, $^{l}$*Ešumua *երկիրը*, Kaamniu-i *երկիրը, $^{p}$*Quaalba-ni-*ի տերիտորիան, $^{p}$*Uḫuni-ni-*ի տերիտորիան, $^{p}$*Teria-ni-*ի տերիտորիան։ Կռվով գրավեց 20 բերդ, 120 քաղաք զավթեց մեկ օրում։ Քանդեց բերդերը, հրկիզեց*

[1] *Հաջորդում է* andani $^{p}$Eriani aaldubi salmatḫi $^{p}$Qurianini *նախադասությունը. Հմմտ. Արգիշտիի ժամանակագրությունը, ծան.։*

քաղաքները, կողոպտեց երկիրը, տարավ տղամարդկանց ու կանանց։ Նա նաև ջարդ կատարեց Bamni և Uškiani երկրներում։

Գաղթեցվածներ՝ 10 000 երիտասարդ, 4600 տղամարդ, 23 200 կին, ընդամենը 27 800 անձ՝ սպանված կամ ողջ բռնված, 3500 ձի, 40 353 եզ, 214 700 ոչխար։

Սրանք են մեկ տարվա ընթացքում կատարված սխրագործություն-ները։

G=132B։ Որմնախորշի խորքում։

Գահակալության ժամանակ Սարդուրին իր տրամադրության տակ ուներ՝ 92 մարտակառք, 3604 հեծելազոր, 352 011 հետևակազոր։ Բանակի հանդերձանք՝ 121 $^{am}$UN «հոգի» (առաջնո՞րդ), 10 408 ձի, 132 ջորի, 12 321 ցուլ, 9036 եզ, ընդամենը 21 357 խոշոր եղջերավոր անասուն և 35 467 մանր եղջերավոր անասուն, 2114 պատերազմի զենքեր, 1342 աղեղ, 47 970 բրիչ, 1 002 133 kapi ցորեն, 111 aqarki գինի, 86 aqarki և 7 ḫirusi յուղ, 7079 մինա պղինձ, 336 սորուկ և ururdani(?)։

Pl. XXXVI—XXXVII. Марр и Орбели, Археологическая экспедиция в Ван. 1922, վերանայված Ծերեթելու կողմից, Die Neuen Haldischen Inschriften, «Sitzungsberichte d. Heidelberger Akademie d. Wiss.», 1927—1928.

133. Իզոլի, Քյոմուրխանի մոտ։ Խալդին նվաճեց $^{v}$Meliṭalḫi-e-ի թագավոր Ḫilaruada-ni (որդի) Šaḫuḫi-ի երկիրը և մատուցեց Սարդուրիին։

Սարդուրին ասաց. alḫi buranadi tu i išḫi manu ui ainiei արքա ištini $^{p}$Kauri։ Այս կարևոր նախադասությունը վատ է վերծանված։ Թվում է, թե սա միևնույն նախադասությունն է, որը հաճախ կրկնվում է այլ տեքստերում և վերաբերում է անհավատարմության՝ որպես արշավանքի պատրվակի[1]։

Սարդուրին աղոթեց աստվածներին, նրանք եկան օգնության։ 4-րդ (?) օրը իր բանակով նա հասավ Tumešk-inikai քաղաքը։

Նույն օրը նա գնաց andani kala-a-ni aaldubi երկիրը[2]։ Նա հասավ $^{p}$Karnišie... $^{p}$Baba-ni salmatḫi Meliṭani[3]։ Նա հասավ $^{p}$Mušanie երկիրը $^{v}$Zaapša քաղաքը[4]։ Մեկ օրվա մեջ նա գրավեց ու տակնուվրա արեց 14 բերդ և 100 քաղաք, հրկիզեց քաղաքները, գերի վերցրեց 50 մարտիկ ու նրանց սպանեց իր վերադարձի ընթացքում։ Նա կռվով գրավեց $^{l}$Ḫilaru-

[1] 132 A=pl. XXXV, 42, ania-arduni manu ui aini արքա ištini ušturi.

[2] Հաջորդում է andani kalani aaldu-bi (?)։

[3] $^{p}$Babani, salmatḫi $^{v}$Meliṭa-ni կարծես andani kalani aaldu-bi նախադասու-թյան մասն են կազմում։

[4] Za-ap-ša a-su-ni՝ այս բառը կրկնվում է № 31-ում՝ $^{p}$Šebeteria asuni և այլուր։ Գուցե նշանակում է «սահման», ինչպես Սեյսն է ենթադրել։

ada-i-ի *թագավորական քաղաք* ᵛNisi-ni-ն *և վերցրեց* niribi *(զոհեր) և տղամարդիկ, և՛ կանայք։ Այնտեղից նա եկավ* ᴵMeliṭaa-ni *քաղաքը։* Ḫi-laruada-ն *ընդառաջ եկավ ու խոնարհվեց և ոտքերն ընկավ։*

*Սարդուրին որպես նվեր ստացավ ոսկի, արծաթ, բրոնզե ամաններ և բերեց* Biaina-idi։ *Նա նրան պարտադրեց հարկ վճարելու։ Նա զավթեց հնը բերդ և միացրեց իր երկրին՝* ᵛḪaza-ni, ᵛUraḫi, ᵛTumeiški, ᵛAra-*(t)*-ni, ᵛManinu-i, ᵛAruši, ᵛQulbitari-ni, ᵛTaše-ᵈKuerai-Taše, ᵛMe-luia-ni։

*Հաջորդում է անեծքի բանաձևը։*

B. 121; Sayce L.

*134. Զաղալու, Սևանա լճի ափին։ Խալդին*[1] *նվաճեց* Arquqi-ni-nie-*ի երկիրը։ Սարդուրին գրավեց* ᴵArquqini *երկիրը և առաջացավ դեպի* ᴾUr-teḫiini[2]։

Sayce LXXXII; Nik. XV.

*135. Աթամխան, Սևանա լճի մոտ։ Սարդուրին հայտարարում է, որ գրավել է* ᴵṢinalibi ᴵUeriḫinie-*ի թագավորական քաղաք* ᵛTuliḫuni-*ն և գաղթեցրել է տղամարդկանց ու կանանց։*

*Նա ընթացավ դեպի* Uduri-Etiuni *(հմմտ. № 129)։*

Sayce LIII; Nik. XVI.

*136. Պատնոց։* B. *113։*

*137. Աստվածաշեն, Բոլ-ղաղի ստորոտում մի գյուղ։ Սարդուրի՝* ini ari šu-u-ni *15 000* kapi ištini *(հմմտ. № 114 և 156)։*

Sayce LXII.

*138. Բինգյոլ-դաղ։*

*139. Երևան։* Изв. Имп. Археогр. Ком., 37, 1910.

Nik. *37.*

*140. Արմավիր (այժմ՝ էջմիածնում)։ Արձանագրությունը շատ է աղճատված, հիշատակում է* pili si-ip-ru-gi-ni, zari *(պարտեզ)։ Խալդին թագավորությունը Սարդուրիին տվեց...* uldi, zari, arniušini-li։

Sayce LXIII, LXIV; Nik. XIII—XIV.

*141. Արմավիր։ Խալդիին՝* kiššati-*ի (ամբողջի, աշխարհի)*[3] *տիրոջը։ Սարդուրին* kušu-ni *(կառուցեց)* ini BITU *(տուն) և* ᵈḪaldini-li BAB-li *(խալդյան դռներ) և* at-qa-na-du-ni *նվիրեց Խալդիին։*

Sayce LXV; Nik. XII.

---

[1] *Կարդացվում է՝* masini šu-ri-e *(*giš-šurie-*ի փոխարեն), ինչպես № 117-ում։*

[2] Ḫa-tu-bi pa-ri ᴾUr-te-ḫi-i-ni *փոխարեն* kuṭu-bi-*ի, ինչպես* № *135-ում՝* kuṭu-bi pari։

[3] *Պետք է նշել, որ Խալդին, ինչպես Աշշուրը, կոչված է* kiššati-*ի տեր նաև № 151 -ում և 129-ում։*

142. *Արմավիր, Ջանֆիդա գյուղում։ Արձանագրությունը շատ է վնասված։* EKALLU-*ի (պալատ, դղյակ) կառուցման մասին է խոսքը և* Ḫaldini-ni BABU *(Խալդյան դռների) մասին։*

Textband II, p. 129; *Օրագիր,* № 4, 1930։

143. *Արմավիր։ Սարդուրին կառուցեց* ini BITU *և* [d]Ḫaldini-li BAB-li...

Sayce LXXXIII; Nik. XX.

143*ա. Դաշ-քյոփրի (Չըլդըր)։ Սարդուրին գրավեց* [p]Uḫiema-mi-*ն (?) (հավանական է՝* Uḫimea-ni*) և վերադարձի ճանապարհին գրավեց* [v]Maqaltu-ni-*ն ու գաղթեցրեց տղամարդկանց ու կանանց* [p]Bian-a-idi։

Записки Кавк. Музея, 1919, Sayce (JRAS 1929).

## RUSA SARDURIḪINI

## *ՌՈՒՍԱ ՍԱՐԴՈՒՐԻԻ ՈՐԴԻ*

144. *Վան։ (Բրիտանական թանգարան)։* [d]Tešeba eurigi-e ini pulusi [I]Rusa-še [Id]Sarduriḫini-še, [I]Uedipri tini kuguni ulgušianie-di-ni [I]Rusa-ni [Id]Sarduriḫi. [d]Tešeba *Տիրոջը Ռուսա Սարդուրիխինին (որի) անունն է* [I]Uedipri, *տաշել տվեց այս քարակոթողը Ռուսայի ողջության համար։*

*Այս տեքստը առանձնապես ուշագրավ է Ուեդիպրի մականվամբ։*

Pl. XLI; B. 126.

145. *Քեշիշ-գյոլ։ Կոթողի տեքստը շատ է վնասվել։ Ռուսան* şue *(ավազան) կառուցեց, որտեղից ջուր տարավ Ռուսախինիլի քաղաքը՝ հողերը, այգիները և պարտեզները ոռոգելու համար։*

Pl. XXXVIII; B. 127; Sayce LXXIX; Zeit. f. Ethnologie, 1892.

146. *Սիդիկան-Թոփզավե։ Երկլեզվյան քարակոթող. երկու տեքստերն էլ շատ են ջնջված։ Ռուսան հայտարարում է, որ Ուրզանան մտավ Խալդիի տաճարն ու հավատարմության երդում արեց և որ ինքը պատերազմում էր Ասորեստանի լեռներում և Ուրզանայի ձեռքից բռնած նրան* Ardini-*ի (=Մուսասիր) թագավոր հռչակեց. 15 օր Ռուսան կանգ առավ. ապա մեկնեց* Lulu *երկրի դեմ, կամ* Akkadu, *ինչպես ասուրական տեքստում է։*

R. 128; ZDMG LVIII, 1904.

147. *Օձաբերդ (Քյոլադռան) Սևանա ափերին։ Ռուսան գրավեց և մեկ օրում հպատակեցրեց հետևյալ երկրները.* Adaḫu-ni, Uelikuḫi, Lueruḫi, Arquqi-ini — *լճի այս կողմի չորս թագավոր,* Gurgumeli *(կամ* Ebimeli*),* Šanatua-ini, Ternišaini, Rišua-ini, Zua-ini, Aḫu(?)-a-ini, Za(?)-ma-a-ni, Irqima-ini, E(?)la-ini, Eri-el(?)-tua-ini, Aidamaniu-ni, Guria-ini, Alzira-ni, Pirua-ini, Si(?)la-ini, Uše(?)dua(?)-ini,

Ateza-ini, Eria-ini, Azamerun-ini — *19 թագավոր՝ լճի մյուս կողմի հակա լեռներում։ Ընդամենը 23 թագավոր մեկ օրվա մեջ նվաճեցի և ադամարդկանց ու կանանց տարա* ᵖBiaina-di *որպես տարեկան հարկ։ Նա եկավ և այդ երկրում կառուցեց* EKALLU *(բերդ) և այն կոչեց* ᵇTešeeba-*ի քաղաք* ᵖBiain-aue-*ի մեծության համար։ Ով որ այս արձանագրությունը քանդի* ᵈArdini...

J. Friedrich, Mélanges offerts à H. Pedersen, 1937.

*148ա. Նոր Բայազետ։ Ռուսան գրավեց և սարկացրեց* ᵖUelekuḫi *երկիրը, երկիրը փոխեց (?), կառավարիչ նշանակեց այնտեղ։ Նա կառուցեց* ᵈḪaldini-li BABU[1], EKALLU *և անվանակոչեց խալդիի քաղաք։*

Textband II, p. *130. Քալանթար, Օրագիր, № 3, 1927։ Ղափանցյան, Նոր Բայազետի սեպագիր արձանագրությունը։*

## ARGIŠTI RUSAḪINI

## *ԱՐԳԻՇՏԻ ՌՈՒՍԱՅԻ ՈՐԴԻ*

*149. Ջելերի-քաղի (Ջելերիի պարտեզ), Արճեշի մոտ։ Կոթողը երկու կողմից ծածկված է արձանագրություններով Արգիշտիխինիլիի հիմնադրման, խաղողի այգու և պարտեզի տնկման մասին։ Հետաքրքիր է շրջանի անունը, բայց ընթերցվածքնստույգ չէ.* ᵖAr-du-ša-ka-a-i-ni, *անուն, որը հիշեցնում է Արդաշկուն։*

*150։ Վան։ Հայկավանք եկեղեցին։ Արգիշտին* ˡGilurani-*ի անտառի դիմաց ցցեր տնկեց մինչև* ˡIšpilini ˡBatuḫini-*ի պարտեզը 950* kapi *տարածության վրա*[1]*։*

Sayce 87; JRAS 1906; ZDMG 58, 1904.

## RUSA ARGIŠTIḪINI

## *ՌՈՒՍԱ ԱՐԳԻՇՏԻԻ ՈՐԴԻ*

*151. Զվարթնոց, Էջմիածնի մոտ։ Ռուսան գրավեց* ᵖQuarli-ni *երկիրը, արտը մշակվեց... Ռուսան* uldi *(խաղողի այգի),* zari *(պարտեզ) տնկեց և* pili *(ջրանցք) փորեց* Ildaruni-ani *գետից։ Այդ ձեռնարկությունները զոհեր են պահանջում՝ ծի ու ոչխար Խալդիին, Թեյշեբային, Արդինիին և Անիկուին։ Հաջորդում է անեծքի բանաձևը։*

ZDMG 56, 1902; Sayce LXXXVII (JRAS 1906).

---

[1] *Սերբեթելու թարգմանության համաձայն։*

*152. Մեծկերտ (Մազկերտ)։ Ժայռակերտ մի սենյակում կարդացվում է՝* Lubarḫi-edi Alzina-i։

B. 134.

*153. Արծկե (Աղել-Ջևազ)։ Պատի վրա կարդացվում է՝* (Rusa)-še ali parubi aše lutu-ni $^{p}$Luluina-ni $^{p}$....-ni $^{p}$....-ni ... kai naru-u $^{p}$Muški-ni, $^{p}$Ḫate-e, $^{p}$Ḫaliṭu ... Lului-ni... *երկրից Ռուսան տարավ տղամարդկանց ու կանանց... և հաղկեր հավաքեց Մուշկի, Խատե և Խալիտու երկրներից։*

*153ա. Մակու։ Վիմագիր կոթող։ Ռուսան կառուցեց* BIT parakku *(տաճար) Խալդիի համար և այն կոչեց Ռուսայի փոքրիկ քաղաք։ Անեծք և թագավորի տիտղոսները։*

Sayce XCII (JRAS 1912); Марр, Записки Вост. отд, Русск. арх. об. 1922.

*154. Վան։ Բրոնզե ուխտյալ վահանի բեկոր, որի եզրի վրա գրված է՝* $^{d}$Ḫaldini-ni alsuiši-ni $^{I}$Rusa-ni $^{I}$Argištiḫi, *հզոր թագավոր, Տուշպա քաղաքի իշխան։*

Sayce LII; Belck et Lehmann. «Zeit. f. Assyr.», IX, 1894.

*155. Վան։ Թոփրակ-կալա։ Կավե տախտակ՝* akuku MU $^{I}$Rusa-a $^{I}$Argište-ḫi $^{I}$Sagaštar $^{I}$Išququlḫie ulabi $^{p}$Manai-di $^{I}$Aṭa-a esi-a $^{p}$Sakki-ni $^{d}$Ḫaldini asu-me $^{d}$Rusaḫina $^{p}$Qieibani-ta BIT parani։

B. 135; Maṭerialen, 105.

## RUSA EPIMENAḪINI

## *ՌՈՒՍԱ ԷՐԻՄԵՆԱՅԻ ՈՐԴԻ*

*156. Արմավիր (այժմ՝ էջմիածնում)։ Ռուսան՝* ini BIT ari (šuu-ni) ***1432*** ka(pi ištini). *Նաև № 114, 137, 128։*

Sayce LXXXV; Nik. XIX.

*157—162. Վան, Թոփրակ-կալա։ Վեց տարբեր վահանների բեկորներ, որոնց վրա գրված է Ռուսայի անունը՝* ini aše Rusaše Erimenaḫiniše uštu-ni։

Sayce LII; Zeit. f. Assyr., VII, 1892 *և* IX, 1894.

*163ա—բ. Վան, Թոփրակ-կալա։ Զարդաքանդակի բեկոր։ Ծնկաչոք ցուլ և վարդաձև զարդեր բրոնզից, որոնք* Rusa Erimenaḫini *անունն են կրում իրենց վրա։*

Sayce LII; Zeit. f. Ass., IX, 1894.

*164—193. Անորոշ արձանագրություններով բեկորներ։*

## 2. ԹԱԳԱՎՈՐԱԿԱՆ ԴԻՆԱՍՏԻԱՆ

*Վերոհիշյալ արձանագրությունները ներկայացնում են ուրարտացիների ամբողջ գրական հարստությունը, եթե նկատի ունենանք մինչև այժմ մեզ հայտնի եղածը: Որքան էլ այդ պաշարը աղքատիկ լինի, այնուհանդերձ, դրանք կապակցելով ասուրական տեղեկությունների հետ՝ կարելի է ուսումնասիրել Ուրարտուի պետության կազմավորումը, զարգացումն ու անկումը:*

*Առաջին խնդիրը կայանում է Ուրարտուի առաջնորդների ցուցակը և նրանց ժամանակագրությունը ուրարտական արձանագրությունների օժանդակությամբ հնարավորին չափ ճշգրտելում: Ասուրական տվյալների հիման վրա մեր կազմած ցուցակը հաստատվում ու լրացվում է ուրարտական վավերագրերով, բացառությամբ մի քանի վիճելի կետերի: Պարզության համար համեմատենք ուրարտական և ասուրական երկու ցուցակները.*

| | |
|---|---|
| *Լուտիպրի* | *Արամե՝ 858 և 844 թթ., Սալմանասար* III*-ի (859—824) ժամանակ* |
| *1. Սարդուրի* I | *Սարդուրի* I*՝ 832 թ., նույն թագավորի ժամանակ:* |
| *2. Իշպուինի* | *Ուշպինա՝ 820 թ., Շամշի-Ադադ* V*-ի (823—810) ժամանակ:* |
| *3. Մենուա* | |
| *4. Արգիշտի* I | *Արգիշտի* I*՝ 766 թ.* |
| *5. Սարդուրի* II | *Սարդուրի* II*՝ 743-735 թթ., Աշուրնիրարի* V*-ի (753—746) ժամանակ:* |
| *6. Ռուսա* I | *Ուրսա* I*՝ 713 թ., Սարգոն* II*-ի (721-705) ժամանակ:* |
| *7. Արգիշտի* II | *Արգիշտի* II*՝ 707 թ., նույն թագավորի ժամանակ:* |
| *8. Ռուսա* II | *Ուրսա* II*՝ 678 թ., Ասարխադդոնի (680—669) ժամանակ:* |
| | *Սարդուրի* III*՝ 646 թ., Աշուրբանիպալի (668—626) ժամանակ:* |
| *9. Էրիմենա* | |
| *10. Ռուսա* III | |

*Լուտիպրին հիշատակված է որպես Սարդուրիի հայրը, բայց հայտնի չէ, թե նա թագավոր եղե՞լ է:*

*Նույնպես ստույգ չգիտենք, թե Ռուսա* III*-ի հայր Էրիմենան թագավոր եղե՞լ է, թե ոչ: Ասորեստանցիները Մենուային և վերջին Ռուսային չեն ճանաչում այն պարզ պատճառով, որ Մենուան շատ հաջողակ հակառակորդ էր, և Ասորեստանի այնքան զոռոզ վեհապետներին ձեռնտու չէր հիշատակել նրա անունը, իսկ Ռուսա* III*-ը իշխում էր այն դարաշրջանում, երբ Աշշուրի պետությունն արդեն ավերակի էր վերածված: Մնացածի*

վերաբերյալ՝ երկու ցուցակները փոխադարձաբար միմյանց հաստատում են։

Նրանք տարբերվում են միայն մի կետում՝ Արամեի անվան շուրջ։ Ուրարտական վավերագրերը չեն հիշատակում նրան, անշուշտ, այն պատճառով, որ Արամեի ժամանակ ուրարտացիները դեռևս գիր չունեին կամ սովորություն չունեին գիր գործածելու։ Սարդուրիի ժամանակ է, որ երևան է գալիս ասուրերեն առաջին արձանագրությունը և նրա հաջորդ Իշպուինիի ժամանակ՝ ուրարտերեն լեզվով արձանագրությունները։

Սակայն Լեհման-Հաուպտը ցանկացել է Լուտիպրիի որդի Սարդուրիին տարբերել Արամեի հաջորդ Սարդուրից կամ Սեդուրից, որպեսզի նրան դարձնի Արամեի նախորդ և Աշուրնասիրպալ II-ի (883-859) ժամանակակից։ Նա նկատել է, որ Լուտիպրիի որդի Սարդուրին նույն տիտղոսներն ունի, ինչ որ Աշուրնասիրպալ II թագավորը և դրանից եզրակացրել, որ նա պետք է սրա ժամանակակիցը լիներ[1]։ Դա բոլորովին հավանական չէ։ Արամեն, որ, անշուշտ, Ուրարտուի պետության առաջին կազմակերպիչն է, արքայանիստ քաղաք ընտրել էր Արզաշկունը, որն արդեն պետության մայրաքաղաքն էր։

Սալմանասար III-ի կրկնակի ավերիչ ասպատակությունից հետո Արամեի հաջորդ Սարդուրին ստիպված է լինում մայրաքաղաքը տեղափոխել ավելի ապահով վայր՝ ասուրական հարձակումներից պատսպարվելու համար։ Նա որպես այդպիսին ընտրում է Տուշպան, այսինքն՝ Վանը։ Նա այն ամրացնում է նշանավոր dûru-ի (պարսպի) կառուցմամբ, որը կրում է Լուտիպրիի որդի Սարդուրիի անունը։ Հետևաբար, նա նույն Արամեի հաջորդ Սարդուրին է և ոչ մի դեպքում չի կարող Արամեի նախորդը լինել որպես արձանագրության հեղինակ, քանի որ ասուրերեն գիրն Արամեի դարաշրջանում դեռևս փոխ չէր առնված։ Այնուհանդերձ, Լեհման-Հաուպտի դիտողությունը միանգամայն արժանի է լուրջ ուշադրության, բայց դա պետք է բացատրել այլ կերպ։ Այն հանգամանքից, որ Սարդուրին փոխ է առել Ասորեստանի թագավորի տիտղոսները, չի կարելի անպայման հետևցնել, թե նա նրա ժամանակակիցն է, այլ միայն, որ նա նրանից ավելի ուշ էր։

Նախ որոշենք Սարդուրի թագավորի թվականը։

Սալմանասար III-ի գահակալության ժամանակ Արամեն արդեն թագավոր էր։ Նա դեռևս կենդանի էր Ասորեստանի նույն թագավորի իշխա-

---

[1] Լեհման-Հաուպտը այդ հարցին նվիրել է բազմաթիվ հոդվածներ, հատկապես Das urartäisch-chaldische Herrscherhaus, «Zeit. f. Assyriologie», XXXIII, 1920, դեկտեմբեր, Heft 1—2, էջ 27—51։ Ուրարտական թագավորների ցուցակի վիճելի կետերի համար նա առաջարկել է մեկից ավելի լուծում, իսկ այն, որ ընդունվել է Corpus Inscriptionum Chaldicarum-ի մեջ, ամենահաջողը չէ։

նության տասնհինգերորդ տարում, այսինքն՝ 844 թվականին, նկատի առնելով, որ այդ տարվա արշավանքի ժամանակ Սալմանասարը, «կործանեց և քանդեց ուրարտացի Արամեի քաղաքները»։ Բայց Սալմանասարի քսանյոթերորդ տարում, ուրեմն՝ 831 թվականին, Ուրարտուի գահի վրա արդեն Սարդուրին էր։ Նույն թագավորի երեսուներկուերորդ տարում՝ 828 թվականին, նրա թուրթանը բանակն առաջնորդեց Խուբուշկու երկրի դեմ, ընթացավ դեպի Սապ(պ)արիա՝ Մուսասիրի բերդաքաղաքը, և այն գրավեց 56 բնակավայրերի հետ միասին, ապա առաջ շարժվեց մինչև Ուրարտուի սահմանը, ավերակի վերածեց և բոցերի ճարակ դարձրեց 50 ուրարտական քաղաք։

Մենք կարծում ենք, որ այդ արշավանքը սերտ հարաբերություն ունի Ուրարտուի Իշպուինի թագավորի կողմից Մուսասիրի գրավման հետ, որին մասնակցում էր նաև թագավորի որդին ու գահակիցը՝ Մենուան, մի իրադարձություն, որի ստույգ վկան է հանդիսանում Կելիշինի երկլեզվյան արձանագրությունը։

Հետագայում հայտնի չէ որևէ դեպք, որ ասուրական և ուրարտական զենքերն իրար հանդիպած լինեն Մուսասիրի հողի վրա։ Այդ երկիրը Ուրարտուի հետ կապված մնաց որպես նրա վասալը մինչև Սարգոնի ժամանակաշրջանը։

Որովհետև այդ ժամանակ թագավորները փափագում էին իրենց գահակալությունը հռչակել մի փառավոր սխրանքով, շատ հավանական է, որ 828 թվականին Իշպուինիի ներխուժումը Մուսասիր կատարված լինի այդ իսկ նպատակով։ Այսինքն՝ 828 թ. ցույց է տալիս Սարդուրիի վերջը և նրա որդի Իշպուինիի թագավորության սկիզբը։

832-ից 828 թթ. չափազանց կարճ ժամանակամիջոց է նոր մայրաքաղաքի հիմնադիր հանդիսացած Սարդուրիի թագավորության համար։ Հիմք կա նրա թագավորության սկիզբը 845 թվականից քիչ ուշ դնելու համար[1]։ Նրա նախորդ Արամեն, որը գահակալում էր 859 թվականին, թագավորել էր սկսել այդ թվականից շատ առաջ։ Ռազմատենչ թագավոր Աշուրնասիրպալը, հակառակ հաղթանակ տանելու իր բուռն ցանկության, երբեք չանցավ Արասանիան։ 879 և 866 թթ. նա պատերազմական գործողություններ էր կատարում Շուպրե, Ուլլիբա, Նիրբե, Արբակի երկրներում, որոնք բոլորը գտնվում են հայկական Տավրոսի լանջերին, բայց զգուշացավ Ուրարտուի վրա հարձակվել, ինչպես երբեմն Թիգլաթպալասարը։ Հարցը պարզ է, որովհետև այդ ժամանակ տեղի էր ունենում կամ արդեն տեղի էր ունեցել մեծ հեղափոխություն այն երկրներում, որոնք Թիգլաթպալա-

---

[1] Ցլարձանի արձանագրությունը հիշատակում է Արամեի անունը Սալմանասարի տասնհինգերորդ տարում, 845 թվականին։

սարը Նաիրի էր կոչում. բազմաթիվ փոքր պետություններ միավորվել էին և կազմել մեկ պետություն՝ Արամեի հովանու տակ։

Այդ մեծ գործով Արամեն անմահացրեց իր անունը, այնպես որ նրա հիշատակը հասել է նույնիսկ մինչև հայերը, և ավանդությունը նրան դարձրել է ազգային էպոնիմ (անվանադիր)։

Այս փաստը վկայում է այն ժողովրդականության մասին, որ առհասարակ վայելում են մեծ պետությունների ստեղծողներն ու վերականգնողները։ Ահա թե ինչու մենք կարծում ենք, որ Արամե թագավորն արդեն գործի վրա էր հենց Աշուրնասիրպալի առաջին տարիներից, այսինքն՝ նա թագավորել է 880 թվականից համարյա մինչև 843—840 թթ.։ Գուցե նա մեռել է իր պետությանը Սալմանասարի կողմից հասցված հարվածից անմիջապես հետո, 845 թվականին։

Այդ դեպքում Սարդուրին թագավորած կլինի սկսած 845—842 թթ.։ Մայրաքաղաքի փոխադրումը և Սարդուրիի արձանագրությունը կրող պարսպի կառուցումը այսպիսով վերաբերում է նրա թագավորության առաջին տարիներին։ Հետաքրքիր է իմանալ, թե այն դպիրը, հավանաբար, մի ասորեստանցի, որը փորագրել է Սարդուրիի պարսպի վրայի արձանագրությունը, ինչո՞ւ է ուրարտացի թագավորին Աշուրնասիրպալի տիտղոսներն ընծայել և ոչ ժամանակակից թագավոր Սալմանասարի տիտղոսները[1]։

Պատասխանը շատ պարզ է։

Սալմանասարի արձանագրությունները, գոնե նրանցից կարևորները, ինչպես Կորողը և Ցլարձանները, ավելի վաղ չեն, քան Սարդուրիի արձանագրության ենթադրյալ թվականը։ Կորողը գրվել է Սալմանասարի երեսունմեկերորդ տարում, 828 թվականից հետո, իսկ Ցլարձանները՝ տասնհինգերորդ տարվանից հետո։

---

[1] Հարցը մի քանի արտահայտությունների մասին է.

Ա. Թագավոր, «որ իր նմանը չունի» šanišu lâ išû։

Բ. «Զարմանալի առաջնորդ, որը չի վախենում դիմադրությունից», rê'û tabrate ladiru tuqunte։

Գ. Թագավոր, «որը հպատակեցնում է անհնազանդներին», mušakniš lâ kanšutešu։ Սրանք հանդիպում են Աշուրնասիրպալի ճոռոմ և շքեղ հորջորջումներում (Annals of the kings of Assyria, էջ 178 և այլուր), որտեղից էլ փոխ են առնված։ Ասենք, նույն արտահայտությունները մասամբ գործածվում են նաև Սալմանասար III-ի մոտ՝ šanišu lâ išû (Ցլարձան I, տող 7), ana šepašu ušaknišu, «որ երկրներն իր ոտքերի տակ է խոնարհեցնում» (ib., տող 11—12). lâ gâmil tuqunte, «որ երկյուղ չունի կռվից» (Կալա-Շերգաթի արձան, տող 7). rê'û šarig տաճարների (Կալա-Շերգաթի աղյուս, տող 6, **Amiaud** et **V. Scheil**, Les inscriptions de Salmanassar II(III), roi d'Assyrie, էջ 6, 74 և 78)։ Այդ արտահայտությունների հետքերը գտնվում են մինչև իսկ Թոփզաուեի կոթողում, օրինակ՝ tuqunte, rê'û kênu «իսկական հովվապետ»։ Այս վերջին տիտղոսը հասնում է մինչև Թիգլաթպալասար I-ը (**King**, The Annals, էջ 32, տող 34)։

Միայն Կուրխի Մոնոլիթն է, որ իր բովանդակության համաձայն հասնում է մինչև Սալմանասարի վեցերորդ տարին։ Սարդուրիի դպիրը, ինչպիսին էլ լիներ նրա գրագիտության աստիճանը, անկասկած ավելի լավ կիմանար Աշուրնասիրպալի արձանագրությունները, որի թագավորության ժամանակ էր ծնվել և կրթություն ստացել, քան Սալմանասարինը, որոնք դեռ հայտնի չէին, բացառությամբ Կուրխի կոթողի տեքստը, կոթող, որը գտնվում էր մայրաքաղաքից հեռու և քիչ մարդկանց էր մատչելի։ Ուրեմն, շատ բնական է, որ այն դպիրը, որին հանձնարարված էր Սարդուրիի համար արձանագրություն կազմել, որպես օրինակ էր առնում Աշուրնասիրպալի նույնանման արձանագրությունը և արտագրում տիտղոսները, որոնք, կրկնում ենք, նրան կատարելապես ծանոթ էին՝ որպես մի թագավորի տիտղոսներ, որի ժամանակակիցն էր ինքը։

Այս տեսակետից Լուտիպրիի որդի Սարդուրիի դարաշրջանի վերաբերյալ Լեհման-Հաուպտի դրույթը բոլորովին խախուտ է դառնում։ Այդ իշխանը նույն Սարդուրին է, որը հաջորդել է Արամեին և թագավորել մոտավորապես 845—828 թթ.։

Նրա որդի ու հաջորդ Իշպուինին գահակալել է իր որդի Մենուայի ընկերակցությամբ 828 թվականից սկսած. Նրա թագավորության վերջն անհայտ է։ Մենուան շարունակել է թագավորել մինչև 785 թվականը։ Այդ թվականը հիմնավորվում է ասուրական և ուրարտական տեղեկությունների համեմատությամբ։ Մենուայի որդին ու հաջորդը՝ Արգիշտին, իր ընդարձակ Տարեգրությունում պատմում է, որ իր թագավորության վեցերորդ տարուց մինչև տասներկուերորդ տարին, ուրեմն՝ յոթ տարվա ընթացքում, տարեկան մեկ արշավանք է կատարել դեպի Մանա երկիրը։

Պայքարն սկսվել էր անշուշտ Ասորեստանի դեմ, որ Ուրարտուից ուզում էր խլել այդ երկիրը։ Վերևում մենք տեսանք, որ ճիշտ այդ ժամանակ Ասորեստանի թագավոր Սալմանասար IV-ը (781—772) կռվել է Ուրարտուի դեմ. նա արշավանք է կատարում այդ երկրի դեմ 781, 780 779, 778, 776, 774 թվականներին։ Նա, ուրեմն, ձեռնարկել է համարյա նույնքան արշավանք, որքան Արգիշտի թագավորը։ Այս զուգադիպությունը պատահական չէ. դա վկայում է, որ երկու պետությունների միջև կատաղի պայքար է ծավալվել Մանա երկրին տիրանալու համար։

Երկուսի կողմից հիշատակված արշավանքների հավասար թիվն ապացուցում է, որ որոշ կապ կա նրանց միջև։ Եթե Արգիշտիի առաջին արշավանքը իր գահակալության վեցերորդ տարում համապատասխանում է Սալմանասար IV-ի 781 թվականի առաջին պատասխան արշավանքին, Արգիշտիի գահակալության առաջին տարին, ուրեմն, 785 թվականն է։ Սա ուրարտական թագավորների ժամանակագրության հաստատուն կետ է հանդիսանում։

Հետևաբար, Մենուան թագավորել է իր հոր հետ, ապա միայնակ՝ 828—785 թվականներին, այսինքն՝ 43 տարի։ Այդ երկար թագավորությամբ շատ լավ բացատրվում է Մենուայի թողած արձանագրությունների առատությունը։

Գալով Արգիշտիին, նրա ընդարձակ Տարեգրությունը պատմում է միայն տասնչորս տարվա ախրանքների մասին, այնինչ նա իշխել է տասնչորս տարուց ավելի։ Մի շարք արշավանքներ ժամանակագրության մեջ չեն հիշատակված, անշուշտ, որովհետև նրանք տեղի են ունեցել նրա թագավորության տասնչորսերորդ տարվանից հետո։ № 112 վավերագիրը մեզ ներկայացնում է երեք արշավանք Դիաուեխի երկրի դեմ, մեկ՝ խաթեի և Ծուպանիի դեմ. № 115-ը՝ մեկ արշավանք Էթիունիի դեմ. № 116-ը՝ մեկ արշավանք Կիեխունիի դեմ. № 117-ը՝ Ալուբա քաղաքի դեմ. № 118-ը՝ Իրդանիու քաղաքի դեմ. № 119-ը՝ Ախուրիանի քաղաքի դեմ. № 120-ը՝ Շելուինի երկրի դեմ։

Դժվար է ասել, թե այդ տասը արշավանքները տևե՞լ են արդյոք տարիներ շարունակ, թե մեկ տարում են կատարվել։ Այնուհանդերձ, քանի որ նրանք ծավալվել են մի ընդարձակ տերիտորիայի վրա, Մելիտենեի շրջանի և Սևանա լճի միջև, ուրեմն, պետք է որ կատարված լինեն տարիների ընթացքում, գոնե՝ հինգ կամ վեց տարվա։ Դրանք այնպիսի գործողություններ են, որոնց նպատակները բավական հեռու էին մեկը մյուսից։ Հետևաբար, Արգիշտին իշխած կլինի գոնե քսան տարի։ Հիշենք նաև այն արշավանքը, որի մասին Դեհուկում հայտնաբերվեց մի նոր վկայություն։ Դեհուկը գտնվում է Ասորեստանի մայրաքաղաքի հյուսիսում, մի քանի հարյուր կիլոմետր հեռավորության վրա։ Դեհուկի արձանագրության մեջ, որը կրում է Արգիշտիի անունը, հիշատակվում են Շամաշիլուն և Մուշալիմ-Նինուրտան։ Վերջինը կառավարիչն էր Տիգրիս գետի ափին, Դեհուկից ոչ հեռու գտնվող Թիլլե քաղաքի։ Անշուշտ, այդ պատճառով է, որ նա հիշատակվում է Շամաշ-իլուի կողքին։ Շամաշիլուն ասուրական բանակի գլխավոր հրամանատարն էր, որ պատերազմական գործողություններ էր վարում ուրարտացի նվաճող Արգիշտիի դեմ։ Քանի որ Մուշալիմ-Նինուրտան հիշատակված է որպես 766 թվականի էպոնիմ (անվանադիր), ուրեմն, տրամաբանական է, որ ներխուժումը կատարվել է այդ ժամանակ։

Դա գալիս է հաստատելու վերև հիշված մեր այն ենթադրությունը, որ Արգիշտին թագավորել է քսան տարուց ոչ պակաս, ուրեմն՝ 785-ից մինչև 764 թվականը։ Մի քանի տարի էլ հանգստի տարիներ հաշվելով, Լեհման-Հաուպտի հետ միասին կարելի է նրա իշխանության շրջանը համարել քսանհինգ տարի՝ 785—760 թթ., կամ նույնիսկ երեսուն տարի՝ մինչև 755 թվականը։

Արգիշտիի որդին՝ Սարդուրի II-ը, Թիգլաթպալասար III-ի (745—727)

ժամանակակից էր։ 743 թվականին նա կռվի բռնվեց Ասորեստանի այդ թագավորի հետ Խալպայում (ներկայիս Խալֆատը), Եփրատի ափին Ռումկալեի մոտ։ Նա կռվեց նաև Աշուրնիրարի III-ի դեմ, ինչպես ինքն է հաստատում։ Աշուրնիրարին մեռել է 746 թվականին, ուրեմն, Սարդուրիի գահակալությունը այդ թվականից առաջ է։

Երկու կոթողների վրա փորագրված՝ Սարդուրիի ժամանակագրական արձանագրությունը որոշ օգտակար ցուցումներ է մատուցում այս խնդրի վերաբերյալ։ Կոթողներից մեկը, որն անաղարտ է մնացել, պարունակում է յոթ տարվա ռազմական իրադարձությունների պատմություն։ Այդ իրադարձությունները կատարվել են 743 թվականից առաջ, որովհետև այնտեղ ասվում է, որ Սարդուրին իր թագավորության հինգերորդ տարում հարձակվեց Կումախալխիի թագավոր Կուշտաշպիլիի վրա և նրան հնազանդեցրեց, մինչդեռ այդ նույն Կուշտաշպիլին 743 թվականին գտնվում էր Սարդուրիի դաշնակից պետությունների կոալիցիայում։ Հետևաբար, Սարդուրին գահակալել է 743 թվականից յոթ տարի առաջ, այսինքն՝ գուցե 750 թվականից ի վեր։

Մյուս կոթողը, որ կազմել է տարեգրության առաջին մասը, իր տեղից հանվել է, և Սուրբ Պողոս եկեղեցում գտնված նրա բեկորները լրիվ տեքստը չեն ներկայացնում։ Այդ կոթողը նույնպես ընդգրկում է մի քանի տարիների ընթացքում կատարված ռազմական գործողությունների պատմություն։ Ներկա վիճակում տեքստը պարունակում է հազիվ երեք տարվա արշավանքների պատմություն։ Մեկը՝ Վելիքուխիի թագավոր Մուրինուի, Լուեխուխիի թագավոր Ծինալիբիի, Ասորեստանի թագավոր Աշուրնիրարիի և Արմե երկրի դեմ։ Մյուսը՝ Մելիտե (կամ Մելինե) քաղաքի և Սասինի (կամ Իրսի-նի) քաղաքի դեմ. իսկ երրորդը՝ Ռիխիշա, Խուրա, Նուշինի երկրների և այլն...

Այս երեք արշավանքները նախորդել են յոթ արշավանքներին, այսինքն՝ 743 թվականին։ Իրոք, այստեղ Վելիքուխի երկիրը պատերազմում է Ուրարտուի դեմ։ Նրա Մուրինու թագավորը դիմադրում է Սարդուրիին, մինչդեռ յոթ արշավանքների պատմության մեջ այդ երկիրը արդեն անձնատուր է եղած, և Մուրինուի հաջորդ Նիդունի թագավորը հարկատու է Ուրարտուին։

Մեկ ուրիշ արշավանք, որ նշված է Իզոլիի № 133 արձանագրության մեջ, նույնպես նախորդում է 743 թվականին, որովհետև այդ թվականին Սարդուրիի դաշնակից Միլիդի թագավորը Սուլումալն էր, այն դեպքում, երբ №133-ում հիշված թագավորը կոչվում է Խիլարուադա և նույն իշխանն է, որը թագավորում էր դեռևս Արգիշտիի օրով։

Հետևաբար, այդ արշավանքներին պետք է հատկացնել երեք-չորս տարի։

Դա Սարդուրիի թագավորության սկիզբը եռ է տանում նույնքան տարով, մոտավորապես մինչև 753—754 թվականը։

Առաջին արշավանքն ուղղված էր, ի միջի այլոց, Աշուրնիրարիի դեմ, որը թագավորությունն ստանձնել էր բավական տագնապալից պայմաններում։ Նրա նախորդ Աշշուրդանի (771—754) վերջին տարիները մթագնըվել էին այն ընդվզումներով, որոնք բռնկվել էին նրա պետության մեծ մասում և նույնիսկ մայրաքաղաքում։ Խլրտումների հետևանքով նրա պետության հիմքը սասանվել էր և նրա հեղինակությունը մեծապես վընասվել։ Այդ խռովությունները մոլեգնեցին, մանավանդ, 762—757 թըվականներին։ Թվում է, թե այդ շրջանում էր, որ ուրարտական թագավոր Արգիշտին, պատեհ առիթից օգտվելով, իր զենքն ուղղել էր նրա դեմ և հասել մինչև Դեհուկ։

Իր թագավորության յոթ տարվա ընթացքում Աշուրնիրարին միայն մեկ անգամ զենք վերցրեց՝ 753 թվականին՝ Արպադ քաղաքի դեմ, որն այժմ կոչվում է Ռֆադ և գտնվում է Հալեպից հյուսիս։

Սարդուրին ասում է, որ ինքն ընդհարվել է Աշուրնիրարիի հետ, բայց որտե՞ղ և ի՞նչ առիթով։ Կոթողի ջնջված տեքստը հնարավորություն չի տալիս որոշելու այդ։ Եթե որոշ տեսակետով մոտենանք հարցին, կարելի է ենթադրել, որ Սարդուրիի ընդհարումը կապ ունի Աշուրնիրարիի կատարած միակ արշավանքի հետ, որն ուղղված էր Արպադի դեմ։ Այդ քաղաքը որոշ դեր է կատարել այն իրադարձությունների մեջ, որոնց հետևանքով տեղի ունեցավ 743 թվականի հայտնի ճակատամարտը։ Թիգլաթպալասարը պաշարել էր Արպադը, երբ Սարդուրին իր դաշնակիցների հետ միասին երևան եկավ խալպայում։ Ստեղծվում է այն տպավորությունը, թե Արպադը կապ ուներ ուրարտական կոալիցիայի հետ։ 743 թվականի ճակատամարտից հետո Թիգլաթպալասարը մեծ ճիգերով կարողացավ ճընշել Արպադի դիմադրությունը միայն երեք տարի հետո։ Եթե թույլ տրվեր կարծել, որ Սարդուրիի և Աշուրնիրարիի ընդհարումը տեղի է ունեցել Եփրատի հովտում, Արպադի դեմ ասուրական արշավանքի կապակցությամբ և Արպադի պատճառով, այդ դեպքում Սարդուրիի գահակալության ժամանակը որոշելու համար որպես ստույգ թվական կունենայինք 753 թըվականը, իհարկե, ենթադրելով, որ Ջարդված կոթողի ժամանակագրությունն սկսվում է, ըստ սովորության, թագավորի իշխանության առաջին տարով։ (Ջարդված կոթողի արձանագրությունն սկսվում է Աշուրնիրարիի դեմ արշավանքի պատմությամբ։) Եթե այդ ձևով ընկալենք, Արգիշտին թագավորած կլինի 785-ից 754 թվականը, իսկ Սարդուրին՝ 753-ից 735 թվականը՝ Սարդուրիի դեմ Թիգլաթպալասարի վերջին արշավանքի տարին։

Լեհման-Հաուպտը կարծում է, թե Թիգլաթպալասարի՝ Սարդուրիի հեղինակությանը հասցրած հարվածը մեծ վնաս պատճառեց սրան, և այդ պատճառով Սարդուրին զրկվեց գահից։ 735 թվականի միջադեպը այնքան ողբերգական չէր, բայց բավական լուրջ էր երկրի առաջնորդին ընկճելու և նրա վախճանը փութացնելու համար։

Սարդուրիի հաջորդ և Սարգոնի (727—705) հակառակորդ Ռուսան անձնասպան չի եղել, ինչպես կարելի է կարծել Սարգոնի մի երկիմաստ արտահայտությունից, այլ նա մեռել է կիմմերների դեմ պատերազմելու ժամանակ։

Ռուսայի թագավորությունը ժամանակագրական վեճի առարկա չէ, բայց ուրիշ հարց է առաջ քաշում։ Ըստ որոշ գիտնականների՝ Ռուսան ոչ թե իր նախորդի որդին է, այլ մի զավթիչ, որը 735 թվականի աղետից հետո թագավորին գահընկեց էր արել և իշխանությունն իր ձեռքը վերցրել։ Այդ ենթադրությունը հաստատելու համար որպես փաստ է ծառայում Սարգոնի ութերորդ արշավանքի հետ կապված մի դեպք։ Դեպի ուրարտական Արմարիլիի շրջանը կատարած իր առաջխաղացման ընթացքում Սարգոնը նախ՝ հասնում է Արբու քաղաքը «որը կոչվում է» Ռուսայի հայրենական տան քաղաք՝ al bit abi-šu ša Ursâ», ապա՝ Ռիար քաղաքը, «Սարդուրիի քաղաքը». շրջակայքում «յոթ քաղաքներ կային, ուր ապրում էին նրա եղբայրները»։

Պարզ չէ՝ խոսքը Ռուսայի եղբայրների մասին է, թե Սարդուրիի։ Համենայն դեպս, Ռուսայի հայրենական տունը կարծես հակադիր է Սարդուրիի տանը և, եթե խոսքն այստեղ Սարդուրի թագավորի մասին է, Ռուսայի օրինականությունը լուրջ կասկածի կենթարկվի։ Ուրարտական արձանագրությունը, որի մեջ Ռուսան, կամ նրա հայր Սարդուրին, կոչվում է Ուեդիպրի, Rusaše Sardurihiniše Uedipri tini, ավելի ևս բարդացնում է խնդիրը։

Լեհման-Հաուպտը կարծել է, թե կարող է հարցը լուծել՝ ենթադրելով, որ Ռուսան Սարդուրի թագավորի որդին չէր, այլ մի ուրիշ Սարդուրիի որդի՝ նույն թագավորական տան կողմնակի գծի ներկայացուցչի։ Սարգոնը վկայակոչում է, որ Մուսասիրում կար, ի միջի այլոց, Իշպուինիի որդի Սարդուրիի մի բրոնզե արձան։ Ըստ Լեհման-Հաուպտի՝ Ռուսան հենց այդ Սարդուրիի շառավիղն է, գուցե թոռը։

Այնուհանդերձ, սույն վարկածը Ռուսային օրինավոր ժառանգ չի դարձնում, այլ զավթիչ։ Դա վարկածի թույլ կողմն է։

Սարգոնը Ռուսայի համբավի վրա ստվեր գցելու համար բառեր չի խնայում. նրան համարում է անխիղճ մարդ, նույնիսկ ստտվածների նկատմամբ, որոնց կամքը նա չէր հարգում, մի խոսքով՝ բարոյազուրկ մի մարդ։ Հետևաբար, եթե Ռուսան զավթիչ եղած լիներ՝ այդքան անօրինական ճա-

նապարհով իշխանության հասած՝ անշուշտ Սարգոնը չէր գլանա նրան խայտառակել այդ ուղղությամբ ևս։ Սակայն նա ոչ մի ակնարկ չի անում այդ մասին։

Սարգոնը ասում է, որ Մուսասիրում տեսել է Ռուսայի մի արձան՝ իր երկու ձիերի ու կառապանի հետ, և նրա վրա մի վերամբարձ արձանագրություն. «Իմ երկու ձիերով և կառապանով ձեռքերս գրավեցին Ուրարտու թագավորությունը»։ Ասորեստանի թագավորը նշավակում է Ռուսային իր գոռոզության համար և անշուշտ առիթ չէր փախցնի նրան խարազանելու նրա իշխանության առումով, եթե նա իրոք լիներ այնպիսին, ինչ որ կարծում են։ Բայց այդ մասին ոչինչ չի ասված։ Թագավորի լռությունը ապացույց է այն բանի, որ Ռուսայի օրինականության հարցը կասկածից միանգամայն դուրս է։

Ռուսայի հայտարարությունը Ուրարտուի նվաճման վերաբերյալ սխալ է մեկնաբանված, բայց Սարգոնը իրավունք ուներ գոռոզամտության արտահայտություն նշմարելու նրա մեջ, քանի որ վերջինս պարծենում էր Ուրարտուն գրաված լինելու առթիվ, մինչդեռ հարցը Մուսասիրի մասին էր, Ուրարտուի մի մասի, որտեղ նա Ուրզանա թագավորին գահ էր բարձրացրել։ Այդ իրադարձության մասին է խոսում Թոփզաուեի երկլեզվյան արձանագրությունը։ Դժբախտաբար, արձանագրությունը շատ է աղճատված։ Ընթեռնելի տեղը կարդացվում է՝ «Բազմաց թագավոր Ուրզանան, տաճարում, իմ ներկայությամբ գահ բարձրացավ... Ես, Ռուսաս, մինչև Աշշուրի լեռները... առաջ խաղացի... Ուրզանայի ձեռքից բռնեցի... իր տեղում թագավոր կարգեցի։ Տասնհինգ օր Մուսասիրում զոհեր մատուցեցի...»։

Ուրարտական տարբերակում նշմարվում է. «Ապա Ռուսան մեկնեց Լուլու երկրի դեմ»։ Ասուրական տարբերակում այս անվանը համապատասխանում է Ակկադուն։

Ընդհանուր կարծիքով՝ կոթողը կանգնեցվել է Ռուսայի կողմից Ուրզանայի վերականգնման առթիվ, այն բանից հետո, երբ 713 թվականին, Սարգոնի կողմից Մուսասիրի գրավման ժամանակ, Ուրզանան վտարվել էր իր երկրից։

Այդ կարծիքը հնարավոր չէ հիմնավորել։ Կրկնակի աղետից հետո-կիմմերների ներխուժումը և Սարգոնի ասպատակությունը — Ռուսան ուժ և ժամանակ չէր ունենա Մուսասիրով զբաղվելու, մանավանդ՝ հարձակվելու Լուլուի վրա։ Կիմմերների դեմ պատերազմում կրած պարտության լուրը լսելուն պես Ուրզանան իր ընտանիքով գնաց ողջունելու Ռուսային։ Սարգոնը, Ռուսայի հետ իր բարեկամությունը շարունակող Ուրզանայի վրա բարկացած, հարձակվեց նրա պետության վրա, կողոպտեց երկիրը և վտարեց նրան։ Այդ դեպքը տեղի ունեցավ 713 թվականի աշնանը։ Այդ

*ժամանակ Ռուսան արդեն վախճանվել էր կիմմերական ճակատում ըստացած վերքի հետևանքով։*

*Իրականում տեքստը Ուրզանայի վերահաստատման մասին չի խոսում։ Հայտնի չէ, թե ո՞վ էր Ուրզանան՝ օրինական ժառանգո՞րդ, թե մի նոր հավակնորդ և Ռուսայի հովանավորյալ, ինչպես Թարալի խուլլին էր Թիգլաթպալասար III-ի համար։ Ռուսան նշում է, որ ինքը Ուրզանային հաստատել է «իր տեղում», առանց արտասանելու «հայրական» բառը։ Հնարավոր է, որ Ուրզանան իր երջանկությամբ բացառապես Ռուսային էր պարտական, որից էլ բխում է նրա հարատև հավատարմությունը։*

*Ուրզանայի գահակալությունը չէր կարող տեղի ունենալ Սարգոնի ժամանակ։ Վերջինը հայտարարում է, որ ինքը ընդհարում չի ունեցել Ռուսայի հետ 713 թվականից առաջ, «որ ռազմադաշտում նրա մարտիկների արյունը չի թափել»*[1]*։ Ռուսայի միջամտությունը Ուրզանայի ճակատագրում Սարգոնին անտարբեր չէր կարող թողնել, այլ, անշուշտ, կդրդեր ընդհարման՝ ուրարտական թագավորի հետ։ Ուրզանայի գործը կարելի է տեղադրել Սարգոնի թագավորության ժամանակից ավելի առաջ, հավանական է՝ նրա նախորդ Թուլամորթ Սալմանասար V-ի օրով (727—722)։ Ռուսայի արձանի առկայությունը Մուսասիրի պալատում ապացուցում է, որ նա կարևոր ծառայություն է մատուցել երկրին, և այդ ծառայությունը կարող էր միայն Ուրզանայի հաստատումը լինել, մի բան, որ հնարավոր կլիներ 713 թվականից առաջ*[2]*։*

*Վերադառնալով Սարգոնի գրության վերոհիշյալ հատվածին, որտեղ խոսվում է Արբու և Ռիար քաղաքների մասին, մենք չենք կարծում, որ դա կարելի է դիտել որպես անժխտելի փաստ Ռուսայի դեմ։ Իրականում այս երկու քաղաքները, մյուս յոթ բնակավայրերի հետ միասին, հանդիսանում էին թագավորական կալվածքներ։ Ռուսայի հայրենի տան քաղաք՝ չի նշանակում Ռուսայի հոր տան քաղաք, այլ հայրենական, դինաստիայի քաղաք. մյուս քաղաքն էլ կոչվում էր Սարդուրիի քաղաք*[3]*, որովհետև կա՛մ հիմնադրվել էր նրա կողմից, կա՛մ էլ ծառայում էր նրան որպես ամառային նստավայր։ Գոյություն չունի, և ոչ էլ պետք է փնտրել որևէ հակադրություն այդ քաղաքների տերերի միջև և ոչ էլ նրանց ու յոթ քաղաք-*

---

[1] *Ութերորդ արշավանքի նկարագր., տող 123։*

[2] **Forrer**-*ը,* Provinz., *118, Թոփզաուեի արձանագրությունը վերագրում է Ռուսա* II-*ին, անշուշտ այն պատճառով, որ նա անհնար է գտել, որ Ռուսա* I-*ը 713 թ. զբաղվեր Ուրզանայի հարցով։ Սակայն նա սխալվում է ենթադրելով Ռուսա* II-*ին, որովհետև եթե Ուրզանայի բարերարը վերջինս լիներ, Մուսասիրում նրա արձանը կլիներ։*

[3] *Այս Սարդուրին իսկական Սարդուրի թագավորն է՝ Ռուսայի նախորդը։ Լեհման-Հաուպտի հակառակ կարծիքը հիմնված է այն փաստի վրա, որ նա թագավոր չի կոչված։ Բայց Ռուսան նույնպես այդ արձանագրության մեջ չի հարգված թագավորի տիտղոսով։*



13 374

ների միջև։ Սարգոնը հասել էր այնպիսի մի վայր, ուր տեղավորված էր թագավորական ընտանիքի կալվածքներից մեկը։ Արևելքում, բոլոր դարաշրջաններում, թագավորները անձնական տիրույթներ ունեին. Բյուզանդիայում նույնպես կայսրերը ընդարձակ տիրույթներ ունեին։ Հետաքրքրական է նշել, որ Հայ Արշակունիների ժամանակ ևս այն շրջանը, ուր գտնվում էին Արբուն և Րիարը՝ Բերկրիի և Աղիովտի մարզը Արճեշում, հատկացված էր թագավորական տան իշխանների բնակության համար[1]։

Ռուսայի կամ նրա հոր մականունը՝ Ուեդիպրի, հիշեցնում է Լուտիպրի, առաջին Սարդուրիի հոր անունը։ Uedi և lutu բառերը նշանակում են «կին», իսկ ipri-ն թվում է, թե euri-ի (տեր) հին ձևն է։ Լուտիպրի և Ուեդիպրի մականունները նշանակում են՝ նա որի տերը տիկինն (աստվածուհին) է, այլ կերպ ասած՝ «աստվածուհու հովանավորյալ»։ Եթե Ուեդիպրին Ռուսայի մականունը կամ երկրորդ անունն է, կարելի է ընդունել, որ Լուտիպրին էլ Արամեի մականունն է և, հետևաբար, Սարդուրի I-ը Արամեի որդին է[2]։ Համենայն դեպս, Ուեդիպրին կապ չունի այն հարցի հետ, որը մեր վեճի առարկան է։

Ռուսային Իշպուինիի որդի Սարդուրիի շառավիղը համարելը հետաքրքիր ենթադրություն կլիներ, եթե այդ անձնավորության գոյությունը կասկածելի չլիներ։ Իշպուինին իր արձանագրություններում հիշատակում է իր որդի Մենուային և այս վերջինի որդի Ինուշպուային։ Եթե նա Սարդուրի անունով որդի ունենար և եթե նրան Մուսասիրի կառավարիչ նշանակած լիներ, ինչպես ընդունում է Լեհման-Հաուպտը, նրա անունն անշուշտ հիշատակած կլիներ՝ եթե ոչ իր արձանագրություններում, գոնե Կելիշինի կոթողում։ Հարց է ծագում, արդյոք Սարդուրիի որդի Իշպուինիի մասին չէ՞ խոսքը, որը գրչի սխալով Իշպուինիի որդի Սարդուրի է դարձել։ Նույն գիտնականն այդ ենթադրությունն էլ է արել, բայց իզուր է այն լքել։ Իշպուինին, որ գրավել էր Մուսասիրը, արժանի էր այդ քաղաքի պալատում արձան ունենալու Արգիշտիի և Ռուսայի կողքին։

Ռուսան մահացավ 713 թ., կիմմերների դեմ մղած պատերազմում։ Նրան հաջորդեց Արգիշտին։ Սա նրա որդին է, ուրարտացիների Արգիշտի Ռուսախինին։ Ասորեստանցիները նրա անունը հիշատակում են 707 թվականին։ Ռուսան, մոտավորապես 678 թվականին դաշնակցելով իր նախկին թշնամի կիմմերների հետ, հարձակվում է Ասորեստանի վրա։ Այսպիսով կարելի է ընդունել, որ նրա նախորդ Արգիշտին թագավորել էր շուրջ 714—680 թվականներին։

---

[1] Մովսես Խորենացի, II, 61։

[2] Ռուսա II-ը կոչվում է այլ կերպ՝ Iaia և երրորդ անուն էլ ուներ, որը տեքստում չնջվել է։ I. A. Kundtzon, Gebete an den Sonnengott, B. II, № 48, էջ 149։

*Ռուսա Արգիշտիխինին դեռևս գահակալում էր 655 թ., քանի որ նա այդ ժամանակ դեսպան է ուղարկել Ասորեստանի թագավոր Աշուրբանիպալի (668—626) մոտ։ Մեկ ուրիշ ուրարտական դեսպան նույն թագավորին ներկայացավ 646 թ.։ Նա ուղարկված էր Սարդուրի թագավորի կողմից, հավանաբար, որպեսզի ասուրական արքունիքին հայտներ Սարդուրիի գահակալության մասին և վստահեցներ նոր առաջնորդի՝ Ասորեստանի հանդեպ ունեցած բարեկամության մեջ։ Հետևաբար, Ռուսա Արգիշտիխինին գահի վրա եղել է 680—646 թվականներին։*

*Ասորեստանցիները դրանից հետո այլևս չեն հիշատակում Ուրարտուն, բացի 609 թվականից, երբ Ուրարտուի անունը նշված է այն պահին, երբ Ասորեստանն իր վերջին շունչն էր փչում՝ Բաբելոնի թագավորի հարվածների տակ։ Ուրարտուի հիշատակությունն այս պահին ցույց է տալիս, որ Ուրարտուն այդ թվականին դեռևս կանգուն էր։*

*Ուրարտական մինչ այժմ հայտնի վավերագրերում Սարդուրին չի հիշատակված։ Վերջին թագավորը Ռուսա Էրիմենախինին է։ Ռուսայի հայրը՝ Էրիմենան, որպես թագավոր հայտնի չէ, եթե, իհարկե, դա միևնույն Սարդուրին չէ։ Որքա՞ն ժամանակ է իշխել Սարդուրին։ Այդ մասին ստույգ տվյալներ չկան։ Եթե ընդունենք, որ նա հավատարիմ է մնացել Ասորեստանի հետ բարեկամությանը, իսկ դա հավանական է, ապա նա չի կարող լինել այն թագավորը, որը լքել է ճակատը, անցել Ասորեստանի թշնամիների կողմը և այդպիսով 609 թվականին փրկել իր թագավորությունը։ Եթե մենք Էրիմենային առայժմ մի կողմ թողնենք, մինչև որ ապացույց ստացվի այն մասին, թե նա իշխել է կամ, գուցե, նույնանում է Սարդուրիի հետ, ապա պետք է Ռուսա Էրիմենախինիին ընդունենք որպես Սարդուրիի հաջորդը։ Այստեղից հետևում է, որ Սարդուրին իշխել է 646—610 թթ., իսկ Ռուսան՝ 609 թվականից մինչև Ուրարտուի կայսրության վերջը՝ 585 թվականի դեպքերի հորձանքում նրա անհետանալը։*

*Այսպիսով, մենք կունենանք ուրարտական իշխողների վերանայված հետևյալ ցանկը.*

| | | |
|---|---|---|
| 1. | *Արամե Լուտիպրի* | *880—844* |
| 2. | *Սարդուրի* I | *844—828* |
| 3. | *Իշպուինի* | *828—785* |
| 4. | *Մենուա* | |
| 5. | *Արգիշտի* I | *785—753 (755)* |
| 6. | *Սարդուրի* II | *753—735* |
| 7. | *Ռուսա* I | *735—713* |
| 8. | *Արգիշտի* II | *713—680* |
| 9. | *Ռուսա* II | *680—646* |

10. *Սարդուրի* III *646—610*
*Էրիմենա*
11. *Ռուսա* III *610—585*[1]

## 3. ՈՒՐԱՐՏԱԿԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՈՒՄԸ

*Ուրարտական թագավորների թողած գրավոր հուշարձանները հարուստ չեն ո՛չ իրենց նյութով և ոչ էլ գրական առումով։ Բավական է մի հայացք նետել արձանագրությունների վերաբերյալ մեր տված ամփոփման վրա՝ համոզվելու համար, որ նրանք վերաբերում են բացառապես ռազմական գործողություններին և հանրօգուտ կառուցումներին։*

*Գրական ձևերը շատ միօրինակ են։ Իշպուինիի և Մենուայի օրոք՝ գրականության սկզբնավորման պահին ընդունված ոճը օրինակ է ծառայում հետագայի համար և շարունակում է գոյություն ունենալ մինչև պետության վախճանը։ Դրանից էլ բխում է շարադրանքի միապաղաղությունը, կրկնվում են նույն նախադասությունները, նույն անեծքները, նույն արտահայտությունները համարյա լուսանկարչական նմանությամբ։ Եթե կան տարբերություններ՝ դրանք մեծ մասամբ վերաբերում են շարադրանքի որոշ տարրերի կարգի փոփոխմանը կամ նրանց վերացմանը՝ շարադրանքը ավելի հակիրճ դարձնելու նպատակով։*

*Այնուհանդերձ, ուրարտական գրականությունը հնարավորություն է ընձեռում հետևելու երկրի զարգացմանը, նրա տերիտորիայի աճմանը և մշակույթի բնագավառում կատարած առաջադիմությանը։*

*Ռազմական նկարագրությունները ընդհանրապես ներկայացված են մի բնորոշ եղանակով. դրանք շատ հաճախ սկսվում են մի տեսակ նախաբանով, ուր արձանագրության տերը, որը միշտ թագավորն է, հայտարարում է իր անունը և անեծք կարդում նրանց, ովքեր կհամարձակվեն փչացնել արձանագրությունը։ Պատահում է նաև, որ այդ բառերը պատմությանը չեն նախորդում, այլ ծառայում են որպես վերջաբան։ Ապա սա-*

[1] *Լեհման-Հաուպտի կողմից* CICH-*ի մեջ բերված ցուցակը մի քանի կետերում տարբերվում է մեր ցուցակից։ Այստեղ մեջ ենք բերում այն.*

| | |
|---|---|
| *Լուտիպրիս* | |
| *Սարդուրի* I | |
| *Սարդուրի* II | |
| *Իշպուինիս* | *817* |
| *Մենուաս* | *810—785* |
| *Արգիշտիս* I | *785—760 (765)* |
| *Սարդուրի* III | *760—733* |
| *Ռուսաս* I | *733—714* |
| *Արգիշտիս* II | *714—680* |
| *Ռուսաս* II | *680—645 (640)* |
| *Սարդուրի* IV | *645—625* |
| *Էրիմենաս* | *625—605* |
| *Ռուսաս* III | *605—585* |

պարեզ է գալիս Խալդի աստվածը որպես ծրագրված արշավանքի ոգևորող. «Խալդին ուժեղ է, նրա բանակն ուժեղ է, Խալդին նվաճում է թշնամի երկրները, նա ճանապարհ է բաց անում՝ ռազմատենչ թագավորին այնտեղ առաջնորդելու համար։ Վերջինս Խալդիի կողմից առաջնորդվելով՝ առաջ է ընթանում, գրավում կամ ավերակների է վերածում հարձակման ենթարկված տերիտորիաները»։

Շարադրությունը վերջանում է թշնամուն պատճառած կորուստների ամփոփումով՝ սպանված կամ կենդանի բռնված մարդկանցով, ինչպես նաև ավարով, որը բաղկանում է տարագրված ժողովրդից, բռնագրավված անասուններից և, պատեհության դեպքում, թանկագին մետաղներից։

Դա ռազմական նկարագրությունների սովորական անփոփոխ ձևն է։ Զինվորական գործողությունները շատ տեսակետով հետաքրքրական են՝ առաջին հերթին որպես երկրի արտաքին քաղաքականության, նրա ընդարձակման և երկրի սահմաններից դուրս նրա տերիտորիալ ձգտումների, հավակնությունների մասին տեղեկությունների աղբյուր։

Ճիշտ է, թագավորական մեծ տարեգրությունները փորագրված լինելով մայրաքաղաքում՝ Տուշպայում, դժվար է կողմնորոշվել արշավանքների նպատակների ու դրդապատճառների վերաբերյալ և համարյա անհնար՝ այնտեղ նշված բազմաթիվ աշխարհագրական անունները տեղադրել։ Սակայն գոյություն ունեն և տեղական արձանագրություններ, որոնք ցույց են տալիս ուրարտացիների առաջխաղացման փուլերը՝ տարբեր ուղղություններով։ Եվ, վերջապես, Ուրարտուի շրջակայքում գտնված մի շարք արձանագրություններ հնարավորություն են տալիս ճշգրտելու այն սահմանները, ուր հասել են ուրարտացի վեհապետների բանակները։

Արդեն Իշպուինին և նրա որդի Մենուան սկիզբ դրին մի քաղաքականության, որին հետևելու էին նրանց հաջորդները։ Դա առաջին հերթին պետության ապահովության ամրապնդումն էր միշտ սպառնացող հարևան Ասորեստանի դեմ։ Այդ ուղղությամբ անհրաժեշտ էր անվտանգ դարձնել երկու թևերը և տեր դառնալ այն երկու անցքերին, որոնք թշնամուն առաջնորդում էին դեպի Ուրարտու՝ մեկը Զաբի հովտով, մյուսը Տիգրիսի ակունքներով։

Թիգլաթպալասար I-ը Տիգրիսի ակունքների անցքով է, որ ներխուժեց Ուրարտու, որն այդ ժամանակ կոչվում էր Նաիրի։ Սալմանասար III-ը նույն ճանապարհն ընտրեց, որպեսզի մահ ու ավեր սփռի մինչև Արամեի մայրաքաղաք Արզաշկունը։ Նույն թագավորն Ուրարտու մտավ և Զաբի հովտով։

Զաբի ճանապարհը կտրելու համար Մենուան իր հոր պատվերով գրավեց Մուսասիր երկիրը։ Այդ երկիրը տարածվում էր մինչև Զագրոսի արևմտյան լանջերը, համարյա մինչև Ռովանդուզ։ Ուրարտացիներն այն

կոչում էին Արդինի՝ այն աստվածության անունով, որի՝ Ուրարտուի թագավորների կողմից շատ հարգված սրբավայրը գտնվում էր այդ երկրում։ Մուսասիրի գրավումը հաստատվում է Կելիշինի (№ 12) երկլեզվյան կոթողով։ Ուրարտուն կարողացավ Մուսասիրն իր գերիշխանության տակ պահել մինչև Սարգոնի ժամանակ, ինչպես վկայում է Թոփզաուեի երկլեզվյան արձանագրությունը (№ 146)։

Իհարկե, Մուսասիրը չէր վերածվել ուրարտական նահանգի։ Առաջվա նման մնացել էր թագավորություն, բայց դարձել Ուրարտուի ավատառու կամ, ըստ արդի տերմինաբանության՝ մտել Ուրարտուի թագավորների հովանավորության տակ։ 713 թվականին նրա թագավորն Ուրզանան էր, որը Ռուսայի հովանավորյալն էր։

Մենուան անցավ Զագրոսի լեռնաշղթան և գրավեց Մանա երկիրը։ Այդպես էր կոչվում Ուրմիա լճի հարավում, Զագրոսի և Ջաղաթու գետի միջև գտնվող տերիտորիան, որը Ուշնու, Միանդաբ և Սակիզ քաղաքների շրջանն էր։ Այս իրողությունը հաստատում է Մենուայի այն արձանագրությունը (№ 20, գտնված Տաշ-թեփեում, լճի ափից քիչ հեռու), ուր նա հայտնում է Մեիշտա քաղաքի առման մասին։

Մանան, որպես միջակցության երկրամաս, շատ կարևոր դեր խաղաց ասուրա-ուրարտական հարաբերությունների մեջ։ Շամշի-Ադադ V-ը, Ադադնիրարի III-ը և, մանավանդ, Սալմանասար IV-ը փորձեցին այն անջատել Ուրարտուից, բայց չկարողացան։ Արգիշտին եռ մղեց վերջինի փորձերը և Մանայի թագավոր Ազային բանտարկեց, անշուշտ, Ասորեստանի կողմնակից և համակիր լինելու պատճառով։ Պայքարը վերանորոգվեց Սարգոնի II-ի օրով և միայն Ռուսայի թագավորության վերջում Սարգոնին հաջողվեց Մանան դուրս բերել Ուրարտուի գերիշխանությունից։

713 թվականին Սարգոնը Մանա երկրի կողմից, այսինքն՝ Փոքր Զաբի հովտով, թափանցեց Ուրարտու, այդպիսով շրջանցեց Մուսասիրի ճանապարհը, որն ամրացված էր ուրարտացիների կողմից։ Այսպիսով բացահայտվում է Մանայի ռազմագիտական կարևորությունը և այն կատաղի պայքարի իմաստը, որի առարկա էր այս շրջանը։ Նշենք, որ երկրի համակրանքը ավելի շատ Ուրարտուի կողմն էր, քան Ասորեստանի։ Սա կարելի է եզրակացնել նրա Իրանզու, Ազա, Ուլլուսունու և Ախշերի թագավորների պատմությունից։

Մենուան նույն նպատակն էր հետապնդում իր պետության մյուս թևում՝ Տիգրիսի ակունքների շրջանում։ Նա անցավ Հայկական Տավրոսը և գրավեց այդ շրջանը, որ այդ ժամանակաշրջանում կոչվում էր Ուլիբա։ Այդ երկրի գրավումը հիշատակված է նույն վավերագրում (№ 19), ուր խոսվում է Մանայի մասին։ Գրավված երկրների թվում նշվում են՝ ᵛQa-li--bi-li-a(-ni), ᵛAr-pu-i-a(-ni), ᴾU-su-su-a-ni(-ni), ᵛḪu-ul-me-e-ru-u

ni), ᵖMar-ma-a(-ni) ᵛE-ru-u(-ni), ᵖU-li-ba-a(-ni), ᵛI-ša-la-a(-ni), (Qu-me-nu-u(-ni), ᵖAšu-ri-i(-ni)։

*Վերջավորությունը* (-ni), *որը հոլովական է, մենք վերցրել ենք փակագծերի մեջ։ Ուլիբան, անտարակույս, Ուլլիբա կամ Ուլլուբու երկիրն է, որը հիշատակում են ասորեստանյան արձանագրությունները և որը սրամըտորեն նույնացրել են արդի Խուլփի հետ։ Այդպես էր կոչվում, նախ, այն գյուղը, որը գտնվում է Նիմֆիուս=Բատմանի վտակներից մեկի ակունքի վրա։ Այդ վտակը կրում է նույն Խուլփ անունը։ Այդպես է կոչվում նաև նրա հովիտը, որը կազմում է Բիթլիսի վիլայեթը։*

*Խուլիմերուն ճանաչելի է բյուզանդական* Χλομαρῶν-*ի և հայկական խաղամեկի մեջ։ Դրա ասուրական ձևն է՝ Կուլլիմերի, նրա համապատասխան հայերենը՝ Ք(ու)ղիմար, որը Նփրեսի կամ Նփրկերտի դիմացի շրջանն է, այսինքն՝ Միյաֆարկինը կամ Մարտիրոպոլիսը, Բատմանի մյուս ափին՝ Խարզանի շրջանում։ Ք(ու)ղիմարն այլ կերպ կոչվում էր, հավանաբար թրաներեն,* Kutemran, *որը հիշեցնում է* Kalamtran *անունով գյուղը Խարզանում։*

*Կարելի է փորձել* Qali-bilia-*ն մոտեցնել Բիլ-Կալենին՝ Զիբենե-սուի ակունքներին գտնվող նշանավոր* Κλεισοῦρα-*ի մոտ, և սա կլինի տառերի սովորական տեղափոխություն։ Ուսուսանի անունը նույն կարգի փոփոխությամբ և ձայնավոր սկզբնատառի անկումից հետո (հմմտ. Ուպպումե՝ դարձած Պումե, Ֆում), կարող էր նույնպես հանգել Սանասունի, որի միաձուլված ձևը՝ Սասուն, կրում է Խուլփի հարակից մարզը։*

Išala-*ն շատ նման է ասուրական Իզալային կամ Իծալային և հնարավոր չէ նրանից բաժանել։* Qumenu-*ն ուրիշ տեղ հայտնի չէ, բայց Մ(ե)հերի Դռան ուրարտական պանթեոնում կա նրա աստվածը, և դա գալիս է հաստատելու, որ այդ վայրը Մենուայի կողմից գրավված է եղել։ Գուցե դա Ջուղիի մարզում գտնվող Քումանին է։ Մենուան, ուրեմն, իր բանակը հասցրել էր մինչև Կաշիարիի և Ջուղիի լեռնաշղթան։*

*Աշուրնասիրպալն արդեն նվաճել էր Իզալան և գրավել, ի միջի այլոց, Ուլլուբան, Արբակին և Նիրբեն։ Վերջինը Հինի քաղաքի շրջանն էր զբաղեցնում. այդ քաղաքի վերևում, Զիբենե-սուի երկայնքին գտնվող լեռները մինչև այսօր էլ Նիրիբ են կոչվում, թուրքերեն՝ Նիրիբ-դաղլար։ Արբակին նույնացվում է բյուզանդական* Ἀριβάχων-*ի հետ, որը բերդաքաղաք էր Արզանենեում։ Ուլլուբայի և Իզալայի միջև գտնվող բոլոր երկրները հենց այդ ժամանակից Ասորեստանի մի նահանգն էին կազմում։ Մենուային հաջողվեց Ասորեստանից խլել այդ նահանգը։ Էպոնիմների ցուցակը Սալմանասար* III-*ի երեսունմեկերորդ տարում, Դիու-մուկին-ախի էպոնիմատում, արշավանք է նշում Ուլլուբայի դեմ։ Դա 828 թվականին Մենուայի տարած հաղթանակի տարին է։ Այդ նույն տարիներին ուրարտա-*

կան թագավորը հաղթանակ է տանում Մուսասիրում, իսկ հետևյալ տարին՝ Մանայում։ Ուրարտուն, որ Սալմանասարի կողմից արշավանքի էր ենթարկվել, իր վրեժն է լուծում և հաղթական կերպով հարձակվում Ասորեստանի երկու թևերի վրա։ Անշուշտ, Ուրարտուի հաջողությունն էր պատճառը, որ քանյոթ քաղաքներ ապստամբեցին Սալմանասարի դեմ։

Ասորեստանը ի վիճակի չէր այդ կորուստը դարմանելու, քանի դեռ իշխանության գլուխ չէր անցել Թիգլաթպալասար III-ը։ 739 թվականին այս թագավորը վերագրավում է «Նալ լեռան ստորոտում Ուլլուբան և Խաբխին» և նոր մայրաքաղաքով մի նահանգ ստեղծում։ Իր հիմնած այդ մայրաքաղաքը նա անվանում է Aššuriqiša (Աշուրը նվեր է տվել)։ Դա այն քաղաքն է, որ ավելի ուշ համառոտված կոչվելու է Qiša[1]։

Մի շատ արժեքավոր ցուցմունքի համաձայն, Ուրարտուն սահմանակից էր Ասորեստանին Թուշխան նահանգի կողմից։ Ուրեմն, Ասորեստանը նորից կորցրել էր այն տերիտորիաները, որ մեզ հետաքրքրում են։ Նրանք Շուպրիա անունով անկախ պետություն էին կազմել։ Ասարխադդոնը նորից զենք վերցրեց Շուպրիայի դեմ, գրավեց այն և ասուրական երկու նահանգների վերածեց՝ Ուպպումե և Կուլլիմերի։ Իրոք, Ասորեստանի տիրապետությունների մի ցուցակում Մարդուկ-էրիբա կառավարչի ղեկավարության ներքո նշված է Պումե=Ուպպումե նահանգը և Բելիդդին[2] կառավարչի ղեկավարության ներքո՝ Կուլմերա (=Կուլլիմերի) նահանգը։ Սակայն մեկ ուրիշ ցուցակում նրանք չկան, որն այլ կերպ չի կարելի բացատրել, եթե ոչ այն իրողությամբ, որ Ասորեստանը նորից կորցրել էր դրանք։ Աշուրբանիպալի օրով, մոտավորապես 658 թվականին, ուրարտական նահանգի ղեկավար Անդարիան փորձեց Ուպպումեի և Կուլլիմերիի տեր դառնալ, բայց Կուլլիմերիի դիմադրության պատճառով գործը ձախողվեց։

Ուպպումեն, այժմյան Ֆումը, Իլիջայի՝ թրքական Իլիջայի կազայի կենտրոնի մոտ է գտնվում։ Կուլլիմերին Խարզանի կազայումն էր։ Շուպրիա պետությունը բաղկացած էր երեք գավառներից՝ Ուպպումե=Իլիջայի կազա, Կուլլիմերի=Խարզանի կազա և միջանկյալ գավառը՝ Սելիվանի կազա կամ Մարտիրոպոլիս, հին Հայաստանի Նփրկերտ գավառը։

Ուլլուբան կամ Խուլպի կազան Շուպրիայի մասը չէր կազմում. նա մընում էր Ուսուսուանի(=Սանասուն, կամ Սասունի կազա) հետ միասին Ուրարտուի իշխանության տակ, ինչպես մեր օրերում այս երկու կազա-

[1] Աշխարհացույցը, էջ 37, հիշատակում է Արզանեննեում Kiš և Սուկարբա, որոնք գտնվում են նույն շրջանում, ուր և Կուլլիմերին։

[2] Johns, Assyrian Deeds and Documents, 1901, էջ 583. Forrer, Die Provinzeinteilung, էջ 87։

ները՝ Խուլպն ու Սասունը, Մշո (Մուշի) սանջակի մեջ են մտնում, մինչդեռ Իլիջան ու Սելիվանը՝ Դիարբեքիրի սանջակի։ Սա սկիզբն է այդ ամբողջ տերիտորիայի այսպես ասած ապագա բաժանման երկու նահանգների՝ Ծոփք և Արզանենե, սահման ունենալով Նիմֆիուս=Բատման գետը։

Ըստ № 19 արձանագրության՝ Մենուան գրավել էր նաև Alzini(-ni)-ն։ Դա հայկական Աղձնի-քի ամենահին հիշատակումն է։ Այդ շրջանում Ալզինին ընդգրկում էր Բիթլիսի նահանգը, որտեղից էլ այդ անունը տարածվեց Բատմանից արևելք ընկած ամբողջ տերիտորիայի վրա։

Արևմուտքում Ուրարտուի սահմանը ձգվում էր մինչև Եփրատ։ Մենուան հպատակեցնում է միջանկյալ պետությունները։ Ուլիբայի նվաճումը ենթադրել է տալիս նաև Մշո դաշտի գրավումը։ Թրմերդի № 32 արձանագրությունը վկայում է, որ գրավվել են նաև Քուլմե և Ուրշա քաղաքները, ինչպես և Ur-me-ni-u-ḫi-ni երկիրը, որի անվան մեջ ցանկանում են տեսնել հայերի ցեղանունը։ Համաձայն Պալուի № 31 արձանագրության, Մենուան նվաճում է Շեբետերիա, Խուզանա քաղաքները և Ծուպա(նի) երկրի տերիտորիան։ Շեբետերիան, հավանական է, Պալուի հին անունն է, Խուզանան Խուզանն է, իսկ Ծուպան Սոֆենեն է՝ հայկական Ծոփքը։ Մենուան այնտեղ խոսում է նաև Խաթթինի երկրի և Մելիտալխիի թագավորի մասին՝ Սուլի անունով, որն իր հպատակությունն է հայտնում։ Այստեղ Խաթինին նշանակում է Մելիտենեի մարզը և առհասարակ Եփրատից այն կողմ գտնվող երկրները։

Խոսքն այստեղ ավելի շուտ ավերումների, քանդումների մասին է, քան թե գրավման, որովհետև Մենուայի հաջորդը՝ Արգիշտին, նորից է արշավում Ծուպա և Խաթե երկրների դեմ։ Այդ ժամանակ Խաթեի թագավորը Խիլարուադան էր։ Մելիտայի բնակչությունը տարագրվում է։ Պարզվում է, որ Խաթեն Մելիտենեի մարզն է։ Արգիշտին հիշատակում է Մելա(ինի) գետը, որը Մելասն է, ինչպես նաև Նիրիբա երկիրը, որի իշխանն է Թուատեխինին։ Արդյոք սա վերոհիշյալ Նիրիբ-դաղլարի Նիրբե՞ն է, թե Մելիտենեի մարզում գտնվող համանուն ուրիշ բնակավայր, դա մնում է անորոշ (№ 111—112)։

Սարդուրի II-ը շարունակում է պայքարը Խիլարուադայի դեմ։ Իզոլիի № 133 իր արձանագրության մեջ նա նրան կոչում է Շախուխի՝ «Շախուի որդի» և Մելիտե-ալխիի թագավոր։ Արգիշտին նրան Խաթեի թագավոր էր ընդունում, իսկ այստեղ նա հանդես է գալիս որպես Մելիտենեի շրջանի թագավոր. ևս մի ապացույց այն իրողության, որ Խաթեն այս դեպքում նույնացվում է Մելիտենեի հետ։ Սարդուրին նվաճում է նաև Kauri երկիրը, Tumeiški քաղաքը, Կարնիշի երկիրը և բազմաթիվ այլ տեղեր, ներառյալ Խիլարուադայի թագավորական քաղաք Նիսին։ Հաղթվելուց հետո Խիլարուադան հանձն է առնում հարկ վճարել։

Մենք կարծում ենք, որ Թումեիշկին Եփրատի վրա գտնվող Թոմիսան է, որը Մոփքի թագավորության պատմության մեջ լավ հայտնի է։ Կաուրի երկիրը այլ բան չէ, եթե ոչ Κλίμα Γαριν῀ῆς-ը՝ հայկական Գավրեքը, Չորրորդ Հայքի գավառներից մեկը, որը գտնվում էր Արսանիասի գետաբերանի վրա։ Կարնիշին հիշեցնում է Պետինգերյան քարտեզի Corne-ը, որը Claudia-ի շրջանում գտնվող հռոմեական մի կայան էր։

Սարդուրի II-ը շարունակում է իր հաղթական արշավը և թափանցում Կումմուխի՝ Կոմմագենե, խլում է նրա երկու քաղաքները՝ Ուիտանին (Կիշտա՞ն) և Խալպան, հարկատու է դարձնում Գուրգում (Մարաշ) երկիրը և Սամալլու երկիրը՝ Ամանոսի Զինջիրլու մարզը։ Սարդուրին այդ բոլոր երկրների հետ կոալիցիա է կազմում ու 743 թվականին մարտի հրավիրում Ասորեստանի թագավոր Թիգլաթպալասարին։ Կռիվը տեղի է ունենում Եփրատի ափին, Խալպայի և Կիշտանի մոտ, Ռում-կալեից քիչ հեռու, բայց Սարդուրին հաղթվում է և կորցնում Եփրատի աջ ափում ձեռք բերած բոլոր քաղաքական ու տերիտորիալ առավելությունները։

Հյուսիսային ճակատում այնպիսի պետություն չկար, որ համարձակվեր չափվել Ուրարտուի հետ, բայց կար ռազմատենչ ցեղերի մի բազմություն, որոնք քաղաքական խմբավորումներ էին կազմում։ Նրանք պատրաստ էին զենքը ձեռքին պաշտպանելու իրենց ազատությունը։

Սակայն Ուրարտուն որոշել էր իր ձգտումներն իրագործել՝ լայնացնել սահմանները, նվաճելով այն պետությունները, որոնք կուզենային հյուսիսի ուղղությամբ նրա ընդարձակման ճանապարհը փակել։

Այդ նպատակի իրագործման համար սկսված պատերազմը երկար տևեց։ Այդ համառ պայքարի իրադարձությունները մեծ տեղ են բռնում ուրարտական վավերագրերում, որտեղ հիշատակված են արշավանքների նպատակակետ հանդիսացած բազմաթիվ երկրներ, որոնք, դժբախտաբար, հնարավոր չէ ստույգ կերպով տեղորոշել։ Անբավարար վերծանվող ռազմական նկարագրությունների քննությունը, այսուհանդերձ, որոշ ըմբռնման է հանգեցնում, և դա թույլ է տալիս, մի շարք հենակետերի օգնությամբ, ուրվագծել Ուրարտուի բանակների առաջխաղացման սահմանները, եթե ոչ այն տերիտորիաները, որոնք վերջնական կերպով միացվել էին Ուրարտուին։

Իշպուինիից առաջ Ուրարտուն տարածվում էր դեպի հյուսիս՝ մինչև Արսանիասի ակունքների շրջանը և այսպիսով ընդգրկում հին Հայաստանի Բագրևանդ գավառը, այսօրվա Ալաշկերտը։ Այդ մարզը Արաքսի հովտից բաժանող լեռնաշղթան Ուրարտուի բնական սահմանն էր կազմում Իշպուինիի ժամանակ իսկ։

Ճիշտ է, այդ թագավորը ասպատակություններ է կատարել Արաքսից այն կողմ, ինչպես մենք կտեսնենք հետագայում, բայց ոչնչից չի երևում,

*որ նա որոշ տերիտորիա ձեռք բերած լինի ավարառության ենթարկված այդ երկրներում։ Նույնիսկ թվում է, որ Բագրևանդում Իշպուինիի դրությունը դեռևս այնքան էլ կայուն չէր, եթե դատենք Թոփրակ-կալայի № 28 արձանագրության տվյալներով, ուր խոսքը Մենուայի՝ Անաշի քաղաքը գալու մասին է։*

*Անաշիում ճանաչելի է Ալաշկերտի անունը, նույն գավառի կենտրոնը, որը հայերը կոչում են Վաղարշակերտ, իսկ թուրքերը՝ Թոփրակ-կալա։ Արձանագրությունը հատվածային լինելու պատճառով հնարավոր չէ ճշգրտել, թե խոսքը Անաշիի նվաճմա՞ն, թե որևէ կառույցի մասին է։*

*Ինչևիցե, Մենուան է, որ անցնում է Բագրևանդի լեռները և Արաքսի հովտում լեռների երկու ծայրերում գրավում երկու կետ՝ արևելքում (№ 21) Տաշբուռունի շրջանը և արևմուտքում (№ 27) Դելիբաբայի շրջանը։ Առաջին շրջանը կոչվում էր* Luḫiuni *և պատկանում Էրիկուախի(նի) դինաստիային։ Էրիկուախի նշանակում է «Էրիկուայի որդի»։ Այս անձնանունը հիշեցնում է* Orkovi՝ *նույն շրջանում մի գյուղ, որը ծանոթ է առնվազն* V *դարից ի վեր*[1]*։ Օրկովին (Օրկով գյուղ) գուցե իշխան Էրիկուայի նստավայրն էր։*

*Դելիբաբայի շրջանում Յազլի-տաշի արձանագրությունը խոսում է Մենուայի արշավանքի մասին* Diaueḫi *երկրի դեմ, որի մայրաքաղաքը* Šašilu-*ն էր, ինչպես նաև* Šešetini *երկրի մի քանի այլ քաղաքների դեմ։ Դիաուեխիի թագավորը, որը երկու ուրիշ թագավորների՝* Baltulḫi-*ի և* Ḫaldiriulḫi *քաղաքի թագավորի հետ իր հպատակությունը հայտնեց, կոչվում էր* Utupurši(ni)*։*

*Դիաուեխին (կամ Դիաու-խին) հայրանվանական կամ դինաստիայի անուն է և նշանակում է «Դիաուի որդի», որի շառավիղներից մեկն էր Ուտուպուրշինին։ Դիաուեխիի, Բալտուլխիի և Խալդիրիուլխիի աշխարհագրական դիրքը պետք է դեռևս հաստատել ուրիշ տվյալներով։ Յազլի-տաշի արձանագրությունն այս նյութի կապակցությամբ ոչ մի նշան ցույց չի տալիս։ Այնուհանդերձ, նրա տեղը մեզ կողմնորոշում է դեպի Արաքս գետի մյուս ափը։ Յազլի-տաշի շրջանը արդյո՞ք այդ երկրների մասն էր կազմում։ Հնարավոր է։ Սակայն պնդել այդ դեռևս չենք կարող։ Յազլի-տաշը կարող էր ուրարտական սահմանային կայան լինել, ուր հաղթական թագավորը, արշավանքից վերադառնալիս, ուզեցել է իր անունը անմահացնել իր կատարած սխրագործություններով։ Իրոք, կան տեղական արձանագրություններ, որտեղ պատմվում են Ուրարտուի սահմաններից դուրս պատահած իրադարձությունները։*

---

[1] Ղազար Փարպեցի, *էջ 94, հր. էջմիածին։*

*Դեուխի հոր թագավորության ժամանակ Մենուան հպատակեցրել էր հետևյալ երեք թագավորներին՝ Ուիտերուխի (կամ Ուտերուխի), Լուշա և Կաթարզա, ինչպես նաև «Էթիուխինի երկրի թագավորական բերդերը» (№ 13)։ Քյուսնենցի (№ 14) արձանագրության մեջ Ուիտերուխի, Լուշա և Կաթարզա թագավորների մասին է խոսվում, առանց Էթիուխինիի մասին հիշատակելու։ Վերոհիշյալ երեք անձնավորություններն արդյոք Էթիուխինի երկրո՞ւմ էին իշխում, թե այս վերջին երկիրը տարբեր էր երեք թագավորություններից։ Հարցը պարզ չէ։ Էթիուխինին նույնպես դինաստիական անուն է, Էթիուխինի՝ «Էթիուի որդի»։ Էթիուխինի աշխարհագրական տերմինը կարելի է նաև վերլուծել որպես Էթիուխի-ինի՝ «Էթիուխի ընտանիքի երկիր»։ Այս երկիրը կոչվում է նաև Էթիունի՝ Էթիու-ինի-ից՝ «Էթիուի երկիր»։*

*Այսպիսով, գոյություն ուներ Դիաուեխի անունով մի դինաստիա և մեկ ուրիշ՝ Էթիուխի անունով։ Ու(ի)տերուխի, Լուշա և Կաթարզա թագավորներն իրենց տիրապետություններն ունեին կարծես Դիաուեխի և Էթիուխի պետությունների սահմաններում։ Երեք դինաստիաները հիշատակված են երբեմն Դիաուեխիի և երբեմն Էթիուխիի կամ Էթիունիի հետ։ Նրանց տիրապետությունները կարծես Դիաուեխիին ավելի մոտ են, քան Էթիուխիին։*

*Այդ երկրները մնալու էին Արգիշտիի ռազմական արշավանքների գլխավոր նպատակակետերը և մասամբ՝ նաև Սարդուրիի։*

*Արգիշտին անցնում է Արաքսը և նվաճում Լուխիունիի Տաշբուռունի դիմաց գտնվող ձախ ափի շրջանը։ Այնտեղ հիմնադրում է մի քաղաք և կոչում Արգիշտիխինի(լի), ապագա Արմավիրի նախատիպարը (№ 127)։*

*Դելիբաբայի կողմից նա նույնպես անցնում է Արաքսը և տիրանում Սարիղամիշի մարզին։ Նա հայտարարում է, որ գրավել է Ախուրիանի քաղաքը, որը պատկանում էր ինչ-որ իշխան Աշտուախինիին, ինչպես նաև գրավում է Էթիունի երկիրը, որի թագավորն էր Ուդուրին (№ 19)։ Արփա գետը, որի մի վտակի ակունքներն սկսվում են Սարիղամիշի լեռներից, հին ժամանակներից կոչվում է Ախուրյան — այս զուգադիպությունը չի կարող և չպետք է ուշադրությունից վրիպի։*

*Էլարի (№ 15) արձանագրությունը խոսում է Էթիունիի և Էլուանի երկրի մասին, որը հավանական է նրա գավառներից մեկն է։ Էթիունին տարածվում էր, ուրեմն, Ախուրյան գետից մինչև Երևանի շրջանը, ուր գտնվում է Էլարը։*

*Արդինին Էթիունիի քաղաքն է, նա հիշատակված է Էրիախի երկրի, Կաթարզա երկրի, Իշկուգուլու երկրի և Ուիտերուխինի երկրի հետ (№ 111, 12)։ Էրիախին և Իշկուգուլուն գտնվում էին Մարմաշենի շրջանում (№ 118)։ Կաթարզան և Ուիտերուխին, այսինքն՝ այս իշխանների տիրապետու-*

թյունները, նույնպես նույն կողմերում էին, ավելի դեպի արևմուտք, Դիաուեխիի սահմանագլուխներում, որովհետև Լուշա, Կաթարզա, Ուիտերուխի, Էրիախինի, Գուլթուլախիխա, Աբու(նի), Իգա(նի) հետևում են Դիաուխի անվանը (№ 112Բ)։ Մեկ ուրիշ արձանագրության մեջ (№ 111,1) Աբու(նի), Իգա(նի) և Մաքալտու՝ Դիաուեխիի դեմ արշավանքի ժամանակ նվաճված երկրներն են, և որովհետև Մաքալտուն գտնվում էր Չըլդըր լճի մոտ՝ ըստ № 143 արձանագրության, ապա պետք է ընդունել, որ Դիաուեխին այդ շրջանից հեռու չէր և որ հաշվի առնելով Յազլի-տաշի արձանագրության մեջ Դիաուեխիի հիշատակումը՝ նա, ուրեմն, տարածվում էր Արաքսից մինչև Չըլդըր, այսինքն՝ զբաղեցնում էր Ղարս գետի ջրերը կամ հին Հայաստանի Վանանդ գավառը։

Արգիշտիի օրով Դիաուեխիի թագավորը նույն Ութուպուրշին էր, որ Մենուայի հակառակորդն եղավ (№ 112Ա), իսկ նրա քաղաքը կամ մայրաքաղաքը Շաշիլուն էր (№ 112Բ), որը ծանոթ է Մենուայի ժամանակից ի վեր (№ 27)։

Արգիշտիի պայքարը Դիաուեխիի դեմ ավելի հաջող ընթացավ, քան թե իր հոր։ Նա գահընկեց արեց Ութուպուրշի թագավորին, նրա պետությունը միացրեց Ուրարտու պետությանը և այնտեղ կառավարիչներ նըշանակեց Շաշկի Արդարակիխինիին և Բալտուլխի Քաբիլու(խինի)ին (112 Բ)։ Դիաուեխիի տերիտորիայից երկու նահանգ ստեղծեց, որն ապացուցում է, թե այն բավական ընդարձակ տարածություն ուներ և, ինչպես Մենուան է որակում, «մի հզոր երկիր» էր, ebani taraie (№ 27)։ Չմոռանանք, որ Արգիշտի թագավորը Օրդակլուի շրջանում (№ 116) Կիեխունի և Իշթամանի քաղաքները գրավելուց հետո հասավ Սևանա լճի ափը։

Սարդուրին Արգիշտիի նման իր բանակն առաջնորդեց միևնույն ուղղությամբ։ Հյուսիսում նա հասավ Չըլդըր լիճը և գրավեց Uḫimeani երկիրը (№ 143)։ Արևելքում նա առաջ խաղաց մինչև Ջաղալու՝ Սևանի հարավային ափը, հպատակեցնելով Arquqini երկիրը (№ 134)։ Արևմուտքում Սարդուրին ստիպված է լինում դիմագրավելու Կուլխի ժողովրդին, որն առաջին անգամ երևան է գալիս պետության հորիզոնում։ Կուլխիները կոլխերն են՝ քաջ հայտնի պոնտական մի ժողովուրդ, Դիաուեխի պետության հետևում ծվարած։ Կուլխի ժողովուրդը շփում չէր ունեցել Ուրարտուի հետ, քանի դեռ Դիաուեխի անկախ պետությունը դիմադրում էր Ուրարտուի ճնշմանը։ Պատվարները խորտակվելուց հետո կուլխիները անմիջական հարևան դարձան Ուրարտու պետությանը և գտնվեցին նույն վիճակում, ինչպես անցյալում Դիաուեխին, այսինքն՝ ենթարկվեցին Ուրարտուի վեհապետների հարձակումներին։

Կուլխիների դեմ արշավելու ժամանակ Սարդուրին ձերբակալում է Խուշալխիի թագավոր Խախային։ Մեկ ուրիշ արշավանքում՝ ուղղված

Կուլխա-ալխի երկրի դեմ, նա գրավում է Իլդամուշա քաղաքը, նվաճում Ուիտերուխի երկիրը և նրանց առաջնորդների փոխարեն նշանակում ուրարտական կառավարիչներ։

Խուշալխին նույնանում է Խուշանիի հետ, ինչպես Կուլխալխին՝ Կուլխիի հետ կամ Մելիտալխին՝ Մելիտայի հետ։ Այս զույգերը և նրանց նմանները նույն երկիրն են ցույց տալիս՝ որոշ երանգով, որը դժվար է գնահատել։ Խուշանին ուրիշ տեղ ևս հիշատակված է (№ 111) Դիաուեխիի հարևան երկրների միջև, իսկ Ուիտերուխին, ինչպես մենք արդեն նշեցինք, Լուշայի և Կաթարզայի հետ գտնվում էր Դիաուեխիի և Էթիունիի միջև։ Այն հանգամանքը, որ Սարդուրին Ուիտերուխին գրավեց կոլխիդական արշավանքի ժամանակ, ապացուցում է, որ այն Դիաուեխիին ավելի մոտիկ էր, քան Էթիունիին։

Լուշայի երկիրը և Կաթարզայի երկիրը, անշուշտ, Դիաուեխիի հետ միևնույն ժամանակ են միացվել Ուրարտուին։ Սարդուրին այդ երկու անունները չի հիշատակում։ Արշավանքն ընդդեմ կոլխերի, որոնք այդ դարաշրջանում և ավելի ուշ ապրում էին Ճորոխի ստորին հոսանքում, հաստատում է, որ Դիաուեխի պետությունը դուրս էր գալիս Վանանդի հայկական շրջանի սահմաններից Քուռ գետի ակունքների ուղղությամբ։

Կուլխիի դեմ կատարված արշավանքին նախորդել է երեք թագավորների՝ Ուաշունիի, Դիուծինիի և Իգանիեխիի (№ 132, 3, 1) երկրների վրա հարձակումը։ Վերջինը Իգանի երկրի թագավորն է, որը Արգիշտին հիշատակում է Մաքալտու քաղաքի հետ միասին։ Տեքստը թույլ է տալիս նույնիսկ գտնել Իգանիի մի քաղաք։ Մաքալտուի տեղը, Չըլդըր լճի մոտ, ցույց է տալիս այն շրջանը, ուր պետք է փնտրել մյուս թագավորների՝ Ուաշունիի և Դիուծինիի տիրապետությունները։

Այդ ձևով կարելի է հանգել քիչ թե շատ ընդունելի այն եզրակացության, որ Խուշանին, Ուիտերուխին, Լուշան, Կաթարզան, Ուաշունին, Դիուծինին, Իգանիեխին կազմում էին փոքր իշխանություններ, որոնք շարված էին Դիաուեխիի արևելյան սահմանների վրա։

Արևելքում, Սևանի շրջանում, Սարդուրիի կողմից նվաճված երկրների տեղերը ավելի ճշգրտված են։

Օրդակլու = Փորտակ շրջանում, Սևանա լճի հյուսիս-արևելյան ծայրում, Արգիշտին ձեռք է բերել Qieḫuni երկիրը։ Սարդուրին նվաճեց հարավ-արևմտյան անկյունը՝ Մինալիբիի թագավորությունը, որի մայրաքաղաքը Tuliḫu(ni)-ն էր (№ 135), ինչպես նաև Ջաղալուի շրջանում, հարավ-արևելյան անկյունում՝ Արկուկինի թագավորի տիրապետությունը (№ 134)։ Կիեխունիի և Թուլիխուի միջև կար մի թագավորություն, որը կոչվում էր Ուեվլիքունի (կամ Ուեվլիքուխի), որի կենտրոնական քաղաքը ներկայի Նոր Բայազետն էր։ Սարդուրին առաջին անգամ հարձակվում է Ուեվլի-

քունիի վրա, երբ նրա թագավորը Մուրինին էր։ Թուլիխուի թագավորությունը նույն բախտին արժանացավ։ Երկրորդ հարձակման ժամանակ Ուելիքուխիի թագավորը Նիդունին էր (№ 132, 6)։ Նոր Բայազետում հայտնաբերված արձանագրության համաձայն (№ 147Ա), նույն թագավորը դեռևս գահի վրա էր Սարդուրիի հաջորդ Ռուսայի օրով։ Այդ հայտնաբերման շնորհիվ է, որ Ուելիքունին նույնացվում է Նոր Բայազետ քաղաքի շրջանի հետ։

Արկուկինին երկու անգամ հարձակման ենթարկվեց։ Առաջին հարձակումը կապված էր չորս թագավորների հետ՝ Ու(ե)դուրի—էթիունի, Արկուկիունի (sic), Կամանի(ուի), Լուերունի(ուե). երկրորդ հարձակումը՝ Արկուկինի(sic), Աղախունի, Լուիպրունի, Կամնիու և մի քանի ուրիշների (№132, 4, 6)։

Սարդուրիի որդի Ռուսան ասում է, որ նորից նվաճել է Սևանա լճի ափին տեղավորված չորս երկրներ՝ Աղախունին, Ուելիքուխին, Լուերուխին, Արկուկինին (№ 147)։

Լուերուխին նույնն է, ինչ Լուերունին (հմմտ. Ուելիքուխի և Ուելիքունի) և Լուիպրունին։ Թվում է, թե վերջինն ավելի հին ձև է և հիշեցնում է Լուտիպրին։ Թուլիու կամ Թուլիխու քաղաքի թագավորը Ծինալիբի Լուեխուխին էր։ Հիմքեր կան ենթադրելու, որ Լուեխուխին նույն Լուերուխին է, և եթե այս կարծիքը ճիշտ է, ուրեմն, սխալն արդյունք է գրչական վրիպման։ Այդ բոլոր փոքր պետությունները դասավորված են Սևանի ափի շրջանում, Պորտակից կամ Օրդակլուից մինչև Ջաղալու՝ հետևյալ կարգով. Կիեխունի (Օրդակլու), Աղախունի, Ուելիքունի (Բայազետ), Լուերունի (Աթամխան), Կամանի կամ Կամնի, Արկուկինի (Ջաղալու)։

Սևանի ափին շարված երկրների մեջ առաջին տեղը գրավում է Ու(ե)դուրի-էթիունին, և այնտեղից է, որ Սարդուրին մտավ Արկուկինի։ Դրանով այդ քաղաքը մտնում է Երևանի շրջանը։ Իրոք, մենք դա գիտենք արդեն ըստ Երևանի մոտ գտնվող Էլարում հայտնաբերված արձանագրության։ Արգիշտիի թագավորության օրով Ուդուրին էթիունիի թագավորն էր։ Էթիունին կոչվում էր նաև Ուդուրի-էթիունի։ Սրանով, գուցե, ցույց է տրվում, որ էթիունիի մի մասը իր վրայից թոթափել էր Ուդուրիի իշխանությունը։ Սարդուրիի արշավանքի ուղեգիծն անցնում է Լիկուե երկրով, որը պատկանում էր Էդիանի քաղաքում գահակալող իշխան Աբիանի (նի)-ին, ինչպես նաև Իրկուաինի իշխանի Իրուիա(-ինի) քաղաքով և Ուեդա(-ինի) իշխանի Իրմաինի քաղաքով (№ 132, 7)։ Գուցե դրանք էթիունիի լծից ազատված քաղաքներն են, որոնք գտնվում էին նույն երկրի արևմտյան սահմանների վրա։

Մեկ ուրիշ արշավանքում Սարդուրին, անցնելով Էրիախի (№ 132, 6) երկրով, էթիունի երկրով, հասնում է Իգանի, որի իշխանը Կապուրին էր։

Քանի որ Իգանին գտնվում էր Զըլդըրի մոտ, իսկ Էթիունին հին Հայաստանի բուն Այրարատն էր, ուրեմն, Էրիախի երկիրը պետք է որ գտնվեր Արագած լեռան հյուսիսային լեռնաճյուղում, Շիրակի մարզում։ Մարմաշենի արձանագրությունը այդ է վկայում։

Սարդուրին Էրիախից արշավեց Իշթելուանի, Նադիանի, Ապունինի երկրների դեմ և Աբիլիանիխի իշխանի երկրի դեմ (№ 132, 6)։ Սարդուրին ավերակի վերածեց Էրիախին և վերադարձին (biduiaše) հարձակվեց Աբիլիանիխիի վրա, որի թագավորը Մուրինին էր (№ 132, 2)։ Արգիշտին արդեն կռվել էր Աբիլիանիխիի, Կուտուրզանի(-նի)-ի և Ուլտուզա(-ինի)-ի հետ (№ 111, 2)։ Աբիլիանիխին ինքը մենակ, կամ էլ նշված երկու իշխանների հետ միասին, բավական ուժ ուներ ինքն իրեն հարգել տալու և թըվում է, թե արևմուտքից հարևան էր Էրիախին։

Սարդուրիի հաջորդ Ռուսան ամրապնդեց Սևանա լճի ափին տեղադըրված չորս երկրների նվաճումը և իր իշխանությանն ենթարկեց տասնիևը թագավորների, որոնք իշխում էին լճից այն կողմն ընկած լեռներում։ Քյուլաղրանի (№ 147) արձանագրությունը խնամքով պահպանել է այդ թագավորների ցուցակը։ Փաստերի պակասության պատճառով նույնիսկ մոտավորապես չի կարելի ցույց տալ, թե նրանք որտեղ և որ շրջանում էին իշխում։

Նոր Բայազետի արձանագրության մեջ (№ 147Ա) Ռուսան հայտնում է, որ գրավել է Ուելիքուխի երկիրը, որի Նիեդունի թագավորի փոխարեն նշանակել է մի ուրարտացի կառավարիչ։ Նի(ե)դունին հարկատու էր Սարդուրիին (№ 132, 6), մեզ հետաքրքրող ժամանակաշրջանում նա զրկվեց իր գահից, հավանական է, Սևանի շրջանի քսանմեկ թագավորների դեմ Ռուսայի կատարած արշավանքի ժամանակ։

Հյուսիսում Արգիշտին ռազմական գործողություն չծավալեց։ Համենայն դեպս, նա այդ մասին ռազմական բնույթի արձանագրություններ չի թողել։ Սակայն նրա որդին՝ Ռուսա II-ը, Ուրարտուին միացրեց Մակուի շրջանը, որտեղ նույնիսկ մի քաղաք հիմնադրեց (№ 153Ա)։ Նրա թագավորության ժամանակ Եփրատի կողմից մի նոր թշնամի երևան եկավ։ Միտայի հորդաները, այսինքն՝ մուշկերը, խաթեի, խալիտուի և այլ անծանոթ ցեղերի հետ դաշնակցած, թափանցեցին Ուրարտու։ Ռուսան ապստամբողների դեմ դուրս եկավ։ Եթե, ինչպես կարծում է Լեհման-Հաուպտը, իշխան Մեննակի կողմից կառուցված Պաղին բերդը վերակառուցել է, ապա գուցե այդ իրողությունը կապ ունի մուշկերի ապստամբության հետ։ Ռուսայի ներկայությունը Մեծկերտում (Մազկերտում) նույնպես հաստատ է (№ 152)։ Ռուսան ե՞րբ մղեց ապստամբողների հոսանքը, թե այն Ասորեստանի կողմը դարձրեց։ Այդ դրվագի մասին ոչ մի ստույգ բան չգիտենք։ Սակայն Ասարխադդոնի մտահոգությունը Շուպրիայի մասին

ցույց է տալիս, որ դրությունը համարվում էր բավական վտանգավոր, և որ Ռուսան «կիմմերների և ուրիշ դաշնակիցների հետ» պատրաստվում էր հարված հասցնելու Աշշուրի պետությանը։

Պետության հյուսիսում ուրարտական թագավորների տերիտորիալ իրացումները գտնվում էին, ուրեմն, Արաքս գետի և Չըլդըր լճի միջև ու տարածվում էին Սողանլու լեռներից մինչև Սևանա լճի շրջանը։ Այդ տերիտորիան ծածկված էր ցեղերի և տարբեր կշիռ ունեցող իշխանությունների ցանցով։ Դժվար է սահմանագծել այդ երկրները և ճիշտ տեղադրել։ Նկատելի է, սակայն, որ այդ իշխանություններից մի քանիսը գերակշիռ դիրք էին գրավում որոշակի գոտիներում. արևմուտքում՝ Դիաուեխին, արևելքում՝ Էթիունին, իսկ Էրիախին և Աբիլիանիխին համարյա կենտրոնն էին զբաղեցնում։

Դիաու(ե)խի կամ Դիաու(ե)-խինի, Էթիունի կամ Էթիու-խինի, Էրիա-խի(նի), Աբիլիանի-խի՝ նշանակում են Դիաուի, Էթիուի, Էրիաի և Աբիլիանիի շառավիղ կամ զինատիա։ Դիաու(ե)խիները իշխում էին լայն կերպով գծված Վանանդի սահմաններում, էրիախիները և աբիլիանիխիները՝ Շիրակում, իսկ Էթիուխիները՝ բուն Այրարատում։ Սկզբնաշրջանում Էթիունին թվում է, թե ավելի լայն իմաստ ուներ և գործածվում էր որպես տոհմական տերմին Արաքս գետից այն կողմն ընկած տերիտորիայի վրա։

Սեյսի կարծիքը, թե դիաուեխիները դասական հեղինակների տաոխներն էին (taochoi), հայկական Տայքը, ընդունվեց Լեհման-Հաուպտի և ուրիշների կողմից։ Տայ-ք, սեռական՝ Տայոց—Ταό-χοι, ավելի շուտ Daya-eni-ի հայկական ձևն է, երկիր, որը ուրարտական վավերագրերը չեն հիշատակում։ Այդ ժողովուրդը Ուրարտուից դուրս էր։

Բայց մենք կարծում ենք, որ շատ ավելի հարմար կլիներ պատմական դրվածքին, ինչպես նաև հնչյունաբանական կանոններին՝ «Դիաուեխի»-ում տեսնել հայկական Ջավախ-քը, վրացական Ջավախ-եթին՝ Գոգարենե (Գուգարք) նահանգի մի գավառի անուն, որ դեռևս մնում է և վերաբերում է Չըլդըրի հյուսիսում գտնվող Ախալքալակի շրջանին։

Այս նույնացումը առավել ևս ապացուցելի է, քանի որ Ջավախքը սահմանակից է նույն Գոգարենեի մի շրջանի, որը հայերեն կոչվում է Կղարջ-ք, իսկ վրացերեն՝ Կլարջ-եթի։ Դա Պտղոմեոսի Καταρζήνη-ն է և հավանական է՝ Ստրաբոնի Χο(λα)ρζήνη-ն[1], որն աներկբայորեն սերվում է ուրարտական Katarza-ից։ Ուզեցել են Καταρζήνη-ն սրբագրել Καλαρζήνη-ի, որպեսզի նույնացնեն Կղարջքի հետ։ Բայց դրա կարիքը բոլորովին չկար. երկու ձևերն էլ ճիշտ են և վերարտադրում են ուրարտական

[1] Marquart, Eranšahr, էջ 168։

անունը, ուր ṭ-ն ուներ tl հնչյունը, որը չերքեզ լեզվում սովորական է և որը կարող է ճյուղավորվել որպես -ṭ՝ Kaṭarza-ի և որպես -l՝ Kalarza-ի։ Այստեղ նույն հնչյունական երևույթն է հանդես գալիս, որը մենք ցույց տվինք Կուլլիմերի և Կուտեմր-անի մեջ, որ առաջ են գալիս Կուտլիմերիից։ Kaṭarza-ն՝ դա նույն Quṭurza անունն է, որ նշված է Ուլտուզայի հետ։ Սա բացահայտում է հայերենի ձայնավորների համակարգը՝ Կուղարջ-ք-ից՝ Կղարջք։ Kaṭarza—Καταρζήνη ձևը պահպանվել է նույնպես հայկական Գողերձականի մեջ որպես էթնիկական տերմին[1]։

Ռուս ասուրագետ Նիկոլսկին առնչություն է տեսնում Eria-ḫi-ի և Erevan-ի միջև, որը շատ վիճելի է։ Ավելի շատ նմանություն կա Etiuni-ի և հայկական Ուտիքի միջև, դասական հեղինակների Ωτηνή-ի և Οτιτία-ի։ Սա անունն է մի ժողովրդի, որից մնացել է միայն մի քանի գյուղ Նուխի քաղաքի մոտ։ Ուտի և Οὐιτία ձայնավորների համակարգը հիշեցնում է Uduri և Uituri ուրարտական անձնանունները։

## 4. ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԸ

Ուրարտուն չուներ միօրինակ սահմանադրություն։ Այն բազմաթիվ երկրները, որոնք նա ընդգրկում էր, տարբերվում էին կենտրոնական իշխանության նկատմամբ ունեցած իրենց կախման բնույթով և պահանջում իրենց քաղաքական դիրքին համապատասխան կարգ։

Պետք է զանազանել երեք կարգի տերիտորիաներ։ Առաջին հերթին բուն Ուրարտուն, որը բաղկացած էր երկու մայրաքաղաքներից՝ Տուշպա և Արզաշկուն կամ Վան և Մելազկերտ։ Նա բաժանված էր վարչական միավորների՝ նահանգների, որոնք ենթարկվում էին կուսակալների իշխանությանը։ Երկրորդ տեղը պատկանում էր նվաճված երկրներին, որոնցից մի քանիսը նահանգների էին վերածված, բայց շատերը պահպանել էին իրենց անկախությունը՝ տարեկան հարկ մուծելու պարտավորությամբ։

Երրորդ կարգը բաղկացած էր անկախ թագավորություններից, որոնք, սակայն, գտնվում էին Ուրարտուի քաղաքական ազդեցության տակ։

Բուն Ուրարտուի նահանգները քեզ ծանոթ են Սարգոնի նկարագրությունից։ 713 թվականի ներխուժման ընթացքում Ասորեստանի թագավորն անցավ Ուրարտուի յոթ նահանգներով՝ Զարանդա, Սուբի, Դալա, Բարի կամ Սանգիբուտու, Արմարիլի, Այադի և Ուայաիս։ Նրանք դասավորված էին նրա ճանապարհի վրա՝ Ուրմիա և Վանա լճերի միջև։

---

[1] Դիոնիսիոս Թրակացու քերականության հայերեն հին թարգմանության մեջ ἐθνικὸν δέ ἐστὶ τὸ ἔθνους δηλωτικόν, ὥς φρύξ Γαλάτης նախադասությունը թարգմանված է. «ազգական է որ ազգի յայտական, որպես Գողերձական Տուն, վրացի. Ars Dionysii grammatici et Armeniaca in eam Scholia, édition de N. Adontz, Petrograd, *1916*, էջ *20*։

Պետք է ավելացնել Տուսպան (Տուշպա)՝ մայրաքաղաքի նահանգը, որը հայերը կոչում էին Տոսպ, դասական հեղինակների Tospitis-ը։

Արմարիլին նույն Արամալի նահանգն է, որը ծանոթ է 857 թվականին Սալմանասար III-ի արշավանքից և իր անունը պարտական էր Արամեին, մի փաստ, որ արդեն շատ լավ նկատել է Հոմմելը։ Սալմանասարը նույն շրջանում հիշատակում է նաև Թումմեն և Զանզիունան։ Այսպիսով, նահանգների թիվը տասնի է հասնում։

Սարգոնի գործակալներից մեկը հաղորդում էր, որ Ուրարտուի հինգ կուսակալներ գնացել էին Ուեսի և նրանց մեջ՝ Արմարիլիի կուսակալը, որը Տուտու էր կոչվում[1]։ Հետևաբար, Արմարիլին իսկապես նահանգ էր, մի վարչական միավոր, և գտնվում էր կուսակալի իշխանության ներքո։ Հավանական է, որ մյուս նահանգները նույն տիպի էին, այսինքն՝ վարչական բաժանումներ՝ կուսակալների իշխանության տակ։

Նույն տարում, 713 թվականին, կիմմերների դեմ ձեռնարկած պատերազմում Ռուսան ճակատամարտը տանուլ տվեց։ Ասորեստանյան գործակալների տեղեկությունների համաձայն, ութ ուրարտական կուսակալներ մնացին ռազմի դաշտում։ Դրանք էին՝ Rab-bi-lub=Rabšak նահանգի դիմացի նահանգի կուսակալը. Ամիդի դիմացի նահանգի կուսակալը. Թուշխանի դիմացի նահանգի կուսակալը. Մուսասիրի դիմացի նահանգի կուսակալը. Ուազաեի կուսակալը. Շիբ..ուրի կուսակալը. Կար-սիպարրիի դիմացի երկու կուսակալները և Շաթթերայի կուսակալը[2]։

Այդ ինը կուսակալություններից վեցը Ասորեստանի սահմանակից էին, որոնցից երեքը՝ Ամիդի, Թուշխանի (Կուրխ) և Ռաբշակի, այսինքն՝ Կումմուխի նահանգի դիմաց, Սարիշայի և Հիսն-Քեյֆայի շրջանում, իսկ երեքը՝ Զաբից արևելք, Կար-սիպարրիի և Մուսասիրի դիմաց։ Ինչպե՞ս էին կոչվում ուրարտական այդ նահանգները։ Հայտնի չէ։ Միայն երեք նահանգներ են նշված իրենց անուններով՝ Ուազաե, Շիբ..ուր և Շաթթերա։ Ուազաեն վերոհիշյալ նույն Ուայաիս անունն է, որը համապատասխանում է Աղբակի շրջանին, Զաբի ակունքների վրա։ Շիբ..ուրի և Շաթթերայի տեղերը հայտնի չեն։ Պետք է նրանք փնտրել Արևելյան Տիգրիսի (Բոհտան) ջրերի ուղղությամբ։

Ասորեստանցիներին ծանոթ էին նաև երեք ուրիշ ուրարտական կուսակալներ, որոնք գործում էին Ասորեստանի սահմանների վրա. Կանիում նահանգի առաջնորդ Սակուատան, Աշուր-ռիսուայի՝ ասուրական կառավարչի, դիմացի նահանգի առաջնորդ Սեթինին և Ուկկու ասուրական քաղաքի դիմացի նահանգի առաջնորդ Սունան։

[1] Pfeiffer *8*=Harper *444*.
[2] Harper *646*.

Կանիունը հիշեցնում է Քանան՝ Ջուգիի շրջանի բնակավայրերից մեկը, որը Սեննաքերիբը հայտարարում է, թե նվաճել է Տիմուրիի (հայկական Տմորիք) և Աշուր-ռխուսայի Կիպշու (Գեֆշ) նահանգի հետ միասին։ Այդ պահին նա գտնվում էր Խալծուում, ուրեմն, Սեթինիի նահանգը Խալծուի դիմացն էր գտնվում։ Այս վայրը և Ուկկուն հավանաբար զբաղեցնում էին Խազիլի և Խաբուրի ափերը։ Համենայն դեպս, դրանք գտնվում էին Ջուգի լեռան և Ջաբ գետի միջև։ Խալծուի և Ուկկուի դիմաց գտնված Սեթինիի և Սունայի կուսակալությունները, ուրեմն, Արևելյան Տիգրիսի ջրերի ուղղությամբ էին ընկնում և, գուցե, նույնանում են Շիբ..ուր և Շաթթերա նահանգների մոտ։ Ասորեստանի սահմանագլխին այս նահանգների միջև կարող էին բուն Ուրարտուին պատկանել միայն Շիբ..ուրը, Շաթթերան և Մուսասիրի դիմացի նահանգը, ներառյալ Սեթինիի և Սունայի կառավարությունները, եթե նրանք տարբեր են Շիբ..ուրից և Շաթթերայից։ Հավանական է, որ Վանա լճի հարավային ափին գտնվող Իրինու և Աիդու երկրները (№ 52), ինչպես նաև Անաշին (№ 28) նույնպես բուն Ուրարտուի մասն էին կազմում։ Այդպիսով, բուն Ուրարտուն տասնհինգ նահանգներից բաղկացած կլիներ։ Դրանցից և ոչ մեկը չի նշված, թե ուժով ձեռք բերված լինի։ Բացի այդ, դա հենց այն երկրամասն է, ուր հատկապես զարգացավ ուրարտական մշակույթը։

Նվաճված տերիտորիաների գոտին բավական լայն է։ Հստակ գաղափար կազմելու համար օգտակար ենք համարում այստեղ ներկայացնել նվաճված երկրների գրեթե լրիվ մի ցուցակ, հաշվի առնելով միմիայն «երկիր» որոշիչով նշված անունները, առանց նկատի առնելու քաղաքները, ի բաց առյալ այն դեպքերը, երբ քաղաքներն անպայման որոշ շրջաններ են ներկայացնում։

1. Ալառու
2. Ուրմենիուխինի (Տարոնում)
3. Շեբեթերիա (Պալու)
4. Թիտիա իշխանի տիրապետությունը (Պաղին)
5. Խուզանա (Հոզատ)
6. Ծուպա-նի (Ծոփք, Սոփենե)
7. Ալզի (Անզիտենե)
8. Ռուսայի քաղաքի շըրջան (Մակու)
9. Իրիկուախի (Ցոլակերտ)
10. Սելուինի
11. Ուրբիկա
12. Պուրունուրդադի (Արմավիր)
13. Կուարլինի (Ջվարթնոց—էջմիածին)
14. Ուլուանի (Էլար)
15. Ախուրիանի (Սարիղամիշ)
16. Ուխիմեավե (Ջալդիր)
17. Ալբուրա (Կուլիջան)
18. Էրիախինի (Մարմաշեն)
19. Իշկիգուլու
20. Կիեխունի (Օրդակլու)
21. Վելիքուխի (Նոր Բայազետ)
22. Լուերունի (Աթամխան)
23. Արկուկինի (Ջաղալու)
24. Ադախունի
25. Լուիպրունի

26. Էշամուա
27. Կամ(ա)նիու
28. Կուալբանի
29. Ուխունունի
30. Թերիանի
31. Դիաուեխինի
32. Շեշեթինի
33. Լուշաինի
34. Կաթարզաինի
35. Ուիտերուխինի
36. Բիանի
37. Խուշանի
38. Դիդինի
39. Աշկալուշի
40. Կալի
41. Շնրիագի
42. Գուլութախիխա
43. Աբունի
44. Իգանի
45. Զաբախա
46. Սիրիմութարա
47. Անիշթուրու
48. Ուլտուզա
49. Էթիունի
50. Կուրիանի
51. Պուսունի
52. Աբիլիանիխինի
53. Իշթելուանի
54. Կադիանի
55. Լուկիուե
56. Աբիանինի
57. Իրկուաինի
58. Ուեիրդանի
59. Պուինալխի
60. Բուիշիանի
61. Դիուծինի
62. Ուիբարդա
63. Ուիշուշի
64. Կուլխի
65—83. Սևանի մյուս կողմում գտնվող 19 երկրները։

Այս բոլոր երկրամասերը, բացի Կուլխից և Սևանի շրջակայքի 19 պետություններից, տեղավորված էին Այրարատի սահմաններում։ Այրարատը հին Հայաստանի տասնհինգ մեծ նահանգներից մեկն էր։ Հետևաբար, հակառակ այդ երկրների այնքան մեծ թվին, իրականում նրանք զբաղեցնում էին բավական սեղմ տերիտորիա։ Բավականաչափ փաստեր չկան այդ երկրների դեմ Ուրարտուի ձեռնարկած դարավոր պայքարի վերջնական արդյունքն իմանալու համար։ Մենք հաստատ գիտենք, որ այդ պետությունների մեջ ամենահզորը՝ Դիաուեխինին, վերջ ի վերջո զենքերը ցած դրեց և դարձավ կուսակալների իշխանության տակ գտնվող ուրարտական մի նահանգ։ Մեկ ուրիշ կարևոր պետություն՝ էթիունին, հավանական է նույն բախտին արժանացավ իր Ուզուրի թագավորի մահից հետո։ Ուիտերուխինին նույնպես կորցրեց իր անկախությունը նահանգային կարգերին հպատակվելով։ Գիտենք նաև, որ ուրիշ երկրներ, ինչպես Աբիլիանիխինին, Վելիքուխինին, պահպանելով հանդերձ իրենց առաջնորդները, հանձն առան հարկ վճարել։ Բազմաթիվ փոքր տիրակալություններն, անշուշտ, չէին կարող ավելի լավ վերաբերմունքի արժանանալ, և, անտարակույս, նրանք այսպես թե այնպես ընդգրկվեցին Ուրարտու պետության մեջ։

Հարավում, Ասորեստանին սահմանամերձ վայրերում, Ուրարտուն ճիշխում էր հետևյալ երկրների վրա.

84. Նիրիբա
85. Կուալիբիլանի
86. Արթուխա-նի
87. Ուսուսուանի-նի
88. Խուլմերու-նի
89. Մարմա-նի
90. Էրունի
91. Կիրպունու-նի
92. Ուլիբա-նի
93. Դիրգու-նի
94. Իշալա-նի
95. Կումենու-նի

Այս երկրները գտնվում էին Արզանենեում և Մեծ Ծոփքում՝ հին Հայաստանի երկու նահանգներ, որոնք տարածվում էին մինչև Արևելյան Տիգրիսի աջ ափը։

Այս երկրների սահմաններումն էին գտնվում ուրարտական երեք՝ Ամիդի, Թուշխանի և Ռաբշակի դիմաց գտնվող նահանգները։

Արևելյան Տիգրիսի (Բոհտան) ավազանում ուրարտական տիրույթները ճշգրտված չեն։ Ստույգ է, որ Ուրարտուն տիրապետություններ ուներ Տմորիք-Ալկիի և Ջզմարի (Ջուլամերկ) շրջաններում։

96. Սեննաքերիբի արշավանքը Թիմուրրուի դեմ հիմնականում Ուրարտուի դեմ էր ուղղված։

97. Ալզանին, հավանաբար Ալկի, իր աստվածն ունի ուրարտական պանթեոնում — ապացույց, որ նա նվաճվել է։

98—99. Մենք հիշատակեցինք, որ երկու նահանգ՝ Կար-սիպարրիի դիմաց՝ պատկանում էին Ուրարտուին։

100. Ուշինին — ներկայիս Ուշնուն, որի աստվածը Ուրարտուի պանթեոնումն էր, ուրեմն նվաճված էր։

101. Տարիունի, գուցե Տեր — գավառ՝ Ուշնուից, Թրաբիից հյուսիս («Աշխարհացույց»-ի Թուրաբը)։

102. Արգիշտիի Աշկաիան, որը Սարդուրիի նույն Ուշկիանին է, անկասկած, նաև Սարգոնի Ուշկայան, Մանայի սահմանագլխին, Ուշնուի մոտ։

Ուրարտացիները հավակնում են և այլ երկրների տիրացած լինել, որոնց տեղերը հայտնի չեն՝ Արխաու, Հանի, Կուլաշի, Իրկիունի, Շաթիրարաունի, Ալալի, Բաբանի, Տուարածի, Գուրգու, Բամնի, Ումեկի, Ուրիանի, Թաիրծունի, Արթարմու, Արմե, Պուլուադի և ուրիշներ, որոնց անունները կիսով չափ ջնջված են։

Այդ երկրների մի մասը, անշուշտ, պատկանում էր Ուրարտուի քաղաքական ազդեցության գոտուն՝ Մանայի շրջանում, ինչպես որ Կաուրի, Մուշանի, Ռախիսա և Նուշինի կոչվող երկրները՝ Մելիտենեի շրջանում։

Մանա թագավորությունը, ինչպես և միջձեփրատյան Խաթինա և Մելիտենե փոքր պետությունները մտնում են Ուրարտուի քաղաքական ազդեցության ոլորտը։ Ասորեստանի սպառնալիքին միշտ ենթակա այս եր-

կըրները կարիք ունեին Ուրարտուի օգնությանը, իսկ վերջինը շահագըրգըռված էր օգտվելու նրանց համագործակցությունից ընդհանուր թշնամու՝ Ասորեստանի դեմ։ Նրանք Ուրարտուի պատմության մեջ կարևոր դեր խաղացին որպես դաշնակիցներ և կամ՝ որովհետև նրանց տերիտորիան Ասորեստանի հետ մրցակցության վայր էր հանդիսանում։ Միայն Մուսասիրը համարյա Ուրարտուի ավատատուն էր (մինչև Սարգոնի թագավորությունը)։ Այնուհանդերձ, դրանք անկախ պետություններ էին և Ուրարտուի սահմաններից դուրս էին գտնվում։ Կազմի մասին խոսելով՝ մենք նկատի ունենք միայն բուն Ուրարտուն և նրա տիրույթները Հայկական լեռնաշխարհում։

Ուրարտու՝ երկրի ասուրական հորջորջումն է։ Առաջներում ասորեստանցիներն այն կոչում էին Նաիրի։ Ուրարտուն նախ երևան է գալիս Ուրատրի ձևով։ Աշուրբելկալան (1077—1066) այս անունով է նշում Բոհտանի մի շրջանը։ Նրա անմիջական հաջորդներից մեկը՝ Սալմանասար II-ը ասում է, որ երեք օրում կամ երեք քառորդ օրում նվաճել է Ուրատրին. Հետևաբար, այդ տերիտորիան բավական սահմանափակ էր և ողջ Հայկական լեռնաշխարհի վրա չէր տարածվում։ Ավելի ուշ այդ անունը տարածվեց Հայաստանի վրա։ Չի կարելի ասել, թե դա թյուրիմացություն չէ և թե, գուցե, Բոհտանի շրջանը Ուրատրի է կոչվել հենց այն պատճառով, որ նա արդեն այդ ժամանակ Ուրատրի-Հայաստանի մաս էր կազմում։

Աշուրնասիրպալն արդեն այդ երկիրը տեղադրում էր Նիրբե ša bitani-ի, այսինքն՝ Հայկական Տավրոսի այն կողմը։ Ուրարտու անունը երևան է գալիս Սալմանասար III-ի օրով (859—824) և նշանակում է միմիայն Հայաստանը։

Ուրարտական թագավորները Ուրարտու անունը չեն գործածում նույնիսկ ասուրերեն գրված իրենց արձանագրություններում։ Սարդուրի I-ը ասուրերեն արձանագրության մեջ իր երկիրը Նաիրի է կոչում։ Նրա որդին՝ Իշպուինին, գործածում է նույն անունը Կելիշինի արձանագրության ասուրերեն տարբերակում։ Այստեղ նա իրեն վերագրում է այսպիսի տիտղոսներ. թագավոր մեծ՝ RABU, հզոր՝ DANNU, ամբողջության՝ KIŠŠATI-ի թագավոր, Նաիրիի թագավոր, Տուշպա քաղաքի կառավարիչ կամ իշխան՝ šaknu։

Ուրարտական տարբերակն այդ տիտղոսները անդրադարձնում է հետևյալ կերպ. թագավոր հզոր՝ DANNU, թագավոր Šuraue երկրի, Biainaue երկրի, Տուշպա քաղաքի կառավարիչ կամ իշխան՝ alusi։

Այստեղ մեծ՝ RABU-ն զանց է առնված, որ այնքան էլ կարևոր չէ։ Ավելի մտահոգիչ է, որ KIŠŠATI-ի և Նաիրիի փոխարեն միայն Շուրաուե և Բիաինաուե են գործածված։ Վերջինը Նաիրիին համապատասխանող երկրի ազգային անունն է։ Սակայն ի՞նչ է նշանակում Շուրաուե։ Ասուրա-

կան տեքստի KIŠŠATI-ի թարգմանությո՞ւնն է արդյոք, թե KIŠŠATI-ն նույնպես զանց է առնված, իսկ Շուրաուեն հատուկ անո՞ւն է, ինչպես Բիաինաուեն, և վերջինիս հետ համապատասխանո՞ւմ է արդյոք Նաիրի տերմինին[1]։

Շուրաուեն Բիաինաուեի տեսքն ունի և, գուցե, Շուրիի հոգնակի սեռական հոլովն է, ինչպես Բիաինաուեն Բիաինիի հոգնակի սեռական հոլովն է։ Բավական գրավիչ է Շուրին մոտեցնել Սիրիային, բայց Իշպուինին, որ իրեն Շուրաուեի թագավոր է կոչում, Սիրիայում չի եղել։ Բացի այդ, եթե համեմատենք ուրարտական երկու տեքստերը՝ № 64—65 և № 142, ստիպված կլինենք ընդունել այն կարծիքը, թե Շուրաուեն ավելի շուտ անվանական է։ Առաջին տեքստում Մենուան պարծենում է հետևյալ տիտղոսներով. հզոր թագավոր՝ taraie, մեծ թագավոր՝ al(a)suinie, Šuraue երկրի թագավոր, Biainaue երկրի թագավոր, թագավորների թագավոր՝ erilaue, Տուշպա քաղաքի կառավարիչ՝ alusi Tušpa-patari։

Մյուս տեքստը գալիս է Սարդուրի II-ից և նույն տիտղոսներն է տալիս նրան՝ ասուրական գաղափարանիշերով՝ հզոր թագավոր՝ DANNU, մեծ թագավոր՝ RAB-ni, շատ երկրների թագավոր՝ MATU MATU$^{pl}$, Biainaue երկրի թագավոր, թագավոր թագավորաց՝ SARRU$^{pl}$, Տուշպա քաղաքի կառավարիչ՝ alusi Tušpa-ali։ Երկու տիտղոսների տարբերությունը մի կետի վրա է ծանրանում, ուր առաջին տեքստի Շուրաուեն համապատասխանում է երկրորդի MATU MATU$^{pl}$-ին։ MATU (երկիր) բառը՝ կրկնված և հոգնակիի նշանով օժտված կամ առանց նրան, ինչպես № 134 արձանագրության մեջ, Sayce LXXXII, նշանակում է «բազմաթիվ կամ տարբեր երկրներ», ուրեմն, KIŠŠATI-ի իմաստն է տալիս։ Բայց արդյո՞ք նրա նույնացումն է. matu Šuraue գրությունը ավելի շուտ ցույց է տալիս աշխարհագրական տերմին և թույլ չի տալիս հավատալ, որ այն հավասարազոր է KIŠŠATI-ին, մանավանդ որ այս վերջին բառը, որը ծանոթ էր ուրարտացիներին, գործածված է № 142 արձանագրության մեջ խալդիի նկատմամբ, որը կոչված է BELU ŠU(=KIŠŠATI), անշուշտ՝ Աշշուրի նմանությամբ[2]։

Ուրարտական թագավորների կրած տիտղոսները պարծենկոտ զարդարանքներ չեն, այլ կոնկրետ վիճակ են ցույց տալիս։ Տուշպայի alusi լինել՝ նշանակում է կուսակալի տիտղոսով նահանգի, մայրաքաղաքի տեր լինել։ Բիաինի-լին, անշուշտ, ցույց է տալիս երկրների այն ամբողջությունը,

---

[1] Götze-ն, Zeitschrift f. Assyr. Neue Folge, V, էջ 203, և Friedrich-ը, Einführung› էջ 31, առաջին կարծիքի կողմնակից են. Tseretheli-ն՝ Revue d'Assyr., 33, 1933, № I, էջ 13, երկրորդի։

[2] Թիգլաթպալասարի Պրիզմայում, King, Annals,. էջ 27, Aššur-ը ներկայանում է որպես bêlu rabû muš-te-šir KIŠŠAT ilâni։

որից կազմված էր բուն Ուրարտուն։ Բիա-ինի (Բիայի երկիր) հավանական է Վանի շրջանի դինաստիական անունն է Սարդուրի I-ից առաջ։ Շուրի-լին ցույց է տալիս բուն Ուրարտուից դուրս գտնվող երկրները, որոնք միացվել են Ուրարտուին կամ նրա հարկատու են դարձել։ Երկու տերմինները միասին համապատասխանում են ասուրական Նաիրիին, որը շատ լայն իմաստ ուներ և ընդգրկում էր ամբողջ Ուրարտուն և նույնիսկ որոշ ժամանակաշրջանում կիրառվում էր բոլոր լեռնային այն երկրների նկատմամբ, որոնք շրջապատում էին Ասորեստանը և բնակեցված էին ոչ-սեմական ցեղերով։ Շու-րին նույն կազմությունն ունի, ինչ որ Նաի-րին, Ուրատ-րին, Նամ-րին։ Հետևապես, պետք է ընդունել այն կարծիքը, որ Շուրի-լին և Բիաինի-լին համապատասխանում են Նաիրիին և որ Կիշշատին ավյալ տեքստում զանց է առնված։

Այս վիճելի հարցը, ինչպես և բազմաթիվ այլ հարցեր իրենց վերջնական լուծումը կստանան միայն այն օրը, երբ հողի տակ թաղված ուրարտական վավերագրերը մատչելի կդառնան գիտական աշխարհին։

Ուրարտուի պետությունը հիմնված էր Աշշուրի և Խաթթիի պետություններում տիրող միևնույն ըմբռնման վրա։ Դա ավատական միապետություն էր, որից և առաջացել էր Ուրարտուի վեհապետների «թագավոր թագավորաց» տիտղոսը։ Թագավորը կոչվում էր erili, թագավոր թագավորաց՝ erili erilaue։ Արքունիքի կազմակերպությունը հայտնի չէ, բայց այն չէր կարող տարբեր լինել ասուրական արքունիքի կազմակերպությունից։ Հավանական է, որ ուրարտական արքունիքը նույնպես ուներ իր abarakku-ն՝ արքունիքի առաջին աստիճանավորը, սկզբում թագավորի օծման արարողապետը, իր rab šaqe-ն՝ «մեծ տակառապետը», իր nagir ekalli-ն՝ «սեղանապետը», ինչպես և իր ախոռապետը, քարտուղարներ, գրագիրներ և բազմաթիվ մեծ ու փոքր պաշտոնյաներ, որոնք կազմում էին թագավորական ծառայության անձնակազմը։

Թագավորն ստանձնում էր բանակի հրամանատարությունը և առաջնորդում այն դեպի պատերազմ։ Նա ուներ նաև բանակի գլխավոր հրամանատար՝ turtan. ըստ ասուրական աղբյուրների՝ նաև սրա տեղակալ։ Ռուսա I-ի ժամանակ թուրթանը Կակկադանուն էր[1], իսկ նրա տեղակալը՝ Ուրծինեն։ Նրանք գլխավոր հրամանատարությունն ստանձնում էին այն դեպքում, երբ թագավորը արշավանքին չէր մասնակցում։ Բանակը բաղկացած էր հեծելազորից և հետևակազորից։ Սարգոնի վկայությամբ, Դալա շրջանի մի քաղաքում էին գտնվում այն ախոռները, ուր թագավորական

[1] Ասուրական արքունիքի մի երաժիշտ կոչվում էր Կակկադանիտու։ Արդյո՞ք նա ուրարտացի էր։ **B. Meissner**, Babylonien und Assyrien, II, էջ 320, ըստ The Babylonian expedition of the University of Pensylvania, հրատարակված Hilprecht-ի կողմից, XVII, I 27։

բանակի ձիերն էին խնամում։ Սուբի նահանգի բնակիչները հայտնի էին թամբի ձիեր վարժեցնելու արվեստով. մտրուկները թագավորական բանակին էին հատկացված։ Ուրեմն, այդ ժամանակվա Ուրարտուն, ինչպես ավելի ուշ՝ Հայաստանը, հայտնի էր երիվարներով։

Մի քանի արշավանքների մասնակցած անձնակազմերի մասին եղած տվյալները թույլ են տալիս գաղափար կազմել զինված ուժերի վերաբերյալ։ Մենուան Լուշա, Կաթարզա և Ուիտերուխի թագավորների դեմ տարավ 67 մարտակառք, (...) 430 հեծելազոր և 15 760 հետևակազոր (№ 14)։ Նույն թագավորը Մանայի Մեիշտա քաղաքի դեմ արշավելու ժամանակ իր տրամադրության տակ ուներ 1600 մարտակառք, 9174 հեծելազոր և 2704 նետաձիգ (№ 15)։ Սարդուրի II-ը միայն 92 մարտակառք ուներ, բայց 3600 հեծելազոր և 352 011 հետևակազոր (№ 132Ա)։ Հետևակազորի թիվը չափազանցված է։ Հավանաբար, դա գրչական սխալի հետևանք է, եթե միայն atibi — «տասը հազար» բառը չունի «հազարի» նշանակություն, որը կտար 37 011։ Եթե ոչ՝ կստացվեր, որ Սարդուրի II-ի բանակը, համեմատած ասուրականի հետ, ավելի բազմամարդ էր, որը քիչ հավանական է։ 845 թվականին Սալմանասար III-ը ոտքի հանեց հարյուր հազար մարդուց բաղկացած մի բանակ խաթթիի տասներկու թագավորների դեմ[1]։

Թագավորն այն «անսահման, անթիվ» է կոչում։ Սարդուրին չէր կարող երեք անգամ ավելի զինված ուժ ունենալ, քան Աշշուրի հզոր վեհապետը։ 853 թվականին նույն Սալմանասարին սպառնում էր սիրիական թագավորների կոալիցիան։ Նրանցից ամենազորեղները՝ Դամասկոսի և Համայի թագավորները, ունեին, առաջինը՝ 1200 մարտակառք, 1200 հեծելազոր, 20 հազար հետևակազոր, իսկ երկրորդը՝ 700 մարտակառք, 700 հեծելազոր և 10 հազար հետևակազոր[2]։ Այս թվերը շատ կլորացված և համաչափ են, հազիվ թե կարելի է վստահել դրանց։ Այնուհանդերձ, կարելի է հետևություն անել, թե զինվորական տեսակետով ինչ էին ներկայացնում այդ ժամանակաշրջանի փոքր պետությունները։ Սարգոնի օրով Կումմուխին կարող էր ռազմի հանել 1500 մարտակառք, 1600 հեծելազոր, 20 հազար նետաձիգ և հազար զինվոր՝ զինված վահաններով ու նիզակներով[3]։

Սարդուրի II-ը իր տարեգրությունը եզրափակում է հետաքրքիր ծանոթությամբ՝ բանակի հանդերձանքի մասին. 121 անձ (?), 10 408 ձի, 132 ջորի, 12 321 կով և 9036 եզ=21 357 խոշոր անասուններ, 35 467 ոչխար,

---

[1] Ցլարձան, I, 44—45, A. Amiaud et V. Scheil, Les Inscriptions de Salmanasar II (III), էջ 57։

[2] Տարեգրություն, II սյունակ, տող 90—95։ Հուգո Վինկլերը՝ E. Schrader, Keilinschriftliche Bibliothek-ում, էջ 173։

[3] Fastes, I, 116—117. Ֆ. Ե. Պայզերը՝ E. Schrader, նշվ. աշխ. II-ում, էջ 69։

2114 նետ, 1342 աղեղ, 49 990 բրիչ, 1 022 133 kapi-še հացահատիկ, 111 aqarki (չափ) գինի, 86 aqarki և 7 ḫirusi (չափ) կարագ, 7070 մնաս պղինձ, 336 ստրուկ և ururda-ni «վերակացու» (?)։ Զինվորական տերմինաբանության մեջ ծանոթ են միայն՝ ḫuradini — «բանակ», gunuše — «մարտ», giššuri — «զինվոր», badli—«նետ»։ Մյուս տերմինները՝ կառք, հեծելազոր, նետաձիգ և այլն, արտահայտված են գաղափարանիշերով կամ ասուրերեն։

Գալով երկրի վարչությանը, պետք է զանազանել բուն Ուրարտուն և զենքի ուժով նվաճված տերիտորիաները, այսինքն՝ Բիաինիլին և Շուրիլին։

Ինչպես տեսանք, առաջինը բաժանված էր նահանգների և կառավարվում էր կուսակալների կողմից։ Նահանգ նշանակող ուրարտական բառը ծանոթ չէ։ Սարգոնն ասուրական տերմին nagû-ն է գործածում։ Նահանգների առաջնորդներին ևս կոչում էին՝ ասուրական ձևով՝ bel paḫati կամ piḫati։ Կուսակալների հրամանատարության տակ էին գտնվում փոխ-կուսակալները՝ bel-paḫati šanû։ Ամիդի ասուրական կառավարիչը թագավորին ներկայացրած իր զեկուցման մեջ հայտարարում է, որ հարևան Ուրարտուի կուսակալն ու փոխ-կուսակալը Խարդա քաղաքումն են[1]։ Մի քանի կուսակալներ ծանոթ են իրենց անուններով՝ Թուրթան Կակկադանուն և իր փոխանորդը՝ Ուրծինեն, որոնք միաժամանակ կուսակալներ էին. ապա՝ Սեթինին ու Սունան։ Այս երկու կուսակալները հրաման էին ստացել գընալ տեղավորվել Մուսասիրում, և Սեթինին այնտեղ գնաց «3000 հետևակազորով՝ sabê$^{pl}$ šêpâ$^{pl}$, կառավարիչներով՝ šaknûte, սպաներով՝ rab qallûte»։ Սունան իր զինվորներով հետևեց նրան[2]։

Կուսակալները ոչ միայն օգնականներ կամ փոխ-կուսակալներ ունեին, այլ նաև ստորադաս գործակալներ՝ šaknûte, գուցե, գավառների առաջնորդներ և սպաներ։ Կարևոր է նաև այն հանգամանքը, որ նրանք անմիջապես իրենց հրամանի տակ բանակ ունեին։ Այնպես որ նրանք միավորում էին իրենց ձեռքում քաղաքական ու զինվորական իշխանությունը։ Թագավորը, անշուշտ, ուներ իր դրանիկ գունդը և զորքեր իր տրամադրության տակ։ Անհաջողության դեպքում նա մոբիլիզացիայի էր ենթարկում նահանգների ուժերը, ինչպես Սեթինիի և Սունայի պարագայում, որոնց նա հանձնարարեց պաշտպանել Մուսասիրը, կամ կիմմերական պատերազմի ժամանակ, ուր ինը կուսակալներ զոհվեցին։

Կային նաև ասպիճանավորներ, որոնք կոչվում էին rabûte և իրենց տրամադրության տակ նույնպես ունեին զինված ուժեր։ Ասուրական աղբյուրների համաձայն, կիմմերներից կրած պարտությունից հետո Թագա-

---

[1] Pfeiffer *6* = Harper *424*.

[2] Pfeiffer *10* = Harper *380*.

վորին հաջողվեց խաղաղություն հաստատել, և նրա «rabûte-ները տուն վերադարձան»։ Մեկ ուրիշ ասորեստանցի գործակալ զեկուցում էր, որ Ուրարտուի թագավորի բանակը ոչնչացավ, նրա rabûte-ներից երեքը զոհվեցին իրենց զորքերով՝ emuqi[1]։

Rabûte բառը rabû-ի հոգնակին է և նշանակում է «մեծեր» կամ, ինչպես Պֆայֆերն է ենթադրում, «ազնվականներ»։ Սակայն տերմինի սոցիալական արմատը անհայտ է մնում։ Ի՞նչ էին ներկայացնում այդ «մեծերը»։ Արդյոք ազնվականության մասի՞ն է խոսքը՝ արքունիքի ներկայացուցիչներ, որոնք միաժամանակ վարչության մեջ կարևոր պաշտոններ էին գրավում, ինչպես սովորություն էր Ասորեստանում։ Այդ դեպքում ազնվականները նահանգների կուսակալների նման կլինեին։ Սակայն Սարգոնը ճանաչում է ուրարտական թագավոր Ուրսայի «մեծերին» և նրանց պարզ կերպով տարբերում է կուսակալներից։ Ուշ չեռան ճակատամարտից հետո Սարգոնն ասում է, որ գերի է վերցրել Ռուսայի «մեծերին»՝ ašaridûti, նրա «խորհրդականներին»՝ maliki, թագավորական ընտանիքի 260 անդամներին, «կուսակալներին»՝ bel-paḫati, «ձիավորներին»՝ pit-‑halli[2]։

Ašaridûti-ն, որ ašaridu-ի՝ «մեծ»՝ հոգնակին է (ašar-ի «տեղ» և edu-ի «առաջին» բաղադրյալը, ուրեմն՝ «առաջին տեղի մարդ»), անշուշտ rabûte-ի հոմանիշն է։ Ašaridu-ն չի կարող «ծերեր» նշանակել, որովհետև Սարգոնը «ծերեր» ասելու համար šibi բառն է գործածում, որ šibu-ի հոգնակին է։ Մանայի թագավոր Ուլլուսունուն իր «մեծերի» rabâni, իր «ծերերի» šibi, իր «խորհրդականների» maliki, իր «կուսակալների» šakkanaki և իր «սպաների» ridie հետ եկավ Սարգոնին դիմավորեց։ Վերոհիշյալները երկրի վարչական մարմիններն էին[3]։

Rabûti-ն զուգե նշանակում է հողատեր մեծ իշխաններ, որոնցից ոմանք գահազրկված հին դինաստիաներից սերած՝ պահպանել էին իրենց հայրենական ունեցվածքի մի մասը, մյուսները թագավորներից հողեր էին ստացել և ֆեոդալներ դարձել։ Շատ վաղուց Արևելքում կար երկրին կամ թագավորին մատուցած ծառայության համար այդ ձևով վարձատրելու սովորություն։ Այդ տեսակի rabûti-ները, հավանաբար, հանդիսանում էին ավատական ազնվականությունը և պարտավորվում էին պատերազմական վիճակում պահել որոշ թվով կռվողներ, որոնք, թագավորի առաջին իսկ կանչին, պետք է մասնակցեին ռազմական գործողություններին։ Վե-

---

1 **Pfeiffer** *11* = **Harper** *197*.

2 **Thureau-Dangin,** Une relation de la huitième campagne, *137—138 տողեր*։

3 *Նույն տեղում, 32—33 տողեր*։

*րոհիշյալ երեք* rabûti-*ները սույն «ազնվական», կալվածատիրական հողատերերի թվին էին պատկանում*[1]։

*Ուրարտական արձանագրությունները բուն Ուրարտուի կազմակերպության մասին ոչինչ չեն ասում։ Նրանք գլխավորապես նվիրված են ռազմական գործողությունների պատմությանը և որովհետև զինվորական գործողություններ տեղի չեն ունեցել [Բիաինայի—խմբ.] տերիտորիայում...*

... (Աղոնցի ձեռագրի 206 էջը այստեղ պակասում է։)

*Իրոք, Լուշան, Կաթարզան և Ուիտերուխին, որոնք սեփական տիրույթներ ունեին, որակված են Էթիուխինիի (№ 13) թագավորներ, այսինքն՝ նրանք պատկանում էին Էթիուի ընտանիքին, որի գլխավոր տիրույթ Էթիունիի վրա որպես թագավոր իշխում էր ոմն Ուդուրի։ Նրա տիրույթն իր անունով կոչվում էր Ուդուրի-Էթիունի։*

*Ըստ № 112Բ արձանագրության՝ Խալդին հպատակեցրեց Էթիունին։ Արգիշտի թագավորը հետևեց աստծուն ու գրավեց ոչ թե Էթիունին, ինչպես պետք էր սպասել, այլ Դիաուեխինին, Լուշան, Կաթարզան (իմա՝ այդ անձնավորությունների երկրները), Էրիախինին, Գուլութախիխայի և Ուիտերուխիի «երկրները»։ Եթե տեքստը ճիշտ է, պետք է եզրակացնել, որ հպատակեցված այդ բոլոր երկրները կազմում էին Էթիունիի մասերը, ուրեմն՝ ոչ միայն Լուշան, Կաթարզան և Ուիտերուխին, այլ նաև Դիաուեխին, Էրիախին և Գուլութախիխան։*

*№ 111, 2 համարում՝ Խալդին ելնում է Աբիլիանիխիի, Կուլթուզանիի և Ուլտուզայի դեմ։ Արգիշտին մեկնում, գրավում է Էթիունին և բռնում է նրա թագավոր Ուդուրի Էթիուխինիին։ Հետևաբար, այդ երեք առաջնորդները սերում էին նույնպես Էթիուից, և Էթիունին ու Էթիուխինին նույն երկիրն են։*

*Էթիուխին մեզ ներկայանում է որպես մի հզոր և բազմաճյուղ ցեղ, որի ճյուղերից ամենագլխավորը Դիաուեխին էր։ Մենուայի ժամանակ միայն Դիաուեխիում երեք թագավորներ կային՝ Ութուպուրշին, Բալթուլխին և Խալդիրիուլխին (№ 27)։ Մեծ թվով ուրիշ հայրանվանական ծագումով շատ անուններ կան, ինչպես՝ Իռիկուախի, Վելիքուխի, Սելուինի, Կուարլինի և այլն, որոնք թվարկված են վերը հաղորդված ցուցակում։* XII *դարում Թիգլաթպալասար* II-*ի կողմից նվաճված երկրների մեծ մասը հայրանվանական անուններ ունեին՝ Ունզամունի, Պիլակինի, Ատուրգինի, Կուլիբարզինի, Աբաենի, Դայաենի և այլն։ Ընդհակառակն, նման անվանումը հա-*

---

[1] **Tseretheli-ն**, Revue d'Assyriologie, XXXII, *2, 1935, էջ 74, ծան. 1, կարծում է, թե № 112* A *4*=pl. XXVII, *7—8 արձանագրության անհասկանալի արտահայտությունները՝* AMELU ip-ri-u-na-ni-e-di-ni, MATU Bi-a-i-na-ni-e-di-ni, *նշանակում են «Բիաինա երկրի ազնվականության (=իշխանների ամբողջության) համար»։*

տուկ չէր կամ օտար էր բուն Ուրարտուին. Նրա նահանգները կոչվում էին Զարանդա, Բարի, Սանգիբուտու, Դալա և այլն։ Թվում է, թե միայն Բիաինի-լին է ըստ էության հայրանվանական անուն. Բիա-ն կամ Բիաի-ն, հավանական է, այն դինաստներից մեկն էր, ինչպես Էթիու-ն, որոնք իշխում էին Վանի շրջանում՝ թագավորության հիմնադրումից առաջ։

Այսպիսով, Հայկական լեռնաշխարհի մեծագույն մասը կտոր-կտոր բաժանված էր բազմաթիվ առաջնորդների միջև, որոնցից ամենահզորները իրենց թագավորի տիտղոս էին վերագրում։

Դա գալիս է ասելու, որ Արամեից առաջ այնտեղ իշխող կարգը շարունակում էր տիրող հանդիսանալ։ Այն հանգամանքը, որ այդ արքայիկներին միավորելու գործը վիճակվեց Վանա թագավորներին, պետք է դիտվի որպես բնական հետևանք մի զարգացման, որը բուն Ուրարտուում հանգեցրել էր միապետության առաջացմանը։ Այդ արքայիկներն ավելի շուտ ցեղերի առաջնորդներ էին, ինչպես երևում է նրանց անջատողական գործելակերպից, որոնք չկարողացան համաձայնության գալ՝ նվաճողների դեմ ընդհանուր ճակատ կազմելու համար։ Համերաշխության բացակայությունը բնութագրական է ներքին պայքարի օջախ հանդիսացող այդ միջավայրի համար։ Ուրարտական թագավորները, օգտվելով այդ ցեղերի անկազմակերպությունից և հարձակվելով նրանցից յուրաքանչյուրի վրա առանձին, հաղթանակ տարան։ Նրանց գործածած միջոցները ծանր և խիստ էին։ Ուրարտուի թագավորները ավերեցին, հրկիզեցին գյուղերը, բնակչությանը գերի վարեցին, քշեցին-տարան անասունները և այսպիսով քայքայեցին այդ ցեղերի տնտեսությունն ու ջախջախեցին նրանց դիմադրական ուժը։ Արգիշտին ու Սարդուրին իրենց թագավորության ընթացքում տարագրել են կես միլիոնից ավելի մարդ և քշել այդ երկրների անասունների մեծ մասը։

Հաղթված թագավորին նախ պարտադրում էին meše «հարկ», ապա նրան դարձնում էին bura «ստրուկ», անշուշտ վասալի իմաստով (δοῦλος կամ հայերեն՝ «ծառայ»), ի վերջո նրան վտարում էին և երկիրը գրավում։

Մենուան հարկատու դարձրեց Լուխիունի (Ցոլակերտ) քաղաքը և Դիաուեխիի թագավոր Ութուպուրշիին, բայց գահընկեց արեց Դիաուեխիի երկու ուրիշ թագավորների՝ Բալթուլխիին և Խալդիրիուլխիին (№ 27)։ Ակներևաբար, Ութուպուրշին չէր հարգում իր հանձնառությունները, որովհետև Արգիշտին ստիպված եղավ նրան հպատակեցնել և ստիպել հարկ վճարելու (№ 112B)։

Նույն ձևով վարվեցին Իգանի երկրի նկատմամբ (№ 112B)։ Սարդուրին նրա թագավոր Կապուրիից խլեց 35 բերդ և 200 գյուղ, անշուշտ, իր պարտավորությունների կատարման մեջ նրա թույլ տված անփութության

համար (№ 132Ա)։ Աբիլիանիխիի թագավոր Մուրինին, ինչպես նաև Վելիքուխիի թագավոր Նիդունին Սարդուրիի կողմից պարտադրվեցին հարկ վճարելու։ Սարդուրիի որդի Ռուսան զենքի դիմեց Վելիքուխիի դեմ՝ նրան հիշեցնելու համար իր պարտավորությունը, վտարեց նրան և երկիրն ըստրկացրեց (№ 147Ա)։ Նույն թագավորը Սևանի շրջանում 23 երկիր նվաճեց, նրանց bura դարձրեց, հարկ վճարել պարտադրելու հետ միասին (№ 147)։

Մենուան նվաճեց Ուրմենիուխինի երկիրը (Տարոն)՝ 400 գյուղերով և ստրկացրեց այն, buraštuli (№ 32)։

Սարդուրին հարկատու և bura դարձրեց Պունիալխի ցեղը (№ 132)։ Անեքսիայի գաղափարն արտահայտված էր հետևյալ բառերով՝ ebani ebaniukiedi abilidu-bi «ավելացրի երկիրն իմ երկրին»։ Արգիշտին գրավեց երեք երկիր՝ Կալին (կամ Կադան), Աշկալասին և Շաշիլու քաղաքի տերիտորիան (№ 112Բ)։ Այս քաղաքը Մենուան հայտարարել էր Դիաուեխիի թագավորական քաղաք։ Արգիշտին այնտեղ երեք կառավարիչ է նշանակում՝ Շաշկիե Արդարակիխի, Բալթուլխի և Կաբիլուխի։ Էրիախին միացվեց Սարդուրի II-ի կողմից, ինչպես նաև Պուլուադին և Լուսիպրունին (№ 132Ա)։

Երկրին հարկ պարտադրելը նույն բանը չէր, ինչ որ buraštu — «bura դարձնելը»՝ ստրկացնելը, այլ կերպ ասած՝ վասալ դարձնելը։ Վասալ երկրները հարկ էին վճարում, բայց հարկ վճարելը դեռ չէր նշանակում վասալ դառնալ։ Կումմուխիի (Կոմմագենեի) թագավոր Կուշտաշպիլին, Ուրարտուի առջև վարկաբեկված լինելու հետևանքով, Սարդուրին հարկատու է դարձնում, այսինքն՝ ռազմատուգանք է նշանակում, առանց գերության կամ ստրկացման մասին խոսելու։ Կումմուխիի անկախությունը չէր վերացվել (№ 132Ա)։ Մելիտեների թագավոր Խիլարուադան պատժվեց Սարդուրիի կողմից, որը նրանից խլեց ինն ամրոց և ստիպեց հարկ վճարելու։ Այստեղ նույնպես բոլորովին buraštu-ի հարց չի ծագում (№ 133)։

Meše հարկը, որ Ուրարտու պետությունն ստանում էր հպատակ կամ իրեն միացրած շրջաններից, բնական բերքից վճարվող տուրք էր։ Արշավանքների ընթացքում ստացված ավարը գալիս է այդ հաստատելու։ Այդ երկրների միակ հարստությունը խոշոր ու մանր եղջերավոր անասուններն էին, դա ապացուցում է, որ անասնապահությունը գերակշռող էր, մի հանգամանք, որը բնորոշում է այդ ցեղերի միջավայրը։ Այդքան երկրների մեջ միայն Դիաուեխին՝ «հզոր պետությունն» էր, որ ազնիվ մետաղներ՝ ոսկի, արծաթ և պղինձ մատուցելու միջոցներ ուներ (№ 113Բ)։ Պատահում էր, որ չվճարված հարկի փոխարեն գաղթեցվում էր ժողովուրդը, ինչպես վարվեց Ռուսան Սևանի երկրների նկատմամբ։

Երկար պայքարից հետո ուրարտական թագավորներին հաջողվեց տեր դառնալ Հայկական լեռնաշխարհին և այնտեղ հաստատել իրենց վարչական համակարգը։ Ռուսա I-ի օրով գրավումն արդեն կատարված փաստ էր, թեպետ միացված շրջանների վարչական բաժանումների մասին տվյալներ գոյություն չունեն։

## 5. ԿՐՈՆԸ ԵՎ ՄՇԱԿՈՒՅԹԸ

Ուրարտուն թեոկրատիկ (դիցապետական) միապետություն էր։ Ամենօրյա կյանքը սերտորեն կապված էր երկնային էակների հետ, որոնց երկրպագում էին։ Ավելի լավ հասկանալու համար թագավորների գործունեությունը և Ուրարտուի մշակույթի բնույթը՝ պետք է նախապես ծանոթանալ երկրի պանթեոնի հետ։

Այդ հեռավոր դարաշրջանում կրոնական հավատալիքներն իշխում էին ամենուրեք՝ և՛ Միջագետքում, և՛ Փոքր Ասիայում, մարդկային մտքի բոլոր շարժումները կարգավորում էին նրանք։ Խեթական պանթեոնում հազար աստված կար։ Ուրարտական պանթեոնը այդ աստիճան լեցուն չէր, բայց, այնուհանդերձ, բավական հոծ էր բնակեցված։ Իշպուինին և Մենուան մեզ թողել են մի արժեքավոր վավերագիր, որը ներկայացնում է յուրաքանչյուր աստծուն մատուցվող զոհաբերությունների կանոնը, որից օգտվում էին ութսուն աստվածներ, իսկ դա բոլորը չէ, ոմանց անունը ցուցակում չկա։

Պանթեոնի անդամները միևնույն կարևորությունն ու միևնույն ծագումը չունեին։ Առաջին տեղը բռնում էին երեք աստվածներ, որոնք կազմում էին մի տեսակ երրորդություն՝ Խալդի, Թեշեբա և Արդինի։ Խալդի աստվածն ուրարտացիների համար նույնքան կարևորություն ուներ, որքան Աշշուր աստվածը ասորեստանցիների համար. նա գերագույն աստվածն էր, բոլոր աստվածների առաջնորդը։ Հետաքրքրական է, որ Կելիշինի երկլեզվյան արձանագրության մեջ այս աստծու անունը Ալդի է գրված։

Թեշեբան համապատասխանում է ասուրական Ադադին, իսկ Արդինին՝ Շամաշին. առաջինը, ուրեմն, փոթորկի աստվածն է, իսկ երկրորդը՝ արևի։ Սա բխում է այն փաստից, որ ուրարտացիները գործածում էին Ադադի և Շամաշի գաղափարանիշերը՝ համապատասխանաբար Թեշեբային ու Արդինիին ցույց տալու համար։ Թեշեբայի անվան հայտնաբերմամբ պարտական ենք Մենուայի մի արձանագրությանը՝ երեք օրինակից, № 87 Ա, Բ, Գ։ Նրանցից երկուսում՝ Ա և Գ-ում, անունը թաքնված է, ինչպես ուրիշ տեղերում, Ադադի գաղափարանիշի տակ, բայց երրորդում՝ Բ-ում, գրիչը, բարեբախտաբար, գաղափարանիշը տալիս է իր հնչյունական արժեքով՝

Te-e-še-ba-še։ Նախընտրելի է կարդալ Teišeba կամ Tešeba և ոչ թե՝ Teišba, ձև, որն ընդունվել է Սեյսի կողմից։ Tešeba-ն ավելի մոտ է խուրրիական Թեշուպին, որի ուրարտական ձևն է։

Արդինիի անունը միշտ նշված է Շամաշի գաղափարանիշով, միայն մի տեղում գրված է հնչյունականորեն։ № 27 և № 133 տեքստերում անեծքի բանաձևը գրված է միևնույն տերմիններով, միակ բացառությամբ՝ № 27, 34-րդ տողի $^{ilu}$Šamaš-ni-ի փոխարեն № 133, 39-րդ տողում կարդացվում է Ardini-ni։ Հետևությունը պարզ է ու առավել ևս հաստատվում է այն իրողությամբ, որ Մուսասիրը ուրարտերեն կոչվում էր Արդինի, անշուշտ այս աստծուն նվիրված սրբավայրի պատճառով։

Խալդին, Թեշեբան և Արդինին իշխում էին պանթեոնում։ Նրանք իրենց զորությամբ և ստացած պատիվներով գերազանցում էին մյուս բոլոր աստվածներին։ Նրանց անունները շատ հաճախ են հիշվում տեքստերում. անեծքները միշտ նրանց անուններով են կատարվում։ Մհերի Դռան մատղների կանոնադրությունը նրանց բացառիկ արտոնյալ դիրք է վերապահում։ Մենք վերը ներկայացրել ենք այդ կանոնադրությունը (№ 18), ուր թվարկված են բոլոր աստվածները, և ցույց է տրված զոհաբերությունների այն բաժինը, որ հասնում էր յուրաքանչյուրին։ Այնտեղ կարելի է տեսնել, որ Խալդին ստանում էր 6 ձի, 17 եզ և 34 ոչխար, Թեշեբան՝ 6 եզ ու 12 ոչխար, Արդինին՝ 4 եզ և 8 ոչխար, մինչդեռ մյուս աստվածները սակավ են հարգված, նրանցից շատերը միայն մեկ եզ և երկու ոչխար են ըստանում։

Խալդին երրորդության մեջ առաջին տեղն իրեն է վերապահում։ Նրա պաշտամունքն այնքան ժողովրդական էր, որ կարելի է նրան կոչել իսկական, բուն ուրարտական աստված։ Նշված Կանոնադրության մեջ Խալդիի անունը տասնինն անգամ հիշատակվում է զանազան առումներով։ Բացի Ḫaldie nipsidi'aali-ից, 6 ուլ և Ḫaldie urpue, 17 եզ, 34 ոչխար, մատաղ են մատուցում հետևյալներին.

$^{d}$Ḫaldina-ue BE.LI$^{pl}$
$^{d}$Ḫaldini iniriašie
$^{d}$Ḫaldini alsuišie
$^{d}$Ḫaldini dirušie
$^{d}$Ḫaldina-ue BABI
$^{d}$Ḫaldini(ni) arnie
$^{d}$Ḫaldini niribie
$^{d}$Ḫaldini susini
$^{d}$Ḫaldini dašie
ILANI $^{d}$Ḫaldini ALI-ni
$^{d}$Ḫaldina-ue $^{am}$A.SI$^{pl}$
$^{d}$Ḫaldini ušmašie

Սրանցից յուրաքանչյուրին հասնում է մեկ եզ և երկու ոչխար, բացի $^{d}$Ḫaldina-ue $^{am}$A.SI$^{pl}$-ից, որն ստանում է երկու եզ և չորս ոչխար։ Ուրեմըն, վերջինը համեմատաբար ավելի կարևոր և արտոնյալ է։ Ենթադրվում է, որ «խալդյան բանակի» մասին է խոսքը, բայց քանի որ $^{d}$Ḫaldina-ue

BE. LI նշանակում է «խալդյան զենքեր», հնարավոր է, որ A. SI-ն Խալդիի քուրմերը լինեն։

[d]Ḫaldini bedišani-ն, ուրիշ լեզուների աստվածների հետ միասին, երեք եզան և 30 ոչխարի մատաղ է ստանում Իշպուինիի և Մենուայի կյանքի համար։ Իշպուինին և Մենուան պարտեզ և խաղողի այգի են տնկել, իսկ Խալդին երեքական ոչխար է պահանջում երեք դեպքերում՝ երբ պարտեզը guduli լինի, խաղողի այգին tanuli լինի և երբ mešuli[1]։ Ուլերի զոհաբերումը անվանվում է nipsidi’aali կամ nipsiduli, իսկ եզներինը և ոչխարներինը՝ urpue կամ urpuali։ Ի՞նչ նրբերանգ կա այս երկու տեսակ զոհաբերությունների միջև։ Անմիջական զոհաբերության կամ նվիրաբերման մասի՞ն է խոսքը։ Հնարավոր չէ գուշակել[2]։ Խալդին մատաղ է ստանում իր զանազան հատկությունների համար՝ iniriaše, alsuiše, diruše, daše, ušmaše, որոնց ճշմարիտ իմաստը հայտնի չէ, բացի alsuiše «մեծություն», ušmaše «շնորհ», iniriaše «թագավորություն» (?)[3]։ Զոհաբերությունը սահմանված է նաև Խալդիի susi-ին «դռնախորշին» և Խալդիի arni-ին (?)[4], ինչպես և Խալդիի niribi-ին[5]։ Arni-ի հարաբերությունը [d]Arni աստծու հետ (Կանոնադրության 12-րդ տող) վիճելի է մնում. նույն վիճակն է նաև [d]Ardi աստծու (23-րդ տող) և Ardi-ni-ի վերաբերյալ։

Խալդին, որպես աստվածների առաջնորդ, իր սրբավայրերն ուներ պետության բազմաթիվ կետերում։ Արձանագրություններում շեշտվում է, որ այսինչ քաղաքը կամ այնինչ դուռը հիմնադրվեցին Խալդիի անունով[6]։

---

[1] Ենթադրում են բերքատվության երեք պահերը. mešuli—meše-ից («նվիրատվություն», «տուրք») հավանաբար նշանակում է այն պահը, երբ այգին միրգ է տալիս։

[2] Եթե ’aali-ն անջատ բայ է, հավանաբար, նա համարժեք է urpue-ին, փոխանակ upue, aali։ TAK գաղափարանիշը (տող 30) ունի ուրարտական իր համազորը՝ urpuali—Կանոնադրության երկրորդ պատճենում (տող 91—92), որ կարող է թելադրել nipsidiali ընթերցումը։ № 16-ում Մենուան, որ կառուցել էր susi (=BAB մեր Կանոնադրության մեջ), մեկ ուլ է նշանակում Խալդիի nipsidulini և մեկ եզ՝ Խալդիի urpulini։ Երկու այս ձևերը գերունդիվներ են՝ հայցական հոլովով, համաձայնեցված խնդիրների՝ ուլի և եզան հետ։

[3] Դրանք գոյականներ են՝ še-ով, տրական հոլովով՝ iniriaše, iniriašie և այլն, որոնք Խալդիի հատկություններն են ցույց տալիս։ Daše-ի և diruše-ի իմաստը հայտնի չէ։ Iniriaše հանդիպում է № 112Ա 4-ում։

ա [d]Ḫaldiše masi(ni).

բ ILU iniriaše uštuni, ոչ [ILU]iniriaše, որովհետև նույն բառը քիչ հետո երևան է գալիս առանց ILU-ի, տող 11—esidini iniriaši... և թվում է, թե ուրարտական «աստված» բառն է՝ ըստ Ծերեթելու։

[4] Ըստ Ծերեթելու arni նշանակում է «շնորհ», bedi-ni՝ «ամբողջ» և niribi՝ «գանձ»։

[5] №№ 56, 66, 70. Ḫaldi ALU tini (ոչ թե ILU, ինչպես Լեհման-Հաուպտն է ենթադրում)։

[6] Ḫaldini ALI-ni քերականորեն վատ է բացատրվում. սպասելի էր Ḫaldinaue, ինչպես Ḫaldinaue BABI։

Այդ կարգի հիմնադրումների մեջ նրա պաշտամունքը, անշուշտ, ավելի ջերմեռանդորեն էր կատարվում։ Դրա պատճառով Կանոնադրությունը հատուկ տեղ էր վերապահում նրանց՝ $^{d}$Ḫaldinini ALI-ni, $^{d}$Haldinaue BABI — նկատի ունեն, անտարակույս, նման հիմնադրություններ։

Թեյշեբան նույնպես իր դուռն ուներ Էրիդիանի կամ Իրդիա քաղաքում՝ $^{d}$Tešeba BAB $^{alu}$Eridiani։ Արդինի աստվածը նույնպես իր դուռն ուներ Ուիշինի քաղաքում՝ $^{d}$Ardini BAB $^{alu}$Uišni-ni կամ Uišini.

Կային նաև տեղական աստվածություններ։ Թվում է, թե ամեն քաղաք, ամեն շրջան ուներ իր տեղական կամ նախընտրյալ աստվածը։ Quera-ն ավելի շուտ Արծվաբերդի աստվածն էր, Ḫuli-ն՝ Գյուղակի աստվածը, Elipri-ն՝ Արճեշի աստվածը, Արծունիունի կամ Արծուն քաղաքը (=Բերկրի) ուներ իր աստվածը՝ $^{alu}$Arṣuniunini ILU, Ծուինի քաղաքը իր աստվածը՝ $^{alu}$Ṣuininaue ILU[1]։

Պանթեոնի մի քանի անդամներ անջատ խումբ են կազմում։ Դրանք նվաճված շրջանների աստվածներն են, որոնց Մհերի Դռան Կանոնադրությունը կոչում է ILANI LIŠANI՝ «օտար լեզուների աստվածներ»։ Ավելի ճիշտ կլիներ ասել օտար երկրների աստվածներ, բայց նվաճված և պետության միացված երկրների։ Օտար աստվածներին ընդունելով ազգային պանթեոնը՝ հաստատվում և կնքվում էին կատարված անեքսիաները։ Այդ խմբին են պատկանում՝ $^{alu}$Ardininaue ILU, $^{alu}$Qumenunaue ILU, $^{d}$Tešeba BAB $^{alu}$Eridiani, $^{d}$Ardini BAB $^{alu}$Uišni-ni, $^{d}$Uainaue BAB $^{alu}$Niši...ni, $^{matu}$Babanaue (ILU), $^{matu}$Alganinaue (ILU)[2]։ Առաջինը՝ Արդինի քաղաքի աստվածը՝ Մուսասիրի աստվածն է, նրա մեծ սրբավայրն արժանանում էր Ուրարտուի առաջնորդների հատուկ շնորհներին։ Կումենի քաղաքը, Բաբանի երկիրը մտնում են Մենուայի նվաճումների մեջ։ Ալգանի երկիրը և Ուշինի քաղաքը մեզ ծանոթ են Արգիշտիի արշավանքների պատմությունից[3]։ Հետևաբար, Ալգանին և Ուշինին նվաճվել են Մենուայի կողմից։

Էրիդիայում արդեն ճանաչել են ասուրական վավերագրերի Իրիդի քա-

---

[1] Ṣuini, որտեղից և Ṣuini-(i)ni՝ «Ծուինական»։ Ṣue (լիճ), Ṣu(e)ini (լճի քաղաք)։ Պե՞տք է այն տարբերել $^{d}$Ṣiiuini-ից՝ № 85, Կարախանում, լճի ափին։ Arṣuniuni կամ Arṣuni (և Բագրևանդում Արենի գյուղ) թվում է, թե մոտենում է $^{d}$Arṣibedini-ին և Arṣibini-ին, № 55։

[2] № 19։ Babani գուցե (լեռնային) երկիր է նշանակում։ Baba-ից (լեռ) և խուրրիական papaḫu-ից (հյուսիս)՝ լեռների ծովեզրային կողմ։ Իսկապես, այդ անունով մի շարք երկրներ կային Մանայում, Դիաուեխիում և Արզաշենի շրջանում։

[3] № 111, 8 և 9։ Algani-ն գտնվում էր Ասորեստանի սահմանի վրա, որը թույլ է տալիս նույնացնել այն հայ հեղինակների Ալկիի հետ (ժամանակակից Էլկին)։ Ušini-ն Ուրմիա լճի մոտի Ուշնուն է։

ղաքը՝ Արևմտյան Տիգրիսի վրա գտնվող այսօրվա Ռեդվանը[1]։ $^{d}$Nalaini-ն պիտի նույնպես օտար աստված լիներ, եթե իր անունն ստացել է ասուրական վավերագրերում հիշատակված՝ Արզանենեում գտնվող Նալ լեռից՝ «Նալական աստված»։ Ո՞վ էր նա և ո՞վ էր $^{alu}$Ṭušpaninaue ILU կամ — ըստ երկրորդ պատճենի ավելի որոշակի գրության՝ $^{alu}$Ṭušpanaue ILU — տուշպացիների (քաղաքի) աստվա՞ծ։ Հայտնի չէ։ Մայրաքաղաքն իր սեփական աստվածն ունե՞ր։ Կա և մեկ ուրիշ աստված, որը կոչվում է Ṭušpuea, որի հարաբերությունը Տուշպայի հետ անորոշ է մնում։

Ինչպես Կանոնադրության երկրորդ պատճենն է ցույց տալիս, Լուսին աստծու՝ SIN-ի անունը Šielardi էր։ Գայթակղեցուցիչ է ածանցել այդ բառը šiela («կին կամ քույր») և ardi («արև») բառերից։ Արևելքում հին ժամանակներից մինչև մեր օրերը լուսինը նկատվում է որպես արևի քույրը։

$^{d}$Sardi-ն հիշեցնում է Սարդուրի, Սարդաուրի անունը։ Այս մոտեցումը տարօրինակ չի թվա, եթե նկատի առնենք Խալդի, Խալդիրի (Խալդիրի-ուլխիի մեջ, № 27)։ Սարդաուրի քաղաքն իր անունը պարտական է եթե ոչ Սարդուրիին, գոնե Սարդի աստծուն։

$^{d}$Šebetu և Շեբեթերի(ա) քաղաքը, № 31, նույն հարաբերության մեջ են, ինչ որ Սարդին ու Սարդաուրին (այսօրվա Սարդևանը)։ Մենք առիթ կունենանք անդրադառնալու այս -ri վերջածանցին։ $^{d}$Ṣinuiardi-ն, որի անունը կազմված է ինչպես Շիելարդին, գուցե թաքցնում է Ծինա-լիբի անձնանվան ծագումը (№ 129Դ և № 135), եթե այս վերջին տեքստում այն չպետք է կարդալ ավելի շուտ Ծիմալիբի։

Կանոնադրությունից դուրս հայտնի են ևս երկու աստվածներ՝ Ḫuli (№ 56) և Aniqu (№ 151)։ Զարմանալի է, որ ուրարտական պանթեոնը մնացել է այնպիսին, ինչպիսին որ կար Իշպուինիի և Մենուայի օրով, չի հարստացել նորամուտ աստվածների ընդունմամբ։ Արգիշտին, Սարդուրի II-ը և Ռուսան իրենց պետության հյուսիսում մեծ նվաճումներ կատարեցին, և սպասվում էր գրավված երկրների աստվածներ տեսնել ուրարտական միջավայրում։ Սակայն այդ չկա։ Գուցե այն պատճառով, որ այդ երկրները բավական հետամնաց էին, ինչպես մենք վերևում հիշեցինք, և ուրարտացիները նրանց բարբարոս աստվածներին արժանի չեն համարել այն պատվին, որին արժանի էին քաղաքակիրթ պետությունների աստվածները։ Ուրարտական թագավորները, ընդհակառակն, աշխատում էին

---

[1] **Forrer**, Provinz., էջ 30։ Ըստ այս գիտնականի՝ Կանոնադրության Դիրաուեն նույնանում է ասուրիների Դիրրայի հետ՝ Ռեդվանի շրջանում, իսկ ILANI atqananaue-ն՝ Uatqun կամ Atqun քաղաքի հետ (հիշատակված Աշշուրնասիրպալ III-ի կողմից)՝ Պասատե լեռներում (էջ 37)։ Հավանական չէ։

այդ բարբարոսներին պարտադրել իրենց պետության աստվածները։ Այսպես, Ռուսան Սեանա լճի 23 իշխանությունները գրավելուց հետո մի տաճար կառուցեց՝ այնտեղ հաստատելու համար Թեշեբա աստծուն։

Պետք է նկատի ունենալ, որ ուրարտական վավերագրերը չեն հիշատակում ոչ մի իգական աստվածություն։ Դա առավել զարմանալի է այնու, որ Խալդի աստվածը, որը Մուսասիր երկրում նույնպես հարգված էր, այնտեղ ամուսին ուներ, որը Բագբարտու էր կոչվում։ Այդ աստվածուհին նույնիսկ մի մատանի ուներ, որը ծառայում էր իր հրամանները կնքելու կամ վավերացնելու համար, ինչպես Սարգոնն է նշում[1]։ Խալդին Ուրարտուում ամուսին ունե՞ր արդյոք և ինչպե՞ս էր կոչվում նա։ Գուցե Բագբարտուն իրանական ցեղերի ազդեցությամբ արված նորամուծություն էր, եթե, ինչպես ենթադրվում է, նրա անունը ծագում է իրանական bag «աստված»-ից։ Այսուհանդերձ, Վանում գտնված մի ոսկյա մատանի կա, որը երկու կանացի կերպարանք է ներկայացնում, ավելի շուտ աստվածուհի և թագուհի, քան թագուհի և սպասուհի։

Գոյություն չունեն տվյալներ կրոնական զգացումների և այն ձևերի մասին, որոնցով դրանք արտահայտվում էին։ Թվում է, թե կրոնական միտքը հիմնված էր երկյուղի վրա՝ աստծու բարկության առջև։ Սարգոնը պարծենում է, որ «աստվածությունից վախենում է», որ «երկյուղած վերաբերմունք» է ցուցաբերում աստվածների խոսքի նկատմամբ, մինչդեռ իր հակառակորդ ուրարտացի Ուրսային կամ Ռուսային Ասորեստանի թագավորն ամբաստանում է, որ նա «լեռնցի է, մարդասպանների ցեղից է», իր կրոնական պարտականությունների նկատմամբ անգիտակից է[2]։

Աստվածների բարկությունից խուսափելու և նրանց բարեհաճ տրամադրությունը շահելու համար պետք է աղոթել, նվիրատվություններ անել և զոհաբերություններ կատարել։ Գինով զոհաբերությունը անծանոթ չէր։ Սարգոնն ասում է, որ Մուսասիրի տաճարում բրոնզե մի մեծ անոթ կար, որն ուրարտական թագավորները զոհաբերության գինով էին լցնում զենումների ժամանակ[3]։

Ասուրերենը բազմաթիվ տերմիններ է պարունակում տարբեր տեսակի աղոթքների ու զոհաբերությունների համար։ Ուրարտուում մեզ ծանոթ են հետևյալ բառերը՝ ḫutia «աղոթել», urpu «զոհաբերել», nipsidu «այծեր զոհաբերել», նաև ḫalu, ašḫu «մատաղ անել» և, գուցե, niqa (ասուրական niqu բառի փոխառությո՞ւն) «զոհ կամ մատաղ անել»։ Այս բառերի

---

[1] **Thureau-Dangin**, Une relation de la huitième campagne de Sargon, էջ 61 (տող 385)։

[2] Նույն տեղում, էջ 17—21, տողեր 92—93, 113, 121։

[3] Նույն տեղում, էջ 63 (տողեր 357—398)։

ճիշտ իմաստը դեռևս վերջնականապես չի հաստատված։ Զոհվելիք անասուններն էին՝ paḫini (կամ paḫani) «եզ», šuše «ոչխար» և ուլ, որի ուրարտական անունը հայտնի չէ, որովհետև միշտ արտահայտվել է URIṢU ṢIḪRU գաղափարանիշերով, որ նշանակում է «փոքր այծ»։ Ասորեստանցիները սովորություն ունեին զոհելու ոչ միայն խոշոր ու մանր անասուններ, այլև ամեն տեսակ թռչուններ։ Նվիրում էին նաև հաց, գինի և զանազան սննդեղեն. աստվածները մարդկանց պես կարիք ունեին կազդուրվելու։

Ուրարտացիներն աստվածների նկատմամբ, անշուշտ, բաժանում էին այդ տեսակետը, բայց նրանց վավերագրերում այդ մասին ուղղակի ցուցմունք չենք գտնում։ Ասենք, № 161 պակասավոր արձանագրության մեջ կարդացվում է ᵈḪaldi AKALU-ni, ᵈḪaldina BABU AKALU-ni։ Արդ, akalu նշանակում է «ուտել»։ Մի ուրիշ արձանագրություն (№ 56) պատվիրում է qarmeḫi-ով (հավանական է՝ մի չափ) գինի մատուցել Խուլդի և Արուբանի աստվածներին։ Եթե այդ տեղերի իմաստը դա է, ուրեմն պետք է ընդունել, որ ուրարտական աստվածները կերուխում էին անում, ինչպես նրանց ընկերները՝ Ասորեստանում։

Մեծ զոհաբերությունները կատարվում էին ամիսը մեկ անգամ՝ նորալուսնին, ինչպես պատվիրում է Մհերի Դռան Կանոնադրությունը։ Ասորեստանցիները մատաղներ և զոհաբերություններ էին կատարում ոչ միայն նորալուսնին, այլև լուսնի երկու այլ փուլերին։ Ուրարտացիները սույն կետում ասորեստանցիների հետևորդները չէին։ Նորալուսնի օրը միայն զենելու սովորությունը ավելի հին է ու հատուկ շումերական աշխարհին։

Քրմության մասին տեղեկություն չկա, ոչ էլ կարելի է իմանալ, թե թագավորն ինքն իրեն նկատում էր որպես Խալդիի առաջին քուրմը, Ասորեստանի թագավորների նման, որոնք պարծենում էին Աշշուրի մեծ šangu «քուրմ» լինելու համար։ Մանոթ վավերագրերում ուրարտացի թագավորները քրմի տիտղոս չեն կրում։

Այս «լեռնցիները», գուցե, այնքան ջերմեռանդ չէին, որքան հավակնում էին լինել Ասորեստանի թագավորները, այնուհանդերձ, նրանք բավականաչափ տոգորված էին կրոնական ոգով, որ հատուկ էր իրենց ժամանակաշրջանին։ Ինչ որ ձեռնարկում են, նրանք անում են Խալդիի անունով և դնում Խալդիի պաշտպանության տակ։ Նույնիսկ պատերազմը թագավորը չէ, որ սկսում էր, այլ Խալդի աստվածը, որ առջևից էր գնում, հարկադրում թշնամուն անձնատուր լինել և ապա թագավորին առաջնորդում էր այնտեղ հաղթանակի պտուղները քաղելու։ Այս առումով շատ հետաքրքիր է, որ բոլոր ռազմական նկարագրությունների մեջ հանդիպում ենք նույնատիպ նախադասությունների՝ ᵈḪaldini uštabi «Խալդին մեկնեց», masini-(e) giššuri-(e) karuni «նրա ուժերը հաղթեցին». հետևում է թըշ-

*նամի երկիրը կամ թագավորը.* Ḫaldi kuruni *«Խալդին հզոր է».* $^{d}$Ḫaldini giššuri(i) kuruni *«Խալդյան զինվորն ուժեղ է».* $^{d}$Ḫaldinini ušmašini uštabi (Menuani) *«խալդյան հզորությամբ մեկնեց» Մենուան կամ այնինչ թագավորը.* $^{d}$Ḫaldini uluštabi *«Խալդին գնաց առջևից»։*

*Ռազմական հաջողությունները, ուրեմն, Խալդիին էին վերագրվում, նրան նկատում էին պատերազմի իսկական ներշնչող և անսխալական առաջնորդ, որ տանում էր դեպի հաղթանակ։*

*Խաղաղության ժամանակվա գործունեությունը նույնպես կախում ուներ Խալդիից։ Ինչ որ անում էին, ամբողջ աշխատանքները, որ կատարում էին՝ քաղաքների հիմնադրում, պալատների, տաճարների, բերդերի կառուցում, ջրանցքների բացում՝ այդ ամենը ձեռնարկվում ու ավարտվում էր Խալդիի օգնությամբ, և նրանց մեծ մասը նրա համար էին կամ նրան էին նվիրված։ Այդ կարգի արձանագրություններն սկսվում են համարյա միշտ հետևյալ բառերով՝* $^{d}$Ḫaldi eurie *«Խալդի ստծուն, տիրոջը»։*

*Աշտապես ստծուն դիմելը եթե գրական անշունչ բանաձև չէր, անշուշտ արտահայտում էր դիցապետական (թեոկրատիկ) զգացում։ Ուրարտուի թագավորների բարեպաշտությունը հաստատվում է սրբավայրերի հանդեպ ունեցած նրանց առատաձեռնությամբ։ Խալդիի և նրա կնոջ՝ Բագբարտուի տաճարը լցված էր գանձերով՝ Ուրարտուի թագավորների նվերներով. մի քանի տասնյակ տաղանտ ոսկի, 162 տաղանտ արծաթ, 3600 տաղանտ անզուտ պղինձ, 6 ոսկյա վահան, որ կշռում էր 5 տաղանտ ոսկի. տաճարի դուռը շրջանակված էր երկու տաղանտ ոսկով, և նրա փականքը, սողնակը, բանալիները, նիգերը ոսկուց էին. կար 67 արծաթե լագան, 96 արծաթե նիզակ, 12 արծաթե վահան, 33 արծաթե կառք, 393 արծաթե բաժակ, 139 փղոսկրյա գավազան, 25 212 բրոնզե վահան, 1514 բրոնզե նիզակ, 305 412 բրոնզե սուր, 607 բրոնզե լագան և ուրիշ նման առարկաներ։*

*Կարելի է պատկերացնել այն հարստությունը, որ կուտակված է եղել Ուրարտուի սրբավայրերում և հատկապես Տուշպա մայրաքաղաքի սրբավայրերում։*

*Ուրարտուի վեհապետներն առատաձեռն էին, բարգավաճ երկիրը նրանց հնարավորություն էր ընձեռում այդպիսին լինել։ Այդ ժամանակաշրջանում Ուրարտուն հասել էր մշակույթի ամենաբարձր աստիճանին։ 713 թվականին Ուրարտուի ծաղկած պետությունը հիացրեց Սարգոնին։ Ասորեստանի թագավորը գրավիչ կերպով նկարագրել է ինչ որ տեսել է «լեռնցիների» երկրում, ինչին բոլորովին չէր սպասում՝ նրանց հետամնաց պատկերացնելով։*

*Անցած բնակավայրերի մանրամասն նկարագրությունը շատ մեծ նշանակություն ունի։*

Սարգոնը Ուրարտու մտավ Մանա երկրի կողմից։ Առաջին նահանգը՝ Ուիշդիշը, մանացիներից էր խլված և բուն Ուրարտուի մաս չէր կազմում։ Վերջինի սահմանն սկսվում էր մեծ բերդաքաղաք Ուշկաիայից՝ Մալլաու լեռան վրա, Subi և Zaranda նահանգների միջև։ Նրա շրջակայքում 115 գյուղ կար։

Սուբի և Բարի կամ Սանգիբուտու նահանգի սահմանի վրա գտնվող Անիաշթանիա քաղաքը շրջապատված էր 17 գյուղերով։

Դալայի շրջանում, Թարուի և Թարմակիսա պարիսպներով շրջապատված բերդաքաղաքներն իրենց շրջակայքում ունեին 30 գյուղ։

Քիշպալ լեռան ստորոտում, Ուլխու բերդաքաղաքի շրջակայքում, 57 գյուղ կար։ Մեկ ուրիշ քաղաք, որի կիսաջնջված անունը վերջանում է ...un-nate-ով, գտնվում էր նույն Սանգիբուտու նահանգում։ Արսաբիա լեռների գագաթներում կար հզոր պարիսպներով շրջապատված 21 բերդաքաղաք։ Այդ 21 քաղաքների անունները մասամբ ջնջվել են, մնում են միայն հետևյալները. 1. ...նիա, 2. Գիրուարզու, 3. Տաշդիսա, 4. Վերին Խունդուրնա, 5. ...ունզա, 6. Արազու, 7. Տադիշսինա, 8. Ստորին Խունդուրնա 9. Էլ... , 10. ...նակ, 11. Սիտտուարզու, 12. Ջիրմա, 13. Սուրզի, 14. Էլիադինիա, 15. Դազ..., 16. Սուրզիալդիու, 17. Արմունա, 18. Կինաշթանիա։

Սանգիբուտու կամ Բարի նահանգում, Արսաբիա և Իրիտիա լեռների արանքում, 146 գյուղ կար։

Ուբիանդա լեռների ստորոտում Արմարիլի նահանգը 7 բերդաքաղաք և 30 գյուղ ուներ։ Բերդաքաղաքներն են՝ 1. Բաբուզի, 2. Խունդուր, 3. Ալլե, 4. Սինիշպալա, 5. Սինիունակ, 6. Արնա, 7. Տարնի։

Արմարիլիում էին գտնվում նաև Արբու և Ռիար քաղաքները՝ 7 գյուղով։

Ուիզուկու լեռան մյուս կողմը, Աիադի նահանգում կային 30 բերդաքաղաք և 87 գյուղ։

Բերդաքաղաքները հետևյալներն են.

1. Անզալիա
2. Կուաիաին
3. Կալլանիա
4. Բիտաա
5. Ալուարզա
6. Կիունա
7. Ալլի
8. Արզուգու
9. Տիկկանու
10. Արդիունակ
11. Դաիզունա
12. Գեթա
13. Բանիու
14. Բիրխիլուզա
15. Դեզիզու
16. Դիլիզա
17. Աքաինդի
18. Դուաին
19. Խասրանա
20. Պարրա

21. Աիաստն
22. Անիաշտանիա
23. Բալդուարզա
24. Շարուարդի
25. Շումաստար
26. Շալզի
27. Ալբուրի
28. Սիկարրա
29. Հին Ուախախս
30. Արգիշտիունա

Արգիշտիունան և Կալլանիան հզոր բերդեր են, որոնք ամուր կառուցված էին Արսիդու և Մախուննիա լեռներում, վերոհիշյալ բերդաքաղաքների մեջտեղում։

«Ուրարտուի սահմանի ստորոտում»՝ Uaiais նահանգում կար Ուախախս մեծ բերդը, 5 պարսպապատ բերդաքաղաքներ և 40 գյուղ։ Բերդաքաղաքները հետևյալներն են.

1. Բարզուրիանի
2. Ուալտուկուիա
3. Կուստա
4. Կիպպա
5. Ասապա

Սուրի, Բարի կամ Սանգիբուտու, Դալա, Արմարիլի, Աիադի և Ուախախս նահանգներում կար 601 բնակավայր։ Տեքստը տարբերում է birtu «բերդ», bit-durani dannuti «պարսպապատ բերդաքաղաքներ», alani dannuti «ամրացված քաղաքներ» և alani «գյուղեր»։

Ուրարտուի սահմանի վրա երկու բերդ կար՝ Ուշկաիա և Ուախախս։ Ուշկաիան պաշտպանում էր Ուրմիայի կամ Մանայի մատույցները, իսկ Ուախախսը՝ «Նաիրի երկրին սահմանակից», այսինքն՝ Խուբուշկիային, փակում էր Զաբի հովտով անցնող ճանապարհը։ Դա Ուրարտուի ամենամեծ բերդըն էր՝ «արվեստով լի գործ», պաշտպանված «զինված քաջարի մարդկանցով»։ Նահանգների կուսակալները պատերազմի ժամանակ այնտեղ էին կենտրոնացնում իրենց զորքերը։ Այնտեղից էր գործում նաև զինվորական հետախուզական ծառայությունը։

Ուշկաիան շրջապատված էր հզոր պարիսպներով, որոնց հիմքը հաստատված էր ժայռի վրա, իսկ հաստությունը հասնում էր մինչև 8 արմընկաչափի կամ 4 մետրի։

Պարսպապատ քաղաքների թիվը 7 էր՝ Թարուի, Թարմակիսա և Ուախախսի 5 քաղաքները։ Առաջին երկուսը կրկնակի պարիսպ ունեին և շրջապատված էին խորունկ խրամներով։

63 բերդաքաղաքները չէին տարբերվում պարսպապատ քաղաքներից։

Արմարիլիում խունդուր ամրացված քաղաքը նույնպես երկու պարըսպով և կողքերից աշտարակներով էր շրջապատված ու կոչվում էր birtu «բերդ»։ Սանգիբուտու նահանգի 21 բերդաքաղաքները նույնպես պաշտպանված էին երկու šuši(=120) tipki «աղյուսաշար», համարյա 16 մետր

բարձրությամբ հզոր պարիսպներով։ Խոր խրամները պաշտպանում էին պարիսպները, իսկ աշտարակները բարձրանում էին մեծ դարպասի մոտ։

Աիադրիում 30 ամրացված քաղաքներն զբաղեցնում էին «ալեծածան ծովի ափը», այսինքն՝ Վանա լճի ափը, մեծ լեռների զառիթափին, որոնցից Արգիշտիունան և Կալլանիան՝ «birati dannate» «հզոր բերդեր», ամուր կառուցված էին Արսիդու և Մախուննիա լեռների վրա, չորս šuši (=240) արմնկաչափ բարձրության վրա՝ մոտավորապես 120 մետր, «երևում էին նրանց հիմքերը»։ Այդ բերդերի պահակազորը բաղկացած էր ընտիր զորքերից, «վահան ու նիզակ կրողներից»։

Ամրացված քաղաքների շրջակայքում 529 գյուղ կար։ Պետք է դրանց վրա ավելացնել նաև Sardurihurda կոչված բերդը՝ birtu, որը Ռուսան էր հիմնել Ուլխու քաղաքի մոտ, ինչպես հիշատակված է Ուլխուի նվաճման նկարագրության մեջ[1]։

Այդպիսով, Սարգոնի կողմից ավերակի վերածված բնակավայրերի թիվը հասնում է 602-ի։ Սակայն իր նկարագրության վերջում նա հայտարարում է, որ գրավել է ընդամենը Ուրարտուի 430 alani «գյուղեր», 7 nagi «նահանգներ», իսկ ըստ մեկ ուրիշ տարբերակի, որը գտնվում է նրա հիշատակարաններում, նա գրավել և հրո ճարակ է դարձրել 55 mahazi dannuti bit-durani «պարսպապատ բերդաքաղաքներ», 8 nagi «նահանգներ» և 11 birati «բերդեր»։

Սույն թվերից ո՛չ մեկը, ո՛չ մյուսը, որ հակասական են, չեն համապատասխանում այն իսկական քանակությանը, որ արտացոլված է արշավանքի պատմության մեջ։

Թվում է, որ Սարգոնի անցած շրջաններում իրոք 602 բնակեցված կետեր կային, բայց նրանց միայն մի մասն է, որ կործանվել էր։ Ինչպես, հեշտ չէր հողին հավասարեցնել 72 քաղաք, «այնքան արվեստով» ամրացված և պաշտպանված «ահավոր տեսքով մարտիկների կողմից»։ Սարգոնն իր սխրագործությունները չափազանցել է։ Ասենք, նրա պարծենկոտությունը հերքվում է հաջորդող իրադարձություններով։ Անշուշտ, Ուրարտուն ամբողջապես ավերակի չէր վերածված, քանի որ Ռուսայի հաջորդ Արգիշտին իրեն բավական հզոր էր զգում Ասորեստանին զսպելու համար։ Սարգոնի որդի Սեննաքերիբը ղողում էր Արգիշտիի սպառնալիքների դիմաց և ամեն միջոցներով աշխատում էր շեղել ահավոր հակառակորդի պատրաստած հարվածը։ Ութերորդ արշավանքի նկարագրությունը ճարտասանության ոգով է տոգորված և մեղանչում է ճշմարտության դեմ, ուստի և հեռու է վավերական լինելուց։ Սարգոնը ներխուժել էր Ուրարտու

[1] B. Meissner, Die Eroberung der Stadt Ulhu auf Sargons 8. Feldzug, «Zeit. f. Assyr.», XXXIV, 1922, էջ 113—122։

Զագրոսի արևելյան փեշերով և մինչև Վանա լճի հյուսիսային կետն առաջ խաղալուց հետո ստիպված եղավ ետ դառնալ նույն լեռան արևմտյան փեշերի վրայով, գուցե Ուրարտուի վասալ՝ Մուսասիրի թագավոր Ուրզանայի ապստամբության պատճառով։

Այդքան բնակավայրերի նկարագրությունը նույնպես ապացույց չէ այն բանի, թե նրանք ավերվել են նվաճողի կողմից։ Հնարավոր է, որ թագավորական գրագիրները պաշտոնական ցուցակներ են ունեցել իրենց տրամադրության տակ, որոնք ձեռք են բերվել երկրում արշավանքի ժամանակ կամ Աշշուրի այնքան լավ կազմակերպված լրտեսության միջոցով։ Ցուցակը հաշվում է այնքան անուններ, որքան կային մինչև համաշխարհային պատերազմը Վանա լճի արևելյան տերիտորիայում՝ մինչև Զագրոսի լեռները, այսինքն՝ Վանի, Թիմարի, Արճակի, Հայոց-ձորի չորս նահիեներում և Մախմուդիեի, Բերկրիի ու Խոշաբի երեք կազաներում, Ներառյալ լճի հյուսիսում Արճեշի կազան և Զաբի հովտում՝ Աղբակի շրջանը։ Որովհետև այդ ամբողջ տերիտորիայում, ըստ Salnamé-ի՝ 1898 թվականի թրքական պաշտոնական տարեցույցի, կար ընդամենը 622 բնակեցված վայր[1]։ Սարգոնի ավերումները տեղի են ունեցել սույն տերիտորիայի սահմանների ներսում։ Այն մասերը, որոնք զերծ էին մնացել ավերումներից, կարելի է որոշակի ցույց տալ։ Դրանք են՝ մայրաքաղաքի շրջանից նահիե մերքեզին կամ Վանը՝ 26 գյուղերով, Թիմարի նահիեն՝ 61 գյուղերով, Հայոց-ձորի նահիեի 37 գյուղերի կեսը, որոնք լճի կողմն էին ընկած, Արճեշի 17 գյուղերի հյուսիսային մասը, Աղբակի 144 գյուղերի հարավային մասը. ուրեմն, 150 գյուղ Սարգոնի երթուղուց դուրս էր մնում։

Հետևապես, այն տերիտորիան, ուր Սարգոնը 602 գյուղ է հաշվում, 1898 թվականին միայն (622—150)=472 գյուղ կար։ Թագավորի մեծ դպիր Նաբու-Շալլիմ-շունուն, Սարգոնի «մեծ գիտունը, արվեստի վարպետը», որին հանձնարարված էր արշավանքի պատմությունը գրել, շատ եռանդ է ցուցաբերել և ասորեստանյան զորքերին ավելի ավերումներ է վերագրել, քան նրանք ի վիճակի էին կատարելու։

Այդ կապակցությամբ շատ ուսանելի է նրա պատմածը Ուլխու քաղաքի մասին։ Դա մի ամրացված քաղաք էր Կիշպալ լեռան ստորոտում։ Ռուսան իր հպատակներին ցույց էր տվել «ջրերի ցայտումը», նա ջրանցք էր փորել և Եփրատ գետի չափ առատ ջուր էր հոսեցրել։ Նա անհամար վտակներով ոռոգել էր դաշտերը, անապատ տերիտորիան ծաղկուն պարտեզների վերածել և անձրևի նման՝ մրգեր ու խաղող թափել այնտեղ։ Սոսինները, šurathu-ները, անտառի նման զովաշունչ ջուր էին

---

[1] Маевский, նշվ. աշխ., էջ 199։

տարածում այդ մարզի վրա։ Նա մշակել էր տվել 300 խմեր վարելահողեր, ուր հացահատիկ էր ցանվում, և իր անապատ տերիտորիայի տարածությունները դարձրել էր մարգագետիններ, ուր ամառ-ձմեռ խոտ կար և արածում էին անասունները։ Երկիրը ջրով ծածկված լինելով՝ նա սովորեցրել էր ամբարտակ բարձրացնել։ Իր թագավորական բնակության համար ջրանցքի վրա պալատ էր կառուցել։ Նրա կողմից Կիշթեիր լեռան վրա հիմնադրվել էր մի բերդ՝ birtu, և անվանվել Sardurihurda։ Ուլխուն մի այլ ամրացված տեղ էր։ Այդտեղ տեղաբաշխված զորքերը հենց որ իմացան հարևան քաղաքներում Ասորեստանի թագավորի արածը, գիշերով փախան դեպի լեռների լանջերը։ Սարգոնը մտավ քաղաք և «նրա ամրացված պատերը փշրանքի վերածեց, ինչպես խեցաման, դրանք հողին հավասարեցրեց»։

Պատկերը գեղեցիկ է։ Սակայն շատ դժվար է այդ փոքրիկ դրախտը գտնել արշավանքի այն երթուղու վրա, որը մենք գծեցինք, եթե նույնիսկ հենվենք Թյուրո-Դանժենի նախընտրած երթուղու վրա։ Ամենանշանավոր ջրաբաշխական գործը՝ Մենուայի հուշակավոր pili «ջրանցքը», այժմ ծանոթ է Շամիրամի անունով։ Ռուսան, անշուշտ, նույնպես ջրանցք է բացել Քեշիշ կոչված լճից դեպի իր նոր մայրաքաղաքը՝ Թոփրակ-կալեի ստորոտում, բայց առանց դիմելու ամբարտակների։ Համենայն դեպս, Սարգոնը չի մտել Վանի շրջանը։ Սարգոնի ներխուժած շրջաններում, ապարդյուն որոնումներից հետո, կարելի չէ գտնել այնպիսի մի վայր, որն առավել կամ նվազ չափով նման լիներ այն երկրին, որի բարերարությունը վերագրում էին Ռուսային։ Ստիպված ենք լինում կանգ առնել Մենուայի ջրանցքի վրա։ Այս ընտրությունը արդարանում է հետևյալ նկատառումներով։

Ըստ մեր վավերագրի՝ Ռուսան սովորեցրել է ամբարտակներ կառուցել։ Սա ճիշտ չէ։ Այդ պատիվը պատկանում է Մենուային. նրա անունով կառուցված ամբարտակները դիմացել են դարերի ավերիչ ուժերին և դեռ մեր օրերին հիացմունքի առարկա են դառնում։ Ռուսան, ըստ նույն վավերույթի մեկ ուրիշ տարբերակի, երկրում առաջին անգամ ուղտեր է բերել, որպեսզի նրանց օգտագործի ամբարտակների կառուցման համար։ Դա նույնպես ճիշտ չէ։ Առնվազն Արգիշտիից ի վեր այդ անասունը հայտնի էր երկրում։ Վեցերորդ արշավանքում Արգիշտիի բերած ավարի մեջ կար նաև 184 ուղտ, յոթերորդ արշավանքում՝ 100 ուղտ, նույնպես իններորդում։ Ռուսայի նախորդը՝ Սարդուրին, Էրիախինի երկրում ձեռք բերած ավարի մեջ 115 ուղտ էր հաշվում։

Սարդուրիխուրդա քաղաքը, անտարակույս, Ռուսայի կողմից չի հիմնվել։ Նրա անունն արդեն ցույց է տալիս իսկական հիմնադրին՝ հանձին երկու Սարդուրիներից մեկի՝ առաջինի կամ ավելի շուտ՝ երկրորդի։

Գալով «չրերի ցայտումին» և ջրանցքին, որը Եփրատի նման հոսում էր և «անհամար վտակներ» ուներ, ուրիշ բանի մասին չէ խոսքը, եթե ոչ Մենուայի pili-ի և արտակարգ առատ այն ակունքի մասին, որը նրան սընունդ էր տալիս։

Մենուայի հրաշալի գործը և իր տեսակի մեջ միակ այդ ակունքը, որը մեկ վայրկյանում 1500—3000 լիտր ջուր է մատակարարում՝ նայած տարվա եղանակին, անշուշտ, ասորեստանցիների վրա տպավորություն է գործել։ Հայկական լեռնաշխարհի և ոչ մի վայր առավել կամ պակաս չափով չէր համընկնի մեր վավերագրի նկարագրության հետ։ Մենուայի pili-ն՝ Շամիրամի ջրանցքը, բոլոր հայտնի ջրանցքների համեմատությամբ որպես մի Եփրատ է ներկայանում։ Ուրիշ ձևով ասած՝ Մենուայի ջրանցքը ջրանցքների միջև այնպիսին է, ինչպիսին Եփրատը՝ գետերի միջև։

Հացահատիկի մշակման համար հատկացված հողի մասին հիշատակումը նույնպես ցուցադրական է։ Ջրանցքի շրջակայքը՝ Հայոց-ձորը, մեծ քանակությամբ և լավագույն որակի ցորեն է արտադրում։ Սակայն 300 իմեր հողը, որը նույնքան հեկտարից պակաս է, միմիայն մի մեծ դաշտի մակերևույթ է, ուրեմն, անբավարար է հացահատիկի առատությունը փառաբանելու համար, ինչպես անում է մեր դպիրը։ Հավանական է, պալատի մոտ գտնվող մի հատուկ դաշտի մասին է խոսքը։

Ինչ վերաբերում է «մարգագետիններին, ուր խոտն ու արոտը չէին դադարում ամառ-ձմեռ», դա մաքուր հնարանք է։ Ձմռանը հայկական հողը ծածկվում է ձյունի այնքան թանձր շերտով, որ անհնար է մտածել որևէ բուսականության մասին։ Սա թագավորական դպիրի հռետորական անփութության արդյունք է։

Եթե մեր նույնացումն ընդունելի է, ապա Ուլխու քաղաքը և Սարդուրիխուրդա բերդը պետք է փնտրել Մենուայի ջրանցքի շրջանում։ Կիշտեիր լեռան վրա գտնվող Սարդուրիխուրդան, գուցե, Բոլ-դաղ լեռան կատարի հոյակապ բերդն է, որը շրջապատված է զուգահեռ երեք պարիսպներով։ Լեռան ստորոտում տեղավորված է Աստվածաշեն գյուղը, ուր հայտնաբերվել է Սարդուրիի մի արձանագրությունը (№ 137)։ Դա ցույց է տալիս, որ Բոլ-դաղի բերդ Սարդուրիխուրդան կարող էր լինել Սարդուրիի գործը։

Ջրանցքի ակունքը լեռնաշղթայի ստորոտումն է, որը տարածվում է Հայոց-ձորի երկայնքով և փակում այն հարավային կողմից։ Այնտեղից մեկուկես կիլոմետր հեռավորության վրա գտնվում է Մժնկերտ գյուղը, որտեղ մեր այցելության ժամանակ տեսանք մի հին քաղաքի մնացորդներ։ Նրա դիրքը թույլ է տալիս այնտեղ փնտրելու «Ուլխու բերդաքաղաքը՝ Կիշպալ լեռան ստորոտում»։

Ուլխու քաղաքի նկարագրության վերջում, մի աղճատված հատվածում, կարծես ասվում է, որ Սարգոնը մտել է Ռուսայի պալատը և այն փըշ-

րանքի վերածել։ Սա արդեն գալիս է հաստատելու մեր ամբողջ նույնացումները, որովհետև Սարգոնը, մեր կարծիքով, չի հասել մինչև Մեննուայի ըրրանցքի հովիտը։ Մեր տեքստի համաձայն, Ուլխուն գտնվում էր Սանգիբուտուում, որը Հայոց-ձորը չէ. բայց ինչ որ ասված է Ուլխուի մասին, կատարյալ կերպով համարվում է Հայոց ձորին։ Մանրամասն նկարագրությունը ավելի վստահելի տեղեկություններ է հաղորդում, քան դպիրի աշխարհագրական գիտելիքները։ Վերջինս, որ իր վարկը գցել է Ռուսային վերագրելով այնքան սուտ ու սխալ գործեր, կարող է նույնն արած լինել նաև Սարգոնի նկատմամբ։ Նախ, ինչ որ նա թագավորի անձին է վերագրում, չպետք է տառացի ընդունել։ Անտարակույս, ասսուրական բանակն էր, որ երկրում ցրվելով կողոպուտ ու թալան էր կատարում։ Հավանական է, որ նահանջի ժամանակ նրանք մտել են Հայոց-ձոր և վնասներ պատճառել, ավերումներ կատարել։ Պաշտոնական գրագիրները, սովորաբար, ինչ որ կատարում էին զինվորները, թագավորին էին վերագրում, որպեսզի ներբողի ոգևորության ուժով դա թագավորի անձնական սխրանք համարվեր, ինչպես Ուլխուի դեպքում։

Ինչ էլ որ լինի, մեր վավերագիրն զգալիորեն նպաստում է պատկերացընելու Ուրարտուի տնտեսական դրությունը։ Երկրի բարեկեցությունը հիմնվում էր երկրագործության վրա։ Իր ճանապարհին՝ Կալախից Ուրարտու, Սարգոնը անցավ շատ երկրներով, որոնց հպատակեցրեց և ստիպեց հարկ վճարելու, որը միշտ անասուն տալում էր կայանում։ Ոչ մի տեղ հացահատիկի հարց չի արծարծվել։ Հենց որ անցավ Ուրարտուի սահմանը, ամենուրեք հացահատիկի մեծ պահեստներ գտավ։ Ուիշդիշ սահմանամերձ նահանգում «բազմատեսակ և անհամար հացահատիկի պահեստներ» կային։ «Ես բացի այդ պահեստները,— ասում է Սարգոնը,— և իմ զորքերը կերակրեցի անհամար քանակությամբ հացահատիկով»[1]։ Մերձավոր նահանգը Սուբին է. այստեղ «ես այրեցի հունձքն ու անասնակերը,— ասում է նա,—պահեստները բացեցի, ուր հացահատիկ էր կուտակված, հսկայական քանակությամբ հացահատիկ կերցրի իմ զինվորներին»[2]։

Սարգոնն անցավ Բարի կամ Սանգիբուտու նահանգը, որտեղ Թարուիի և Թարմակիսայի պահեստները, ինչպես նաև Ուլխու քաղաքի պահեստները նույն ճակատագրին արժանացան. լուսանկարչորեն կրկնվում են միևնույն նախադասությունները[3]։

Նույն նահանգի բերդաքաղաքների շրջանում «բազում օրերի ընթացքում պահեստներում կուտակվել էին մեծ քանակությամբ գարի ու ցորեն՝

---

[1] Thureau-Dangin, Relation, *տ. 166։*

[2] *Նույն տեղում, տ. 186։*

[3] *Նույն տեղում, տ. 197—219։*

երկրի և մարդկանց գոյության համար։ «Ես,—ասում է Սարգոնը,— ձիու, ջորու, ուղտի և իշի մեջքերի վրա, իմ ամբողջ բանակի միջոցով տեղափոխել տվի իմ ճամբարի ներսը, ինչպես սովորաբար անում են, և կուտակումներ արեցի։ Առատ ու կուշտ սնունդ տվի իմ մարդկանց և աճագին պաշար պատրաստեցի Աշշուրի երկիր վերադարձի համար. բոլորն ուրախ ու գոհ էին»[1]։

Արմարիլիում «հացահատիկը կուտակված էր պահեստներում», ինչպես նաև Աիադիում. պահեստները բացվեցին, և հացահատիկը զորքերին տրվեց ուտելու համար[2]։ Ուաիաիսը վերջին նահանգն էր, որ Սարգոնն անցավ՝ Խուբուշկիա, ապա Մուսասիր մտնելու համար։ Դա ուրարտական միակ նահանգն է, ուր Սարգոնը պահեստներ կողոպտելու մասին ոչինչ չի ասում։ Թվում է, թե ո՛չ Ուաիաիսում, ո՛չ Խուբուշկիայում և ոչ էլ Մուսասիրում ոչինչ չի գտել։ Խուբուշկիայի թագավոր Իանզուն հարկը վճարում է անասուններով՝ ձի, եզ և ոչխար[3]։

Ուրարտուն արգավանդ երկիր էր ոչ միայն ցորենի, այլև ուրիշ բույսերի, հատկապես այգիների առումով։ Սանգիբուտու կամ Բարի նահանգում Սարգոնը քարուքանդ արեց «նրա սքանչելի բուսականությունը՝ այգիները,— ասում է նա,— ոչնչացրի մեծ քանակությամբ և նրա խմելիքը կտրեցի»։ Ուլխուում Ասորեստանի թագավորը դատարկեց գինով լի կարասները՝ լավորակ գինին խմվեց, իսկ մնացածը գետին թափվեց։ Այս շատ հետաքրքրական տեղը աղճատված է, բայց իմաստը պարզ է։ Կարդացվում է՝ «ինչպես գետի ջրերը, հիանալի գինի էին լցրել տիկերի մեջ (կամ ավելի շուտ՝ խողովակներով)... ես ցեխի վերածեցի... նրանց կարասներին ցույց տվի արևի լույսը... լեցուն էր գինով. նրանք... էին երկնքի տեղատարափի նման»[4]։

Երկիրը հարուստ էր մարգագետիններով և անտառներով։ Մտնելով Սուբի՝ Սարգոնը «հարձակվեց ինչպես մոլեխի չու, մարգագետիններում ազատ արձակեց իր ճամբարի անասուններին, որոնք պոկեցին ամբողջ խոտն ու ամայացրին ողջ երկիրը»[5]։

Բարիում նա «մարգագետինները անմշակ հողերի վերածեց»։ «Անտառները նույնպես ոտնատակ արվեցին, ինչպես եղեգնուտները»։ Սանգիբուտուում, Արմարիլիում, Աիադիում և Ուաիաիսում Սարգոնը ոչնչացրեց

---

1 Նույն տեղում, տ. 262։

2 Նույն տեղում, տ. 274 և 295։

3 Նույն տեղում, տ. 298 և հաջ.։

4 Նույն տեղում, տ. 220 և հաջ.։

5 Նույն տեղում, տ. 187։

անտառները, կտրեց ծառերը, հավաքեց նրանց կոճղերը և կրակի բաժին դարձրեց[1]։

Առատ մարգագետինները, «ձիերի ապրուստի միջոց», նպաստում էին ձիաբուծությանը, որով երկիրը հայտնի էր։ Այս առթիվ Սարգոնը պատմում է, թե Սուբի նահանգի բնակիչներն իրենց նմանը չունեցող ձիեր վարժեցնելու արվեստի մեջ։ Ցեղային մտրուկները, որ պահում էին թագավորական բանակի համար, նախ ուղարկվում էին Սուբի նահանգը՝ վարժեցնելու։ Այստեղ այնպիսի արվեստով էին վարժեցնում, որ ձիերը երբեք չէին կատարում ո՛չ ցատկ, ո՛չ շրջան, ո՛չ կիսաշրջան[2]։ Բարխում՝ Թարուի և Թարմակիսա քաղաքներում էին գտնվում թագավորական ախոռները, ուր խնամում էին թագավորական բանակին հատկացված ձիերին[3]։

Մի խոսքով՝ Ուրարտուն ներկայանում է որպես մի ծաղկուն և բարգավաճ երկիր, ուր մարդիկ ապրում էին «առատության մեջ»։ Գույները շատ խտացված են. վավերագիրը ծաղկուն տեսքով է նկարագրում երկրի պատկերը։ Վերոհիշյալ շրջաններում այժմ ոչ մի անտառ գոյություն չունի։ Կարծես այս չափազանցությունները դիտավորյալ են արված Ասորեստանի թագավորի ավերիչ ուժերն արժեքավորելու համար. այդ դրախտը անպայման էր վերածվել, «ամեն ջրհեղեղն էր այն կործանել»։

Բուն Ուրարտուն, անտարակույս, ծաղկուն երկրագործական երկիր էր։

Շրջակայքի երկրները, ընդհակառակն, մեծ մասամբ հարուստ էին անասուններով, օրինակ՝ Արաքս գետի ավազանը։ Ուրարտուի թագավորները հացահատիկի մասին երբեք չեն հիշատակում այդ մարզերից տարած ավարը թվարկելիս։ Իհարկե, ավելի հեշտ է քշել-տանել անասունները, քան հացահատիկ տեղափոխելը, բայց չեն խոսում և բուսականության ու հունձքի ոչնչացման մասին։

Ոռոգման այն համակարգը, որ գտնում ենք Ուրարտուում, նպաստել է երկրագործության բարգավաճմանը։ Մեծ աշխարհակալ և շինարար Մենուա թագավորն է, որ հիմնականում ակիզբ է դրել ու իրականացրել այն։ Այն շրջանները, ուր նա ջրանցքներ է փորել, դեռ մեր օրերում երկրի խական շտեմարաններն են հանդիսանում։ Միայն Հայոց-ձորի ջրանցքը բավական է՝ այս վեհապետին հավիտենական բարերարի անուն ապահովելու համար։ Այն կոչվում էր Menuai pili «Մենուայի ջրանցք»։ Հետագայում այդ անունը դուրս մղվեց Շամիրամի անվամբ, համաձայն ամբողջ Արևելքում հարատև դարձած սովորության՝ ամեն տեսակ հրաշալիք, սքանչելիք և զարմանալիք վերագրել ասորեստանյան հռչակավոր այդ

---

1 Նույն տեղում, տողեր 230, 266, 276, 303։

2 Նույն տեղում, տ. 170 և հաջ.։

3 Նույն տեղում, տ. 191։

թագուհուն։ Ջրանցքն սկսվում է վերին Մծնկերտ գյուղից մեկուկես կիլոմետր հեռավորությունից, անցնում Խառնուրդի և ստորին Մծնկերտի մոտ գտնվող խոշաբ գետի վրայի ջրուղով և Գյոլբլասան, Կեմ, Քարավանց, Անգղ, Մաշտակ (Մաշկակտակ) գյուղերի մոտով ուղղվում դեպի Վանա լիճը, ապա դառնում է դեպի Արտամետ՝ Վան հասնելու համար։ Ջրանցքը մոտավորապես 50 կիլոմետր երկարություն ունի[1] և ոռոգում է մշակելի հողի ընդարձակ մի տարածություն։

Բերկրիի դաշտը ոռոգելու համար Մենուան Բերկրի գետի գետաբերանից ջրանցք է փորում, ըստ № 47 արձանագրության։ Նա հիմնել է Ալի քաղաքը՝ հավանաբար ներկա Արծվաբերդի տեղում, և ջրանցք կառուցել քաղաքի համար (№ 48)։

Նույն թագավորը երեք ջրանցք է փորում Մանազկերտի (Մելազկերտ) շրջանի կարիքների համար՝ մեկը Գոպի մոտ, Ուլիշու քաղաքի տերիտորիայում, № 48, մեկ ուրիշը Խոտանլուի շրջակայքում՝ Ուկուա, Զուգուխե, Իրնունի, Աբասինի քաղաքների համար, № 50, և երրորդը՝ Պատնոցի մոտ, Մարմոսում, № 51։

Մենուան իր անունով մի քաղաք է հիմնում լճի ափին, հին ժամանակ Ռշտունիք կոչվող գավառում, Օստանի (Ոստան) շրջանում, և այնտեղ ջրանցք է փորում, ըստ № 52 արձանագրության։

Ռուսա I-ը Թոփրակ-կալա բլրի վրա մի միջնաբերդ է կառուցել, հին միջնաբերդից 5 կիլոմետր հեռավորության վրա, և ստորոտում մի քաղաք ստեղծել։ Որովհետև այդ քաղաքը տեղավորված էր Մենուայի ջրանցքից բարձր և չէր կարող նրանից օգտվել, Ռուսան արհեստական լիճ ստեղծեց, որն իր անունով Rusai șue «Ռուսայի լիճ» էր կոչվում, իսկ այժմ՝ Քեշիշ գյոլ (Քահանայի լճակ)։ Լճակի ջրերը ջրանցքի միջով հոսում էին դեպի քաղաք, № 145։ Նրա որդին՝ Արգիշտին, իր անունով հիմնեց Argištiḫinili քաղաքը Զալաբի-բաղի (Զալաբի պարտեզ կամ այգի) տեղում, Արճեշի մոտ, և այնտեղ տնկեց uldi «խաղողի այգի», zari «պարտեզ, ցորենի արտ» և ջրանցք փորեց, № 148։

Արգիշտի II-ի որդին Ռուսա II-ը, Իլդարունիանի (Քասաղ) գետից ջրանցք հանեց դեպի դաշտը և այնտեղ այգի ու պարտեզ տնկեց։ Այդ դաշտը գտնվում էր Ջվարթնոցի մոտ, այնտեղ, ուր հետագայում հիմնվելու էր Վաղարշապատ քաղաքը, № 151։

Սարդուրի II-ը առաջինը եղավ այգիներ ու պարտեզներ տնկելու և ջրանցքներ բանալու Արաքս գետի շրջանում, հատկապես Արմավիրում, № 141։

---

[1] W. Belck-ը, Zeit. f. Ethnol., 1892, էջ 138, 70-ից 80 կիլոմետր է հաշվում, Маевский-ն, նշ. աշխ., էջ 161, միայն 40 վերստ (=44 կմ)։

Ուրարտացիները մեգալիթիկ կառուցումների խոշոր վարպետներ էին։ Մեզ հետաքրքրող վավերագրերում այս նյութի վերաբերյալ առկա տվյալները, հակառակ ճոռոմ ոճին, արժեքավոր են և իրականության համապատասխան։ Ըստ այդ տվյալների՝ ուրարտական քաղաքները «կառուցված էին լեռների վրա»։ Տարօրինակ է թվում քաղաքները տեսնել լեռների վրա։ Որոշ քաղաքներ «փայլում էին աստղերի նման, և 240 արմնկաչափ բարձրության վրա երևում էին նրանց հիմքերը»։

Արմնկաչափերի նշված քանակությունը անում է 120 մետր։ Դա այնպիսի բարձրություն չէ, որ արժանի լինի «լեռ» կոչվելու։ Մի երկրում, ուր լեռները հազարավոր մետրերով են դեպի երկինք խոյանում, 120 մետր բարձրությունը միայն բլուր է կազմում։ Բացարձակապես ճիշտ է, որ Ուրարտուի բերդաքաղաքները բլուրների, բայց հատուկ տեսակի բլուրների կատարներին էին կառուցվում։ Լեռնաշղթաները, ձգվելով տարբեր ուղղություններով, իրար խաչաձևում են և կազմում ընդարձակ բարձրավանդակներ։ Հատված լեռնաշղթաները հաճախ այդ բարձրավանդակների վրա կազմում են հսկայական միակուռ զանգվածներ, անհարթ և համարյա անմատչելի լանջերով։

Դրանք շրջակա լեռներից մեկուսացված մի տեսակ հողակոշտ զանգվածներ են, որ սովորաբար ուրարտացիներն ընտրում էին իրենց հիմնադրումների կենտրոնը կամ միջնաբերդը դարձնելու համար։ Այդպիսիք են հետևյալ ծանոթ քաղաքների տեղերը՝ Տուշպա (Վան), Լեզք, Ամիուկ, Սեվան-կալա (Քեշիշ-գյոլի մոտ), Բոլ-դաղ, Հայանց-բերդ (լճի ափին՝ Էրեբինի մոտ), Մարմետ, Անձավ, Արմավիր։

Այդ ամրացված վայրերը շրջապատված էին նաև կիկլոպյան պարիսպներով, որոնք նրանց անառիկ էին դարձնում։ Սարդուրի I-ը կառուցեց մի վիթխարի պարիսպ, որը ավելի հարմար է կոչել Սարդուրիի աշտարակ, ինչպես հայ պատմիչ Փավստոսն է կոչում։ Իրոք, Սարգոնը հաստատում է, «որ քաղաքների մեծ դարպասների մոտ աշտարակներ էին կառուցված», «նրանք լեռների նման հաստատուն հիմքեր ունեին»։ Արմարիլիում գտնվող Խունդուր քաղաքը շրջապատված էր պարիսպներով և աշտարակներով։ Ուշկաիա քաղաքի պարիսպը կառուցված էր ժայռի վրա, իսկ նրա հաստությունը ութ արմնկաչափ էր (համարյա չորս մետր)։ Որոշ քաղաքների պարիսպներ ունեին 120 շար աղյուսների բարձրություն, որը համարյա 16 մետրի է հավասար։

Սարգոնն ասում է, որ տներն արվեստով էին կառուցված։ Հետագա պեղումները մի օր հնագիտական նյութով կհաստատեն այդ։ Այն, ինչ ներկայումս գոյություն ունի գետնի երեսին, արդեն ցույց է տալիս քարի մշակման նշանավոր տեխնիկայի առկայությունը։ Ժայռափոր կառուցում-

ները, ինչպիսիք են Վանի՝ ժայռի մեջ փորված Մենուայի և Արգիշտիի սենյակները, այդ տեխնիկայի վառ ապացույցն են։

Շենքերի համար գործածում էին ոչ թե սովորական քարեր, այլ հսկայական սալաքարեր։ Սարդուրիի աշտարակն այդ տեսակ կառուցման մի նմուշ է։ Այն կառուցվել է 5—6 մետր երկարություն և մեկ մետր լայնություն ունեցող սալերով։ Նրանք կողք-կողքի շարված են առանց շաղախի և մետաղյա կեռերի։ Ուրարտացիները գործածում էին և՛ հում, և՛ թրծված աղյուսներ։ Թոփրակ-կալայում հայտնաբերվել են դրանցով կառուցված տըներ ու պարիսպներ։ Սակայն նախընտրվող շինանյութը միշտ քարն էր։ Ուրարտացիները կամար կապել չգիտեին. այդ պատճառով էլ ձորակների վրայով ջրանցք տանելու համար Մենուան ստիպված էր ձորի խորքից մինչև ջրի հարթակը հսկայական պատեր բարձրացնել։

Սրբավայրերը նույնպես արտակարգ չափի քարերով են կառուցված. որպես օրինակ կարելի է ներկայացնել Թոփրակ-կալայում պեղված տաճարը։ Այդ տաճարի երևան գալով կարելի է լավ գաղափար կազմել ուրարտացիների գեղարվեստական ճաշակի մասին։ Մեգալիթյան բնույթը այնտեղ մնում է իշխող, բայց տեսքը, որ կարող է անպաճույճ երևալ, բազմերանգ քարերի գործածությամբ զվարթ ու պայծառ է դառնում։ Սև, բացմոխրագույն, կարմրավուն, դեղին երանգներն այնտեղ իրար են հաջորդում ներդաշնակ ու բավականին նկարչագեղ կերպով։

Բազմերանգությունն ուրարտական առանձնահատկություններից մեկըն է թվում։ Գույների ճաշակը բնականաբար առաջ է բերել խճանկարի գաղափարը։ Իրոք, Թոփրակ-կալայի պեղումներում գտնվել են տարբեր ձևերի ու գույների քարեր, որոնք ենթադրել են տալիս, թե տաճարը սալարկված է եղել խճանկարով[1]։ Գալով ճարտարապետությանը, ուրարտական թագավորների հիմնադրած Մուսասիրի տաճարը թույլ է տալիս դրա մասին գաղափար կազմել։ Այս տաճարը ներկայացված է Սարգոնի խորսաբադյան պալատի ցածրաքանդակների վրա։

Ուրարտացիները գիտեին քանդակել քարը։ Մուսասիրում Սարգոնի տեսած Սարդուրիի արձանը քարից էր։ Թոփրակ-կալայում հայտնաբերված քարե երկու ելունները, անշուշտ, արձանի բեկորներ են։ Տաշված մի քարի վրա պատկերված է կայծակը երկու խուրձ լույսի ցոլքերով[2]։

Մետաղի տեխնիկան նույնպես զարգացած էր։ Մշակում էին ոսկին, արծաթը, բրոնզը, երկաթը։ Մուսասիրի պալատի և տաճարի շարժուն գույքի մի որոշակի մասը բաղկացած էր սեղանասպասքից և անոթներից՝ աման-

---

[1] Lehmann-Haupt, Armenien, II, 2, էջ 552։ Տաճարը լրիվ կողոպտած է ենթարկվել, այնպես որ, երբ 1917 թ. մենք այնտեղ էինք, մնացել էր միայն մի քանի քար։

[2] Lehmann-Haupt, Materialen, էջ 80։

ներ, բաժակներ, սկահակներ, կաթսաներ, կոնքեր, աթոռներ, մրգերի զամբյուղներ, բանալիներ, փականքներ, վառարաններ, հնոցներ, ամեն տեսակի ամանեղեն արծաթե կամ արծաթապատ, ավելի հաճախ բրոնզից և երբեմն ոսկուց. երկրում պատրաստված 120 բրոնզե առարկաներ, որոնցից ամեն մեկն իր անունն ուներ։ Ասորեստանցի դպիրը խոստովանում է, որ դժվար էր վերարտադրել բոլորի անունները։ Կային սեղաններ, զամբյուղներ և այլ՝ փղոսկրից, էբենոսից, սամշիտից, ոսկով ու արծաթով պատած առարկաներ։ Ալեբաստրից առարկաները թանկագին քարերով էին զարդարված։

Քիչ չէին նաև գեղարվեստական բարձր արժեք ներկայացնող գործերը, օրինակ՝ ոսկյա և արծաթյա վահաններ, որոնց սկավառակները զարդարված էին վիշապներով, առյուծներով, վայրի ցուլերով, շների ծռկտող գլուխներով։ Մարդու ձեռքի նման մի ոսկյա փականք իր փեղկիկի շրջանակի վրա թևավոր վիշապի դեմքն էր կրում։ Երկու բանալիներ ներկայացնում էին խույրով աստվածուհիներ՝ ձեռքներին բռնած ատամնավոր տավիղ։ Փղոսկրյա մի անկողնու գլխիկներն արծաթից էին՝ ծայրերում զարդարված թանկագին քարերով։ 14 տարբեր թանկարժեք քարերից պատրաստված մի զարդ կար՝ ինչ-որ աստվածության համար։

Արգիշտիի և Ռուսայի արձանները ձուլածո բրոնզից էին, Սարդուրիի արձանի պատվանդանը՝ ձուլածո երկաթից։ Խորսաբադի բարձրաքանդակի վրա Մուսասիրի տաճարի մուտքի դիմաց ներկայացված է մի կով՝ իր հորթը կերակրելիս։ Այստեղ կան նաև վեց վահաններից երեքը՝ ոսկուց, որոնք ըստ Սարգոնի նկարագրածի՝ «կախված էին տաճարի աջ ու ձախ կողմերում և որոնց մեջտեղում ծռկտող շների գլուխներ էին երևում, հինգ տաղանտ տասներկու մինա ոսկու ծանրությամբ», որը հավասար է 162 կիլոգրամի։

Վանում, Թոփրակ-կալայի ավերակներում, հայտնաբերվել են բրոնզի մի քանի կտորներ, որոնցից երեքը Ռուսա Էրիմենախիի անունն են կրում, իսկ մեկը՝ Ռուսա Արգիշտիխիի անունը։ Դրանք նույն տիպի մի քանի վահանների բեկորներ են՝ սկավառակը կենտրոնում ունի մի վարդակ և բաժանված է երեք համակենտրոն գոտիների. առաջինը և երրորդը զարդարված են քայլող առյուծների կերպարանքներով, երկրորդը՝ ցուլերի։ Դրանք ուխտանվեր վահաններ են։ Լինչը վերարտադրել է առյուծների կերպարանքներից մեկը և մեկ ուրիշը՝ ցուլի, իսկ Լեհման-Հաուպտը վերարտադրել է վահանի մի մասը[1]։

Թագավորական գահի բրոնզե մի քանի բեկորներ, երկու ոտքեր՝ յու-

---

[1] **Lehmann-Haupt**, Armenien, II, *2*, *էջ 258*։ **Lynch**, Armenia, II, *էջ 62*։

րաքանչյուրը դրված քառակուսի մի սալի վրա, մեկի վրա պառկած է թևավոր առյուծ։ Ոտքերը փաթաթված են տերևների պսակներով[1]։

Բեկորներից մեկը ներկայացնում է թևավոր մի գառնանգղ, որը հունական սիրենան է հիշեցնում, իսկ մեկ ուրիշը՝ մարդու գլխով մի ցուլի[2]։

Բրոնզի երկու կտոր, որոնք աթոռի մասեր են. նրանցից մեկն ուշադրություն է գրավում իր զարդարանքներով՝ ոտքերը ներկայացնում են առյուծի թաթեր։ Վերի ձողի ծայրերն օժտված են ոչխարի գլուխներով, իսկ ցածի ձողի ծայրերը՝ երկու զույգ խոյեղջյուրներով. այդ ձողի և ոտքերի միջև ուղղաձիգ ձողերը շրջապատված են տերևների պսակներով[3]։

Տերևների պսակը հիշեցնում է հունական ճարտարապետության օվիկուլները։ Այն գտնում են Վանում հայտնաբերված գեղարվեստական ձևավորմամբ շատ ինքնատիպ բրոնզե մի աշտանակի վրա ևս։ Աշտանակի կոթը զարդարված է հավասար հեռավորության վրա տեղաբաշխված տերևների հինգ պսակներով։ Բրոնզե մի զարդաձող անցնում է ցածի պսակի ներքևով և կամարաձև կորանալով կազմում ոտքերը։ Ձողը որպես զարդ կրում է մարդկային գլխով երկու թևավոր էակների կերպարանքներ և առյուծի երկու գլուխներ, որտեղից դուրս են գալիս եզան երկու կճղակ, որոնք աշտանակի հիմքն են կազմում[4]։

Նույն տեղում գտնված բրոնզի մի կտոր ներկայացնում է կանացի դեմք, հավանական է՝ աստվածուհու, որը թևավոր արևի շրջանակ է հագել[5]։ Դա, գուցե, ծիսական մի ամանի կանթ է, նման Մուսասիրի տաճարի գինու անոթին։ Կարելի է նշել նաև մի ճրագ և բրոնզե կոթով մի կուժ[6]։

Թոփրակ-կալայի պեղումներից երևան են հանվել արծաթե կտորներ։ Մի մեծ կարասում գտնվել են երկու արծաթե անոթներ։ Նրանց գլանաձև լինելը հատկանշական ոչինչ չի ներկայացնում[7]։ Սակայն նույն կարասի խորքից հանված փոքրիկ արծաթե մի տուփ հետաքրքրություն է շարժում[8]։ Սա ունի երկու ոսկյա կոճակով կրկնակի կափարիչ և դեռ պարունակում էր մի տեսակ փոշի։ Քիմիական տարրալուծման շնորհիվ նկատվեց, որ դա մի բաղադրություն է, որով ոսկերչության մեջ սև գծեր են ստանում ոսկու

---

[1] Մի բեկորը պատկանում է Մ. Վոգեին. **Perrot-Chipiez**, II, էջ 725։ Մեկ ուրիշը հայտնաբերվել է Լեհման-Հաուպտի կողմից, Armenien, II, 2, էջ 485։

[2] **Lehmann-Haupt**, Armenien, II, 2, էջ 509 և 748։ **Lynch**, Armenia, II, էջ 63։

[3] **Lehmann-Haupt**, Armenien, II, 2, էջ 534. նման աթոռ վերարտադրված Պերո-Շիպիեի կողմից, II, էջ 728։

[4] **Lehmann-Haupt**, Materialen, էջ 93 և Armenien, II, 2, էջ 483։ Ներկայումս Համբուրգի թանգարանում է գտնվում։

[5] **Lehmann-Haupt**, Armenien, II, էջ 262—3։

[6] Նույն տեղում, էջ 563։

[7] Նույն տեղում, էջ 542։

[8] Նույն տեղում, էջ 482։

և արծաթի վրա։ Թանկագին մետաղներ ներկելու արվեստը Եվրոպայում ռուսական Տուլա քաղաքի անունն է կրում։ Վերջինս դրանով պարտական է Կովկասին, իսկ Կովկասը՝ Վանին, ուր հին արվեստը շարունակում է բարգավաճել։

Երկաթը ծանոթ էր, բայց դեռ շատ չէր գործածվում։ Սարգոնը Մուսասիրում միայն երկաթե մի քանի հնոցներ, ճրագներ և անհայտ առարկաներ է գտել, հավանական է ամաններ՝ nisbi, nasri, aruthi։ Տնտեսական ամանները մեծ մասամբ բրոնզից էին։ Երկաթը ծառայում էր կացինների, մուրճերի, խոփերի, արորների, կեռերի պատրաստման համար[1]։ Կա երկաթե շինվածքի մի օրինակ՝ քարի հետ զուգորդված, որը ներկայացնում է սալի վրա փորագրված նվիրական մի ծառ. ծառի դիմաց մորուքով և գլխարկով ասուրական տիպի մի մարդ ձեռքերը տարածել է դեպի ծառը։ Ծառը և մարդը տաշված են քարից և լցված երկաթով։ Հավանաբար, պաշտամունքի վերաբերյալ մի տեսարան է[2]։

Նույն կարգի մեկ ուրիշ տեսարան է վերարտադրված մի կշռաքարի վրա. աղերսարկուի դիրքով մի մարդ է կանգնած ծառի դիմաց, նրա մոտ դրված է կուժ, անշուշտ՝ գինու զոհաբերության համար, իսկ հետևում, սեղանի վրա՝ երեք հենարան և կողքին՝ մեկ ուրիշ ծառ[3]։

Երկրի արդյունաբերության մեջ մեծ տեղ էր գրավում խեցեգործությունը։ Կիրառական նշանակությունը տիրող է հանդիսանում այդ գործում, բայց գեղարվեստական ճաշակը ևս համեստ կերպով երևան է գալիս։ Նրանք սիրում էին, հատկապես, մեծ կարասներ պատրաստել։ Թոփրակ-կալայում հայտնաբերված ներքնատանը քսան կարաս կային, բայց, դժբախտաբար, միայն երկուսն են անվթար մնացել։ Դրանք նույն տեսակի կարասներ են, ինչ Սալմանասար III-ը, որպես ավար, կառքով տեղափոխում է Բալավաթի հուշակավոր ցածրաքանդակում[4]։ Կարասների արդյունաբերությունը Հայաստանում դեռևս շարունակվում է և ծառայում գինի պահելու, ինչպես Սարգոնի ժամանակ, որի զինվորները «ուրարտական կարասներից հիանալի գինի էին հանում գետի ջրերի նման և անհագ խմում էին»։

Բրուտագործությունը ձևով և ծավալով բավական հարուստ ու բազմազան էր։ Թոփրակ-կալայի պեղումներից հայտնաբերվել են ամեն տեսակի նմուշներ՝ սկսած ամենափոքր կուժից մինչև կարասը և Մուսասիրի տաճարի առջև գտնված անոթները։ Այս տաճարում լիքն էին զանազան տե-

---

1 Նույն տեղում, էջ 544—547։

2 Նույն տեղում, էջ 548։

3 Նույն տեղում, էջ 549։

4 Նույն տեղում, էջ 559։

*սակի ամանեղեններ։ Սարգոնը շատ նմուշների անուններ է տալիս, ինչպես՝* gangani, pursiti, qatanate, lutti, susani, mukarisi, nabli, ḫurupti, nasri *և այլն։ Դպիրը չի կարողացել 120 առարկաների անունները տալ, որոնք նույնպիսի նմուշներ էին։*

*Ուրարտական բրուտեղենը հիմնականում, որքան որ այժմ մեզ ծանոթ է Թոփրակ-կալայի պեղումներից, չի տարբերվում ներկայումս Հայաստանում արտադրվող բրուտեղենից*[1]*։*

*Մի քանի խեցիներ ծածկված են մի տեսակ կարմրագույն փայլուն լաքով։ Մանրադիտական վերլուծումը ցույց է տվել, որ խսկական լաքի մասին չէ խոսքը։ Ուրարտացի բրուտագործներին հաջողվում էր իրենց արտադրությանը արտաքին փայլ տալ՝ խեցու երեսին նույն կավից բարակ շերտ քսելով, բայց լավ թրծված և լավ փոշիացված, որից հետո նորից մի թեթև թրծում էին։*

*Գալով խեցեղենի նկարազարդմանը, դա չէր առաջադիմել։ Մի քանի անոթներ իրենց փորի վրա թռչունի պատկերներ են կրում՝ ծոփորների երկու շարքի միջև շարված։ Մի անոթ ուշադրություն է գրավում իր երկրաչափական նկարներով*[2]*։*

*Կարասների եզրերին երբեմն փորագրված են պատկերներ, օրինակ՝ նստած հորթ, կամ մի տեսարան՝ առյուծը հորթ պատառոտելիս*[3]*։ Մի կարասի վրա սեպագիր տեքստ կա*[4]*։*

## 6. ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԼԵԶՈՒՆ

*Ուրարտական գրականությունը հարուստ չէ ո՛չ ծավալով և ոչ էլ տեսակներով։ Ինչպես մենք տեսանք, գրավոր նյութը բաժանվում է երկու խմբի՝ հուշարձանների տեքստեր և պատմական կամ ժամանակագրական տեքստեր։ Առաջինները զանազան կառուցումների մասին են պատմում, երկրորդները զինվորական արշավանքներն են նկարագրում։*

*Տեքստերի շարադրությունը շատ պարզ և բավական միօրինակ է ոճի և նույնիսկ պարունակության տեսակետից։ Մենուայի ժամանակ շարադրված առաջին վավերագրերը ծառայել են որպես օրինակ հետագա տարիների*

---

[1] *Նույն տեղում, էջեր 560, 564, 570, 573։*

[2] *Նույն տեղում, էջ 576։*

[3] *Նույն տեղում, էջ 470—473։*

[4] *Նույն տեղում, էջ 560։ Արձանագրությունը՝* aqarki 5 ḫi-ru-si, *հմմտ. № 132։ Մի ուրիշ բեկորի վրա կարդացվում է՝ 4* ḫi-ru-si*։ Նույն տեղում, էջ 473։*

համար։ Սակայն որոշ առաջադիմություն նկատվում է պատմական ճյուղում։ Մենք մի քանի նմուշներ կտանք առաջին և վերջին դարաշրջանից՝ երկու տեքստ հուշագրական և երկուսը պատմագրական։ Նրանք հնարավորություն կտան գաղափար կազմելու երկու խմբի մասին, ինչպես և լեզվի կառուցվածքի մասին (դա կհեշտացնի ուրարտերեն լեզվի հետագա քննությունը)։

Արձանագրություններ, որոնք հիշատակում են շենքի, տաճարի հիմնադրումը, ջրանցքի կառուցումը կամ այգու, պարտեզի տնկումը։ Դրանք մի քանի տիպի են՝ կարճ տարբերակ և առավել կամ պակաս երկար տարբերակ։

Կարճ տարբերակը շարադրվում է այսպես. «Խալդիի զորությամբ այսինչ թագավորն իրականացրեց այսինչ կառուցումը»։ Շատ հաճախ ավելացվում են թագավորի անունն ու տիտղոսները։ Երկար տարբերակը նաև կառուցման առթիվ փորագրված արձանագրության հիշատակումն է անում և անեծք է ավելացնում՝ միշտ նույն բառերով, նրա հասցեին, ով վնաս կհասցնի արձանագրությանը կամ նրա հեղինակի հիշատակին։ Երբեմն, մանավանդ եթե ծառատնկման մասին է խոսքը, պատվիրվում է որոշ զոհաբերումներ կատարել Խալդիին կամ մյուս աստվածներին։

Այստեղ բերված արձանագրությունը վերարտադրված է CICH-ի № 34-ից։

1. $^{ILU}$Ḫal-di-ni-ni uš-ma-ši-ni $^{I}$Me-nu-a-še
$^{I}$Iš-pu-u-i-ni-ḫi-ni-še i-ni pi-li
a-gu-ni $^{I}$Me-nu-a-i pi-li ti-i-ni
$^{ILU}$Ḫal-di-ni-ni al-su-ši-ni $^{I}$Me-nu-a-ni
5. ŠARRU DANNU ŠARRU al-su-i-ni ŠARRU $^{MATU}$Bi-a-i-na-e
a-lu-u-si $^{ALU}$Ṭu-uš-pa-e ALU
$^{I}$Me-nu-a-še a-li a-lu-še i-ni ṬUPPU tu-li-e
a-lu-še pi-tu-li-e a-lu-še a-i-ni-e-i
i-ni-li du-li a-lu-še u-li-še ti-u-li
10. i-e-še i-ni pi-li-e a-gu-bi tu-ri-ni-ni
$^{ILU}$Ḫal-di-še $^{ILU}$ADAD-še $^{ILU}$ŠAMAŠ-še ILU$^{pl}$-še ma-ni
$^{ILU}$ŠAMAŠ-ni pi-i-ni me-i ar-ḫi-u-ru-li-a-ni
me-i i-na-i-ni me-i na-a-ra-a
14. a-u-i-e u-lu-u-li

Ահա տեքստի բառացի ու տողացի թարգմանությունը.

[1] Խալդիի զորությամբ, Մենուան [2] Իշպուինիի որդին, այս ջրանցքը [3] անցկացրեց, անունը Մենուայի ջրանցք (է)։ [4] Խալդյան մեծությամբ Մենուան [5] հզոր թագավոր (է), մեծ թագավոր, Բիաինայի թագավոր, [6] իշ-

խան Տուշպա քաղաքի։ [7] Մենուան ասում է՝ ով այս արձանագրությանը վնասի, [8] ով (այն) կործանի, ով ուրիշի համար [9] սույն (բաները) կատարի, ով, ուրիշը... ասի՝ [10] «ես՛ բացեցի այս ջրանցքը», [11] թո՛ղ աստված Խալդին, փոթորկի աստվածը (=Թեշեբա), Արևի աստվածը (=Արդինի), անհետացնել տան Արևի երեսից քանդողին, և arḫiurulia և inaini։ Վերջին տողերը պարզ չեն, այնպես որ անեծքի էությունը դեռ մթին է մնում։

Միայն երեք առաջին տողերը, կամ դրանք՝ հաջորդ երկու տողերի հետ միասին, կազմում են կարճ տարբերակը, որ գտնում ենք Շամիրամի ջրանցքի ամբարտակի վրա և այլուր, ինչպես և գտնում ենք երկար տարբերակը, այսինքն՝ անեծքի բանաձևի հետ միասին։

Վերցնենք մեկ ուրիշ արձանագրություն, ավելի ուշ ժամանակվա, որի լուսանկարը մեր տրամադրության տակ է, № 153Ա[1]։

$^{ILU}$Ḫal-di-e BELU i-ni $^{BIT}$PAPAKKU $^{I}$Ru-sa-še
$^{I}$Ar-giš-te-ḫi-ni-še ši-di-iš-tu-ni $^{ILU}$Ḫal-di-ni-ni
uš-ma-ši-ni $^{I}$Ru-sa-še $^{I}$Ar-giš-te-ḫi-ni-še
a-li qar-bi sal-zi ma-nu u-i gi-e-i
iš-t-ni ši-da-u-ri šu-ki $^{ILU}$Ḫal-di-še
u-bar-du-du-ni i-e-še ši-di-iš-tu-bi
te-ru-bi ti-ni $^{I}$Ru-sa-i ALU TUR
$^{I}$Ru-sa-še $^{I}$Ar-giš-te-ḫi-ni-še a-li
a-lu-še i-ni ṬUPPU tu-li-e a-lu-še
pi-tu-li-e a-lu-še ip-ḫu-li-e tu-ri-ni-ni
$^{ILU}$Ḫal-di-še $^{ILU}$ADAD-še $^{ILU}$ŠAMAŠ-ni-še ILU$^{pl}$-še
me-ku-u-i ti-ni ma-nu-ni $^{ILU}$ŠAMAŠ-ni-ka-i
$^{I}$Ru-sa-a-ni $^{I}$Ar-giš-te-ḫi
ŠARRU DANNU ŠARRU MATU.MATU$^{pl}$-a-u-e
ŠARRU $^{MATU}$Bi-a-i-na-u-e ŠAR ŠARRU-u-e
a-lu-si $^{ALU}$Ṭu-uš-pa-a-e ALU

*Բառացի թարգմանությունը.*

[1] Տեր Խալդիին այս սրբավայրը Ռուսան, [2] Արգիշտիի որդին կառուցեց։ Խալդյան [3] հզորությամբ Ռուսան, Արգիշտիի որդին, ասում է. (4—

---

[1] Լուսանկարը մեզ ուղարկել է Ատրպատականի հայկական թեմի առաջնորդ գերապատիվ Ներսես արքեպիսկոպոսը, որին հայտնում ենք մեր երախտագիտությունը։ Քարակոթողը գտնվում է Մակուի խանի տան բակում, ուր բերվել է Մակուի մոտ գտնվող մի քաղաքի ավերակներից։ Կոմս Կանցը, Թեհրանի գերմանական դեսպանատան կցորդը, մի լուսանկար է առաքել Սեյսին, որը նա հրապարակեց JRAS-ում, 1912 թ., էջ 107։ Ն. Մառը նույնպես հրապարակել է այդ արձանագրությունը բստ նույն լուսանկարի, որը նույն տեղից է ստացվել։ Записки Восточного отделения Русск. арх. общ., XXV.

5-րդ տողերը մթին են)։ [6] ես (այն) կառուցեցի [7] (և նրան) Ռուսայի փոքրը քաղաք անունը դրեցի։ [8] Ռուսան, Արգիշտիի որդին, ասում է. [9] ով այս արձանագրությանը վնասի, ով (այն) [10] կործանի, ով (այն) տապալի, [11] թո՛ղ Խալդի աստվածը, փոթորկի աստվածը (=Թեշեբա), Արևի աստվածը (= Արդինի) [12] քանդողի անունը ջնջեն Արևի առաջ։ [13] Ռուսան, Արգիշտիի որդին, [14] հզոր թագավոր (է), բազմաթիվ երկրների թագավոր, [15] Բիաինի(լի)-ի թագավոր, թագավորաց թագավոր, [16] իշխան Տուշպա քաղաքի։

Նշենք, որ անեծքին վերաբերող նախադասությունը նույնպես պարզ չէ, որ թագավորի անունն ու տիտղոսները տեքստի վերջում են գտնվում, ոչ մեջտեղում, ինչպես նախորդ տեքստում։

Մենուայի օրով հաստատված պատմագրական ժանրը զարգացավ իր որդի և հաջորդ Արգիշտիի ժամանակ և ընդունեց այնպիսի ձևեր, որոնք առանց զգալի փոփոխությունների մնացին մինչև պետության վերջը։

Պատմական նկարագրությունները բնորոշ են այն հանգամանքով, որ արշավանքների նախաձեռնությունը միշտ երկրի մեծ աստված Խալդիին է վերագրվում։ Խալդին անձամբ գնում է ու կռվում հակառակորդ երկրի դեմ և ապա բանակի գլուխն անցած թագավորին առաջնորդում կռվի դաշտ՝ նախապատրաստված նվաճումներն իրագործելու համար։ Այդ գաղափարը պատկերացվել է հետևյալ ձևով.

Խալդին ուժեղ է, նրա մարտիկը ուժեղ է. նա նվաճեց այս ու այն երկիրը։ Նրա զորությամբ թագավորը գնաց այդ երկրների դեմ և գրավեց դրանք։ Երբեմն թագավորն ավելին է անում, քան աստվածը ցույց էր տվել — kuṭu-bi կամ kuṭu-ni կամ kuṭadi pari(e), որին հաջորդում են երկրների անունները։ Դեռևս չի հաջողվել ճշգրտել այդ արտահայտության իմաստը. թվում է, թե դեպի հարևան երկրների սահմանները կամ շրջակայքը թագավորի առաջխաղացման մասին է խոսքը։ Հաղթողը կոթող է կանգնեցնում և կամ նվաճած երկրում ժայռի վրա արձանագրություն փորագրում։ Իր հաջողությունը հիշատակելուց հետո նա անիծում է նրան, ով կքանդի այդ հուշարձանը, ըստ անեծքի սովորական դարձած ձևի։

Արգիշտին այդ տարբերակի վրա մի քանի լրացումներ է անում։ Նախ՝ Խալդին, թշնամի երկրները հպատակեցնելուց հետո, «դրանք մատուցում է թագավորին»՝ tequ-ni[1]։ Ապա՝ թագավորը, նախքան պատերազմի մեկնելը, դիմում է ḫutia-di, աստվածներին, ոչ միայն Խալդի աստծուն, այլ նաև Թեշեբային ու Արդինիին և ստանում նրանց քաջալերանքը։ Թագավորը նվաճում է նշված երկրները և նրանց թագավորներին ստիպում հարկ վճարել։ Վերջապես, թվարկվում է ավարը, որը վերցված է ավերված կամ

[1] Ասենք, այդ արտահայտությունն արդեն գործածում է Մենուան № 21-ում։

հպատակեցված երկրներում։ Այն դեպքում, երբ մեկ տարվա ընթացքում շատ արշավանքներ են տեղի ունեցել, պատմությունը վերջանում է հետևյալ բառերով՝ «Այս սխրագործությունները կատարեցի մեկ տարվա ընթացքում»։ Այնպես որ Մենուայի օրով մշակված պատմական նկարագրությունների շրջանակները լայնանում են Արգիշտիի ժամանակ և հետագայում ուժի մեջ մնում որպես անխախտ կանոն։

Տալիս ենք դրանցից երկու նմուշ (կարճ տարբերակ և երկար տարբերակ)։

Ահա առաջին տարբերակի օրինակը, Պալուի № 31 արձանագրությունը.

$^{\text{ILU}}$Ḫal-di-ni uš-ta-a-de ma-si-ni-i-e
giš-šu-ri-e ka-ru-ni $^{\text{ALU}}$Še-be-te-ri-a-ni
MATU-ni-e ka-ru-ni $^{\text{ALU}}$Ḫu-za-na-a-ni MATU-ni-e
ka-ru-ni $^{\text{MATU}}$Ṣu-pa-a-ni $^{\text{ILU}}$Ḫal-di-i ku-ru-ni
$^{\text{ILU}}$Ḫal-di-i-ni giš-šu-ri-i ku-ru-ni
$^{\text{ILU}}$Ḫal-di-ni-ni uš-ma-ši-ni uš-ta-a-be
$^{\text{I}}$Me-nu-a-ni $^{\text{I}}$Iš-pu-u-i-ni-e-ḫe
ḫa-u-ni $^{\text{ALU}}$Še-be-te-ri-a-ni MATU e-ba-ni-e
ḫa-u-ni $^{\text{ALU}}$Ḫu-za-a-na-ni MATU e-ba-ni-e
ḫa-u-ni $^{\text{MATU}}$Su-u-pa-a-ni ku-ṭu-ni
pa-a-ri-e $^{\text{MATU}}$Ḫa-a-ti-i-na-a(...)
$^{\text{ILU}}$Ḫal-di-e-i ini $^{\text{ABNU}}$pu-lu-si ku-gu-u-ni
$^{\text{ALU}}$Še-be-te-ri-a $^{\text{ILU}}$Ḫal-di-i i-a-ra-ni
ši-di-iš-tu-ni $^{\text{ALU}}$Še-be-te-ri-a a-su-ni
$^{\text{I}}$Su-li-e ḫa-a-u-a-li
ŠARRU $^{\text{ALU}}$Me-li-ṭe-i-a-al-ḫe 'a-al-du-u-ni
me-ši-ni pi-i $^{\text{ILU}}$Ḫal-di-ni-ni al-su-i-ši-i-ni
$^{\text{I}}$Me-nu-a-ni $^{\text{I}}$Iš-pu-u-i-ni-e-ḫe
ŠARRU DANNU ŠARRU al-su-u-i-ni-e
ŠAR $^{\text{MATU}}$Bi-i-a-i-na-a-u-e
a-lu-si-e $^{\text{ALU}}$Ṭu-uš-pa-a-e ALU
$^{\text{I}}$Me-nu-a-še a-li a-lu-še i-ni ṬUPPU
pi-tu-li-i-e a-lu-še tu-u-li-i-e
a-lu-še u-li-e i-ni-li du-li
tu-ri-ni-ni $^{\text{ILU}}$Ḫal-di-še $^{\text{ILU}}$ADAD-še $^{\text{ILU}}$ŠAMAŠ-še
ILU$^{\text{pl}}$-še ma-a-ni $^{\text{ILU}}$ŠAMAŠ-ni pi-e-i-ni-e
me-i ar-ḫi-u-ru-li-a-ni me-i i-na-i-ni
me-i na-ra-a a-u-i-e u-lu-u-li-e

Բառացի և տողացի թարգմանությունը.

*Խալդին մեկնեց, նրա*
*մարտիկը հպատակեցրեց (քաղաք) Շեբեթերիա-նին*
*(և նրա) երկիրը. հպատակեցրեց (քաղաք) Խուզանանին (և նրա) երկիրը.*
*հպատակեցրեց (երկիր) Ծուպա-նին: Խալդին ուժեղ է:*
*Խալդյան մարտիկն ուժեղ (է):*
*Խալդյան զորությամբ մեկնեց*
*Մենուան Իշպուինիի որդին,*
*նա գրավեց Շեբեթերիա-նին (և նրա) երկիրը,*
*նա գրավեց Խուզանա-նին (և նրա) երկիրը,*
*նա գրավեց Ծուպանին: Նա հասավ (?)*
*շրջակայքը (?) Խաթինա (երկրի):*
*Խալդիին նա տաշեց այս կոթողը*
*Շեբեթերիայում: Խալդիին մի սրբավայր*
*նա կառուցեց Շեբեթերիայում:*
*Սուլիեին բռնեց*
*(քաղաք) Մելիտեիայի թագավորին, (նրան) ենթարկեց հարկ վճարելու:*
*Խալդյան մեծությամբ*
*Մենուա Իշպուինիի որդի,*
*հզոր թագավոր, մեծ թագավոր,*
*Բիաինայի թագավոր,*
*Տուշպա քաղաքի իշխան:*
*Մենուան ասաց. ով այս արձանագրությունը*
*փչացնի, ով (այն) տապալի, ով այն քանդի,*
*ով ուրիշի համար սույն (բաները) անի,*
*թո՛ղ աստվածներ Խալդին, Թեյշեբան, Արդինին*
*(նրան) անհետացնեն Արևի առջևից*
*քանդողին...*

*Հավելյալ տարրերը, որ Արգիշտիի թագավորության ժամանակից սկսած հարստացնելու են այս տարբերակը, կտեսնենք հետևյալ տեքստում, որ Արգիշտիի 9-րդ արշավանքի պատմությունն է, № 111.* Sayce XL; Schulz V.

$^{ILU}$Ḫal-di-ni uš-ta-bi ma-si-ni-e giš-šu-ri-e
ka-ru-u-ni $^{MATU}$Ma-na-a-ni $^{MATU}$e-ba-ni-i-e
ka-ru-u-ni $^{MATU}$Bu-uš-tu-ni ṭe-qu-u-a-li
$^{I}$Ar-gi-iš-ti-i-ka-i $^{I}$Me-nu-a-ḫi-ni-i-e
$^{ILU}$Ḫal-di-ni-ni al-su-i-ši-ni $^{I}$Ar-giš-ti-še
a-li-e ḫu-ti-a-di $^{ILU}$Ḫal-di-i-e-di BELU-di
$^{ILU}$ADAD-di $^{ILU}$ŠAMAŠ-di ILU$^{pl}$-aš-te $^{MATU}$Bi-a-na-aš-te
a-lu-si-ni-ni al-su-i-ši-ni a-li-a-ba-di

50. ḫa-a-ši-al-me ILU$^{pl}$ $^{I}$Ar-gi-iš-ti-i-še
$^{I}$Me-nu-a-ḫi-ni-še a-li-e $^{ILU}$Ḫal-di-i ku-ru-ni
$^{ILU}$Ḫal-di-ni giš-šu-ri-i ku-ru-ni $^{ILU}$Ḫal-di-ni-ni
al-su-i-ši-ni uš-ta-di $^{MATU}$Bu-uš-tu-e-di
ḫa-u-bi $^{MATU}$Aš-qa-ia-i ḫu-bi $^{MATU}$Ša-ti-ra-ra-u-ni
55. an-da-ni $^{MATU}$U-gi-iš-ti-ni ’a-al-du-bi
sal-ma-at-ḫi $^{MATU}$U-u-ši-ni ku-ṭe-a-di
pa-ri-e $^{MATU}$A-la-ṭe-i-e $^{MATU}$Ba-da-a-ni
$^{MATU}$e-ba-a-ni a-ma-aš-tu-bi ALU$^{pl}$ ḫar-ḫar-šu-bi
’a-a-še $^{SAL}$lu-tu iš-ti-ni-ni pa-ru-u-bi
60. *(...)873* $^{AMELU}$ta-ar-šu-a-ni-e MU
a-li-ki za-aš-gu-bi a-li-ki še-ḫi-ri a-gu-bi
*(...)80* ANŠU.KUR.RA$^{pl}$ pa-ru-bi
*(...)* ANŠU.A.AB.BA$^{pl}$ *(...)* $^{ALPU}$pa-ḫi-ni
*(...)500* $^{IMMERU}$šu-še
65. $^{I}$Ar-gis-ti-še a-li-e $^{ILU}$Ḫal-di-a iš-ti-ni-e
i-na-ni-li ar-ni-u-ši-ni-li I MU za-du-bi

*Բառացի թարգմանություն (հնարավորին չափ ճշգրիտ).*

*42. խալդին մեկնեց։ Նրա մարտիկը*
*հպատակեցրեց Մանան-ի երկիրը,*
*հպատակեցրեց Բուշթու-նին. դրանք մատուցեց*
*45. Արգիշտիին՝ Մենուայի որդուն։*
*խալդյան մեծությամբ Արգիշտին*
*ասում է. ես դիմեցի տեր Խալդիին,*
*Թեյշեբային, Արդինիին (և մյուսներին), Բիանայի աստվածներին։*
*Մեծ (աստվածների) մեծությամբ, օգնությունն*
*50. ինձ հասցրին աստվածները։ Արգիշտին,*
*Մենուայի որդին, ասում է. Խալդին ուժեղ է,*
*խալդյան ռազմիկը ուժեղ է։ Խալդյան*
*մեծությամբ գնացի Բուշթու-եդի (երկիրը),*
*գրավեցի Աշկաիա երկիրը, գրավեցի Շաթիրարաու-նի (երկիրը)*
*55. (55—56 տողերի իմաստը պարզ չէ)*
*ընթացա Ալատե-ե երկրի շրջակայքը. Բաբա-նի*
*երկիրն այրեցի, քաղաքները կողոպտեցի,*
*այնտեղից տղամարդ ու կին տարա.*
*60. (...) հազար 873 մարդ՝ տարվա ընթացքում,*
*ոմանց կոտորեցի, մյուսներին կենդանի վերցրի։*

(...)80 ձի տարդ (նաև)
(...) ուղտ, (...) եզ,
(...)500 ոչխար։

65. Արգիշտին ասաց. այնտեղ Խալդիի օգնությամբ այս սխրագործությունները մեկ տարվա ընթացքում կատարեցի։

Այս կտորների թարգմանությունը, ինչպես որ կա, անշուշտ շատ կետերում վիճելի է։ Այնուհանդերձ, իր ամբողջության մեջ այն ճիշտ է այնքանով, որքանով որ տալիս է ընդհանուր իմաստը, որի շնորհիվ կարելի է որոշ գաղափար կազմել ուրարտացիների գրական արտադրանքի բնույթի մասին, ինչպես նաև նրանց մտածելակերպի և արտահայտչական ձևերի վերաբերյալ։

Գալով լեզվի կառուցվածքին, մենք համառոտակի այն կքննենք ուրարտերենի բնագավառում գոյություն ունեցող հետազոտությունների հիման վրա։ Ուրարտացիները գործ էին ածում վանկային սիստեմի սեպագրություն, որը փոխ էր առնված ասորեստանցիներից, իսկ վերջինները իրենց հերթին այն ստացել էին ակկադցիներից կամ բաբելոնյան սեմիտներից։ Սրանք էլ մշակել էին այն սումերների գործածած գաղափարագրերի համակարգը պարզեցնելու միջոցով։

Այս վերջին համակարգում սեպաձև նշանները ցույց էին տալիս գաղափարներ, բառեր։ Ակկադցիներին հաջողվեց դրանք վերածել վանկային արժեքների։ Սակայն նրանք հին համակարգից պահեցին որոշ թվով գաղափարանիշեր, որ փոխանցեցին ասորեստանցիներին, ապա և ուրարտացիներին։

Այս գաղափարանիշերից ամենակարևորները հետևյալներն են, որոնք հաճախ են կրկնվում ուրարտական արձանագրությունների մեջ.

Սումերական AN «աստված», որ ասորեստանցիները կարդում էին *ILU* «աստված»[1]

EN «տեր», աս. *BELU*
KA «դուռ», աս. *BABU*
URU «քաղաք», աս. *ALU*
KUR «երկիր», աս. *MATU*
E «տուն», աս. *BITU*
E. GAL «մեծ տուն», «պալատ», աս. *EKALLU*
LUGAL «թագավոր», աս. *SARRU*
UD «օր», աս. *UMU*

[1] Մենք գրում ենք, ինչպես սովորաբար գրում են սեպագրագետները. սումերական բառերը ուղիղ մեծատառերով, ասուրական բառերը նոտրգիր մեծատառերով, իսկ տեքստերը՝ միշտ փոքրատառերով։

MU «տարի», աս. ŠATTU
GUD «եզ», աս. ALPU
UDU «ոչխար», աս. IMMERU
IM «փոթորկի աստված», աս. ADAD
UTU «արևի աստված», աս. ŠAMAŠ
GIŠ «փայտ», աս. IṢU
GEŠTIN «գինի», աս. KARANU
ANŠU «էշ», աս. IMERU
DUB.TE «արձանագրություն», աս. ṬUPPU և մի քանի ուրիշներ[1]։

Ուրարտացիները գործածում էին գաղափարանիշերը նախ և առաջ որպես որոշիչներ, այսինքն՝ ցույց տալու համար, որ այդ գաղափարանիշին հաջորդող բառերը համապատասխանորեն աստծու, երկրի, քաղաքի և այլնի անուններ են։ Վերծանման խսկապես զարմանալի առաջադիմության շնորհիվ բոլորովին դժվար չէր վերծանել ուրարտական արձանագրությունները, բայց հասկանալը պրոբլեմ էր։ Հռչակավոր արևելագետ անգլիացի Սեյսն առաջինը կարդաց ու թարգմանեց ուրարտական տեքստերը։ Նա նույնիսկ փորձեց ուրվագծել լեզվի քերականությունը և հաստատեց բառապաշարի մի մասը։ Բոլոր դժվարությունները հաղթահարելու ցանկությամբ տարված, նա ստիպված է եղել բավական լայն տեղ տալ կամայական կամ չհիմնավորված ենթադրություններին։

Այնուհետև լեզվի ուսումնասիրությունը մեծ առաջընթաց է ապրել։ Շատ ավելի լավ են սկսվել հասկանալ քերականական ձևերն ու նախադասությունների կառուցվածքը։ Մատչելի բառապաշարը մեծապես աճել է։ Կելիշինի և Թոփզաուեի երկլեզվյա կոթողները, անշուշտ, Ռոզեթի քարի դերը կխաղային, եթե ափսոսալի վիճակում չլինեին։ Այնուհանդերձ, նրանք նպաստել են մի շարք տերմինների և ձևերի ըմբռնմանը։

Բանասիրական հետազոտությունները, հիմնված, մանավանդ, զուգահեռ հատվածների համեմատության վրա, հիմնականում ավելի արդյունավետ եղան ձևաբանության, քան թե իմաստաբանության համար։

Ենթադրություններ անելը ևս միջոց է անհայտ մի բանի վրա գրոհելու, բայց դրա համար պետք է ունենալ բանասիրական հոտառություն և բա-

[1] Լեհման-Հաուպտը CICH-ում ընդունել է սումերական գաղափարանիշերն ասորերեն թարգմանելու սիստեմը, ելնելով այն մտքից, որ ուրարտացիները գրությունը փոխ են առել ասորեստանցիներից և գաղափարանիշերը կարդում էին ասուրերեն։ Դա ոչ շատ կարևոր՝ պայմանադրական հարց է։ Ն. Մառը որոշիչները լատիներեն էր դարձնում. Վարժված լինելով CICH-ի տառադարձությանը, մենք թողեցինք այնպես, ինչպես կա, առանց, սակայն, համաձայնելու նրա հրատարակչի հետ։ Ուրարտացիները, անշուշտ, գաղափարանիշերն ասուրերեն կամ սումերերեն չէին կարդում, այլ, իհարկե, իրենց լեզվով։

*վական խոհեմություն՝ կամայականությունից խուսափելու համար։ Այս տեսակի ենթադրությունների շարքում հատուկ ուշադրության են արժանի նրանք, որոնք թելադրված են ասուրական ոճաբանությամբ։ Դրանք ավելի ստույգ են երևում, հաստատվելու ավելի հավանականություն ունեն։ Ուրարտական դպիրները, որոնք ասորեստանցիների աշակերտներն էին, անշուշտ, իրենց պատմությունները շարադրելու ձևում նրանց ազդեցության տակ էին գտնվում։ Շատ բնական է, ուրեմն, ուրարտական տեքստերում ասուրական դարձվածքների ներգործությունը որոնել։*

*Որոշ դեպքերում, երբ գաղափարանիշերը զուգահեռ տեքստերում փոխարինված են հնչյուններով գրված բառերով, եզրակացվում է, որ այդ բառերը ուրարտական համարժեքներ են։ Այդպիսի պարագաներում բառերի իմաստը բացարձակ ճշտությամբ որոշվում է։*

*Այդ միջոցներով շատ գնահատելի արդյունքների են հասել։ Կատարված նվաճումներն ակներև են։ Սակայն չպետք է պատրանքներով տարվել և կարծել, թե բոլոր դժվարությունները հաղթահարված են։ Քերականական համակարգը, նույնիսկ արված հմուտ մեկնաբանությունների լույսի տակ, դեռևս պարուրված է գաղտնիքներով։*

*Այս խնդրում մի հեղինակավոր անձ, զգույշ քննադատությամբ, վերջերս ամփոփեց ուրարտերեն լեզվի ուսումնասիրության բնագավառում ստացված արդյունքները*[1]*։ Դա ուրարտերենի քերականության մի ուրվագիծ է։ Այն մեզ ազատում է այստեղ լեզվի նկարագրությունը կատարելուց։ Մենք սահմանափակվում ենք այդ յուրատեսակ լեզվի ընդհանուր բնույթի մասին որոշ խորհրդածություններով։*

*Հնչյունային համակարգը պարզ է. ուրարտերենը չորս ձայնավոր ունի՝* a, e, i, u, *և տասնյոթ բաղաձայն՝* b, d, g, ḫ, k, l, m, n, p, q, r, s, š, ṣ, t, ṭ, z*։ Միայն ձայնավորներն են, որ հատուկ նշաններ ունեն, բաղաձայնները նշան չունեն, այլ վանկերով են նշանակվում և, ուրեմն, այնքան նշաններ ունեն, որքան վանկ են կազմում՝* ba, be, bi, bu, ab, eb, ib, ub, da, de, di, du, ad, ed, id, ud *և այսպես՝ 17 հնչյունների համար։ Կան նաև ուրույն նշաններ երեքտառանոց վանկերի համար՝* bab, bib, bub *և այլն... Թեպետ կարելի է գրել և* ba-ab, bi-ib *և այլն, որն ավելի հաճախ է գործածվում։*

*Որոշ հաճախակի գործածվող նշաններ ներկայացնում են բառեր։*

---

[1] **Joh. Friedrich,** Einführung ins Urartäische, *1933. Տե՛ս և* **M. Tseretheli,** Etudes ourartiennes, «Revue d'Assyriologie», vol. *32—33, 1935—36 և* Remarques sur les travaux ourartéologiques, *1934։ Ֆրիդրիխը սպառիչ պատասխան է տվել այն առարկություններին, որ կարող էին այս առթիվ առաջ քաշվել, և լայնորեն նշել է լուծման սպասող պրոբլեմները։*

*Սրանք գաղափարանիշեր են, որոնք առաջին հերթին ծառայում են որպես որոշիչներ։ Որոշիչներից և գաղափարանիշերից ամենից ավելի գործածվողները նշված են վերը։ Ուրարտացիների հնչյունային համակարգը շատ ավելի աղքատ է, քան հայերենի և վրացերենի համակարգը։ Ուրարտացիներին հայտնի չեն այս երկու լեզուներին այնքան բնորոշ* c, ç, j *և* ć, ç', dj *աֆրիկատները։ Այս հնչյուններով և այլ հնչյունային առանձնահատկություններով հայերենն ու վրացերենը պարտական չեն ուրարտերեն լեզվի ազդեցությանը, որքան էլ բնական լիներ այդպես ենթադրել։*

*Ուրարտական բառերն ընդհանրապես վերջանում են* -i-*ով, ինչպես՝* pili *«ջրանցք»,* ebani *«երկիր»,* euri *«տեր»,* erili *«թագավոր»,* tini *«անուն»,* esi *«տեղ»,* giššuri *«ռազմիկ», Խալդի, Արգիշտի, Սարդուրի, Լուտիպրի և այլն։ Մի քանի բառեր վերջանում են* -a-*ով՝* burgana *«դղյակ»,* qiuṙa *«գետին», անուններ, ինչպես Ռուսա, Թեշեբա և այլն, ինչպես և* -še-*ով՝* áše *«մարդ»,* mesě *«հարկ, նվեր»,* gunuše *«կռիվ»,* usmaše *«հզորություն»,* alsuiše *«մեծություն», բայց հավանական է, որ այս բառերը ավելի շուտ* -ši *վերջավորությունն ունենան, ըստ հետևյալ ձևերի՝* meši-ni, gunuši-ni, ušmaši-ni *և այլն։*

*Այս բառերն օժտված են լինում մի քանի ածանցներով, որոնց բնույթը դժվար է ճշգրտել։ Այնուհանդերձ, նրանք միշտ բաժանելի են հիմքից, ուրեմն, այստեղ խոսքն ավելի շուտ բառերի ածանցման մասին է, քան թեքման։ Այդտեղից էլ բխում է մեր երկմտանքը սեռականի ու տրականի վերաբերյալ, որոնց համապատասխանորեն վերագրում էին* -i *և* -e *վերջավորությունները։ Մի ածանց գոյություն ունի ներգործական սեռի բայերի ենթական կազմելու համար, իսկ մեկ ուրիշը՝ չեզոք սեռի բայերի համար։ Առաջինը* -še-*ն է։ Այսպես,* Ḫaldi-še karuni *նշանակում է «Խալդին նվաճեց»։ Երկրորդը* -ni-*ն է՝* Ḫaldi-ni uštabi *«Խալդին մեկնեց»։ Մեկ ուրիշ ածանց՝* -ni*, գուցե նույն* -ni-*ն, կազմում է բացառական ու գործիական ձևերը՝* esi-ni *«վայրից»,* esi-*ից «վայր»,* usmaši-ni *«հզորությամբ»,* usmaši-*ից «հզորություն»։ Մի երրորդ* -ni *ծառայում է որոշ անստույգ դեպքերում հայցականը կամ ուղիղ խնդիրը կազմելու համար. օրինակ՝ Մենուան նվաճեց* Etiuni-ni, Buštu-ni*։ Ընդհանրապես, ուղիղ խնդիրը ոչ մի վերջավորություն չունի։* -di *կամ ավելի շուտ՝* -edi *ածանցը կազմում է ուղեվորական հոլով, ցույց է տալիս բայի գործողության ուղղությունը՝* ebani-edi *«դեպի երկիրը»,* Eriaḫini-di *«դեպի Էրիախինի երկիրը»։*

*Լոկատիվի վերջավորությունը* -a-*ն է՝* esi-a *«տեղում»,* ᴾBaruataini-a *«Բարուատաինի երկրում», նաև* ebana *(*ebani-a-*ից) «երկրում»,* gunuša *(*gunuši-a-*ից) «կռվում»։*

*Սեռականի վերջավորությունը* -i *է.* Ḫaldi-i *(բայց գրվում է* Ḫaldi-ei*),* Menua-i *(գրվում է նաև* Menua-e*)։*

Տրականը կազմվում է -e-ով՝ Ḫaldi-e, euri-e, և a-ով՝ Menua-a։

Հոգնակին ճանաչվում է -li ածանց ունեցող բառերում, ինչպես՝ ḫurad ini-li «ռազմիկներ» կամ «բանակներ», սեռական-տրական հոլովը -au e-ով, լրկատիվը՝ huradin-aue (huradini-aue?), բացառականը՝ Ḫaldinani (Ḫaldini-ani?), ուղղորականը՝ Biainaidi «դեպի Բիաինիլի»։

Տրականի և սեռականի հոլովական ածանցը հավաստի չէ՝ i և e ձայնավորներն այնքան շատ են տատանվում, որ չի կարելի հաստատ պնդել, թե դրանք տրականին ու սեռականին հատուկ վերջավորություններ են։ Հավանաբար, այս հոլովները, ինչպես և հայցականը, չունեին որևէ հատուկ վերջավորություն։

Բազմաթիվ տեքստեր սկսվում են հետևյալ ձևով՝ Ḫaldi euri-e, որ թարգմանվում է «Տեր խալդիին», ուրեմն, որպես տրական է նկատվում։ Դրանից ելնելով սպասելի էր, որ Մհերի Դռան արձանագրության մեջ, որը աստվածներին մատուցվելիք զոհաբերությունների կանոնադրությունն է, հասցեագրվածների անունները նույն հոլովով գրված լինեին։ Սակայն այդպես չէ։ Կարդացվում է Ḫaldie և Ḫaldi-ei (որը երկրորդ պատճենում ուղղված է Ḫaldie-ի)։ -i վերջավորություն ունեցող անունների վրա -e է ավելանում, ինչպես՝ Ḫuṭuini-e, Turani-e, Nalaini-e և այլն, բայց ոչ միշտ, ինչպես, օրինակ, Diduaini, Qilibani, Ipḫari։ -a-ով վերջացող բառերի վրա ավելանում է մի երկրորդ -a, այսպես՝ Anapša-a, Erina-a, Šuba-a, սակայն մի քանիսը վերջավորության մեջ այդ երկրորդ -a-ն չունեն, ինչպես՝ Aia, Adiia, Siliia, Uia։ Ուրիշների համար՝ Ḫaldini iniriaši-e, Ḫaldini, -e և -a ձայնավորները պարտադիր չեն, ուրեմն և չեն կարող հոլովական վերջավորություններ համարվել։

Մի շարք անուններ ներկայանում են հետևյալ ձևով. Ḫaldini iniriaši-e, Ḫaldini alsuiši-e, Ḫaldini diruši-e, Ḫaldini daši-e, Ḫaldini ušmaši-e, Ḫaldini arni-e, Ḫaldini niribi-e կամ niribi-i (երկրորդ պատճենում)։ Խալդիի այս տարբեր ասպեկտներն ու որակավորումները նույնպես տրական հոլովով չեն, ինչպես կարելի էր ենթադրել։ Haldini-ն ածական է, որ ուրարտերենում համաձայնում է այն գոյականի հետ, որին որոշում է։ Ուրեմն, պետք էր սպասել՝ Haldini-e iniriašie-e, Haldini-e alsuiši-e, եթե այդպես լիներ տրականի ձևը։ Ḫaldini ածականը ցույց է տալիս, որ որոշյալ գոյականը՝ iniriašie, նույն բացարձակ հոլովումն է, ինչ և խալդինին։ Վերջին -e-ն iniriaši-e-ի, alsuiši-e-ի և այլնի վերջում ոչ մի ձևաբանական արժեք չի ներկայացնում, դա այսպես ասած մակաբույծ մի տարր է։ -ši-ով վերջացող բառերը նույնպես երևան են գալիս -še ձևով։ Սակայն դա նույն բնույթի փոփոխում է, ինչ որ uštabi և uštabe, agubi և agube ու նույնիսկ agubi-e։

Ուրարտական գիրը տարբերություն չի դնում ebani և ebani-e-ի, pili և pili-e-ի, alusi և alusi-e-ի միջև։ -i-ով վերջացող համարյա բոլոր բառերը՝ pi, gi, niribi, uldi, zari, širšini, giššuri, masini, uštini, inani, badusi, pari և այլն, երկու գրությամբ են ներկայանում։ Եթե -e-ն տրականի թեքման արժեքն ունենար, այն չէր օգտագործվի բառերի վերջում ավելացնելու համար։

Տվյալ տեքստում -a-ով վերջացող բառերը չունեն -e ձայնավորը, այլ մի ավելորդ -a։ Մի փաստ ևս, որ -e-ն տրական հոլով չի կազմում։

Մենք կասկածում ենք տրականի քերականական ձևի և ոչ թե հասկացության վրա։ Նա պարզապես արտահայտվում էր բացարձակ հոլովով, ինչպես ուղղակի խնդրի հասկացությունը։ Նրանց կարելի էր զանազանել ըստ նախադասության իմաստի և ըստ բայից ունեցած կախման ձևի։

Նույնը կարելի է ասել սեռականի վերաբերյալ։ Նրան վերագրված հոլովական -i վերջավորությունը ստույգ չէ։ -i ձայնավորն այնքան ազատությամբ է գործածվում, որ, ինչպես -e-ի համար, ոչ մի կանոն հաշվի չի առնում և դժվարին գործ է դարձնում տարբերելը՝ այստեղ ձևաբանական արժե՞ք է, թե նախորդ վանկի ծնունդ։ Օրինակ՝ Ḫaldi-i, pili-i, Diaueḫinie-i-ի վերջին -i-ն հոլովական թեքո՞ւմ է, թե նախորդ -i-ի կրկնությունը, որը հաճախ գրվում է -ie։

Հայտնի է, որ սեռականը գլխավորապես անվան կամ բայի լրացում է։ Թարիրիայի արձանագրության մեջ հայտնաբերվել է համարյա միակ դեպքը, ուր սեռականը բայի լրացման պաշտոն է կատարում, եթե, իհարկե, օժանդակ բայը լռելյայն հասկացվում է՝ Tariria-i ini uldi «Թարիրիային (է) այս պարտեզը»։

Այն դեպքում, երբ սեռականը հանդես է գալիս որպես անվան լրացում, հետաքրքրական է նշել, որ այն զիջում է իր տեղը մի ածականի կամ բացահայտչի։ Այդպիսի դեպքերում սեռականի տեղ ածական գործածելը հատուկ է նաև լուվերենին՝ խեթական լեզուներից մեկին։ Ուրարտերեն չեն ասում՝ Խալդիի հզորությունը, Մենուայի կինը, Խալդիի դուռը, այլ Խալդյան հզորությունը, Մենուայան կինը, Խալդյան դուռը։ Չեն ասում Մենուա Արգիշտիի որդի, այլ Արգիշտյան Մենուա[1]։ Նույնպես չեն ասում՝ այսինչ քաղաքի աստված, ասենք՝ Տուշպայի, Էրիդիա քաղաքի, Կումենուի- ասում են՝ Տուշպայական աստված, Էրիդիական աստված, Կումենունական աստված և այլն... Որևէ երկրի անունը արտահայտվում է ածականով կամ բացահայտչով։ Արգիշտին գնաց Բաբելոնյան երկիր՝ Babilunie eb anigi-

[1] Արդի լեզուներից ռուսերենն է, որ հաճույքով ընդունում է այդ ձևի արտահայտություններ. Московская губерния, Петербургский университет, женина сестра, мамин брат։

-di, կամ Pazania-inie ebanie-di, Apuinie ebaniedi, Arquqinie ebaniedi, Eriaḫininie ebaniedi, Uelikunini ebaniedi և այլն։ Ինչպես նաև Մենուան նվաճեց Šebeteriani ebanie, Ḫuzani ebanie, $^{p}$Ṣupa-ni ebanie։ Շեբեթերիա, Հուզանա անուններում ni=ini վերջավորությունը ածականի ածանց է, մինչդեռ Ծուպայի մեջ՝ -ni-ն հայցականի թեքում է։ Սարդուրին ասում է. «ես գնացի» uštadi Babilunie ebaniedi, բայց երբ ասում է՝ «ես գրավեցի» ḫaubi Babilu ebanie, ապա այստեղ Babilu-ն բացահայտիչ է։

Որպես լրացում գործածված հատուկ անունները սեռականի ձև են ստանում կամ որպես բացահայտիչ են գործածվում։ Օրինակ, -ḫi-ով. անունները՝ Էրիա-խի, Դիաուե-խի, Աբիլիանի-խի, որոնք գործածվում են նաև որպես աշխարհագրական տերմիններ։ Ասում են՝ Eriaḫini ebani «էրիախիական երկիր», կամ որպես պարզ բացահայտիչ՝ $^{I}$Eriaḫi ebanie, $^{I}$Baltulḫie ebanie, Abilianiḫi ebanie և այլն...

Կուլթուրզանի, Ուլտուզա հատուկ անուններ են, ենթարկված իշխանների անուններ։ Արգիշտին ասում է, որ հպատակեցրեց $^{I}$Abilianieḫi ebanie, Ăništirue(?) Quturzani-ini, Ultuza-ini ebanie, ուրեմն՝ «Աբիլիանիխի երկիրը, Կուլթուրզանական Անիշթիրուե (քաղաքը), Ուլթուզական երկիրը»։

Նույն թագավորը ասում է, որ հպատակեցրել է՝ $^{I}$Luša-e ebanie, Katarza-e ebanie, Eriaḫi ebanie, $^{p}$Gulutaḫiḫa ebanie, Uiṭeruḫiniei ebanie։ Ենթադրվում է, որ Luša-e-ն, Katarza-e-ն սեռականի ձևեր են՝ -i-ն փոխարինելով -e-ով որպես թեքման թուլացում։ Սակայն Eriaḫi-ն, Gulutaḫiḫa-ն, որոնք նույն շարահյուսական դրության մեջ են գտնվում, ոչ մի հոլովական վերջավորություն չունեն. նրանք սեռական չեն, ուրեմն և լրացուցիչ չեն կարող լինել, այլ միայն ebanie-ի բացահայտիչ։ Lu-ša-e-ի, Katarza-e-ի վերջավորության -e-ն ձևաբանական արժեք չունի, այլ պարզապես դրության ձև է, այնպես, ինչպես ebanie-ի մեջ վերջին -e-ն։

Բոլոր պատճառները կան ենթադրելու, որ Uiṭeruḫiniei-ն նույնպես սեռականի լրացում չէ, այլ ածական. -ei վերջավորությունը կամայական գրություն է, ինչպես, օրինակ, pieini կամ pieinie փոխանակ pi-ni-ի, կամ giei փոխանակ gi-ի[1]։

Իշպուինին և Մենուան suidutu $^{I}$Uiṭeruḫi, $^{I}$Luša-a, $^{I}$Katarza-a burgala-li (կամ burgana-li) ŠARRU$^{pl}$ $^{p}$Etiuḫini-li, այսինքն՝ «Իշպուինին և Մենուան ավերակի վերածեցին Էթիուխինի երկրի թագավորական դղյակները, որ պատկանում էին Ուիթերուխիին, Լուշային և Կաթարզային»։

Այդ անձերի երեք անունները սեռական չեն. Luša-a-ի, Katarza-a-ի

---

[1] Արգիշտիի Տարեգրության վերջում՝ անեծքի մեջ։

վերջին -a-ն ավելի արժեք չունի, քան Luša-e- և Katarza-e անունների -e-ն՝ Արգիշտիի վերոհիշյալ նախադասություններում։ Շարադրական տեսակետից նրանք բացարձակ հոլովում են գտնվում, բայց շարահյուսական տեսակետից նրանք «դղյակի» burgala-li լրացումներն են, որոնց համար SARRU$^{pl}$-ն «թագավորական» և Etiuḫi-ականը որոշիչներ են։

Նման դեպքերում լրացումը, շնորհիվ իր դրության, համաձայնեցվում է առանց ձևաբանական միջոցների օգնության։ Ուրարտական դարձվածքներն այնքան տարրական են, որ մի գոյական մեկ ուրիշի հետ միավորվելով միմիայն լրացման պաշտոն կարող է ունենալ։ Ասում են՝ Sarduriše karuni ŠARRU $^{I}$Eriaḫi ebanie, ŠARRU $^{I}$Abilianiḫi ebanie կամ karuni $^{I}$Rašuni ŠARRU $^{p}$Ruišianie, «Սարդուրին հպատակեցրեց թագավորին Էրիախի երկրի, թագավորին Աբիլիանիխի երկրի. նա հպատակեցրեց Ռաշու-նիին՝ թագավորին Ռուիշիական երկրի»։ Պնդելով, որ Eriaḫi-ն, Abilianiḫi-ն սեռականի -i վերջավորությունը կուլ են տվել կամ ebani-e-ի մեջ նույն -i-ն փոխվել է -e-ի, ճշմարտության դեմ մեղանչած կլինենք։

Իրականում այս տերմիններից ոչ մեկը սեռական չէ, նրանք լրացումների դեր են կատարում իրենց դրությամբ, որովհետև նրանք հետևում են թագավոր գոյականին։

Համենայն դեպս, սեռականի փոխարեն արտահայտության այլ եղանակներ գործածելը և սեռականի հոլովական վերջավորություն թվացող մասնիկի տատանվող գրությունը կասկածելի են դարձնում ձևաբանորեն որոշակի սեռականի գոյությունը։

Ուրարտերենն ավելի շուտ մտահոգված է -še, -ni ածանցների միջոցով պահպանել այն, ինչ անմիջապես վերաբերում է բայ-ստորոգյալին, այն է՝ ակտիվ ենթական -še-ով, միջին (չեզոք) ենթական՝ -ni-ով, ուղղակի խնդիրը՝ -ni-ով, գործիականը՝ -ni-ով։ Ինչ վերաբերում է գոյականների միջև եղած հարաբերություններին, ապա սրանք հասկացվում են ըստ իրենց դրության, եթե միայն ածականով կամ բացահայտչով չեն արտահայտված[1]։

Բայական համակարգը խիստ յուրատեսակ բնույթ է կրում։ Ամենաուշագրավը բայերի տեսքն է։ Մի շարք միավանկ բառեր երկու-երկու, երբեմն երեք-երեք հարադրվելով՝ կազմում են բայական հիմքը. šu, a-šu-, ḫa-šu-, ḫu-šu-, ku-šu-, za-šu-, ḫar-ḫar-šu-; du-, a-du-, ši-du-, za-du-,

[1] Այդ տեսակետից շատ ուսանելի են հետևյալ արտահայտությունները. pulusinika(i) կամ giššurginika-ini. կոթողի (pulusi) դիմաց սալու համար գործ է ածվում pulusini ածականը՝ «pulusi-ական-առջևում». giššurgini-ն նույնպես giššuri-ի (ուզմիկ) ածականն է. gissur-ini-ի համար giššurini-ka-(i)-ն «բանակի առջև» մի հասկացողություն, մի բառ է կազմում, որ հայցականի ածանցն է ստանում՝ giššurinikaini։

qu-du-, aš-du-, teir-du- (teru-du-ից), šeir-du- (šeri-du-ից), sui-du-, ueli-du-, abili-du-; ru-, a-ru-, ka-ru-, te-ru-, pa-ru-, pu-ru-, hu-ru-; tu-, a-tu-, pi-tu-, ni-tu-, ša-tu-, aš-tu-, uš-tu-, šidiš-tu- և այլն։

*Բայական տարրերի նման միացումների իմաստները ենթակա չեն որևէ ճշգրտման՝ տարրերն իրենք իսկ բավական ծանոթ չլինելու հետևանքով։ Նույնանման տեղերը իրար հետ համեմատելով՝ հաջողվում է միայն գուշակել և ոչ թե որոշել բայերի նշանակությունը։ Կառուցումների վերաբերյալ տեքստերում գործածված բայերը նշանակում են՝ «կառուցել, բարձրացնել, շինել». ռազմական նկարագրություններում՝ բնական է՝ «հաղթել, կռվել, գրավել այնինչ երկրները, ավերել, կործանել»։ Սակայն անհնար է, բացառությամբ հատուկ դեպքերի, հասկանալ նրբերանգները՝ գործածված տերմինների միջև եղած տարբերությունները։*

*Նույնիսկ հնարավոր չէ իմանալ, թե բազմաթիվ բայերում գտնվող վանկերը արդյո՞ք միևնույն իմաստն ունեն։ Ավելի քիչ կարելի է վարանել* du-*ի կապակցությամբ, որը անեծքի բանաձևում նշանակում է «անել, գործել» և կարծես նույնն է նաև ուրիշ բայերում, ուր նա ծառայում է հարկադրական կազմելու՝* te-ru *«դնել, տեղավորել»,* teri-du *կամ* teir-du *«տեղավորել տալ»,* šeri-du *կամ* šeir-du *«բաժանել տալ»։* Teri-šeri *հարաբերակցությունը պարզ չէ։* Teru, šeru-*ի* u-*ի թեքու՞մն է արդյոք այստեղ, թե ուրիշ երևույթ, մի տեսակ* nomen actionis, *ինչպես Ծերեթելին է ենթադրում։ Նույնը կարելի է ասել* u-eli-du-*ի «ժողովել տալ»,* abili-du-*ի «ավելացնել տալ» մասին։*

lu *տարրը, թվում է թե, բայի գործողությունն է ուժեղացնում՝* teru-, teru-lu, qabqaru-, qabqaru-lu, sui-du, suidu-lu *և այլն։*

Šidištu-, šidagu- *անշուշտ պարունակում են* šidu *«կառուցել»* (šiduli ᵛArgištiḫinili *«ես կառուցեցի կամ հիմնեցի* Argištiḫinili *քաղաքը)*. am-aštu-, buraštu-, ašḫaštu*—նույնպես երկու տարրերից են բաղկացած՝* ama-aštu *«հրդեհ անել»,* bura-aštu *«սարուկ անել կամ դարձնել».* ashu-aštu, *իմաստը հայտնի չէ։*

*Բայական ձևերը, որքան որ նրանք ի հայտ են գալիս առկա տեքստերի մեջ, հարուստ չեն և չեն բավարարում խոնարհման բնույթը երևան հանելու համար։ Ուրարտերենին հայտնի է բայերի սեռը. նա տարբերում է ներգործական սեռի բայերը և չեզոք սեռի բայերը։ Առաջինը որպես ենթակա պահանջում է ներգործական հոլով՝ -še-ով, երկրորդը՝ կրավորական հոլով՝* ni-*ով։* Menuaše karuni *«Մենուան գրավեց» այնինչ երկիրը, բայց* Menua-ni uštabi *«Մենուան մեկնեց» դեպի այնինչ երկիրը։*

*Այդ տարբերության բացահայտումն ուրարտերեն լեզվի ուսումնասիրության կարևորագույն արդյունքն է։ Սա լրջորեն հեշտացնում է տեքստերի վերլուծումը։ Պատահում է հաճախ, որ իր կանոնավոր ենթական*

ունեցող ներգործական բային հետևում է մի չեզոք սեռի բայ կամ հակառակը։ Նման դեպքերում գեղչվում է հաջորդող բայի ենթականշ Ասվում է՝ Menuani ušta-di karuni «Մենուան մեկնեց և գրավեց», փոխանակ ասելու՝ Menua-ni uštadi, Menuaše karuni։ Նման պարագաներում միայն բայի սեռի տարբերությունն է թույլ տալիս կողմնորոշվելու։

Սահմանական ներկան կազմվում է -li ածանցի հավելումով, որը հաճախ -lie է գրվում։ Միակ տեղը, ուր գտնում ենք այդ ձևը, աննծքի բանաձևն է։ Այնինչ թագավորն «ասում է» a-li(e). բոլոր այն բայերը, որոնք հետևվում են և ցույց են տալիս տվյալ հուշարձանին պատճառվելիք վնասները, ինչպես՝ խորտակել, շրջել, տանել և այլն..., բոլորը նույն վերջավորությունն ունեն՝ -lie. tu-li(e), pitu-li(e), suidu-li(e), puli(e), ḫušu-li(e), dulu-li(e) և այլն, և դրանք երրորդ դեմքի ձևն են. թո՛ղ աստվածները կործանել տան նման կործանիչին։ Այս նախադասության մեջ բայը նույնպես միևնույն ածանցն ունի՝ ulu-lie։ Սա ենթադրել է տալիս, որ այդ ձևը հավասարապես նշանակում է նաև ներկայի ըղձական եղանակ կամ սահմանականի ապառնի[1]։

Տեքստերում տիրապետող բայական ձևերը սահմանական եղանակի անցյալը, առաջին դեմքի եզակին և երրորդ դեմքի եզակին ու հոգնակին են։

Անցյալի քերականական ըմբռնումը որոշ դժվարություն է հարուցում։ Թվում է, թե բայը համաձայնում է թվով ոչ միայն ենթակայի, այլև ուղիղ խնդրի հետ։ Ծանոթ ձևերից կարելի է հետևյալ օրինակները բերել.

Առաջին դեմք՝

Ես նրան՝ -bi։

Ես նրանց՝ -bi, նաև՝ ես նրանց՝ -li։

Օրինակ՝ ieše ini pili agu-bi; ini-li arniušini-li zadubi; ini-li ebani-li tequ-li, buraštu-li[2]։

Երրորդ դեմք՝

Նա նրան՝ -ni։

Նա նրանց՝ -ni ու ավելի հաճախ՝ նա նրանց՝ -ali։

Օրինակ՝ Menuaše ini pili agu-ni; ini-li arniušini-li Sardur iše zadu-ni[3]; Menuaše ini-li tarmani-li atḫu-ali, šidištu-ali[4]։

---

[1] Ամենուրեք ululie է գործածվում, բացի № 13 և 151-ը, ուր կարդում են kulitu-ni, և Կելիշինի արձանագրությունը, ուր kuludie է գործածվում՝ եզակի և հոգնակի ենթակայով։ Դժվար է այս ձևերը բացատրել համոզիչ փաստերով։

[2] Առաջին օրինակը Շամիրամի ջրանցքի արձանագրություններից մեկն է, երկրորդը կրկնվում է Արգիշտիի և Սարդուրիի ամեն մի արշավանքից հետո, իսկ երրորդը՝ № 147։

[3] Սարդուրիի Տարեգրությունը, № 132Ա։

[4] № 87։

*Հոգնակի՝*

*Նրանք նրան՝* -tu։

*Նրանք նրանց՝* -tu, *նաև՝ նրանք նրանց՝* -tu-li։

*Օրինակ՝* inani par-tu Išpuiniše Menuaše; Išpuiniše Menuaše suidu-tu... burgala-li; kueidunu-li ḫuradinie-li ᴾEriaḫinie ebanie ḫai-tu ALU$^{pl}$ GIBIL ḫarḫarši-tuli[1]։

*Ես՝* -di, *նա՝* -bi, *նրանք՝* -li։ *Օրինակ՝* ušta-di, ušta-bi, ušta-li, *ես մեկնեցի, նա մեկնեց, նրանք մեկնեցին։*

*Դժվարին ու վիճելի հարց է որոշել, թե այդ ածանցները անձնակա՞ն են, թե այլ արժեք ներկայացնող մասնիկներ։*

-li *ածանցն անկասկած հոգնակիի նշան է։ Դժվարությունն առաջ է գալիս* -bi, -ni, -li *և* -ali *ձևերի միջև եղած հակադրությունից, քանի որ ասում են՝ ես նրան կամ նրանց* -li, *և ես նրան կամ նրանց* -ni, *ապա կարելի է եզրակացնել, որ* -bi *և* -ni-*ն ենթակայի հետ կապակցված են, ուրեմն, բայ-ստորոգյալի անձնական ածանցներն են։*

*Հետևյալ ձևերը՝ ես նրանց* -li *և նա նրանց* -ali, *ընդհակառակն, հաստատում են խնդրի հետ կապակցված լինելը և, հետևաբար, ցույց են տալիս, որ ստորոգյալը բայ չէ, այլ անուն կամ բայական ածական։*

-tu, -tuli-*ի պարագան ավելի բարդ է։ Նրանք նրան կամ նրանց* -tu *ձևը ենթադրել է տալիս, որ* -tu-*ն նույն կարգի ածանց է, ինչ որ* -bi *և* -ni-*ն։ Սակայն նրանք նրանց* -tuli *թվում է, թե* -tuli-*ն է* -li-*ի և* -ali-*ի հետ։ Այս երկվությունը չափազանց մտահոգիչ է։*

*Հարցն այն է, թե ինչպես համաձայնեցնել այս անհետևողական ձևերը։ Հազվադեպ, սակայն ուշադրության արժանի տեղերում առաջին դեմքի* -bi *ածանցը զեղչված է։ Օրինակ՝ Արգիշտին ասաց.* ᴾAššur *(կամ* Aššurini*)* (am)ḫuradie ebaniuki ašdu *«ասուրական զինվորներին տարա իմ երկիրը»,* ašdu-bi-*ի փոխարեն* ašdu։ *Եթե ասում են* ebani-li buraštu-li, *ոչ մի պատճառ չկա, որ հնարավոր չլինի ասել* ebani buraštu, *այսինքն՝ առանց* -bi-*ի։*

-ni *ածանցը նույնպես անհրաժեշտ չի թվում երրորդ դեմքի համար։ Այնպիսի նախադասություններում, ինչպես՝ այնինչ թագավորը* aru-me meše *«ինձ հարկ տվեց»,* aru-*ն փոխարինում է* aru-ni-*ին* -ni-*ն զեղչված է հօգուտ* -me-*ի՝ «ինձ», որն այլ ֆունկցիա ունի, քան* -ni-*ն։ Աստվածնե-*

---

[1] *№ 15 և № 13.* ḫaitu ḫarḫaršitu, *№ 132Ա, սյունակ B։* -i-*ն բացատրելու համար է, որ Ֆրիդրիխն ընդունում է ածանցը* -itu *ձևով և ոչ* -tu։ *Սակայն* hau-tu, ḫarḫaršu-tu-*ի* -u-*ն կարող է մեղմանալ, ինչպես* teru-*ն՝* teridu-*ի մեջ։ Այս նույն թեքումը գտնում ենք* suluštiabi-*ի մեջ.* sulušta-bi, sulu-uštabi-*ից, որը բացատրվում է երրորդ վանկին նախավերջինից անցնող շեշտի ներգործությամբ. այսպես՝* teru, *բայց* teridu, *որտեղից՝* teir-du։

*որ* zatu-me ḫarie *«իմ առջև ճանապարհ բացին»,* zatu *հոգնակի երրորդ դեմքը* -tu *ածանցը պահպանել է հակառակ* -me-*ի ավելացման, ի տարբերություն* aru-me-*ի, որով ապացուցվում է, որ* -ni-*ի ներկայությունը բոլորովին անհրաժեշտ չէ։*

*Կարելի էր ուրեմն ասել՝*

*Ես նրան* buraštu, aru, karu, *այսինքն՝ առանց* -bi *վերջավորության։*

*Ես նրանց* buraštu-li*։*

*Նա նրան* buraštu, *առանց* -ni-*ի։*

*Նա նրանց* buraštu-ali*։*

*Չերքեզերեն լեզուն այսօրինակ խոնարհումների ուշագրավ մի իլյուստրացիա է տալիս.*

*Ես նրան տեսնում եմ՝* se tleghu*։*

*Ես նրանց տեսնում եմ՝* se tleghu-x*։*

*Նա նրան տեսնում է՝* y tleghu*։*

*Նա նրանց տեսնում է՝* y tleghu-x*։*

se, y *մասնիկները ենթակա դերանուններն են։ Վերջին* x-*ը հոգնակիի նշան է և համաձայնեցված է հոգնակի դրված ուղղակի խնդրի հետ։* tleghu *ստորոգյալը ոչ մի անձնական վերջավորություն չունի, ենթական է որոշում դեմքերը։ Ստորոգյալի համաձայնեցումը խնդրի հետ ցույց է տալիս, որ ստորոգյալն անուն կամ բայական ածական է՝ կրավորական ու ոչ-ներգործող կրավորական և կամ, համենայն դեպս, չեզոք բայ է։ Հակառակ առերևույթ ներգործական կառուցվածքին, իրականում նախադասությունը կրավորական է՝ «ինձ նա տեսանելի է, ինձ նրանք տեսանելի են» կամ «ինձնից նա տեսնվում է, նրանք տեսնվում են»*[1]*։*

*Չերքեզերեն հոգնակի երրորդ դեմքը եզակի ձևն ունի՝ նրանք նրան տեսնում են՝* a tleghu, *նրանք նրանց տեսնում են՝* a tleghu-x*։*

*Կրավորական կառուցվածքի տեսակետից դա միանգամայն ճիշտ է։ Ենթական կամ առերևույթ ենթական փոփոխվում է առանց որևէ ազդեցություն թողնելու ստորոգյալի վրա, որը ղեկավարվում է ուղղակի խնդրի կողմից։ Դա մեզ պարտավորեցնում է չանտեսել ուրարտերեն տեքստերում գտնվող այն հազվադեպ դեպքերը, երբ նկատվում է նույն երևույթը։*

*Մհերի Դռան արձանագրության մեջ ասված է՝* Išpuiniše Menuaše ini--li BABU zadu-ali teruni ardiše; *այնուհետև՝* uldi teru-ni, zari teru-ni, burgana-ni teru-ni*։*

*Պատճենում, որն, անշուշտ, հետագայում է կատարված,* zadu-ali-*ն ուղղված է* za-tu-li-*ի, իսկ* teruni-*ն՝* teir-tu-*ի։ Ընդսմին առաջին ձևերը*

---

[1] **G. Dumezil** et **A. Namitok**, Fable de Tsey Ibrahim, en tcherkesse occidental, Paris, *1938*.

կրավորական կառուցվածքին համարվում են, մինչդեռ ուղղված ձևերը՝ բոլորովին ոչ։ -tu տարրը հոգնակի ենթակային է արձագանքում, ուրեմն, նա հոգնակիի նշան է, բայց նրա վրա ավելանում է ոչ միայն -li, -tuli, որպեսզի նա հոգնակի ուղիղ խնդրի հետ համաձայնվի, այլ նաև -ni, -tu-ni (ինչպես ս kuituni՝ kugu-tuni-ից), եզակի ուղիղ խնդրի համաձայն։ Կրկնակի համաձայնությունը ենթակայի և խնդրի հետ հակառակ է կրավորական ձևին, որը հաշվի է առնում միայն խնդրի հետ համաձայնությունը։ Գուցե, երկու սիստեմների կոմբինացիայի մասին է խոսքը։

Համենայն դեպս, խոնարհումը դեռևս չի պարզվել։ Ներկա ժամանակը ավելի լավ չէ լուսաբանված, քան անցյալը. ululi(e) գործածվում է եզակի և հոգնակի ենթակայի համար, որը ցույց է տալիս, թե նա ավելի շուտ դերբայական ձև է, քան կատարյալ բայ։

Տեքստերը բայական և անվանական ուրիշ շատ մթին ձևեր էլ են հայթայթում, որոնք դուրս են մնում առաջարկված օրինակներից։

Ուրարտական քերականական համակարգը մի շարք պրոբլեմներ է առաջադրում, բայց մեր տրամադրության տակ եղած նյութը բավական չէ նրանց համոզիչ լուծում տալու համար։ Պետք է սպասել նոր նյութերի, որոնք հանգչում են Ուրարտուի բազմաթիվ քաղաքների ընդերքում։

Ուրարտերենին ժամանակակից՝ Միջագետքի լեզուները և ավելի հները բացարձակ ճշգրտությամբ ուսումնասիրվել են շնորհիվ ազգակից լեզուների, որոնք կենդանի են մնացել գրավոր հուշարձաններում կամ ժողովուրդների բերանում։ Ուրարտերենը ներկայացնում է իր տեսակի մեջ միակ լեզուն, որը ոչ մի ազգակցություն չունի, որպեսզի հնարավոր լիներ համեմատական մեթոդի առավելություններից օգտվել։

Քիչ ժամանակ առաջ մի անսպասելի լույս ցոլաց Ուրարտուի լեզվաբանական հորիզոնում։ Հյուսիսային Միջագետքում հայտնաբերվեց մի լեզու, որի նմանությունն ուրարտերենի հետ աներկբա է։

Այդ լեզվի՝ միտաննի անվամբ վաղուց ծանոթ մի բարբառով է գրվել Եգիպտոսի փարավոն Ամենոֆիս III-ին[1] ուղղված Միտաննիի Թուշրաթթա թագավորի նամակը։ Խաթթուշա (Բողազքյոյ) խեթական մայրաքաղաքի դիվանները նույն լեզվով գրավոր սալիկներ են պարունակում։ Հայտնաբերվել է սումերա-ակկադերեն մի բառգիրք, որը կոչվում է ḫarra-ḫubullu՝ ըստ բառգրքի առաջին բառի։ Սումերական բառերի բացատրությունը բառգրքի մի մասում տրվել է անծանոթ լեզվով։ Հետազոտությունը ցույց է տվել, որ խոսքը նույն Միտաննիի լեզվի մասին է[2]։ Նուզիի

---

[1] **Bork,** Die Mitanni-Sprache, «Mitt. d. Vorderasiatischen Gesellschaft», *14, 1909.*

[2] **Hronzy,** «Mitt. d. Deutschen Orient-Gesellschaft», *№ 5, 1915, էջ 40։ Ֆորրերը* ZDMG-*ում քննել է մի քանի տեքստ, 76, էջ 244։*

*(Յորղան-Թեփե՝ Կերկուկի մոտ) պեղումները հին Առապխիտխում երևան հանեցին ակկադական սալիկներ, որոնք նույնպես պարունակում են նույն լեզվի մեկնություններ և մեծ քանակությամբ հատուկ անուններ*[1]*։*

*Ուգարիտում (Ռաս-Շամրա) կատարված հայտնաբերումները Օրոնտեսի գետաբերանում նոր նյութեր մատակարարեցին*[2]*։ Վերջապես, միջին Եփրատի վրա մի հին պետության՝ Մարիի, թագավորների թողած դիվանների հայտնաբերումը և ուսումնասիրությունը շատ խոստումնալից են*[3]*։*

*Բոլոր այդ վավերագրերը գրված են նույն լեզվով, որի ցուցաբերած տարբերությունները չեն անցնում ամեն լեզվի հատուկ բարբառային երանգներից։*

*Նախընտրում ենք այդ լեզուն անվանել խուրրիերեն և ոչ միտաններեն։ Այդ լեզվով խոսող ժողովուրդը իրեն անվանում էր խուրրի։ Նա զբաղեցնում էր ամբողջ Վերին Միջագետքը, որտեղ և հիմնել էր Միտաննի պետությունը։ Աստվածաշնչին հայտնի է այդ ժողովուրդը՝ խորիմ, խորեացիք*[4]*։*

*Սեպաձև նշանը երկու արժեք ունենալով՝* ḫar *և* ḫur*, սկզբում կարդում էին* Ḫarri*, այստեղ արիացիներին ճանաչելու համար. բայց շուտով Աստվածաշնչի տվյալների և Օսրոհեն անվան վրա հիմնվելով, որը, թվում է, Օրրհոեն ձևի ներքո պահպանել է* Ḫurri*-ի հիշատակը*[5]*, եզրակացվեց, որ ճիշտ ընթերցումը* Ḫurri*-ն է։*

*Այդ ժողովրդի լեզուն, արդարև, ուշագրավ նմանություն ունի ուրարտերենի հետ թե՛ բառամթերքով, թե՛ քերականական որոշ ձևերով։*

*Երկու լեզուների համար ընդհանուր բառեր.*

| *Խուրրիական* | *Ուրարտական* |
| --- | --- |
| pala | pili *«ջրանցք»* |
| ibri *«թագավոր»* | euri *«տեր»* |
| ḫurati | ḫuradi *«ռազմիկ»* |

---

[1] **Contenau**, Les tablettes de Kerkuk, *1926*. **Gordon**, Evidence for the hurrite language from Nuzi, «Bulletin of the American Schools of Orient. research», *№ 64, 1936, դեկտ., էջ 23։*

[2] **Hronzy**, Une inscription de Ras-Shamra en langue hurrite, «Archiv Orientalni», IV, *1932, էջ 118։* **Thureau-Dangin**, Vocabulaire de Ras-Shamra, «Syria», *12, 1931, էջ 225—226։* **E. Dhorm**, «Revue Biblique», *1931, էջ 32։*

[3] *Գ. Դոսսենը պատրաստում է Մարիի վավերագրերի հրապարակումը։*

[4] Գիրք ծննդոց, *ԺԴ, 6. ԼԶ, 20—29* (Χορραῖοι)*։*

[5] **Hronzy**-*ն,* «Arch. Orientalni», *էջ 98, 1929,* Ḫurri *ընթերցումն է առաջարկում* Ḫarri*-ի փոխարեն, որն առաջ էր քաշել Հուգո Վինկլերը։ Հրոզնին ենթադրում է, որ այդ անունը ծագում է* ḫurru *(ծակ, անձավ) բառից, և կարծում է, թե այդ անվանումը գալիս է այն անձավներից, որոնք գտնվում էին Օսրոհենում։ Այդ ստուգաբանությունը շատ կասկածելի է։*

| Խուրրիական | Ուրարտական |
|---|---|
| šauila | šali «տարի» |
| taršu(u)anni | taršuani «մարդ»[1] |
| uli | uli «ուրիշ» |
| tiui «խոսք» | tiu «խոսել» |
| papa | baba «լեռ» |
| ḫari | ḫari «ճանապարհ» |
| išaš | ieše «ես» |
| umini | ebani «երկիր» |
| aru | aru «տալ» |
| piș «ուրախանալ» | pișu-še «ուրախություն» |
| Tešup | Tešeba «փոթորկի աստված» |
| urpumma epešu | urpu «զոհել» |
| urparinnu «զոհարար»[2] | |

*Ուրարտերենին բնորոշ* -hi, -ni, -ši *ածանցները նույն իմաստով կան խուրրիերեն լեզվում։*

*Հոգնակի սեռականի ուրարտերեն վերջավորություն* -ni-*ն երևան է գալիս խուրրիերենի եզակի սեռականում։* n-*ի հերթագայումը* l-*ի հետ երկու լեզուներին էլ հատուկ է. ուրարտերեն* burgana-li *և* burgala-li-*ն համապատասխանում է խուրրիերեն* Ḫanigalbat *և* Ḫaligalbat-*ին։*

*Նախադասության կառուցվածքը նույնն է, և ամենակարևորն այն է, որ ուրարտերենում ներգործական բայերի ենթական* -še *է ստանում, իսկ խուրրիերենում՝* -š. *չեզոք բայերի վրա ավելանում է* -ni *և* -n *խուրրիերենում*[3]*։*

*Այս բոլորը ցույց է տալիս երկու լեզուների ազգակցության առկայությունը։ Խուրրիերեն լեզվի դեռ նոր սկսած ուսումնասիրության առաջադիմության շնորհիվ մի նոր լույս իր ճառագայթները կսփռի ուրարտերենի վրա և կնպաստի այն պրոբլեմների լուծմանը, որ արդի վիճակում անլուծելի են թվում։*

*Հենց որ ուրարտերենի կերպարանքը կոնկրետ ձևեր ստանա, գուցե ավելի հիմնավորված կդառնա կովկասյան լեզուների հետ ուրարտերենի առնչության հարցի առաջքաշումը։*

---

[1] *Սա նույն* taš-šu-ib *բառն է,* taš-šu-*ի հոգնակին, որը էլամերենում իրանական* kara *«զինված ժողովուրդ» բառի իմաստն ունի։ Բիսուտունի արձանագրություն, § 8։*

[2] **J. Friedrich,** Kleine Beiträge zur Churritischen Grammatik, «Mitt. d. Vorderasiatisch-Aegyptischen Gesellschaft», *42,* Heft *2, 1939.*

[3] *Նույնը, էջ 59—61,*

## 7. ՌԱՍԱՅԻ ԵՎ ԾԱԳՄԱՆ ՀԱՐՑԸ

Այս հարցում միակ հնարավոր մեթոդը՝ անվանագիտության (օնոմաստիկայի) վրա հիմնվելն է. միայն սա է, որ թույլ է տալիս ընդհանուր առումով ուրվագծել ուրարտական ցեղի տարածման ոլորտը և գնել նրա ծագման խնդիրը։

Ուրարտու, հնում Ուրատրի, երկրի ազգային անունը չէ։ Ասորեստանցիներն այդ անունով էին հորջորջում Հայկական լեռնաշխարհը։ Վաղ շրջանում նրանք Նաիրի տերմինն էին գործածում նույն իմաստով, որը նույնպես տեղական անուն չէր։ Ուրարտացիներն իրենց երկիրը Բիաինի կամ ավելի շուտ՝ հոգնակի ձևով՝ Բիաինիլի էին կոչում։ Բիա-ինի նշանակում է «Բիայնական երկիր», Բիաինիլի՝ «Բիայնական երկրներ»՝ «Բիայի երկրի» ածականական ձևը։

Հանգուցյալ Լեհման-Հաուպտը շատ պնդեց ուրարտացիների նույնության վրա պոնտական Χάλδοι-ի հետ, որոնք այդպես էին կոչվել Խալդի աստծու անունով, ինչպես ասուրները՝ Աշշուրի անունով։ Նա նույնիսկ կարծում էր, որ ուրարտացիները Խալդինի անունով էին իրենք իրենց հորջորջում, որ նրանց մայրաքաղաքը Խալդինա և ամբողջ երկիրը Խալդիա էր կոչվում։ Այդ կարծիքի պատճառով նա իր արժեքավոր հրատարակությունն անվանեց Corpus inscriptionum Chaldicarum։

Ուրարտացիների և խալդերի միջև եղած հարաբերությունների հարցը ուշադրության արժանի է, և մենք քիչ հետո կանդրադառնանք դրան։ Ինչ վերաբերում է Խալդինի անվանը որպես ուրարտացիների ազգային անուն, Լեհման-Հաուպտը սխալվում է։ Ուրարտական տեքստերը չեն հաստատում նրա պնդումը։ Յ. Ֆրիդրիխն իրավամբ մերժում է այդ կարծիքը, որովհետև Խալդինի չի նշանակում «խալդյան ժողովուրդ», ոչ էլ «Խալդիի որդիք», ինչպես Սեյսն էր ենթադրում, նույնպես և Խալդինան Տուշպա քաղաքը չէ, և ոչ մի տեղ Խալդիան Ուրարտուի իմաստով չի գործածվում։

Անվիճելի է, որ ուրարտացիները իրենց երկիրը ցույց տալու համար իրենց արձանագրությունների մեջ ուրիշ անուն չեն գործածում՝ բացի Բիաինի անունից։ Ասորեստանցիները գործածել են Ուրարտու և Նաիրի տերմինները, բայց դրանից դեռևս չի բխում, որ սրանք ասուրական, այսինքն՝ սեմական ծագում ունեն։ Իրականում սրանք պատկանում են այն աշխարհի՝ հաճախ վկայակոչված և այնքան բնորոշ օնոմաստիկային, որը մենք ժամանակավորապես կոչում ենք ուրարտական։

Մենք տեսանք, որ Ուրարտուի տերիտորիալ հավակնությունները, եթե ոչ նրա ազդեցության սահմանները, տարածվում էին Եփրատից մինչև Մանա երկիրը և Զարիշատ (Չըլդըր) լճից մինչև Կաշիարի (Տուր-Աբ-

դին) լեռնաշղթան։ Էթնիկական տեսակետից ի՞նչ էր ներկայացնում այդ տարածությունը։ Քիչ թե շատ միատա՞րր էր, թե խայտաբղետ։

Մհերի Դռան արձանագրության մեջ (№ 18) թագավորները պատվիրում են զոհաբերություններ կատարել, ի միջի այլոց, օտար լեզուների աստվածներին։ Սակայն այդ աստվածներին հատկացված զոհաբերությունը՝ 4 եզ (արջառ) և 18 ոչխար, այնքան համեստ է, որ համեմատելով մյուս աստվածներին հատկացված զոհաբերությունների հետ, հնարավոր չէ եզրակացնել, որ նրանք որևէ նշանակություն ունեն։

Օնոմաստիկայի տվյալներն ի վիճակի են վեր հանելու ցեղային որոշ ընդհանրություն այն գլխավոր ցեղերի միջև, որոնք ապրում էին Հայկական լեռնաշխարհում, Ուրարտուի և Ասորեստանի միջև ընկած լեռնային գոտում և նույնիսկ ավելի հեռու՝ Վերին Միջագետքում։

Այդ շրջաններին վերաբերող մի շարք անուններ բնորոշվում են հետևյալ վերջավորություններով՝ -ḫi, -(i)ni կամ -ḫi-ni, -zi, -ri։ Ուրարտուի հյուսիսում գտնվող ամենակարևոր ցեղերը, որոնք դեմ էին Տուշպայի տերերի տիրապետությանը, կոչվում էին. Դիաուե-խի, Էրիա-խի, Աբիլանի-խի, Ուիտերու-խի, կամ Էթիու-նի, Վելիքու-նի, Մաքալտու-նի, ինչպես նաև Սևանա լճի շուրջը տեղավորված բոլոր 23 երկրները՝ Ադախու-նի, Արկուկի-նի, Ուիշուա-նի, Զուաի-նի, Ալզիրա-նի, Էրիա-ինի և այլն...

Հնարավոր է, որ այս անուններից մի քանիսի վերջավորությունը ուրարտացի դպրի գրչի հետևանք է, բայց ամբողջությամբ վերցրած նրանք միանգամայն վավերական են։ Արդեն XII դարում, ուրեմն, Ուրարտուի պետության կազմավորվելուց շատ առաջ, ni-ով վերջացող բազմաթիվ անուններ կային ապագա Ուրարտուի տերիտորիայում։ Թիգլաթպալասարն իր 1113 թ. արշավանքի ընթացքում նվաճած երկրների շարքում հիշատակում է՝ Ուզամու-նի, Պիլակի-նի, Աթուրգի-նի, Կուլիբարզի-նի, Շինիբիր-նի, Աբաե-նի, Ադաե-նի, Կիրի-նի, Աբարսիու-նի, Դայաե-նի։

Ուրարտուի հյուսիս-արևելյան սահմանում նույնպես երևան է գալիս էթնիկական ածանց ni-ն՝ Կուլ-խի ժողովրդի անվան մեջ, և հարավում Ուրարտուի և Ասորեստանի միջև գտնվող չեզոք գոտում բազմաթիվ անուններ վերջանում են ḫi-ով, ինչպես՝ Կուտմու-խի, Բաբ-խի, Խաբխի, Լու-խի, Խիրի-խի, նաև Ուրրա-խի-նա, որը պատկանում էր Բաբխիին և որի թագավորը կոչվում էր Շաթի-Թեշեբա, որդի Շաթուխիի և, հավանաբար, Թուշխա կամ Թուշխա-ն(ա)։

-ni ածանցը առկա է նաև Միտաննի, հնում՝ Մաիտենի[1] անվան մեջ,

[1] **E. A. Speiser**, Etnic Mouvements in the Near East in the Second Millenium B. C., The Ḫurrians and their connections with the Ḫabiru and the Hyksos, «Annual of the American School of Oriental Research», vol. XIII, *1931—1932*, p. *23*.

որը բավական է ցույց տալու այդ երկրի էթնիկական կապը Հայկական լեռնաշխարհի հետ։

-ri-ով վերջացող անունները պակաս տարածված չեն. Հիշենք Նաի-րի, որը ոչ մի կապ չունի Նահարաինի հետ՝ Ուրատ-րի, Բա-րի, Աղդու-րի (լեռ), Պախտե-րի, Կինդա-րի, (վերջին երկուսը հիշատակված են Թիգլաթպալասարի կողմից), Շուպ-րի, Շուբա-րի, Կաշիա-րի, Մեխ-րի, Մուզ-րի, Կիրրու-րի, Նամ-րի, Զամ-րի, Մուսասի-րի (Մուսասինայի դիմաց), վերջապես, Խուր-րի։ Դա մի էթնիկական շղթա է, որը տարածվում էր Ուրարտուից մինչ ներքին Զաբի շրջանը, այն բարձրավանդակի վրա, որ շրջապատում է Ասորեստանի դաշտը։

Ժողովուրդների մեկ ուրիշ խումբ երևան է գալիս -zi վերջավորություն ունեցող անուններով, ինչպես՝ Ազ-զի, Հայասա ժողովուրդը Հայաստանում։ Ալ-զի կամ Ալշե, որտեղից և Անզի-տու և Ալզի-նի, Պուրուլում-զի, Թեդիմ-զի, Պիլա-զի (Ուշխու=Շախի մոտ), Նու-զի, Կակ-զի, Պիրի-զի՝ Աստվածաշնչի Φερεζαῖοι, ինչպես և Կենա-զի, հայտնի նույնպես Աստվածաշնչից՝ Κενεζαῖοι[1]։

Մեկ ուրիշ էթնիկական գիծ Արևմտյան Եփրատի ակունքից ուղղվում էր դեպի Ասորիք և ավելի հեռուն։ Միայն Նուզին և Կակզին են այդ գծից դուրս՝ Տիգրիսի ավազանում, Առափխայի (Կերկուկ) շրջանում և Զամուայի շրջանում՝ Կերկուկից հարավ-արևելք։

Անշուշտ, հնարավոր է, որ որոշ դեպքերում տվյալ ածանցներն ուրիշ ծագում ունենան, բայց ամբողջությամբ վերցրած նրանք համապատասխանորեն նույնն են։ Այս -ri կազմիչը թվում է, թե նման է նրան, որը գտնում ենք Նինուա-րի («Նինվեցի», «Նինվեից ծագող») բառի մեջ, որը կա Նուզիի[2] լեզվում։ Այն համարյա նույն արժեքն ունի, ինչ ուրարտերեն -ni, -ḫi (կամ -ḫi-ni)։

Այս ածանցներով կազմված էթնիկական անունները ներկայացնու՞մ են արդյոք տարբեր ծագումով ժողովուրդներ, թե միևնույն ժողովրդի տարբեր ճյուղեր են։ Կատարված ուսումնասիրությունները ցույց են տվել Միտաննիի, Նուզիի և ուրարտերեն լեզուների միջև եղած որոշ ազգակցություն։ Դա շատ ուժեղ փաստ է ի նպաստ էթնիկական ընդհանրության, ինչպիսի տարբերություններ էլ որ լինեն այն կազմող խմբերի միջև։

Խնդիրը մի ժողովրդի մասին չէ, այլ մի ռասայի մասին, որն իր ճյուղավորումներն ուներ և շումերներից, ասորեստանցիներից ու խեթերից տարբեր էր։ Նա հեռավոր անցյալում ունեցել է իր պահը և իր որոշակի

---

[1] Գիրք ծննդոց, ԺԳ, 7. ԼԴ, 30. ԺԵ, 19. ԼԲ, 11, ըստ Dhorm-ի։ Տե՛ս նրա «L'Evolution religieuse d'Israel», I, էջ 119։

[2] Ungnad A., Kulturfragen, I, 12.

տեղը արևելյան քաղաքակրթության պատմության մեջ։ Այս մոռացված ռասայի երևան հանելը հանդիսանում է վերջերս կատարված արևելագիտական ուսումնասիրությունների ամենագնահատելի արդյունքներից մեկը, որը գալիս է լրացնելու Արևելքի հին ժողովուրդների պատմության մեջ եղած որոշ բացերը[1]։

Այն ընդհանրապես խուրրի է կոչվում, բայց ոմանք նախընտրում են Շուբարի անունը։ Խեթերն առհասարակ այդ անուններից առաջինն են գործածում, իսկ Միջագետքի ժողովուրդները՝ երկրորդը[2]։

Այդ ռասային պատկանող մի ժողովուրդ, փայլուն կերպով հայտնվելով պատմության մեջ, հիմնեց Միտաննի անվան ներքո հայտնի պետությունը։ Միտաննիի պատմությունը վերևում շարադրվեց մեր նյութի զարգացման անհրաժեշտության չափով։ Հիշենք, որ թագավորական դինաստիան և ղեկավարող դասակարգը ծագումով հնդիրանական էին։

Միտաննական ցեղերը, ուրեմն, խեթերի ճակատագրին էին արժանացել՝ երկուսն էլ հնդեվրոպական տարրերի տիրապետության տակ էին գտնվում, այն տարբերությամբ, որ խեթերի մոտ դրանք kentum տիպի լեզուների ճյուղին էին պատկանում, իսկ միտանցիների մոտ՝ satem տիպի լեզուների։

Միտաննական ցեղերի կամ խուրրիների բնակության գոտու հարցը հատուկ նշանակություն ունի։ Քանի որ Միտաննիի կենտրոնը Օսրոենեն էր, հնարավոր ենք համարում նույն Օսրոենեն դիտել որպես միտաննական ցեղի օրրան։ Ոչ շատ վաղուց, երբ խեթերը ծանոթ էին միայն ըստ այն հետքերի, որ թողել էին Ասորիքի հյուսիսում, գիտնականները չէին վարանում խեթական նախնական օջախը փնտրել Ասորիքի սահմաններում։ Սակայն Պտերիայի (Բողազ-քյոյ) արխիվների հայտնաբերումը հերքեց այդ տեսակետը և այդ օջախը Ասորիքից տեղափոխեց Փոքր Ասիա։

---

[1] *Միտաննիի լեզուն ծանոթ է Թուշրաթթայի նամակից, որի նոր հրատարակությունը տե՛ս* **J. Friedrich**, Kleinasiatische Sprachdenkmäler, *1932, տեքստ 163*։

*Ռաս-Շամրայի լեզվի մասին՝* **Fr. Thureau-Dangin**, Vocabulaire de Ras-Shamra, «Syria», *12, 1931, էջ 226—266*։

**B. Hrozny**, «Archiv Orientalni», *4, 1832*։

*Նուզիի լեզվի մասին՝* **Speiser**, «Journal of the American Oriental Society», *49, 1929, էջ 269—280*. **M. C. H. Gordon**, Evidence for the Hurrite language from Nuzi, «Bulletin of the American Schools of Oriental Research», Decembre, *1936*.

**E. Chiera** and **Speiser**, A new Faktor in the Ancient East. «Annual of the Am. Schools of Oriental Research, VI, 1926, *էջ 75*.

[2] **Götze, Speiser, Zommer,** Die Aḫḫiyava-Urkunden, *1932, էջ 42, նախընտրում են խուրրի անվանումը Սուբարիի փոխարեն, որը պաշտպանվում է Տեննենի կողմից,* «Zeit. f. Assyriologie», *6*, **Ungnad**, Subartu. Beiträge zur Kulturgeschichte und Völkerkunde Vorderasiens, *1936*.

Հյուսիսում դեռևս չի գտնվել խուրրիական մի Բողազ-քյոյ՝ ցեղի առաջին բնակության պատիվը Միտաննիից խլելու համար, բայց ամեն ինչ ենթադրել է տալիս, որ խուրրիները խեթերի ճակատագիրն են ունեցել, այսինքն՝ որևէ տեղից եկել են դեպի Սև ծովի հյուսիսը, որպեսզի հետագայում Կովկասյան լեռնաշղթայի վրայով իջնեն Հայաստան և ցրվեն Վերին Միջագետքում։

Խուրրիական ցեղի պատմական դերի եռանդուն հետազոտողներից մեկը նրա ներխուժումը տեղավորում է երկրորդ հազարամյակի (մ. թ. առաջ) առաջին դարերում և կարծում, որ Հայաստանը, հատկապես Վանի շրջանը, այդ ասպատակողների ուժերի առաջին հանգրվանն ու հավաքման վայրն է հանդիսացել, նախքան Միջագետքի կենտրոնում Միտաննի պետությունը հիմնելը[1]։

Գրավոր աղբյուրները հիմք չեն տալիս այս վարկածին, բայց նրա հեղինակը ելնում է այն իրողությունից, որ Ասորեստանի կողմից Միտաննի պետության ավերումից հետո Վանի շրջանն էր, որ երևան եկավ որպես խուրրիական ժողովուրդների վերջին ապաստան, ուր նրանք ստեղծեցին Ուրարտու պետությունը և դարեր շարունակ չդադարեցին պայքարել Ասորեստանի դեմ մինչև այն ժամը, երբ վկա դարձան նրա կործանմանը, նախքան իրենց իսկ հեռանալը պատմության թատերաբեմից։

Գուցե, Հայաստանում կատարվելիք հնագիտական հետախուզությունները մի օր իրական ապացույցներ բերեն ի նպաստ սույն վարկածի։ Այնուամենայնիվ, անժխտելի է, որ էթնիկական մեծ շարժումները, սեմականներից բացի, ուղղված են եղել հյուսիսից դեպի հարավ։

Ուրեմն, բնական է, որ ուրարտական և ասուրական սահմանների վրա որոշ ժամանակաշրջանից հաստատված փոքր ժողովուրդները եկած լինեն այնտեղ նույնպես հյուսիսից։ Այս հարցի շուրջ ծագում են որոշ նկատառումներ, որոնց վրա, մեր կարծիքով, անօգուտ չէր լինի կանգ առնել։

Արդեն հայտնի է, որ Հայա-սա-ն խեթական տերմին է և հիշեցնում է Χοῖ անունը, որ կրում էր Պարխար, հին Պարիադրիս լեռներում ապաստանած պոնտական ժողովուրդներից մեկը[2]։ Հայասա պետության ժողովուրդը ծանոթ էր Ազզի անվան տակ։ Գուցե, դա Հայասայի ամենակարևոր ցեղերից մեկն էր։ Հռոմեական ճանապարհացույցների Ազա կամ Հասիս և Զիզի-Օլա կայանները հավանաբար պահել են այս ժողովրդի հիշատակը։

---

[1] **A. Götze**, Kleinasien in Kulturgeschichte des Alten Orients, էջ 69, «Handbuch der Altertumswissenschaft», III, I, 3, 1933, գրքում։ Տե՛ս նույն հեղինակի Hethiter, Churriter und Assyrer, 1936, էջ 31—32։

[2] **P. Kretschemer**, «Anzeiger der Wiener Akademie», 1932.

Հեկատեոսը (520 մ. թ. ա.) հիշատակում է Χοῖ-երին պոնտական ցեղերի շարքում (Ստեփանոս Բյուզանդացու մոտ)։

Թվում է, թե Տիգրիսի ակունքում մի գեղեցիկ օր հայտնված Ալ-զի, Ան-զի, Ալ-շե անունով ժողովուրդը այդ ազգիների մի հատվածն էր, որը այստեղ էր գտնվում կամ այն պատճառով, որ Հայասան որոշ ժամանակ տարածվեց մինչև Արածանի կամ Արսանիաս գետից այն կողմը, կամ կամավոր գաղթի, գուցեև բռնի տարագրության պատճառով։ Ան-զի-տու-ն, հայկական Անձիտ գավառը, դասական հեղինակների Անզիտենեն, ինչպես նաև Արզան-ենեն, որը հայկական Աղձնիքի իրանական ձևն է (ուրարտական Ալզի-նի), իրենց անունն ստացել են այս ժողովրդից։

Պուրուլում-զին, որը ալզիներին միացած մեկ ուրիշ ցեղ էր, անշուշտ նույն ծագումն ուներ։

Կաշկի և Ուրումի երկու ժողովուրդները, որոնք ներխուժել էին Ալզիի և Պուրուլումզիի տերիտորիան, նույն տեքստի մի այլ պատճենում կոչվում են Աբեշլի և Ուրումի։ Այստեղից հետևում է, որ Կաշկի և Աբեշլի ժողովուրդները, եթե նույնը չեն, գոնե ընդհանուր ծագում ունեն։

Հարաբերություն են ուզեցել գտնել Կաշկիի և Կիսկեսոսի՝ այսօրվա Կիսկենի միջև, որը գտնվում է Արգեոս լեռից հարավ[1]։ Սակայն կաշկիները պոնտական ժողովուրդ էին, և ավելի հիմնավորված կլիներ այն Կիսկեն քաղաքի մասին մտածել, որը Ճորոխի հովտում է գտնվում։ Իրականում ո՛չ մեկը, ո՛չ մյուսը Կաշկիի հետ կապ չունեն։

Պատմական տեսակետից կաշկերը հնուց ճանաչված Կոլխ ժողովուրդը կարող են լինել։ Կուլ-խի-ներն արդեն ծանոթ էին ուրարտացիներին։ Խեթական վավերագրերը կաշկերին ներկայացնում են որպես ռազմատենչ ժողովուրդ, որն ընդունակ է ավազակության և պատրաստ պատեհ առիթով մաշեցնելու խեթերին կործանիչ ասպատակություններով։

Կոլխերը ևս այլ կերպ չէին վարվում։ Դա միակ ժողովուրդն է, որն Աքեմենյանների տիրապետության տակ պիտի չընկներ, այն ժամանակ, երբ ամբողջ Առաջավոր Ասիան հպատակ էր դառնալու Թագավորաց Թագավորին։ Այդ շրջանում Կողքիսը աքեմենյան պետության վարչական բաժանմունքների մաս չէր կազմելու, սովորական հարկ չէր վճարելու, այլ իր պարտավորությունները սահմանափակելու էր միայն կամավոր նվիրատվությամբ, որոշ թվով տղաներ և երիտասարդ աղջիկներ տալով[2]։

Ինկապես բնորոշ է, որ զուգահեռ տեքստում Կաշկիի փոխարեն Աբեշլի է դրված։ Այդ հանգամանքը մեզ հուշում է Աբեշլիում տեսնել Ապշիլ ժողովրդին՝ Կողքիսի ցեղերից մեկը, որը հայտնի է հին հեղինակներին։ Այդ դեպքում հանդգնություն չէր լինի ուրումիներին նույնացնել իմերիների հետ, որոնց երկիրը կոչվում է Իմերեթի՝ Պլինիոսի Am(p)reutae-ն, և նույն-

---

[1] Olmstead, History of Assyria, էջ 189։
[2] Հերոդոտ, III, 97։

իսկ, որոշ վերապահությամբ, հարաբերություն նկատել Խուբուշկիի և Աբասկիի միջև[1]։

Ասուրական մի տեքստ կաշկերին, աբեշլիններին, ուրումիներին կոչում է «Խալտիի ռազմիկներ»։ Դա նշանակում է, որ ասորեստանցիները այդ ժողովուրդներին կապում էին Խալտիի քաղաքական աշխարհի հետ, անշուշտ, այն պատճառով, որ նրանք Խալտիի հյուսիս-արևելյան սահմանին էին հարում։ Այնտեղից նրանք ետ մղվեցին դեպի Սև ծովի արևելյան ափը, իսկ մի մասը, խեթական պետության կործանման շրջանում, քշվեց դեպի ուրարտա-ասուրական սահմանը։

Կոլխերը ներկայացնում էին լազա-մինգրելական բնակչությունը՝ իբերական կամ վրացական ընտանիքի ծովափնյա ճյուղը։

Աբեշ-լի-ները կամ ապսի-լի-ներն ավելի շուտ կապված էին աբխազական խմբի հետ։ Հնարավոր է, որ Կաշկին դարձած կլինի Կաշ-խի, ինչպես, օրինակ, հույն հեղինակների Աբասկոյ կամ Աբասգոյ, որոնք համապատասխանում են ուրիշ հույների աբաս-խոյ-ներին, որտեղից և տառափոխությամբ առաջ է եկել՝ աբխա-ս կամ աբխազ։

Գուցե, Կաշ-կի կամ Կաշ-խի-ն Կոլխի կամ Կոր-խի-ն է, եթե Ճորոխ գետի անունը ծագում է Կորոխիից։ Դրանք կարելի է նկատել որպես զուգահեռ ձևեր, որոնք կախում ունեն նույն ժողովրդի տարբեր շրջաններից և տարբեր խմբերից։ Այդ ձևերի հնչյունաբանական հարաբերության բացատրությունը մեծ դժվարություն չի ներկայացնում[2]։

Կաշկի-կոլխերն իրենց ներխուժման հիշատակը թողել են Ալզի երկրում։ Կոլխիս հռոմեական կայանը, որը գտնվում էր Կովքի (Գյոլջուկ)

---

[1] Պլինիոսը, IV, 14, գիտե Ampreutae, Lazi և gens Apsilae։ Առաջին անվան մեջ արդեն Մյուլլերը (հրատ. Պտղոմ., V, 9, էջ 924) ճանաչել է Իմերեթին՝ «Իմերների երկիրը»։ Հեկատեոսը (Ստ. Բյուզանդացու մոտ) և Հերոդոտը (III, 94 և VII, 79) նշում են կոլխերի հետ Mare ժողովուրդը, որ նույն Իմերն է։ Հռոդոսցի Ապոլլոնիոսը (մոտ 240 թ. մ. թ. ա.), 'Αργοναυτικά, II,399, հրատ. Teubner-ի, ասում է, որ Փասիսի ակունքը գտնվում է 'Αμαραντῶ լեռներում։ Ըստ Ստ. Բյուզանդացու՝ 'Αμαράντοι Κολχικὸν ἔθνος ἀφ'ῶν ὁ Φάσις ῥει ὅθεν καὶ 'Αμαράντιον τὸν Φασίν φάσιν;

Ապոլլոնիոսի Scolien-ներում կարծիք է հայտնված, թե Փասիս գետը հոսում է մի մարգագետնով εὐθαλεῖς καὶ ἀμαράντους, որտեղից է նրա անունը։ Դա ժողովրդական ստուգաբանություն է։ Ամարանթին Իմերեթին է՝ հակառակ Սարաբոնի կարծիքին, որ, էրատոսթենեսի հետ համաձայնելով, Հայաստանի մասին է մտածում։

Արիանոսը, Periplus Ponti (Müller, Geogr. Graeci, Min. 1, 370), հիշատակում է Λαζοί, 'Αψιλοί, 'Αβασκοί Պրոկոպիոսի մոտ։ De Bello Goth. IV, 2, էջ 471 (հրատ. Բոնն)՝ 'Αβασγοί, 'Αψίλιοι:

[2] -s և -r հերթագայումը շատ լեզուներում է հայտնի։ Հին sje «կաթն»-ը նոր-վրացերեն դարձել է rje և sjali rjali։ Н. Марр, Грамматика древнелитературного грузинского языка, Ленинград, 1925, էջ 19։

մոտ՝ Անզիտենեում, դրա վկան է։ Գուցե, Տիգրիսի վրա գտնվող Կուրխը միևնույն ծագումն ունի։

Ասորեստանի դեմ կաշկերի զինակիցները մուշկերն էին։ Նրանք երևան են գալիս նույնպես Հայաստանի հյուսիսում՝ Կոլխիդայի սահմանի վրա, այն լեռների ստորոտում, որ նրանց անունն է կրում՝ Μοσχικὰ ὄρος։ Դեռևս այսօր այդ շրջանի բնակիչները ծանոթ են Մես-խի հին անվան ներքո[1]։

Ասորեստանցիներն այդ անունը տալիս են Միտայի կամ Միդասի ժողովրդին, այսինքն՝ փռյուգիացիներին։ Դրանից եզրակացրել են, որ մուշկերը ներկայացնում են փռյուգիական ապատակողների առաջապահը, որ առաջ խաղաց մինչև Ասորեստանի սահմանը։ Սակայն Մուշկի և Կաշկի պետությունների ճակատագրի ընդհանրությունը թույլ չի տալիս նման նույնացում կատարելու։ Շատ հավանական է, որ Մուշկին երկրի կամ երկրի մի մասի նախափռյուգիական անունն է, որը փռյուգիացիները նոր էին գրավել, իսկ ասորեստանցիները շարունակում էին հին անունով կոչել, հակառակ տեղի ունեցած էթնիկական փոփոխությանը։ Ինչպես Հայաստանը՝ Դարեհի արձանագրության պարսկական տեքստում Armina, նույն տեքստի բաբելոնյան տարբերակում դարձել է Ուրաշտու, այսինքն՝ Ուրարտու, որը երկրի նախահայկական անունն է։

Անհրաժեշտ է տարբերել Միդասի ղեկավարած Մուշկին այն Մուշկիից, որ Կաշկիի հետ միասին էր գործում։ Առաջինում փռյուգիացիներն էին ապրում, երկրորդը նախափռյուգիական մի ցեղ էր, որը, հավանական է, որոշ նմանություններ ուներ կաշկերի հետ։ Փռյուգիացիների ապատակությունների հետևանքով մուշկերը ծովափով մղված կլինեն մինչև Կողքիս, իսկ նրանց մի մասը՝ կաշկերի հետ գործակցելով՝ արշավել է Ասորեստանի դեմ։

Մուշկի-ի փոխարեն Մես-խի-ն, ինչպես ապացուցում է Μόσχο=Մեսխի փաստը, արդեն հաստատում է այս ժողովրդի և Կաշկի-Կոլխի-ի միջև եղած կապը։ Իրոք, ըստ Դարեհի ժամանակակից Հեկատեոսի՝ մոսխերը Կողքիսի ցեղերից մեկն էին[2]։

Անունից ելնելով, կուտմուխիները նույնպես միևնույն էթնիկական խմբին պիտի որ պատկանեին։ Նրանք զինակցում էին մուշկիների հետ Ասորեստանի դեմ, որքան ներշնչված ընդհանուր թշնամու դեմ ունեցած ոխակալությամբ, նույնքան էլ արյունակցական կապերի պատճառով։ Նրանք երևան են գալիս Կաշիարի շղթայում՝ Տիգրիսի հովտում։ Ոչ մի պատճառ չկա բաժանելու նրանց նույն անունը կրող ժողովրդից, որը վերջ

---

[1] Ըստ Ստրաբոնի, XI, 2, 18, Μοσχικὴ-ն բաժանված էր կոլխերի, իբերների և հայերի միջև։ Procop.-ը, De Bello Goth., IV, 2, արդեն գիտե ներկա ձևը՝ Μέσχοι:

[2] Ստ. Բյուզանդացու մոտ՝ Μόσχοι Κόλχων ἔθνος προσεχὲς τοῖς Ματιηνοῖς:

ի վերջո հաստատվեց Եփրատի վրա, այն շրջանում, որը նրանց անունն է կրում՝ Կումմուխի, հին հեղինակների Կոմմագենեն։ Ո՞րտեղից են եկել նրանք։ Նրանց անունը շատ է հիշեցնում Հայասա թագավորության մայրաքաղաք Կումախան, հայկական Կամախը, որ իր անունը պահել է մինչև մեր օրերը։ Հավանական է, որ նրանք այս թագավորությունը կազմող ցեղերից մեկն էին[1]։

Նրանց թագավորների անունները՝ Կալի-Թեշուպ, Կիլի-Թեշուպ, Շատուխի, և Ուրախի-նա քաղաքը ոչ մի կասկած չեն թողնում նրանց ծագման վերաբերյալ։ Ասորեստանցիներն ասում են, որ Կուտմուխիի թագավորները կոչվում էին նաև ir-ru-pi։ Առաջին սեպաձև նշանը երկու արժեք ունի՝ ir և sa։ Ցորերը նախընտրում է կարդալ sa-ru-pi, որպեսզի այնտեղ գտնի ասուրական šar-rabu «մեծ թագավոր»-ի բարբարոսական արտասանությունը։ Դա սրամիտ է, բայց քիչ հավանական։ Հնարավոր է, որ պետք է կարդալ ir-ru-pi և այն համեմատել ip-ri «թագավոր»-ի հետ, որի ուրարտական ձևն է euri («տեր»)։

Բաբ-խի ժողովուրդը, որ կուտմուխիների հետ հարևան և համերաշխ էր, նույնպես թվում է, թե հյուսիսից է եկել, բայց այդ մասին վստահ չենք[2]։

Այսպիսով հաստատվում է, որ մեծ թվով ցեղեր Ուրարտուի մեկ ծայրից մղվել են մյուսը՝ հյուսիսից դեպի Ասորեստանի սահմանը։ Նրանց անվան բնորոշ վերջավորությունը՝ -hi, թույլ է տալիս Դիաուե-խիի, Էրիա-խիի, Աբիլիանի-խիի և ուրարտական այլ ցեղերի հետ ազգակից համարել նրանց։ Կողքիսի և Ուրարտուի միջև եղած էթնիկական կապերն առավել ևս կամրապնդվեին, եթե վստահ լինեինք, որ Բիաի-նի-ն նույն կազմությունն ունի, ինչ որ Սանի-ն կամ Ծանի-ն, որոնք գործածված են տեղական Ճանի կամ Ցանի և Սուա-նիի փոխարեն, և որ Էգերի-ն՝ կոլխերի մի այլ անունը, Իբերի-Իմերի-ն, Բիղեյրի-ն, Էկեխեյրի-ն նույն կարգի են, ինչ որ Նաի-րին, Ուրատ-րին, Նամ-րին և այլն...

---

1 Կումմուխին, որը կովկասյան ժողովրդի անուն է և չպետք է շփոթել Կումիկ-ի հետ, շատ հատկանշական է։ Սակայն հին հեղինակներին ծանոթ չէ նա, և դա արգելք է հանդիսանում եզրակացության հանգելու։

2 Ստրաբոնը ճանաչում է մի ժողովուրդ 'Αππαῖται, որը նա նույնացնում է հին Κέρχεται-ների հետ և որը ապրում էր սաների մոտ, ուրեմն՝ Տրապիզոնի շրջանում։ Թվում է, թե 'Αππαῖται-ն (կարդալ 'Απαγῖται) նույն ժողովուրդն է, որ Կոնստանդին Ծիրանածինը, De Adm. Imp., 42, նշում է Παπαγία անվան տակ, որպես Καταχία-ի հարևան։ Վերջինը կաշակն է, այսինքն՝ ժամանակակից չերքեզը, հին Κερχέτες-ը։ Այս ժողովուրդն ապրում էր աբազների հյուսիսում, Կուբանի շրջանում։ Ստրաբոնի 'Αππαῖται-ն, անշուշտ, կերկետների մի գաղութ էր կամ ավելի շուտ՝ նրանց ցեղերից մեկը, որը Ծիրանածինը Պապախա է անվանում։ Այս անունն ունի՞ արդյոք հարաբերություն Բաբխիի կամ Պապ-խիի հետ, սա է հարցը։

Պոնտական ամենակարևոր ժողովուրդներից մեկը՝ խալիբները, ներկայացուցիչներ չունեն Ասորեստանի սահմանների շրջաններում, ինչպես կոլխերը և ուրիշները։ Ըստ Ստրաբոնի՝ խալիբները նույն խալդերն են, իսկ Լեհման-Հաուպտը կարծում է, որ խալդերը Խալդի աստծու ժողովուրդն են և Ուրարտուի ազգային անունը։ Հուշակավոր աշխարհագետի կարծիքը կարծես ուրիշ հիմք չունի, բացի Խալիբ և Խալդ անունների մերձհնչյունաբանությունից, սակայն այդ կարծիքը ուրարտական տեքստերում հիմք չի գտնում։

Ինչևիցե, գոյություն է ունեցել մի ժողովուրդ, որը կոչվում էր Խալդ, անկասկած, աստծու անունով։ Ստիպված ենք ընդունել, որ այս անունը հատկացվել է այդ ժողովրդին Ուրարտուի կործանումից հետո։ Հայերը, Ուրարտուի ժառանգությունն ստանալուց հետո, հաղթված բնակիչներին անվանել են նրանց աստծու անունով։ Հեկատեոսը չի ճանաչում Խալդ ժողովուրդ, ինչպես նաև Հերոդոտը։

Քսենոփոնն առաջինն է, որ հիշատակում է այն՝ Հայաստանի սատրապ Օրոնտասի վարձկան զորքերի միջև։ Նա պատմում է նաև, որ խալդերը, լեռներում ապաստանած, շարունակում էին պաշտպանվել հայերից։ Մի հատվածը ստիպված է լինում փախչել դեպի հյուսիս՝ Դերքսենի, Կարենիտիսի շրջանները և ավելի հեռու։ Այստեղ նրա բնակված լինելը հաստատվում է Խալդոյ-առիճ գյուղով (արդի Կալդարիճը), վերոհիշյալ երկու՝ Դերջան և Կարին շրջանների սահմանագլխում, Եփրատի վրա և Խալդիա, հայերեն՝ Խաղտիք, երկրով, Պարխար լեռնաշղթայի ճյուղավորումների վրա։

Այս խալդերն անծանոթ են Հերոդոտին։ Քսենոփոնը նույնպես նրանց չի ճանաչում, այնտեղ նա տեղադրում է խալիբներին։ Ըստ Ստրաբոնի՝ հայերը խալիբներից և մոսինոյներից խլել են Դերքսենը և Կարենիտիսը։ Նա չի հիշատակում խալդերին։ Դա չի թելադրում խալդերի նախնական բնակավայրը փնտրել պոնտական շրջաններում, որտեղից նրանք իրենց Խալդի աստծու հետ ներխուժած լինեին Ուրարտու և ստեղծած հզոր պետությունը։

Անշուշտ, Լեհման-Հաուպտին է պատկանում խալդերի և Ուրարտուի հետ նրանց հարաբերության հարցը առաջինը առաջ քաշելու պատիվը։ Սակայն նա այդ հարցը շոշափել է կամայական կերպով և առանց ուրարտական տեքստերի օժանդակության։ Սխալ էր Corpus-ը հրապարակել խալդերի անունով։ Գիտնականը, անտարակույս, ազդվել է այն իրողությունից, որ գոյություն ուներ խալդեր անվամբ մի ժողովուրդ, բայց նա մոռացել է մեկ ուրիշ ժողովրդի, որը ուրարտացիների անունն է կրում և որի գոյությունը նույնպես հաստատված է։ Դրանք Հերոդոտի ալարոդներն են Արաքսի հովտում, որոնց հիշատակը դեռևս պահպանում է հայկական նահանգ Այրարատը և ասորիների օրտայանները՝ Անգխենեի շըր-

ջանում[1]։ Հետևաբար, ոչ մի պատճառ չկա խալդերի անունը նախընտրել ուրարտացիների անունից։

Ալարոդները սապեյրների և մատիանների հետ միասին կազմում էին Արևելյան Հայաստանի՝ Դարեհի կողմից ստեղծված սատրապություններից մեկի բնակչությունը։ Ավելի ուշ սապեյրները երևան են գալիս այն շրջանում, որ այսօր նրանց անունն է կրում՝ հայկական Սպերը, այժմյան Իսպիրը Ճորոխ գետի վրա։ Այս ժողովուրդն իր անվամբ պարտական է Սուպրիին՝ շատ ծանոթ թագավորություն Բատման գետի ջրերի վրա, որը հետագայում հիշատակվել է Սուպիրիտիս անվամբ[2]։

Սուպրին իր բնակչության մի մասը գաղթեցրել էր դեպի Հայաստանի հյուսիսը։

Սապեյրների հարևան մատիանները Միտաննիից էին, որի հին ձևը՝ Մատիե-նի, ավելի հարակցություն ունի Մատիա-նիի հետ։ Համանման պատճառներ Միտաննիի բնակիչներին մղել են Հայաստանի արևելյան շրջակայքը, որտեղ նրանք իրենց անունը տալիս են Ուրմիա լճին, որը առաջներում Մատիանե էր կոչվում։

Մեկ ուրիշ ժողովուրդ՝ մուշքիները, նույն բախտին արժանացան. նախապես նրանք ապրում էին Մակլուբ լեռան վրա, Ասորեստանի մայրաքաղաքի հյուսիսում, բայց հետագայում նրանց հաստատված ենք գտնում Արևմտյան Հայաստանի Դերսիմի շրջանում, Արսանիաս գետի մի վտակի վրա, որը մեր օրերում դեռևս Մուզուր է կոչվում՝ ըստ հին Հայաստանի Մծուր կամ Մզուր համանուն գավառի։

Հարավի մի քանի ժողովուրդների տեղափոխումը դեպի հյուսիս, անշուշտ, չի որոշում նրանց նախնական բնակության հարցը։ Չի բացառված, որ նրանք երբևէ իջած լինեն հյուսիսից, ինչպես մի շարք ուրիշ ժողովուրդներ։ Ինչ էլ որ լինեն առաջարկված նույնացումներից մի մասի նկատմամբ

---

[1] **Հերոդոտ**, III, *94*։ Ἀλαρόδιοι։ *Ուրծայա ժողովրդի մասին։* **Noldeke,** Die zwei Völker Vorderastiens, «Zeit. d. Morgenländ. Gesell.», *13, 1879*; **J. Markwart,** Südarmenien und die Tigrisquellen, *էջ 73, 187*։

[2] **J. Marquart**-*ը*, Eransahr, *էջ 159, «նկատել էր, որ Փարսալացի Կիրսիլոս և Լարիսացի Մեդիոս պատմիչների* Συσπιρίτις-*ը տարբեր է* Σασπεῖρες-*ից (***Հերոդոտ**, III, *94) կամ* Υσπιρῖτις-*ից (***Ստրաբոն**, XI, *14, 9) և կամ* Ἑσπερῖται-*ից (Քսենոփոնի Անաբասիսի վերջաբանը)։ Առաջինը Շուպրիան է, երկրորդը՝ Սպերը։ Ըստ այնմ նա իրավամբ ուղղում է* Συσπιρῖτις-*ը* Σουπιρῖτις-*ի, բայց սխալվում է, երբ ուզում է* Σαπεῖρες-*ում տեսնել վերացական նախածանց* -sa-*ն, երկու անունները զանազանելու համար։ Իրականում խոսքը միևնույն ժողովրդի մասին է, որն իր անունը տվել է երկու վայրերի՝ տարբեր ժամանակաշրջաններում։ Հռոդոսցի Ապոլոնիոսը իր* «Argonautica» *քերթվածում, 3, 395, կոչում է* Σάπειρες *նույն երկիրը, ինչ որ Հերոդոտի մոտ* Σάσπειρες-*ն է։ Դա թույլ է տալիս վերջինն ուղղել* Σάπειρες-*ի, հայկական Սպերի համաձայն, ինչպես և ըստ Ստրաբոնի* Ὑσπιρι-τις-*ի և Քսենոփոնի* Ἑσπερῖται-*ի։*

արվելիք վերապահումները, կարծում ենք, որ ամբողջությամբ վերցրած նրանք ուշադրության արժանի են։ Համեմատված համարյա բոլոր անունները վերցված են միևնույն աշխարհագրական ու պատմական միջավայրից։ Նրանց նմանությունը չի կարող պատահական լինել։ Խնդրո առարկա ժողովուրդները գլխավորապես պատկանում են կոլխա-իբերական կամ վրացական ընտանիքին, որ կովկասյան լեզուների խմբերից մեկն է կազմում։

Եթե հատուկ անունների բնորոշ կազմիչները թույլ տային վերոհիշյալ ժողովուրդների և ուրարտացիների ու, նրանց միջոցով, խուրրիական ցեղի հետ ազգակցության մասին խոսելու, ապա կպարզաբանվեր այդ ցեղի բնույթը։ Ոչ թե այն պատճառով, որ խուրրիները կոլխա-իբերական ծագում ունեն, այլ այն, որ այդ ընտանիքի ժողովուրդները խուրրիների մաս կկազմեին, ինչպես ուրարտացիները։

Իհարկե, վճռական խոսքը կասվի դեռևս որոշվելիք լեզվական հարաբերությունների պարզաբանումից հետո։ Այն փաստը, որ վրացերենի հնչյունաբանական համակարգը տարբերվում է ուրարտերենի համակարգից, ճիշտ է, քաջալերական չի թվում, սակայն հնչյունաբանությունը ավելի կարևոր է բառապաշարի համար, քան թե քերականական կառուցվածքի։ Շատ գիտնականներ տեսականորեն ընդունել են վրացերենի հնարավոր ազգակցությունը ուրարտերենի հետ։ Սակայն այդ տեսակետը մեկնաբանելու ուղղությամբ թափված ջանքերը ծանրակշիռ չեն և զուրկ են լեզվաբանական հետաքրքրությունից։ Իրոք, կովկասյան լեզուները դեռևս մեթոդիկ կերպով չեն ուսումնասիրվել, ոչ միայն չեն հետազոտված տարբեր խմբավորումները, այլ նույնիսկ մեկ խմբի լեզուները չեն պարզաբանված իրենց փոխադարձ հարաբերությունների մեջ։

Միայն վրացական խումբը մեկ տասնյակ լեզվից ավելի է ընդգրկում։ Քանի դեռ հետազոտված չէ այդ լեզուների համեմատական քերականությունը՝ օտար ծագում ունեցող բառական բոլոր տարրերից (որոնք բավական շատ են) զերծ մի բառարանի օգնությամբ, քիչ արդյունավետ կլինի վիճել այս լեզուների նմանության և կապերի մասին ուրարտերենի կամ խուրրիերենի հետ։

## 8. ՈՒՐԱՐՏՈՒԻ ՎԱԽՃԱՆԸ ԵՎ ՆՐԱ ՊԱՏՄԱԿԱՆ ԴԵՐԸ

Ուրարտուի վերջին օրերի մասին մեր տրամադրության տակ փաստեր չունենք, և հայտնի չէ, թե ինչ պայմաններում նա դադարեց գոյություն ունենալուց։ Բացահայտ է թվում, որ նա զոհ դարձավ այն նույն հեղաշրջմանը, որ սրբեց-տարավ Ասորեստանի պետությունը։

Ուրարտուն վերջին անգամ հիշատակված է բաբելոնյան շատ վնասված

մի տարեգրության մեջ, որի գիտական հրատարակությունը լույս է ընծայել Բրիտանական թանգարանի թանգարանապահ Գադդը[1]։ Ուրարտուին վերաբերող տեղերը, դժբախտաբար, այնքան աղճատված են, որ դժվար է նրանց իմաստը հասկանալ։

Հրատարակիչը կարծում է, թե խոսքը մի արշավանքի մասին է, որը Աքքադի թագավոր Նաբոպալասարը, Ասորեստանը կործանողներից մեկը, կատարել է Ուրարտուի դեմ։ Սակայն տեքստը մեզ վրա այդ տպավորությունը չի թողնում։

Այդ վավերագիրը պատմում է այն պարագաները, որոնք հանգեցրին Ասորեստանի անկմանը։ Մենք դրան կանդրադառնանք, երբ խոսելու լինենք մեդացիների պետության հետ կապված իրադարձությունների մասին։ Այստեղ սահմանափակվենք Ուրարտուին վերաբերող հարցերով։

Ասորեստանի մայրաքաղաք Նինվեն գրավվեց 612 թվականին (մ. թ. ա.)։ Սինշարիշկուն թագավորը իր մահը գտավ քաղաքի ավերակներում։ Նրա հաջորդ Աշուրուբալլիտը բանակի մնացորդների հետ փախչում է Խառան քաղաքը։ 610 թվականին Նաբոպալասարը և Ումման-մանդայի թագավորը հարձակվում են Խառանի վրա։ Աշուրուբալլիտը դատարկում է քաղաքը և անցնում Եփրատի մյուս ափը։ Ասպատակողները գրավում են քաղաքը։ Նաբոպալասարն այնտեղ պահակազորք է թողնում և իր երկիրն է վերադառնում։ Հայտնի չէ, թե Ումման-մանդայի թագավորը մնո՞ւմ է քաղաքի տեր, թե նույնպես ետ է քաշվում։

Հաջորդ տարին, ուրեմն՝ 609 թվականին, եգիպտական բանակը օգնության է գալիս Աշուրուբալլիտին։ Վերջինս անցնում է Եփրատը և գալիս ճամբարում է իր դաշնակցի հետ Խառանի դիմաց։ Բաբելոնյան կայազորը թշնամուն ետ մղելու համար գրոհ է կատարում դեպի դուրս, բայց ձախողվում ու ջարդվում է։ Սակայն պաշարողներին չի հաջողվում քաղաքը գրավել։ Նրանք պաշարված վիճակում են պահում քաղաքը թամմուզ ամսից սկսած մինչև էլուլ ամիսը, ուրեմն՝ երեք ամիս։ Նաբոպալասարն օգնության է գալիս իր զորքերին... Ապա խոսվում է Իզալա լեռան վրա տեղի ունեցած ճակատամարտի, բազմաթիվ երկրների ու քաղաքների հրկիզման մասին։ «Այդ ժամանակ բանակը (առաջ է խաղում) մինչև Ուրաշտուի շրջանը», վերցնում ռազմագերիներ։ Ապա Աքքադի թագավորը վերադառնում է իր երկիրը։

Տարօրինակ է, որ Նաբոպալասարը, որ օգնության էր գնում իր զորքերին, այսինքն՝ Խառանում պաշարված կայազորին, որի մի մասը ոչնչացվել էր պաշարողների կողմից, ստիպված է լինում ճակատամարտի

---

[1] **C. J. Gadd,** The fall of Nineveh. The newly discovered babylonian chronicle, *№ 21, 901,* in the British Museum, *1923.*

բռնվել Իզալայի շրջանում։ Դա գալիս է ասելու, որ Խառան գնալու համար նա ընտրել էր Բաբելոնից Նինվե և Մծբին տանող ճանապարհը, բայց Իզալլա լեռան վրա, որը տարածվում է Մծբինից վերև, նա հանդիպում է թշնամի ուժերին։ Հավանական է, որ դա ասուրական նահանգների բանակն էր, որ գտնվում էր Իզալա լեռնաշղթայի և Տիգրիսի միջև ու համատարիմ մնալով Աշուրուբալլիտին՝ աշխատում էր կասեցնել Նաբոպալասարի առաջխաղացումը դեպի Խառան։

Աքկադի թագավորը վստահեցնում է, որ Իզալայի շուրջը կատարված ռազմական գործողություններում ինքը հաղթանակ է տարել և նույնիսկ ընթացել է մինչև Ուրաշտուի շրջանը՝ adi piḫat $^{ALU}$Uraštu։ Այսինքն՝ նա թշնամուն հետապնդել է մինչև Ուրարտուի սահմանը։ Ասորեստանի այն նահանգները, որտեղ նա ռազմական գործողություններ էր կատարում, տեղավորված էին Ուրարտուի տերիտորիայի դիմաց, Տիգրիսից այն կողմ։

Կ. Գադդը կարծում է, որ $^{ALU}$Uraštu-ն Ուրարտուի մայրաքաղաք Տուշպան է, ուրեմն, piḫat $^{ALU}$Uraštu Տուշպայի շրջանը կլիներ, ուստի նա հնարավոր է համարում, որ Նաբոպալասարը ներխուժած լինի Ուրարտու և առաջ խաղացած մինչև մայրաքաղաքը՝ Տեքստը, ինչպես և ժամանակի իրավիճակը նման կարծիքը չեն արդարացնում։ Նա, ով չէր կարողացել օգնության հասնել և ազատել Խառանում պաշարված իր զորքերին, մի բան, որ նրա արշավանքի նպատակն էր, կարիք չուներ, եթե նույնիսկ ի վիճակի լիներ, արկածախնդրաբար նետվել դեպի Ուրարտու, թողնելով հետևում իր իսկական թշնամուն։ Դա ևս առավել անճշմարտանման է թվում, քանի որ Ուրարտուն Ասորեստանի կողմը չէր բռնել երկիրը ներխուժողների դեմ։ Ուրարտուի դիրքը Նինվեի ողբերգության մեջ հայտնի չէ։ Եթե կարելի է հավատալ Աստվածաշնչի մի տեղին, Ուրարտուն Ասորեստանին հակառակ ճամբարում էր գտնվում։ Երեմիա մարգարեն կոչ է անում Արարատի, Միննիի և Ասքենազի թագավորություններին, բայց Բաբելոնի դեմ, և ոչ թե Ասորեստանի, որը բացահայտ կերպով անհարիր է.

«Եհովան գրգռեց մարաց թագավորների միտքը,
Մտադրություն ուներ կործանել Բաբելոնը…
Հնչեցրեք շեփորները ազգերի միջև,
Պատրաստեցեք ազգերին նրա դեմ.
Կանչեցեք նրա դեմ Արարատի,
Միննիի և Ասքենազի թագավորությունները։
Նրա դեմ նշանակեցեք բանակի զորավար.
Փշակալած մարախների պես նետեցեք ձիերը։
Նրա դեմ պատրաստեցեք ազգերին,

*Մարաստանի թագավորներին, նրա պետերին և առաջնորդներին։*
*Եվ ամբողջ երկիրը, որոնց վրա իշխում են...*
*Եվ Բաբելոնը կդառնա քարերի մի կույտ,*
*Շնագայլերի որջ»*[1]։

*Երեմիան Նաբոպալասարի ու Նաբուգոդոնոսորի ժամանակակիցն էր և Նինվեի կործանման վկան դարձավ, ինչպես և Երուսաղեմի գրավման՝ Նաբուգոդոնոսորի կողմից և Իսրայելի տարագրության՝ 587/6 թվականին։ Տեքստը Կյուրոսի կողմից Բաբելոնի գրավման մասին է խոսում 539 թվականին և, ուրեմն, ոչ մի կերպ չի կարող պատկանել Երեմիային։ Սակայն այդ ժամանակաշրջանում Արարատ-Ուրարտու, Միննի-Մանա և Ասքենազ-Սկյութական պետություններ գոյություն չունեին, և նրանց հիշատակումը 539 թվականի մի հեղինակի գրչի տակ՝ անախրոնիզմ է։*

*Այս բոլորը անհարիր է։ Աստվածաշնչի քննադատները գոհացուցիչ լուծում են տվել։ Ինչ որ մեզ հասել է Երեմիայի անունով, իրականում պատկանում է երկու հեղինակների՝ Երեմիա I և II։ Մեկն ապրել է Նինվեի կործանման ժամանակ, մյուսը՝ ավելի ուշ, Կյուրոսի օրով։ Մեզ հետաքրքրող տեքստի ժամանակավրեպ գծերը բացատրվում են նրանով, որ Երեմիա II-ը, կամ կարծեցյալ Երեմիան, փոփոխել է Երեմիա I-ի գրածը Նինվեի կործանման վերաբերյալ, այն հարմարեցնելով Բաբելոնի դեպքին։ Արարատ, Միննի և Ասքենազ պետությունների հիշատակումը, ուրեմն, նա փոխ է առել Երեմիա I-ից։ Դրանից կհետևեր, որ այս երեք պետությունները Ասորեստանի դեմ են դուրս եկել մարերի և բաբելոնացիների հարձակումների ժամանակ։ Սակայն մենք տեսանք, որ Նաբոպալասարի առաջին ներխուժման ժամանակ Միննին Ասորեստանի հետ էր։ Պե՞տք է արդյոք ընդունել, որ նա հետագայում հարել էր սկյութներին։*

*Որքան էլ տարտամ և անորոշ լինի մարգարեի բերած վկայությունը, համենայն դեպս այն ապացուցում է, որ Ուրարտուն չի պաշտպանել Ասորեստանին։ Հետևաբար, Նաբոպալասարը պատճառ չուներ նրա վրա հարձակվելու։*

*Ուրարտուն չէր, որ պետք ՛է կարեկցեր Ասորեստանի ողբերգական*

---

[1] Երեմիա, *ԾԱ, տողեր 11, 27—28 և 37։ «... զի զարթոյց Տէր զոգի թագաւորին մարաց, զի բարկութիւն նորա ի վերայ Բաբելոնի. և ջնջեսցէ զնա...»*

*«...փող հարէք ընդ ազգս ամենայն, հրաւիրեցէք ի վերայ դորա գունդս։ Պատուէր տուք յինէն արարատեան թագաւորութեանցն և աքանազեան գնդին. կանգնեցէք զնովաւ նետակալս... Երիւարք իբրև զբազմութիւն մարախոյ։ Հրաւիրեցէք ի վերայ նորա զազգս և զթագաւորն մարաց. զզօրավարս նորա, և զամենայն զօրագլուխս նոցա անդր, և զամենայն երկրի իշխանութիւնս։»*

*«...Եվ եղիցի Բաբելոն ի բլուրս՝ բնակութիւն վիշապաց...»*

ճակատագրին կամ նրան օգնություն հասցներ։ Իր ժառանգական թշնամուց հետո նա կշարունակի ապրել, բայց ոչ երկար ժամանակ։

Իր հերթին Ուրարտուն ևս կանհետանա քաղաքական աշխարհի վերածնիչ խմորումի բովում։ Ըստ Լեհման-Հաուպտի կարծիքի՝ 585 թվականին քարտեզները փոփոխման են ենթարկվում։ Դա մի մեծ ճակատամարտի թվականն է, որում նոր տերության առաջնորդ Կիաքսարը չափվեց Լյուդիայի թագավոր Ալիատտեսի հետ։ Ճակատամարտը տեղի ունեցավ Հալիս գետի ափին։ Այդտեղ հասնելու համար Կիաքսարը պետք է անցներ Ուրարտուի դիակի վրայով։

Այսպես մարեց քաղաքակրթության մի օջախ, որը երեք դար շարունակ՝ 900—600 թթ., փայլել էր Հայաստանի բարձունքներում։ Նա առաջինը միավորեց երկիրը՝ բազմաթիվ ցիրուցան ցեղեր համախմբեց մի քաղաքական ու մշակութային կյանքի շրջանակներում։ Նա ուրիշ արժանիք էլ ունեցավ՝ նրա անընդհատ պայքարը Ասորեստանի դեմ խափանեց սեմական տարրի խուժումը Հայաստանի լեռնաշխարհը և նրա ներթափանցումը Փոքր Ասիա։ Դա գնահատելի ծառայություն է։ Անտարակույս, Ասորեստանը քաղաքակրթության մեծ կենտրոն էր։ Նա կարող է հպարտանալ որքան իր քաղաքական հզորությամբ, այնքան էլ իր հոգևոր, գրական, գեղարվեստական և գիտական արգասիքներով, բայց նա զուրկ էր քաղաքակրթության ամենաթանկարժեք, ամենից էական արտահայտությունից՝ մարդկայնության գաղափարից և մարդկային ոգուց։

Մարդն ինքնին՝ նրա արժեքը, նրա մարդկային արժանապատվությունը, ոչ մի գին չուներ ասորեստանցիների համար։ Դրանով է բացատրվում նրանց անսահման անգթությունը, դաժանությունը։ Մարդ սարսափում է այն հայտարարությունների հրեշությունից, որ Ասորեստանի վեհապետներն առանց նեղվելու և հպարտությամբ անում էին։ Նրանք իրենք իրենց մասին ասում էին, թե թշնամի երկրների վրա նետվում էին «կատաղած շան» պես, նրանց հողը ոտնահարում էին «վայրենի ցուլի» պես և նրանց պարտադրում էին «ծանր, անտանելի լուծ»։ Հիվանդագին կրքոտությամբ են նկարագրում նրանք այն սարսափելի արարքները, որ կատարում էին հարձակման ենթարկված երկրներում։ Նրանք չէին բավարարվում կողոպտելով, կործանելով, այրելով քաղաքները, դաշտերը, կոտորելով ժողովուրդը՝ բոլոր ժամանակների աշխարհակալների տխուր սխրագործություններով, փառաբանված ծառայամիտ պատմաբանների կողմից։ Այլև նրանք կենդանի այրում էին երիտասարդ տղաներին ու աղջիկներին, կտրում էին ձեռները, մատները, մորթում և պարիսպների վրա էին փռում նրանց մորթիները, գլուխներից բուրգեր էին բարձրացնում, մարդկանց կենդանի թաղում էին բուրգերի մեջ և շուրջը դասավորում դժբախտ ցըցահանվածներին։ Մի խոսքով՝ երկրները դարձնում էին անապատ, «գյու-

ղերում լռեցնել էին տալիս աշխատավորների ուրախ (ձայները) և թող-նում էին, որ այնտեղ բնակվեն վայրի էշերն ու վայրենի անասունները»։

Հետևաբար, շատ լավ հասկանալի է թեթևացման այն ճիչը, որ Աստ-վածաշնչի մարգարեն արձակում է Ասորեստանի կործանման առթիվ. «Նինվեն՝ արյան քաղաքը, նենգ ու բռնակալ, հիմնահատակ կործանվել է։ Ո՞վ նրան կկարեկցի։ Ով որ իմանա, երկու ձեռքով ծափ կտա, որովհետև ո՞վ չի տանջվել նրա չարության երեսից»[1]։

Անկասկած, հակադրություն գոյություն ուներ ասուրական և ուրարտա-կան մտայնության միջև, հակադրություն, որը լուսաբանվում է այն իրո-ղությամբ, որ մարգարեն կոչ է անում Ուրարտուին՝ օգնության գալ Նին-վեին վերջ տալու համար։

Ռուս գիտնական Նիկոլսկին՝ Ուրարտուի հնությունների առաջինը հետազոտողներից մեկը, լավ նկատել ու ընդգծել է երկու պետություն-ների բարքերի հակադրությունը։

Պայքարել Ասորեստանի կատաղության ու մոլեգին կրքերի դեմ, փա-կել նրա ճանապարհը դեպի Նաիրյան երկրները, դա մի ազնիվ առաքելու-թյուն էր, որ Ուրարտուն պատվով կատարեց, այսպիսով նշանակալի ծա-ռայություն մատուցելով քաղաքակրթությանն ու մարդկությանը։

---

[1] Նաճում, Գ, 1. է, 19։

# ՀԱՅԵՐԻ ԾԱԳՈՒՄԸ

*(Անավարտ)*

## Ա

## [ԿԻՄՄԵՐՆԵՐԸ ԵՎ ՍԿՅՈՒԹՆԵՐԸ ԱՌԱՋԱՎՈՐ ԱՍԻԱՅՈՒՄ]

*Այն հեղափոխությունը, որ կատարվեց մեր թվականությունից առաջ* VII *դարի վերջում և կործանեց Ասորեստանը, Ուրարտուն և բազմաթիվ այլ պետություններ, էական նշանակություն ունեցող մի նոր դարագլուխ բացեց մարդկության պատմության մեջ։ Այն հեղաշրջեց հին աշխարհի քաղաքական պատկերը։ Սեմականությունը, որ դարեր ի վեր ապահովել էր իր համար առաջին տեղը պատմության թատերաբեմին, վերացավ, առաջնությունը զիջելով հնդեվրոպական տարրին։ Այսուհետև վերջինս էր տնօրինելու Առաջավոր Ասիայի ճակատագիրը։*

*Ասորեստանի ավերակների վրա բարձրացավ առաջին արիական պետությունը՝ մեդական պետությունը։ Հնդեվրոպացիների ներթափանցումը այդ երկրամաս վաղուց էր սկսվել, բայց առաջին անգամն էր կազմվում հնդեվրոպական մի մեծ պետություն։*

*Միևնույն ժամանակ անցյալի խավարի միջից երևան են գալիս հայերը՝ հնդեվրոպական մի ժողովուրդ, և տիրանում Ուրարտուի ժառանգությանը։*

*Այս հեղափոխությունը, որ ցնցեց աշխարհը, սկսվեց կիմմերական ու սկյութական հորդաների հարձակումներով։ Սրանք հնդեվրոպական ցեղեր էին, որոնք (գոնե սկյութները) պատկանում էին իրանական ընտանիքին։ Նրանք սասանեցին գոյություն ունեցող կարգը և շարժման մեջ դրին բազմաթիվ մեդական տոհմերի, որոնք վաղուց ի վեր դարանակալ սպասում էին նախանձելի որս հանդիսացող Ասորեստանը կլանելու։*

*Կիմմերների (ասորեստանցիների* Gamirrai *կամ* Gimirrai*) ներխուժումը սկսվում է Ուրարտուի թագավոր Ռուսա* I*-ի և Ասորեստանի թագավոր Սարգոնի թագավորության ժամանակից, իսկ սկյութներինը՝ մեկ դար ավելի ուշ՝ Ասարխադդոնի թագավորության սկզբներում (680—669)*[1]*։*

---

[1] *Առաջինը Հոմերոսն է հիշատակում կիմմերներին. «Նրանց երկիրը կորչում է ամպերի ու մշուշի մեջ, և արևի վառ ճառագայթները նրանց երբեք չեն հասնում՝ ո՛չ դեպի աստղազարդ երկինք խոյանալիս, ոչ էլ երկնքից երկիր իջնելիս, մի դժնդակ գիշեր շրջապատում է այս դժբախտ մահկանացուներին»* (Ոդիսական, XI, *12—19*)։

*Այս նկարագրությունը, ինչպես երևում է, առաջ է եկել* Κιμμέριοι*-ի ժողովրդական*

Կիմմերները, Սև ծովի հյուսիսից գալով, 713 թվականին մտնում են Ուրարտու։ Ռուսա I թագավորը նետվում է ասպատակողների դեմ, բայց հաղթվում է։ Այնուհանդերձ, բարբարոսները չեն մնում Ուրարտուում. Ռուսան կարծես շարունակում է դիմադրությունը և նրան հաջողվում է հորդաների հեղեղն ուղղել դեպի Իրանական սարահարթը։ Թվում է, թե նրանց մի մասը շեղվում է դեպի արևմուտք։

Կիմմերների մասին այլևս ոչինչ չի լսվում մինչև Ասարխադդոնի թագավորության ժամանակ։ Նորեկների կողմից ստեղծված վտանգն սպառնում էր Ասորեստանին, Ասարխադդոնը շատ է մտահոգված։ Մանայի թագավոր Ախշերին դաշնակցել էր այդ բարբարոսների, ինչպես նաև բազմաթիվ մարական առաջնորդների հետ, որոնցից ամենահայտնիները Կաշտարիտին ու Մամիտարշուն էին, և նրանց օգնությամբ հարձակումներ էր գործում Ասորեստանի սահմանների վրա։ Ասորեստանի թագավոր Շամաշին աղոթքներ է ուղղում, որոնց գլխավոր առարկան այդ ահավոր դաշինքն է, և նա չի թաքցնում իր մտահոգությունները։ Իր թագավորության չորրորդ տարում, 677 թվականին, Ասարխադդոնին հաջողվում է ջախջախել կիմմերներին և սպանել նրանց առաջնորդ Թիուշպային։ Ճակատամարտը տեղի էր ունեցել ոչ թե պետության արևելյան սահմանների մոտ, ինչպես կսպասվեր, այլ արևմուտքում՝ Խուբուշնայում՝ Կիլիկիայի շրջանում[1]։

Նախորդ տարին կիմմերները Ռուսա II-ի բանակի կազմում ռազմական գործողություններ էին կատարել Ասորեստանի դեմ, հավանական է, Շուպրիայի սահմանի վրա (այժմյան Սասունի շրջանը)։ Իր իշխանության ութերորդ տարում, 673 թվականի վերջում, Ասարխադդոնը Շուպրիայի դեմ արշավանք ձեռնարկեց, որի նպատակն էր, անշուշտ, Ուրարտուի թագավորի կողմից պատճառված տերիտորիալ վնասները դարմանել։

Դժվար է ասել, թե Մանայի, Ուրարտուի և Խուբուշնայի կիմմերների երեք խմբավորումների միջև ինչպիսի հարաբերություն գոյություն ուներ, քանի որ սկյութները՝ ասորեստանցիների Iškuza կամ Aškuza-ները, Մա-

---

ստուգաբանությունից, որպես χειμέριοι —«անձրևային, փոթորկալից»։ Հերոդոտը, I, 104 և IV, 12, կիմմերների և սկյութների ներխուժումը համեմատում է մի լայն շարժման հետ, որն սկսվել էր հեռավոր Արևելքում և հաջորդաբար առաջ էր քշել հիպերբորեացիներին, գրիփոններին, արիմասպներին, իսեդոններին, մասագետներին, սկյութներին և կիմմերներին։ Այդ առթիվ նա նշում է Արիստեա Պրոկոնեսցու էպիկական քերթվածը, որտեղից վերցրել է այս տեղեկությունը։ Սակայն նա ասում է, որ այդ հեղինակն ապրել է իր ժամանակաշրջանից 340 տարի առաջ, ուրեմն՝ IX—VIII դարերում։ Սկյութա-կիմմերական ներխուժումը հետևանք էր դարերով շարունակվող ժողովուրդների շարժումների։

[1] Ասարխադդոնի Պրիզմներ, հրատ. Թոմսոնի, III, 43—46։ Խուբուշնայի տեղը հայտնի չէ։ Ֆորերն այն նույնացնում է Կիբիստրայի հետ, Օլմստեդը՝ Կաբիսոսի հետ։

նայի շրջանում երևան են գալիս Ասարխադդոնի թագավորության առաջին տարիներում։ Կարելի է մտածել, որ դրանք Մանայի նույն կիմմերներն են, որոնք իրենց թշնամի սկյութների ճնշման տակ լքել էին այդ երկիրը և Ուրարտուի միջով անցել Խուբուշնայի շրջանը։ Ըստ Հերոդոտի՝ կիմմերները վտարվել էին իրենց երկրից սկյութացիների կողմից և հետապնդվել մինչև Մանա երկիրը ու Մեդիա։ Հնարավոր է, ուրեմն, որ նույն թշնամությունը կիմմերներին ստիպած լինի լքելու Մանան։

Սակայն Ասարխադդոնը Խուբուշնայի կիմմերներին կոչում է umman manda ša ašaršu ruqu «հեռավոր բնակության հորդաներ», որը մտածել է տալիս, թե այդ հորդաները հաստատվել էին Խուբուշնայում կամ, համենայն դեպս, նորեկներ չէին։ Այդ դեպքում պետք է ընդունել, որ խոսքը նույն ժողովրդի մի հատվածի մասին է, որը պետք է որ ներխուժման ժամանակ բաժանված և Ուրարտուի վրայով Խուբուշնա հասած լինի։

Թիուշպային հաջորդում է Թուկդամմեն կամ Դուկդամին, Հերոդոտի Լիգդամիսը։ Նա իր զորքերն առաջնորդում է Փռյուգիայի դեմ։ Միդաս թագավորը հաղթվում և անձնասպան է լինում 676 (ոչ 696) թվականին[1]։ Հարևան Լիդիան բարբարոսների սպառնալիքի տակ էր։ Գիգես թագավորը հարձակումը ետ է մղում մոտավորապես 660 թվականին, գերիներ է վերցնում, որոնց թվում և երկու կիմմերական առաջնորդներ, և ուղարկում Ասորեստանի թագավոր Աշուրբանիպալին։

Դուգդամին 652 թվականին նորից է հարձակվում, մահացու հարված է հասցնում Գիգեսին և գրավում նրա մայրաքաղաք Սարդեսը։ Ապա հաղթողը դառնում է դեպի Ասորեստանի սահմանները, գուցե Թիուշպայի վրեժը լուծելու համար։ Ըստ Հերոդոտի՝ նա վտարվում է Լիդիայից Գիգեսի որդի և հաջորդ Ալիաթթեսի կողմից։ Դուգդամին բավական մութ պայմաններում մահանում է Կիլիկիայում։ Նրա որդի Սանտախշաթրան խաղաղություն է կնքում Աշուրբանիպալի հետ[2], իր հորդաներով հեռանում է դեպի հյուսիս և հաստատվում Կապադովկիայում։ Այս եղելության միակ վկան հանդիսանում է Գամիրք անունը, որ հայերը տալիս են Կապադովկիային։ Ըստ մեկ ուրիշ տեղեկության՝ կիմմերները հաստատվում են Սինոպի շրջանում[3]։

Այս ձևով կիմմերները, որ 713 թվականից երևան եկան քաղաքակիրթ աշխարհի եզերքներին, կորչում են պատմության խավարի մեջ մոտավորապես 650 թվականին, կարճ, բայց փոթորկալից կյանքից հետո[4]։

---

[1] Եվսեբիոս, Հրատ. Շոենի, II, էջ 81։

[2] Նվիրաբերական արձանագրություն, Seeck, Assurbanipal, էջ 281։

[3] Հերոդոտ, II, 12։

[4] Թիուշպա, Դուգդամի, Սանտախշաթրա իրանական ծագում ունեցող անունները, թերևս, ապացուցում են, որ կիմմերները իրանական ծագում ունեին։ Թիուշպան, թվում է,

Կիմմերների հայրենակից, նաև Թշնամի սկյութները, հետապնդելով փախչող կիմմերներին, հասել էին Մանա երկիրը, ուր իրենց ճանաչել տվին 780—773 թվականների ընթացքում։ Մանայի թագավոր Ախշերին նրանց ընդունեց ծառայության՝ Ասորեստանի դեմ պայքարելու համար։

Ասարխադդոնն ընկճվեց այդ անակնկալ դաշինքից։ Շամաշին ուղղված իր աղոթքներում Իշկուզայի հորդաները հաճախ են հիշատակված։ Իշկուզայի թագավոր Բարտատուան Ասարխադդոնից կնություն է պահանջում արքայադստերը։ Ասորեստանի թագավորը վստահ չէ, որ գործը բարի կլինի, և կասկածում է բարբարոսի խաղաղասիրական ու բարեկամական նպատակների վրա։ 673 թվականին շարադրված վավերագրերում նա ասում է, որ հաղթանակ է տարել Ախշերիի ու նրա սկյութ վարձկանների դեմ և այս վերջինների թագավոր Իշպակային սպանել։ Պարզ չէ, թե ով էր այդ Իշպական, արդյոք մեկ ուրիշ ցեղի առաջնո՞րդ, թե Բարտաթուայի նախորդը, որի մահից հետո սա ցանկանում էր խաղաղություն կնքել՝ թագավորի դստեր ձեռքը խնդրելով։

Բարտատուան Հերոդոտի Պրոտոթիասն է, որը ծանոթ է իր որդի Մադիասի միջոցով։ Ըստ պատմաբանի՝ սկյութները, անցնելով Կովկասի լեռնաշղթան Ալանների (Դարիալի և ոչ Դերբենդի) դռնով, լեռների ստորոտում հանդիպեցին մեդացիների բանակին։ Նրանք ետ մղեցին այդ բանակը և գրավեցին Ասիայի տերությունը։ Ապա բարբարոսները նետվեցին դեպի Եգիպտոս, բայց Պսամմետիքոսն եկավ նրանց ընդառաջ և իր նվերներով ու խնդրանքներով կանգնեցրեց նրանց առաջխաղացումը։ Նույն պատմաբանը պատմում է, որ սկյութները 26 տարի տիրեցին Ասիային, մինչդեռ Կիաքսարն իշխում էր մեդացիների վրա։ Լիդիայի վրա տարած հաղթանակից հետո Կիաքսարը շարժվեց Նինվեի դեմ, բայց Մադիասն իր զորքերով օգնության հասավ և ազատեց այն։ Կիաքսարը պաշարումը վերացրեց և ետ քաշվեց, բայց 28 տարի հետո նա Մադիասին խնջույքի հրավիրեց, հարբեցրեց նրան ու սպանեց սկյութների մի մեծ խմբի հետ միասին։ Ապա նա գրավեց Նինվեն։ Իսկ մնացած սկյութները վերադարձան իրենց երկիրը[1]։

---

նույն անունն է, որ կրում էր Սատասպայի հայրը՝ ըստ Հերոդոտի, IV, 43, VII, 79 IX, 76՝ Թեասպիս Τεάσπις, tav-aspa «որ ուժեղ ձի ունի» և sataspa «որ ունի հարյուր ձի»։ Աքեմենյանների նախնի Τεΐσπης-ի (**Her.**, IV, 2)՝ Դարեհի արձանագրության Č(a)išpiš անունը, հավանական է, ուրիշ ծագում ունի։ Դուգդամի՝ duxta-ami-ից «արտադրելու մեջ ուժեղ»։ Սանտախշաթրան՝ ըստ Մարկվարտի՝ Spanta xšatra-ն է, Philologus, Supplementband X, էջ 105, ծան. 5։ Վազմերը, **M. Ebert**, Reallexikon der Vorgeschichte-ում, առարկում է, թե sp-ից ṣ անցումը չի կարող այդքան հին լինել, և առաջարկում čandra-xšatra։ Ավելի ընդունելի կլինի ածանցել sandat-xšatra-ից «որ ստեղծում է իշխանությունը»։

[1] Հերոդոտ, I, 103—106։

*Այս չփոթ հաղորդումը անհարիր է ուրիշ ստույգ աղբյուրներից մեզ հայտնի փաստերի հետ։ Ասորեստանի մայրաքաղաքն ընկավ 612 թվականին. ճակատամարտը Լիդիայի դեմ վերաբերում է 585 թվականին, սկյութների երևան գալը՝ մոտ 680 թվականին և մարերի պետության անկումը՝ 552 թվականին։ Այս թվականները վիճարկման ենթակա չեն և նսեմացընում են Հերոդոտի պատմածից բխող թվականները։ Սկյութների տիրապետությունը 28 տարի՝ կասկածելի է մնում։*

*Գադդի կողմից՝ հատակոտոր* Բաբելոնյան ժամանակագրությունը *հրապարակվելուց հետո փորձել են նույն պատմաբանին արդարացնել մի քանի կետերում։ Այսպես, ընդունում են, որ սկյութները վտարել են մեդացիներին 612 թվականին Նինվեի գրավումից հետո և տիրել Ասորեստանին 612—585 թվականներին, ուրեմն՝ 28 տարի, ինչպես ասում է Հերոդոտը։ Մեր կարծիքով, բաբելոնյան վավերագիրը հիմք չի տալիս նման պնդման։ Տեքստի* umman-manda *արտահայտությունը՝ հիմնական խոչընդոտը, բոլորովին չի վերաբերում սկյութներին, այլ մեդացիներին, եթե ելնենք իրադարձությունների ընթացքից, որը պատմվում է հետևյալ կերպ. Նինվեն ընկնում է 612 թվականին, բայց պետության հոգեվարքը շարունակվում է մինչև 607 թվականը և ոչ թե 609։ Գադդն ուզեցել է 607 թվականը, որը հաստատված է, փոխել 609 թվականի, հիմնվելով վերոհիշյալ ժամանակագրության վրա, մինչդեռ վերջինը, ընդհակառակն, նախկին թվականն է հաստատում։*

*Հազիվ Ասորեստանի լուծը թոթափած, Նաբոպալասարը (625—605) ծառանում է նրա դեմ։ Իր թագավորության տասներորդ տարում, 616 թվականին, նա հարձակվում է ասուրական տիրույթների վրա միջին Եփրատում։ Ասուրական բանակը Մաննա երկրի բանակի հետ դիմադրություն է ցույց տալիս, բայց անհաջող։ Սակայն եգիպտացիները նրանց օգնության են հասնում և վտարում ներխուժողին։*

*Այս տհաճ փորձանքից հետո Նաբոպալասարը 615 թվականին իր զենքերն ուղղում է Տիգրիսի ափերին գտնվող երկրների դեմ, մտնում է Առապխա՝ Կերկուկի շրջանում, և առաջանում դեպի Աշշուր մայրաքաղաքը։ Ասորեստանցիները ետ են մղում նրան և պաշարում Թակրիտաինը՝ այժմյան Թակրիտ քաղաքը։ Մեդական զորքերը ներխուժում են Առապխա, ասուրական բանակին ստիպում են ետ քաշվել և ազատում Բաբելոնի թագավորին։*

*Հետևյալ տարին, 614 թվականին, մեդացիները գրոհում են Աշշուր քաղաքի վրա։ Նաբոպալասարը հասնում է, երբ քաղաքն արդեն գրավված է լինում։ Նա մեդացիների թագավոր Կիաքսարի հետ դաշինք է կնքում։*

*613 թվականին Նաբոպալասարը նորից բախտ է փորձում Եփրատի վրա։ «612 թվականին նա հավաքում է իր բանակները...* Umman-manda-*ի*

*թագավորի զորքերը գալիս հանդիպում են... Աքքադի թագավորը, այ-
սինքն՝ Նաբոպալասարը... և Կիաքսարը Տիգրիսի ափով գնում են դեպի
Ասորեստանի մայրաքաղաք Նինվե»։ Երեք ճակատամարտից հետո գրո-
հով գրավում են քաղաքը և կողոպուտի ենթարկում։ Ասորեստանի թա-
գավոր Սինշարիշկունը, հույն հեղինակների Սարակոսը, ինքնասպան է
լինում։ Կիաքսարը վերադառնում է իր երկիրը։ Նաբոպալասարը սպասում
է իր այն զորքերի վերադարձին, որոնց ուղարկել էր Մծբինի և Ռասապա-
յի շրջանն ավերելու, և նրանց ձեռք բերած ավարով ծանրաբեռնված վե-
րադառնում իր երկիրը։*

*Մայրաքաղաքը կորցնելուց հետո ասուրական բանակի բեկորները ետ են քաշվում և տեղավորվում Խառանում, ու այնտեղ Աշուրուբալլիտը իրեն Ասորեստանի թագավոր է հռչակում։ 611 թվականին Նաբոպալասարը հաջող արշավանք է կատարում դեպի Ասորեստան։ 610 թվականին, իր իշխանության տասնվեցերորդ տարում, նա վերսկսում է ռազմական գործողությունները Ասորեստանի դեմ։ Ումման-մանդաները գալիս են նրան օգնության։ Միացյալ բանակները հարձակվում են Խառանի վրա՝ Աշուրուբալլիտի դեմ։ Վերջինը լքում է քաղաքը և ապաստանում Եփրատի մյուս կողմը։ Խառան քաղաքը գրավվում և թալանվում է։ Նաբոպալասարը կայազոր է թողնում այնտեղ և վերադառնում իր երկիրը։ Ումման-մանդաների բանակը մնու՞մ է, թե ոչ, այս հարցին պատասխանել անհնարին է, որովհետև արձանագրությունը այդ տեղում պակասներ ունի։ Սակայն հավանական է, որ նա նույնպես վերադարձել է, քանի որ հետագայում նրա մասին այլևս չի խոսվում։*

*609 թվականին Աշուրուբալլիտը Եգիպտոսից իրեն օգնության եկած զորքերի հետ միասին անցնում է Եփրատը, ջախջախում կայազորի իր դեմ հարձակման ելած մասը և պաշարում Խառանը։ Թամմուզ ամսից մինչև էլուլ ամիսը պաշարված քաղաքը դեռևս չէր գրավվել, երբ Նաբոպալասարն օգնության է գալիս։ Նա Իզալա լեռան վրա պատերազմ է մղում, այդ շրջանի բազմաթիվ քաղաքներ կողոպտում և հրկիզում է, ընթանում է մինչև Ուրաշտուի սահմանը, կայազոր է թողնում և գերիների հետ մեկտեղ տուն վերադառնում։*

*608 թվականին նա հավաքում է իր բանակը... Այստեղ տեքստը դադարում է*[1]։

Այս պատմության մեջ հետաքրքիր է իմանալ Խառան քաղաքի ճակատագրի վերջը և թե ով էր Ումման–մանդա կոչեցյալ ժողովուրդը։ Բաբելոնյան բանակի վերջին հավաքի նպատակն էր, անշուշտ, փրկել Խառանը, ինչպես նախորդ տարին էր փորձել, առանց հաջողության հասնելու։ Տեքս-

[1] **G. J. Gadd**, The fall of Nineveh. The newly discovered babylonian chronicle.

տը հաստատում է, որ քաղաքը պաշտպանվել է մինչև էլուլ ամիսը, բայց լռություն է պահում էլուլ ամսից հետո պատահածի մասին։ Սակայն բացահայտ է, որ պաշարված քաղաքը գրավվել է Աշուրուբալլիտի կողմից՝ իր դաշնակից եգիպտացիների հետ միասին։ Այդ իրողությունից եզրակացվում է, որ պաշարման տարին Նաբոպալասարը մեկնեց պաշարված քաղաքին օգնության և վերադարձավ առանց արդյունքի։ Նա նույնիսկ չհամարձակվեց մոտենալ քաղաքին, անշուշտ այն պատճառով, որ քաղաքըն արդեն կորսված էր։ Նա բավարարվեց պատերազմ վարելով Իզալայի լեռներում, մի նահանգում, որ, գուցե, հավատարիմ էր մնացել Ասորեստանին և դիմադրություն էր ցույց տալիս ներխուժողին։ Ինչ էլ որ լինի, բաբելոնյան թագավորը վերադարձավ իր մայրաքաղաքը՝ Խառանը թողնելով բախտի քմահաճույքին։

Նաբոպալասարի՝ հաջորդ տարին ձեռնարկած արշավանքը, ըստ երևույթին, ավելի հաջող չընթացավ, որովհետև Խառանը գրավվեց միայն 607 թվականին՝ Բաբելոնի թագավորի դաշնակից ումման-մանդաների կողմից, ինչպես հաստատում է Նաբոպալասարի մերձավոր հաջորդներից Նաբոնաիդը։ Այս թագավորը, որ գահ բարձրացավ 555 թվականին, հայտարարում է, որ Խառանում Սինի տաճարը ավերակի էր վերածվել ումման-մանդաների կողմից, իսկ ինքն այն վերականգնեց իր գահակալության երրորդ տարում, ուրեմն՝ 553 թվականին և նրա ավերումից 54 տարի հետո[1]։ Ուրեմն, Խառանի վերագրավման թվականը կլինի 607—6 թվականը։ Հետևաբար, Գադդը սխալվում է այդ թվականը մերժելով ի նպաստ 609 թվականի։ Ճիշտ է, այդ քաղաքը գրավվել է 609 թվականին, բայց այն ետ է վերցվել և վերջնականապես վերագրավվել է 607 թվականին։

Ումման-մանդաների հարցին գալով՝ այն վիճելի է։ Մեր վավերագրերին չի հակասում նաև այն դրույթը, որի համաձայն խոսքը սկյութների մասին է։ 615 թվականին մադաները գրավում են Առապխան, իսկ 614 թվականին՝ Աշշուր մայրաքաղաքը։ Նաբոպալասարը հասնում է և դաշինք կնքում Մադայի թագավոր Կիաքսարի հետ։ 612 թվականին ումման-մանդաների թագավորը գալիս հանդիպում է Նաբոպալասարի հետ։ Վերջինս և Կիաքսարը հարձակվում են Նինվեի վրա և գրավում այն։ Ըստ այնմ ումման-մանդաների թագավոր Կիաքսարն է Նաբոպալասարի դաշնակիցը և ոչ ուրիշը, ուրեմն, ումման-մանդաները նույնանում են մեդացիների հետ։

Հերոդոտը պատմում է, որ այն ժամանակ, երբ Կիաքսարը պաշարել

---

[1] **Stephen Langdon,** Die neubabylonischen Königsinschriften, № 1, սյուն. I, տող 28, էջ 221, ina šalulti šatti ina кašadu, «երբ երրորդ տարին եկավ», ուրեմն, 553 թ.՝ հաշվելով 555 թվականից։ Խառանն ավերակ մնաց 54 տարի, № 8, սյուն. X, էջ 285։

*է Նինվեն, սկյութների առաջնորդ Մադիասը վրա է հասնում և ստիպում նրան վերացնել պաշարումը։ Այս քիչ հավատալի տեղեկությունը ազդեցություն է գործել նրանց վրա, ովքեր ումման-մանդաների մեջ սկյութներ են տեսնում։ Հերոդոտի հիշատակած դեպքը, նույնիսկ եթե այն արտացոլում է որևէ պատմական իրողություն*[1]*, ոչ մի կապ չունի 612 թվականի իրադարձությունների հետ, որովհետև Կիաքսարն իսկապես այդ տարի գրավեց քաղաքը Նաբոպալասարի օգնությամբ, և ոչ ոք նրան չանհանգստացրեց։ Ապա հաղթողները վերադարձան իրենց երկիրը։*

*609 թվականին Ումման-մանդան եկավ օգնելու Նաբոպալասարին՝ Խառան քաղաքը գրավելու համար։ Քաղաքը գրավվում և հանձնվում է բաբելոնյան կայազորին։ Դա նշանակում է, որ Կիաքսարը Նինվեն պահում է իրեն, իսկ Խառանը զիջում է իր դաշնակցին։ Ճիշտ չի, ուրեմն, որ սկյութներն են գրավել Խառանը և հաստատվել այնտեղ։ Այդ դեպքում բաբելոնյան կայազոր չէին թողնի Խառանում։ Աշուրուբալլիտի հարձակման ժամանակ քաղաքը պաշտպանում է բաբելոնյան կայազորը։ Երրորդ ուժի մասին չի խոսվում։ Նաբոպալասարին չհաջողվեց փրկել քաղաքը։ Հավանական է, որ Կիաքսարը վտարած լինի Աշուրուբալլիտին 607 թվականին և քաղաքն իր տիրապետության տակ առած։*

*Նման եզրակացության կարելի է հանգել Նաբոնաիդի վերը նշված վըկայությունից, որտեղ գրված է, թե Խառանում Սինի տաճարը ավերակի էր վերածվել Ումման-մանդայի կողմից և որ քաղաքը դեռևս շրջապատված է այդ ժողովրդի կողմից։*

*Որ Նաբոնաիդը Ումման-մանդա ասելով հասկանում է մեդացիներին, դա հետևում է նրա հետագա ասածից. «Իմ գահակալության երրորդ տարում Անշանի թագավոր Կյուրոսը, որ Ումման-մանդայի աննշան վասալն էր, իր փոքրաթիվ զորքերով ցրեց Ումման-մանդայի ընդարձակ տերիտորիայում, հաղթեց նրա թագավոր Աստիագին և սրան գերի տարավ իր երկիրը»*[2]*։*

*Մեդացիների նշանավոր թագավոր Աստիագը այստեղ Ումման-մանդայի թագավոր է կոչված, ինչպես նրա հայրը՝ Կիաքսարը՝ մեր վավերագրում։ Ուրեմն, ասորեստանցիները այդ արտահայտությունը չէին վերագրում սկյութներին։ Ասարխադդոնն իր աղոթքներում նրանց Իշկուզի, իսկ վավերագրերում Աշկուզի է կոչում, առանց Ումման-մանդա անվանելու, ինչպես այդ անում է կիմմերների նկատմամբ*[3]*։*

---

[1] *Տե՛ս հաջորդ՝ 395-րդ էջի ծանոթագրությունը։*

[2] **Langdon,** *նշ. աշխ., № 1, սյուն.* I, *էջ 219։ Նաև* **Schrader**, Keilinschriftliche Bibliothek, III, *2, էջ 99։*

[3] *Հ. Վինկլերը,* Untersuchungen zur altorientalischen Geschichte, *էջ 127, այստեղից հետևցրել է, որ Աստիագը մեդացի չէր, այլ սկյութ բռնատիրող։*

Անշուշտ, նույն ժողովուրդը ցույց տալու համար մեր վավերագրի գործածած երկու տերմինները՝ Մադա և Ումման-մանդա, շփոթություն են առեղծում։ Դա բացատրվում է վավերագրի բնույթով, որ բանաքաղական գործ է։ Հեղինակը քաղել է երկու տարբեր աղբյուրներից, որոնցից մեկը գործածում էր Մադա բառը, իսկ մյուսը, ինչպես, օրինակ, ասված է Նաբոնաիդի ժամանակագրության մեջ՝ Ումման-մանդա։

Ավելացնենք, որ սկյութները 612 թվականին Նինվեի գրավումից շատ առաջ կորցրել էին իրենց ուժը և հեղինակությունը և ի վիճակի չէին կարևոր դեր խաղալու այդ թվականին։ Մանայի երկրի հողերում և շրջակայքում կուտակված՝ նրանք այդ երկիրը քաշքշում են Ասորեստանի դեմ դուրս գալու։

Մանայի թագավոր Ախշերիի նվաճողական քաղաքականությունն Ասորեստանի նկատմամբ հետևանք էր սկյութների հետ դաշնակցած լինելուն։ Մոտավորապես 660 թվականին Աշուրբանիպալը խելքի բերեց հանդուգն Ախշերիին։ Նա վտարեց նրան և տեղը նշանակեց նրա որդի Ուալլիին, որը հպատակվեց Ասորեստանին։ Նրա հայրը ամբոխի կատաղության զոհ դարձավ։ Աշուրբանիպալը Մանայից ետ վերցրեց Ախշերիի կողմից զավթված ասուրական տիրույթները։ Մանան, վասալ դառնալով, հավատարիմ մնաց Ասորեստանին, և նրա զորքերը Ասորեստանի բանակում կռվում էին Նաբոպալասարի դեմ[1]։ Մանայի անկումը միևնույն ժամանակ նշանակում էր նրա դաշնակից սկյութների անկում։ Այնուհետև նրանք կդադարեն քաղաքական գործոն լինելուց, եթե մինչև այդ էին։ Վերջ ի վերջո նրանք լուծվում են մեդացիների ու մանացիների զանգվածներում։ Մոտավորապես նույն ժամանակաշրջանում էր, որ այդ բարբարոսների մի հատվածը նետվեց զանազան արկածների մեջ և ընթացավ մինչև Ասորիքի ծովափը։ Եգիպտոսի թագավոր Պսամմետիքոսը (665—611) խաղաղ կերպով կանգնեցրեց նրանց առաջխաղացումը։

Սկյութները պատմության ոլորտում պահպանվեցին մոտավորապես 680—650 թվականներին։ Նրանց կյանքը, ուրեմն, ավելի կարճ եղավ, քան կիմմերներինը։ Այդտեղ, սույն կարճ ժամանակի մեջ, գուցե, պետք է զետեղել նրանց տիրապետության 28 տարին, եթե ընդունելու լինենք, որ այդ թիվը որևէ արժեք ունի։ Սկյութների «փոթորիկը» այնքան բուռն չի թվում, որքան որ նկարագրում են։ Նրանց անունն ավելի սարսափելի է եղել, քան իրենք։

---

[1] Կիաքսարը 614 թ. ելավ Նինվեի դեմ, բայց գրավեց միայն քաղաքից քիչ հեռու ընկած մի բնակավայր։ Նա ընթացավ դեպի Աշշուր քաղաքը և գրավեց այն։ Հնարավոր է, որ նա ետ մղված լինի ասուրական բանակի կողմից, որի կազմում կռվում էր նաև սկյութա-մանական մի զորատ, և սա հիմք է ծառայել այն առասպելի, ըստ որի սկյութացի Մադիասը իբր թե վտարել է Կիաքսարին Նինվե քաղաքից։

Սկյութների ներխուժումը, ինչպես նաև կիմմերներինը, նպաստավոր պայմաններ ստեղծեց նրանց համատոհմ մեդացիների համար։ Հանդուգն բարբարոսներն ակտիվացրին իրանական ցեղերի անհանգիստ միջավայրը, քաջալերեցին պայքարը Ասորեստանի դեմ և այդ ձևով մասնակցեցին մեդական պետության ստեղծմանը։

Մեդացիները Ամադա անվան տակ առաջին անգամ հիշատակված են Սալմանասար III-ի ժամանակաշրջանում։ 843 թվականին այս թագավորը Նամրուից մեկնում է Պարսուա, 27 թագավորներից հարկ է ստանում և թափանցում Ամադա երկիրը։ Պարսուան պարսիկների անունն է, բայց այդ ժամանակ նրանք ապրում էին Մանա երկրի հարավում, համարյա այժմյան Արդելանում։ Շամշի-Ադադը մոտավորապես 818 թվականին արշավանք է ձեռնարկում Մատայի, այսինքն՝ Մադայի, Մեդիայի դեմ։ Այս երկրի առաջնորդ Խանաշիրուկան բնակվում էր Սագբիտուում։ Ասորեստանի թագավորը 2300 զինվոր է սպանում և 1200 բնակավայր հրկիզում։ Վերադարձին Նաիրիի 27 թագավորներից հարկ է վերցնում։ Նրանք, անշուշտ, նույն այն թագավորներն են, որոնց նրա հայրը՝ Սալմանասարը, Պարսուայի թագավորներ է կոչում։ Նաիրի անունը այստեղ վերագրվում է ոչ-սեմական ցեղերին[1]։ Նրանցից շատերն իրանական տիպի անուններ են կրում։

Ադադնիրարին (810—782) ավերում է մի շարք երկրներ, որոնք տարածված էին Ասորեստանի սահմանների վրա մինչև Արևելքի մեծ ծովը, այսինքն՝ Կասպից ծովը՝ Իլլիպի, Խարխար, Արազիաշ, Միսու, Մադաի, Գիզիլբունդա, Պարսուա և այլն… Դժվար է ասել, թե այդ երկրներն ինչ չափով են դարձել իրանական։ Էպոնիմների ցանկում Ադադնիրարիի կապակցությամբ հիշատակվում է Մադայի դեմ կատարված ութ արշավանք՝ 810 և 788 թվականների միջև։ Դրան հետևում է խաղաղության շրջան մինչև Թիգլաթպալասար III-ի թագավորությունը (745—727), որի ընթացքում Մադա երկրի դեմ չի հիշատակվում ոչ մի ռազմական ձեռնարկ, բացի Աշուրդանի արշավանքից (766 թ.)։ Թիգլաթպալասարը թվարկում է բազմաթիվ երկրներ, ներառյալ Իլլիպի, Նամրի, Սանգիբուտի, Խամբան, Պարսուա, Բուշտու, Նիշշա, Զակրուտ, թուխ մեդացիների քաղաք[2],

---

[1] Իշխանները և երկրները հիշատակված են իրենց անուններով։ Դժվար է պնդել, որ բոլորն իրանական են. կան այնպիսիք, որոնք հանդիպում են Ուրարտուում, օրինակ՝ Խունդուր (և Խուն-դուրնա)։ Ուրսին հիշեցնում է Ուրսային կամ Ռուսային, Գինզիբիրը՝ Թաթա իշխանի երկիրը, կարծես Համադանի մոտ գտնվող Կանգավարը լինի։ Նույն անունը գտնում ենք Հայաստանում՝ Կանգուար՝ Հոգվոց-վանքի մոտ, Արևելյան Տիգրիսի ակունքների վրա։

[2] Madai šamuti նշանակում է, ըստ Է. Շրադերի, «անծանոթ»։ Keilinschriftliche Bibl., II, էջ 17 և 19։

հզոր մեդացիների *բազմաթիվ քաղաքներ, որոնց մի մասը 744 թվականին ենթարկում է հարկատվության, մյուսները կցում է Ասորեստանին։*

*Խամբանը, հավանական է, Գամբադենն է՝ Բագիստանի շրջանում, Դարեհի արձանագրությունների վայրը։ Նիշշա,* Νησαῖοι, *Թեհրանի մոտ Ռագայի դաշտավայրը, որը հայտնի է ազնվացեղ ձիերով։ Ուրեմն, Մեդիայի կենտրոնումն ենք։ Ասորեստանի թագավորն իսկապես առաջացել է մինչև Բիկնի՝ Դեմավենդ լեռը։*

*Սարգոնի ժամանակ հայտնի է Զիկիրտու երկիրը, որի առաջնորդն էր Միթատին և մայրաքաղաքը՝ Պարդուն, իսկ նրա դաշնակիցը՝ Ումիլդիշի առաջնորդ Բագդատտին էր։ Սարգոնը պատժեց Մանայի կառավարիչներից Դայուկկուին։ Նա հիշատակում է Իլլիպեցի Դալտային և նրա որդիներ Նիբեին և Իշպաբարային, որոնք ձգտում էին հոր մահից հետո տիրանալ գահին։ Նրանցից մեկի նեցուկն էր Էլամը, մյուսի՝ Ասորեստանը։*

*Զիկիրտուն Բագիստանի արձանագրությունների Ասագարտան է և Հերոդոտի* Σαγάρτιοι*-ն, որը նա պարսկական ցեղ է համարում։ Բագդատտին կարծես իրանական* baga-data *բառն է, Դալտա, Իշպաբարա և Դայուկկու իրանական անուններ են*[1]*։ Սարգոնը հիշատակում է 45* bel maḫazani *հզոր Մադայի «քաղաքապետերին»։ Մի ցուցակ հիշատակում է նրանցից 23-ին, ցույց տալով նաև այն շրջաններն ու քաղաքները, որտեղ նրանք իշխում էին։ Մենք այստեղ մեջ ենք բերում այն, նկատի առնելով այնտեղ հիշատակված մի քանի անուններ, որոնք կարևոր են մեր նյութի համար.*

| | | |
|---|---|---|
| *1.* E-pa-ar-nu-a | Si-ig-ri-na-ai | *«քաղաքից»* |
| Su-tir-na | Mu-sa-na-a | *«քաղաքից»* |
| Up-pa-am-ma | Ḫa-ta-li-na-a | *«քաղաքից»* |
| Ma-aš-da-ku | A-ma-ak-ki | *«քաղաքից»* |
| *5.* Iš-te-su-ku | Iš-te-up-pu | *«քաղաքից»* |
| U-ar-za-a | U-qu-ut-ti | *երկրից* |
| Aš-pa-an-da | Ka-ak-kam | *երկրից* |
| Sa-tar-e-šu | | |
| Ru-du-su | Ta-ba-a-ri *և* Bit-Bar-ba-ri | *գավառներից* (nagi) |
| *10.* Sa-tar-pa-nu | Up-pu-ri-a | *երկրից* |
| Pa-ar-ku-ur | An-tir-pat-ti-a-nu | *երկրից* |
| A-ri-a | Bu-uš-tu | *երկրից* |
| Uš-da-a | Tur-ab-nu | *երկրից* |
| Ma-aš-ta-ku | A-me-is-ta | *երկրից* |

[1] Justi-*ն*, Iranisches Namensbuch, *կարծում է, որ* Dalta-*ն* daretar-*ն է*, Nibe-*ն*՝ naiba *«գեղեցիկ»,* nevak *«հերոս» և* Ispabara-*ն*՝ aspabara *«ձիավոր»։*

| | | |
|---|---|---|
| Har-ar-tuk-ka | Ḫa-ar-zi-a-nu | *երկրից* |
| Iš-te-le-ku | | |
| A-u-ar-pa-ar-nu | Ki-i-ta-nu | *երկրից* |
| Ar-ba-ku | Ar-na-si-a | *երկրից* |
| Ka-ru-ti | Kar-zi-nu-u | *երկրից* |
| ... ar-nu | Ba-ri-ka-a-nu | *երկրից* |
| ... | Za-za-ak-nu | *երկրից* |
| ... | Kar-ka-si-a | |
| ... | Pa-ar-ta-ka-nu[1] | |

*Ասարխադդոնի ժամանակ երեք իրանական իշխաններ ակտիվ գործողություններ են կատարում Ասորեստանի դեմ։ Դրանք են՝ Կարկաշշիի Կաշտարիտին, Մադայի Մամիտիարշուն և Սապարդայի Դուսաննին, ինչպես նաև Անտարպատի, Ռամադանի քաղաքների և Կուկումա երկրի առաջնորդները։ Ասարխադդոնին հարկատու առաջնորդներ կան նաև Պատուշարրայի շրջանում՝ հեռավոր ծովի, այսինքն՝ Կասպիականի մոտ։ Դրանք են՝ Շիտիրպարնան, Իպարնան, Պարթակկայի Ուպպիսը, Պարթուկկայի*

[1] *Այս վավերագրերը, որ հրապարակվել են Գ. Սմիթի կողմից՝* Assyrian Discoveries, *և Հ. Վինկլերի կողմից՝* Die Keilschrifttexte Sargons II, *վերահրատարակվել ու մեկնաբանվել են Պ. Ռոստի կողմից՝* Das sogenannte Mederreich und das Emporkommen des Perser, Mitteilungen der Vorderasiatischen Gesellschaft, *1897, էջ 72—119։*

*Ռոստն աչքի է անցկացրել համարյա բոլոր իրանական անունները, որ հանդիպում ենք սեպագիր տեքստերում։ Նրա և ուրիշ գիտնականների կողմից առաջարկված ստուգաբանական բացատրությունները մեծ մասամբ ենթադրական են։ Սեպագիրը օտար բառերն այնքան տարտամ ու կամայական կերպով է հաղորդում, որ մեկնաբանողների երևակայության առջև ազատ ասպարեզ է բացվում։ Այսպես, օրինակ, հնարավոր չէ ասել, թե* E-parnua-*ում, ուր* parnua-*ն, անշուշտ,* φαρνός farena-*ն է («փառավոր»), առաջին հնչյունը արդյոք վերադիր հնչյու՞ն է, թե այն կարելի է դիտել որպես* vi *կամ* ḫu։ Satar-panu-*ն կարծես* Kšat'rapanu-*ն է («սատրապ»), բայց եթե կարդացվի* satar-parnu, *ինչպես Յուստին է կարդում իր* Namensbuch-*ում, ապա կստացվի* εἶθρα farena։ *Երկու իշխաններ նույն անունն են կրում՝* Mašdaku *կամ* Maštaku։ *Ուզեցել են տեսնել այստեղ* Mazdaka *և դնել մազդեականության լուրջ հարցը։ Սակայն* Maštaku-*ն շատ լավ կարող է* Masišta-ku-*ի միաձուլված ձևը լինել, Հերոդոտի* Μάσιστος-*ի, որ նշանակում է համարյա նույն բանը, ինչ Ուպպամմա-ի անունը՝* upama *(բարձրագույն)։*

*Երկրների անուններն ավելի հետաքրքրական են, նրանք թույլ են տալիս ճշտելու իրանական ցեղերի զբաղեցրած տերիտորիան։ Սիգրիանան Պտղոմեոսի* Σιγριανική-*ն (XI, 2, 6) է, Կագայի մոտ խորոմիթրեններում։ Կակկամը Ասարխադդոնի Կուկուման է, անշուշտ՝ չար Կակմեների երկիրը, որի մասին խոսում է Սարգոնը ութերորդ արշավանքի նկարագրության մեջ։ Թաբարին, որը ծանոթ է որպես Թապարի, Թաբարիստանն է։ Բուշտուն՝ Մանայի սահմանակից երկիրը, որը ծանոթ է ուրարտական արձանագրություններից, ինչպես նաև Ամեխատան, որ նույնանում է Մեիշտայի հետ, որը գտնվում է Ուրմիա լճի ափին և գրավվել էր Ուրարտուի թագավոր Մենուայի կողմից։ Բարիկանուն՝ Հերոդոտի* Παρικάνιοι-*ն է* (III, *92), Պարտականուն կամ Պարտակուն՝ Հերոդոտի* (I, *101)* Παρητακηνοί-*ն։ Կարկասիան, Մանայի մոտ՝ Բիտ-Դայուկկու քաղաքը։*

Սանասանան և Ուրուկասաբարնայի Ռամատիան։ Աշուրբանիպալը նշում է մեդացի իշխան Բիրիզխատրիին և Սախիի որդիներ Սարատիին ու Պարիխիային, որոնք, կարծես, նույնպես իրանական ծագում ունեն։ Ավելացնենք Ումակիշտային և Իշտուվեգուին, Կիաքսարին ու Աստիագեսին, և մեդական շատ թե քիչ կարևոր իշխանների ցուցակը սեպագիր գրականության մեջ լրիվ կլինի։

Վերոհիշյալ բոլոր իշխաններն ունեն ḫazannu («քաղաքի առաջնորդ») տիտղոսը, Կաշտարիտին, Մամիտ(ի)արշուն bel ali («քաղաքի տեր») են։ Միայն Կիաքսարն ու Աստիագեսն էին իշխում ամբողջ Մեդիայի վրա։ Նրանց նախորդները սոսկ տեղական առաջնորդներ էին։

Ասուրական տեղեկությունները թույլ են տալիս ստուգելու այս նյութի վերաբերյալ նույն հեղինակների արած պատմությունը։ Հերոդոտի համաձայն, մեդացիներն սկզբում ապրում էին ցրված ավաններում՝ κατὰ κώμας։ Ավանների առաջնորդներից մեկը՝ Դեիոկեսը, որին նա կոչում է δικαστής, միացրեց ավանները և իր իշխանության ներքո պետություն ստեղծեց։ Ավանները վեց մեդական տոհմեր էին՝ Բուսեր, Պարաթակեններ, Ստրուխաթներ, Արիզանթներ, Բուդաններ և Մագեր։ Դեիոկեսը 53 տարի իշխեց։ Իշխանությունը հաջորդաբար անցավ Փրաորտին՝ 22 տարի, Կիաքսարին՝ 40 տարի, Աստիագեսին՝ 35 տարի։ Ընդամենը 150 տարի, որ ներկայացնում է մեդական թագավորության տևողությունը։ Մի ուրիշ տեղ պատմիչը 128 տարի է հաշվում, 22 տարով պակաս[1]։ Մեր կարծիքով, հակասությունը հեշտությամբ կլուծվի, եթե 22 տարին ընդունենք որպես Դեիոկեսի՝ նախքան թագավորական իշխանության հասնելու շրջանը։

Իրոք, պատմիչն ասում է, որ Դեիոկեսը վաղուց հայտնի էր իր ավանում խելքով և մեծ հեղինակություն էր վայելում, երբ մյուս ավանների բնակիչները հավաքվեցին և նկատի առնելով նրա ունակություններն ու հեղինակությունը՝ նրան դատավոր ընտրեցին։ Նա որոշ ժամանակ վարեց այդ պաշտոնը նախքան գահ բարձրանալը։ Այդ պահին նա, անշուշտ, բավական տարեց պետք է լիներ, 40 տարեկանից ոչ պակաս, որպեսզի կարողանար այդպիսի բարձր համբավի արժանանալ։ Եթե 53 տարիների մեջ ներառենք նրա դատավորության տարիները, ապա, ուրեմն, նա մահացել է 93 տարեկան հասակում։

Այսպիսով, մեդական պետությունը, ըստ Հերոդոտի, սկսվում է 680 թվականին։ Այն տևեց 128 տարի, ուրեմն, անկումը՝ 552 թվականին և Դեիոկեսի վերելքի սկիզբը՝ 702 թվականին։

Հերոդոտը սխալ է գործել Դեիոկեսի ժամանակաշրջանի վերաբերյալ

---

Հետևաբար իրանական ցեղերը գլխավորապես զբաղեցնում էին Ուրմիայի և Կասպից ծովի միջև եղած տարածությունները՝ հետագա Մեդիայի հյուսիսային մասը։

[1] Հերոդոտ, I, 101—103 և 130։

և, որպես հետևանք, ուրիշ ժամանակագրական շեղումներ թույլ տվել։ Դեիոկեսը, անշուշտ, Դայուկկուն է, որին Սարգոնը տարագրեց 715 թվականին։ Նրան šaknu «կառավարիչ» են որակում, որը կախում ուներ Մանա երկրից։ Δικαστής տիտղոսը համարյա շակնուի իմաստն ունի, քանի որ ցույց է տալիս, որ այդ տիտղոսը կրողը քաղաքական դեմք չէր հանդիսանում։ Հույն պատմաբանը, այնուհանդերձ, իրավունք ունի նրան համարել թագավորական հարստության հիմնադիր, որովհետև նրա սերունդն էր, որ ուղիղ գծով իշխեց և ստեղծեց պետությունը։ Սակայն նա սխալվում է այդ իշխանի մահվան թվականը տեղափոխելով 715 թվականից 680 թվականը։ Դա սկյութների Մեդիա ներխուժելու կամ ավելի շուտ՝ ժամանելու ճիշտ թվականն է։ Այդ ժամանակաշրջանում Մեդիայում բազմաթիվ իշխանների միջև հայտնի էին Կաշտարիտին, Մամիտ(ի)արշուն և Դուսաննին։ Դատելով անունից՝ Կաշտարիտին պատկանում էր Դեիոկեսի ընտանիքին։ Դարեհի օրով ըմբոստ մեդացի Ֆրավարտիշը իրեն կոչում է Քշաթրիտա Ուվաքշթրայի ցեղից։ Բաբելացիները առաջին անունը հաղորդում են որպես Կաշտարիտի, իսկ երկրորդը՝ Ումակիշտար=Կիաքսար։

Հերոդոտը մեզ պատմում է, որ սկյութները, Կովկասի լեռնաշղթան անցնելով, լեռների ստորոտում հանդիպեցին մեդացիների դիմադրությանը։ Նրանք ջախջախեցին այն և մեդացիների տիրապետությունից ազատեցին Ասիան, իշխելով այնտեղ 28 տարի։ Դա գալիս է ասելու, որ սկյութների տիրապետությունն սկսվել է հենց իրենց ներխուժման պահից՝ 680 թվականից, և տևել մինչև 652 թվականը։ Այդ տեղեկությունը միանգամայն ճիշտ է սկյութների տիրապետության վերաբերյալ։ Միայն թե նրանց հաջողությունը այդ պատմության մեջ շատ է չափազանցված։ Ասիայի գրավման մասին խոսք չի կարող լինել, այլ միայն Մեդիայի։ Ասարխադդոնը Մանա երկրում սպանեց սկյութների առաջնորդ Իշպակային, բայց նրան չհաջողվեց երկիրը նրանց ազդեցության տակից դուրս բերել։ Մյուս կողմից, մեդացիների առաջնորդներ Կաշտարիտիի, Մամիտ(ի)արշուի և Դուսաննիի ակնկալությունններին դեռևս ամենևին վերջ չէր տրված։ Դրությունը փոխվեց, երբ ասպարեզ եկավ սկյութ Բարտատուան։ 678 թվականին նա խնդրեց Ասորեստանի արքայադստեր՝ հավանաբար հենց Ասարխադդոնի դստեր, ձեռքը և հանձն առավ կռվել Մեդիայի ու Մանայի դրժող իշխանների դեմ և առաջին հերթին Կաշտարիտիի դեմ։ Նրա ջանքերը հաջողությամբ պսակվեցին։ Նա նույնիսկ Մանայի շրջաններից դուրս վտարեց կիմմերներին։ Հիմնականում Բարտատուան է սկյութական իշխանության ստեղծողը «Ասիայում», այսինքն՝ մեդացիների երկրում։ Գուցե, 28 տարվա տիրապետության իսկական թվականները 678—648 թթ. են։ Սակայն դա չի նշանակում, որ սկյութական տիրապետությունն անպայման անաղարտ է մնացել մինչև 648 թվականը։ Ավելի

շուտ դա այն թվականն է, երբ Կաշտարիտիի հաջորդ Ֆրաորտեսը ազատվեց սկյութական լծից։ Իրոք, 648 թվականից հետո Աշուրբանիպալը մեդացիների դեմ ուղղված և ոչ մի արշավանքի մասին չի խոսում։

Ինչպես ասացինք, Կաշտարիտին Դայուկկուի սերնդից էր։ Նա կոչվում է Կարկաշշիի իշխան, մինչդեռ Դայուկկուն իշխում էր Մանայի մոտ գտնըվող մի շրջանում, որն իր անունն էր կրում՝ Բիտ-Դայուկկու։ Պետք է կարծել, որ Կարկաշշին Բիտ-Դայուկկուի բնակավայրերից մեկն էր։ Սարգոնի ցուցակի նախավերջին իշխանը Կարկասիայի իշխանն է, որն, անշուշտ, նույնանում է Կարկաշշիի հետ։ Դժբախտաբար, նրա անունը ջնջվել է։ Սույն իշխանը պետք է որ Դայուկկուի հաջորդը լինի, համենայն դեպս՝ Կաշտարիտիի նախորդը։ Հերոդոտը չի ճանաչում այս երկու իշխաններին։ Նա նրանց փոխարինում է Դայուկկու-Դեյոկեսով, տեղափոխելով նրան 715 թվականից 680 թվականը։ Բայց քանի որ նա գիտեր, թե սկյութների ներխուժումը Դեիոկեսից հետո է տեղի ունեցել, ապա նա պարտք է համարել այն 680 թվականից տեղափոխել մեկ ուրիշ ժամանակ և ընտրել է Կիաքսարի ժամանակաշրջանը, գուցե, Քշաթրիտային Ուվաքշթրայի հետ շփոթելու հետևանքով, այնպես որ նա սկյութական տիրապետության ժամանակը զուգակցում է Կիաքսարի առաջին 28 տարվա հետ՝ 625—585 թթ.[1]։

Այս ժամանակագրական շեղումը հաստատվում է պատմագրի այլ վըկայություններով։ Վրանաբնակ սկյութների մի խումբ ապաստան էր փընտրում մեդական տերիտորիայում։ Կիաքսարը նրանց ընդունում է և իր զավակների դաստիարակությունը նրանց է վստահում։ Նորեկների հանդեպ թույլ տրված մի խստություն զայրացնում է այս բարբարոսներին, որոնք Կիաքսարի երեխաներից մեկին մորթում, ճաշ են պատրաստում և մատուցում թագավորական սեղանին, ապա փախչում Լիդիայի թագավոր Ալիաթթեսի մոտ։ Կիաքսարը ետ է պահանջում ոճրագործ փախստականներին, և երբ նրանք հրաժարվում են հանձնվել, պատերազմ է հայտարարում, որը տևում է հինգ տարի և վերջանում արևի խավարման օրը կընքված խաղաղությամբ։ Ներկա հաշվումներով այդ խավարումը տեղի է ունեցել 585 թվականի մայիսի 28-ին։

[1] Հերոդոտը Աստիագին հատկացնում է 35 տարվա թագավորություն, որի վերջը համարում է 550 թվականը, ուրեմն՝ 585—550 թթ.։ Մեդական պետության անկման իսկական թվականը 553 թ. է, Նաբոնաիդի երրորդ տարին։ Նաբոնաիդի-Կյուրոսի ժամանակագրությունը, Keilinschrift. Bibl., III, 2, էջ 129, պատմում է, որ Կյուրոսը կռվեց Իշտուվեգուի հետ և նրան գերի վերցրեց։ Այս հատվածը վնասված լինելու պատճառով թվականը մնում է անորոշ։ Սակայն որովհետև յոթերորդ տարում հաջորդում է մեկ ուրիշ պատմություն, եզրակացվում է, որ ջնջված թվականը վեցերորդ տարին կլինի, այսինքն՝ 550 թ.։ Սա հակասում է Նաբոնաիդի ուղիղ վկայությանը, ըստ որի՝ Աստիագի անկումը տեղի է ունեցել իր թագավորության երրորդ տարում, ուրեմն՝ 553 թ.։

Ուրեմն, պատերազմն սկսվել էր 590 թվականին։ Մեդիան չէր կարող պատսպարել խռովարար սկյութներին, եթե սկյութները դեռևս տիրապետեին Մեդիային, որը, ըստ Հերոդոտի, ազատագրվեց միայն 585 թվականին։ Ասենք, պատմագիրը ընդունում է, որ սկյութական տիրապետության անկումը, որը տեղի է ունեցել երևակայական կամ իրական եղեռնական խնջույքի ժամանակ, նախորդել էր Նինվեի առումին։ Իսկ դա տեղի է ունեցել 612 թվականին։

Համենայն դեպս, Կիաքսարը չի կարող սկյութների տիրապետության ժամանակակիցը լինել, և ոչ էլ այն կործանելու պատիվն ունենալ։ Նա իր հայր Ֆրաորտից էր ժառանգել երկիրը, որն արդեն ազատվել էր սկյութների ազդեցությունից։ Մենք թագավորական դինաստիայի, եթե ոչ պետության, հիմնադիր ենք համարում Դայուկկուին, կամ Դեիոկեսին, որը գերեվարվեց 715 թվականին. Նրա հաջորդներն են՝ մի անանուն անձ, Կարկաշշիի իշխանը, Սարգոնի օրով։

Կաշտարիտի-Քշաթրիտա, Ասարխադդոնի օրով։
Ֆրաորտ-Ֆրավարտիշ, Աշուրբանիպալի օրով։
Կիաքսար-Ուվաքշթրա, Սինշարիշկունի օրով։
Աստիագ-Իշտուվեգու, 585—553։

Կտեսիաս-Դիոդորի՝ մեդական թագավորների ցուցակը պատմական որևէ արժեք չի ներկայացնում, որովհետև բավական անհաջող թխված է Հերոդոտի պատմության հիման վրա։ Եվսեբիոսի ցուցակը, որ սկիզբ է առնում Աբյուդենոսից և Բազմավեպից (Պոլիհիստոր), ավելի ևս անփույթ է և իրենից ներկայացնում է մի կոմպրոմիս Հերոդոտի ու Կտեսիասի միջև[1]։

---

[1] Ահա Քտեսիաս-Դիոդորի ցուցակը ի համադրություն Հերոդոտի ցուցակի.

| | | |
|---|---|---|
| 1. Արբակես 28 | 4. Արթիկաս 50 | 7. Արթունաս 22 |
| 2. Մանդակես 50 | 5. Արբիանոս 22 | 8. Ասթիբարես 40 |
| 3. Սոսարմոս 30 | 6. Արթայոս 40 | 9. Ասպանդա |

Ցուցակի արհեստական բնույթը ակնհայտ է։ Ասպանդան, ինչպես նկատում է Դիոդորը, նույնանում է հույների Աստիագի հետ։ Երկու վերջին զույգերը իրենց թվերով համապատասխանում են Հերոդոտի Ֆրաորտ՝ 22-ին և Կիաքսար՝ 40-ին։ Իսկ առաջին զույգերը՝ Ֆրաորտին և Դեիոկեսին՝ 53։ Հերոդոտը ցույց չի տալիս Ֆրաորտի թագավորության տևողությունը։ Ֆրաորտը Դեիոկեսի հայրն է։ Կտեսիաս-Դիոդորը նրան համազոր Արբակեսի տարիները 28 են համարում։ Սպասելի էր 30, ինչպես նրա կրկնակ Սոսարմոսը։ Պ. Ռոստը կարծում է, որ խոտորումը կատարվել է փոխառությունը թաքցնելու նպատակով։ Հավանական է, որ Արբակեսի 28 տարին սկյութների տիրապետության 28 տարին է, որոնք, ըստ Դիոդորի, վտարվեցին Արբակեսի կողմից։ Քտեսիասը, ուրեմն, կրկնապատկել է Հերոդոտի տվյալները և ժամանակագրական տեսակետից երևակայական ու անհեթեթ ցուցակ կազմել, որովհետև ըստ այնմ Նինվեն կործանող Արբակեսից (612) մինչև Ասպանդա-Աստիագը (552) անցած կլիներ երեք հարյուր տարուց ավելի (282 տարի, առանց հաշվելու Ասպանդայի թագավորությունը)։ Հմմտ. **Nöldeke,** Etudes historiques sur la Perse ancienne, էջ 10։

Բազմաթիվ ցրված ցեղերից բաղկացած մեդացիները IX դարից սկսած իջնում են պատմության ասպարեզ։ Նրանց ազգային գիտակցությունը միանգամայն արթնանում է կիմմերա-սկյութական հորձանուտում։ Ֆրաորտին հաջողվում է նրանց ազատել սկյութների ազդեցությունից և հավաքել իր հովանու ներքո։ Կիաքսարը զարգացնում է նոր պետությունը և 612 թվականին Նինվեի առումից ու 585 թվականին Լիդիայի նկատմամբ տարած հաղթանակից հետո բարձրացնում մեծ տերությունների շարքը։ Սակայն այդ տերության կյանքը երկար չտևեց։ 553 թվականին իշխանությունը մեդացիներից անցավ իրենց համատոհմ պարսիկներին։ Բայց և այնպես, մեդական պետությանը վերագրված փառքը իրականությունից հեռու է անցնում։ Չափազանցությունը, թվում է, նրան հաջորդող պարսկական պետության ծաղկման հետադարձ ազդեցության հետևանք է։

Կիմմերները, սկյութները և մեդացիները, որոնց պատմությունը մենք ուրվագծեցինք, գլխավոր գործոններն են այն դարաշրջանի, երբ Ուրարտուն փոխարկվեց Հայաստանի։ Արդյո՞ք նրանք դեր խաղացել են այդ փոխարկման մեջ։

Ելնելով այն իրողությունից, որ Կիաքսարը չափվել է Լիդիայի թագավորի հետ Հալիս գետի ափին, իրավամբ եզրակացրել են, որ Ուրարտուի թագավորությունը, կիմմերների և սկյութների ավերումներից սասանված, ուժասպառ էր եղել Մեդիայի թագավորի հարվածների տակ։ Սակայն այդ բարբարոս հորդաները հետքեր թողե՞լ էին Հայաստանում։ Այդ նյութի շուրջ ոչ մի ուղղակի տվյալ գոյություն չունի։ Այնուհանդերձ, որոշ գիտնականներ կարծում են, թե սկյութները հաստատվել են Հայաս-

---

Շատ մեծ նշանակություն են վերագրել այն հանգամանքին, որ երկու անուններ՝ Արբակես և Արթիկաս, կան Սարգոնի մեդական 23 իշխանների ցուցակում Արբակու և Խարթուկկա ձևերով։ Դա բոլորովին պատահական զուգադիպություն է։ Սարգոնի մոտ նրանք ժամանակակիցներ են, Քտեսիասի մոտ՝ մեկ դարով միմյանցից բաժանված։ Սեմիրամիսի (Շամիրամի) պատմության մեջ Դիոդորը հիշատակում է Մեդիայի թագավոր Փառնեսին։ Մեդական թագավորների ցուցակում նրա անունը չկա։ Եթե Փառնեսը ծագում է ուրիշ աղբյուրից, կարելի է մտածել Է-պարնուայի կամ Ի-պարնուայի մասին՝ Սարգոնի ցուցակում։ Եվսեբիոսն ընդունել է Քտեսիասի ցուցակի առաջին չորս անունները՝ պակասեցնելով նրանց թագավորության տևողությունը. Արբակես՝ 28, Մանդակես՝ 20, Սոսարմոս՝ 30, Արթիկաս՝ 30 և դրա վրա ավելացրել է Հերոդոտի ցուցակի մեջ պարունակված հետևյալ անունները՝ Դեիոկես՝ 54, Ֆրաորտ՝ 24, Կիաքսար՝ 32, Աստիագ՝ 38։

տանում և նրանք են, որ կլանելով երկրի ոչ-արիական տարրերը, վճռել են Հայաստանի ազգագրական նկարագիրը[1]։

Հավանական է, այս միտքը ներշնչվել է այն հանգամանքից, որ Հայաստանի շրջաններից մեկը կրում է սկյութների անունը՝ Sakasene, Saka-Šayana «սակաների բնակություն». saka սկյութացիների իրանական անունն է։ Դա հայերի Շակաշենն է, Ուտիք — Otene նահանգի գավառներից մեկը։ Նրա կենտրոնն էր Գանձակը (ռուսների Ելիզավետպոլը)։

Պետք է կարծել, որ Հերոդոտն՝ ասելով «լեռների ստորոտում», ուր սկյութները հաղթական ճակատամարտ էին մղել մեդացիների դեմ, հասկանում է Սակասենեն[2]։ Մեդացիների հիշատակումը անախրոնիզմ է։ Սկյութների ներխուժման ժամանակ, մոտ 680 թվականին, մեդացիներն անելիք չունեին Կովկասի «լեռների ստորոտում» կամ Սակասենեում։ Այդ շրջանում տվյալ երկրների վրա իշխում էր Ուրարտուն։ Ռուսա II-ը հայտարարում է, որ ինքը նվաճել է Սևանա լճի մյուս կողմում գտնվող 23 թագավորությունները. դա տեղի էր ունեցել մոտավորապես 680 թվականին։ Թվում է, թե նա թույլ չէր տվել բարբարոսներին՝ ողողել Ուրարտուն, մի բան, որ արել էին կիմմերները, և ետ էր մղել նրանց դեպի Մեդիա, ուր նրանք հաղթել էին մեդական ցեղերին ու իրենց 28-ամյա տիրապետությունն էին հաստատել։ Սկյութների մի մասը մնացել էր Սակասենեում, եթե միայն այս տերմինը իսկապես կապ ունի բարբարոսների անվան հետ։

Ասել, որ սկյութները կարողացան փոխել այդ շրջանի ազգագրական բնույթը, չափազանցություն կլիներ և, համենայն դեպս, իրողության հակառակ, քանի որ Սակասենեի կամ Օտենեի բնակչությունը տարբեր է եղել հայերից, և նրանց վերջին հետքերը մեր օրերում հայտնի են Նուխիի մոտ գտնվող մի քանի գյուղերում։ Խոսք չի կարող լինել սկյութների որևէ ազդեցության մասին Հայաստանի վրա։

Հայաստանի հյուսիս-արևմտյան մի անկյունում գոյություն ուներ մի ժողովուրդ, որը կոչվում էր սկյութինիներ։ Քսենոփոնը նրանց տեղադրում է Chalybes-ի և Taochi-ի մոտ, համարյա Ճորոխ գետի ոլորանի շրջանում, Բաբերդի (Բայբուրթ) մոտ։ Դա այն շրջանն է, որը հետագայում կոչվեց Խալդիա անունով։ Արդյոք խոսքը սկյութների մեկ ուրիշ բնակության մասի՞ն է։ Կարելի կլիներ աղերս տեսնել Սկուդիսեսս լեռների հետ, որոնք տա-

---

[1] Jakob Krall-ը, Grundriss der altorientalischen Geschichte, էջ 164, ասում է. «Ինչպես կարելի է կռահել բազմաթիվ հանգամանքներից, հնարավոր է, որ նրանք (իմա՝ սկյութները) հաստատվելով Ուրարտուում, լրիվ արմատախիլ են արել ոչ-հնդգերմանական ազգաբնակչությանը և, այդպիսով, ամբողջապես փոխել Հայաստանի ազգագրական տեսքը»։

[2] Ստրաբոն, XI, II, 4։ Σακασηνή-ն իր անվամբ պարտական է սկյութներին։

*բաժված են Ճորոխ գետի երկայնքով, Բաբերդից հյուսիս, եթե գոյություն չունենար հայերեն Աստվածաշնչի հետաքրքիր մի ցուցումը. հունական տեքստի Σκύθαι-ն այնտեղ թարգմանված է խաղտիք՝ Χάλδοι[1]։ Հնարավոր չէ որոշել, թե խալդերի անունը այստեղ գործածվում է «բարբարոսներ» իմաստո՞վ, թե հարաբերություն ունի սկյութների հետ։ Նույնիսկ ընդունելով վերջին պարագան, շատ արկածային կլիներ ենթադրել մի բուն սկյութների ազգադրական ազդեցությունը հայերի վրա[2]։*

*Կիմմերա-սկյութական և մեդական ժամանակաշրջանը, որքան որ դա հայտնի է մեզ պատմությունից, ինչպես տեսնում ենք, լրիվ զուրկ է Հայաստանի վերաբերյալ տեղեկություններից։ Պետք է սահմանափակվել մի քանի ենթադրություններով, որոնցից ամենակարևորը 585 թվականի ճակատամարտից բխող եզրակացությունն է. այդ թվականին Ուրարտուն գոյություն չուներ այլևս, և դրանից հետո է, որ հայերը տեր դարձան երկրին։*

*Բացի այդ, գոյություն ունեն այն ժամանակներում և նույնիսկ դրանից առաջ իշխած մի քանի հայ թագավորների մասին հիշատակություններ։ Անշուշտ, դրանք առասպելական են, և, այնուհանդերձ, մենք այդ մասին կխոսենք։ Անցնենք այժմ հայերի ծագման մասին դասական հեղինակների տված տեղեկությունների քննարկմանը։*

## Բ

## ՀԻՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻ ՏԵՂԵԿՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ ՀԱՅԵՐԻ ԾԱԳՄԱՆ ՄԱՍԻՆ

*Ժողովուրդների ծագումը թաղված է դարերի մթության մեջ։ Բոլոր ժողովուրդները երկար կյանք են վարել, թափառել անծանոթ ճանապարհների վրա, էթնիկական և աշխարհագրական այնպիսի պայմաններում,*

[1] Մակաբ., Դ, 47. εἰ καὶ ἐπὶ Σκυθῶν ἔλεγον ἀπηλύθησαν ἀκατάγνωστοι —*«Թէպէտ առաջի խաղտեաց դատ վարէին, իբրև գտանէին»։*

[2] *Էսքիլոսը, «Յոթն ընդդեմ Թեբեի»,* V, *227, խալիբներին կոչում է Սկյութիայից գաղթածներ»* — Χάλυβος Σκυθῶν ἄποικος։ *Գուցե, սկյութների հետ խալիբների հարևանությունն է բանաստեղծին ներշնչել այդ միտքը։ Վերջերս ամերիկացի Ռիչարդսոնն իր* Iron prehistoric and ancient *հոդվածում՝ տպված* «American Journal of Archeologie»*-ի մեջ, հատ. 38, 1934, էջ 566, այն կարծիքն է հայտնում, որ խալիբները երկաթ մշակելու արհեստը սովորել են կիմմերներից, իսկ վերջինները՝ կենտրոնական Եվրոպայից։ Էսքիլոսի նշված վկայության հիման վրա նա կարծում է, որ խալիբների ժողովուրդը* «appears to have been a Cimmerian-Scyth» *և նրանց Փոքր Ասիա գալը կարելի է տեղադրել բարբարոսների ներխուժման ժամանակաշրջանում, երբ նրանք սասանեցին Ասորեստանը և ավերեցին Փռյուգիայի թագավորությունը։*

որոնք չեն ենթարկվում որևէ վերահսկողության մինչև այն պահը, երբ նրանք երևան են գալիս պատմության լուսավոր գոտիներում։

Հայերը բացառություն չեն կազմում այս ընդհանուր երևույթից։ Նրանք նույնպես ունեցել են իրենց կյանքի խավար ժամանակաշրջանը նախքան քաղաքակիրթ աշխարհին ներկայանալը։ Հույները չէին հետաքրքրվում ոչ-հույն ժողովուրդների ծագումով, որոնց կոչում էին բարբարոսներ։ Այն տեղեկությունները, որ նրանք ավանդել են մեզ հայերի ծագման մասին, հիմնականում վերաբերում են այն վերջին փուլերին, որոնցով հայերն անցել են նախքան Հայաստանում հաստատվելը։ Հայերի ծագման հարցին ձեռնամուխ լինելուց և այն ժամանակակից գիտության լույսի տակ մեկնաբանելուց առաջ անհրաժեշտ է քննարկել հների ունեցած տեղեկությունները այս նյութի շուրջ, որովհետև, ինչ կերպ էլ որ այդ տեղեկությունները ներկայացված լինեն, համենայն դեպս նրանք արտացոլում են, ինչպես կտեսնենք, որոշ պատմական ճշմարտություն։

Մեզ հասել են երկու ավանդություններ. ըստ առաջինի՝ հայերը փռյուգիական ծագում ունեն, ըստ մյուսի՝ թեսալական։ Առաջինը Հերոդոտն է արծարծում, երկրորդը՝ Ալեքսանդր Մակեդոնացու երկու սպաներ։ Նախ քննենք Հերոդոտի տեսությունը։

Քսերքսեսի բանակի նկարագրության մեջ Հերոդոտն ասում է. «Փռյուգիացիների սպառազինությունը շատ նման էր պափլագոնիացիների սպառազինությանը. տարբերությունը շատ աննշան էր։ Ըստ մակեդոնացիների՝ փռյուգիացիները կոչվում էին բրիգներ քանի դեռ մնում էին Եվրոպայում մակեդոնացիների հետ միասին։ Սակայն անցնելով Ասիա, փոխելով երկիրը՝ անունը փոխեցին և անվանվեցին փռյուգիացիներ։ Հայերը զինված էին փռյուգիացիների պես, որոնց գաղթականներն են։ Ե՛վ առաջինները, և՛ երկրորդները առաջնորդվում էին Դարեհի դստեր ամուսնու՝ Արթոքմեսի կողմից»[1]։

Պատմագրի անգնահատելի ցուցումը անկասկած շատ ավելի արժեք կունենար, եթե այն այլ տեղում ներկայացված լիներ և ոչ Քսերքսեսի արշավանքի այնքան գունազարդված պատմության մեջ[2]։ Այսուհանդերձ, ժողովուրդների ցանկը պաշտոնական վավերաթղթի հետաքրքրություն է ներկայացնում, անկախ այն միտումնավոր կիրարկումից, որ պատմագիրը ուզեցել է կատարել։ Պետք է կարծել, որ հայերի ազգակցությունը փռյուգիացիների հետ պատմագրի անձնական կարծիքը չէ՝ հիմնված այն իրողության վրա, որի համաձայն երկու ժողովուրդները հպատակ-

---

[1] Հերոդոտ, VII, 73, 'Αρμένιοι δε κατάπερ φρύγες ἐσεσάχατο ἐόντες Φρυγῶν ἄποικοι.

[2] Պետք է մանկական միամտություն ունենալ պնդելու համար, թե Քսերքսեսը հավաքել էր 2 641 610 ռազմիկներ, սպասարկող կազմի հետ՝ 5 283 220 մարդ։

*վում էին մեկ ընդհանուր հրամանատարի։ Ընդհակառակն, դա ավելի շուտ խոսում է այն ազգակցության մասին, որ նրանց հավաքել էր մեկ առաջնորդի ներքո, նա այդպես է խմբավորել նաև մյուս ազգերը, նույն սկզբունքի հիման վրա։*

*Մեկ ուրիշ հեղինակ՝ Եվդոքսը, որն ապրել է մոտ 370 թ. մ. թ. ա., ուրեմն՝ Հերոդոտից համարյա մեկ դար հետո, նույնպես հաստատում է, որ «հայերը ծագումով Փռյուգիայից են և լեզվով շատ են նման փռյուգիացիներին»*[1]*։*

*Չի կարելի ասել, որ այդ հեղինակը ներշնչված է իր նախորդի կողմից։ Լեզուների նմանության վերաբերյալ դիտողությունը ապացուցում է, որ նա անկախ է և Հերոդոտի հետ կապ չունի։*

*Այսպես ուրեմն, ենթադրենք, թե հայերը փռյուգիացիների մեկ ճյուղըն էին։ Իսկ ովքե՞ր էին իրենք՝ փռյուգիացիները։*

*Նրանք Թրակիայի բնիկներ էին Բերեսինտ և Ասկանիա երկրներից, որտեղից Հեկտորի որդի Սկամանդրը նրանց Փոքր Ասիա էր բերել Տրոյայի պատերազմի ժամանակ*[2]*։ Հոմերոսը փռյուգիացիներին ճանաչում է որպես Պրիամի դաշնակիցներ՝ տեղաբաշխված Սանգարիոսի ափերին, «հեռավոր Ասկանիայից» եկած՝ Փորկոսի և Ասկանիոսի հրամանատարության տակ*[3]*։ Տրոյական կոչված պատերազմի պատմական բնույթի մասին կան բազմազան կարծիքներ։ Այսուհանդերձ, բոլորն էլ համաձայն են այն տեղադրելու մ. թ. ա.* XII *դարում։ Դա թրակա-փռյուգիական ժողովուրդների ներխուժման և նրանց հարվածների տակ խաթթի պետության կործանման թվականն է։*

*Ամփոփենք այն, ինչ մենք այդ նյութի մասին պատմել ենք ըստ սեպագիր հուշարձանների։*

*Խաթթուշի (Բողազ-քյոյի) դիվանները միանգամից ընդհատվում են շուրջ 1200 թվականին, մի չարագուշակ նշան այն բանի, որ խեթական պետությունը աղետի էր ենթարկվել։ Քիչ հետո «Խաթթի» անունով որոշ «ռազմատենչ» ժողովուրդներ են երևան գալիս Ասորեստանի սահմանի վրա։ Նրանց մեջ է գտնվում մուշկերի քսան-հազարանոց մի խումբ, որոնց անվան տակ ասորեստանցիները հասկանում են փռյուգիացիներին։ Մուշկերը թափանցում են Անզիտենեի շրջանը և առաջ խաղում մինչև երկու*

---

[1] Եվդոքս, *Ճանապարհացույց, մեջ բերված Ստեփանոս Բյուզանդացու կողմից, որը մ. թ.* V *դարի հեղինակ է։ Վերջինիս «էթնիկա»-ում, որը հատուկ անունների բառարան է, Հայաստանի անվան տակ գրված է.* Εὔδοξας πρώτῃ γῆς περιόδου Ἀρμένιοι δε τό μεν γένος ἐκ Φρυγίας καὶ τῇ φωνῇ πολλὰ φρυγίζουσι.

[2] Xanthes, *Արտաքսերքսես* I-*ի (484—425) օրոք,* fr. *5։* Strabon, XIV*, 5, 29։*

[3] Իլիական, II, *862,* III, *184։*

Տիգրիսների գետաբերանը, ուր 882 թվականին պատերազմ են մղում Ասորեստանի թագավոր Աշուրնասիրպալ II-ի դեմ։ Դրանից հետո համարյա ոչինչ չի լսվում այդ ժողովրդի մասին մինչև Սարգոն II-ի թագավորությունը (721—705)։ Այդ դարաշրջանում նա նորից է երևում Կիլիկիայի ծովափում։ Խեթական պետությունը նվաճելուց հետո մուշկերը շարունակել էին իրենց հաղթարշավը մինչև Միջերկրական ծովը և Ասորեստանից խլել Արևմտյան Կիլիկիան՝ Կուե երկիրը։ Մուշկերի թագավորը կրում էր Միտա նշանակալից անունը, որը նույնանում է Փռյուգիայի Միդասի հետ։ Սա մուշկերի և փռյուգիացիների նույնությունն ապացուցող մի փաստ է[1]։

Միտան, ձգտելով տեր դառնալ Ասորեստանի տիրույթներին, ապստամբություն է հրահրում նրա շրջակա փոքր իշխանությունները։ Շինուխթուի իշխան Կիակկին դադարում է հարկ վճարել Ասորեստանին։ Սարգոնը նրան գահազուրկ է անում և նրա երկիրը տալիս Մաթթիին, Աթունայի իշխանին, Պտղոմեոսի Թինան, որ Արաբիսոս շրջանի Կաթաոնիայի մի քաղաք էր, այսօրվա Յարփուզը։ Շինուխթուն կարծես տեղավորված էր միջին Սարոսի վրա, Սիսի և Յարփուզի միջև։

Միտային հաջողվել էր իր ձեռքը վերցնել Կարգանիշը (Կերապրուս)։ Սարգոնը նրան ետ է մղում այդ շրջանից, առաջ խաղում մինչև Կուե և Միտայից խլում է, ի միջի այլոց, Կալիկադինուսի (Գյոք-սու) ափին՝ Սելևկիայի տեղում գտնված Խարրուա քաղաքը[2]։

Կիլիկիայի կողմից դեպի Ասորեստան ընթանալու անհաջողությունից հետո Միտան իր գործունեությունը փոխադրեց Կիլիկիայի լեռները՝ Ասորեստանին հարկատու փոքր իշխանությունների շրջանը։ Բիտ-Բուրուտաշ, Կամմանու, Մելիդու, Կումմախու երկրները մեկը մյուսի ետևից անջատվում են Ասորեստանից։

Բիտ-Բուրուտաշի թագավորն էր Ուասսարմեի որդի Խուլլին։ Վերջինիս Թիգլաթպալասար III-ը հորջորջում է որպես «Թաբալի թագավոր», որից հետևում է, որ Բիտ-Բուրուտաշը նույն Թաբալն է, լինի դա քաղաք կամ շրջան, ուր ապրում էր Խուլլին։ Սարգոնն իր աղջկան՝ Ախատաբիշուին, ամուսնության էր տվել Խուլլիի որդի Ամբրիսին և որպես օժիտ՝ Խիլակկուն (Կիլիկիան)։ Այդ ժամանակաշրջանում այդպես էր կոչվում Կեսարիայից արևելք ընկած Զամանթիի հովիտը։ Հակառակ այդքան շնորհների, Ամբրիսը՝ Միտայի և Ուրարտուի Ռուսայի կողմից գրգռված, ծառացել էր

---

[1] Rawlinson-ը, Monarchies, II, 151, ծան. 7, առաջինն է ընդունել Միտայի նույնությունը Միդասի հետ, ապա՝ Վինկլերը, Phrygien im Lichte der Altorientalischen Inschriften, «Altorientalischen Forschungen», II, էջ 103, 1898։

[2] E. Forrer, Die Provinzeinteilung des Assyrischen Reiches, էջ 71։

իր բարերարի դեմ։ Սարգոնը նրան պատժել և պետությունը Ասորեստանի նահանգ էր դարձրել։

Կամմանուն դասական հեղինակների խամաններն է, բայց այդ ժամանակաշրջանում նա գտնվում էր Հալիսի և Մելիտենեի միջև։ Նրա թագավոր Գունզինանուն գահընկեց արվեց իր հարևան Ամբրիսի պես ու միևնույն պատճառով, և նրա երկիրը կցվեց Մելիդուին (Մելիտենե)։

Սակայն Մելիդուի թագավոր Թարխունազին նույնպես դավաճանեց Սարգոնին։ Վերջինը նրան բանտարկեց և պետությունը հանձնեց Կումմախուի իշխան Մուտալլուին։ Մուտալլուն էլ հավատարիմ չմնաց Սարգոնին ու միացավ Ուրարտուի Ռուսային։ Սարգոնը նրան վտարեց, և Կումմախուն ասուրական նահանգ դարձավ։

Այսպես, Միտայի փորձերը Ասորեստանի դեմ ընդհանուր ճակատ ստեղծելու՝ անհաջող անցան։ Կուեի ասորեստանյան կառավարիչը վերջին հարվածը հասցրեց՝ մխրճվեց նրա երկրի խորքը և ստիպեց նրան ճանաչելու Սարգոնի գերիշխանությունը 708 թվականին։

Սարգոնը Մուշկիի մոտ կառուցեց Ուսի, Ուսիանի և Ուարգին ամրոցները։ Ուսին հռոմեական ճանապարհացույցների Խուսան է, որը գտնվում է Թիանայի ճանապարհի վրա, Նազիանզուսից արևմուտք տասներկու մղոն հեռավորության վրա։ Ուսիանին հռոմեական Օսիանան է Նիսսայից արևմուտք։ Ուարգինի տեղը հայտնի չէ[1]։

Այս բերդերը սահմանագծում էին Մուշկիի արևելյան սահմանը, որը հաստատում է Մուշկիի նույնությունը Փռյուգիայի հետ։ Պտերիայի (Բողազ-քյոյ) խեթական մայրաքաղաքից քիչ հեռավորության վրա Էյուկում և Թիանայում (Կիզլի-Հիսար) հայտնաբերված փռյուգիական արձանագրությունները ապացուցում են, որ Տարսոնից Սինոպ տանող գլխավոր ճանապարհը փռյուգիացիների ձեռքումն էր։

Սարգոնի կողմից կառուցված բերդերի գծից արևմուտք, Պրոպոնտիսի (որի մի մասն էր կազմում Փոքր Փռյուգիան), Կարիայի և Պիսիդիայի ամբողջ ընդարձակ տերիտորիայի վրա տարածվում էր Փռյուգիան։

Հակառակ Փռյուգիայի համբավին, ինչպես որ այն արտացոլվել է հունական դիցաբանության մեջ, ոչինչ հայտնի չէ այդ երկրի պատմության երկար դարաշրջանի վերաբերյալ, սկսած փռյուգիացիների ներգաղթից մինչև VII դարի վերջը։ Հերոդոտը ճանաչում է միայն Միդաս թագավորին, նրա հայր Գորդիոսին և նրա որդուն, որ նույնպես Գորդիոս անունն

---

[1] **Forrer**, Die Provinzeinteilung, էջ 76 **Ramsay**, Asia Minor, էջ 286 և 269։ Ֆորերն Ուարգինը տեղադրում է Հալիսից հյուսիս, որ հավանական չէ. ավելի շուտ պետք է փնտրել այն Թիանայի մոտ։

էր կրում[1]։ Գորդիոն քաղաքը, Միդայոն քաղաքը, Միդասի հռչակավոր հուշարձանը, երկուսն էլ տեղավորված Սանգարիոսի ավազանում, ինչպես նաև Միդուկրենը՝ Պիսիդիայի սահմանի վրա, Անտիոքի մոտ և Գորդիուտեյքոսը, հավանաբար՝ Մեանդրի վտակ Հարպասոսի վրա, հավերժացրել են վերոհիշյալ թագավորների հիշատակը։

Միդաս թագավորը, առասպելական պատմվածքներում՝ ոսկե Միդաս, էշի ականջներով Միդաս դարձած, շարունակելու էր իր դեմքը թաքցնել դիցաբանական շղարի տակ, եթե ասուրական արձանագրությունները բացած չլինեին նրա պատմական դեմքը։ Հույն հեղինակների՝ Միդասի և Միտայի նույնության մասին տարակուսանքը չափազանցված է։ Ըստ Հերոդոտի՝ Միդասը ավելի վաղ է եղել, քան Լիդիայի թագավոր Գիգեսը։ Մենք գիտենք, որ Միտան ապրում էր Սարգոնի և նրա հաջորդների ժամանակ, մինչդեռ Գիգեսը Աշուրբանիպալի (669—632) ժամանակակիցն է։ Դրանով Հերոդոտի Միդասը նույնանում է Սարգոնի Միտայի հետ[2]։

Փռյուգիայի պատմությունը, մեր ծանոթության սահմաններում, այնուհանդերձ, ոչ մի առիթ չի ընձեռում փռյուգիացիների և հայերի միջև բացահայտելու որևէ այնպիսի կապ, որը նրանց ազգակցության մասին եղած ձևական վկայության նեցուկ հանդիսանար։ Կա միայն մի իրողություն, որը կարող է օգտակար լինել այդ հարցում։ 705 թվականին Սարգոնը դուրս եկավ Թաբալի դեմ։ Այդ արշավանքի մասին ոչինչ հայտնի չէ, բացի նրանից, որ Ասորեստանի թագավորն այնտեղ մահացավ։ Թվում է, թե արշավանքն ուղղված էր Թիլ-Գարիմմու երկրի դեմ, խեթական հուշարձանների Թեգարաման, տեղավորված Մելիդուի և Կամմանուի միջև, Գաուրաինայի շրջանում, այժմյան Գյուրունը, որը, գուցե, պահպանել է Թեգարամա կամ Գարիմմու հին անունը։ Թաբալը տոհմական անուն է, որը վերաբերում է կիլիկյան Տավրոսում տեղավորված մի քանի պետությունների։ Քիչ ավելի ուշ տեղի ունեցած իրադարձությունները իրավունք են տալիս այն վարկածին, թե 705 թվականի արշավանքի նպատակն էր Թիլ-Գարիմմուի գրավումը։ 695 թվականին Սեննաքերիբը իր զո-

[1] Հերոդոտ, I, 14, VIII, 138՝ Միդաս որդի Գորդիոսի, I, 35, Ադրաստոս որդի Գորդիոսի և Միդասի թոռ։ Ադրաստոսը պատմական անձնավորություն չէ։ Եղբորն սպանելուց հետո ապաստան է փնտրում Կրեսոսի պալատում և այստեղ ուրիշ ոճիր է գործում՝ որսի ժամանակ սփոփանակ վարազին խփելու, սպանում է Կրեսոսի որդի Աթիսին։ Այս պատմությունը Աթիկի առասպելի ազդեցությունն է կրում։

[2] Այն հանգամանքից, որ Հերոդոտը հռչակավոր պարտեզը տեղավորում է Մակեդոնիայում, Բերմիոն լեռան ստորոտում, ամենևին չի հետևում, թե Միդասը պատկանում է այն ժամանակաշրջանին, երբ փռյուգիացիները դեռևս ապրում էին Թրակիայում։ Դա պատմական արժեք չունեցող առասպել է։ Բացի այդ, ըստ Քսենոփոնի՝ Անաբասիս, I, 2, 13, առասպելական պարտեզը գտնվում էր Փռյուգիայում՝ Միդուկրեն քաղաքում։

բավարներից մեկին ուղարկեց ոմն Գուրդիի դեմ, որն այդ երկրում նոր թագավորություն էր հիմնել։ Գուրդին խոհեմաբար ետ քաշվեց Ասորեստանի գերազանց ուժերի առջև։ Սեննաքերիբի զորավարը գրավեց Թիլ-Գարիմմուն, բայց նկատելով այն պահպանելու դժվարությունը՝ բավարարվեց կողոպտելով և հեռացավ։ Այսպիսով, Թիլ-Գարիմմուն օձիքն ազատեց Ասորեստանի ամբարտավան նկրտումից և պահպանեց իր անկախությունը։

Հայտնի չէ, թե ինչպիսի պարագաներում էր Գուրդին հիմնել այդ նոր քաղաքական օջախը։ Գուրդին բացառապես փռյուգիական անուն է։ Եթե Թիլ-Գարիմմուի Գուրդին Միդասի որդին էլ չէր, ապա, անկասկած, թագավորական ընտանիքից էր։ Հետևաբար, կարելի է ենթադրել, որ նա փռյուգիացիների հրամանատարն էր և այսպես թե այնպես նրանց բերել ու հաստատել էր Թիլ-Գարիմմուի շրջանում։ Եթե մենք հիշենք, որ Թիլ-Գարիմմուն կազմում էր Փոքր Հայքի տերիտորիան՝ հայերի առաջին օրրանը, նախքան Եփրատն անցնելը, ուրեմն իրավունք ունենք մտածելու, որ Գուրդիի փռյուգիացիները հայերն էին և ոչ ուրիշներ։

Թեգարամա թագավորությունը այնքան էլ վաղանցուկ չէր, ինչպես կարելի էր կարծել։ Բիբլիական ավանդությունը պատիվ է արել նրան՝ մտցնելով Ծննդոց գրքի նշանավոր Ժ գլխում թվարկված ժողովուրդների էպոնիմների մեջ՝ Հաբեթ, Գամեր, Մագոգ, Մադաի, Իովան, Թոբել, Մոսոք, Թիրաս, Ասքանազ, Ռիփաթ կամ Երիփաթ, Թերգամա կամ Թորգամա։

Դժվար չէ ճանաչել այն երկրներն ու ժողովուրդները, որ ներկայացված են այս էպոնիմներով՝ Գամերը դա Գիմիրրին է՝ կիմմերները Կապադովկիայում, հայերի Գամիրքը. Մագոգը՝ Գոգի երկիրը, Գիգեսի Լիդիան. Մադաին՝ Մեդիան. Իովանը՝ Իոնիան. Թոբելը՝ Թաբալը, Կաթաոնիան. Մոսոքը՝ Մուշկին, Փռյուգիան. Թիրասը հայտնի չէ, գուցե Թրաքս, Թրակիա[1]։

Գամերի որդիները՝ Ասքանազ և Իշկուզի (կամ Իշկունզի), սկյութները՝ Թերգամա կամ ավելի շուտ Թեգարմա, որտեղից Թոգարմա կամ Թորգամա, Թեգարամա կամ Թիլ-Գարիմմու՝ Փոքր Հայք, Ռիփաթ՝ գուցե Արպադ (այժմյան Ռֆադը Հալեպից հյուսիս)՝ սիրիական փոքր պետություն, «Երիփաթ» ընթերցվածքը մտածել է տալիս Արարատի մասին (Ուրարտու)։

Այսպիսով, Ծննդոց գրքի Ժ գլուխը նկատի ունի միջագետյան աշխարհի հյուսիսում՝ Էգեական և Կասպից ծովերի միջև տեղավորված ոչ-սեմական ժողովուրդները։

Տարօրինակ է, որ Ուրարտուի նման մի մեծ պետություն Ծննդոց

---

[1] Հովսեփոս Փլաբիոսի կարծիքն է, 'Αρχαιολογία I, I, § 125։

գրքի մեջ չի հիշատակված։ Երեք եղբայրներից Թերգաման ներկայացնում է Գուրդիի թագավորությունը՝ Փոքր Հայքը, Ասքանազը էպոնիմն է սկյութների, որոնք տեղավորված են կա՛մ Սակասեննում՝ Արևելյան Հայաստանում, կա՛մ Ատրպատականում՝ Մանա երկրում կամ նրան մոտ։ Մարգարեն Միննիի և Արարատի հետ միասին հիշատակում է ասքանազյաններին[1]։ Շատ բնական է, որ երրորդ եղբայրը լիներ իր մյուս երկու եղբայրների մոտ։ Դա ստիպում է նախընտրել Էրիրաթ ընթերցվածքը՝ այն նույնացնելու համար Արարատ-Ուրարտուի հետ[2]։ Արպադը բավական աննշան մի կետ էր և հազիվ կարող էր հավակնել տեղ գրավելու իրական քաղաքական կարևորություն ունեցող այնքան երկրների շարքում, ինչպես և բավական հեռու էր նա Գամերի որդի համարվելուց։

Հիշատակումը կիմմերների և սկյութների, որոնք երկար ժամանակ չմնացին քաղաքական ասպարեզում, ապացուցում է, որ Գիրք ծննդոցի տվյալ գլուխը վերարտադրում է ոչ-սեմական Առաջավոր Ասիայի ազգագրական քարտեզը, ինչպես որ կար կիմմերա-սկյութական ներխուժման հաջորդ օրը, ոչ ավելի ուշ, քան յոթերորդ դարի առաջին կեսում[3]։

Այնուհանդերձ, հայերը բիբլիական ծննդաբանության մեջ իրենց էպոնիմը չունեն, որը ցույց է տալիս, որ նրանց հաստատումը Հայաստանում տեղի է ունեցել հիշատակված թվականից ավելի ուշ, գուցե յոթերորդ դարի կեսին։

Հետագայում Աստվածաշնչի մեկնաբանները նպատակահարմար են համարել հայերին կապել Թեգարմայի հետ։ Նույնը կատարվել է փռյուգիացիների նկատմամբ։ Այս մոտեցումները հենվա՞ծ են արդյոք Թեգարմայի ծագման մասին որևէ հուշի և երկու ժողովուրդների ազգակցության մասին տեղեկության վրա՝ նրանցից մերթ մեկին, մերթ մյուսին ներկայացնելու համար որպես նախահայր։ Պատասխանը ավելի շուտ պետք է ժխտական լինի։ Ժ գլխում հիշատակված բազմաթիվ ժողովուրդներ վաղուց աներևութացել կամ ժամանակին իրենց ունեցած նշանակությունը կորցրել են։ Մեկնաբանները, չիմանալով այս իրողությունը, ջանացել են ուրիշներով լրացնել, հաճախ ելնելով իրենց ժամանակվա իրերի դրությունից։ Հովսեփոս Փլաբիոսը չգիտեր, որ Մոսոքը (Մոսոխը) մուշկերի էպոնիմն է, այսինքն՝ փռյուգիացիներինը։ Նա նրան կապադովկիացիների նախահայր է դարձրել, առաջնորդվելով միայն մերձհնչյունությամբ, որը, իր կարծիքով, նա գտել է Մոսոքի և Կապադովկիայի մայրա-

[1] Երեմիա, ԾԱ, 27։

[2] 'Εριφαθ ընթերցվածքը բավական հաստատ է. տե՛ս The Old Testament in Greece, ed. H. B. Sweete, Genese, X, 2—3։

[3] **A. H. Sayce**, The «Higher Criticism» and the verdict of the Monuments, էջ 153։

քաղաք Մազաքայի միջև։ Փռյուգիացիների համար նա պահանջում է Թերգամային, իսկ Թերգամայի հայր Գամերին վերապահում գալաթների համար։ Նա ոչ մի տեղեկություն չի ունեցել, թե Ասքանազը ներխուժող սկյութներին էր ներկայացնում։ Նրա համար Ասքանազը դառնում է հռեգինների (?) նախահայր, իսկ նրա եղբայրը՝ Ռիֆաթը, պափլագոնիացիների նախահայր։ Ամենուրեք զուտ սեփական ենթադրության մասին է խոսքը, որը զուրկ է պատմական որևէ արժեքից[1]։

Նույն պատճառաբանությամբ, հռոմեական եկեղեցու նշանավոր հայր Հիպպոլիտը, որը վախճանվել է մոտ 235 թվականին, Ասքանազի ծագումը փնտրում է հեռավոր սարմատների մեջ։ Ճիշտ լուր է, եթե նա լսել է այդ շրջանի սկյութների մասին, բայց նա սխալվում է՝ վերագրելով այն Սարմատիայի սկյութներին, քանի որ Աստվածաշնչում խոսքը Արևելյան Հայաստանում կամ Ատրպատականում տեղավորված սկյութների մասին է[2]։

Հիպպոլիտը լավ է գուշակել, որ Գամերը ներկայացնում է կապադովկիացիներին, իսկ Թորգաման՝ հայերին։ Θωργαμὰ ἀφ'οὗ 'Αρμένιοι. Անշուշտ, պատմական տեղեկության հիման վրա չէ, որ նա հանգել է այդ եզրակացության, այլ իր հաջողակ ներշնչման։ Ասենք, Կապադովկիայի հայկական անունը բավական էր, եթե, իհարկե, դա ծանոթ էր հեղինակին, որպեսզի նա իր Գամիրքը կապեր Գամերի հետ, իսկ մերձակից երկիր Հայաստանը՝ Գամերի որդի Թոգարմայի հետ։ Այնուհանդերձ, Հիպպոլիտի հղացումը հաջողություն ունեցավ հայերի միջև։ Արդեն հայ առաջին պատմիչները՝ Ագաթանգեղոսը, Փավստոսը, ընդունում են, որ հայերը Թորգոմի ցեղին են պատկանում։

Միևնույն ժամանակ հայերն ասքանազյան ծագում են յուրացնում, իրենց Թոգարմայի անդրանիկ եղբայր Ասքանազի սերունդն են համարում։ Դա չի բխում, ինչպես կարելի էր կարծել, Արևելյան Հայաստանում սկյութների հեռավոր բնակության մասին որևէ հիշողությունից։ Այդ միտքը ծագել է միմիայն Երեմիայի այն հատվածից, ուր «Արարատի թագավորությունները» հիշատակված են «ասքանազյան գնդերի» հետ։ Պատ-

---

[1] Հովսեփոս Փլաբիոս (38—96 մ. թ.), Հրեական հնություններ, I, § 123—126։

[2] Hippolytus Werke, IV. Band. Chronik hergestellt von Adolf Bauer, herausgegeben von Dr. Rudolf Holm, nebst einem Beiträge von J. Markwart, 1929։ Նաև «Անանուն ժամանակագրություն հայոց», հրատարակված Բ. Սարգիսյանի կողմից, Վենետիկ, 1904, որը պարունակում է Հիպպոլիտի գործից մի քաղվածք՝ կատարված ոմն Անդրեասի կողմից։ Մովսես Կաղանկատվացին, Հովհաննես կաթողիկոսը և ուրիշ պատմիչներ օգտվել են Անդրեասի քաղվածքից։

*մինչ Կորյունն իր երկն սկսում է հայտարարելով, թե ինքը գրում է «ասքանազյան ազգի և հայոց աշխարհի» գրերի պատմությունը*[1]։

*Մի երրորդ ծագում՝ Արամի մի որդուց, որ վերագրում են հայերին, փաստերին անհարիր կարծիք է և չարժե ուշադրություն դարձնել դրա վրա*[2]։

*Միայն Թորգոմյան դրույթը կարող է մեր ուշադրությունը գրավել, որովհետև, առանց նրա հեղինակին հայտնի լինելու, որոշ պատմական հիմք է պարունակում այն իր մեջ, քանի որ մեզ մտածել է տալիս փռյուգիացի Գուրդիի թագավորության՝ Թեգարամայի կամ Թիլ-Գարիմմուի մասին։ Այստեղ մենք ապագա Փոքր Հայքի տերիտորիայումն ենք։ Թեպետև Գուրդիի հիմնադրության պատմությունը դեռ կորած է մթության մեջ, բայց և այնպես, դա չի խանգարում ենթադրելու, որ Գուրդիի իշխանության տակ գտնվող փռյուգիացիները, եթե նրանք չեն նույնանում հայերի հետ, համենայն դեպս, իրենց մեջ ունեին հայկական տարրեր, որոնք Թեգարաման փոխեցին Փոքր Հայքի և այնտեղից, որպես հաստատուն բազայից, անցան Եփրատը, որպեսզի Ուրարտուն փոխեն Մեծ Հայքի։*

*Սա ինչ-որ անհիմն ենթադրություն չէ։ Բարեբախտաբար, ուրարտական գրականությունն իր հուշարձաններից մեկում ցույց է տվել մուշկ-փռյուգիացիների ներթափանցումը Ուրարտու։ Ուրարտուի թագավոր Ռուսա* II*-ը, որն իշխում էր մոտավորապես 680—648 թվականներին, ուրեմն՝ Գուրդիից քիչ հետո, Արքի (Ադելջևազ) № 153 արձանագրության մեջ*

---

[1] Երեմիա, *ԾԱ, 27՝ «պատուէր տուք յինէն Այրարատեան թագաւորութեանցն և Ասքանազեան գնդին»՝* παραγγείλατε ἐπ'αυτήν βασιλεῖς ἄρατε παρ'ἐμοῦ καὶ τοῖς 'Ασχαναζέοις: 'Αρατε-*ն սխալ մեկնաբանությունն է Ալեքսանդրյան ձեռագրի* 'Αραρέθ-*ի և Մարշալյան ձեռագրի* 'Αραρὲτ-*ի։* Παρ'ἐμου-*ն նույնպես հին սխալ է, ինչպես պարզել է քննությունը։ Յոթանասնից թարգմանությունը եբրայական տեքստի* MNI-*ն ընդունել է որպես դերանվան ձև՝* mi *նախդիրով, մինչդեռ խոսքը Միննի երկրի՝ ուրարտացիների Մանայի մասին է (հմմտ.* **Dr. Vahan Inglizian**, Armenien in der Bibel, *էջ 4 և 77)։*

[2] **Հովսեփոս Փլաբիոս,** *Հնություններ,* I, § *93=***Թոյրներ,** I, *էջ 20, հայերին Արամի որդի Ուլոսի սերունդն է համարում։ Ըստ Հիպպոլիտի՝ Ուլոսը լիդիացիների նախահայրն էր, իսկ նրա եղբայրը՝ Ուերը,* 'Ερμαίοι-*ների նախահայրը։ Հնարավոր է, որ* 'Ερμαίοι-*ներին շփոթել են* 'Αρμένοι-*ների հետ։ Ուրեմն, այս հարցին կարելի է մասնակից դարձնել Նիկողայոս Դամասկոսցուն, եթե նա է Հովսեփոսի հիմքը։ Նիկողայոսը, մի ընդհանուր պատմության հեղինակ, Անտոնիոսի և Կլեոպատրայի որդիների դաստիարակն էր մոտավորապես 30 թ. մ. թ. ա.։ Նա լավ գիտեր, որ հայերն իշխել էին Սիրիայի և Միջագետքի վրա։ Դա կարող է նրան դրդած լիներ հայերին դասելու սիրիական-արամեական ժողովուրդների շարքը։ Հռոմեական կայսրության սահմանը, ինչպես երևում է, մեկնաբանողների կողմից նկատվում էր որպես սահմանագիծ հաբեթական ու սեմական ցեղերի միջև։ Հիպպոլիտի օրոք Հայաստանը Կարակալլայի ժամանակից ի վեր Հռոմի գերիշխանության տակ էր գտնվում։ Դրա համար էլ սեմական ժողովուրդներին նա տեղավորում է Մեդիայից արևելք, մինչդեռ Հովսեփոսի համար Հաբեթի և Սեմի որդիները բաժանված էին Տավրոս-Ամանոս-Եփրատ գծով։ Դեռ շատ հեռու էին ռասայի ըմբռնումից կամ չգիտեին ժողովուրդներին խմբավորել ըստ ռասայի հատկանիշների։*

*հայտնում է, որ կռվել է հետևյալ ժողովուրդների դեմ.* Luluin-ani, Muški-ni, Ḫate, Ḫaliṭu։ *Տեքստը շատ աղճատված է և հնարավոր չէ հանդիպման վայրն իմանալ։ Համենայն դեպս, այն գտնվում էր Մալաթիայից Արք տանող ճանապարհի վրա՝ Վանա լճի ափերին։ Նշանակում է, ներխուժումը կատարվել էր Թեգարամայից։*

*Լուլուինի ժողովուրդն ուրիշ տեղ հայտնի չէ։ Գուցե կապ ունի Կիլիկիայի Դռան՝ բյուզանդական դղյակ Լուլոնի հետ։ Խաթեն ներկայացնում է խեթերին, Մուշկին՝ փռյուգիացիներին, անշուշտ, Թեգարամայի փռյուգիացիներին, իսկ Խալիտուն՝ ալիզոններին (?)։*

*Ալիզոնները կամ ալազոնները, սկյութական մի ցեղ, երբեմն բնակվում էին Հիպանիսի (Բուգ) հովտում, որտեղից իջել էին Թրակիա, հետագայում անցել Փոքր Ասիա։ Նրանք ամենուր հետքեր են թողել՝ Թրակիայում, Հեբրոսի ավազանում, Մակեդոնական Խալկիդիկայում, Փոքր Փռյուգիայում և, վերջապես, Փոքր Հայքի մոտ, Ալիբե երկրում*[1]։

*Միևնույն ճակատագրին արժանացան կիմմերական ցեղին պատկանող տրերները։ Նրանք նույնպես Հիպանիսի շրջանից հեռացել էին Թրակիա, ուր տեղավորվել էին օդրիսների մոտ՝ միջին Հեբրոսի վրա։ Անցնելով Փոքր Ասիա՝ նրանք գրավում են Սարդես քաղաքը. գուցե, Տրալլես (Այդին) և Տրալլա քաղաքները պահում են նրանց հիշատակը։ Եթե Թռեղք գավառի անունը որևէ կապ ունի նրանց անվան հետ, ապա նրանք նույնիսկ հասել են Հայաստան*[2]։

*Ալիզոնները և տրերները, թվում է թե, ապրել են փռյուգիացիների՝*

---

[1] *Հոմերոս,* II, *857, ճանաչում է* 'Αλιζῶνες ἐξ 'Αλύβη ὅθεν ἀργύρον ἔστι γενέθλη. *Սրանք Հերոդոտի* Ἀλαζῶνες-*ներն են* (IV, *17 և 52), սկյութական մի ցեղ, Տիրասի և Հիպանիսի միջև։ Ստրաբոնը* (XII, *3, 20—27), բազմաթիվ հեղինակներից օգտվելով, ինչպես՝ Հեկատեոսից, Դեմետրիոս Սկեպսիացուց, Պալայֆաթոսից, հաղորդում է, որ ալազոնները բնակվում էին Փոքր Փռյուգիայում, Կիզիկոսի մոտ, Ալոն քաղաքում։ Սկեպսիս քաղաքի մոտ կա մի գյուղ, որը կոչվում է Ալազոնիա։ Ալազոններ կային Քաղկիդիկեի Պալլենում։ Մի գյուղ՝ Ալազիա, Միգդոնիայում (Մուդանիա)՝ Փռյուգիայում։* Th. Reinach-*ը,* «Revue celtique», XV, *1894, էջ 209, տարօրինակ կերպով Հոմերոսի Ալիբը տեղադրում է Իսպանիայում։ Ուրիշներ մտաբերել են Բուլգար-մադանը Կիլիկիայում, ուր կան արծաթի հանքեր։ Ավելի հավանական է, որ Ալիբը և Խալիբը նույնն են (հմմտ. Խալդի և Ալդի՝ Ուրարտուի աստծու անունը)։ Գումուշխանեն (արծաթի հանք) կարող է լրիվ համապատասխանել բանաստեղծի* ἀργύρον γενέθλη-*ին։ Ժողովրդի անունը ոչ մի կապ չունի ո՛չ* ἀλάζων-*ի (պարծենկոտ), ոչ էլ* ἀλίζωνος-*ի (ծովով եզերված) հետ։ Տոմաշեկը* (Pauly-Wissowa) Alizones *անվան երկրորդ տարրի մեջ տեսնում է իրանական* zana-*ն։*

[1] **Ստրաբոն,** XIII, *1, 8,* XIV, *1, 40, տրերների մասին, նյութեր օդրիսների մասին և նրանց ներխուժման՝ Փոքր Ասիա։* Պտղոմ., IV, *36, 5, Սարիմոնի տրերները Թրակիայում։ Թռեղք, գավառ Գուգարենի՝ Աշխարհացույց, էջ 38, այժմյան Տրիալեթը՝ վրացերեն, Տոմաշեկը Թռեղքը նույնացնում է* Τρῆρες-*ի հետ՝* Die alten Thraker, «Sitzb. der Kais. Akad. d. Wiss.» *և* Pauly-Wissowa, *տրերների մասին։*

*Թրակիայից Փոքր Ասիա ներխուժման հետ կապված իրադարձությունների ժամանակ։ Թրակիայի մի ուրիշ ժողովուրդ՝ օդոմանտները, որոնք զբաղեցրել էին Օրբելոս լեռան ստորոտում Ստրիմոնի գետաբերանը, նույնպես երևան են գալիս Փոքր Ասիայում Սինոպի մոտ և Հայաստանում, ուր Ակիլիսենեի շրջանը կրում է Օդոմանտիս նշանակալից անունը, և Փոքր Հայքի երկու գավառներ կոչվում են Օրբիսենե և Օրբալիսենե*[1]*։*

*Վերջապես, Փոքր Ասիայում և Հայաստանում կան համանուն բնակավայրեր, ինչպես Սատալա, Էրիզա Փռյուգիայի սահմանների վրա, Կաբալա՝ Լիդիայում, Կիլիկիայում և Հայաստանում, Հարպասոս՝ գետ Կարիայում և Հայաստանում*[2]*։*

*Տեղանվանական նմանությունները, հավանաբար, խոսում են էթնիկական տեղափոխման մասին՝ արևմուտքից արևելք, և դրանով նպաստում Հերոդոտի վկայության՝ հայ-փռյուգիական ցեղային հարաբերության վերաբերյալ։*

*Թեսալական տեսությունը Ալեքսանդր Մակեդոնացու ժամանակից է գալիս։ Նրա հեղինակները Ալեքսանդրի բանակի երկու սպաներ են՝ Կիրսիլոս Ֆարսալացին և Մեդիոս Լարիսացին։*

*Այս հեղինակների գործը մեզ չի հասել։ Մենք նրան ծանոթ ենք միայն հետագա գրողների մեջբերումներից։ Հայերի թեսալական ծագման մասին եղած կարծիքը փոխանցվել է երկու իրար ժամանակակից հեղինակների՝ նշանավոր աշխարհագետ Ստրաբոնին և պատմիչ Հուստինուս-Տրոգոս Պոմպեոսին։ Նույնիսկ հնարավոր չէ իմանալ, թե նրանք սպաների գրքի բնագրից են օգտվել, թե նրան երկրորդ ձեռքից են ծանոթ։ Նախ տեսությունը ամփոփենք, ըստ Ստրաբոնի։*

*Արմենիա անունը, ըստ այս հեղինակի, գալիս է Արմենիոն քաղաքի բնիկ Արմենոսի անունից։ Արմենիոն քաղաքը Թեսալիայում է գտնվում, Բոյբեյիս լճի մոտ, Ֆերեսի և Լարիսայի միջև։ Արմենոսը մասնակցել է Յասոնի արշավախմբին, որը դեպի Կողքիս կատարած իր ճանապարհորդու-*

[1] Հերոդոտ, V, *16*, VII, *112*, 'Οδομάντοι։ Թուկիդիդես, II, *101*՝ *Սինոպում։* Ստրաբոն, XII, *3*՝ *կարծիք* ''Οδομος-*ը Արեսի կամ Պայոնի որդին է։* Հերոդոտ, V, *16*՝ ''Ορβηλος։ Դիոդոր, XX, *19*։ Ստրաբոն *և* Պտղոմ., III, *9*՝ 'Ορβηλία։ Պտղոմ., V, *6*՝ 'Ορβισήνη, 'Ορβαλισήνη *Փոքր Հայքում։*

[2] **Ramsay**, Asia Minor, *էջ 45 և շար., Էրիզա Ինդոսի (Դալաման) ափունքի վրա, Նրա եպիսկոպոսը Քաղքեդոնի ժողովում՝ 451 թ.։* Հիերոկլես՝ ''Ερεζος։ Ագաթանգեղոս, *էջ 30*, *Երէզն-աւան, էջ 409՝ Գիւղ Երիզայ, Ակիլիսենեի կենտրոն, այժմյան Էրզինջյան (Երզնկա)։ Սատալա, Սարդեսից (այժմյան Սանդալ) արևելք։* Պտղոմ., V, 2, *17*։ **Ramsay**, Asia Minor, *էջ 30*։ *Սատաղ՝ Ակիլիսենեի սահմանի վրա։* Փավստոս, III, *7 և 21*։ **Cumont**, Studia Pontica, III, № *34*։ Καβάλιοι՝ *Լիդիայի ժողովուրդ։* Հերոդ., III, *90*։ **Cedrenus**, II, *էջ 266, հրատ.* Bonn: **Ramsey**, *նշ. աշխ., էջ 359*։ Κάβαλις *Պիսիդիայում։* **Ramsay**, *նշ. աշխ., էջ 252*։ Κάβαλλα *Հայաստանի Հիսպիրիտիսում։* Ստրաբ., XI, *14, 9* = *Հայ հեղինակների Սպերը, այժմյան Իսպիրը։*

թյան ժամանակ հասել է մինչև Կասպից ծով, անցնելով Իբերիան, Ալբանիան, Մեծ Հայքի և Մեդիայի մեծագույն մասը, ինչպես այդ վկայում են Յասոնին նվիրված սրբավայրերը (Jasonia) և այլ բազմաթիվ հուշարձաններ։ Արմենոսի ուղեկիցները մասամբ գրավել են Ակիլիսենեն, որը նախապես գրավված էր ծոփացիներից, մասամբ էլ՝ Սու(ս)պիրիտիսը մինչև Կալաքեն և Ադիաբեն, Հայաստանի սահմաններից դուրս։

Հայկական Արաքսն այդպես է կոչվել ի նմանություն Թեսալիայի Պենեոս գետի, որը հնում կոչվում էր Արաքս, որովհետև նա անցք էր բացել Օսսա և Օլիմպոս լեռների միջև թեմպեական դաշտի միջով՝ ծով թափվելու համար։ Հայաստանում Արաքսը, լեռներից գահավիժելով, հին ժամանակ ողողում էր դաշտը և, ելք չգտնելով, ընդարձակ ծով էր կազմել։ Յասոնը, Թեմպեի օրինակով, իբր թե ճեղքվածք է բաց արել և ջուրը հոսեցրել դեպի Կասպից ծովը։ Այդ կերպով արաքսյան դաշտը ազատվել է ջրից, և Արաքսն իր ընթացքը շարունակել է դեպի ծով[1]։

Աինիանները, որոնք ապրում էին Թեսալիայի հարավում և այնտեղից եկ մղվեցին դեպի Օիտա լեռը՝ Աինիանայի շրջանում, գաղթել են Ուիտիա և այնտեղ հիմնել Աինիանա քաղաքը։ Այդ ժողովրդի մի մասը տեղավորվել էր Հայաստանի վերևում, Տավրոսի ճյուղ Աբոսից և Հիբարոսից այն կողմը։ Աբոսն իշխում է այն ճանապարհի վրա, որը տանում է դեպի Էկբատան՝ Բարիսի տաճարը[2]։

Տրոգոս Պոմպեոսը Ստրաբոնի ժամանակակիցն է, և նրա պատմական գործը մեզ հասել է Հուստինոսի համառոտագրությամբ, որը երկրորդ դարի հեղինակ է։ Հուստինոսը Կիրսիլոսին և Մեդիոսին չի հիշատակում, բայց այն, ինչ պատմում է հայերի ծագման մասին, գալիս է այդ պատմիչներից։

Նրա համար նույնպես թեսալիացի Յասոնի ուղեկից Արմենիոսը Հայաստանի թագավորության հիմնադիրն է։ Թեսալիայի թագավոր Պելեասը, ցանկանալով ազատվել Յասոնի նման վտանգավոր մրցակցից, նրան ուղարկում է Կողքիս, հրամայելով փնտրել հռչակավոր Ոսկեգեղմը։ Նա հույս ուներ, որ Յասոնը կկործանվի այդ վտանգավոր ճանապարհորդության ընթացքում։ Յասոնը՝ քաջարի ընտրյալ երիտասարդների գլուխն անցած, հաջողությամբ կատարում է հանձնարարված առաջադրանքը։ Երբ վերադառնում է, Պելեասի որդին նրան արգելում է երկիր մտնել։ Յասոնը բռնում է վերադարձի ճանապարհը և գնում Կողքիս՝ իր Մեդեա կնոջ ուղեկցությամբ, որը Կողքիսի թագավորի աղջիկն էր։ Մեդեայի՝ Աթենքի թագավորի հետ առաջին ամուսնությունից ունեցած որդին՝ Մեդոսը, նույնպես իր հետ էր։ Յասոնը հաշտվում է իր աներոջ հետ։ Ապա պատերազմ է վարում ու նվաճում բոլոր հարևան ժողովուրդներին։

[1] Ստրաբոն, XI, 14, 13։

[2] Նույնը, II, 3, 21. IX, 5, 22. XI, 14, 14։

*Հերակլեսից և Լիբերից (Բաքոս) հետո, որ երբեմն իշխում էին, ինչպես ասում են, Արևելքում, Յասոնն առաջինը եղավ, որ հպատակեցրեց Արևելքը։ Նրա պատվին տաճարներ կառուցեցին՝ ինչպես մի աստծու։ Սակայն Ալեքսանդրի զորավար Պարմենիոնը քանդել տվեց այդ տաճարները, որպեսզի ոչ ոք չկարողանա ուրանալ Ալեքսանդրի փառքն Արևելքում։ Յասոնի մահից հետո Մեդոսը ի պատիվ իր մոր կառուցեց Մեդե քաղաքը և ստեղծեց մեդացիների թագավորությունը՝ Արևելքի հզոր պետությունը։*

*Արմենիոսը, որը նույնպես Թեսալիայից էր և Յասոնի զորավարներից մեկը, հավաքեց այն զորքերը, որոնք Յասոնի մահից հետո թափառում էին ամենուրեք, և հիմնեց Հայաստանի թագավորությունը*[1]*։*

*Կիրսիլոսն ու Մեդիոսը, ինչպես երևում է, շոշափել են նույնպես մեդացիների ծագումը և նրանց բխեցրել են Մեդեայի որդի Մեդոսից։ Ստրաբոնը նույնպես չի անգիտանում այս կետը*[2]*։*

*Մի ոմն հեղինակ Անթիպատրոս, որն այլապես անծանոթ է, համաձայն է թեսալիացի պատմիչների հետ, թե հայերը սերում են Արմենիոսից, բայց նրան Հռոդոսի բնիկ է համարում և ոչ Թեսալիայի*[3]*։*

*Ի՞նչ արժեք ունեն այս տեղեկությունները պատմական առումով։ Ստրաբոնի նման քննադատական մի միտք գնահատել է թեսալական տեսությունը, ի նպաստ դրան իր կողմից ավելացնելով մի քանի գծեր, որոնք ընդհանուր են թեսալիացիների և հայերի համար։ Օրինակ, երկու ժողովուրդների գործածած հագուստները՝ լայնածիր պատմուճանը, որ ողբերգությունների մեջ կոչում են թեսալական և կապում են կրծքներին, ու այն վերարկուն, որ դերասանները հագնում են թեսալական ձևով. ձիավարության կիրքը, որ նույնպես ընդհանուր է թեսալիացիների և հայերի համար, ինչպես նաև մեդացիների։*

*Հակառակ նշանավոր աշխարհագետի հեղինակության, Կիրսիլոսի և Մեդիոսի տեսությունը քննադատության դիմանալ չի կարող։ Նա հիմ-*

---

[1] **Հուստինոս**, XLII, *2, 3*։

[2] **Ստրաբոն**, XI, *14*՝ τούς Μήδους καί 'Αρμένους συγγενεῖς πώς τοῖς θετταλοῖς είναι καὶ τοῖς ἀπό 'Ιάσονος καὶ Μεδείας:

[3] *Անթիպատրոսը հիշատակված է Ստեփանոս Բյուզանդացու կողմից* 'Αρμενιά *բառի տակ*։ Frag. Hist. Gr. IV, *306։ Նա նշում է նաև Եվդոքսին, բայց չի հիշատակում Հերոդոտին, ոչ էլ թեսալիացի պատմիչներին։*

*Եվստաթիոսը, Թեսալոնիկեի եպիսկոպոսը (մահ. 1193 թ.), երկրորդ դարի հեղինակ Դիոնիսիոս Պերիեգետեսի «Աշխարհի նկարագրության» մեկնաբանության մեջ մեջբերում է կատարում հայերի ծագման մասին եղած կարծիքներից՝ 1.* ἀπό τίνος 'Αρμενίου Ροδίου ἀνδρός, *առանց նրա հեղինակ Անթիպատրոսի անունը տալու. 2.* κατά δὲ ἄλλους 'Αρμενία ἡ χώρα λέγεται ἐπονύμιος 'Αρμενίου ἥρωος ἐξ 'Αρμενίου πόλεως Θετταλικῆς, συστρατεύσαντος ἐκεῖ τῷ Ἰάσονι; 3. ἵστορον ὅτι 'Ηρόδοτος τους 'Αρμενίους Φρυγῶν ἀποίκους φησί; *նա ավելացնում է Եվդոքսի վկայությունը, հավանաբար ըստ Ստեփանոս Բյուզանդացու, որտեղից նա փոխ է առել Անթիպատրոսի կարծիքը։*

նըված է մի քանի թեսալական անունների մերձեցման վրա՝ Արմենիոն, Յասոնիա, Արաքս, Աինիանե, Օիտա, որոնք ենթադրաբար գործածվում են նաև Հայաստանում։ Այդ դրույթի համար հրապուրիչ կետ է հանդիսանում, անշուշտ, 'Αρμενία-ի համեմատությունը 'Αρμένιον-ի հետ, որը կարող էր վարկ ունենալ, եթե քմահաճ զուգահեռի մեջ դրված չլիներ Μηδία-ի և Μήδεια-ի համեմատության հետ։ Դրան մենք կանդրադառնանք։ 'Ιασόνιον—Յասոնի սրբավայր, պակաս ազդեցություն չի գործել թեսալիացի հեղինակների վրա։ Նրանք, անշուշտ, տեղական մի բառ են գտել, որ նշանակում էր «սրբավայր», և ընդունել այն որպես Յասոնիոն։ Որոշ խարխափումից հետո կարելի է եղել տվյալ բառի իմաստը ճշտել։ Դա jazana բառն է, որի պարսկական ձևն է՝ à-yadana, yaz «զոհել» բառից։ Jazana — զոհաբերության վայր, «տաճար»՝ համապատասխանում է սանսկրիտ yajana-ին[1]։ Թեսալիացի սպաները yazana-ում տեսել են հունարեն (τὰ) 'Ιασόνια «Յասոնի տաճար»-ը և Յասոնին դարձրել երկրի հերոս։

Արաքս անվան վրա հիմնված փաստը կորցնում է իր արժեքը, քանի որ այդ բառը գործածվում է շատ երկրներում։ Սկյութները, կիմմերները գործածել են Արաքսը այժմյան Վոլգայի համար։ Դա Պոնտոսում Թերմոդոնի հին անունն է։ Միջագետքի Խաբուր գետը այլ ձևով Արաքս է կոչվել։ Պարսկաստանի մայրաքաղաք Պերսեպոլիսը նույնպես ուներ իր Արաքսը։ Նույնիսկ Իլլիրիայի մի ժողովուրդ Araxi անունն էր կրում[2]։

Գալով այն ավանդության, թե իբր Արաքսի հովիտը հեռավոր ժամանակներում լիճ կամ ճահիճ էր կազմում, և թե այն չորացել է ջրերի դեպի Կասպից ծովը ճանապարհ բանալու հետևանքով, դա երկրաբանական տե-

---

[1] K. Kiepert-ը, Lehrbuch der alten Geographie, § 70, առաջինն է հասկացել Յասոնիայի ծագումը, բայց սխալմամբ վերագրել է Yasna-ին։ Reinach-ը, Noé Sangariou, 1913, էջ 61—62, կարծում է, թե «յասոնիաները պետք է որ հայկական մեծ yazatas-ներից մեկի տաճարները եղած լինեն, գուցե՝ Վահագնի»։ Մարկվարտն էր, Südarmenien und Tigrisquellen, 1930, էջ 535, որ առաջարկեց yazana։ Դարեհը, Բահիստանի (Բիսուտուն) արձանագրության մեջ, տող 14, խոսում է ayadana «տաճարներ»-ի մասին։ Սպասված ավեստական ձևը պետք է որ yazana լինի, որ երաշխավորված է սանսկրիտ yajana-ով։ Այնուհանդերձ, մի էական կետ լուսաբանվելու կարիք ունի. ո՞րտեղից է հայերին հասել yazana-ն։ Արդյո՞ք մեդական փոխառություն է, ուրեմն՝ աքեմենյան տիրապետությունից առաջ։

[2] Սկյութների Արաքսը, Հերոդոտ, IV, 16, կամ Մասագետների մոտ, Ստրաբոն, XI, 11, 6։ Հերոդոտը, ակներևաբար, Մանայի սկյութներին շփոթել է տափաստանի սկյութների հետ, ասելով, թե Արաքսի (Վոլգայի) ակունքը գտնվում է Մատիենե երկրում (Ուրմիա լճի մոտ)։ Թերմոդոնի հին անվան մասին տե՛ս Տիգրանի պատմաբան Մետրոդոր Սկեպսիացու մոտ։ **Müller**, Fragm. Hist. Graec., III, էջ 204։ Արաքս՝ Պարսկաստանում, Ստրաբ., XV, 3, 6։ Արաքս՝ Լիկիայում, Polyhistor։ **Müller**, նույն տեղում, III, էջ 235։ Պելոպոնեսում՝ Ստրաբ., VIII, 2, 3։ Պլին., VI, 13։ ''Αραξοι կամ ''Αραξαι Իլլիրիայում, Polyhistor, քաղված Ստեփանոս Բյուզանդացու կողմից։

սակետից ինչ-որ հիմք ունի, բայց Յասոնն այստեղ վճռականապես դեր չունի[1]։

Թեսալիայի Աինիանեի և Օիտայի բաղդատումը Հայաստանի Աինիանայի և Ուիտիայի հետ՝ զուտ ենթադրական է։ Ուիտիան՝ դա Ուտենեն է, Ուտին՝ հայկական հայտնի նահանգներից մեկը։ Աինիանան, հավանական է, Հանին է՝ Փայտակարանի գավառներից մեկը։ Փայտակարանը հայկական նահանգ է Արաքսի ստորին հոսանքի վրա[2]։ Ուտին հայկական ժամանակաշրջանում չէր տարածվում մինչև Արաքսը, բայց հայտնի չեն նրա սահմանները Թեսալիացի սպաների ժամանակ։ Համենայն դեպս, Հերոդոտի Οὔτιοι ժողովրդի մասին չէ խոսքը՝ Դարեհի արձանագրություններ Yantiya-ի, որը վրանաբնակ մի ցեղ էր։ Թեսալիայի աինիանները պետք է որ տեղավորված լինեին Աբոսի և Նիբարոսի վերևում։ Անշուշտ, մարդ հակվում է մտածելու Կամսարականների ամրոց Անիի մասին, որը հետագայում դարձավ Բագրատունիների մայրաքաղաքը[3]։

Ստրաբոնի դիտողությունները, որպես բանահյուսական նյութ, հետաքրքրական են, բայց նրանց նշանակությունը շատ է նվազում, երբ վկայակոչվում են երկար հագուստները, որոնք ցուրտ երկրներում ընդհանուր գործածության առարկա են։

Հարցի առանցքը, իհարկե, ենթադրյալ հարաբերությունն է Արմենիոն անվան և Հայաստանի (Արմենիա) միջև։ Հոմերոսը Թեսալիայի քաղաքը կոչում էր Օրմենիոն։ Արդյոք դա նույն Արմենիո՞նն է, թե նրանից տարբեր

---

[1] Արտաքսերքսեսի ժամանակակից Քսանթոսը արդեն այն կարծիքն է հայտնել, որ Հայաստանի դաշտերը ծածկված են եղել ծովով։ Ստրաբոն, I, 3, 4։ Լինչը նույնպես նույն կարծիքին էր՝ Armenia, II, էջ 404։ Թեսալիացի պատմիչներն ուզեցել են ասել, թե Արաքսը իր անունն ստացել է հունարեն ἀράσσω կամ ῥάσσω («հարվածել, բախել ժայռերին») բայից, ինչպես Καταρρήκτης, Փռյուգիայի գետը։ Հերոդ., VII, 26։ Τάσσω-ից ստացվում է τάξις, ἀράσσω-ից էլ կարելի է սպասել ἀράξης, ἄραξος, aragh-ից S-ի հավելմամբ։ Իրաներեն aragh-s կամ ragh-s կտար araxša, raxša, ինչպես baxšà bag-s-ից, taxša՝ tag-s-ից։ Հայերեն Երասխ-ը առեղծվածային է, գուցե, հունական և իրանական ձևերի միացումն է։Հայերենի սպասված ձևը Արած կամ Երած կլիներ։ Ժողովրդական Արազ-ը հայտնի է արդեն Թեոփիլակտես Սիմոկատային (III, 6, 16)։ Արդյոք այն Արածի՞ց է, թե պարսկական արդի Արազ ձևից։ Մենք կարծում ենք, որ այն վայրի անունը, որ Ագաթանգեղոսի մոտ (էջ 315) անվանված է Երազ-ամոյն, պարունակում է Արազ—Արաքս-ը և կազմված է ծովամոյն-ի նման (հմմտ. արդի Արազդայանը)։ Պատմիչը տեսել է այստեղ երազ (eraz) բառը և Տիրին դարձրել է երազահան աստված։ Մարկվարտը (Südarmenien, էջ 15—16) ածանցել է Rxša-ն ark «փայլել» և rigo «ոռոգել» ձևերից։

[2] Աինիանի նույնացումը Հանիի, Անիի հետ Անդրեասին է պատկանում, Pauly-Wissowa։

[3] Աբոս լեռը Սրմանցի մասսիվն է, Թրքական Բին-գյոլը և մինչև Արարատ երկարող լեռնաշղթան։ Աբոսն իր անունը ստացել է, գուցե, ջրերի աստված Ապամից (Նապատ), ինչպես Նպատը՝ Νιφάτης (Ապամ)=Նպատ։

է։ Հարցը վիճելի է։ Անունները, այնուհանդերձ, նույնն են։ Դա մեզ համար բավական է։ Հոմերոսը երկու անձնավորություններ է ճանաչում, որոնք Օրմենոս անունն են կրում[1]։ Բացի այդ, Արմենոսը թեսալական անուն է՝ վկայված մի արձանագրության մեջ[2]։ Հետաքրքիր է նկատել, որ Եփեսոս քաղաքն, ըստ Հեսիքիոսի, կոչվում էր ’Αρμένη։ Սինոպի ծովածոցը նույնպես ծանոթ է ’Αρμένη կամ ’Αρμήνη անվան ներքո։ Պափլագոնիայի մի գյուղ կոչվում էր ’Αρμένη, և այն լեռնաշղթան, որը բարձրանում է Թուրքիայի մայրաքաղաք Անկարայի հյուսիսում, նույնպես կոչվել է ’Ορμίνιον ὄρος[3]։

Ընդունենք, որ օ-ով ձևը նախնական է և հետագայում օ-ն փոխվել է ա-ի։ Համեմատվող անունների ստուգաբանությունը հայտնի չէ, և ոչինչ չի կարելի ասել նրանց հարաբերության մասին լեզվաբանական տեսակետից։ Սակայն պատմաբանները լուրջ առարկություն են հակադրել։ Նրանք ասում են, թե հայերի անունը առաջին անգամ երևան է գալիս Դարեհի արձանագրության մեջ Armina «Հայաստան» և Arminiya «Հայ և Հայաստան» ձևով, և թե այդ անունը պարսիկներից է անցել հույներին[4]։ Այդ դեպքում այլևս չի կարող հարց ծագել այդ անվան թեսալական և ընդհանրապես արևմտյան ծագման մասին։ Այդ տեսակետը միահամուռ ընդունվում է, բայց մեր կարծիքով՝ իզուր։

Հեկատեոսը իր գործը գրել է Դարեհի արձանագրությունից առաջ, և նա հիշատակում է ’Αρμένιοι[5]։ Հույները հայերին ճանաչելու համար պարսկական միջնորդության կարիքը չունեին։ Նրանք Սև ծովի ափին,

---

[1] Հոմերոս, Il., II, 734՝ ’Ορμένιον, IX, 274. ’’Ορμενος՝ սպանված Թևկրոսի կողմից. XII, 187՝ մեկ ուրիշ Օրմենոս. X, 266 և Od., XV, 413՝ ’Ορμενίδης։ Դեմետրիոս Սկեպսիացուց ի վեր, ինչպես գրում է Ստրաբոնը, IX, 5, 18, Օրմենիոնը և Արմենիոնը նույնացվել են։ Նույնիսկ մի էպոնիմ է հնարվել՝ Թեսալիայի թագավոր Օրմենիոսը, որի աղջկա հետ ամուսնացել էր Հերակլը, Դիոդոր, IV, 37, 4։

[2] Revue Epigraphique, I, 1913, էջ 73 և 205։

[3] Պտղոմ., V, 1, 3։ Այդ լեռն այժմ կոչվում է, ըստ Կ. Մյուլլերի, Օրենդագ, թուրքական քարտեզում՝ Իշիկ-դաղ։ Արմենե գյուղ՝ Ստեփանոս Բյուզանդացու մոտ։

[4] Բահիստանի (Բիսուտուն) արձանագրության մեջ՝ Armina «Հայաստան», Arminiya «Հայ»։ Arminiyaiy օգտագործված է այնպիսի դեպքում, երբ խոսքը մի ամրոցի մասին է՝ dida Arminiyaiy «ամրոց Հայաստանում» կամ ավելի ճիշտ՝ «հայկական երկրում»։ Bartholomae-ն, Altiranisches Wörterbuch, էջ 197, նման դեպքերում կարդում է Armaniyaiy հակառակ Weisbach-ի, Die Keilinschriften der Achämeniden, որը կարդում է Arminiyaiy։ Նոր-էլամերեն տեքստը ամենուրեք ունի Har-mi-nu (Harminu-ya, Harminu-ya-ir, Harminu-ya-ip), մի բան, որ չի հաստատում Armaniyaiy ընթերցումը. Arminiyaiy ավելի ճիշտ է։

[5] **Müller**, Fragm. Hist. Graec., I, էջ 13։ χαλύβοις πρὸς νότον ’Αρμένιοι ὁμουρέουσι.

հայերին մոտիկ, ծաղկուն, բարգավաճ գաղութներ ունեին։ Բավական է միայն նշել Տրապիզոնը, որ հույներն էին հիմնել և որը ծառայում էր որպես ապրանքափոխանակության գլխավոր կենտրոն ներքին երկրների հետ, ներառյալ Փոքր և Մեծ Հայքը։ Ըստ Եվսեբիոսի մոտ պահպանված ավանդության, Տրապիզոնի հիմնադրումը տեղի է ունեցել VIII դարում (մ. թ. ա.), ուրեմն՝ ուրարտական դարաշրջանում։ Այդ հունական ծովային գաղութները կապված էին իրենց մայր-երկրի հետ։ Բնականաբար, այդ գաղութների միջոցով է, որ հայերի անունը հասել է հույներին, գուցե, ավելի առաջ, քան մեդացիների և պարսիկների հետ ծանոթանալը։

Ի վերջո ’Αρμένιος հունական ձևը ավելի հին է, քան պարսիկների Armina-ն, որտեղ -en-ը փոխվել է -in-ի։ Այսպիսով կվերանա մի անճիշտ առարկություն։ Անշուշտ դա ոչնչով չի նպաստում Կիրսիլոսի և Մեդիոսի դրույթին։ Եթե նրանք ոչ միայն ապացուցող հեղինակներ են, այլ և դրույթը առաջադրող, ապա նրանց գործը տանուլ է տված, որովհետև ապացույցը բավարար լուրջ չէ։ Սակայն հնարավոր է, որ դրույթը նրանց հնարածը չէ, այլ մի ավանդություն է, որը նրանք աշխատել են հիմնավորել։ Այդ դեպքում փաստարկի թուլությունը իրավունք չի տալիս մերժել ավանդությունը։ Գուցե, Հերոդոտի առաջ քաշած ավանդությունն է նրանց ոգևորել։ Անհավանական չէ, որ նրանք տեղյակ լինեին իրենց հետաքրքրող հարցի վերաբերյալ պատմահոր ասածներին։ Նրանց տեսությունը չի հակասում Հերոդոտի տեսությանը։ Նրանց հետաքրքրել է հայերի անվան նմանությունը Օրմինիոն-ին կամ Արմենիոն-ին և այն միտքն է ներշնչել, որ հայերի բաժանումը իրենց համատոհմակիցներից տեղի էր ունեցել ոչ թե Փոքր Ասիայում, այլ Թրակիայում, որից հետո հայերը նախ հաստատվել են Թեսալիայում, իսկ հետագայում անցել Փոքր Ասիա և Հայաստան։

Դժբախտաբար, Կիրսիլոսն ու Մեդիոսը մեզ ծանոթ են միայն ըստ Ստրաբոնի մեջբերումների։ Նույնիսկ վստահ չենք, թե նա իր տեղեկությունները չի՞ քաղել միջնորդ աղբյուրից՝ Տիգրանի պատմագիր Մետրոդորոս Սկեպսիացուց կամ Թեոփանես Միտիլենացուց, որն ուղեկցում էր Պոմպեոսին՝ Հայաստանով նրա կատարած արշավանքում։ Թե ինչ է մեզ հասել և թե որքան հարազատ է վերարտադրված բնագիրը՝ հայտնի չէ։

Չպետք է մոռանալ, որ մակեդոնացի աշխարհակալը Հայաստան չի մտել, և ոչինչ, ոչ մի փաստ մեզ թույլ չի տալիս ընդունելու այն տարածված կարծիքը, թե նա հպատակեցրել է Հայաստանը։ Ուրեմն, այդ ե՞րբ և ի՞նչ առիթով են թեսալիացի սպաները կարողացել այցելել Հայաստան և այդքան արժեքավոր տեղեկություններ ստանալ։ Նրանք ճանաչում են երկրի սրբավայրերը, շրջանները՝ Ուտիան, Ակիլիսենեն, Սոֆենեն,

Արաքս գետը, Արաքսենե հովիտը և նրա երկրաբանական անցյալը։ Նրանք տեղյակ են Ուտիայի քաղաք Աինիանայում կատարված հնագիտական հայտնաբերումներին, հելլենական զենքերի նմուշներին, պղնձյա առարկաներին և դամբարաններին։ Նրանց հայտնի է նաև Անարիակայի պատգամախոսը[1]։

Որ Կիրսիլոսն ու Մեդիոսը Հայաստանում անձամբ են հավաքել այս տեղեկությունները, պետք է դրան հավատալ։

Կիրսիլոսը անծանոթ դեմք է, որը ոչ մի տեղ այլևս երևան չի գալիս[2]։ Բայց Մեդիոսը Ալեքսանդրի մտերիմ բարեկամներից մեկը լինելու պատիվըն է իրեն վերագրել։ «Թեսալիացի Մեդիոս»-ի մոտ է, որ խնջույքի ժամանակ, կերուխումի չափազանցության հետևանքով, Ալեքսանդրը հիվանդացավ և ողբերգական վախճան ունեցավ[3]։

Մենք վստահ չենք, որ դա միևնույն Մեդիոսն է, որին էր վստահված նավատորմիղը նախ Պերդիկասի, ապա Անտիգոնոսի ճամբարում։ Այդ ծովակալը, հավանական է, իր ասպարեզին վերջ տվեց Անտիգոնոսի անկման հետ միասին, որը 301 թվականի Իպսոսի ճակատամարտի անհաջող ելքից հետո ինքնասպան եղավ[4]։ Նա չի հիշատակվում Անտիգոնոսի որդի Դեմետրիոս Պոլիորկետեսի օրով։

Այդ ժամանակաշրջանում Հայաստանում իշխում էր Արոանդը (Արուանդ, Երուանդ)։ Նա թագավորական տիտղոս էր ընդունել ոչ ուշ, քան 306 թվականին՝ Անտիգոնոսի և մյուս դիադոխների հետ միաժամանակ։ Անտիգոնոսի հակառակորդ Եվմենեսը նեցուկ էր փնտրում Հայաստանում և թվում է, թե շահել էր Արոանդի բարեկամությունը։ Սակայն Եվմենեսի մահից հետո և Անտիգոնոսի կառավարության ընթացքում Հայաստանի թագավորի կողմնորոշումը հայտնի չէ. գուցե, Եվմենեսի օրինակով Անտիգոնոսն ուզեցել է իր կողմը գրավել Արոանդին, նախատեսելով 301 թվականի մեծ ճակատամարտը։ Այդ նպատակով էլ, գուցե, Հայաստան էր ուղարկել Կիրսիլոսին և Մեդիոսին։ Զուտ ենթադրություն, որը բխում է քաղաքական դրությունից։

---

[1] Ստրաբոն, XI, 7, 1։

[2] Կիրսիլոս անունը նախօրոք հայտնի է։ Այդ անունով մի անձնավորություն քարկոծվեց Թեմիստոկլեսին հակառակվելու համար։ Դեմոսթենես, Oratio de Corona, ed. Voemelius, § 199, էջ 156։

[3] Դիոդոր, XVII, 117, 1։

[4] Դիոդորը, XIX, 69, 3. XX, 50, 3, նրա մասին այնպես է խոսում, որ հասկանալ է տալիս, թե նա արդեն հիշատակված անձնավորություն է։ Այդ պատճառով հավանական է, որ նա հենց Թեսալիացին է։

Գ

## ՆՈՐԱԾԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ

*Ուրարտու պետության կործանումը այն ելակետն է, որից սկսվում է նրա տերիտորիայի փոխարկումը Հայաստանի։ Ուրարտուի անհետացման թվականը համարվում է 585-ը, և ընդունվում է, որ Կիաքսարի հաղթական բանակի վերադարձից հետո Փոքր Ասիայում վաղուց հաստատված հայերն անցան Եփրատը՝ հանգուցյալի ժառանգության տերը դառնալու համար։*

*Մենք այդ թվականն ընդունեցինք ոչ առանց վարանման։ 521 թվականին հայերն արդեն երկրի տերերն են և զենքի ուժով այն պաշտպանում են Պարսկաստանի թագավոր Դարեհից։ 585 և 521 թվականների միջև ընկած ժամանակը բավական չէ այդքան արմատական հեղաշրջման համար։ Տեղին է Ուրարտուի անկման թվականը ետ տանել կամ, համենայն դեպս, հոգեվարքի ժամանակը հաստատել 616 թվականի, երբ սկսվում է պայքարն Ասորեստանի դեմ (որը նրա վերջնական կործանումով էր ավարտվելու 607 թ.) և 585 թվականի միջև, որը Լիդիայի դեմ հնգամյա պատերազմից հետո Մեդիայի տարած հաղթության թվականն է։ Ուրարտուն չի երևում այն տերությունների շարքում, որոնք այդ ժամանակաշրջանում առաջին դերերն էին խաղում քաղաքական թատերաբեմում, ինչպես Մեդիան ու Բաբելոնը՝ մեկ կողմից, Ասորեստանը, Եգիպտոսը և Լիդիան՝ մյուս կողմից։ Եթե Ուրարտուն, որը մեծ պետություն էր, դեռևս ոտքի վրա լիներ, անշուշտ, իր դիրքը կորոշեր հակառակորդ այն ճամբարների միջև, որոնք մրցում էին մեռնող Ասորեստանին տիրանալու համար։ Այդ ճակատագրական պահին, թվում է, Ուրարտուն արդեն փուլ էր եկել։*

*Ճիշտ է, որ Նաբոպալասարը 609 թվականին հիշատակում է Ուրարտուն Իզալլայի շրջանում իր վարած պատերազմի ժամանակ։ Սակայն հայտնի չէ, թե նա այդ անունով հին Ուրարտու՞ն է հասկանում, թե Հայաստանը, նկատի առնելով, որ բաբելոնացիները շարունակեցին երկիրը կոչել հին՝ Ուրարտու անունով, նույնիսկ նրա հայացումից հետո, ինչպես երևում է Բահիստանի արձանագրության բաբելոնյան տարբերակից։ Այդ նույն Իզալլայի շրջանումն է, որ 521 թվականին հայերը կռվում էին Դարեհի դեմ։*

*Հերոդոտը Նինվեի առումը զետեղում է 585 թվականի լիդիական պատերազմից հետո։ Այս լուրջ սխալը, հավանաբար, առաջ է գալիս Ուրարտուի դեմ պատերազմը Լիդիայի դեմ պատերազմի հետ շփոթելուց։ Նվաճել Ուրարտուն և այդ կողմից ինքն իրեն ապահովելուց հետո հարձակվել 614—612 թվականներին Ասորեստանի վրա, դա, իհարկե, Կիաքսարի համար*

ձեռնտու էր։ Եթե այդպես լիներ, ոչինչ չէր կարող արգելք հանդիսանալ, որ հայերը հենց այդ վայրկյանից Հալիս գետի ակունքից նետվեին դեպի Ուրարտու և տիրանային նրան։ Մասսայական ներխուժման այդ պահն ընդունելով, հեշտ կլինի հասկանալ այն իրողությունը, որի մասին խոսում են թեսալիացի պատմիչները, և առաջին հայացքից բավական տարօրինակ է թվում այն, որ հայերը մխրճվեցին մինչև Ասորեստանի սիրտը, մինչև Կալաքենե և Ադիաբենե։ Ասուրական տիրության խորտակման խառնահույզ ժամանակաշրջանը միայն կարող էր նման համդուգն քայլերի հնարավորություն ընձեռել։

Կիրսիլոսն ու Մեդիոսը պատմում են, որ Արմենոսի ուղեկիցները, այսինքն՝ առաջին հայերը, որոնք անցան Եփրատը, գրավեցին Ակիլիսենեն, Սի(ս)պիրիտը մինչև Կալաքենե և Ադիաբենե։

Ակիլիսենեն հայկական Եկեղյացն է՝ Փոքր Հայքի հարակից մարզը, և նրա գրավումը շատ բնական է։

Սիսպիրիտը Ճորոխ գետի վրայի հայկական Սպերը չէ. քանի որ այն հիշատակված է Կալաքենեի և Ադիաբենեի հետ, պետք է ենթադրել, որ դա Բատման գետի լեռնային շրջանի Ծուպրիան է։ Կալաքենեն ասուրական մայրաքաղաք Կալխուի (այժմյան Նիմրուդ բնակավայրը) տերիտորիան է, իսկ Ադիաբենեն երկու Զաբերի միջև, Արբելայի շուրջն ընկած երկիրն է։ Նկատվել է թրակիական կառուցվածք ունեցող գերեզմանների գոյությունը Մալաթիա—Խարբերդ—Դիարբեքիր գծի վրա[1]։ Գտնվել է նաև մի քանդակված դեմք փռյուգիական գլխարկով՝ Դեիր և Հարիր գյուղերի միջև մի ժայռի վրա, Արբելայից հյուսիս[2]։ Այդ անսպասելի հայտնագործությունները ցույց են տալիս հայ-փռյուգիական «արշավողների» շարժման ուղղությունը և ապացուցում են, որ նրանց արկածային առաջխաղացումը մինչև Արբելա բոլորովին էլ երևակայական չէ։

Հիշենք ևս մի քանի ցեղերի, ներառյալ մուշկերի, այսինքն՝ փռյուգիացիների, արշավանքները, ձեռնարկված Ռուսա II-ի ժամանակ, մոտավորապես 650 թվականին։ Դա ստրաֆանական ներթափանցման փուլ է, մասսայական ներխուժումից առաջ, որը տեղի ունեցավ Ուրարտուի կործանումից հետո, մոտավորապես 615 թվականին։

Ոչինչ հայտնի չէ հայացած Ուրարտուի քաղաքական պայմանների կամ Աքեմենյան ժամանակաշրջանից առաջ եղած փոփոխությունների մասին։ Անտարակույս, այն մեդական պետության մասն էր կազմում, բայց թե ինչ հիմքերով՝ անհայտ է։ Հին պատմագիրների տեղեկություն-

[1] Zeitschrift für Ethnologie, *1901*, էջ *181* և *209*։

[2] **W. Belk**, Verhandlungen der Berliner Gesellschaft für Anthropologie, *1899*, էջ *447*։

*ները մեդական պետության և նրա ազդեցության ոլորտում գտնված ժողովուրդների անցյալի վերաբերյալ այնքան թերի են, որ անհնար է այնտեղից որևէստույգ բան քաղել պետության կազմակերպության, նրա վարչական համակարգի մասին։ Սատրապական կարգը, անշուշտ, մեդացիների ստեղծագործությունն է։ Հայաստանը արդյոք պարզապես սատրապությու՞ն էր կազմում, թե սատրապի կողքին, որը կենտրոնական իշխանությունն էր ներկայացնում, գոյություն ուներ ազգային առաջնորդ կամ թագավոր։ Այս ամենը խավարով է պատած։ Ավելի շուտ հնարավոր է պատասխան տալ՝ հիմնվելով մի քանի պատմվածքների մեջ եղած տվյալների վրա։ Որքան էլ նրանք առասպելական լինեն, այնուհանդերձ որոշ հիմք կարող են ունենալ։ Ահա նրանցից մեկը, որը ծագում է Կտեսիասից։*

*Նինոսը, Ասորեստանի ավանդական հիմնադիրը, իր իշխանությունն սկսում է երկու հաջող արշավանքով։ Առաջինն ուղղված է Արաբիայի թագավոր Արիախոսի դեմ, որն ստիպված է լինում դաշինք կնքել ներխուժողի հետ։ Երկրորդ արշավանքն ուղղված է Բաբելոնի դեմ, որի թագավորը բռնվում է իր որդիների հետ և մահվան դատապարտվում։ Դրանից հետո, շարունակում է պատմիչը, Նինոսը, մեծ բանակի գլուխն անցած, խոյացավ Հայաստանի դեմ, նրա քաղաքներից մի քանիսն այնպես քարուքանդ արեց, որ ահ ու սարսափ տարածեց երկրի բնակչության վրա։ Բարզանես թագավորը, հասկանալով, որ ի վիճակի չէ դիմադրելու, ընդառաջ գնաց Նինոսին բազում նվերներով և հայտնեց նրա հրամաններին հնազանդելու իր պատրաստակամությունը։ Նինոսը նրա հետ մեծահոգի վարվեց, թույլ տվեց նրան իշխել, պայմանով, որ որպես դաշնակից զորքեր ու մթերք ուղարկի իր ճամբարը։*

*Այսպիսով ավելի ևս ուժեղանալով, Նինոսը մեկնեց Մեդիայի դեմ։ Վերջինիս թագավոր Փառնոսը մեծ ուժեր կենտրոնացրեց Նինոսի դեմ, բայց հաղթվեց. նա կորցրեց իր զորքերի մեծ մասը և ինքն էլ իր որդիների ու կնոջ հետ գերի ընկավ ու խաչվեց*[1]*։*

*Նինոսն իր բարեկամներից մեկին Մեդիայի սատրապ նշանակեց և շարունակեց իր նվաճումները։ Տասնյոթ տարում նա հպատակեցրեց անսահման տերիտորիա՝ Նեղոս գետից մինչև Տանաիս և էգեյան ծովից մինչև Հնդկաստան։ Պատմիչը տալիս է նվաճված երկրների լրիվ ցուցա-*

[1] Դիոդոր, II, 1. Μετά δε ταῦτα πολλοῖς πλήθεσιν εἰς τήν 'Αρμενίαν ἐμβαλὼν καὶ τινὰς τῶν πόλεων ἀναστάτους ποιήσας κατεπλήξατο τοὺς ἐγχωρίους διόπες ὁ βασιλεὺς αὐτῶν Βαρζάνης, ὁρῶν ἑαυτὸν οὐκ ἀξιόμαχον ὄντα, μητὰ πολλῶν δώρων ἀπήντησε καὶ παν ἔφησε ποιήσειν τὸ προσταττόμενον. 'Ο δε Νίνος μεγαλοψύχως αὐτῷ χρησάμενος τῆς τε 'Αρμενίας συνεχώρησεν ἄρχειν καὶ φίλον ὄντα πέμπειν στρατίαν καὶ τὴν χορηγίαν τῷ σφετέρῳ στρατοπέδῳ ἀεί δὲ μᾶλλον αὐξόμενος, ἐστράτευσεν εἰς τὴν Μηδίαν. 'Οδὶ ταύτης βασιλεὺς Φάρνος... ἀνεσταυρώθη.

կը. Եգիպտոս, Ասորիք, Կիլիկիա, Պամֆիլիա, Լիկիա, Կարիա, Փռյուգիա, Միզիա, Լիդիա, Տրովադա, Հելլեսպոնտական Փռյուգիա, Պրոպոնտիս, Բյութանիա, Կապադովկիա, Պոնտոսի բարբարոս ցեղերը մինչև Տանաիս։ Ապա կադուսիներ, թապիրներ, վրկանցիներ, դրանգներ, դարբիկներ, քարմանյաններ, խորազմացիներ, բորկանյաններ, պարթևներ, պարսիկներ, սուսացիներ, կասպիացիներ և, վերջապես, բակտրիացիներ, որոնց թագավորն էր Օքսիարտեսը։

Այս պատմության մեջ պարզապես ոչ մի բառ չկա, որ կարելի լիներ վերագրել Նինոսին կամ Ասորեստանի որևէ թագավորի։ Նվաճումների ցուցակն արտացոլում է հեղինակի երևակայությունը։

Ցուցակն ուրվագծում է Աքեմենյանների, և ոչ մի դեպքում Ասորեստանի, պետության ընդարձակումը։ Ասուրական զորքերը երբեք չեն հասել Փոքր Ասիայի ծովափը, ոչ էլ Տանաիսի ափերը և ոչ էլ Հնդկաստանի սահմանները։ Թվում է, թե ցուցակը թխված է այն երկրների ցանկի վրա, որոնք մասնակցել են Քսերքսեսի արշավանքին։ Արաբիայի, Հայաստանի, Մեդիայի հպատակեցումը չի կարող լինել այն ժամանակաշրջանում, երբ Բաբելոնը դեռևս նվաճված չէր, ինչպես հեղինակը հավակնում է հաստատել. նրանց թագավորների համապատասխան անունները՝ 'Αριαῖος, Βαρζάνης, Φάρνος, ամենաշատը ցույց են տալիս մեդական ժամանակաշրջանը։ Իհարկե, կարելի էր մտածել վերևում հիշատակված՝ Սարգոնի ժամանակակից երեք անձնավորությունների մասին, հատկապես Ուրարտու—Հայաստանի վասալ երկրներ Սիդրինայի տեր Էպարնուայի, Բուշտուի՝ Արիայի և Մուսասիրի՝ Ուրզանայի մասին։ Սակայն Կտեսիասի հեղինակությունը այնքան խղճուկ է, որ նման համեմատությունը դարձնում է ցնորական։ Շատ ավելի հավանական է, որ խոսքը հնարովի դեմքերի մասին է։

Կտեսիասի հորինածը հիմնված չէ՞ր արդյոք V դարի վերջում պարսկական պալատի ոլորտում նրա լսածների վրա։ Հետևաբար, պարսկական ոլորտը դեռևս տեղյակ չէ՞ր, որ Հայաստանը ժամանակին թագավորություն էր կազմել, ինչպես Մեդիան և Արաբիան։

Քսենոփոնի Կյուրոպեդիան նույնպես թատերաբեմ է բերում Աստիագի և Կյուրոսի ժամանակակից Հայաստանի մի թագավորի։ Դժբախտաբար, այդ գործը պատմական առումով ավելի արժեք չունի, քան Կտեսիասի պատմությունները։ Դա ուսուցողական գործ է, որը ձգտում է օրինակելի մի վեհապետի նկարագիրը կերտել այնպես, ինչպես որ պատկերացնում է հեղինակը։ Քսենոփոնի այդ փորձի արժանիքը շատ են չափազանցել։ Կյուրոսի նկարագիրը դժգույն է և շատ ավելի անգույն, քան Հերոդոտի սքանչելի էջերում շարադրված՝ այդ նշանավոր թագավորի պատկերը։ Քսենոփոնը պատմական բավական աղճատված մի կտավի վրա

նկարել է շինծու պատկերներ, երևակայական արկածներ, արհեստական իրադրություններ, միմիայն մի նպատակով, որպեսզի իր հերոսին զանազան հարցերի շուրջ ճառել տա և դրանով զարգացնել տա հեղինակի գաղափարները։ Հերոսի իմաստակային ճամարտակությունը կարող էր որոշ հետաքրքրություն ներկայացնել, եթե այնքան տաղտկալի չլիներ։ Այնտեղ չկա ոչինչ, որն արժանի լիներ մի մեծ աշխարհակալ առաջնորդի։ Կյուրոսին վերագրված առաքինությունները միշտ, ոչինչ չներկայացնող բաներ են. նրա լավ բարքերը չեն բացառում ո՛չ խորամանկությունը, ոչ էլ խաբեությունը։ Նրա զինվորական արվեստը կայանում է հակառակորդի ճամբարում քայքայումն ու մատնությունը քաջալերելու կամ թշնամու դեմ թակարդ լարելու մեջ։ Կյուրոսը արդարասեր է, որովհետև գիտե արդարությամբ ավարը բաժանել իր դաշնակիցների միջև և մթերքներ տալ ռազմիկներին։ Հեղինակն ի դեմս Կյուրոսի երկինք է հանում միապետական կարգը, հիանում է նրանով՝ հակառակ իր դասընկեր Պլատոնի հանրապետական հայացքներին։ Սակայն նա քաջություն չունի բացեիբաց այդ հանձն առնելու իր զրույցներում կամ ճառերում գոնե մեկ անգամ։

Բայց հարցն այդ չէ։ Իր ջանքերն իրագործելու համար նա աղավաղել է պատմությունը. նա պատմական իրադարձությունների հետ այնպիսի ազատությամբ է վարվել, որ հատուկ է վիպասանին, առանց ակնածանք ունենալու ժամանակագրության և նույնիսկ աշխարհագրության նկատմամբ։ Կիաքսարն Աստիագի հայրն էր։ Նա նրան դարձնում է որդի և Կյուրոսի ընկեր, անշուշտ, որպեսզի կարողանա նրան վերագրել Ասորեստանի նվաճումը, որը Կիաքսարի գործն էր։ Կյուրոսն ամուսնանում է Կիաքսարի աղջկա և ոչ թե Աստիագի աղջկա հետ և որպես օժիտ է ստանում Մեդիան և ոչ թե ուժ բանեցնելով Աժդահակի վրա։ Ձենք բարձրացնել իր անհրոջ վրա, անշուշտ, չէր պատշաճի գաղափարական մի իշխանի։ Ասորեստանի անկումը 612 թվականին՝ ներկայացված է որպես մի իրադարձություն, որը ժամանակակից է Սարդեսի 546 թվականի առումին և Բաբելոնի 538 թվականի գրավման։ Բաբելոնի թագավորը կոչվել է Ասորեստանի թագավոր, հավանաբար, Հերոդոտի ազդեցության տակ, որը Բաբելոնը ներփակում է Ասորեստանի մեջ։ Ըստ Կտեսիասի՝ Ասորեստանի վերջին թագավորը իր որդիներին ու գանձերը Պափլագոնիա է ուղարկում՝ նրանց ապահովելու համար։ Քսենոփոնը դրանից եզրակացրել է, որ Պափլագոնիան Կապադովկիայի և Լիդիայի հետ Ասորեստանի դաշնակիցն էր, և, հետևաբար, Կրեսոսին դարձրել է Ասորեստանի թագավորի, ինչպես նաև Բաբելոնի թագավորի կողմնակից։

Կյուրոսի շրջապատը աղավաղված է. նա շրջապատված է հնարովի անձնավորություններով։ Դրանցից ոմանք պատմական դեմքեր են, բայց խեղաթյուրված՝ ինչպես Գաբրիասը։ Դա, անշուշտ, Հերոդոտի Գոբրիասն

է՝ Ամերդիսի դեմ յոթ դավադրողներից մեկը։ Քսենոփոնը նրան դարձնում է սարբեստանցի սատրապ, որն ապաստանում է Կյուրոսի մոտ և Հերոդոտի Հարպագոսի դերն է խաղում։ Նրա որդին սպանվել է Ասորեստանի թագավորի կողմից և ոչ Աժդահակի, ինչպես Հերոդոտն է կարծում, և նա սպանվել է որսի ժամանակ՝ ինչպես Կրեսոսի որդին։ Քսենոփոնը նյութը վերցնում է դեսից-դենից և իր ձևով մշակում։ Քրիզանթասը, Գադատասը, Արասպասը, Փիրաուլասը և այլն նրա երևակայության բնագավառին են պատկանում։

Հայոց թագավորը նույնպես Կյուրոսի շրջապատին է պատկանում։ Հարց է ծագում՝ Քսենոփոնի ստեղծագործության մի պարզ արտացոլո՞ւմն է նա, թե, եթե նույնիսկ այդպիսին է, այսուհանդերձ ներկայացնում է Հայաստանի մի թագավորություն, որը գոյություն է ունեցել Աստիագի կամ Կիաքսարի, եթե ոչ Կյուրոսի, օրով։

Հիշենք, թե ինչ է ասվում այդ նյութի շուրջ։ Դա շատ տեսակետով բնորոշիչ մի դրվագ է Կյուրոսի նկարագրի կապակցությամբ։

Աստիագի մահից հետո գահ է բարձրանում նրա որդի Կիաքսարը։ Ասորեստանը սպառնում է Մեդիային։ Նա հպատակեցրել է սիրիական ժողովուրդներին, Արաբիայի թագավորին, վրկանցիներին, պաշարում է բակտրիացիների քաղաքը, նա ընկճել է նաև Լիդիայի թագավորին, Կապադովկիայի թագավորին, երկու Փռյուգիաների բնակիչներին, պափլագոնիացիներին, հնդիկներին, կարիացիներին, կիլիկեցիներին։

Այստեղ երևում է Կտեսիասի ազդեցությունը։ Դրանք այն երկրներն են, որոնց նվաճումը Կտեսիասը վերագրել է Նինոսին։ Վերջինս ձախողվել է Բակտրիանեում. բակտրիացիների պաշարումը այդ իրողության ակնարկումն է։ Ասորեստանի թագավորը, հավաքելով մի մեծ բանակ՝ 60 000 ձիավոր և 200 000 ասպարակիր կամ նետաձիգ, պատրաստվում է Մեդիայի վրա նետվելու։ Կիաքսարն իր տրամադրության տակ ունի 10 000 ձիավորից և 60 000 նետաձիգներից կամ ասպարակիրներից բաղկացած մի բանակ և հայկական ուժեր՝ 4000 ձիավոր ու 20 000 հետևակազորք։ Նա օգնություն է խնդրում Կյուրոսի հայր Կամբիսից և Կյուրոսի հրամանատարության տակ ստանում է 30 000 մարդ։

Մի օր Կյուրոսն ասում է Կիաքսարին, որ ծախսել է Պարսկաստանից բերած ամբողջ դրամը՝ պարգևատրելով իր լավագույն զինվորներին։ Իր բանակը Կիաքսարի ծախսով ապրելու պատճառով նա նպատակահարմար չի համարում նրանից փող խնդրել իր անձնական ծախսերի համար և մտածում է, որ պետք է այլ աղբյուրներ փնտրել։ Նա հիշում է, որ Կիաքսարն ասել էր վերջերս, թե ժամանակին Հայաստանի թագավորը պատերազմ է վարել Աստիագի դեմ և, հաղթվելով, հանձն էր առել հարկ վճարել, զորք տրամադրել և բերդեր չկառուցել։ Կյուրոսը նույնպես լսել էր, որ

հայոց թագավորը դադարել է իր պարտավորությունները կատարել, երբ իմացել է, որ Ասորեստանը պատրաստվում է հարձակում գործել Մեդիայի վրա։ Եթե նրան հարկադրեք իր պարտքը կատարելու, անհրաժեշտ փողը կլինի։ Ուժի դիմելը անխոհեմություն կլիներ. Հայաստանի թագավորը կարող է թշնամու կողմն անցնել։ Նախընտրելի է գաղտնի գործել և նրան ծուղակի մեջ գցել։ Եթե ճակատ առ ճակատ հարձակում գործվի, նա կարող է ազատվել՝ փախչելով լեռները։ Նախատեսվում է, որ Կյուրոսը արշավանք ձեռնարկի, իբր թե, ըստ սովորության, որսի է դուրս եկել հայմեդական սահմանի վրա։

Կյուրոսը, կասկած չարթնացնելու համար, սակավաթիվ ուղեկիցներ է վերցնում հետը։ Որս անելով՝ նա հասնում է Հայաստանի սահմանը։ Կիաքսարը, որն առաջնորդում է բանակին, ցույց է տալիս իբր գնում է այցելելու Ասորիքի սահմանի վրայի իր բերդերը, բայց շրջադարձ է կատարում, մոտենում Հայաստանին և Կյուրոսից փոքր հեռավորության վրա դարան մտնում, որպեսզի նրա կանչին անմիջապես օգնության հասնի։

Կյուրոսն իր նպատակները հայտնում է զորքին։ Մի ջոկատի հանձնարարում է գրավել այն լեռները, ուր կարող էր քաշվել հայոց թագավորը։ Նա այդ ջոկատին հրամայում է հետախույզներ ուղարկել առաջ և եթե հայերի հանդիպեն՝ բռնեն նրանց, որպեսզի ահազանգ չտան։ Եթե հետախույզներին չհաջողվի նրանց բռնել, պետք է այնպես պահեն իրենց, որ հայերը կարծեն, թե ավազակների են հանդիպել։ Այսպիսով նրանց ուշադրությունը շեղած կլինեն իրենց երկրի դեմ ձեռնարկված արշավանքից։ Այդպիսի կանխամիջոցներ ձեռք առնելուց հետո Կյուրոսը՝ բանակի գլուխն անցած, ընթանում է դեպի Հայաստանի թագավորի մայրաքաղաքը։ Նա նրան բանբեր է ուղարկում և պահանջում ներկայանալ՝ հետը բերելով իր պարտքին համապատասխան հարկը և զորքերը։ Կյուրոսը մտածում է, որ ավելի ազնիվ ու վեհանձն կլիներ տեղեկացնել թագավորին, քան թե հարձակվել նրա երկրի վրա առանց նախազգուշացման[1]։

Լուրը Հայաստանի թագավորին հանկարծակիի է բերում և վրդովում նրան։ Նա անմիջապես հավաքում է իր զորքերին և իր ընտանիքը՝ կնոջն ու աղջիկներին, կրտսեր որդուն՝ Սաբարիսին, և անդրանիկ որդու կնոջը, բոլորին ապահով տեղ՝ լեռներն ուղարկելով, ինքը ճամբար է դնում մի բարձունքի վրա։ Սակայն, շրջապատված Կյուրոսի ուժերի կողմից, նա ստիպված ցած է իջնում ու ներկայանում ներխուժողի առջև։

Կյուրոսը նրանից բացատրություն է պահանջում, թե ինչո՞ւ զանց է առել իր պարտավորությունները և ի՞նչ կարող է ասել իրեն արդարացնելու համար։ Հայոց թագավորն ընդունում է իր սխալը և փորձում արդա-

---

[1] Կյուրոպեդիա, II, 4։

բանալ իր ազատասիրությամբ։ Նա ուզում էր ազատություն ձեռք բերել և այն թողնել իր որդիներին։ Կյուրոսը պատասխանում է, որ, իհարկե, լավ բան է պայքարել ազատության համար, բայց երբ մեկը հաղթվում և աշխատում է խուսափել իր պարտավորությունները հաղթողների նըկատմամբ կատարելուց, ոչ թե գովասանքի է արժանի, այլ պատժի։ Ուրեմըն հանցավորության վճիռը անխուսափելի է։ Մեղադրյալը կարող է երկու լուծումներից միայն մեկն ընդունել՝ կա՛մ հանձն չառնել իր գործած հանցանքը, այսինքն՝ ստել, կա՛մ ընդունել մահվան վճիռը։

Դատավարության տեսարանը տեղի է ունենում պարսկական ու մեդական առաջնորդների և Հայաստանի մեծամեծների ներկայությամբ։ Հայոց թագավորի կալանավորված ընտանիքը նույնպես ներկա է, ինչպես նաև նրա անդրանիկ որդին՝ Տիգրանը, որն անձամբ ճանաչում էր Կյուրոսին՝ որպես ժամանակին նրա որսակիցներից մեկը։ Տիգրանը, տեսնելով իր հորն սպառնացող ճակատագիրը, միջամտում է՝ նրան պաշտպանելու համար։ Զրույց է սկսվում նրա և դատավոր Կյուրոսի միջև՝ սոփեստական զրույց, որը տհաճություն չէր պատճառի Սոկրատի զրույցների սիրահարներին, բայց որը սազական չէ հայ իշխանին։ Քսենոփոնը հասկանում է անտեղիությունը և շտապում Տիգրանին ներկայացնել որպես մի սոփեստի հին աշակերտի։ Անկասկած, Տիգրանը իր զրույցում ներկայացնում է իրեն՝ Քսենոփոնին։ Կյուրոսին մի շարք հուզող հարցեր առաջադրելով՝ Տիգրանին հաջողվում է ազատել հորը։ Բովանդակությունը երկար է, բավական է նրա էական մասն ամփոփել։

Տիգրանը գտնում է, որ իր հորը պատժելը օգուտ չէր բերի Կյուրոսի շահերին, որովհետև ամենևին խոհեմություն չէ ոչնչացնել մի մարդու, փոխանակ իր ծառայության մեջ ընդունելով նրան օգտագործելու։ Եվ դա ավելի ևս ակնհայտ է դառնում, քանի որ մեղադրյալն ավելի խելոք է դարձել, երբ հասկացել է, որ ազատություն ձեռք բերելու ձգտումը վատացրնում է իր վիճակը։ Նա համոզվել է, որ Կյուրոսը ամեն տեսակետից ավելի բարձր է կանգնած, քան ինքը։ Նա ցանկացավ խաբել Կյուրոսին, բայց վերջինը կանխեց և նրան խաբեց՝ կույրի տեղ դնելով նրան. նա փորձեց թաքնված գործել, բայց Կյուրոսն ավելի հաջողությամբ գործեց՝ նրան անսպասելիորեն պատին սեղմելով։ Կատարյալ պարտությունը մեղադրըյալին շատ խելոք է դարձրել։ Բնականաբար, խելոք դառնալու համար բավական չէ միայն այն գիտակցությունը, թե իրենից ավելի լավի հետ գործ ունի, պետք է նաև պատժի ենթարկել։ Սակայն մեղավորն արդեն պատըժվել է, և պատժվել է հենց այն սարսափով, որ Կյուրոսը ազդել է նրան։ Երկյուղը մարդկանց ավելի է պատժում, քան իրական պատիժը։

Եթե Կյուրոսը վստահ չէ, թե Տիգրանի հայրը նորից չի գոռոզանա և նոր անհանգստություններ չի պատճառի, կարող է գրավականներ պահան-

*չել՝ ամրոցներ կառուցել, բերդեր գրավել, ավելի զորք, ավելի դրամ պահանջել։ Մի խոսքով՝ Հայաստանի թագավորությունը կործանելով Կյուրոսն ինքն իրեն ավելի վնաս կպատճառեր, քան թե դա կկարողանար անել Տիգրանի հայրը։*

*Պաշտպանական ճառը հաջողությամբ է պսակվում։ Կյուրոսը դիմում է Հայաստանի թագավորին և հարցնում նրան, թե որքա՞ն զորք ու դրամ կտար, եթե ներվեր նրա հանցանքը։ Մեղավոր թագավորը պատասխանում է, որ ինքն ունի 8000 ձիավոր և 40 000 հետևակազոր, իսկ իր հարստությունը 300 տաղանտից ավելի է, և Կյուրոսը կարող է այն գործածել ինչպես կկամենա։ Կյուրոսը գիտե, որ հայերը պատերազմում են խալդերի (ոչ քաղդեացիների) հետ և ավելի արդար կլիներ վերցնել հայկական ուժերի կեսը՝ 4000 ձիավոր և 20 000 հետևակազոր։ Գալով դրամին, թագավորը կվճարի 50 տաղանտ հարկի կրկնակին և նույնքան էլ կընծայի Կյուրոսին այն ծառայությունների դիմաց, որ նա խոստանում է մատուցել հայոց թագավորին։*

*Այն ժամանակ Կյուրոսը հարցնում է, թե նա ո՞րքան կվճարի իր կընոջն ու կալանավորված որդիներին փրկելու համար։ Թագավորը պատասխանում է, որ կվճարի ինչքան որ կարողանա։ Նույն հարցը նա տալիս է Տիգրանին իր կնոջ նկատմամբ։ Տիգրանը պատասխանում է, որ ինքն իր կյանքը կվաճառեր նրան ազատելու համար։ Կյուրոսը կանանց ազատում է կալանքից։ Կյուրոսի և հայոց թագավորի միջև հաշտություն է կնքվում։ Հայոց թագավորը Կյուրոսին ու նրա բանակին նվերներ է ուղարկում և երկու անգամ ավելի դրամ, քան Կյուրոսի պահանջածը։ Շուտով Տիգրանի հրամանատարությամբ գալիս են հայկական զորամասերը՝ Կյուրոսի արշավանքին մասնակցելու համար*[1]։

*Ապա Կյուրոսը ջանքեր է թափում հայերի ու խալդերի միջև խաղաղություն հաստատելու համար։ Դա հայոց թագավորին խոստացած ծառայությունն է՝ ընծայված դրամի փոխարեն։ Նա հետախուզում է երկիրը և որոշում մի բերդ կառուցել այն բարձունքի վրա, ուր խալդերը լըրտեսներ էին պահում, և այնտեղ պարսկական զորքեր դնել։ Կյուրոսն իր մարդկանց կարգադրում է գնալ գրավել այդ բարձունքը։ Խալդական պահակազորքը ահազանգ է տալիս։ Խալդերը հայտնի էին որպես այդ շրջանի ամենառազմաշունչ բնակիչներ։ Նրանք ամեն ուղղությամբ շարժումներ են կատարում, բայց հաղթվելով ետ են քաշվում։ Կյուրոսը գերի վերցրած խալդերին բացատրում է, որ ինքը նպատակ չունի խալդերին կործանելու, այլ ձգտում է նրանց հաշտեցնել հայերի հետ։ Խալդերը խաղաղության կողմնակից չէին։ Նրանք իրենք իրենց ապահով էին զգում լեռներում և*

---

[1] Կյուրոպեդիա, III, *1*։

այնտեղից ցած էին իջնում՝ գաղտավայրերում ապրող հայերի ունեցվածքը հափշտակելու համար։ Խալդ գերիներն ազատ են արձակվում և ուղարկվում իրենց մարդկանց մոտ, որպեսզի համոզեն նրանց հաշտություն կնքելու։ Միխան հաջողվում է։ Հաշտություն է կնքվում՝ պայմանով, որ հայոց թագավորը խալդերին թույլ տա դաշտավայրի անմշակ հողերը մշակելու՝ սահմանված հողային հարկը վճարելով։ Խալդերն իրենց հերթին հանձն են առնում հայերին չարգելել լեռների արոտավայրերից օգտվելու՝ որոշ տուրք վճարելու պայմանով։

Հայոց թագավորն ատաղձագործներ ու որմնադիրներ է ուղարկում, որոնք սկսում են նախատեսված բերդի կառուցումը։ Այն կպահպանվի պարսկական կայազորի կողմից՝ երկու կողմերի խաղաղությունն ու բարիդրացիությունն ապահովելու համար[1]։

Կյուրոսը հեռանում է Հայաստանից՝ Ասորեստանի և Բաբելոնի դեմ արշավելու համար, և իր հետ է տանում հայկական զորքերը, հեծելազորը Տիգրանի հրամանատարությամբ, իսկ հետևազորը՝ Էմբասի առաջնորդությամբ[2]։ Նվաճումներն ավարտելուց հետո Կյուրոսը զբաղվում է նվաճված երկրների կազմակերպությամբ։ Նա սատրապներ է նշանակում Արաբիայում, Կապադովկիայում, Փոյուգիայում, Լիդիայում և Իոնիայում, Կարիայում, Հելլեսպոնտյան Փոյուգիայում։ Կիլիկիան, Պափլագոնիան և Կիպրոսը սատրապներ չեն ստանում, բայց հարկ են վճարում[3]։

Կյուրոսը մահվան անկողնում իր վերջին կարգադրություններն է անում՝ նա պետությունը կտակում է իր անդրանիկ որդի Կամբիսին, իսկ կրտսեր որդուն՝ Թանաոքսարին, նշանակում է սատրապ կամ փոխարքա մեդերի, հայերի և կադուսացիների վրա։

Ինչպես կարելի է նկատել, Հայաստանը կարևոր տեղ է գրավում Քսենոփոնի Կյուրոպեդիայում։ Ի՞նչ պատմական արժեք է ներկայացնում նրա պատմածը Հայաստանի մասին։

Կյուրոպեդիայի վիպական բնույթն արդեն բավական է կասկածանք հարուցելու համար։ Ահա թե ինչու Հայաստանին նվիրված էջերը սովորաբար չեն ընդունվում և համարվում են պարզապես զուտ հորինվածք։ Իհարկե, երևակայական տարրերի առկայությունն ակներև է, այսպես, օրինակ, թատերական տեսարանները սոփեստական երկար առենախոսությամբ և երկրորդական ու նկարագրական մանրամասնությունները։ Սակայն կան որոշ կետեր, որոնք ուշադրություն են հրավիրում և նախնական քննություն պահանջում նախքան նրանց վավերականությունը մերժելը։ Նշենք Հայաստանի թագավորի գոյությունը, որի անունը հեղինակը

---

[1] Կյուրոպեդիա, III, 2, 3։
[2] Նույնը, V, 3։
[3] Նույնը, VIII, 6։

չի տալիս, բայց ասում է, որ նա ուներ երկու որդի՝ Տիգրան և Սաբարիս, և մի զորավար՝ Էմբաս։ Խոսվում է նաև հայերի ու խալդերի միջև եղած թշնամության և հաշտություն կնքելու մասին։

Վերջին տեղեկությունը, այնուհանդերձ, ֆիկցիա չէ, այլ պատմական եղելություն։ Խալդերը Ուրարտուի հին բնակիչներ էին։ Նրանց դիմադրությունը երկրի նոր տերերին՝ հայերին, բնական է և պատմությանը համապատասխան։ Կասկածելու պատճառ չկա։ 401 թվականին, երբ Քսենոփոնը անցնում է Հայաստանի միջով, նա ոչ մի ակնարկություն չի անում երկու ժողովուրդների թշնամության մասին։ Նրանց պայքարը, ուրեմն, այդ թվականից առաջ էր, և Քսենոփոնն իրավացի է այն զետեղելով Կյուրոսի ժամանակաշրջանում։ Մինչև 401 թվականը խալդերն արդեն տեղի էին տվել հայերի ճնշմանը։

Ահա մի հատուկ կետ, որը մեզ որոշ վստահություն է ներշնչում, մեզ զգուշացնում հայոց թագավորի և նրա որդիների մասին ասվածը սկզբից ևեթ մերժելու փորձի դեմ։

Հայոց թագավորի անձնավորությունը հասկանալու համար օգտակար կլիներ այն համեմատել ուրիշ նման դեմքերի հետ։ Այդպիսիներն են Ասորեստանի, Բաբելոնի, Արաբիայի, Կապադովկիայի, Սուզիանեի թագավորները։ Վերջին երեքը համապատասխանաբար կրում են Արագդոս, Արիբախոս, Աբրադատաս անունները, բայց դրանով նրանք ավելի պատմական չեն, քան Հայաստանի, Ասորեստանի և Բաբելոնի անանուն թագավորները։ Դրանք բոլորը մտացածին անձնավորություններ են, բայց իրականում մարմնավորում են գոյություն ունեցող կամ վերացած թագավորություններ։ Այս իմաստով միայն կարելի է ասել, որ նրանք պատմական դեմքեր են։

Պետության կազմակերպման միջոցին Կյուրոսը սատրապներ է նշանակում Արաբիայում, Կապադովկիայում, Մեծ և Հելլեսպոնտյան Փռյուգիաներում, Լիդիայում և Իոնիայում, Կարիայում։ Երեք երկրներ՝ Կիլիկիան, Պափլագոնիան և Կիպրոսը սատրապներ չեն ստանում, այլ մնում են ազգային առաջնորդների ղեկավարության տակ, որովհետև կամավոր կերպով անձնատուր էին եղել Կյուրոսին[1]։ Սակայն նրանք նույնպես պարտավոր են հարկ վճարել։

Հայաստանն ու Սուզիանեն այստեղ հանդես չեն գալիս։ Արաբիան և Կապադովկիան վերածվում են սատրապությունների, որովհետև Ասորեստանի դաշնակիցներն էին։ Սուզիանեի թագավորը կամավոր կերպով անցել էր Կյուրոսի կողմը։ Նա զոհվեց ճակատամարտի դաշտում։ Այդ պատճառով նա պետք է օգտվեր Կիլիկիային, Պափլագոնիային և Կիպրո-

[1] Նույն նկատառումներով Կամբիզը ներողամտորեն է վերաբերվում փյունիկեցիներին, երբ նրանք մերժում են գնալ կռվել Կարքեդոնի դեմ։ Հերոդոտ, IX, 19։

*սին վերապահված առավելությունից։ Հայոց թագավորը, ավելի շուտ նրա որդին ու հաջորդը, որը Կյուրոսի ընկերն էր, մնում է նրա մոտ մինչև նրա մահը։ Դրա շնորհիվ Հայաստանի պետությունը պահպանվում էր այնպես, ինչպես առաջներում, այսինքն՝ թագավորություն, որը կապված էր Կյուրոսի պետության հետ վասալական պարտավորություններով և ստիպված էր որոշ հարկ վճարել ու զինվորական օգնություն բերել անհրաժեշտության դեպքում։*

*Իր կյանքի վերջին օրերին Կյուրոսն իր որդի Թանաոքսարին է հանձնում մեդացիների, հայերի և կադուսացիների կառավարությունը։ Տեքստն ասում է, որ նա նշանակվում է սատրապ, որն այստեղ «կառավարիչի» սովորական իմաստը չունի, այլ «թագավորի» կամ «փոխարքայի», և համապատասխանում է Կտեսիասի* δεσπότης*-ին, որտեղից և վերցվել է այդ հատվածը։ Բացի այդ, ըստ Կտեսիասի՝ Կյուրոսը իր որդի Թանաոքսարին է շնորհում պետության արևելյան մասը՝ բակտրիացիների, խորազմացիների, պարթևների, քարմանների երկիրը։ Քսենոփոնը քմահաճորեն խեղաթյուրել է իր աղբյուրը*[1]*։*

*Տիգրան անունը, որ հայ իշխանը կրում է, ինքնին հատկանշական է մեզ զբաղեցնող հարցի համար։ Դա սովորական անուն չէ, ինչպես ուրիշ շատ անուններ, որոնց հանդիպում ենք ամենուրեք իրանական քաղաքակրթության աշխարհում։ Ավելի ուշ Տիգրան անունը երևան է գալիս որպես բացառապես հայկական անուն, ընդունված Արտաշեսի թագավորական դինաստիայում։*

*Տիգրան անունը, սակայն, ծագումով իրանական է։ Առաջին անգամ այդ անունը կրում է Քսերքսեսի բանակի զորքերի առաջնորդը՝ Աքեմենյանների տոհմին պատկանող Տիգրանը։*

*Մի երկրորդ Տիգրան ծանոթ է մոտավորապես 391 թվականին։ Նա Ստրութասի կամ Ստրուսեսի աղջիկներից մեկի ամուսինն է, մի զորավարի, որին պարսիկ թագավորն ուղարկեց Սարդես Տիրիբազի փոխարեն։ Թագավորի քաղաքականությունը այդ ժամանակաշրջանում կայանում էր հերթով Աթենքն ու Սպարտան մրցակցության մղելու մեջ, հույս ունենալով նրանց ուժերը ջլատել։ Ստրութասը Աթենքի կողմն անցավ, և սպարտացիների հետ կռվի ժամանակ նրա փեսան՝ Տիգրանն ու իր կինը գերի ընկան, բայց խոշոր փրկանք վճարելուց հետո ազատ արձակվեցին*[2]*։ Դրանից հետո այլևս այդ անունով պարսիկներ հայտնի չեն*[3]*։*

---

[1] *Կտեսիասն ասում է՝* Κῦρος... Τανυοξάρχην δε τὸν νεώτερον ἐπέστησε δεσπότην Βακτρίων και τῆς χώρας καὶ Χωραμνίων Παρθίων καὶ Καρμανίων.

[2] **Քսենոփոն**, *Հելլենականք*, IV, *8*, *21*։

[3] *Ստ. Բյուզանդացին մեջ է բերում Արրիանոսից մի հատված.* ᾽Αρριανὸς, ἔκτω παρθικῶν Τιγράνης (ἀρχόμενος) ἄρχεται σατράπης ἡ δέ χώρα ἧς ἐπῆρχε Χολοβητηνὴ ὀνομάζεται.

Հետագայում Տիգրան անունը հայերի մեջ մեծ տարածում է ստանում և ամենագեղեցիկ ու փառավոր անունն է համարվում, այն աստիճան, որ դառնում է ազգային անուն։ Ինչո՞վ բացատրել այդ համբավը, այդ նախասիրությունը մի անվան նկատմամբ, մանավանդ այնպիսի ժամանակ, երբ հռչակ էին վայելում պարթևական անունները։ Բոլորովին հավանական չէ ենթադրել, թե նրանք Կյուրոպեդիայի ազդեցությունն էին կրել։ Ոչ մի փաստ չկա, որ հաստատի, թե Արտաշեսի ժամանակ հայերը ծանոթ էին հունարեն տառերին։ Տեղին կլինի ընդունել, որպես ավելի հավաստի, որ հայերը պահպանել էին հին թագավոր Տիգրանի հիշատակը, որը ժամանակին թագավորել էր Հայաստանում, գուցե նույն Տիգրանի, որը հիշատակված է Կյուրոպեդիայում։ Հայերը, որ զենքով պայքարում էին Դարեհի դեմ և հարատև պատերազմի մեջ էին խալդերի հետ, պետք է որ կազմակերպված լինեին և ազգային առաջնորդ ունենային։ Տիգրան, Սաբարիս, Էմբաս անձնավորությունները չեն կարող հետագայում հնարված լինել ամբողջապես։ Եթե այս կետի վրա պնդելը այնքան էլ տեղին չէ, առավել ևս անօրինակ կլիներ այն թեթևորեն մերժելը։

Չմոռանանք, որ Մովսես Խորենացու պահպանած հայկական ավանդությունը լավ է ճանաչում Կյուրոսի ժամանակակից Տիգրան թագավորին և նույնիսկ հավակնում այն բանին, որ Աժդահակը, այսինքն՝ Աստիագը, սպանվել է ոչ թե Կյուրոսի, այլ Տիգրանի կողմից։

Վերջապես, մեծ կարևորություն ունեցող մի վկայության համաձայն, Բրիտանական թանգարանում սելևկյան ժամանակաշրջանի սեպագիր մի սալիկ է պահպանվում, որի վրա կարդացվում է «(Տ)իգրան Հայաստան երկրի թագավոր»[1]։

Ցավում ենք, որ չկարողացանք ստուգել այդ վավերագրի գոյությունը, որը վճռելի հարցի համար առաջնակարգ նշանակություն ունի։ Եթե այդ իրողությունը հաստատվի, ուրեմն, վճռական ապացույց կունենանք, որ Արտաշեսից առաջ թագավորական դինաստիա է գոյություն ունեցել և Տիգրան անունը այնտեղ արդեն սովորական է եղել։ Դա աներկբայորեն կհաստատի այն դրույթը, որ մենք փորձեցինք պաշտպանել։

---

*Այս Տիգրանը սատրապ չէ, այլ հայոց թագավորներից մեկը՝ Արտաշեսի տնից։ Խոլոբետենեն* Βαλοβητηνή-*ի վատ ընթերցումն է. սա հայկական Բալահովիտն է, այժմյան Բալուի (Պալու) շրջանը, որ Արածանու վրա է գտնվում։*

[1] **W. Belck,** Aus den Berichten über die armenische Expedition, «Zeitschrift für Ethnologie», *1899, էջ 269—270։*

## Դ

# ՀԱՅԱՍՏԱՆԸ ԱՔԵՄԵՆՅԱՆ ՊԵՏՈՒԹՅԱՆ ԿԱԶՄՈՒՄ

Կյուրոսը տեր դարձավ մեդացիների պետության և այն վերափոխեց պարսիկների պետության։

Ինչքան էլ մեծ լինի այս փոփոխման կարևորությունը, միևնույն է, դա բոլորովին նման չէ այն արյունահեղ ապստամբություններին, որոնք կործանում են մի քաղաքական շենք և նրա ավերակների վրա կառուցում մեկ ուրիշը։ Մեդացիներն ու պարսիկները երկու եղբայրակից ժողովուրդներ էին։ Գերագույն իշխանության փոխանցումը մեկից մյուսին ավելի շուտ այնպիսի պետական մի հեղաշրջում էր, որի շնորհիվ կառավարության գլուխ էր անցնում մի նոր դինաստիա։ Պետությունը մնաց այնպես, ինչպես կար, առանց սատրապական կարգերի վրա հիմնված իր կազմակերպության մեջ էական փոփոխություններ կրելու։

Կյուրոսը նոր նվաճումներով ընդարձակեց պետությունը և նրա սահմանները հասցրեց մինչև էգեյան ծովի արևելյան ափը, իսկ արևելքում՝ Հնդկաստանի մոտերքը։ Նրա որդին՝ Կամբիսը, հպատակեցրեց Եգիպտոսը, Լիբիան և Նուբիան (Եթովպիա), այնպես որ հսկայական պարսկական պետությունը համարյա ընդգրկեց հին քաղաքակրթության երկրների ամբողջությունը։

Կամբիսից հետո, մի նոր պետական հեղաշրջումով, Կյուրոսի ընտանիքից գահն անցավ Դարեհի ընտանիքին։ Այդ հեղաշրջումը լուրջ հետևանքներ ունեցավ։ Դարեհի հանդգնությանը երկիրը պատասխանեց համարյա ընդհանուր ապստամբությամբ։ Հենց այդ խառնակության ժամանակ է, որ հայերն արդեն առաջին անգամ ներկայանում են պատմության մեջ՝ հափշտակչի դեմ ապստամբած ժողովուրդների շարքում։

Անհրաժեշտ է, ուրեմն, կանգ առնել խռովությունների ծագման և ընթացքի վրա. թեպետ այդ խնդիրը մեր անմիջական նյութին չի վերաբերում, այնուհանդերձ դա շատ կարևոր է՝ Դարեհի դեմ հայերի պայքարի բնույթը և Հայաստանի պատմության մեջ նրա նշանակությունը ուսումնասիրելու համար։

Կյուրոսը Անշանի թագավորն էր, երբ ձեռնարկեց իր նվաճումները։ Նրա հայրը՝ Կամբիսը, պապը՝ Կյուրոսը, և պապի հայրը՝ Չիշպիշը կամ Թեիսպեսը, նույնպես թագավորում էին Անշանում[1]։ Դրանից ավելի ոչինչ հայտնի չէ Կյուրոսի նախնիների և ոչ էլ այն երկրի մասին, որը գտնվում

[1] Կյուրոսի գլանը՝ **E. Schrader,** Keilinschriftliche Bibliothek, III, 2, էջ 121։ Նույնպես **F. H. Weissbach**, Die Keilinschriften der Achämeniden, էջ 5։

էր նրանց տիրապետության տակ՝ մինչև վերջերս հայտնաբերված Աշուրբանիպալի արձանագրությունը։ Այս սուրական թագավորը Էլամի դեմ արշավելու ընթացքում, իր թագավորության երեսուներորդ տարում, այսինքն՝ 639 թվականին, Կուրաշ անունով իշխանից մեծարանք է ստանում։ «Պարսումաշի թագավոր Կուրաշը,— ասում է նա,— լսել էր իմ տերեր, մեծ աստվածներ Աշուրի, Բելի և Ներոյի օգնությամբ Էլամի դեմ իմ տարած փառավոր հաղթանակը, որով ես մրրկաբեր ալիքի նման կործանել էի ամբողջ Էլամը, և նա իր անդրանիկ որդուն՝ A-ru-uk-ku-ին հղեց ինձ մոտ, Նինվեի իմ ապարանքը, նրա հետ ուղարկելով հարկ, որպեսզի հայտնի իր «վասալությունը» ardutu և խնդրի իմ գերիշխանությունը»[1]։

Կուրաշը, անտարակույս, Կյուրոսի պապն էր, իսկ Պարսումաշը, որտեղ նա իշխում էր, պետք է որ նույնացվի Անշանի հետ։ Այդպես էին կոչվում Էլամից հյուսիս՝ Կարունի ակունքների վրա գտնվող լեռնային շրջանները[2]։

Կուրաշը,— կոչենք նրան Կյուրոս I,—խոհեմությունից ելնելով, Ասորեստանի ագրեսիայից խուսափելու համար, դառնում է նրա վասալը։ Ասորեստանի անկումից հետո Պարսումաշը, Ասորեստանի ամբողջ ժառանգության հետ մեկտեղ, անցնում է պետության նոր տիրոջ՝ Կիաքսարի գերիշխանության տակ և, հավանաբար, մնում Մեդիայի վասալ երկիր մինչև այն օրը, երբ Կյուրոս II-ը 553 թվականին մեդացիներից խլում է գերիշխանությունը։

Կյուրոս II-ի որդի ու հաջորդ Կամբիսից հետո, շատ շփոթ պայմաններում, գահն անցնում է Դարեհին։ Դարեհը պնդում է, որ ինքը նույն թագավորական ընտանիքից է, բայց կողմնակի ճյուղից։ Նրա պապի հայր

---

[1] Աշուրբանիպալի պրիզման, հայտնաբերված գերմանական հնախուզությունների միջոցով Բաբելոնում և հրապարակված Վայդների կողմից՝ **Weidner**, Die älteste Nachricht über das persische Königshaus, Kyros I ein Zeitgenosse Aššurbanipals, «Archiv für Orientforshung», VII, 1931։

[2] Օպպերտից ու Սեյսից սկսած Անշանի տեղը բազմաթիվ վիճաբանությունների առարկա է դարձել։ Մայսների շումերա-աքքադերեն բառարանի համաձայն (Babylonien und Assyrien, II, 376), Անշանը կամ Աշշանը Էլամի շումերական անունն է։ Սակայն ասորեստանցիները Անշանը տարբերում էին Էլամից։ Սեննաքերիբը իր ութերորդ արշավանքում նշում է Էլամը, Անշանը և Պարսումաշը։ Պետք է կարծել, որ Անշանը ցույց է տալիս գլխավորապես Էլամի լեռնային մասը։ Գալով Պարսումաշին (որը, թվում է, Պարսուվաշի ասուրերեն արտասանությունն է), այն կարող է միայն Պարսուաշը լինել, որը գործածվում էր Անշանի որոշ շրջանը ցույց տալու համար։ Պարսուաշ, Պարսուա նույն տերմինն է, մի հզոր ցեղի անուն՝ Մանայից հարավ-արևելք, որը Սալմանասար III-ի օրով 27 թագավորներ (ցեղերի առաջնորդներ) ուներ։ Սարգոնը Բիտ-Խամբանի (Կամբադին) հետ նշում է և Պարսուան, իսկ Սեննաքերիբը այն տեղադրում է Էլամի մոտ։ Այն տպավորությունն է ստացվում, թե պարսուացիների ցեղը հավանաբար ետ է մղվել Մադա ցեղի կողմից՝ հյուսիսից դեպի հարավ, ուր վերջնականապես տեղավորվել է բուն Պարսկաստանում։

Արիյարամնան Չիշպիշի որդին էր, և քանի որ մենք գիտենք, թե Կյուրոս I-ը նույնպես Չիշպիշի որդին էր, հետևաբար, Կյուրոս I-ը և Արիյարամնան միամայր եղբայրներ էին։ Կյուրոս II-ը կամ Մեծը իր նախնիները հաշվում է մինչև Չիշպիշը։ Դարեհը դրա վրա ավելացնում է Չիշպիշի հայր Հախամանիշին։ Ծննդաբանական ծառը հետևյալ տեսքով է ներկայանում.

Հախամանիշ

Չիշպիշ

| | |
|---|---|
| Կուրաշ I | Արիյարամնա |
| Կամբուժիյա I | Արշամա |
| Կուրաշ II | Վիշտասպա |
| Կամբուժիյա II | Դարայավահուշ |

Առաջին ճյուղն իշխում էր Անշանում կամ Պարսումաշում, երկրորդը՝ Պարսկաստանում։ Կյուրոս II-ը չի հիշատակում Հախամանիշին։ Ըստ Հերոդոտի՝ Ἀχαιμένης Աքայմենես կամ Աքեմենես՝ Պարսկաստանում Պասարգադես կլանի ցեղերից մեկի անունն է։ Ուրեմն, Դարեհի ընտանիքը կրում էր այն ցեղի անունը, որին պատկանում էր։ Բոլորովին հավանական չէ, որ Անշանում թագավորող Կյուրոսի ընտանիքը Պասարգադեսի ցեղերից մեկի սերունդը եղած լինի։ Այս ամենը կասկած է ներշնչում երկու ճյուղերի ազգակցության մասին և տեղիք է տալիս մտածելու, որ Դարեհը ուզեցել է արհեստականորեն միացնել իր ծագումը թագավորական ընտանիքի ծագման հետ՝ իր բռնատիրությունը օրինականացնելու համար[1]։

Սակայն բախտի բերումով վերջերս հայտնաբերվեց մի արժեքավոր արծաթի կտոր՝ սեպագիր պարսկական արձանագրությամբ, ուր Արիյարամնան իրեն վերագրում է «մեծ թագավոր, թագավորների թագավոր, Պարսկաստանի թագավոր» տիտղոսը և ասում, որ ինքը «Չիշպիշի որդին և Հախամանիշի թոռն» է[2]։

Թվում էր, թե դա բավական է՝ կարճ կտրելու ամեն մի վիճաբանություն և արդարացնելու Դարեհի ծննդաբանությունը։ Սակայն որոշ լուրջ գիտնականներ կասկածանքի տակ առարկայի վավերականությունը։ Արձանագրության լեզուն իր մեջ պարունակում է ավելի ուշ ժամանակի որոշ

---

[1] **Andreas**, «Verhandlungen des XIII Internationalen Orientalischen Kongresses», Hamburg, *1902*.

[2] **Herzfeld E.**, Archäologische Mitteilungen aus Iran, II, *1930, էջ 113 և հաջ.*։

*Դարեհն ու Քսերքսեսը ասում են* Haxamanišiya *«Հախամանյան» կամ «Աքեմենյան», որից եզրակացվում է, որ նրանք այդ անվան տակ հասկանում են մի ցեղ։ Արիյարամնան իրեն կոչում է Չիշպիշի որդի և* Haxamaniš-ahya napa, *Հախամանիշի թոռ։ Հախամանիշն այստեղ նկատի է առնված որպես մի անձնավորություն։ Սեռականի հոլովաձևը ճիշտ չէ, պետք էր ասել* Haxamanaiš, *ինչպես* Čišpiš-*ից ստացվում է* Čišpaiš*։ Արտաքսերքսես Մնեմոնը խոնարհում է* Darayavahuš *անունը սեռ.* Darayavahušahya *փոխանակ* Darayavahauš-*ի*։

անկանոն ձևեր, որոնք հանդես են գալիս Արտաքսերքսես Մնեմոն թագավորի ժամանակ, և այդտեղից էլ կասկած է առաջանում, թե վավերագիրը ծագում է այդ թագավորի իշխանության ժամանակից[1]։

Նույնպես անհասկանալի է, որ Կյուրոս I-ը ներկայանում է որպես սոսկ թագավոր Պարսումաշի կամ Անշանի, մինչդեռ նրա կրտսեր եղբայր Արիյարամնան կրում է Պարսկաստանի «թագավոր թագավորաց» մեծաշուք տիտղոսը։ Պարսումաշը անշուշտ նույնանում է այն Պարսուաշի հետ, որը Սեննաքերիբը հիշատակում է Անշանի հետ։ Ոչինչ ցույց չի տալիս, որ Պարսուաշը ավելի սերտորեն կապված լինի Պարսկաստանի հետ, քան Անշանի։ Պետք է նույնպես նշել երկու տոհմերի անունների միջև եղած տարբերությունը՝ Կյուրոս-ը և Կամբիս-ը ծագումով մթին անուններ են, իսկ Արիյարամնա-ն, Արշամա-ն, Վիշտասպա-ն զուտ իրանական անուններ են[2]։

Որն էլ լինի հարցի վերջնական լուծումը, նույնիսկ ընդունելով, որ ամեն ինչ կարգին է Դարեհի ծննդաբանության մեջ, այսուհանդերձ փաստը մնում է փաստ, որ նա բռնատիրող էր, քանի որ խլել էր թագը թագավորական տոհմից։

Դարեհի՝ գահին տիրանալու պարագաները և այն հակազդեցությունը, որ այդ բռնության հետևանքով առաջացավ երկրում, շատ նշանակալից են։ Չէ՞ որ Դարեհը պետք է պատասխանատու լիներ թագաժառանգ Բարդիյա իշխանի սպանության համար, և նա էր առաջ քաշել կեղծ-Բարդիյայի պատմությունը՝ իրեն արդարացնելու համար։ Դա մի վարկած է, որը գիտական հարուստ գրականության առիթ է հանդիսացել, բայց, այնուհանդերձ, միշտ մնում է վիճաբանության առարկա։ Այդ հարցում Հերոդոտի մեզ փոխանցած տեղեկությունները շատ կետերով անհարիր են։ Բահիստան ժայռի վրա Դարեհի փորագրել տված օրագիրը հեռու է անկեղծ լինելուց. հեղինակը սույն գործում շատ է շահագրգռված, որպեսզի նրանից կարելի լինի սպասել անկեղծ և օբյեկտիվ շարադրանք անցածի մասին։ Իր հաղթանակի հենց հաջորդ օրը նա պաշտոնական վերսիա մշակեց և այն միտումնավոր կերպով տարածեց երկրում՝ ժողովրդի խախտված վստա-

[1] Դա Հ. Հ. Շրադերի կարծիքն է՝ «Sitzungsberichte der Preussischen Akademie d. Wissenschaft», Phil.-hist. Klasse, 1931, էջ 635, որը պաշտպանվել է Վ. Բրանդենշտայնի կողմից՝ «Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes», XXXIX, Heft 1 և 2, 1932, էջ 13։

[2] Սեյսի համաձայն, Κύρος էլամերեն նշանակում է հովիվ։ The Ancient Empires of the East, էջ 62։ Եթե վստահ լինեինք, որ դա իրանական ծագում ունեցող բառ է, կարելի էր այնտեղ տեսնել kuru (երեխա) բառը, իսկ դա կբացատրեր այն ավանդությունը, ուր նա ներկայանում է որպես երեխա, երեխաների առաջնորդ։ Հունարեն Κύρος, Κῦρος-ն է երևում այստեղ, և ոչ պարսկական անունը։

հությունը վերականգնելու համար։ Անկասկած, նման վավերագիրը միշտ կարոտ է երաշխավորության։

Հերոդոտը սոսկ վերարտադրում է պաշտոնական վերսիան։ Նա զարդարում է այն եղեռնին մասնակցած զանազան անձնավորությունների մասին զվարճալի պատմվածքներով։ Պատմվածքներ, որոնք, անտարակույս, շրջում էին ժողովրդի մեջ, և որոնց միտումն այնքան թափանցիկ է, որ զենք է մատուցում քննադատությանը։

Ըստ Դարեհի՝ Կամբիսը մի եղբայր ուներ, որի անունն էր Բարդիյա, և նա նրան թաքուն կերպով ոչնչացնել էր տվել, ու ոչ ոք այդ բանը չէր իմացել։ Ապա Կամբիսը արշավում է Եգիպտոսի դեմ։ Այդ ժամանակ ժողովուրդը թագավորի նկատմամբ թշնամական ընդհանուր շարժումով ոտքի է ելնում, և «սուտը» drauga տարածվում է ամբողջ պետության մեջ։ Գաումատա անունով մի մոգ օգտվում է խլրտումից և հայտարարում, թե ինքը Կյուրոսի որդին ու Կամբիսի եղբայրն է։ Ժողովուրդը երես է դարձնում Կամբիսից և անցնում Գաումատայի կողմը, որն այդպիսով տիրանում է իշխանությանը։ Ոչ ոք չհամարձակվեց դուրս գալ նրա դեմ։ Վախենում էին, որ նա կարող էր ոչնչացնել նրանց բոլորին, ովքեր ճանաչում էին Բարդիյային, որպեսզի ինքը չմատնվի։ Գործն այդ դրության էր, երբ Դարեհը մի խումբ հավատարիմների հետ վրա հասավ և սպանեց Գաումատային ու նրա ամենաեռանդուն կողմնակիցներին։ Նա իր ձեռքը վերցրեց իշխանությունը և այսպիսով հանձին իր վերականգնեց Աքեմենյան հարստությունը, որին նա պատկանում էր։ Այդ շրջանում բազմաթիվ երկրներ մեկը մյուսի ետևից ապստամբեցին նրա դեմ, իսկ նա ճնշեց նրանց և պատժեց նրանց խռովարար առաջնորդներին։ Ի վերջո նա դիմում է ընթերցողներին և բազում անգամ հորդորում հավատալ իր գրածին, որովհետև ինքը ճշմարտությունն է ասում, իսկ իր խռովարար բոլոր հակառակորդները «ստախոսներ» են։

Այնուհանդերձ, զարմանալի է, որ Գաումատայի արկածախնդրությունը ոչ մի թշնամական ցույցի չէր հանդիպել, մինչդեռ Դարեհը իր գահակալությամբ հեղափոխական փոթորիկ բարձրացրեց ամբողջ պետության մեջ։ Ենթադրված վախը բոլորովին էլ հիմնավոր պատճառ չէ. նույն զգացումը կարող էր ծնվել նաև Դարեհի նկատմամբ, որն ավելի մարդկային չէր, քան Գաումատան. հենց այդ նույն Դարեհը խաչել տվեց[1] Բաբելոնի ամենահայտնի մարդկանցից 3000 հոգուց ավելի։

Պաշտոնական վավերագրում իր սածի ճշմարտության մասին կրկնակի հավաստիացումը նույնպես վստահություն չի կարող ներշնչել։ Ճշմարտությունը ռեկլամի կարիք չունի։

---

[1] Հերոդոտ, III, 159՝ «ցցի հանեց»։

Հերոդոտի պատմությունը պարունակում է կետեր, որոնք խորհելու տեղիք են տալիս։ Այստեղ թատերաբեմ են ելնում բազմաթիվ դերասաններ։ Նախ՝ Կամբիսի մինիստր Պրեքսասպեսը (ավելի ճիշտ՝ Պրաքսասապես), որին հանձնարարված էր վերջ տալ Բարդիյային։ Նա գնում է Սուզա (Շոշ) և կատարում եղբայրասպան հրամանը, ըստ ոմանց՝ որսի ժամանակ, ըստ ուրիշների՝ զոհին գցելով Էրիթրեական ծովը, որի տակ այստեղ պետք է հասկանալ Պարսից ծոցը։ Ապա՝ մոգի եղբայր Պատեյզիթեսը, որը հղացել էր իր եղբորը սպանված իշխանի տեղ անցկացնելու միտքը։ Մոգը նույն անունն է կրում, ինչ որ Բարդիյան (հունացված ձևով՝ Սմերդիս), և զարմանալիորեն նման էր Բարդիյային։ Մոգը գրավում է պալատը և ամուսնանում Բարդիայի քույր և կին Ատոսսայի ու Բարդիայի քեռու, պալատի աստիճանավոր Օտանեսի դուստր Փայդիմեի հետ։ Մոգի խաբեության հայտնաբերման պատիվը Օտանեսին է պատկանում և ոչ թե Դարեհին։ Իսկապես զարմանալի է, որ մոգի երկու կանայք՝ Ատոսսան և Փայդիմեն, մեկը՝ Բարդիյայի քույրը, մյուսը՝ նրա հարազատ զարմուհին, չէին նկատել, որ իրենց ամուսին մոգը Բարդիյան չէ։ Օտանեսը Փայդիմեին բացատրում է, որ Կյուրոսը ժամանակին կտրել է մոգի ականջները։ Փայդիմեն ստուգում և հաստատում է իրողությունը։ Օտանեսն այլևս չի կասկածում, որ մոգը խաբեբա է։ Նա հինգ ուրիշ գործակիցների հետ դավադրություն է սարքում։ Այդ միջոցին Պարսկաստանից Սուզա (Շոշ) է գալիս Դարեհը և միանում դավադիրներին։ Նրանք գրավում են պալատը, սպանում քուրմին ու նրա եղբորը։ Դա տեղի է ունենում Շոշում, որը չի համընկնում Բահիստանի արձանագրության հետ, ըստ որի՝ սպանությունը կատարվել է Մեդիայում՝ Սիկայահուվատի ամրոցում։

Ապա դավադիրներն սկսում են խորհրդակցել կառավարության երեք ձևերից մեկն ընտրելու մասին՝ դեմոկրատիա, օլիգարխիա և միապետություն, ու կանգ առնում միապետության վրա։ Հայտնի է այն ուղին, որը Դարեհին գահին հասցրեց։ Դա ժառանգական իրավունքը չէր, որին հավակնում է Դարեհը, այլ նրա ձին, որը, շնորհիվ ախոռապետի խորամանկության, վճռեց իր տիրոջ ճակատագիրը։

Անտարակույս, այս պատմության մեջ երևակայությունն իր բաժինն ունի։ Սակայն այնտեղ հիշատակված անձնավորությունները չեն կարող մտացածին լինել։ Կեղծված է միայն այն դերը, որ նրանք խաղացել են իրադարձություններում, Բարդիյայի պատմությանը քմահաճ մեկնաբանություն տալու միտումով։ Մեզ թվում է, որ Կամբիսի մահից հետո եղած ամբողջ անցուդարձը խեղաթյուրված է։

Ինչո՞ւ է Կամբիսը ստիպված լինում ազատվել իր եղբորից։ Հերոդոտը պատրաստ է պատասխանելու։ Բարդիյան մասնակցել էր Եգիպտոսի դեմ կատարած Կամբիսի արշավանքին, որի ընթացքում Եթովպիայի թագա-

վորը մի հաստ ու հզոր աղեղ էր ուղարկել, անշուշտ, իր սեփական ուժը ցուցադրելու համար։ Պարսիկներից ոչ ոք բավական ուժեղ դուրս չեկավ այն գործածելու համար։ Միայն Բարդիյային հաջողվեց երկու մատով լարել այն և դրանով, բնականաբար, մեծ անուն շահեց։ Կամբիսը նախանձեց և անմիջապես եղբորը Պարսկաստան ուղարկեց ու միևնույն ժամանակ գաղտնի հրաման տվեց Պրեքսասպեսին՝ նրան սպանել։ Կտեսիասին հայտնի է այս պատմությունը, և նա այն մեջ է բերում Կյուրոսի ժամանակ։ Դերբիկների դեմ կատարած արշավանքի ժամանակ է, որ Կյուրոսը ստացել էր թշնամու կողմից ուղարկված աղեղը։ Մասսագետների և նրանց թագուհի Թոմիրիսի դեմ կատարած ճակատագրական պատերազմի մասին է խոսքը։ Գալով աղեղին, Կտեսիասը Բարդիյային հիշատակում է Թանիոքսար անվան տակ, որ նշանակում է «Հզոր մարմին», կատարելապես դյուցազներգական ածական և Բարդիյայի ժողովրդական բարձր համբավի անվիճելի ապացույց։

Եղեռնի պաշտոնական վերսիան չի անտեսում Բարդիյայի համբավը։ Նա Բարդիյայի սխրանքը տեղափոխում է Եգիպտոսի արշավանքի պահը միայն այն նպատակով, որ պատճառ լինի նրա սպանության։ Եթե Կամբիսը վախենում էր իր եղբոր հռչակից, կամ եթե այն ատոիճան նախանձում էր, որ ուզում էր նրան սպանել, նա յոթ տարի չէր սպասի այդպիսի ոճիր կատարելու համար։ Քանի որ պատճառը վիճելի է, ոճիրը դառնում է խախուտ։ Իրականում ստուգապես հայտնի չէ, թե ում կողմից և ինչպիսի պայմաններում էր սպանվել Բարդիյան։ Պրեքսասպեսը, քանի դեռ ապրում էր, ուրանում էր իր հանցագործությունը և ինքնասպանության ժամանակ միայն ընդունեց իր հանցանքը։ Մահվան դատապարտված մեկի խոստովանությունը արժեք չունի լուրջ դատաքննության համար։ Նմանապես հայտնի չէ, թե զոհին ոչնչացրել են պալատո՞ւմ, որսի ժամանա՞կ, թե Էրիթրեական ծովում։

Ամեն ինչ գալիս է ասելու, որ Բարդիյան սպանվել է ոչ թե Կամբիսի հրամանով, այլ, իհարկե, յոթ դավադիրների կողմից։ Ինչ որ պաշտոնական վերսիայում ասված է մոգ Բարդիյայի վերաբերյալ, իրականում վերաբերում է իսկական Բարդիյային։ Հետևաբար, մոգ Բարդիյա գոյություն չի ունեցել։ Դա Դարեհի կողմից ստեղծված ուրվական է։

Համաձայն իր հոր վերջին կարգադրությունների, Բարդիյան իշխում էր պետության ամբողջ արևելյան մասի վրա, որոնք էին՝ Պարթևստանը, Քարմանիան և այս վերջիններից արևելք գտնվող նահանգները՝ Խորամնիան կամ Խորազմիան, Բակտրիան՝ ներառյալ Մարգիանեն և նույնիսկ Արախոզիան։ Դրանով է բացատրվում այն կատաղի դիմադրությունը, որ այդ նահանգները ցուցաբերեցին Դարեհի դեմ։ Կամբիսի բացակայության կամ, գուցե, Եգիպտոսից վերադառնալու ճանապարհին նրա մահվան

ջուրը լսելուց հետո, Թագի օրինավոր ժառանգ Բարդիյան գալիս է Շոշ մայրաքաղաքը և գլխին դնում խույրը։ Զմոռանանք, որ պարսիկները մի սովորություն ունեին, որի համաձայն թագավորները արշավանքի պատրաստվելիս ապահովում էին հաջորդականությունը իրենց ժառանգորդ նշանակելով[1]։ Կամբիսը ուրիշ ժառանգ չուներ, բացի իր միակ եղբայր Բարդիյայից։

Կամբիսն իր բռնակալական բնավորության համար երկրում սիրված չէր։ Նրա երկու մինիստրները ոչ մի պատճառ չունեին նրան խնայելու։ Նա դաժանորեն սպանել էր Պրեքսասպեսի որդուն և կտրել էր տվել ականջները Պատեյզիթեսի, որը ոչ թե մոգի եղբայրն էր, այլ հենց ինքը՝ մոգը[2]։ Իհարկե, վերոհիշյալ պաշտոնյաները առաջինը կլինեին Բարդիյայի թագադրությունը շնորհավորողներից։

Կյուրոպեդիայի վերջին գլխում Քսենոփոնը նկարագրում է պարսկական պետության անկումը, որն սկսվել էր Կյուրոսի մահից հետո, երբ գրժտություն ծագեց նրա որդիների միջև և նահանգներն ապստամբեցին։ Նա գիտե, որ Կյուրոսը պետությունը բաժանել էր իր երկու որդիների՝ Կամբիսի և Թանաոքսար-Բարդիյայի միջև։ Խռովությունների հեղինակը՝ կեղծ Բարդիյան, Քսենոփոնի կողմից նկատվել է որպես Կյուրոսի որդի, այսինքն՝ որպես իսկական Բարդիյա։

Էսքիլոսը նույնպես հիշատակում է Բարդիյային, որին անվանում է Մարդիս։ Նրա Պարսիկներ ողբերգության մեջ Դարեհի ուրվականը երևում է և ասում, որ Մեդոսից ու նրա որդուց, Կյուրոսից ու նրա որդուց հետո հինգերորդ թագավորը եղավ Մարդիսը, αἰσχύνη πάτρα θρονοίσι τ'ἀρχαίοισι «հայրենիքի և հին գահի ամոթը», որին քաջ Արտափրենեսն իր գործակիցների հետ խորամանկությամբ սպանեց։ Որից հետո «ճակատագիրն ինձ տվեց,— ասում է Դարեհը,— ինչ որ ես ցանկանում էի»[3]։

Մարդիսը, որ թվարկված է իդեալական թագավոր Կյուրոսի կողքին, չի կարող խաբեբա լինել։ Մարդիսի հասցեին ասված նախատական խոսքերը ակնարկություն չեն նրա կեղծ լինելուն։ Եթե նա կեղծ Մարդիս լիներ, նրան այդպես էլ կորակեին։ Այդ խոսքերը Դարեհի բերանում ուրիշ իմաստ ունեն. Դարեհը, բնականաբար, պետք է վարկաբեկեր մի մարդու, որից խլել էր թագը։ Դա իր հափշտակությունն արդարացնելու ձև է։

Արտափրենեսը պարսկական Արտափերնես անունն է, իսկ Արտափերնեսը վերարտադրում է Ինտափերնես անունը, հին պարսկերեն՝ Վինդա-

---

[1] Հերոդոտ, VII, 2։

[2] Հերոդոտն ասում է, որ ականջները կտրվել էին Կյուրոսի կողմից։ Հավանական է, որ այս չարագործության հեղինակը Կամբիսը լինի, ինչպես ասում է Հուստինոսը։

[3] Էսքիլոս, Պարսիկներ, 765—779։

փառնա։ Դարեհն այդ անունով մի եղբայր ուներ, բայց խոսքը նրա մասին չէ։ Յոթ դավադիրներից մեկը այդ անունն էր կրում։ Գուցե, նա դավադրության իսկական կազմակերպիչն էր, հակառակ Հերոդոտին, որն այդ դերը Օտանեսին է վերագրում։ Դարեհը, թվելով իր գործակիցներին, առաջին հերթին նշում է Ինտափերնեսին, անտարակույս, որովհետև նա էր սպանել Բարդիյային։ Ավելի ուշ Դարեհը նրան մահվան դատապարտեց իր ամբողջ ընտանիքի հետ միասին, պալատի պահակին նախատելու պատրվակի տակ։ Իրական պատճառը նրա գոռոզությունն էր. պատմագիրը խոստովանում է, որ նա աշխատում էր խռովություն սերմանել[1]։ Նշանակում է՝ նա հավակնություն ուներ գահ բարձրանալու։

Էսքիլոսը նկատում է, որ թագավորությունը Դարեհին հասավ որպես բախտի պարգև, հետևաբար, ուրեմն, ոչ որպես ժառանգություն։

Դարեհի ժամանակ ամբողջ երկիրը բռնկվեց խռովահույզ ապստամբությամբ։ Դա արդեն լավագույն ապացույցն է, որ Բարդիայի գործում մթին ու խարդախ չարագործություն էր կատարվել։ Դարեհը Բահիստանի ժայռի վրա խնամքով փորագրել տվեց ապստամբությունների պատմությունը։ Հակառակ կրկին ու կրկին արված հավաստիացումներին, թե ինքը սիրում է ճշմարտությունը, ատում է սուտը, իսկ իր հակառակորդները ստախոսներ են, այնուհանդերձ, փորագրված օրագիրը չի դիմանա քննադատության։ Որպեսզի նման հավաստիացումների ազդեցության տակ չընկնենք, անօգուտ չէր լինի իմանալ թագավորի անձնական կարծիքը ճշմարտության ու ստի մասին։ Պատմահայրը իր հոտառության ըսքանչելի ապացույցն է տվել՝ մեջբերելով Դարեհի մի ճառը, որը վերին աստիճանի բնորոշ է։ Դավադիրների խորհրդում Դարեհը զարգացնում է այն միտքը, թե «այն դեպքում, երբ անհրաժեշտ է ստել, չպետք է խղճի խայթ զգալ։ Ստողը նույն բանն է հետապնդում, ինչ որ ճշմարիտ խոսողը։ Ստում են որևէ օգուտ քաղելու համար, նախընտրում են ճշմարտությունն ասել կա՛մ որոշ առավելություն ձեռք բերելու, կա՛մ մեծ վստահություն շահելու համար։ Կարճ ասած, սուտը և ճշմարտությունը միմիայն երկու միջոցներ են նույն նպատակին հասնելու համար»[2]։

Ի հարկե, չի կարելի կուրորեն հավատալ նման մտայնություն ունեցող մարդու պատմվածքին։ Այդպիսին է Բահիստանի նրա պատմությունը։ Հեղինակն այնտեղ մեկից ավելի անգամ հայտարարում է, որ իր ընտանիքը թագավորում էր շատ վաղուցվանից երկու ճյուղերով։ Նա խնամքով շարադրում է այն ճյուղի ծննդաբանությունը, որին ինքն էր պատկանում, բայց զգուշանում է մյուս ճյուղի ծննդաբանությունը ներկայացնե-

---

[1] Հերոդոտ, III, 119։
[2] Նույնը, III, 72։

*յուց։ Նա բավարարվում է ասելով, որ ինքն իններորդ թագավորն է, բայց լռություն է պահպանում այն կարևոր կետի վերաբերյալ, թե ինչպես է նա ժառանգել գահը, երբ իր հայրը և նույնիսկ պապը, երկուսն էլ դեռ կենդանի, սոսկ մասնավոր անձինք էին։ Նա հաճախ կրկնում է՝* Ahuramazdah xšathram mana frabara—*Ահուրամազդան ինձ փոխանցեց թագավորությունը, որով, գուցե, ակնարկվում է, թե հաջորդականության կարգում ցատկ կատարվեց, որպեսզի հերթն իրեն հասնի։*

*Դարեհն իր գահակալության մասին խոսում է որպես սովորական գահակալության, որպես հաջորդության իրավունքի բնական արդյունքի, և հավաստիացնում, որ ամբողջ պետությունը հպատակվեց իր իշխանությանը՝ հարկ տալու և իր հրամանները կատարելու առումով։ Պետությունը բաղկացած էր քսաներեք երկրներից՝ Պարսա (Պարսկաստան), Ուվադջա (Էլամ), Բաբիրուշ (Բաբելոն), Աթուրա (Ասորեստան), Արաբայա (Արաբիա), Մուդրայա (Եգիպտոս),* tyaiy drayahya *(ծովի երկիր), Սպարդա (Սարդես), Յաունա (Իոնիա), Մադա (Մեդիա), Արմինա (Հայաստան), Կատպատուկա (Կապադովկիա), Պարթավա (Պարթևստան), Զարանկա (Դրանգիանե), Հարաիվա (Արիեա), Հուվարազմի (Խորազմիա), Բակտրիշ (Բակտրիանե), Սուգուդա (Սոգդիանե), Գանդարա (Գանդարիա), Սակա (Սկյութիա), Թատագուշ (Սաթթագիդիա), Հարախուվատիշ (Արախոզիա), Մակա (Մեկրան), ընդամենը քսաներեք։*

*Ամեն ինչ կարգին էր, երբ Գաումատա քուրմը խաղաղությունը խանգարեց։ Կամբիզը սպանել էր իր եղբայր Բարդիյային նախքան Եգիպտոսի դեմ արշավանքի գնալը։ Նրա բացակայության ժամանակ «ժողովուրդը թշնամացավ Կամբիզին», իսկ սուտը* drauga *տարածվեց Պարսկաստանում, Մեդիայում և ամենուրեք պետության մեջ...*

(Անավարտ)

# Հ Ո Դ Վ Ա Ծ Ն Ե Ր

## Ա

## ԱՍՈՐԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐՆ ՈՒՐԱՐՏՈՒԻ ԴԵՄ

*Աշշուրի թագավորների հրամանով շարադրված տարեգրությունները, բնականաբար, սովորություն ունեն չափազանցելու Ասորեստանի զենքի հաջողությունները։ Ասուրագետ գիտնականները պակաս չափով տրամադրված չեն Ասորեստանի առաջնորդների զինվորական արշավանքներին ևս առավել չափազանցված նշանակություն տալու։ Նրանք ծայրահեղության են հասցնում, մանավանդ, ասորեստանցիների ռազմական գործողությունները Ուրարտուի տերիտորիայում։ Նրանց ասելով՝ ասորեստանյան բանակները հասել են մինչև Կասպից ծովը։*

*Ասորեստանցիները ձեռնարկել են երեք մեծ արշավանք դեպի Ուրարտու՝ Թիգլաթպալասար* I*-ի ժամանակ (1117—1080), Սալմանասար* III*-ի օրով (859—824) և Սարգոնի ժամանակ (721—705)։ Այս արշավանքների ճանապարհացույցի քննությունը, որ մենք առաջադրում ենք կատարել ստորև, ցույց կտա, որ ասորեստանցի ներխուժողները երբեք չեն անցել այժմյան Մելազգերդի շրջանից այն կողմ։*

*Թիգլաթպալասարի արշավանքը Ուրարտու՝ տեղի է ունեցել 1114 թվականին, նրա թագավորության երրորդ տարում։ Այդ ժամանակաշրջանում Ուրարտուն ծանոթ էր ասորեստանցիներին Նաիրի բավական անորոշ տերմինի ներքո։ Այսպես էին կոչում Ասորեստանին կից, նրանից հյուսիս ընկած երկրները, որոնք տարածվում էին Եփրատից մինչև Զագրոս լեռը և նույնիսկ ավելի հեռու։ Թիգլաթպալասարը Նաիրի (Ուրարտու) մտավ Զիբենե-սուի կիրճով՝ հին Սուպնատի, ինչպես ցույց է տալիս այն արձանագրությունը, որ նա թողել է Սուպնատի ակունքի մոտ գտնվող ժայռի վրա։ Այստեղ նա հայտարարում է, որ նվաճել է «Ամուրրու երկիրը Մեծ ծովից մինչև Նաիրի երկրի ծովը», այսինքն՝ Միջերկրական ծովից մինչև Վանա լիճն ընկած տարածությունը*[1]*։*

*Ասորեստանի թագավորը կամուրջ է գցել տալիս և անցնում Եփրատը,*

---

[1] **E. Schrader**, Keilinschriftliche Bibliothek, I, *էջ 49։* **Budge** and **King**, Annals of the Kings of Assyria, *էջ 127։*

այսինքն՝ Արտանիասը, Հայկական Արածանին։ Նաիրիի քանիերեք թագավորներ դուրս են գալիս ներխուժողի դեմ։ Դրանք հետևյալ երկրների թագավորներն էին՝ Թումմե, Թունուբե, Թուալի, Կինդարի, Ուզուլա, Ունզամունի, Անդիաբե, Պիլակինի, Ատուրգինի, Կուլիբարզինի, Շինիբիրնի, Խիմուա, Պաիտերի, Ուիրամ, Շուրուրիա, Աբաենի, Ադաենի, Կիրինի, Ալբայա, Ուգինա, Նազաբիա, Աբարսիունի և Դայաենի։

Ասորեստանցիները հարձակվում են քանիերեք թագավորների վրա, կործանում նրանց երկրները և 120 մարտակառք վերցնում։ «Նաիրի երկրների վաթսուն թագավորներին,— շարունակում է մեր վավերագիրը, — և նրանց, ովքեր օգնության էին հասել, հետապնդեցի մինչև Վերին ծովը»[1]։

Զարմանալի է տեսնել թշնամիների ավելանալը 23-ից 60-ի, ուրեմն՝ 37-ի հավելումով, առանց որևէ անուն մեզ հաղորդելու։ Ավելի ևս ուշագրավ է, որ ամփոփելով իր թագավորության առաջին հինգ տարիների արշավանքների արդյունքները, ուրեմն, ներառյալ Նաիրիի (Ուրարտու) դեմ արշավանքը, Ասորեստանի թագավորը պնդում է, թե հպատակեցրել է 42 թագավորների և երկրների՝ Զաբից մինչև Եփրատից այն կողմ, խեթերի երկիրը և «արևմուտքի վերին ծովը»[2]։ Այսքան ակներև հակասությունը կասկածի տակ է դնում 60 թիվը՝ մեկ šuši, որը, գուցե, պետք է կարդալ 1/2 šuši=30։ Իր երրորդ արշավանքի նկարագրության մեջ Թիգլաթպալասարն ասում է, որ նվաճել է Նաիրի երկիրը Թումմեից մինչև Դայաենի երկիրը և վերին ծովը։ Նաիրիի երեսուն թագավորները բերվել են Աշշուր քաղաքը[3]։

Բոլոր դեպքերում 60 թիվը չի արդարանում։ Է. Ֆորերը դրան մեծ կարևորություն է տվել, որպեսզի կարողանա հաստատել, թե Թիգլաթպալասարն իր նվաճումներն առաջ է մղել, մի կողմից՝ մինչև Ճորոխի հովիտը, իսկ մյուս կողմից՝ մինչև Կասպից ծովը, այսպիսով հպատակեցնելով ամբողջ Հայաստանը և Ատրպատականը։ Այդ առթիվ միևնույն գիտնականը թույլ է տվել բոլորովին քմահաճ աշխարհագրական նույնացումներ։ Քանիերեք երկրներից վերը նույնացվում են հետևյալ կերպ՝ Պաիտերի—Փայտակարան, Ատուրգինի—Դերքենե, Անդիաբե—Անզաֆ (Անձավ), Կուլիբարզինի—Կոլարզենե, Ադաենի—Օտենե և Աբարսիունի—Օբորդենե(?)։ Դրանք ամբողջովին անհիմն ենթադրություններ են։ Թիգլաթպալասարի՝ Մելազգերդում թողած արձանագրությունը ստույգ ելակետ է հանդիսանում նրա ճանապարհացույցը կազմելու համար։ Լեհման-Հաուպտը

[1] Budge and King, նշվ. աշխ., սյուն. IV, 96, էջ 68։

[2] Նույնը, VI, 39, էջ 82։

[3] Նույնը, №2, 1՝ 8—9, էջ 117—118։

*այն հայտնաբերել է Յոնջալուում («առվույտի մարգագետին»), Մելազգերդից 30 կիլոմետր հեռավորության վրա։ Նրա բովանդակությունն է. «Հզոր թագավոր Թիգլաթպալասարը, աշխարհի թագավոր, Աշշուրի թագավոր, չորս երկրամասերի թագավոր, Նաիրի երկրի նվաճողը՝ Թումմեից սկսած մինչև Դայաենի, Նիրխի (Խաբխի) երկրների նվաճողը մինչև Մեծ ծովը»*[1]*։*

*Արսանիասն անցնելուց հետո, ուրեմն, Թիգլաթպալասարը շարժվել է Մելազգերդի ուղղությամբ։ Քանի որ Յոնջալուն գտնվում է Արսանիասի ձախ կամ հարավային ափին, Ասորեստանի թագավորը գետը պետք է անցած լինի՝ Յոնջալու հասնելու համար։ Նա շարժվել է գրեթե այն ճանապարհով, որն այժմ տանում է Պալուից Մելազգերդ։ Առաջին ճամփորդությունը նա ստիպված կատարել է Տանձուտ հայկական գյուղի դիմացով, իսկ երկրորդը՝ Մուշի մոտով։*

*Երկու անգամ՝ իր հաղորդման սկզբում և վերջում, Թիգլաթպալասարն ասում է, որ ինքը հասել է Նաիրի հեռավոր երկրները վերին ծովի ափին*[2]*։ Դրանով նա նշում է Վանա լիճը։ Նրա մեծ նախորդը՝ Թուկուլթի-Նինուրտա I-ը (1243—1221), այդպես է կոչել նույն լիճը, հայտարարելով, որ ինքը թափանցել է մի լեռնային շրջան, ուր ոչ ոք իրենից առաջ չի անցել։ Այնտեղ նա կռիվ է մղել Նաիրիի քառասուն թագավորների դեմ ու նվաճել Նաիրի երկրները և վերին ծովի ափին գտնվող երկրները*[3]*։*

*Շատ հավանական է թվում, որ Թիգլաթպալասարի առաջխաղացման ծայրագույն կետը դեպի Մելազգերդ վերջանում է Յոնջալուում։ Այստեղ՝ Յոնջալուի դաշտումն էր, որ Ասորեստանի թագավորը վճռական ճակատամարտ տվեց քսաներեք կամ վաթսուն (կամ երեսուն) թագավորների կոալիցիային և նրանց դաշնակիցներին։ Այն թագավորների տիրույթները, որոնք միավորվեցին՝ թշնամու բանակի առաջխաղացումը կասեցնելու համար, անտարակույս, մեծ մասամբ խմբված էին ասորեստանցիների առաջխաղացման ճանապարհի երկու կողմերը՝ Արսանիասից մինչև ճակատամարտի վայրը, Մելազգերդի մոտ։ Ներքոհիշյալ նույնացումները, որ մենք առաջարկում ենք, թվում է, թե հաստատում են մեր տեսակետը։*

*Հռոմեական հին ճանապարհացույցերը պահպանել են մի քանի նա-*

---

[1] **Lehmann-Haupt**, «Sitzungsberichte des König. Preussischen Akad. d. Wiss.», *1900, էջ 626։ Նաև* Armenien einst u. jetzt, I, *էջ 433.* II, I, *էջ 115։ Աշխարհագրական անունը որ առաջ կարդում էին Նիմմե, այստեղ՝ Յոնջալուի արձանագրության մեջ, կարդացվում է Թումմե։ Կիրխիի ճիշտ ընթերցումը Խաբխի է՝ ըստ Ֆորերի.* Reallexikon d. Assyriologie, I, *էջ 281։*

[2] **Budge** and **King**, *նշ. աշխ., սյուն.* IV, *50, էջ 64 և* IV, *100, էջ 68* — tamdi eliniti։

[3] **E. Forrer**, Reallexikon, *էջ 269։*

*իրյան ծագումով անուններ՝ Իսումբո 17 Նազաբիա 24 Անտեբա 24 Սորուա 27 Կատիսպի 39 Թաուգոնիա*[1]*։*

Raugonia-*ն, ըստ Մարկվարտի հավանական ենթադրության, Բագաունա-ի աղավաղումն է, հայկական Բագավանի, քաղաք Բագրևանդի (Ալաշկերտ) շրջանում։ Բագավանում էր, որ Գրիգոր Լուսավորիչը հիմնեց Հովհաննես Կարապետի եկեղեցին, որ այժմ թուրքերի կողմից կոչվում է Ուչ-քիլիսե, Դիադինի մոտ։*

Isumbo-*ն հավանաբար համապատասխանում է Ծումբին (Ծումբ—Ծումբո)*[2]*, որը հիշատակված է Ասողիկի մոտ։ Ատրպատականի մուսուլմանական դինաստիան ջախջախվեց Ծումբո գյուղի մոտ հայ և վրաց իշխանների կողմից, 998 թվականին։ Գյուղը գտնվում էր Ապահունիք գավառում, Մելազգերտի շրջանում։*

*Միջանկյալ կայանները զետեղվում են Բագավանի և Մելազգերտի միջև։ Նաիրիի քսաներեք երկրների միջև գտնվում են Անդիաբեն, Շուրուրիան, Նազաբիան, որոնք հռոմեական Անտեբա, Սորուա, Նազաբի կայանների նման են։ Համապատասխանությունը, անշուշտ, պատահական չէ։ Իսումբոն կամ Ծումբոն չի՞ համընկնում արդյոք Թումմեի հետ։* Catispi-*ն հիշեցնում է հայկական Օրդսպուն, եթե* Catispi-*ի փոխարեն կարդացվի* Oatispi *կամ* Ortispi[3]*։*

*Նաիրիի քսաներեք երկրների թվարկության մեջ Թումմեն և Դայաենին կազմում են երկու հակադիր կետեր։ Եթե Թումմեն զետեղված էր Մելազգերտի մոտ, ապա Դայաենին կընկնի Արսանիասի գետանցքի շրջանում, որտեղից մեկնել էր Թիգլաթպալասարը։*

*Ընդհանրապես ենթադրվում է, որ Դայաենին հայկական Տայքի հին ձևն է, դասական հեղինակների* Ταόχοι-*ն։ Նույնիսկ եթե ընդունվի այս նույնացումը, որը, մեր կարծիքով, բավական թեական է, դրանից բոլորովին չի հետևում, որ Դայաենին համապատասխանում է հետագայի Տայքին նաև աշխարհագրական առումով, այսինքն՝ որ տեղավորված լինի Ճորոխի վտակ Օլթիի ավազանում։ Իրականում Դայաենին գտնվում էր Պալուի հյուսիսային շրջանում, նշանակում է՝ Արսանիասի գետանցից հյուսիս։ Թիգլաթպալասարն այդքան առաջ չի գնացել։ Նրա հակառակորդները՝ Նաիրիի թագավորները ևս այդչափ հեռու չէին ընթացել։ Սրանք*

---

[1] **Konrad Miller,** Itiner. Roman., *էջ 63 (հր. 1916 թ.)։*

[2] *Իսումբոյի սկզբնատառը հայերենի* ի *նախդիրն է, ինչպես* Ιβαν-*ի մեջ* (Կեդրենոս, II, *էջ 580), հայերեն Վան. հմմտ. հունարեն՝* εἰς τὴν πόλιν*։ Հայերեն «Ծումբ» ծանոթ է սեռական հոլովաձևով՝* Ծմբոյ, *հին ուղղականը պետք է լիներ* Ծումբո, *շեշտի տեղափոխման հետևանքով վերջին ձայնավորն ընկնում է։*

[3] *Ըստ 7-րդ դարի պատմիչ Սեբեոսի, էջ 100, Օրդսպուն գտնվում էր Բերկրի գետի հովտի և Կոգովիտի (Բայազիդի շրջան) գավառի միջև, ուրեմն՝ Մելազգերտից արևելք։*

*ապավինում էին Սրմանց և Ծաղկունյաց (Թուրքերի Բինգյոլ և Ալադաղ) լեռների անմատչելի շղթային։*

*Նաիրիի քսաներեք երկրներից մեկը՝ Պաիտերին (է. Ֆորերը այն նույնացնում է Փայտակարանի հետ, որը Արաքսի և Քուռի՝ իրենց միախառնման վայրում կազմած եռանկյունին է), տեղավորված է նույն Պալուի շրջանում, Դայաենիի մոտերքում, Թիգլաթպալասարը հայտարարում է, թե իր երկրորդ արշավանքի ընթացքում նվաճել է Թումմեից սկսած մինչև Դայաենի երկրները՝ Խիմուան և Պաիտերին[1]։ Պալուում հայտնաբերված մի արձանագրության մեջ Մենուա թագավորն այլ քաղաքների շարքում նշում է Պուտերի-անի քաղաքը[2]։ Շատ հավանական է, դա հենց Պաիտե-***րին** *է։ Այս բոլորը գալիս է ապացուցելու, որ այդ երկիրը տեղադրված էր Դաիաենիի մոտ և Պալուի մերձակայքում։*

*Եթե Թիգլաթպալասարն ասում է, որ նվաճել է «Թումմեից մինչև Դայաենի և Կիլխիից (Խաբխի) մինչև մեծ ծովը» ընկած հողերը, ապա նա ուրիշ բան չի ուզում ասել, քան այն, որ հետագայում կասի Սալմանասար* III*-ը (859—824), թե ինքը նվաճել է «Նաիրի ծովից սկսած մինչև արևմուտքի մեծ ծովը»[3], այսինքն՝ Միջերկրական ծովը և ոչ թե Սև ծովը կամ Կասպից ծովն ընկած հողերը։ «Արևմուտքի վերին ծովը» նորից Միջերկրականն է[4]։*

*Նաիրիի քսաներեք երկրները պարփակված էին Արսանիասի ավազանում։ Ասորեստանի թագավորը պնդում է, որ ջախջախել է քսաներեք կամ վաթսուն թագավորների կոալիցիան և նրանց պարտադրել վճարելու 1200 ձի և 2000 գլուխ անասուն հարկ։ Իսկապես որ դա աննշան բան է վաթսուն թագավորների համար և համարյա ոչինչ՝ հաղթական մի արշավանքի համար, մանավանդ, եթե նա առաջ էր խաղացել մինչև Կասպից ծովը, ինչպես կարծում են ոմանք։*

*Թագավորական տարեգրությունը լռություն է պահպանում հաղթական թագավորի վերադարձի ճանապարհի մասին։ Սակայն մի տեղ կա, որը հատուկ ուշադրության է արժանի. Թիգլաթպալասարը հայտարարում է, որ արշավանքի ընթացքում հարձակվել է Միլիդիա քաղաքի վրա, որը գտնվում է Խանիգալբատ երկրում, որի կառավարիչն ապստամբել էր։ Հենց որ թագավորը երևում է, ըմբոստ իշխանը ոտքերն է ընկնում և թո-*

---

[1] **Budge** and **King**, *նշվ. աշխ., №* I, *15—16, էջ 111—112։* **E. Forrer**, Reallexikon, I, *էջ 283։*

[2] **Sayce**, The Cuneiform Inscriptions of Van, JRAS, *հատ.* XII *(1882), №* XXXIII։ *Լեհման-Հաուպտն առաջարկում է կարդալ* še-be-teriani, *քանի որ* še-be *նշանները նմանվում են* pu-*ին։*

[3] **Lehmann-Haupt,** Materialen zur ältesten Geschichte Armeniens, *էջ 33—40։*

[4] **Budge** and **King**, *նշվ. աշխ., սյուն.* VI, *43—44, էջ 83։*

ղությունը տանում[1]։ Արսանիասի գետանցքից մինչև Մելիտենե ընկած տարածությունը նույնքան երկար է, որքան այնտեղից մինչև Մելազգերդ։ Ե՞րբ կարող էր թագավորը այդպիսի երթ կատարել։ Թվում է, թե թագավորը վերադարձի ճանապարհին էր հպատակեցրել ըմբոստ կառավարչին։ Դա գալիս է ասելու, որ Թումմեի ճակատամարտից հետո Թիգլաթպալասարը նահանջել է և վերադարձել իր ելման կետը, կամ, գուցե, թաքցնելու համար իր արշավանքի աննպաստ արդյունքը, նա իր զենքի ուժը ցույց է տվել Մելիտենեում և, վերջապես, վերադարձել իր աթոռանիստը։ Համենայն դեպս, Թիգլաթպալասարը Վանա լճի շուրջը շրջան չէր կատարել՝ իր նստավայրը դառնալու համար։ Սալմանասարի արշավանքի քննությունը նոր ապացույցներ կընձեռի ի նպաստ Թիգլաթպալասարի ճանապարհացույցի, ինչպես որ մենք այն ներկայացրինք։

## Բ

Սալմանասար III-ի ժամանակ (859—824) Հայկական լեռնաշխարհը, որը մինչ այդ Նաիրի անվանումը բաժանում է իր հարևան երկրների հետ, առաջին անգամ հանդես է գալիս Ուրարտու անվան ներքո[2]։ Նոր անունը, անշուշտ, նոր իրադրության հետևանք էր՝ միավորման, որը տեղի էր ունեցել երկրի քաղաքական կազմակերպության մեջ։ Սալմանասար III-ը մեկից ավելի անգամ զենք է վերցրել Ուրարտուի դեմ։ Իր թագավորության երրորդ տարում՝ 855 թվականին կատարած արշավանքն ամենից կարևորն է։ Հետևենք նրա ճանապարհացույցին Բիտ-Զամանիից՝ Ամիդի (Դիարբեքիր) շրջանից սկսելով։

Թագավորն անցնում է մի քանի բարձր լեռներ և մտնում Ենզիտի՝ Իսուայի շրջանը։ Նա ավերում է երկիրը, հարուստ ավար հավաքում, մնացածը հրկիզում է։ Սալուրի կոչված վայրում նա կանգնեցնում է մի մեծ արձան, որի վրա արձանագրում է իր գործերը և սխրանքները։ Ապա անցնում է Արսանիասը, մոտենում Սուխմիին և նրա հետ վարվում այնպես, ինչպես Ենզիտիի հետ։ Սուխմիից մեկնելով, թագավորը հասնում է Դայաենի։ Այն օղակելուց և կրակով բնաջնջելուց հետո նա ուղևորվում է Արրամու ուրարտական թագավորի աթոռանիստը՝ Արզաշկու թագավորական քաղաքը։ Արրամուն սարսափահար լքում է քաղաքը և թաքնվում Ադդուրի լեռան վրա։ Սալմանասարը նրան հետապնդում և կատաղի կռիվ է սկսում, ուր Արրամուի 3400 մարտիկները հնձվում են սուսերական զենքերով։ Ար-

---

[1] Budge and King, նշվ. աշխ., սյուն. IV, 33—41, էջ 71—72։

[2] Աշուրնասիրպալը (884—859) ասում է, որ նվաճել է «Սուպնատի ակունքից սկսած մինչև Ուրարտի երկիրը»։ Budge and King, նշվ. աշխ., էջ 193—194 և 216։

բանուն կորցնում է իր ճամբարը, մարտակառքերը, հեծելազորը, ձիերը, եզները, հորթերը և փախչում-ապաստանում մի անմատչելի լեռան վրա։ Սալմանասարը գրավում է Արդաշկուն և կողոպուտի ու կրակի մատնում շրջակա քաղաքների հետ միասին։ Ապա ուղևորվում է դեպի Իրխիա լեռը և իր թագավորական մեծափառության մի մեծ արձան կանգնեցնել տալիս։ Այնտեղ արձանագրել է տալիս ինչ որ կատարել է Ուրարտուում և այն դընում Իրիտիա լեռան վրա։ Այնտեղից մեկնելով, Ասորեստանի թագավորը հասնում է Արամալի, նրա բոլոր քաղաքներն ավերում և գնում Ջանզիունա։ Ջանզիունայի կառավարիչն ընկնում է թագավորի ոտքերը և թողություն ստանում։ Հետո թագավորը իջնում է Նաիրի ծովը և Աշշուրի հզոր զենքերը թաթախում ջրերի մեջ, պատրաստել է տալիս իր թագավորական անձի մի արձան և արձանագրում իր սխրանքները։

Ծովի մոտից հեռանալով, Ասորեստանի թագավորը մտնում է Գիլզանին։ Այդ երկրի թագավորը դիմավորում է նրան և հարկ վճարում։ Գիլզանից Սալմանասարը գնում է Խուբուշկիայի Կակի թագավորի Սիլաիա բերդը։ Այսպես, «վերադառնալով Ինգիտի լեռնանցքով, թագավորը դուրս է գալիս Կիրրուրի լեռնանցքով Արբելայից վերև[1]։

Այդ երկու ճանապարհների միջև տեղավորված երկրները, որոնցով անցել է Սալմանասարը, հետևյալներն են՝ Ինգիտի, Սուխմի, Դայաենի, Արդաշկու մայրաքաղաքը, Արամալի, Ջանզիունա, Վանի ափը, Գիլզան և Խուբուշկիա։ Մեկ ուրիշ արձանագրության (Կոթողի) մեջ Սալմանասարը, նույն արշավանքի պատմությունը համառոտելով, ասում է, որ անցել է Ալզի, Սուխմի, Դայաենի, Թումմե, Արդաշկուն, Գիլզան և Խուբուշկիա երկրներով[2]։ Ալզին համապատասխանում է Ինգիտիին, Թումմեն շատ կարևոր երկիր է, Արամալին և Ջանզիունան զանց են առնված։

Ինգիտին հայկական Անձիտն է, հների՝ Անզիտենեն, որն զբաղեցնում էր Ծովք կոչված փոքր լճի շրջանը, թուրքերեն՝ Գյոլջիկ։ 832 թվականին Սալմանասարը Ուրարտուի դեմ է ուղարկում իր Դայան-Աշուր թուրտանին, որը հասնելով Բիթ-Զամանի, Ամաշաուշի լեռնանցքով անցնում է Արսանիասը[3]։ Այս լեռնանցքը տարբերվում է մեկ ուրիշ լեռնանցքից, որը Թունիբունի էր կոչվում[4] և Սուպնատի ակունքների վրա էր գտնվում։ Երկուսն էլ տանում էին դեպի Արսանիաս, մեկը՝ Պալուից արևելք, մյուսը՝ արևմուտք։ Ուրեմն, Սուխմի երկիրը գտնվում էր երկու լեռնանցքի դիմաց, Արսանիասի աջ ափին, և համարյա համապատասխանում էր հին

---

1 **E. Schrader**, Keilinschriftliche Bibliothek, I, էջ 165—169։

2 Նույնը, էջ 133։

3 Նույնը, էջ 145։

4 **F. Delitzch** und **P. Haupt**, Beiträge zur Assyriologie, VI, I, էջ 148։

Հայաստանի Բալահովտին կամ Բալավիտեններին։ Սուխմիից արևելք ընկըրվում էր Դայաենին, որը տարածվում էր մինչև Թումմե, Մելազգերդի շրջանը։ Թիգլաթպալասարի ժամանակաշրջանի փոքր պետությունները անհետացել էին՝ կլանվելով Դայաենիի կամ նույն ինքն Ուրարտուի կողմից։ Արամալին ու Զանզիունան տեղադրելու համար պետք է նկատի առնել, որ Սալմանասարը Վանա լճին մոտեցել է Արնիսի մոտ, լճի արևելյան ծայրում, քանի որ այնտեղից նա մեկնում է Գիլզան, որն ընդհանրապես տեղադրում են Ուրմիա լճի ափին, Սալմասի շրջանում։ Հետևաբար, Արամալին և Զանզիունան գտնվում էին Թումմեի կամ ավելի շուտ՝ Արզաշկուի և Վանա լճի ծայրի միջև։ Թումմեից հետո գալիս է Արզաշկուն. եթե Թումմեն Յոնջալուի դաշտավայրն է, ապա Արզաշկուն կնույնանա Մելազգերդի (կամ Պատնոցի, ինչպես արդեն ընդունված է) հետ։ Ադդուրի լեռը չի կարող շատ հեռու լինել Արզաշկու մայրաքաղաքից։ Այնտեղ ծավալված ճակատամարտի նպատակն էր մայրաքաղաքի գրավումը։ Հաղթանակից հետո հաղթողը տիրանում է քաղաքին։ Այնտեղից նա շարունակում է իր առաջխաղացումը դեպի Իրիտիա լեռը։ Անշուշտ, նրա միակ նպատակը այնտեղ իր արձանը կանգնեցնելը չէր, այլ Արրամու թագավորին հետապնդելը։ Իրիտիա հասնելով, նա հրաժարվում է այդ մտքից և դառնում դեպի Նաիրիի ծովը։ Ադդուրին Ալադաղն է, իսկ Իրիտիան՝ այդ շղթայի ճյուղերից մեկը։ Արամալի հավանաբար նշանակում է Արրամուի կամ Արամուի տիրույթ և որպես կենտրոն ունեցել է նույն Արզաշկուն։ Զանզիունան լճին ավելի մոտիկ է։ Այնտեղից Սալմանասարն անցնում է Գիլզան և խուբուշկիայի վրայով վերադառնում իր մայրաքաղաքը։

Ըստ ամենայնի՝ Թումմեն գտնվելիս է եղել Վանա լճի արևելյան կամ ավելի շուտ՝ հյուսիսային ծայրից դեպի արևմուտք, իսկ միջանկյալ տարածությունը կազմում էր Արամալիի և Զանզիունայի շրջանը։ Հետևաբար, է. Ֆորերը և ուրիշներ սխալվում են, երբ Թումմեն փնտրում են Վանա լճից արևելք և կարծում են, թե դա Թոմ գյուղն է՝ Վանից 68 կիլոմետր հեռավորության վրա[1]։ Բելքը նույնպես սխալվում է՝ նույնացնելով այն Թումմեոք-դերեսիի հետ, որը գտնվում է Տիգրիսի վտակ Բատման գետից արևելք[2]։

Պետք է զգուշանալ Թումմեն մեկ ուրիշ շրջանի հետ շփոթելուց, շըրջան, որի անունը առաջ կարդում էին Նումմե և որը այժմ սովորաբար կարդում են, գուցեև իզուր, Թումմե։ Դա մի ընդարձակ շրջան էր, որն ընդգըրկում էր Սուրա, Աբուկու, Արուրա և Արուբե քաղաքները Ուրինի, Արու-

---

[1] Reallexikon der Assyriologie, I, էջ 283։

[2] Zeitschrift für Ethnologie, 1899, էջ 263։

նի և էթինի լեռներում[1]։ Աշուրնասիրպալն ասում է, որ ինքը «վերադարձել է Նումմեից (հնարավոր է՝ Թումմե) Կիրրուրի երկիրը»[2]։ Մենք տեսանք, որ Կիրրուրիի ճանապարհը գտնվում էր Արբելայից վերև։

Գ

Սարգոնը (722—705) Ուրարտու մտավ Ման կամ Մանա երկրին հարևան Զիկկիրտու և Անդիա երկրների դեմ պատժիչ արշավանք կատարելու ընթացքում։ Զագրոսից արևելք և Ուրմիա լճից հարավ, Ներքին Զաբի ընթացքի և Ջաղաթու գետի միջև ընկած ընդարձակ սարահարթը կազմում էր Մանա պետությունը։ Վաղուց ի վեր Մանան երկու հզոր հարևանների՝ Ուրարտուի և Աշշուրի, փառասիրության առարկան էր դարձել։ Մանայի թագավորները խուսանավում էին երկու ուժերի միջև՝ առանց կարողանալու հաստատուն քաղաքականություն վարել ի նպաստ մեկի կամ մյուսի։ Այն պահին, երբ թվում էր, թե երկրի ձեռքբերումը Աշշուրի համար արդեն ապահովված է, Ուիշդիշ, Զիկկիրտու և Անդիա հարևան երկրները դաշինք են կազմում Մանայի թագավորի դեմ, որը հարձակման է ենթարկվում և սպանվում։ Սարգոնը իրավացիորեն Ուրարտուի թագավոր Ռուսայի մատը խառն է տեսնում այդ գործում։ Ուրիշ հարևաններ՝ Կարալլու և Ալլաբրիա երկրները, քաջալերված դաշնակիցների հաղթանակով, Ուրսայի կամ Ռուսայի կողմն էին անցնելու։ Աշշուրը Մանայի վրա ունեցած գերիշխանությունը կորցնելու վտանգի տակ էր, և Սարգոնը որոշեց պատժել դավաճաններին ու վերջ դնել Ուրարտուի թագավորի մեքենայություններին։

714 թվականին, իր թագավորության ութերորդ տարում, Սարգոնը դուրս է գալիս արշավանքի և հազիվ թափանցում է Զիկկիրտու երկիրը, երբ հանկարծ շուռ է գալիս ու մտնում Ուրարտու։ Նա, անշուշտ, լսել էր կիմմերների՝ Ուրարտու ներխուժման լուրը և Ռուսա թագավորին պատճառած տագնապը։ Հետևաբար, նպաստավոր իրադրություն էր ստեղծվում՝ վտանգավոր մի հակառակորդի հետ վերջնական հաշիվ տեսնելու համար։

Մեր նյութի քննության համար մեծ հետաքրքրություն է ներկայացնում Սարգոնի երթուղին, մանավանդ, Ուրարտուում նրա կտրած ճանապարհը։ Թյուրո-Դանժենը, որը մի լավ հրատարակություն է նվիրել

[1] Budge and King, նշվ. աշխ., էջ 269—270։
[2] Նույնը, էջ 272։

Սարգոնի արշավանքին, իր բոլոր ջանքերն է թափել նաև այդ արշավանքի ճանապարհացույցը ճշգրտելու համար[1]։

Ըստ այդ ճանապարհացույցի՝ Սարգոնը, մեկնելով մայրաքաղաքից, հասնում է Ուրմիա լճի շրջանը, Մարաղայի վրայով առաջ խաղում մինչև Թավրիզ, շրջանցում է լիճը և Խոյ քաղաքի վրայով ուղղվում է դեպի Վանա լիճը. անցնում է Արճեշ, Ախլաթ, Բիթլիս և Սաիրտ (Սղերտ) քաղաքներով. այնտեղից դառնում է դեպի արևելք և Բոհտանի (արևելյան Տիգրիս) հովտով անցնում է Խուբուշկիա. ապա՝ Զաբն անցնելուց հետո կանգ է առնում նույն գետի վտակ Նահիրի ավազանում գտնվող Մուսասիրում։

Հեղինակը մեծ ջանքեր է թափել այդ ճանապարհացույցը պաշտպանելու համար։ Այնուհանդերձ, կարելի է նրան քննադատել համարյա բոլոր կետերում։ Լեհման-Հաուպտն արդեն ցույց է տվել, որ Սարգոնը Վանա լճի շրջանը մուտք չի գործել, այլ հասնելով լճի ափին՝ ետ է դարձել Բաշկալայի ուղղությամբ[2]։ Դա համընկնում է մեր կարծիքի հետ։ Մենք ծանոթացանք Լեհման-Հաուպտի դիտողության հետ, երբ արդեն մեր տեսակետը հաստատված էր, և որը մի տեսակ մեզ երաշխավորում էր, թե չենք սխալվում։

714 թվականին Սարգոնը, իր Կալախ մայրաքաղաքից մեկնելով, անցնում է երկու Զաբերը, մտնում Կուլլար լեռան կիրճերը և կանգ է առնում Սումբիում։

Դա այն ճանապարհը չէ, որ Ալթուն-քյոփրուի վրայով տանում է Սուլեյմանիե։ Արշավանքի նպատակն էր Զիկիրտու և Անդիա երկրների գրավումը, որոնք գտնվում էին Ուրմիա լճի մոտ, ուրեմն, կարիք չկար իջնել մինչև Շեհրիձորի դաշտը և ապա միայն դառնալ հյուսիս։ Ամենակարճ ճանապարհն անցնում էր Ռովանդուզի վրայով, բայց Ասորեստանի թագավորը շատ պատճառներ ուներ խուսափելու այդ ուղղությունից, քանի որ Մուսասիրի իշխանությունը, որի տերն էր Ուրզանան, Ուրարտուի թագավոր Ռուսայի հավատարիմ դաշնակիցը, իշխում էր վերոհիշյալ ճանապարհի վրա։ Ուրեմն, Ասորեստանի թագավորն ստիպված էր ընտրել Քեոյ-սանջակի ուղղությունը։ Իրոք, այդ քաղաքից արևելք գտնվում է Կոլլարա կոչվող լեռը, որը տարածվում է Զաբի ոլորանում և ինքն էլ խանգարում է վերջինիս հոսանքը։ Կոլլարան հին Կուլլարն է։ Սումբին կիրճերի ելքում գտնվող դաշտն է, ուր թագավորն իր բանակի զորահանդես է անցկացնում և ապա մտնում Սուրիկաշ՝ մանացիների նահանգը։ Այնտեղից նա իջնում է դեպի Պարսուաշ և վերադառնում

---

[1] Une relation de la huitième campagne de Sargon, Paris, *1912*.

[2] Armenien einst uns jetzt, II, *1*, էջ *317*։ Մենք համաձայն չենք հեղինակի հետ ճանապարհացույցի մյուս կետերի մասին։

Մանա՝ Միսսի նահանգը, ու կանգ առնում թագավորական բերդ Սիրդակկայում։ Հետո 30 beru ճանապարհ կտրելով՝ հասնում է Զիկկիրտուի և Անդիայի սահմանի վրա գտնվող Պանզիշ մանայական բերդը։ Թագավորը հասնում է իր արշավանքի նպատակին։ Նա անցնում է Իշտարաուրա գետը, հարձակվում Զիկկիրտուի շրջան Աուկանեի վրա։ Նա ուզում էր պատժել այդ երկրի թագավորին, որը դավաճանել էր իր վեհապետին՝ Մանայի թագավորին, ի նպաստ Ռուսայի, բայց նա իր տեղում չէր՝ Ռուսային օգնության էր մեկնել։ Սարգոնը լքում է Աուկանեն և մեկնում Ուիշդիշ մանայական շրջանը, որը գրավված էր Ռուսայի կողմից։ Ռուսան այնտեղ՝ Ուաուշ լեռան վրա էր։ Կռիվն սկսվում է։ Ռուսան ջախջախվում և «իր զորքերից առաջ փախչում է», նա լքում է իր Տուրուշպա նստավայրը և քաշվում լեռները։

Beru-ն կամ ասուրական մղոնը համարյա 6 կիլոմետր էր, ուրեմն, 30 beru-ն 180 կիլոմետր է անում։ Դա Մանայի երկու քաղաքի՝ Սիրդակկայի և Պանզիշի միջև եղած տարածությունն է։ Թյուրո-Դանժենը Սիրդակկայի շրջան Միսսին և Պարսուաշը տեղադրում է Ուրմիա լճին մոտ։ Այնտեղից 180 կիլոմետր հաշվելով, մարդ կհասնի Արաքս գետի ափը՝ իբր այնտեղ գտնվող Պանզիշը հայտնաբերելու համար։ Դա բացարձակապես անհեթեթություն է։ Մանա երկիրն այդքան հեռու չէր տարածվում, և նույնիսկ շատ կասկածելի է, որ ամբողջ Մանան այդքան մեծ տարածք ունենար։ Եթե չեն ուզում beru-ի[1] արժեքը վերանայել ըստ այս ճանապարհի, ոչ էլ թագավորին չափազանցության մեջ մեղադրել, ապա պետք է ընդունել, որ խոսքն այստեղ ասուրական բանակի՝ Սումբիից մինչև Պանզիշ կատարած ճամփորդության մասին է։ Համենայն դեպս, ո՛չ Միսսին, ոչ էլ Պարսուաշը Ուրմիա լճին մոտիկ չէին գտնվում։ Այնտեղ՝ լճի ափերին պետք է տեղադրել Մանայի սահմանամերձ բերդ Պանզիշը։

Սարգոնը հարավից ընթանում է դեպի հյուսիս միշտ մանայական տերիտորիայի «եզերքներով»։ Պարսուաշը, Սանգիբուտուն, Գիզիլբունդին և այլն չէին գտնվում նրա ճանապարհի վրա, այլ արևելքումն էին։ Նշենք, օրինակ, որ մանայական առաջին շրջան Սուրիկաշից Սարգոնը այժմյան Բանեից ուղիղ գծով հասնում է Ջաղաթուի ակունքը. այդ գծից հարավ գտնվում էր Նամրին, արևելքում՝ Պարսուաշը, իսկ նրանց միջև՝ Սանգիբուտուն և Աբդադանին։

Միսսի մանայական շրջանը, մեր կարծիքով, պետք է տեղադրել Սակիզ

---

[1] Ըստ Թյուրո-Դանժենի, Huitième campagne, էջ IV, ծան. 2, J. A., 1909, էջ 99, beru-ն հավասար է 10 692 մետրի; ըստ Howardy-ի, Clavis Cuneorum 186 17 և 8563 մետրի՝ ըստ Luckenbill-ի, Anc. Rec., II, էջ 500։

քաղաքի մոտ, այն սարահարթի վրա, որը բաժանում է Զաղաթուի ակունքները Թաթավի ջրերից։ Միսսին լեռնային երկիր էր. Շամշի-ադադի ներխուժման ժամանակ Միսսիի բնակիչները լեռներում ապաստանեցին[1]։ Միսսիում Սարգոնը հարկ է ստանում Գիզիլբունդիից, որը գտնվում էր մաննացիների և մեդացիների արանքում, և այն դնում է Պարսուաշի կառավարչի իշխանության տակ։ Հետևաբար, Գիզիլբունդին, ինչպես և Միսսին Պարսուաշից հեռու չէին։

Սահմանամերձ վայր Պանզիշը, որտեղ Մանայի երկիրը հարում էր Զիկիրտուին և Անդիային, մեր կարծիքով, տեղավորված էր Ուրմիա լճի ափերին, Մանայի սահմանի վրա՝ հյուսիսային կողմից։ Խաթարաուրա գետը նույնանում է Զաղաթու գետի (և ոչ Կարանգուի) հետ։ Աջ ափին տարածվում էին Զիկիրտուն և Անդիան։ Զիկիրտուի վրա հարձակվելուց հետո Սարգոնը, ըստ Թ.-Դանժենի, առաջանում է դեպի Սոհենդ լեռը, որը նա Ուաուշի տեղ է ընդունում, իսկ Ուիշդիշը, դեպի ուր շարժվում է Սարգոնը՝ Աուկանեն կործանելուց հետո, նա տեղադրում է Ուրմիայի և Սոհենդ լեռան միջև։ Դա այն էական կետն է, որի վերաբերյալ մենք համաձայն չենք Թ.-Դանժենի հետ։ Ուրարտուի թագավորը Սոհենդի շրջանում անելիք չուներ։ Որքան մեզ հայտնի է, Ատրպատականը Ուրարտուի քաղաքական ազդեցության տակ չէր գտնվում։ Ատրպատականի սահմաններում ոչ մի ուրարտական արձանագրություն չի հայտնաբերվել։ Ուրեմն, Ուրարտուի թագավորը ոչ մի շահ չուներ փակելու Ասորեստանի թագավորի ճանապարհը դեպի Ատրպատական։ Նրա շահերը պահանջում էին իր ուշադրությունը բևեռել Ուրմիա լճից արևմուտք և հարավ գտնվող երկրների վրա։ Հայտնի է ուրարտական թագավոր Մենուայի՝ Տաշթեփեում գտնված արձանագրությունը, այն շրջանում, ուր մենք տեղադրեցինք Պանզիշ բերդը։ Ռուսան, իմանալով Սարգոնի արշավանքի մասին, շարժվում է նրա դեմ և ճամբար դնում Ուաուշ լեռան ստորոտում։ Այդ մասին նրան տեղեկացրել էին Զիկիրտուի և Անդիայի թագավորները[2], և հենց որ թշնամին երևացել էր, նրանք լքել էին իրենց երկրներն ու միացել Ռուսային։ Ուաուշ լեռը մոտ էր Ուիշդիշին, որը Մանայի ամրոցն էր և գրավվել էր Ուրարտուի թագավորի կողմից։ Դա նշանակում է, որ Ուիշդիշը պաշտպանում էր Ուրարտուի սահմանը, և քանի որ Ուրարտուն սահմանակից էր Մանային լճից արևմուտք ընկած շրջանում, Զագրոսի և լճի հարավային անկյան միջև, ապա այնտեղ էլ՝ այժմյան Ուշնի քաղաքի շրջանում, պետք է փնտրել Ուիշդիշը։ Ինչպես որ Պանզիշը Զիկիրտուի և Անդիայի դեմ ծառայում էր

---

[1] E. Schrader, նշվ. աշխ., էջ 179։

[2] Thureau-Dangin, նշվ. աշխ., էջ VI, ըստ Հարպերի հրատարակած նամակների։

որպես սահմանային կայան, այնպես էլ Ուիշդիշը Ուրարտուի դեմն էր կանգնած։ Երբ Սարգոնն իմացավ Ռուսայի գալը, ընդհատեց իր արշավանքը և դարձավ դեպի Ուրարտու։ Նշենք, որ նա Ռուսայի դեմ դուրս եկավ «արևելքից արևմուտք» ուղղությամբ։ Դա ցույց է տալիս, որ մինչ այդ նա գնում էր դեպի արևելք, բայց հանկարծ հակառակ ուղղությունը բռնեց՝ Ռուսայի սպառնալիքից խուսափելու և նրա վրա թիկունքից հարձակվելու համար։

Ուաուշ լեռը Զագրոսի մոտերքում գտնվող բարձունքներից մեկն էր։ Ռուսան «փախավ իր զորքերից առաջ», և Սարգոնը հաղթեց Զիկիրտուի թագավորին ու նրա դաշնակիցներին։ Սարգոնը լռություն է պահպանում այն էական իրադարձության կապակցությամբ, որը պատճառ դարձավ Ռուսայի «փախուստին», այսինքն՝ կիմմերների ներխուժման։ Ռուսան «նույնիսկ լքեց իր մայրաքաղաք Տուրուշպան», անշուշտ, որպեսզի գնա դիմագրավելու բարբարոս ասպատակողներին։

Հաղթանակից հետո Սարգոնն առաջ է խաղում և մտնում Ուշկայա՝ մեծ բերդ Զարանդա շրջանի մուտքի վրա և «Սուբի շրջանի վերևում»։ Ուշկայան, ուրեմն, բաժանում էր միմյանցից Սուբի և Զարանդա շրջանները։ Իրականում Սուբին Մանայի մասն էր կազմում. դրա համար էլ ուրարտացիներն այն կոչում էին մանացիների երկիր։ Զարանդան շատ է հիշեցնում Պլինիոսի Զոարանդան և հայ հեղինակների Զարավանդը, և, հետևաբար, առանց վարանելու կարելի է դրանք նույնացնել։ Զարավանդը զբաղեցնում էր Սալմաս գետի ավազանը։ Սուբիի բնակիչները հայտնի էին հեծնելու ձիեր վարժեցնելու մեջ և թագավորական բանակին լավագույն մտրուկներ էին մատակարարում։ Սուբին չի կարող նույնանալ Մարանդի շրջանի հետ, քանի որ Սուբին Մանայի շրջաններից էր, իսկ վերջինս չէր տարածվում մինչև Մարանդի շրջանը։ Պետք է այն փնտրել Զարանդայից արևմուտք և ոչ արևելք[1]։

Այսպիսով, Սարգոնը կարծես թե հետևել է այն ճանապարհին, որը ձգվում է Ուշնիից՝ Զագրոսի շղթայի երկայնքով հյուսիս, դեպի Կոտոր (այժմ՝ Կոտուր) հին բերդը։ Զարանդայից Աստրեստանի թագավորն անցնում է Բարիի կամ Սանգիբուտուի, Դալայի, Արմարիլիի, Այադիի շրջանները և հասնում Վանի մոտերքը։ Տեքստը տարբերում է Բարին, որը կոչվում է Սանգիբուտու, և բուն Սանգիբուտուն կամ «Սանգիբուտուի բերդաքաղաքների շրջանը»։ Բուն Սանգիբուտուում էր գտնվում Արզաբիա լեռը. այնտեղից մինչև Իրտիա լեռը տասներկու beru կամ 72 կիլոմետր հեռավո-

---

[1] Զարի հովտում, Դիլիկից և Սուրբ Բարթուղիմեոս հայկական վանքից քիչ հեռու գտնվում է մի բնակավայր, որը կոչվում է Ասպիստան, այսինքն՝ «Ձիերի երկիր», անշուշտ, ձիերի բուծման պատճառով։

րուժյուն կար։ Սարգոնն անցնում է այդ տարածությունը և հասնում Արմարիլի։ Սակայն նա չի հասնում այդ լեռան, որովհետև Արմարիլին տարածվում էր Ուբիանդա լեռների ստորոտում։ Արմարիլից հետո նա մտնում է Այադի՝ լճի ափին։

Այս բոլոր տեղեկությունները խոշոր նշանակություն ունեն։ Իրտիա լեռը, անտարակույս, Սալմանասար III-ի ճանապարհացույցի Իրիտիա լեռն է։ Դժվար կլիներ չնույնացնել նույն ճանապարհացույցի Արմարիլին Արամալիի հետ։ Մենք Իրիտիան տեղադրեցինք Ալզագաի շրջանում։ Սալմանասարը Իրիտիայից մեկնելով՝ անցնում է Արամալին և Զանզիունան ու հասնում Վանա լիճը։ Սարգոնը, հակառակ կողմից գնալով, ուղղվում է դեպի Իրտիա, անցնում Արմարիլիի վրայով և հասնում Այադի՝ լճի ափին։ Այադիի 30 քաղաքները «նայում էին դեղածուփ ծովին». նրանք շարված էին Վանա լճի հյուսիսային ծայրի շուրջը։

Այադիից Սարգոնը գնում է նույն անունը կրող նահանգի բերդաքաղաք Ուայաիս՝ Նաիրի երկրին սահմանակից։ Ուայաիսից նա անցնում է Նաիրի և այնտեղից՝ Մուսասիր։ Թյուրո-Դանժենը կարծում է, թե Սարգոնը հյուսիսից դարձել է լճի շուրջը և Ախլաթի ու Բիթլիսի վրայով հասել Սաիրդ. ըստ նրա՝ Ուայաիսը համապատասխանում է Բիթլիսին, իսկ Սաիրդը՝ Նաիրիի կենտրոն Խուբուշկիային։ Սաիրդից Սարգոնը անցած պետք է լիներ 250 կիլոմետր, Բոհտանի հովտով մանացիների սահմանի վրա գտնվող Մուսասիր հասնելու համար։

Այն փաստերը, որոնցով Թ.-Դանժենը ձգտում է պաշտպանել իր դրույթը, հենց նրա դեմ են խոսում։ Ուայաիսը կամ Ուեսին ներկայանում է որպես ռազմական խոշոր նշանակություն ունեցող կայան։ Ասուրական լրտեսները հետևում և մեծ կարևորություն էին տալիս այն ամենին, ինչ անցնում-դառնում էր այնտեղ, թագավորին տեղյակ էին պահում ամենայն մանրամասնությամբ։ Հայտնում էին Զիկկիրտուի և Անդիայի թագավորների գալը Ռուսայի մոտ՝ Ուեսի (Ուայաիս), Ուեսիի կուսակալի մեկնումը Մուսասիր։ Հաստատում էին, որ հինգ կուսակալներ եկել-հասել էին Ուեսի և, մեկ ուրիշ հաղորդագրությամբ, որ Ուեսիի կուսակալը սպանվել էր կիմմերների դեմ կռվելու ժամանակ։ Նույնիսկ Մուսասիրի թագավորը տեղեկացնում էր ասուրական իշխանություններին, թե Ռուսան գտնվում էր Ուեսիում։

Այս բոլորը մեզ թելադրում է Ուայաիսը փնտրել Ասորեստանի արևելյան կողմում, Մուսասիրի մոտ, ոչ հեռու Զիկկիրտուից ու Անդիայից, և ոչ թե, ընդհակառակն, հեռավոր Բիթլիսի շրջանում։ Եթե Ուայաիսը և Բիթլիսը նույնը լինեին, Ասորեստանի թագավորը կարիք չէր ունենա Մուսասիրի թագավորի միջնորդությանը՝ Ուայաիսում անցած-դարձածն իմանալու համար. այս վերջին բնակավայրն ավելի մոտ էր Ասորեստանի մայրաքա-

*ղաքին, քան Մուսասիրին։ Զիկիրտուի և Անդիայի թագավորների քայլը գործնական նշանակություն չէր ունենա, եթե Ուեսին այդքան հեռու լիներ նրանց երկրներից։ Նախքան օգնություն հասնելը նրանք կջախջախվեին թշնամու կողմից։*

*Վերջապես, մենք գիտենք, որ Խուբուշկիան Գիլզանի մոտ էր. Սալմանասար III-ը Գիլզանից Խուբուշկիա գնաց իր մայրաքաղաքը վերադառնալիս։ Գիլզանը գտնվում էր Ուրմիա լճի ափին, հետևաբար և Խուբուշկիան չի կարող նույնանալ Բիթլիսի հետ։*

*Ասորեստանի թագավորը, հասնելով Վանա լճի ափին, վերադարձի ճամփա է ընկնում Արճակ-Սևան-Խոշաբ գծով դեպի Մուսասիր երկիրը։ Այադիի քաղաքներից մեկը, որտեղից Սարգոնը գնում է Ուայաիս, կոչվում է Հին-Ուայաիս, անշուշտ, ի հակադրություն մեկ ուրիշ Ուայաիսի, որը համեմատաբար նոր էր հիմնադրված և մեր Ուայաիսն է։ Դա վճռական ապացույց է, ինչպես նկատել է Լեհման-Հաուպտը, որ Ուայաիս բերդն ու նահանգը գտնվում էին Վանից արևելք, Այադիի մոտ[1]։ Նույն կարգի մեկ այլ ապացույց. Այադիից Ուայաիս ճանապարհի վրա Սարգոնը անցավ երեք գետով, որոնցից մեկը Ալլուրիա անունն էր կրում։ Ճիշտ այդպես է կոչվում այն լեռներից մեկը, որոնք բարձրանում էին Զաբի ափին, այն լեռնանցքի մոտ, որը Սարգոնին առաջնորդում էր դեպի Մուսասիր։ Հավանաբար, գետն իր անվամբ պարտական է այդ լեռանը, որտեղից էլ սկսվում էր նրա ակունքը։ Մենք մտածում ենք Ջուխի (Ջուբ-դաղ) մասին, որը տարածվում է դեպի Խոշաբի ակունքները և որտեղ գտնվում է հայտնի կիրճը, որը միացնում է Զաբի հովիտը Խոշաբի հովտին։ Այսպիսով, հաջողվում Ուայաիս բերդը տեղադրել Ջուխի սարահարթի վրա[2]։ Խոշաբի հովիտը կազմում էր Ուրարտուի սահմանը, որից այն կողմ տարածվում էր Խուբուշկիա երկիրը, այլ կերպ ասած՝ Նաիրին։ Մի բերդ, որը տեղավորված էր այնպիսի մի բարձրության վրա, ինչպիսին Ջուխը՝ 3000 մետր, ուներ հսկողության և հարձակման առաջավոր կայանի բոլոր առավելությունները։*

*Սարգոնը պնդում է, որ Մուսասիրի թագավոր Ուրզանան՝ «մի չար լեռնցի», ապստամբեց իր դեմ, երբ նա վերադառնում էր արշավանքից։ Իրեբի դրությանն ավելի համապատասխան է թվում ընդունել, որ ապստամբությունը բռնկել էր այն պահին, երբ Սարգոնը Ուրարտու մտավ։ Ուր-*

---

*[1] Սարգոնը նշում է երկու քաղաք, որոնք Անիաշթանիա միևնույն անունն են կրում, մեկը՝ Սանգիբուտուի (=Բարի) սահմանի վրա, մյուսը՝ Այադի նահանգում, որի 30 քաղաքները գտնվում էին ծովի ափին։ Հայ պատմիչ Թովմա Արծրունին մի գյուղ է ճանաչում Բոգունի գավառում, որի անունը Անստան էր, դա հիշեցնում է Անիաշթանիան։ Անստանի տեղը հայտնի չէ, բայց այն, համենայն դեպս, գտնվում էր Վանի շրջանում։*

*[2] Լեհման-Հաուպտը փորձում է Ուայաիսը գտնել այժմյան Բաշկալայում։*

զանան Ռուսայի հավատարիմ դաշնակիցն էր և իր ապստամբությամբ ստիպում էր Սարգոնին ընդհատել իր հաղթական առաջխաղացումը Ուրարտուի միջով։ Ասենք, ինքը՝ Սարգոնն էլ հաստատում է, որ այդ չար լեռնցին ապստամբել էր իր դեմ և ընդհատել իր առաջխաղացումը, այնպես որ ինքն ստիպված է եղել վերադառնալ արշավանքից։

Շատ ավելի անխոհեմություն կլիներ Ուրզանայի կողմից՝ Սարգոնի հետ թշնամանալը, եթե վերջինս այդ պահին հասած լիներ Ուլյախս կամ Խուբուշկիա, իր տիրույթների մոտերքը։

Սարգոնն ասում է, որ գրավել է 430 քաղաք և 7 նահանգ։ Նահանգներն են՝ Զարանդա, Սուբի, Դալա, Բարի-Սանգիբուտու, Արմարիլի, Այադի և Ուլյախս։

## ՀԱՅԱՍՏԱՆԸ ԵՎ ՑԵՂԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԱՐԵՎԵԼՔՈՒՄ

### Ա

Ասորեստանի պետության ժամանակաշրջանում Հայաստանում ծաղկում էր մի մեծ պետություն, որը կոչվում էր Ուրարտու կամ Արարատ, բառ, որը նույն անվան բիբլիական ձևն է։ Ասորեստանի պատմությունը բոլորին ծանոթ է՝ ամեն մի աշակերտ նրա մասին որոշ տեղեկություն ունի։ Բայց քչերը կան, նույնիսկ ուսյալ մարդկանց մեջ, որ Ուրարտուի անունը լսած լինեն։ Սակայն Ասորեստանի պատմությունը սերտ կապով կապված է Ուրարտուի պատմության հետ, որպես շատ վտանգավոր հակառակորդի, որը չի դադարել երեք դար շարունակ, ընդհուպ մինչև Ասորեստանի վախճանը, մրցել նրա հետ և խանգարել նրա հավակնություններին Միջագետքից դուրս գտնվող երկրների նկատմամբ։

Երբ Թիգլաթպալասար II-ը մ. թ. ա. XII դարի վերջում բարձրացավ հայկական Տավրոսը և Հայաստան մտավ դեպի Տիգրիսի ակունքները ձգվող կիրճերով, նա հանդիպեց մի քանի տասնյակ թագավորների դիմադրությանը։ Այդ ժամանակաշրջանում երկիրը Նաիրի էր կոչվում և ծածկված էր փոքր պետությունների ցանցով։ Երեք դար հետո, 857 թվականին, Սալմանասար III-ը նույն ճանապարհով թափանցեց Հայաստան և ընթացավ մինչև երկրի մայրաքաղաք Արզաշկուն, որը գտնվում էր այժմյան Մելազգերդ քաղաքի տեղում։ Նա կռվի բռնվեց Արամե թագավորի հետ։ Ասուրական առաջին ներխուժումից հետո երկիրը փոխել էր իր տեսքը՝ այժմ նա կոչվում էր Ուրարտու և նոր էր անցել քաղաքական հեղաշրջման բովից ու մեկ քաղաքական կազմակերպության մեջ էր միավորել

բազմաթիվ փոքր պետություններ։ Սալմանասարը գրավեց այդ թագավորության մայրաքաղաքը և կործանեց։ Անշուշտ, այդ պարտության հետևանքով էր, որ Արամեի հաջորդ Սարդուրի թագավորը տեղափոխեց իր աթոռանիստը Տուշպա քաղաք, այժմյան Վանը, որն Ասորեստանի հարձակումներից ավելի լավ էր պատսպարված։

Հայկական Տավրոսն այդ կողմից համարյա անանցանելի է. միակ մուտքը կարող էր լինել Զաբ գետի հովտի միջով։ Ուրարտուի թագավորը փակեց այդ մատույցը հզոր՝ ամրոցներով, որ նա կառուցեց Զաբի վերին հոսանքի վրա, այնտեղ, որտեղ գետը ճեղքում էր Տավրոս լեռը։ Բացի այդ, Ուրարտուն ձեռք բերեց Զաբի և Զագրոս լեռնաշղթայի միջև ընկած լեռնային տերիտորիան մինչև Ռովանդուզի շրջանը։ Այդ տերիտորիան երկու թագավորություն էր կազմում՝ Խուբուշկիա և Մուսասիր, որոնք Ուրարտուի վասալներն էին։

Մանա թագավորությունը տարածվում էր Զագրոսից արևելք և Ուրմիա լճի հարավում։ Որպեսզի ասորեստանցիներին արգելի այդ կողմից Ուրարտու մտնել, Ուրարտուի թագավոր Մենուան գրավեց այդ երկրի հյուսիսային մասը, իսկ նրա հաջորդները մինչև վերջ ձգտում էին պահպանել այդ թագավորությունը իրենց քաղաքական ազդեցության ներքո և չթողնել Ասորեստանին մոտենալ նրան։

Ասորեստանից արևմուտք, Եփրատի հովտում, մի շարք փոքր պետություններ հերթով գրավված էին Մելիտենեից մինչև Հալեպ՝ Միլիդ, Կումմուխի (Կոմմագենե), Գուրգում (Մարաշ), Կարկեմիշ (Ջերապլուս), Սոլումալ (Զինջիրլու), Խաթինա և ուրիշներ։ Այդ պետությունները, գտնվելով Ասորեստանի սպառնալիքի տակ, նեցուկ էին որոնում Ուրարտուում, իսկ վերջինը չէր գլանում օգտագործել նրանց համակրանքը, և ահա բազմիցս այս պետությունները դաշնակցում են Ուրարտուի հետ՝ ընդհանուր թշնամու դեմ։

Եփրատից մինչև Մուսասիր ձգված լեռնային գոտին Ասորեստանի և Ուրարտուի սահմանն էր գծում։ Այդ գոտիում ապրող բազմաթիվ ցեղեր թշնամաբար էին տրամադրված Ասորեստանի նկատմամբ և նույնպես հակված էին դեպի Ուրարտուն։

Այսպիսով, Ասորեստանի պետությունը շրջապատված էր հյուսիսից և իր երկու թևերից, որը խոչընդոտ էր հանդիսանում նրա ծավալմանը։ Ուստի և կատաղի պայքար սկսվեց Ասորեստանի և Ուրարտուի միջև, մի պայքար, որն ընդգրկեց երկու երկրների ռազմական կյանքի մեծագույն մասը։

Միմիայն քաղաքական մրցակցության մասին չէ խոսքը. պայքարը միևնույն ժամանակ ցեղային բնույթ էր կրում։ Ուրարտացիները և դաշնակից ու հովանավորյալ ժողովուրդները՝ Խուբուշկիայի, Մուսասիրի, Մա-

նայի ժողովուրդները, ինչպես նաև միջանկյալ գոտու ցեղերը և եփրատյան պետությունների բնակչությունը սեմական ցեղին չէին պատկանում։ Ասորեստանցիները նրանց կոչում էին Նաիրի տոհմական անվամբ։ Այդ իրողությունը հայտնի է վաղուց ի վեր, բայց միայն վերջերս գիտությունը լույս սփռեց նաիրյան ժողովուրդների ծագման վրա։

Նախքան սեմական ցեղերի երևան գալը, որոնք Բաբելոն էին եկել իրենց օրորան Արաբիայից, Միջագետքը, Հայաստանը և Փոքր Ասիան զբաղեցված էին մի ասիական ցեղով, որից շումերները՝ Բաբելոնում, խուրրիները՝ Վերին Միջագետքում և Հայաստանում, խեթերը՝ Փոքր Ասիայում կազմում էին երեք գլխավոր օղակները։

Երկրորդ հազարամյակի սկզբում հնդեվրոպական ալիքները մոլեգնում են այս երկրների վրա երեք հաջորդական շարքերով. մեկը տիրանում է խեթերի երկրին և այնտեղ հիմնում Մեծ Խաթթին, մյուսը հարձակվում է խուրրիների երկրների վրա, Հայաստանի միջով ցած է իջնում և Միջագետքում կազմակերպում է Միտաննի պետությունը, կասսիտների երրորդ ալիքը առաջ է խաղում մինչև Բաբելոն։ Այսպես, հնդեվրոպացիները բորբոքում են այդ ժողովուրդների լճացած կյանքը։

Միտաննիի հիմնադրման ժամանակ Ասորեստանը, որը մի ժամանակ գաղութացվել էր աքքադացիների կամ Բաբելոնի սեմական ցեղերի կողմից, ստիպված է լինում Միտաննիի մաս կազմել՝ որպես նրա նահանգներից մեկը։ Սակայն կամաց-կամաց նրան հաջողվում է ազատվել Միտաննիի տիրապետությունից և նույնիսկ իր հին տիրոջ վրա իշխանություն ձեռք բերել։ Միտաննին Ասորեստանի հարվածների տակ անհետանում է XII դարում, և նրա հետ խուրրիական ցեղը կորցնում է իր դիրքը Վերին Միջագետքում։

Այդ ժամանակ խուրրիական երկիր Ուրարտուն ստանձնում է Միտաննիի գործի պաշտպանությունը, որպեսզի շարունակի ցեղային պայքարը Ասորեստանի դեմ։ Նա մարմնացնում է խուրրիական ցեղի վերջին ճիգերը՝ պաշտպանվելու սեմականության դեմ։ Այդ նկատառումով շատ հատկանշական է, որ Միտաննիի կործանումից հետո Ասորեստանը XII դարի սկզբում իր զենքը դարձնում է Նաիրիի, այսինքն՝ Ուրարտուի դեմ։

Կարիք չկա երկար կանգ առնել երկու պետությունների պայքարի իրադարձությունների վրա։ Միայն նկատենք, որ ասուրագետ գիտնականները սովորություն ունեն չափազանցելու Ասորեստանի հաջողությունները, վստահելով նրա գոռոզամիտ վեհապետների պոռոտախոսությանը, որոնք սիրում են իրենց տեղեկագրերում ուռճացնել այն սխրանքները, որոնք հաճախ սոսկ ցուցադրական բնույթ են կրում։ Նույնիսկ շատերը կարծում են, թե կարող են հաստատել, որ Սարգոնը 713 թվականին, Ռուսա թագավորի դեմ ձեռնարկած արշավանքի ընթացքում,

վերջնականապես ճզմել է Ուրարտուի ուժը։ Սակայն սահմանամերձ կայաններից ասորեստանցի գործակալների ուղարկած գաղտնի տեղեկագրերը Ասորեստանի թագավորին՝ բացահայտ ցույց են տալիս, որ Ռուսայի հաջորդ Արգիշտին տակավին իրեն զգում էր դրության տեր և իր ձեռքըն էր պահում Ասորեստանի դեմ գործողությունների նախաձեռնությունը։ Հարպերի ժողովածուում հրատարակված նամակները ոչ մի կասկած չեն թողնում այն մասին, որ Ասորեստանը վախենում էր Ուրարտուի հարձակումից։

Իրականում, Ուրարտու թագավորությունը երեք հարյուր տարվա ընթացքում վարած պայքարը հասցրել է մինչև վախճանը՝ մինչև Ասորեստանի վերջնական կործանումը, և նույնիսկ վկա է եղել նրա հոգեվարքին՝ իրանական հերոս Կիաքսարի հարվածների տակ, 612 թվականին։

Ուրարտուն կատարել է այնպիսի առաքելություն, որը պետք է գնահատել ըստ արժանվույն. նա փակել է սեմականության ծավալման ճանապարհը դեպի Հայաստանի լեռնաշխարհը և Փոքր Ասիա։ Ինչպիսին էլ որ լինեն ասորեստանյան քաղաքակրթության արժանիքները, չպետք է թաքցնել, որ Ասորեստանը զուրկ էր մարդու ունեցած արժեքի գիտակցությունից, որ այնքան էական է քաղաքակրթության համար։ Աշշուրի տիրակալների անգթությունը առասպելական էր։

Նրանք նույնիսկ իրենք իրենց հաշիվ չէին տալիս այն հրեշավոր հայտարարությունների մասին, որ անում էին առանց նեղվելու և հպարտությամբ, ասելով, թե «կատաղած շան և վայրի ցուլի նման» իրենք նետվում են թշնամի երկրների վրա։ Հիվանդագին կրքոտությամբ նրանք նկարագրում են, թե ինչ սարսափելի գործեր են կատարել հարձակման ենթարկված երկրներում՝ ավերել, հրկիզել քաղաքներն ու դաշտերը, կոտորել բնակչությանը, կենդանի այրել երիտասարդ տղաներին ու երիտասարդ աղջիկներին, կտրել ձեռքերը, մատները, ականջները, մորթել և կաշիները փռել պարիսպների վրա, կտրված գլուխներով բուրգեր բարձրացրել և նրանց շուրջը շարել ցցահանված դժբախտներին, գյուղերում դադարեցրել աշխատավորների ուրախ ձայնը և թողել, որ այնտեղ հաստատվեն վայրի էշերն ու վայրի գազանները և այլն... Կատարելապես հասկանալի է բիբլիական մարգարեի արձակած թեթևացման ճիչը Ասորեստանի անկման առթիվ. «Նինվե՛ն, արյան, նենգության ու բռնության քաղաք, կործանվել է։ Ո՞վ կափսոսա նրան։ Բոլոր իմացողները երկու ձեռքով ծափ կտան, որովհետև ո՞վ չի տանջվել նրա չարությունից»։ Ուսանելի է, որ մեկ ուրիշ մարգարե կոչ է անում «Արարատի թագավորներին», այսինքն՝ Ուրարտուին, Ասորեստանի վրա հարձակվելու։

Ռուս ասուրագետ Նիկոլսկին, որն Ուրարտուի անցյալի առաջին հետազոտողներից մեկն է, շատ լավ նկատել ու ընդգծել է ասուրական վայ-

րենի ոգու և Ուրարտուի շատ ավելի մեղմ ու մարդկային ոգու միջև եղած հակադրությունը։ Սանձահարել Ասորեստանի մոլեգնությունը և արգելել նրան ներխուժելու նաիրյան երկրները, ահա մի էապես ազնիվ առաքելություն, որը բաժին էր ընկել Ուրարտուին։ Նա շատ արժեքավոր ծառայություն մատուցեց՝ իր ավանդը ներմուծելով մարդասիրական գաղափարների մեջ։

## Բ

Ասորեստանի անկումից քիչ հետո Ուրարտուն նույնպես իր հերթին անհետացավ։ Հին աշխարհը փուլ եկավ։ Ասորեստանի ժառանգության տեր դարձան իրանցիները, իսկ հայերը ժառանգեցին Ուրարտուն։ Երկրի նոր տերեր հայերն իրենց ծագումով առնչություն չունեին ուրարտացիների հետ, բայց հետագայի նրանց պատմական ճակատագիրը որոշ առումով հար և նման էր ուրարտացիների ճակատագրին։

Հայերը, ինչպես ուրիշ շատ ժողովուրդներ, թափառել են դարերի խավարում՝ նախքան պատմության աղջամուղջը հասնելը։ Նրանք մի ցեղախումբը կամ հատվածն էին փռյուգացիների, որոնք սկզբում ապրում էին Թրակիայում, որտեղից մոտ XII դարում մ. թ. ա. անցան Բոսֆորը և գրոհեցին խեթական պետության վրա։ Նրանք տիրացան խեթական ժառանգությանը, ապա նրանց մի մասը՝ հայերը, մղվեցին դեպի Եփրատ։ Նրանք գրավեցին Հալիս գետի ակունքների շրջանը, որն այն ժամանակից ի վեր կոչվելու էր Փոքր Հայք։ Ապա, հետագայում, նրանք թափանցեցին Ուրարտու և այդ թագավորության ժառանգությունը իրենց ձեռքը վերցրին Ասորեստանի կործանման ժամանակաշրջանում։

Թիգլաթպալասար II-ը, որ գրավել էր Հայկական լեռնաշխարհը, նրկատում է մուշկերի, այսինքն՝ փռյուգացիների, երևալը Ասորեստանի սահմանների վրա մոտավորապես 1170 թվականին։ Հետևաբար, խեթական պետության կործանումից հետո, մոտավորապես 1200 թվականին, նրանք առաջ էին խաղացել մինչև Ասորեստան։ Ուրարտուի թագավոր Մենուան նշում է մի ժողովրդի անուն, որը կոչվում էր Ուրմենիուխինի, տեղավորված Տարոնի շրջանում։ Լեհման-Հաուպտը կարծում է, որ դրանք հայերն են։ Եթե դա ճիշտ է, հայերի թափանցումը Ուրարտու կատարվել է արդեն VIII դարում մ. թ. ա.։ Որ հայերն իսկապես եկել են Արևմուտքից, դրա լավագույն ապացույցն է նրանց լեզուն, որը պատկանում է հնդեվրոպական լեզուների մեծ ընտանիքին և հատկապես նրա արևմտյան կամ եվրոպական ճյուղին։ Համեմատական լեզվաբանությունը երիտասարդ գիտություն է, որը ծագել է մոտավորապես XIX դարի կեսերին և այդ դարի պանծալի գործերից մեկն է կազմում։ Շնորհիվ այդ գիտության ամենայն

ճշտությամբ հաստատվել է միևնույն ընտանիքին պատկանող մի շարք լեզուների ազգակցությունը։ Դրանք են՝ կելտական, գերմանական, իտալական, բալթա-սլավոնական լեզուները, հունարենը, հայերենը, ալբաներենը, հնդիրանական լեզուները և, ինչպես վերջերս են հայտնաբերել, խեթերենն ու թոխարերենը։ Գերմանացիներն այս լեզուները կոչում են հնդգերմանական, ֆրանսիացիները և ուրիշ ազգեր՝ հնդեվրոպական։ Ավելի ճիշտ կլիներ դրանք արիա-եվրոպական անվանել՝ ըստ մի քանի ռուս գիտնականների։

1833 թվականին, Բոպպի՝ դարաշրջան կազմող գործի երևան գալուց հետո, սկսվեց հայերենի ուսումնասիրությունը։ Առաջին և գլխավոր աշխատությունները պատկանում են գերմանացի գիտնականների գրչին. Պետերման՝ 1837 թվականին, Վինդիշման՝ 1836 թվականին (հրատարակված 1850 թվականին), Դիֆենբախ՝ 1843 թվականին, Գոշե՝ 1847 թվականին, Բյոտտիխեր (դը Լագարդ)՝ 1850 թվականին։ Այս բոլոր ներհուն գիտնականները հանգել են միևնույն եզրակացության, ըստ որի՝ հայերենը մաս է կազմում հնդեվրոպական լեզուների արևելյան ճյուղին և իրաներենի հետ նմանություն ունի։

Այս տեսակետը հայերենի բնույթի մասին ընդունվեց Բոպպի կողմից և 1857 թվականին մտցվեց նրա մեծ աշխատության երկրորդ հրատարակության մեջ։ Իրանական ճյուղին պատկանելու դրույթը տիրող մնաց մինչև 1877 թվականը, երբ Ստրասբուրգի համալսարանի պրոֆեսոր Հյուբշմանը հրապարակեց իր նշանավոր հոդվածը՝ «Über die Stellung des Armenischen im Kreise der Indogermanischen Sprachen»։ Ըստ Հյուբշմանի՝ նրա նախորդները լուրջ սխալ էին կատարել հիմնվելով այն բառապաշարի վրա, որ հայերենը իրաներենից փոխ է առել Արշակունյաց դինաստիայի ժամանակաշրջանում։ Հայերենի իսկական բնույթի մասին դատելու համար պետք է քննել նրա սեփական բառերը։ Հայերենի սեփական բառերն ուսումնասիրելով, Հյուբշմանը հաստատեց, որ հայերենը բոլորովին իրանական լեզու չէ, այլ ներկայացնում է հնդեվրոպական արմատի անկախ մի ճյուղը և տեղավորվում է հունարենի ու բալթա-սլավոնական լեզուների միջև։

Հյուբշմանի տեսակետը հաղթանակեց և դարձավ հայկական լեզվաբանության հիմքը։ Այսպիսով, հայերենի ուսումնասիրությունը հաստատեց, որ հայերը Արևմուտքից են եկել Հայաստան և պատկանում են հնդեվրոպական մեծ ընտանիքի եվրոպական խմբավորմանը։

Արդարև, զարմանալի է, որ Հյուբշմանի երկրում դեռևս կան մարդիկ, որ այսօր էլ հայերի ծագման հարց են բարձրացնում։ Եվ այդ արվում է այնպիսի մի ժամանակաշրջանում, երբ ամենուրեք խոսվում է աշխարհը նոր կարգերով վերանորոգելու և ճնշված ազգերի նկատմամբ կատարված

անարդարությունները փոխհատուցելու մասին։ Այսպիսի տարիներին ոչ թե ծագման հարցը պետք է բարձրացվի, այդ հարցը վաղուց է լուծվել, այլ հայերի ճակատագրի հարցը, այն հրեշավոր անարդարությունների հարցը, որի անմեղ զոհերն են նրանք և որոնք հատուցման ժամին են սպասում։

Հայերի արևմտյան ծագումը ճակատագրական եղավ նրանց համար։ Նրանց բաժին ընկած դժբախտությունները, գուցե, մասամբ այդ իրողության հետևանքն են։ Եվրոպական ցեղի մի փոքր հատված, Բալկանների և Փոքր Ասիայի միջով մղված մինչև Առաջավոր Ասիայի կենտրոնը՝ մի օտար աշխարհում, սկզբից ևեթ դատապարտված էր մեկուսացման, որի պայմաններում պետք է պայքար մղեր իրեն շրջապատող երկու հզոր պետությունների դեմ՝ իր ինքնուրույնությունը պաշտպանելու համար։ Նկատի առնենք, որ տարօրինակ կերպով նրանց կացությունը նման էր հին ուրարտացիների կացությանը։ Թվում է, թե գոյություն ունի ցեղային ինչ-որ մտայնություն։ Լինի դա մտայնության ազդեցությամբ թե այլ պատճառներով՝ հայերն իրենց հայացքը դարձրին դեպի Արևմուտք վառ հույսերով, չնայած այն դառն հուսախաբություններին, որ նրանք ունեցան դարերի ընթացքում։ Հռոմը, Բյուզանդիոնը, խաչակիրները, պապությունը, Եվրոպայի մեծ տերությունները, յուրաքանչյուրն իր հերթին, իրենց օգտին շահագործեցին հայերի պատրանքները, առանց երբեք մտահոգվելու, որ իրենց հետապնդած չարաղետ քաղաքականությունը առավել ևս բարդացնելու էր հայերի դրությունը։

Ցավալի իրողություն է, որ Հռոմը, հանրապետությունը թե կայսրությունը, ավելի թշնամական էր հայերի նկատմամբ, քան իրանական պետությունները։ Բյուզանդիոնի նենգավոր պաշտպանությունն ավելի աղետալի եղավ, քան արաբների լուծը։ Իրանական տիրապետության ներքո Հայաստանը պահպանեց իր ազգային կերպարանքը՝ օգտվելով լայն ինքնավարությունից, չխոսելով արդեն այն ժամանակաշրջանների մասին, երբ նա գտնվում էր իր սեփական թագավորների իշխանության տակ։ Երբ Հռոմը և սասանյան Պարսկաստանը բաժանեցին Հայաստանը, պարսկական մասումն էր, որ հայկական մշակույթը ծաղկեց և հարուստ գրականություն ստեղծվեց. մինչդեռ հռոմեական կամ բյուզանդական մասում Հայաստանի արևմտյան հատվածը համարյա ապազգայնացվեց։

Հայերը հաջորդական ապստամբություններով դիմադրեցին արաբական ճնշմանը, որը դրդեց խոհեմ խալիֆաներին՝ վերջ տալ արյան անօգուտ զեղմանը և ըմբոստներին թագավորական խույրեր ուղարկել։ Մի շարք քաղաքական օջախներ աշխուժացրին ազգային կյանքը։ Ծանր է խոստովանել, որ քրիստոնյա Բյուզանդիոնն էր, որ հանգցրեց այդ օջախները, բռնի ուժով հայոց թագավորներին իրենց զորքերի հետ միասին

գաղթեցնելով իր պետության տերիտորիան՝ Եփրատի երկայնքով մեկ՝ արաբների դեմ պատնեշ կանգնեցնելու համար։ Նա մատնեց Հայաստանը սելջուկյան հորդաների ձեռքը։ Տարագրված հայ ժողովուրդը, բյուզանդական մեքենայություններից հոգնած, հավաքեց իր ուժերը և Կիլիկիայի բարձունքներում ստեղծեց անկախության մի նոր օջախ։ Այս անգամ խաչակիրները եկան Արևելքի քրիստոնեությունը փրկելու համար։ Սակայն հայկական Կիլիկիան ոչ մի օգուտ չքաղեց նրանցից։ Ընդհակառակն, հայերի համագործակցությունը խաչակիրների հետ վտանգի ենթարկեց այդ «նոր Հայաստանի» իշխանների, ապա թագավորների քիչ թե շատ կանոնավորված հարաբերությունները մուսուլմանական աշխարհի հետ և նախապատրաստեց Կիլիկիայի թագավորության ճակատագրական վախճանը։

Սելջուկներին հաջորդեցին Չինգիզ-խանի մոնղոլների հորձանքները, Թամեռլանի թաթարները, թուրքմենների հրոսախմբերը, որոնք հեղեղեցին Մեծ Հայքը, մինչև որ XVI դարի սկզբներին Հայաստանը բաժանվեց Պարսկաստանի և Թուրքիայի միջև։

Երկիրն աներևակայելի անիշխանության ճարակ էր դարձել։ Այլևս Եվրոպայի օգնության մասին չէին մտածում։ Սակայն, ահա գալիս են եվրոպական միսիոներները՝ դոմինիկյանները, ֆրանցիսկյանները, քարոզիչ եղբայրները, գալիս են քարոզելու մի երկրում, որի յուրաքանչյուր քարը նահատակների արյունով է ներկված։ Միևնույն ժամանակ նրանք հույս են ներշնչում, որ Արևելքի քրիստոնյաների համար ազատության լույսը նորից կարող է փայլել պապության և քրիստոնյա պետությունների օգնությամբ։ Այսպիսով, միսիոներները ներկայանում են որպես «հայկական հարցի» առաքյալներ։ Ժողովուրդը, «որ գտնվում էր խավարում, մահվան ստվերում, կարծեց, թե լույս է ծագում»։ Եվ դրանում նրան ոչ ոք չի կարող մեղադրել։

Դժբախտաբար, խոստացված լույսը նույնքան ցնորական եղավ, որքան անցյալում կատարված նման խոստումները։ Այն ավելի արդյունավետ չեղավ նաև այն ժամանակ, երբ դրվեց միջազգային դիվանագիտության սեղանի վրա և այնտեղ փայլեց կես դարուց ավելի... Պե՞տք է արդյոք հիշեցնել, որ վեց մեծ պետություններ 1878 թվականին հանձնառություն ստորագրեցին ազատելու Հայաստանը և դրժեցին իրենց կոլեկտիվ ստորագրությունը։ Երբ պայթեց վերջին մեծ պատերազմը, դաշնակիցները հռչակեցին Հայաստանի, Միջագետքի և Սիրիայի անկախությունը, իսկ պատերազմից հետո նրանք դրժեցին իրենց հանդիսավոր հայտարարությունը Հայաստանի նկատմամբ։ Այդ ժամանակից ի վեր նրանք անտարբերությամբ են նայում թրքական Հայաստանին, որը դարձել է մի ընդար-

ձակ անապատ, և ճակատագրին այն հայերի, որոնք իրենց երկրից վտարված՝ սփռված են ամբողջ աշխարհով մեկ։

Հայկական հարցի կապակցությամբ թերացումը Եվրոպայի խղճին ծանրացած մի արատ է։ Եվ քանի տարուց ի վեր հայկական վերքերի նըկատմամբ նրա պահած մռայլ լռությամբ չէ, որ կարելի է ջնջել այդ արատը, այն էլ մի այնպիսի ժամանակաշրջանում, երբ հռչակում են աշխարհի վերականգնումը արդարության հիմքերի վրա։

## ՄԻ ՀԻՆ ՊԱՇՏԱՄՈՒՆՔԻ ՀԵՏՔԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

Իրանական քաղաքակրթությունը շատ վաղ է ներթափանցել Հայաստան և այն պատել այնպիսի թանձր ատվերով, որ դժվար է տարբերել այն, ինչ հատուկ է երկրին պաշտամունքի բնագավառում։

Պարթևական ժամանակաշրջանում Հայաստանը, ինչպես Իրանը, գտնվում էր Արշակունյաց դինաստիայի տիրապետության տակ, և երկու երկրներում իշխում էր նույն պանթեոնը։ Արամազդ, Անահիտ, Միհր (Միթրա), Վահագն, Տիր աստվածներն այդ ժամանակից ժողովրդական դարձան Հայաստանում։ Պարթևների հանդուրժամտությունը կրոնական հարցերում նպաստեց ազգային աստվածությունների ձուլմանը Օլիմպոսի Զևս, Արտեմիս, Հեփեստոս, Հերակլես, Ապոլլոն աստվածություններին։ Ուշ ժամանակի մի ավանդության համաձայն, իբր թե հունական աստվածները Հայաստան են բերվել Տիգրան Մեծի թագավորության ժամանակ, այսինքն՝ այն ժամանակաշրջանում, երբ պարթևները տերն էին Իրանի, բայց ոչ դեռևս Հայաստանի։ Որո՞նք էին, ուրեմն, այն աստվածները, որ հարգված էին Հայաստանում նախքան իրանական ու հունական պաշտամունքի մուտքը։ Եթե երկիրն ուներ իր սեփական աստվածները, նրանք ձուլվել են իրանական աստվածների հետ կամ փոխարինվել նրանցով՝ առանց որևէ հետք թողնելու գրականության մեջ կամ բանավոր ավանդություններում։

Հայտնի իրողություն է, որ անունները փոխվում են, բայց պաշտամունքները մնում։ Ժամանակակից գիտնականների մի շարք նշանավոր աշխատություններ ցույց են տվել, որ որոշ պաշտամունքներ, որոնք գոյություն են ունեցել խոր հնության շրջանում, չեն դադարել ապրելուց դարերի ընթացքում՝ փոխելով իրենց անունները դարաշրջանի և էթնիկական միջավայրի համաձայն։ Իրանական պանթեոնը կարծես ավելի հեշտությամբ կլանել է այն, ինչ հայկական պաշտամունքներում որևէ նմա-

*նություն կամ կապ ուներ Իրանի պաշտամունքների հետ։ Սակայն հավատալիքները, որ այլ բնույթ էին կրում և ուրիշ ծագում ունեին, կարողացել են դիմադրել և այս կամ այն կերպ պահպանել իրենց գոյությունը։ Այսպես, Մեծ Աստվածուհու պաշտամունքը, անշուշտ, ծանոթ էր հայերին։ Մի պաշտամունք, որը տարածված էր ամենուրեք՝ Միջագետքից Հունաստան, ուրեմն, չէր կարող անհայտ լինել Հայաստանում, որը գտնվում էր մեծ քաղաքակրթությունների քառուղիում։ Իրոք, նա խոր հետքեր է թողել հայերի մոտ, և հայկական ֆոլկլորում կարելի է գտնել այդ հին պաշտամունքի մնացորդները։*

*Ահա վկայություններ և մի քանի դիտողություններ, որոնք կնպաստեն մեր տեսակետի լուսաբանմանը։*

*Կեղծ-Պլուտարքոսը, խոսելով Հայաստանի Դիորփոս կոչված և Արաքսի մոտերքում գտնվող ինչ-որ լեռան մասին, բերում է հետևյալ պատմությունը.*

Παράκειται δ'αὐτῷ (='Αράξῃ) ὄρος, Δίορφον καλούμενον ἀπὸ Διόρφου τοῦ γηγενοῦς, περὶ οὗ φέρεται ἱστορία τοιαύτη. Μίθρας υἱὸν ἔχειν βουλόμενος καὶ τὸ τῶν γυναικῶν γένος μισῶν, πέτρα τινὶ προσεξέθορεν. ἔγκυος δὲ ὁ λίθος γενόμενος, μετὰ τοὺς ὡρισμένους χρόνους ἀνέδωκε νέον, τοὔνομα Δίορφον, ὃς ἀκμάσας καὶ εἰς ἅμιλλαν ἀρετῆς τὸν Ἄρη προκαλεσάμενος, ἀνῃρέθη. οὗτος κατὰ πρόνοιαν θεῶν εἰς ὁμώνυμον ὄρος μετεμορφώθη[1].

*Դիորփոս լեռը, այսպիսով, կոչվել է մի ոմն Դիորփոսի անունով, որը ծնվել էր քարից և սերմը ստացել Միթրայից, և որովհետև ուզեցել էր չափվել Արեսի հետ, Դիորփոսը սպանվեց վերջինի կողմից, ապա աստվածների կողմից փոխակերպվեց լեռան։*

*Ինչ էլ որ լինի Պլուտարքոսին վերագրված երկի բնույթը, կարելի է վստահ լինել, որ Դիորփոսի պատմությունը հեղինակի կողմից չի հորինված, դա մի առասպելի բեկորն է, որը իր լրիվ ձևով Մեծ Մոր դիցաբանական հուշակավոր առասպելի տեղական տարբերակն է կազմում։ Ավանդությունն ունենում է բազմաթիվ և զանազան տարբերակներ, որոնց մեջ փոխվում են ոչ միայն անունները, այլև անձնավորությունների դերը։ Հազիվ թե հարկ կա դրա վրա կանգ առնելու։ Այս մասին ընդհանուր գաղափար կազմելու համար բավական է հիշեցնել Արնոբիոսի և Պավսանիասի պատմածները։ Քրիստոնյա հեղինակ Արնոբիոսը, որն ապրում էր Դիոկղետիանոսի ժամանակ, հեթանոսությունը ծաղրելու նպատակով բերում է հետևյալ առասպելը։ Զևսը, երբ քնած էր Ագդոս ժայռի գագաթին, կրքոտ կերպով սիրահարվեց Մեծ Մորը, բայց մերժվեց։ Այդ ժամանակ Զևսը* «voluptatem in lapidem fundit»։ *Քարը աշխարհին ընծայեց երկսեռ մի հրեշ, որն Ակ-*

[1] De Fluviis, XXIII, 4.

գեստիս անունն ստացավ։ Սարսափահար աստվածները Դիոնիսոսին հանձնարարեցին ոչնչացնել նրան, բայց վերջինը խեղեց սրան, և այդ գործողության ժամանակ հոսած արյունից մի ծառ ծնվեց, որի պտուղը հավաքվեց Սանգարիոսի աղջիկ Նանայի կողմից։ Աղջիկը պտուղը դրեց իր ծոցը և հղիացավ։ Ծնված տղան կոչվեց Ատիս։ Պեսսինուսի թագավոր Միդասն ուզում էր իր աղջկան ամուսնացնել գեղեցիկ Ատիսի հետ, բայց Մեծ Մայրը (Magna Mater) ինքը սիրահարված լինելով Ատիսին, միջամտեց՝ ամուսնությունն արգելելու համար։ Ատիսը հուսահատվեց, խեղեց ինքն իրեն և վերքից մահացավ. երիտասարդ աղջիկն ինքնասպանություն գործեց։ Ակդեստիսը Զևսից պահանջեց հարություն տալ նրան. Զևսը մերժեց, բայց խոստացավ նրա մարմինը զերծ պահել նեխումից[1]։

Ակդեստիսը, կամ ավելի շուտ՝ Ագդիստիսը, հրեշավոր էակ է, որը ծընվել է Ագդոսից և նույն Կիբելե-Մեծ Մորից, ինչպես երևում է նույն առասպելի այն տարբերակից, որը պահպանել է Պավսանիասը[2]։ Ըստ Ստրաբոնի՝ Ագդիստիսը Մեծ Մոր անունն էր Պեսսինուսում[3]։ Արնոբիոսի կամ Պավսանիասի մոտ պահպանված առասպելը նախնական պատումը չի ներկայացնում, սա մի այնպիսի տարբերակ է, որին միացել են օտարամուտ տարրեր՝ բաբելոնցի Նանան, Թրակիացի Դիոնիսոսը, փռյուգիացի Միդասն իր աղջկա հետ, որոնք փոխ են առնվել ուրիշ առասպելներից[4]։ Մեր ավանդության իսկական կորիզի էական իմաստը հետևյալն է. Մեծ Մայր երկրային աստվածությունն ապրում էր լեռներում և դիտվում որպես ագդոս (հմմտ. ὄχθος, ὄχθη «ժայռ») ժայռից ծնված, դրա համար էլ կոչվում էր Ագդիստիս։ Նա սովորական էակ չէ՝ երկսեռ է։ Գլխավորն արականն է, որն իրենից պոկվելով ծնունդ է տվել Ատիսին։ Սակայն դա առասպելի նախնական վիճակը չէ։ Սկզբում Ատիսը ոչ մի կապ չուներ Մեծ Մոր հետ։ Նա մի երիտասարդ փռյուգիացի էր, որի գեղեցկությունը Կիբելեի ուշադրությունն իր վրա էր հրավիրել։ Մեծ Մայրը ցանկանում էր նրան իր սրբավայրը տանել և մեծարել տալ նրա համեստության համար։ Սակայն Ատիսը մեղանչեց հավերժահարս Սագարիտիսի (Սա(ն)գարիոս գետից) հետ։ Կիբելեն հավերժահարսին սպանեց։ Ատիսը խելագարվեց, քաշվեց լեռները, ուր և խեղեց ինքն իրեն։ Այս առասպելը մեզ փոխանցել է Օվիդիոսը[5]։

Ուրեմն, վերադառնալով Կեղծ-Պլուտարքոսի պատմությանը, դժվար չէ տեսնել, որ Դիորփոսը ներկայանում է, գոնե իր ծնունդով, որպես քա-

[1] Արնոբ., Adversus nationes, V, 5։
[2] Պավսանիաս, VII, 17, 9։
[3] Ստրաբոն, XII, 5, 3։
[4] Հմմտ. Henri Graillot, Le culte de Cybèle, էջ 20։
[5] Fast., IV, 223.

րածին էակ, Ագդիստիսի մի տեսակը։ Կարևոր չէ, թե մեկն իր անունը ժայռին է տվել, իսկ մյուսը ժայռից է ստացել, դրանք նույն կարգի «մոտիվներ» են։ Եթե Զևսի դերում Միթրան է երևան գալիս, դա նույնպես ոչնչով չի փոխում առասպելը։ Դիորփոսին Ագդիստիսից տարբերողն այն է, որ վերջինը ex utroque sexu, ուրեմն, որձևէգ է, մինչդեռ մյուսը սովորական էակ է։ Սակայն Դիորփոսի պայքարը Արեսի դեմ շատ նշանակալից է. Նա մի տեսակ հիշեցնում է Ատիսի հետապնդումը Ագդիստիսի կողմից, հետևաբար և ենթադրել է տալիս, որ, հավանաբար, Դիորփոսը նույնպես առասպելի լրիվ պատումում ներկայացել է երկու տեսքով։ Եվ նա իր իգական և ոչ թե արական տեսքով է, որ պայքարել է Արեսի հետ։ Պայքարի արդյունքը, որ Արեսի օգտին է, հասկանալի կդառնա, եթե ընդունենք, որ հայկական պատումի Ատիսը կրել է Արեսի անվան նման անուն, ուստի և շփոթվել է օլիմպիական Արեսի հետ և, բնականաբար, պայքարում հաղթանակել են տվել աստծուն։ Մյուս կողմից, քանի որ Ագդիստիս և Ատիս հակառակորդների միջև ազգակցություն չկա, կարող է պատահել, որ մեր պատումն արտացոլում է առասպելի սկզբնական վիճակը, երբ Ատիսը դեռևս երիտասարդ փռյուգիացի էր՝ մի աստված կամ հերոս։

Համենայն դեպս, ստույգ է, որ Կեղծ-Պլուտարքոսի հատվածն ապացուցում է Հայաստանում այն առասպելի առկայությունը, որն ամենուրեք պատմում է Կիբելե—Ատիս աստվածային զույգի վերաբերյալ։

Արեսի անվան հետազոտությունը տանում է մեզ Պլատոնի հռչակավոր Էրի ուղղությամբ և դեպի հայկական դիցաբանության Արա Գեղեցիկը։

Հայկական Էրի ավանդությունը քաջ հայտնի է։ Նա պատերազմում սպանվում է, բայց տասներկուերորդ օրը հարություն է առնում և պատմում, թե ինչ է տեսել մյուս աշխարհում[1]։ Դժբախտաբար, մանրամասնությունները մեզ չեն փոխանցվել։ Պլատոնը հետաքրքրվել է այդ ավանդությամբ այնքանով, որքանով դա կարող էր ծառայել մարդկային հոգու անմահության իր սիրած դրույթի ապացուցմանը։ Կղեմես Ալեքսանդրիացին (II դար) կարծում է, որ Էրը՝ դա Զրադաշտն է, և սրա պատճառը, անշուշտ, նրանց միջև մի քանի նմանություններ գտնելն էր[2]։ Իրականում հայոց Էրը Ատիսի՝ երիտասարդ փռյուգիացու, կրկնորդն է միայն։ Նա հիշեցնում է նաև թրակիացի Զամոլքսիսին, որը երեք տարի թաքնվեց ստորերկրյա մի կացարանում և չորրորդ տարին երևան եկավ[3]։ Այս խորհրդավոր պատ-

---

1 Հանրապետություն, X (614 b և հաջ.)։

2 C. **Clemen**, Fontes historiae religionis persicae, էջ 67։ Մենք գիտենք, որ Զրադաշտը նետվել է փոսի մեջ (Fr. **Rosenberg**, Le livre de Zoroastre, Zaratušt nama, էջ 49)։

3 Հերոդոտ, IV, 95։

կերներով ցույց է տրվում, որ մահից հետո կարելի է նորից վերադառնալ դեպի կյանք[1]։ Սա մարմնավորումն է բնության, որն անընդհատ մեռնում և շարունակ վերածնվում է, ինչպես հողն իր մարմնավորումը գտնում է Մեծ Մոր մեջ։ Նմանությունը շատ սերտ է, որով և Մեծ Աստվածուհին անվերջ ընկերակցում է Ատիսի և նրա նմանների հետ, որպեսզի նրանց հետ ներկայացնի բազմացման մեծ խորհուրդը և բնության փոփոխություն-ները։

Այս ձևով Մեծ Մայրը մտնում է Իշտար կամ Աստարտե կամ Աթարգա-տիս (սրանք միևնույն անվան զանազան ձևերն են) աստվածուհու բնա-գավառը և նույնանում է նրա հետ։ Ապա գալիս է Ասորեստանի թագուհին՝ հռչակավոր Սեմիրամիսը, որը հավակնում է հավասար տեղ գրավել նը-րանց կողքին։ Ավելի ուշ նույն փառասիրությունը կունենա մի ուրիշ տի-րուհի ևս՝ Սոլոմոնիկեն։

Հին հայկական գրականության մեջ աստվածային զույգի մասին կա մի առասպելական ավանդություն, ուր Ատիսի և Կիբելեի փոխարեն երե-վան են գալիս Արա—Շամիրամը կամ Սեմիրամիսը։ Ինչ էլ որ լինի Էրիի և Արայի միջև եղած լեզվաբանական հարաբերությունը, նրանց դիցաբա-նական ազգակցությունը կասկածից դուրս է։

Արա—Շամիրամի վերաբերյալ ավանդությունը հաղորդել է Անանիա-նը, իսկ ավելի ուշ վերամշակել է Մովսես Խորենացին իր պատմական երկում։ Ահա մի քանի բառով նրա բովանդակությունը.

Ասուրական դարաշրջանում Հայաստանում իշխում էր մի թագավոր, որը կոչվում էր Արա Գեղեցիկ՝ իր արտակարգ գեղեցկության համար։ Նի-նոս թագավորից հետո Ասորեստանի գահը բարձրացավ նրա կին Շամիրա-մը՝ հռչակավոր Սեմիրամիսը։ Վերջինս հեշտասեր և անառակ կին լինելով՝ սիրահարվեց Արային և, նրան գրավելու նպատակով, առաջարկեց իր գա-հը, բայց Արան մերժեց։ Այդ ժամանակ թագուհին իր բանակով մտավ Հա-յաստան, և Արան կռվի դաշտում զոհվեց։ Շամիրամը ջանաց հարություն տալ նրան՝ Արլեզ աստվածների օգնությամբ։ Որովհետև այդ նրան չէր հաջողվում, պալատականներից մեկը, որ Արային էր նման, հարություն առած Արայի տեղն անցավ։ Թագուհին հայտնեց, որ Արլեզ աստված-ները լիզել են Արայի վերքերը և վերադարձրել նրա կյանքը։ Արան Անու-շավան անունով մի որդի ուներ, որը նվիրված էր սոսիների պաշտամուն-քին Արմավիրում։

---

[1] **S. Augustin**, De civitate Dei, VII, *25*. Propter vernalem quippe faciem terrae quae ceteris est temporibus pulchrior, Porphyrium philosophus nobilis Attin flores significare perhibuit et ideo abscisum quae flos desidit ante fructum *(տե՛ս* **Herding**, Attis, seine Mythen und seine Kunst; **Cumont**, Notice sur un Attis funéraire, Extrait du «Bulletin de l'Institut Archéol. liégeois», XXIX, *1901).*

Ըստ ամենայնի ակներև է, որ մեր առջև վաղնջական մի առասպել է, որտեղ պարզ նկատելի են Կիբելեի և Ատիսի ուրվագծերը։ Բացահայտ է, որ առասպելի էական կետերը ձևափոխվել են քրիստոնեական միջավայրի ազդեցության տակ։ Իրական պատումի մեջ խոսքը, անշուշտ, Արայի իսկական հարության մասին է եղել, ինչպես Ատիսի առասպելում։ Արայի որդու անունը՝ Անուշավան, անմահության գաղափար է ենթադրում, ստուգաբանորեն դա նշանակում է՝ «նա, ով անմահ է պահպանվել»[1]։ Նրա կապը սոսիների հետ մեծ հետաքրքրություն է ներկայացնում և թույլ է տալիս Արայի մեջ տեսնել վերապրուկը Ատիսի, որը ծնվել էր մի ծառից։

Անօգուտ է շարունակել այն ջանքերը, որոնք թափել են մի քանի գիտնականներ՝ ապացուցելու համար, թե Արա—Շամիրամ դրվագը հայ հեղինակների հորինվածքն է, դեսուդեն ցրված տեղեկությունների վրա հիմնըված, և, հետևաբար, չունի ոչ մի պատմական նշանակություն։ Ուրիշներ գտնում են, որ դա ազգային հին դյուցազներգության թանկագին մի բեկոր է. մեր կարծիքով, դա տեղական հին դիցաբանության մի էջ է։

Բավական ժամանակ է, ինչ հրապարակվել է մի շատ կարևոր վավերագիր, որը վրիպել է գիտնականների ուշադրությունից, բայց անժխտելի կերպով հաստատում է մեր տեսակետը։ Բեռլինի պապիրուսների հավաքածոյում Վիլկենը հայտնաբերել և 1893 թվականին Ein neuer griechischer Roman[2] վերնագրով հրատարակել է մի թերթ, դժբախտաբար վընասված, որի վրա հետաքրքրական մի պատմություն է կարդացվում։ Ինչ որ Վիլկենը կարողացել է վերծանել, այսպես է համառոտվում.

Նինոսը, դեռևս 17 տարեկան երիտասարդ, սիրահարվում է հազիվ 13 տարեկան իր զարմուհուն։ Նրանց մայրերն, ուրեմն, քույրեր են։ Նինոսի մայրը կոչվում է Թամբե Θάμβη, իսկ երիտասարդ աղջկա մայրը՝ Դարկեյա Δαρχεία։ Նինոսը տեսակցում է իր մորաքրոջ հետ և դժգոհություն հայտնում, որ իրեն թույլ չեն տալիս ամուսնանալու իր սիրեցյալի հետ, որովհետև նրան գտնում են շատ երիտասարդ, և ինքը պետք է դեռ երկու տարի սպասի։ Երիտասարդ աղջիկն իր կողմից կարծես ասելիք ունի իր մորաքրոջը, ուրեմն՝ Նինոսի մորը, բայց ամոթխածաբար կարմրում և շփոթված ետ է քաշվում։ Երկու մայրերը ընտանեկան խորհուրդ են կազմում, որի հետևանքը հայտնի չէ՝ այդ հատվածը վնասված լինելու պատճառով։ Ապա Նինոսը պատրաստվում է արշավել Հայաստան։ Նրա

---

[1] Միայն եթե սա չլինի պարզապես աղավաղումը anušaruvan բառի, որը նշանակում է. «նա, ում հոգին անմահ է»՝ խոսրով թագավորի մականունը։ Anušavan=anuša ավելացած van, գուցե կարելի է բացատրել որպես բաղկացած anuš(-ak)-ից և van<ban<pan-ից։ Հմմտ. Artapanos=Artavan։

[2] «Hermes», XXVIII (1893), էջ 161—193։

բանակը, բաղկացած հելլեններից, կարիացիներից և միջագետքցիներից, հաշվում է 70 000 հետևակ, 30 000 հեծյալ և 150 փիղ։ Նինոսը հաղթահարում է ճանապարհի դժվարությունները, անցնում գետերը և գալիս ճամբարում դաշտում։ Տասն օր հետո պատերազմն սկսվում է։ Պատմության շարունակությունը պահպանված չէ։

Այս վավերաթուղթը հրատարակող գիտնականը ենթադրում է, որ Նինոսը, ստիպված լինելով երկու տարի սպասել, որոշել էր այդ ժամանակըն անցկացնել պատերազմի մեջ, և իրավացիորեն գտնում, որ դա բավական սովորական վիպական դրվագ է։

Ինձ թվում է, որ Նինոսի արշավանքը բոլորովին տարբեր իմաստ ունի։ Ինչու՞ երիտասարդ աղջիկը չէր կարող սիրտը բաց անել իր մորաքրոջը։ Ամոթի՞ց։ Բոլորովին ոչ։ Մորաքույրը, նրան շփոթված տեսնելով, սաստիկ մտահոգվում է և հարցնում՝ μή τι με<μφη> τὸν ἐμὸν υἱόν։ Նա, ուրեմն, հասկացել է, որ երիտասարդ աղջիկը չի բաժանում իր որդու՝ Նինոսի, զգացումը, և, անշուշտ, նեղվում է ասել Նինոսի մորը՝ վախենալով նրան վշտացնել։ Բայց ինչու՞ նա չի սիրում Նինոսին։ Որովհետև նա սիրում է մեկ ուրիշի, իսկ այդ ուրիշը Հայաստանի թագավորն է։ Նինոսը, կատաղած, արշավանքի է դուրս գալիս իր երջանիկ մրցակցին կործանելու համար։ Մենք այսպիսով վերականգնում ենք սիրո մի դրվագ, որը շատ ավելի նվազ սովորական է, շատ ավելի վիպական։

Ջնջված տեղերում որոշակի կարդացվում է ὁ ''Ερος, իսկ մի քիչ հետո՝ 'Αρμέν։ Իսկապե՞ս Էրոսի մասին է խոսքը, կամ արդյո՞ք հայոց Արա թագավորի անունն է թաքնված այդ հունական ձևի տակ։ Ըստ Դիոդորի՝ Նինոսը նախ արաբների դեմ է արշավել, ապա իր զենքերը դարձրել է հայերի դեմ։ Արաբ թագավորը կոչվում էր 'Αραῖος, իսկ հայ թագավորը Βαρζάνης[1]։ Կարելի է անունների շփոթություն ենթադրել, մանավանդ որ ո՛չ մեկը և ոչ մյուսը պատմական չեն։

Մեր վեպը գտնվում է ասուրական աստվածուհու մասին այն առասպելի ազդեցության տակ, որը հաղորդում է Դիոդորը՝ ըստ Կտեսիասի, և որը մեզ ծանոթացնում է, թե ովքեր էին Դարկեյան և Թամբեն։

Ավանդությունն ասում է, որ Ասկալոնի մոտ գոյություն ուներ ձկներով լեցուն մի լիճ՝ նվիրված կիսակին-կիսաձուկ մի աստվածուհու, որին ասորիները կոչում են Դերկետո, ἣν ὀνομάζουσιν οἱ Σύροι Δερκετοῦν։ Աֆրոդիտեն, ոխ ունենալով Դերկետոյի դեմ, նրան սիրահարեցնում է մի պատանու, որից նա ունենում է մի աղջիկ։ Մայրը, ամոթահար, լքում է երեխային անապատում և ինքը նետվելով լիճը՝ փոխվում ձկան։ Աղավ-

---

[1] Դիոդոր, II, 1։

նիները, խղճալով լքված երեխային, շրջապատում և կերակրում են նրան։ Բախտի բերումով մի հովիվ գտնում է երեխային և տանում-հանձնում թագավորական զորապետին, որի անունն էր Սիմմա, ὄνομα Σίμμα։ Երեխան մեծանում է Սիմմայի տանը և անվանվում, ըստ նրա անվան, Սեմիրամիս։ Նինոս թագավորի պալատականներից մեկը, Օննես Ὄννης անունով, ամուսնանում է Սեմիրամիսի հետ, բայց Նինոսը նրանից խլում է աղջկան[1]։

Ըստ այս պատմության՝ Սեմիրամիսը Նինոսի կինն է և Դերկետոյի աղջիկը։ Մեր վեպի երիտասարդ աղջիկը, որին սիրում է Նինոսը, անկասկած Սեմիրամիսն է, քանի որ նա աղջիկն է Դարկեյայի, որը հենց նույն ինքը Դերկետոն է։

Դարկեյա և Դերկետո՝ Աթարգատիսի միաձուլված ձևերն են։ Աթարգատիս անվան առաջին մասում հայտնվում է Աթարան, Ἀθάρα, որը ասուրական Իշտարի արամեական ձևն է։ Ստրաբոնը հավաստիացնում է, որ Արթագատիսը (փխ. Աթարգատիս), Աթարան և Դերկետոն նույնն են[2]։ Սեմիրամիսը, ուրեմն, Իշտարի կամ Աստարտեի աղջիկն է։ Դարկեյայի քույրը՝ Թամբեն, որը Նինոսի մայրն է, ոչ այլ ոք է, քան սխալմամբ իգականացված Թամմուզը։ Նա նրա հայրն է և ոչ թե մայրը։ Ասուրական Թամմուզը համազոր է սիրիական Ատիսին կամ ասորական Ադոնիսին։ Դրա համար է, որ Ասորիքում Մեծ Աստվածուհու սրբավայրը Ատիսի կերտվածքն էին համարում[3]։

Նինոսը ներկայանում է որպես Թամմուզի որդի, ինչպես որ Սեմիրամիսը Իշտարի դուստրն է։ Այդ հանգամանքը գալիս է ասելու, որ Նինոս—Սեմիրամիս զույգը ժառանգել է Թամմուզ—Իշտարի աստվածային հատկանիշները։

Արդ, պապիրուսի վրա գրված վեպը Նինոսի կողքին որպես ախոյան ներկայացնում է Հայոց թագավորին, որը Սեմիրամիս—Իշտարի ընկերակից լինելու պատիվն է վիճարկում։ Հայկական ավանդությունը նույնպես ձգտում է հանձին Արայի ստեղծել նոր Ատիս կամ Նինոս, որպես Մեծ Մայր Սեմիրամիսի ուղեկից, և եթե վավերական տարբերակում Արայի հարության մասին հարց էր ծագում, պետք է ընդունել, որ Արան իսկապես ճանաչվել է որպես Աստվածուհու ուղեկից։

Պատմիչ Թովմա Արծրունուն ծանոթ մի հին ավանդության համաձայն, Արայի հարության տեսարանը տեղի է ունեցել Լեզք գյուղում, Վա-

---

1 Դիոդոր, II, 4։

2 Ստրաբոն, XVI, IV, 27՝ Ἀρταγάτιν δὲ τὴν Ἀθάραν (ἐκάλεσαν). Δερκετὼ δ'αὐτὴν Κτησίας καλεῖ.

3 De Syria Dea, 15.

նի մոտ[1]։ Գյուղից ոչ հեռու գտնվում է մի ջրհոր, որի մասին երկրի բնակիչները՝ հայերը, մեր նյութի վերաբերյալ շատ հետաքրքիր պատմություն են պատմում։

Հիշյալ ջրհորը հռչակված է որպես սրբավայր։ Բարեպաշտությամբ ուխտի են գնում ու աղոթում այնտեղ։ Այն կոչում են «սուրբ թոնիր»։ Այդ տարօրինակ ջրհորում կար միայն մեկ ձուկ։ Ձուկը չի բարեհաճում բոլորին երևալ։ Եթե նա երևում է մի որևէ ուխտավորի, ուրեմն, նրա ուխտն ընդունել է։ Դա սովորական ձուկ չէր։ Առաջներում նա կնոջ դեմք ուներ, և դեռևս արծաթե զարդարանք է տեսնվում նրա քթից կախված։ Նա մի քահանայի կին էր և շատ գեղեցիկ։ Մի օր, երբ նա թոնրի դիմաց նստած հաց էր թխում, մի մուրացկան երևաց և հաց խնդրեց։ Նա բավարարեց նրա խնդրանքը։ Մուրացկանը ուրիշ սնունդ ուզեց։ Կինն այդ ևս բավարարեց։ Մուրացկանը գինի ուզեց։ Դա նույնպես չմերժվեց։ Վերջապես, թշվառականը համարձակվեց մի համբույր խնդրել։ Կինը տատանվեց, բայց ինքն իրեն ասաց՝ «խեղճ մարդ է, պետք է խղճալ նրան և ողորմություն անել», ու նրան համբույր տվեց։ Հենց այդ պահին քահանան ներս մտավ։ Կինը, սարսափահար, ամոթահար, նետվեց թոնրի մեջ, քահանան հետևեց նրան և այրվեց կրակում, բայց կինը ձուկ դարձավ։ Թոնիրը լցվեց ջրով, և աստծու հրամանով կինն այնտեղ մնաց որպես հավիտենական հիշողություն[2]։

Զարմանալի է, թե ինչքան հավատարմությամբ է այդ լեգենդը վերարտադրում Դերկետոյի հին առասպելը։ Ասկալոն լիճը դարձել է ջրհոր։ Մեծ Աստվածուհի Դերկետոն այնտեղ է՝ ձկան տեսքով, որը հիանալի կերպով մարմնացնում է երբեմնի աստվածուհուն՝ կիսակին-կիսաձուկ, πρόσωπων ἔχει γυναικός, τὸ δ'ἄλλ° σῶμα πᾶν ἰχθύος: Իսկ քահանան և իր կինը հին աստվածային զույգի պատկերը չեն հանդիսանում։ Դերկետոյի աղջիկը և ժառանգը՝ Սեմիրամիսը, ամուսնացել էր Օննեսի հետ, բայց Նինոսը ամուսնուց խլեց նրան։ Անծանոթին տված համբույրը շատ լավ արտացոլում է Սեմիրամիսի վերամուսնությունը Նինոսի հետ։ Լքված ամուսինը՝ Օննեսը, ինքնասպանություն է գործում ճշտիվ քահանայի նման, որը իր կնոջ դավաճանությունը տեսնելուն պես նույնը կատարեց։ Վերջապես, ի՞նչ ասել այս հրաշալի ձկան քթից կախված արծաթե զարդի

[1] Թովմա Արծրունին, III, 18, այդ գյուղը կոչում է «Լեզնոյ գյուղ», հավանաբար, հետագայի սխալ ստուգաբանության պատճառով։ Լեզ-քը («լիզելու վայր») կարծես անվան ավելի ճշգրիտ ձևն է։

[2] Այս լեգենդը գրի է առել Սրվանձտյանը (Գրոց ու բրոց, էջ 53—54), կես դար առաջ։ 1918 թ., Վանի շրջանում հնագիտական ճանապարհորդության ժամանակ, առիթ ունեցա այցելելու այդ հռչակավոր ջրհորը, բայց երկիրը զրկվել էր իր բնակիչներից, այնտեղ միայն մի քանի երեխաների հանդիպեցի. նրանք ջրհորը կոչում էին «Յոթ թոնիր»։

մասին։ De Syria Dea երկի հեղինակը Հիերապոլսում Մեծ Աստվածուհու տաճարի մոտ մի լիճ գիտե, ուր մեծ քանակությամբ ձկներ կան, բայց նրանցից մեկի լողաթևին ոսկե զարդարանք է կախված։ Այդ զարդարանքը հայկական լեգենդում հիշեցնում է կնոջ փոխակերպումը ձըկան։

Նման մի լեգենդ պահպանվել է Երզրումի շրջանում, ուր նույնպես խոսվում է լճի և ձկան մասին։ Կրոնական հարատևության այս ուշագրավ օրինակը բացատրվում է Սեմիրամիսի ժողովրդականությամբ Հայաստանում։ Նախքան որպես աստվածուհի դիցաբանության մեջ մտնելը, նա իշխել էր Ասորեստանի հզոր թագավորների գահի վրա։ Նրա Շամմուրամաթ անունը գտնվել է սեպագիր արձանագրություններում. այսպես էր կոչվում Շամշի-Ադադ թագավորի կինը (826—811)[1]։ Այնուհանդերձ, անժխտելի է, որ հին դարերում ունեցած իր անսահման ժողովրդականությամբ նա պարտական է ոչ թե թագուհի լինելուն, այլ, ապահովաբար, աստվածուհի լինելուն, քանի որ նա ձուլվել էր Մեծ Մոր հետ։

De Syria Dea-ի հեղինակը հայերին դասում է այն ազգերի շարքը, որոնք Մեծ Աստվածուհու ջերմեռանդ երկրպագողներն էին և, որպես իրենց ջերմեռանդության նշան, ուխտի էին գնում Հիերապոլսի սրբավայրը։ Ստրաբոնը հաստատում է, որ Զելայում գտնվող Մեծ Մոր տաճարը, հին Մայի, որ Անաիտիսի (Անահիտ) անունն էր ստացել, դեպի իրեն էր ձգում նաև Հայաստանի ուխտավորներին։

Այս արժեքավոր վկայությունները հաստատում են մեր քիչ առաջ ասածը երբեմնի հավատալիքների մնացորդների մասին և բացահայտ դարձնում, որ Մեծ Մոր պաշտամունքը Հայաստանում ընդունված է եղել։

Ստրաբոնի ժամանակ Ակիլիսենեի Երեզում մեծարված աստվածուհին ավելի շուտ նմանություն ուներ Կոմանայի և Զելայի Մեծ Մոր՝ Մայի հետ, քան Անահիտի, որի անունը յուրացրել էր։ Նրա սրբավայրի բազմաթիվ սպասարկողները և նվիրական պոռնկության պրակտիկան ցույց են տալիս, որ Երեզի աստվածուհին միմիայն անունով էր իրանական և իրանական երևույթի տակ պահպանում էր Մեծ Մոր հին հատկանիշները, որը հիմնականում նույնանում է Մայի և Կիբելեի հետ։

Ագաթանգեղոսը Տրդատի բերանով փառաբանում է Անահիտին և նրան համարում կանացի բոլոր առաքինությունների մայր։ Դա, սակայն, Անահիտի ո՛չ իրանական և ո՛չ ասիանիկական տեսքին չի պատշաճում։ Հայ պատմիչը Անահիտը ընդունում է հունական Արտեմիսի փոխարեն։ Իրանական մյուս աստվածները նույնպես երևան են գալիս հունական պան-

---

[1] «Mitteilungen der Deutschen Orient-Gesellschaft», № 40 (1909), էջ 24; № 42 (1919), էջ 34։

*թեոնի իրենց համազորների հատկանիշներով։ Ըստ հայ գրականության անդրանիկ նմուշների՝ հայերը այլևս ոչ մի գաղափար չունեին այն մասին, թե ինչ ձևով էին մեծարում Հայաստանում իրանական աստվածներին. թվում է, թե նրանք անուններն էին միայն իմանում։ Ակիլիսենեի գավառում կար նաև աստվածուհուն նվիրված մեկ ուրիշ սրբավայր, որը գտնվում էր Թիլ գյուղում։ Նրա շրջակայքում, հատկապես Դարանաղի գավառում, Արամազդը իր տաճարն ուներ Անի-Կամախում, իսկ Բարշամինան՝ Թորդանում։ Արևելքում, Բագայառիճ գյուղը Դերջանում՝ Միհր-Միթրայի աթոռանիստն էր։ Ավելի հեռու՝ Բագրևանդում, Բագավան քաղաքը հռչակված էր Արամազդի իր սրբավայրով, որն անվանվում էր Վանատուր=* Ζεὺς Ξένιος։ *Նույն Բագրևանդում գտնվող մի գյուղ կոչվում էր Տիրառիճ=Տիրի գյուղ, անտարակույս, ի պատիվ մի ժամանակ այստեղ գոյություն ունեցած Տիրի տաճարի։*

*Հետաքրքրական է, որ այդ բոլոր սրբավայրերը տեղավորված էին այն գլխավոր գծի վրա, որ Իրանական սարահարթը միացնում էր Փոքր Ասիային։ Այն տպավորությունն է ստացվում, թե այս պաշտամունքների գոյությունը և նրանց հույն-իրանական տեսքը բացատրվում է այն զարկերակի միջազգային բնույթով, որը ծառայում էր որպես հաղորդակցման և առևտրի ուղի Իրանի և Արևմուտքի միջև։*

*Եթե այս պաշտամունքի հիմքում որևէ զուտ հայկական բան կա, ապա պետք է մտածել զույգ աստվածության՝ Մեծ Մոր և իր ընկերակցի հին ավանդության մասին, որը բնապաշտական և բուն ժողովրդական հավատալիք է։ Իգական դեմքերը, որոնք հերթով կրում էին իրանական և հունական անուններ՝ գրավեցին տեղական աստվածուհու խորանը։ Անուններն աստիճանաբար մոռացվեցին։ Նույնը պատահեց նաև արական դեմքերի հետ, որոնք, հավանաբար, թաքցնում են, գեթ մասամբ, Մեծ Մոր հին ուղեկիցներին։ Հայերեն «աստուած»-ի կապը* Σαβάζιος*-ի հետ նույնքան հրապուրիչ է, որքան և վիճելի։ Օրիոնը հայկական Աստվածաշնչում փոխարինված է* Հայկով, *իսկ հայտնի է, որ Օրիոնը դիցաբանության մեջ համապատասխանում է Թամմուզին։* IX *դարի մի հեղինակ գրում է, որ «Լուսինը նվազ լուսավոր է, քան արևը, աստղը նվազ՝ քան լուսինը, իսկ* Արան *նվազ՝ քան Լուցիֆերը»*[1]*։ Սեմիրամիսի հակառակորդ Արան, ուրեմն, դիտված է որպես աստղ։ Հայկական դիցաբանության մեջ Արայի ու Հայկի նախնական իմաստը մնում է անորոշ։*

*Համենայն դեպս, խնդրո առարկա պաշտամունքը խորապես արմատացած էր հայկական շրջանակում։ Նախքան ընդմիշտ աներևութանալը,*

---

[1] **Н. Адонц**, Дионисий Фракийский и армянские толкователи, СПб., *1915*, *էջ 278*։

նա թողել է որոշ աղոտ, բայց ճանաչելի լույս, նույնիսկ հայ վարքագրական գրականության մեջ։ Մենք ուզում ենք խոսել ս. Գրիգոր Լուսավորչի և Տրդատի, սուրբ կույսեր Հռիփսիմեի և Գայանեի չարչարանքների մասին։ Պատմում են, որ հայ եկեղեցու հիմնադիրը նետվել է օձերով լի մի խոր վիրապ և որ այնտեղ ապրել է տասներեք տարի, իսկ հետո ողջ-առողջ դուրս գալով այնտեղից՝ քարոզել է նոր կրոնը։ Ի՞նչ է նշանակում այս զարմանալի հրաշքը։ Հին այն պաշտամունքի վերջին հիշատակումը չէ՞ արդյոք սա, ըստ որի, օրինակ՝ Ջամոլքսը, երեք տարի շարունակ թաքնըվելով գետնափորում, նորից երևան է գալիս իր առաքելությունը կատարելու։ Նույնպես, Արեսը տասներեք ամիս փակված է եղել երկաթե հնոցում։ Ագաթանգեղոսը մի անգամ ասում է տասնհինգ տարի, մեկ ուրիշ անգամ՝ տասներեք տարի. ըստ մի քանի ձեռագրերի՝ այդ եղել է տասներեք ամիս։ Մենք ընդունում ենք այս վերջին ընթերցումը որպես վավերական և կարծում, որ դա ցույց է տալիս հայկական հին տոմարի տասներեք ամիսները[1]։ Ժողովրդական երևակայությունը Հայաստանի առաքյալին դրել է նույն պայմանների մեջ, որոնցում գտնվել է մեռնող և հարություն առնող հին աստվածը։ Գրիգորի գործակից Տրդատ թագավորը նույնպես պահպանել է կարծես դիցաբանական որոշ գծեր։ Նրան դարձնում են վարազ՝ սուրբ կույսերին անարգելու պատճառով։ Որքան էլ տարօրինակ թվա այս պատկերը, այն բացատրելի կդառնա, եթե հիշենք Արեսին՝ վարազ դարձած այն ժամանակ, երբ ուզում էր սպանել իր ախոյան Ադոնիսին, և կամ Ատիսին, որն սպանվեց ոխակալ Զևսի նրա դեմ ուղարկած վարազի կողմից։ Միգուցե, Արեսը հայ Դիոդիոսին սպանելու պահին նույնպես վարազի կերպարանք էր ստացել։

Տրդատ թագավորի կիրքը սուրբ կույս Հռիփսիմեի նկատմամբ նվազ նշանակալից չէ։ Գայանե կույսը, թեպետ Հռիփսիմեի մայրը չէր, այնուհանդերձ, մոր դեր է խաղում նրա նկատմամբ։ Նրա կենսագիր Ագաթանգեղոսն ասում է, որ Հռիփսիմե անունը նշանակում է ճետված, որովհետև նա ինքն իրեն տեսավ «մահից դեպի կյանք նետված», այսինքն՝ հեթանոսությունից քրիստոնեություն։ Անշուշտ, այդ առեղծվածային անունը նա ածանցում է հունական 'ρίπτω, ῥιφαμένη բառից։ Մի պարզ բառախաղ։ Հռիփսիմեն գիտեր ապակուց մարգարիտներ պատրաստել։ Կենսագիրն ուզեցել է այս արհեստը վերագրել նրա ընկերուհիներից մեկին, բայց լուրջ պատճառներ կան կարծելու, որ ըստ նախնական պատումի՝ Հռիփսիմեն ինքն էր ապակուց մարգարիտներ պատրաստելու արհեստը գործադրում՝ իր

[1] Սխալ ընթերցման պատճառով — 13 տարի՝ փոխանակ 13 ամիս,— 13 տարով հետաձգել են Հայաստանի դարձը, այն համարելով 301 թվականին։ Իսկական թվականն է՝ 301—13=288 թ., Դիոկղետիանոսի օգնությամբ Տրդատի՝ Արշակունյաց գահին վերահաստատվելուց անմիջապես հետո։

